# ՕՏԱՐ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԵՎ ՀԱՅԵՐԻ ՄԱՍԻՆ

## 8

# ИНОЯЗЫЧНЫЕ ИСТОЧНИКИ ОБ АРМЕНИИ И АРМЯНАХ



АКАДЕМИЯ НАУК АРМЯНСКОЙ ССР
ИНСТИТУТ ИСТОРИИ

# СИРИЙСКИЕ ИСТОЧНИКИ

I

ПЕРЕВОД С ОРИГИНАЛА,
ПРЕДИСЛОВИЕ И ПРИМЕЧАНИЯ
Г. Г. МЕЛКОНЯНА

ИЗДАТЕЛЬСТВО АН АРМЯНСКОЙ ССР
ЕРЕВАН 1976

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱ
ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏ

# ԱՍՈՐԱԿԱՆ ԱՂԲՅՈՒՐՆԵՐ

## Ա

ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅՈՒՆ ԲՆԱԳՐԻՑ,
ԱՌԱՋԱԲԱՆ ԵՎ ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ
Հ. Գ. ՄԵԼՔՈՆՅԱՆԻ

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԱ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 1976

90 . 29
Ս 53

*Աշխատության մեջ հայերեն թարգմանությամբ ներկայացված են հատվածներ VI դարի ասորի պատմիչներ Մշիխա Զեխայի, Յոշվա Ստիլիտի (Սյունակյացի), Զաքարիա Հռետորի և Հովհան Եփեսացու աշխատություններից։ Բնագրերի թարգմանությանը կից տրվում են նաև ուսումնասիրություններ, որոնց մեջ քննարկվում են նրանց աշխարհայացքի, քաղաքական ու սոցիալական կյանքի, կրոնական ու եկեղեցական երկպառակությունների հետ կապված հարցեր։*

Ս $\frac{0164}{703(02)-76}$ 30—74

# ՆԵՐԱԾՈՒԹՅՈՒՆ

## ԱՍՈՐԱԿԱՆ ԴՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆՆ ՈՒ ՊԱՏՄԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

### 1. ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

*Ասորական գրականությունն ու արվեստը, իր հին արևելյան մշակույթին յուրահատուկ բանաստեղծական խոր ներշնչանքով, պատկերների խտացված վառ գույներով, բարձրարժեք երկեր է ունեցել, որոնք իրենց ուրույն տեղն ունեն համաշխարհային մշակույթի պատմության մեջ։ Դժբախտաբար ասորիների հեթանոսական մշակույթին պատկանող հուշարձաններ չեն պահպանվել, ուստի բնական է, որ այս ուսումնասիրության մեջ խոսք կլինի քրիստոնեական կրոնի ընդունումից հետո կազմավորված, ասորի ժողովրդի մտքերն ու ձգտումներն արտահայտող այն գրականության մասին, որը ստեղծվեց մեր թվականության երկրորդ գարում և տվեց իր փայլուն ներկայացուցիչները։ Առաջին ակնարկից, երբ հայացք ենք նետում ասորական գրականության վրա, այն տպավորությունն ենք ստանում, որ դա սոսկ կրոնական է իր բովանդակությամբ, իսկ գեղարվեստական արժանիքներով շատ ավելի ցածր, քան հույն եկեղեցու հայրերի գործերը։ Այս հանգամանքն՝էլ հիմք է հանդիսացել, որ XIX դարում ֆրանսիացի բանասեր ու պատմաբան է. Ռընանն ու նրանից հետո նաև ուրիշներ, այն միտքը հայտնեն, որ ասորական գրականությունը գրավիչ չէ և թե ասորի հեղինակների մեջ չկան այնպիսի փայլուն դեմքեր, ինչպիսին են Բարսեղ Կեսարացին, Գրիգոր Նազիանզացին, Հովհան Ոսկեբերանը։ Նրանք այն կարծիքն են հաստատում, որ ասորիները հիմնականում միայն հունական մշակույթը ծանոթացրել են արևելքի ժողովուրդներին,*

*մանավանդ արաբներին*[1]*։ Այս մասնագետների նման համոզմունքը բխում է քրիստոնեական քննադատական մտքից, այսինքն նրանք ասորական գրականությունը գնահատելիս, առաջին հերթին որոնել են մեծ աստվածաբանների կամ փիլիսոփաների, և այդ դժվար չէ հասկանալ նրանց մատնանշած անձնավորությունների անունները կարդալիս։ Գուցե նրանք խոշոր աստվածաբաններ կամ փիլիսոփաներ չեն ունեցել, բայց այդ չի նշանակում, որ գրականության այլ ճյուղերում ևս, նրանք միջակության սահմաններում են մնացել և կամ եղել են լոկ մշակույթի միջնորդներ։ Ճիշտ է, նրանք հին հույն փիլիսոփաների ու գիտնականների գործերը թարգմանել ու տարածել են արևելքի ժողովուրդների մեջ, բայց նրանց գործունեությունը դրանով չի սահմանափակվել, դրա կողքին նրանք ստեղծել են իրենց սեփական գրականությունն ու արվեստը, որը տարբերվում է մյուսներից և արժանի է բարձր գնահատանքի։ Դրա լավագույն ապացույցն է Բարդածանի, Եփրեմ Ասորու, Բար Էբրայուսի և այլ բազում մշակների թողած դրական հարուստ ժառանգությունը։*

*Մեր հասած ասորական դրականությունն ու արվեստը քրիստոնեական է, և քրիստոնեական գաղափարախոսությունը էական նշանակություն է ունեցել նրա ստեղծման ու զարգացման գործում, բայց այն նաև ժողովրդական է, որովհետև ասորի հեղինակներն իրենց գործերը գրելիս, կապը չեն խզել ժողովրդից ու շրջապատից, և նույնիսկ կրոնական բովանդակությամբ իրենց աշխատությունները շարադրելիս, հավատարիմ են մնացել իրենց ժողովրդի ձգտումներին, մշակութային սովորություններին ու սկզբունքներին, և այդ է պատճառը, որ ասորական գրականությունը բանաստեղծության, գեղարվեստական արձակի գծով է զարգանում։ Այս ուղղությամբ, և հետագայում, նաև պատմագրության գծով զարգացումը, պետք չէ պատահականության վերագրել, այլ այն օրինաչափության, որ սկզբից այն կապվեց ժողովրդական բանահյուսության ակունքներին։ Այս տեսանկյունից դիտված, ասորական գրականությունը ինքնուրույն է ու հարուստ։ Մինչդեռ արևմուտքում, մանավանդ հին հունական մշակույթի կենտրոններում, քրիստոնեական գրականությունը այլ ուղղությամբ էր զարգանում։*

---

[1] *E. Renan,* De philosophia apud Syros, 1852, p. 3: *В. Райт,* Краткий очерк истории сирийской литературы, пер. К. Тураевой, СПб, 1902, стр. 2.

Միջերկրածովյան ավազանի այն կենտրոններում, որտեղ հունական, հեթանոսական հին փիլիսոփայությունն ու կրոնական հավատալիքները բնակչության մեջ խոր արմատներ էին թողել, քրիստոնեական գաղափարախոսությունը ընկնում է դրանց ազդեցության ներքո և հիմնականում դառնում աստվածաբանական ու փիլիսոփայական հասկացություններով խճճված մի վերացական ուսմունք, և դուռ բացում այն երկարատև, անվերջանալի վեճերին ու երկպառակություններին, որոնք դարեր շարունակ ալեկոծեցին հավատացյալների սրտերը և խռովեցին եկեղեցու ու եկեղեցական հայրերի կյանքն ու գործունեությունը։ Քրիստոնեական գաղափարախոսության ներսում առաջացած այս հակասություններից առաջին հերթին օգտվում են պետական խոշոր գործիչները, որոնք եկեղեցական իշխանության գլուխ կանգնած անձնավորությունների հետ միասին, ուղիներ են որոնում քրիստոնեական գաղափարախոսությունը պետական շահերի հետ համաձայնեցնելու։ Կոստանդիանոս կայսեր Միլանի 313 թ. հրովարտակը առաջին քայլն էր՝ քրիստոնեական եկեղեցին հռոմեական կայսրության քաղաքական կառքին լծելու համար։

Սակայն ոչ բոլոր քրիստոնյաներն էին, որ լռությամբ համակերպվում էին այս փոփոխություններին, որովհետև կրոնական քողի տակ, իրար հաջորդող և պայքարի անվերջ կոչով զինված աղանդավորական շարժումները, փորձում էին այս կամ այն կերպ հակադրվել, հավատարիմ մնալով քրիստոնեական նախնական սկզբունքներին, որոնք ուզում էին աշխարհի բոլոր հալածվածներին, մերժվածներին, ճնշվածներին վերամիավորել և հասարակական նոր կարգ ստեղծել։ Հակադրվողների շարքերում հիմնական տարրերը սեմական ծագումով քրիստոնյաներ էին, որոնց ըմբռնումների հետ անհամատեղելի էին վերացական ուսմունքի վերածվող, հունականացող քրիստոնեական գաղափարների ձևափոխումները։ Աղանդավորներն այն ժամանակ սոցիալական, քաղաքական, տնտեսական ու կրոնական իրենց ելույթները կազմակերպում էին արդեն նվիրապետական կարգ ստացած եկեղեցական իշխանության դեմ, որովհետև Հռոմեական, ապա Բյուզանդական կայսրության մեջ այն դարձել էր հիմնաքարը, որի վրա կառուցվում էին ու օրինականացվում տիրող անարդար կարգերն ու օրենքները։

Մինչև VII դարը, ինչպես Պարսկաստանում, այնպես էլ Բյուզանդիայում, ասորիները ևս ներգրավվել են քաղաքական,

սոցիալական ու եկեղեցական պայքարի մեջ և շատ անգամ նույնիսկ նշանակալից դեր են կատարել ու ղեկավարել են տարբեր շարժումներ։ Դա հասկանալի է, որովհետև ասորիներն այդ երկու հզոր պետությունների միջև որպես օտար տարր, գտնվում էին նվաստացման պայմաններում, որը և իր խոր կնիքն է դրել ասորական գրական ու պատմագրական աշխատությունների վրա։ Այս հանգամանքը ասորի պատմիչներին հնարավորություն է տվել, որ երբեմն նրանք քննադատական ու անկողմնակալ դիրք գրավեն պատմական երևույթները նկարագրելիս կամ վերլուծելիս, և դա նպաստել է, որ նրանք պատմական փաստերը հաղորդելիս, կանգ առնեն այնպիսի մանրամասնությունների վրա, որոնց մասին կողմնակալ հեղինակները գիտակցորեն լռել են։ Իսկապես ասորական գրականությունն ու պատմագրական մատյանները հարուստ նյութ են մատակարարում, և այդ հուշարձանների ուսումնասիրությունը ոչ միայն քրիստոնեական գրականության, այլև Մերձավոր Արևելքի ժողովուրդների պատմության որոշ հարցեր ու հանգույցներ լուսաբանելու համար կարևոր արժեք են ներկայացնում։

## 2. ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹՅՈՒՆԸ

Մինչև քրիստոնեության թափանցումը Ասորիք, այսինքն մինչև մ. թ. II դարի կեսերը, ասորերեն տառեր գոյություն են ունեցել, այդ մասին են վկայում մեզ հասած ասորերեն արձանագրություններն ու Եդեսիայի թագավորների դրամները։ Բացի այդ, ավանդություն գոյություն ունի այն մասին, որ Հին կտակարանի որոշ գրքեր արդեն մ.թ. I դարում թարգմանվել են եբրայերենից ասորերեն և օգտագործվել Եդեսիայում[2]։

Ադդայի վարդապետությունից գիտենք, որ Տատիանոսի «Դիաթեսարոնը» կարդացվում էր Եդեսիայում գոյություն ունեցող առաջին քրիստոնեական համայնքի հավաքույթների ժամանակ[3]։ Հայտնի է նաև, որ այս համայնքի ներկայացուցիչներն իրենց կրոնական ժողովների ժամանակ որպես աղոթք օգտագործել են Դավթի Սաղմոսները։ Նշանակում է, որ այն ժամանակ եղել է Սաղմոսների ասորերեն թարգմանությունը։ Քարոզչական նպա-

---

[2] Հ. Մելքոնյան. Հայ-ասորական հարաբերությունների պատմությունը, էջ 116։

[3] Նույն տեղում, էջ 118։

տակներով կատարված թարգմանական այս գործերն էլ հիմք հանդիսացան ասորական ինքնուրույն գրականության ստեղծման։ Թարգմանական այս գործերից բացի, ստեղծվեց ասորական ինքնուրույն գրականություն, որի հիմնադիրը հանդիսացավ Բարդածանը։ Հունական մշակույթի խոշոր կենտրոններում ուսած և դաստիարակված գիտնականն ու բանաստեղծը կարողացավ ճիշտ կողմնորոշվել և ժողովրդական բանահյուսության հետևությամբ ոտանավորներ գրել, որպեսզի այդ միջոցով կարողանա քրիստոնեական վարդապետության որոշ սկզբունքներ արմատավորել հավատացյալների մեջ։ Նա ոչ միայն բանաստեղծություններ է գրել, այլև դրանց համար հորինել նաև եղանակներ։ Եբրայական գրականությունը, մանավանդ Դավթի Սաղմոսները, իրենց ազդեցությունն են թողել Բարդածանի վրա, բայց նա չի կրկնել նրանց, գրել է ժողովրդին մատչելի լեզվով ու ոճով, քաջ իմանալով, որ քրիստոնեական համայնքները կազմավորված էին հասարակ մարդկանցից։ Դժբախտաբար մինչև օրս մասնագետներն անտեսել են ասորական գրականության այս կողմը և ըստ արժանվույն չեն գնահատել այն։

Բարդածանի օրինակին հետևեցին նրա հաջորդները և ասորական բանաստեղծությունը գարգացավ այդ ճանապարհով։

Ասորական բանաստեղծությունը .կարելի է բաժանել երկու գլխավոր խմբերի՝ չափածո ճառերի (mémra-de-mouchkhata) մեմրա-դըմուշխաթա) և կցուրդների կամ տաղերի (madrachê- մադրաշեների)։

Ճառերը պատկանում են նկարագրական և վիպական ժանրին, որոնք գրվում էին տարբեր չափերով և նվիրվում եկեղեցական տոներին կամ սրբերին ու մարտիրոսներին՝ նրանց հիշատակը հավերժացնելու նպատակով և ընթերցվում էին նրանց տոնին։ Անշուշտ, այս մեմրաները գրվում էին այս կամ այն տոնի և կամ սրբի հիշատակի իմաստը, էությունը բացատրելու և դրա նշանակությունը հավատացյալի հոգում ամրապնդելու համար։ Մեմրաների մեջ լինում էր նաև հակաճառական ձևը, որը գրվում էր հերետիկոսների և ընդհանրապես քրիստոնեական եկեղեցուն թշնամի տարրերի ու շարժումների դեմ պայքարելու և հավատացյալին ճշմարիտ հավատը բացատրելու ու համոզելու համար։ Ճիշտ է, մեմրաների մի մասը զուտ աստվածաբանական գործեր են և իրենց կառուցվածքով ու ոճով նման են հունական ճառերին և հունականի ազդեցությունը նրանց վրա բացահայտ

է, բայց մնացյալը գրված է ասորական բանաստեղծության յուրահատուկ պարզ ոճով և կապված է ժողովրդին հուզող հարցերի հետ։ Ամենակարևորն այն է, որ այս մեմրաների հեղինակները չեն թաքցնում իրենց համակրանքը հասարակ ժողովրդի նկատմամբ, և այդ դիրքերից էլ հարվածում են իշխող դասակարգին։ Այս տեսակետից, նմանօրինակ ճառերը կամ մեմրաներն առանձնանում են մյուսներից և իբրև բարձրարժեք գործեր, արժանի են գնահատանքի։ IV դարի սկզբներում ապրած Աֆրաատի ճառերում նույնպես զգացվում է այդ շունչն ու ոգին։ Նա իր ճառերից մեկում բողոքում է, որ «ունևորներն իրենց մարմնի վրա կրում են թանկարժեք զգեստներ և շրջում երիզապատ գահույքների վրա նստած, մինչ ղրկյալները թափառում են կիսամերկ ու անօթևան»։ Սակայն այս երկու խմբի մարդկանց մեջ շարունակում է նա, զրկյալներն իրենց մարդկային առաքինություններով անսահման բարձր են կանգնած մյուսներից, որովհետև չքավորները չեն մոռանում իրենց վերջին պատառից բաժին հանել կարոտյալ ու թշվառ ընկերներին, իսկ ունևորները մտածում են գտնել «զոք նկուն քան զինքն զի կլանել մարթայցեն»։ Նույն ճառում հեղինակը գրում է, որ ունևորներից չեն տարբերվում նաև այն հոգևորականները, որոնք աստիճան ստանալով մտածում են «բազմիլ ի բարձն առաջին», որ նրանք նմանվում են փարիսեցիներին ու դպիրներին։ Այս հոգևորականները թեև քարոզում են «սիրեցէք զմիմեանս» բայց նրանք լի են «ցասմամբ բարկութեան, ատելութեան», թեև ուսուցանում են «եթէ առնու ոք զքոյդ, դու մի պահանջէր», բայց գործում են այդ սկզբունքի համաձայն՝ «երբ դու զքոյն պահանջես և առնուս ևս վարձս վաշխիւ»։

Ճառագիրը զայրանում է, երբ տեսնում է, որ այս հոգևորականները բարձր ու վեհ գաղափարներ են քարոզում առանց հավատալու դրանց՝ անձնական շահերից ելնելով։ Խոսքն ուղղելով նման մարդկանց, նա ասում է. «Զիա՞րդ ուսուցանես ինձ, թէ ցածիր, մինչ դու պարծուկ լիրբ և անամօթ ես։ Եւ զիա՞րդ ուսուցանես ինձ, թէ թող զաշխարհս, մինչ դու անկեալ, խեղդեալ կաս մէջ մեր։ Եւ զիա՞րդ ուսուցանես ինձ թէ անդորրացո աղքատաց, մինչ դու անխնայ հալածես զաղքատս զընկերս քոյս»։

Այս տողերից երևում է, որ հեղինակը հեռու է կանգնած աստվածաբանական ու փիլիսոփայական խճճված մտքերից և պարզ ու հասկանալի ոճով, առանձին ջերմությամբ վեր է հանում

հասարակ մարդկանց հոգեկան ու բարոյական բարձր հատկանիշները, և միաժամանակ մերկացնում աշխարհիկ ու եկեղեցական այն բարձրաստիճան անձնավորություններին, որոնք օգտըվելով իրենց տնտեսական ու քաղաքական առանձնաշնորհումներից, ոտնահարում են ամեն մի սրբություն։

Ասորական այս և նման այլ ճառերը, այսօր էլ կարծես չեն կորցրել իրենց իմաստն ու նշանակությունը և իրենց գեղարվեստական ու գրական արժանիքներով դասվում են քրիստոնեական գրականության լավագույն նմուշների շարքը։

Ասորական բանաստեղծության մյուս ճյուղը հայտնի է կցուրդ (մադրաշե) անունով, որն արդեն քնարական ժանրն է։ Կցուրդների մեջ կան նաև բարոյախոսական և խրատական գործեր, որոնք չափածո ոտանավորների միջոցով փորձել են քրիստոնեական բարոյական սկզբունքներ արմատավորել հավատացյալների սրտում։ Առաջինը կցուրդներ է գրել Բարդածանը, սակայն նրանից համարյա ոչինչ չի հասել մեզ, որովհետև որպես աղանդավորի գործեր, դրանք ժամանակի ընթացքում ոչնչացվել են, մի քանիսը միայն պահպանվել են Եփրեմ Ասորու աշխատություններում։ Եվրեմ Ասորին ասորական և, ընդհանրապես, քրիստոնեական գրականության խոշորագույն դեմքերից է, որի գրական գործունեության շնորհիվ ասորական գրականությունը մեծ վերելք ապրեց։ Նրա գրչին են պատկանում բազում ճառեր ու կցուրդներ։ Եփրեմի կցուրդներից հիսունմեկը մեզ հայտնի են նրանց հայերեն թարգմանությունների միջոցով, որովհետև ասորերեն բնագրերը կորել են։ Ինչպես մեմրաները, այնպես էլ մադրաշեները երգվում էին եկնղեցական տոնախմբությունների ժամանակ։ Եփրեմ Ասորին, գրում է նրա վարքագիրը, ժողովրդական երգերի հետևողությամբ կցուրդներ էր հորինում, որոնք երիտասարդները սովորում ու երգում էին եկեղեցիներում[4]։

Եփրեմ Ասորու վարքագրի կարևոր վկայությունը ցույց է տալիս ասորական բանաստեղծության՝ ժողովրդական բանահյուսության հետևողությամբ գրված լինելը։ Դրան ավելի ենք համոզվում, երբ կարդում ենք նրա կցուրդները։ Այս տեսակետից հատկանշական ու հետաքրքրական է, օրինակ, Եփրեմ Ասորու «Գերեզմանատուն» բանաստեղծությունը։ Գեղեցիկ պատկերներով ու խոհական մտքերով նա նկարագրում է այն շիրմաքարերը,

---

[4] *Bedjan,* Acta mart. et sanct., t. III, Parisiis, 1892, p. 621.

որոնց տակ թաղված իշխաններն ու շինականները հավասար պայմաններում ննջում են հավիտենական քնով։ Բանաստեղծը կոչ է անում ընթերցողին՝ հասկանալ այդ ճշմարտությունը և կյանքում առաջնորդվել նույն սկզբունքով, որի հաղթանակը վերջ կտար մարդկանց մեջ գոյություն ունեցող անարդարություններին ու չարիքներին[5]։ Համարյա նույն մտքերն են արծարծվում նրա «Երեխայի», «Երիտասարդի». «Իշխանի» թաղման վերաբերյալ գրած բանաստեղծություններում։

Ասորական բանաստեղծությունն իր ծաղկումն ապրեց մինչև VIII դարը, որից հետո սկսվեց նրա անկումը։

## 3. ՎԱՐՔԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

Քրիստոնեական վարդապետության տարածումն աշխարհի տարբեր ծայրերում, բնական է, որ իր հետ պետք է բերեր և արվեստի ու գրականության\ նոր ըմբռնումներ և պետք է հող նախապատրաստեր քրիստոնեական գրականության ստեղծման, որպեսզի կարողանար իր գաղափարախոսության սկզբունքները արմատավորել ժողովրդի մեջ։ Հրեական, և ապա ընդհանրապես արևելյան ու հունական մշակույթի համադրումից ծնվում է նորը՝ քրիստոնեական գրականությունը։ Ինչպես գիտենք, քրիստոնեական առաջին համայնքներն իրենց հավաքույթներում կարդում էին Հին կտակարանի որոշ գրքեր և դա բավարարում էր նրանց պահանջները, սակայն հետագայում երբ քրիստոնեություն ընդունողների շարքերը մեծացան և նրանց մեջ մտան նաև հունական և ընդհանրապես հեթանոսական բարձր մշակույթի դպրոցներում կրթություն ստացած մարդիկ, ապա արդեն սրանց չէին բավարարում միայն հրեական մշակույթն ու պատմությունը արտացոլող, հրեական ժողովրդի շահերի դիրքերից գրված Հին կտակարանի գրքերը։ Անհրաժեշտ էր նորը՝ քրիստոնեականը, մանավանդ, որ աստպարեզից հեռանում էին Քրիստոսի հետ գործակցած նրա անմիջական առաքյալներն ու աշակերտները, ուստի պետք էին նոր գրքեր, որոնք պատմեին քրիստոնեական կրոնի հիմնադրի՝ Քրիստոսի կյանքի ու գործունեության մասին, և իրենց մեջ

[5] *H. Burgess*, Select metrical hymns and homilies of Ephraem Syrus, London, 1853, pp. 1, 9, 34. *J. Lamy*, Sancti Ephraem Syri hymni et sermones, Mechliniae, 1882–1886: Կցուրդք ս. Եփրեմի Խորին Ասորւոյ, Վիեննա, 1957,

ամփոփեին նոր ուսմունքի հիմնական դրույթները։ Ահա այս պահանջը բավարարելու նպատակով գրվում են ավետարաններ, որոնցից միայն չորսն է որ եկեղեցին կանոնական է համարում։ Այդ պարականոն չորս ավետարաններից բացի, մեզ հասել են նաև անկանոն կոչված՝ «Մեր Տիրոջ ավետարանը», «Թովմա եբրայեցու ավետարանը», կամ ինչպես այն անվանել են՝ «Մեր Տիրոջ մանկությունը», «Սուրբ կույս Մարիամի և մեր Տիրոջ կյանքը երկրի վրա» և այլ գրքեր[6]։ Այս աշխատություններն իրենց էությամբ վարքագրություններ են, որովհետև դրանք հիմնականում պատմում են Քրիստոսի կյանքի ու գործունեության մասին, այն տարբերությամբ, որ այս վարքագրական մատյաններում հյուսված կամ միակցված են նաև Քրիստոսի վարդապետության հիմունքներն ու բարոյական սկզբունքները։ Կանոնական կոչված չորս ավետարաններից երեքը (Մարկոսի, Ղուկասի, Հովհաննեսի) գրվել են հունարեն, և դա նշանակում է, որ դրանք շարադրվել են Քրիստոսի մահվանից հետո, բավական ուշ, այսինքն այն ժամանակ, երբ քրիստոնեական վարդապետությունը Հրեաստանից դուրս արդեն տարածվել էր հունական մշակույթի կենտրոններում ապրող ժողովուրդների մեջ։ Այստեղ, արդեն, ինչպես նշել ենք, քրիստոնեությունը ենթարկվել է հելլենիստական քաղաքակրթության ազդեցության։ Այսպես, Գալիլիայի ծովափին ապրող հասարակ մարդկանց պարզ, բայց միևնույն ժամանակ համամարդկային ու ազնիվ ձգտումները ավետարանների բազում հրաշապատում նկարագրություններով ծանրաբեռ, կորցրել են իրենց էական նշանակությունը և տեղի տվել վեճերի ու հակաճառությունների։ Այսպես, ավետարանները քրիստոնեական գրականության հիմքն են դնում։ Արձակ բանաստեղծության շարքին կարելի է դասել նաև վարքագրությունը։ Վարքերը թեև իրականում պատմական երկեր են և գրվել են եկեղեցական այս կամ այն հայտնի գործչի կամ մարտիրոսի կյանքն ու գործունեությունը ներբողելու նպատակով, բայց իրենց կառուցվածքով դրանք ներբողական, արձակ բանաստեղծության գեղեցիկ նմուշներ են։ Պատմական փաստերը այս երկերում, ճիշտ է, աղքատ են, բայց շատ կարևոր։ Համենայն դեպս, պատմական իրողությունը այս

[6] *J. Ephraem II Rahmani.* Testamentum Mayence, 1899: *Cowper.* The apocryphal gospels, London, 1867: *W. Budge.* The history of the blessed virgin Mary and the history of the likeness of Christ, London, 1899.

աշխատություններում երկրորդական տեղ է գրավում, հիմնականը գեղարվեստական մոտեցումն է։ Անշուշտ ոչ բոլոր վարքերն են որ գեղարվեստական արժանիքներ ունեն, որովհետև դրանց մի մասն իրենց հրաշապատում զրույցներով, անվերջ կրկնություններով միօրինակություն են ստեղծում և շատ անգամ ձանձրացնում ընթերցողին։ Խոսքն այստեղ այն վարքերի մասին է, որոնք ասորական արձակ գրականության լավագույն էջերից են։

Ասորական վարքագրության համար բնորոշ էր նաև այն, որ այդ երկերը ստեղծվում էին պետությունների, մասնավորապես հռոմեական ու պարսկական պետությունների կողմից, քրիստոնյա հավատացյալների դեմ հարուցած հալածանքների առթիվ զոհ գնացած մարտիրոսների հիշատակը հավերժացնելու և եկող սերունդների մեջ նրանց օրինակը կենդանի պահելու միտումով։ Շատ անգամ հասարակ խավից սերած այս մարտիրոսներն իրենց քաջությամբ, անվախությամբ, անձնուրացությամբ, բազմապիսի չարչարանքներին դիմանալու իրենց կարողությամբ, ներշնչանքի աղբյուր են դարձել և նպաստել վարքագրական գրականության ստեղծմանը։

Ասորական առաջին վարքագրական գործերից է Ադդայի վարքը, որը, դժբախտաբար մեզ է հասել ավելի ուշ դարերում խմբագրվելուց հետո, ուստի դրան չենք անդրադառնա։ Հատուկ ուշադրության են արժանի այն չորս վարքերը, որոնք գրվել են այն ժամանակ, երբ Եդեսիան, իրոք, Ասորիքի, Միջագետքի, և ընդհանրապես Մերձավոր Արևելքի եկեղեցիների կյանքում կարևոր դեր էր կատարում։ Այս վարքերը հայտնի են Շարբելի, Բարսամիայի, Գորիայի ու Շամոնի, Հաբիբի վարքեր անունով։ Թեև այս գրվածքներում տեղեկություններ կան այն մասին, որ դրանք գրվել են II դարի սկզբներում, սակայն ուսումնասիրողներն հանգել են այն եզրակացության, որ այդ գործերը շարադրրվել են III դարի վերջին կամ IV դարի սկզբին, և, անկասկած, նույն հեղինակի երկերն են[7]։ Ճիշտ է, այս գործերում ներկայացված է Եդեսիայում տարբեր ժամանակներում ապրած եկեղեցական հայտնի գործիչների կյանքն ու գործունեությունը, բայց իրենց կառուցվածքով, ոճական, արտահայտչական ձևերով ու պատկերներով դրանք նման են իրար։ Համենայն դեպս, չորս վարքերն էլ գրված են անկեղծ ու խոր ներշնչանքով, բանաստեղծական ջերմ ու անմիջական զգացումներով։ Այս գործերն իրենց

[7] *R. Duval,* La littérature syriaque, p. 115.

ամբողջության մեջ, իրոք ասորական ներբողական դրականության լավագույն նմուշներից են։ Որպես պատմական աղբյուր ևս, կարևոր նշանակություն ունեն, որովհետև այս վարքերում տեղեկություններ կան Հռոմեական կայսրության արևելյան նահանգներում իրագործվող վարչական կարգի, օրենքների, դատարանների, ժողովրդի և պետության միջև գոյություն ունեցող փոխհարաբերությունների մասին։ Մեզ, հայերիս համար էլ այս վարքերն առանձին հետաքրքրություն են ներկայացնում, որովհետև մեր առաջին թարգմանիչներն ու մատենագիրները և՛ թարգմանել, և՛ որպես աղբյուր իրենց աշխատություններում օգտագործել են այդ երկերը[8]։

Ասորական վարքագրության, և, ընդհանրապես, քրիստոնեական դրականության լավագույն հուշարձաններից է նաև «Արևելյան վկայից» աշխատությունը, որը վերագրված է IV դարի վերջին և V դարի սկզբում ապրած ասորի հայտնի եկեղեցական ու քաղաքական գործիչ Մարութային[9]։

Հեղինակը ջերմ հուզականությամբ վեր է հանում, ավելի ճիշտ, երգով հավերժացնում այն մարտիրոսների հիշատակը, որոնք IV դարի քառասնական թվականներին, Շապուհ Բ-ի ժամանակ, զոհ գնացին քրիստոնյաների դեմ հարուցված հալածանքներին։ Այն թարգմանվել է հայերեն և մեծ ուշադրության արժանացել թարգմանիչների ու մատենագիրների կողմից։

Հետագա դարերից մեզ հասած ասորական վարքագրական գործերը, դժբախտաբար, զուրկ են գեղարվեստական և պատմական այն արժեքներից, որոնց մասին խոսվեց։ Վարքերն ավելի վաղ, VI դարից սկսած, կորցրել են իրենց նշանակությունն ու հետաքրքրությունը, ժողովրդի, եկեղեցու ու պետության միջև ստեղծված փոխհարաբերությունների և ներքին երկպառակությունների հետևանքով։ Եկեղեցական կենտրոններից յուրաքանչյուրը զբաղված էր ոչ թե քրիստոնեական վարդապետության տարածման հետ կապված հարցերով, այլ իր իսկ կազմակերպության, իր եկեղեցու կամ պետության շահերի պաշտպանությամբ։

Ահա այս պայմաններում էլ հիմք է դրվում ասորական պատմագրության, որը փաստորեն իր ժամանակի ու պահանջի արդյունքն էր։

---

[8] Տե՛ս Հ. Մելքոնյան, Հայ-ասորական հարաբերությունների պատմությունից, էջ 29։

[9] Հայ մատենագրության մեջ այս գործը սխալմամբ վերագրվել է Եփրեմ Ասորուն։

## 4. ՄԻՋԵԿԵՂԵՑԱԿԱՆ ՎԵՃԵՐԸ ԵՎ ՆՐԱՆՑ ԱԶԴԵՑՈՒԹՅՈՒՆԸ ԱՍՈՐԱԿԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՎՐԱ

*Ասորական գրականությունն իր կրոնական, բանաստեղծական ու վարքագրական երկերով, հիմնականում ի սպաս էր գրված քրիստոնեական վարդապետության տարածման գործին։ 216 թ. քաղաքական ինքնուրույնությունը կորցրած ասորի ժողովուրդը երկու հզոր պետությունների՝ Հռոմի և Պարսկաստանի ծանր լծի դեմ պայքարելու ամենահարմար միջոցը համարում էր քրիստոնեական ուսմունքը։ Ասորիներն իրենց ամբողջ գործունեությունը կազմակերպում են այդ ուղղությամբ, հավատալով, որ այդ պայքարի միջոցով հնարավոր կլինի վերականգնել իրենց քաղաքական ինքնուրույնությունն ու ստեղծել սոցիալական նպաստավոր պայմաններ։ Նրանք ավելի են ոգևորվում, երբ քրիստոնեությունը պետական կրոն է դառնում Հռոմեական կայսրության մեջ, որովհետև նրանք մտածում են, որ հռոմեացիները քրիստոնեություն ընդունելով ոչ միայն համեմատաբար ավելի արդար օրենքներ կստեղծեն իրենց տերության մեջ ապրող քրիստոնյաների սոցիալական վիճակը բարելավելու մեջ, այլ նաև կօգնեն այլ երկրներում ապրող իրենց հավատակիցների սոցիալական պայմանները բարելավելու կամ նրանց օտար լծից ազատագրելու գործին։ Սակայն երկար ժամանակ չանցավ և նրանք հուսախաբվեցին, տեսնելով, որ նոր կրոնի հաղթանակը ոչնչով չէր փոխում իրենց վիճակը։ Եվ դժվար չէր նկատել, որ արդեն եկեղեցու գլուխ կանգնած բարձրաստիճան եկեղեցականները գործում են պետության շահերի պաշտպանության դիրքերից։ Դրա հետ մեկտեղ նկատվում է Հռոմեական կայսրության ներսում պետության ու մշակույթի հունականացում, իսկ դա նշանակում էր, տվյալ դեպքում, եկեղեցական գործիչների շրջանակների նեղացում, հունական տարրերի մյուսներին հակադրրում և սոցիալականի փոխարեն այլ հարցերի առաջ քաշում։*

*Հունականացման հետ առաջանում են նաև պատրիարքական աթոռների նախապատվության, և ընդհանրապես՝ պատրիարքություններից յուրաքանչյուրի ազդեցության ոլորտների ընդլայնման և գերիշխանության հետ կապված հարցեր։ Կոստանդնուպոլսի պատրիարքությունը օգտվելով կայսրության մայրաքաղաքում գտնվելու առավելությունից, ձգտել էր բարձրացնել իր հեղինակությունը։ Պետությունն իր կարգին, ընդառաջում է պատրիար-*

քարանի ձգտումներին, որովհետև մայրաքաղաքում եկեղեցական ուժեղ կենտրոնացված իշխանության ստեղծումը խիստ նպաստավոր էր և անհրաժեշտ[10]։

Կայսրության այս եկեղեցական քաղաքականության առաջին մեծ հարվածը ասորական եկեղեցին իր վրա է զգում դեռևս Վաղես կայսրի օրոք (370)։ Վաղեսը բռնի միջոցներով՝ աքսորով, սպառնալիքներով, փորձում է ահաբեկել և իր կամքը թելադրել, որպեսզի ասորական եկեղեցին ենթարկվի Կոստանդնուպոլսի պատրիարքարանի գերիշխանությանը։ Իր նպատակին հասնելու համար նա անձամբ է ղեկավարում այդ գործողությունները, նույնիսկ Եդեսիայի եպիսկոպոսական աթոռին է բազմեցնում իրեն համակիր եպիսկոպոսներից մեկին, սակայն այդ ամենը ոչ մի արդյունք չի տալիս։ Ընդհակառակը նախաձեռնած միջոցառումները ասորի եկեղեցական գործիչներին ստիպում են ինքնապաշտպանության դիմել։ Ասորական եկեղեցին նման հարվածներից պաշտպանվելու համար նոր միջոցներ է որոնում, որովհետև մշակույթի հարուստ ավանդներով զինված ասորական եկեղեցին, արդեն դեմ հանդիման էր կանգնել մի հզոր ախոյանի՝ բյուզանդական եկեղեցուն։ Ասորիները կայսրության այդ հարվածներին դիմադրում էին իրենց մշակույթի կենտրոնները ուժեղացնելով։ Բացվում է «Եդեսիայի դպրոցը», որտեղ սովորելու են գալիս տարբեր վայրերից եկած, ուսման ծարավի երիտասարդներ։ Այդ դպրոցը մինչև V դարի վերջին քառորդը դառնում է ասորական մշակույթի աշխույժ կենտրոն։ Աշխուժություն է նկատվում նաև ասորական այլ քաղաքներում, և դպրոցների ծավալած մշակութային գործունեությունը ամուր հենարան է ստեղծում ասորական եկեղեցու դիրքերի ամրապնդման համար։ Այդ բանին նպաստում է նաև պարսկական պետության մեջ քրիստոնյաների և քրիստոնեական համայնքների նկատմամբ ցույց տրվող վերաբերմունքը։ Հայտնի է, որ Շապուհ Բ-ն 340 թ. անխնա հալածում էր իր տիրապետության մեջ ապրող քրիստոնյաներին, նրանց համարելով Հռոմեական կայսրության համակիր տարր։ Այդ բացասական վերաբերմունքը քրիստոնյաների նկատմամբ անշուշտ, ոչ նույն խստությամբ, շարունակվել է մինչև

---

10 Կայսրության այս եկեղեցական քաղաքականության ազդեցության ոլորտը չընկնելու նպատակով, հայ արքունիքն ու հոգևորականությունը հայոց կաթողիկոսի օծումը IV դարի երկրորդ կեսից այլևս կատարում էին Հայաստանում։

նույն դարի յոթանասունական թվականները։ Սակայն եկեղեցու ներսում և, ընդհանրապես, բյուզանդացիների և ասորիների միջև ծագած երկպառակություններն ու ընդհարումները շուտով համոզեցին պարսիկ պաշտոնյաներին, որ կարելի էր օգտվել այս ներքին հակասություններից, իրենց տիրապետության մեջ ապրող քրիստոնյա տարրերին Բյուզանդիային հակադրելով՝ հօգուտ իրենց ծառայեցնել։ Բյուզանդիայից վտարված ու հակաբյուզանդական տրամադրություններով համակված նեստորական գործիչներն ապաստան են գտնում պարսիկների մոտ։ Նրանք հյուրընկալում են նրանց, քաջալերում և հնարավորություններ ստեղծում, իրենց երկրում ապրող քրիստոնյաներին իրենց գերիշխանության ներքո պահելու համար։ V դարի առաջին տասնամյակներից սկսած նրանք փորձում են հայկական եկեղեցին նույնպես իրենց ազդեցության տակ վերցնել։ Պարսկասեր որոշ հայ նախարարների և պարսկական պետական բարձրաստիճան պաշտոնյաների միջոցով նեստորական եկեղեցու մի քանի գործիչներ բազմում են Հայոց կաթողիկոսական աթոռին, բայց ոչ մի արդյունքի չեն հասնում, որովհետև այդ ժամանակաշրջանում, մանավանդ հայկական թագավորության վերացումից հետո, հայ ժողովուրդը թշնամաբար էր տրամադրված պարսիկների նկատմամբ, և ձգտում էր վերականգնել իր ազգային ինքնուրույնությունը։ Նեստորականները, սակայն, հաջողություն ունեցան բուն Պարսկաստանում և Պարսկաստանի հարևան մյուս երկրներում։ Նրանք Սելևկիայում (Տիզբոնում) հիմնեցին իրենց կաթողիկոսական աթոռը, որն իր իշխանության շուրջն էր համախմբել պարսկական տիրապետության մեջ գտնվող այլ եպիսկոպոսություններ և, այսպիսով, ասորական ուժեղ պատվար ստեղծել բյուզանդական ազդեցության դեմ պայքարելու համար։ Նեստորականներին պարսկական պետության մեջ գործելու ազատություն է տրվում, սակայն մահվան պատիժով արգելվում է պարսիկներին քրիստոնեություն քարոզել։ Արդեն V դարի առաջին քառորդին նեստորական եկեղեցին վտանգավոր էր դարձել Բյուզանդիայի համար, և կայսրության ներկայացուցիչները միջոցներ էին որոնում այդ վիճակից դուրս գալու։ Քրիստոնեական վարդապետությունը փաստորեն ձևական բնույթ էր կրում և միջոց էր դառնում եկեղեցական այս կամ այն թևի շահերի պաշտպանության, այսինքն, քրիստոնեությունը չէր ձգտում համամարդկային վսեմ, բարոյական սկզբունքներ իրագործել հասարակության ներսում։

Ստեղծված այս վիճակը հուսախաբություն էր առաջացնում ճշմարիտ հավատացյալների մեջ, նրանք հեռանում էին եկեղեցուց և միանում աղանդավորական շարժումներին, որոնք հայտնի էին Մծղնեական (Մեսալյան), Անապատական և այլ անուններով։ Այս շարժումների մասնակիցները մարդու կամ հասարակության փրկության գործում ժխտում էին եկեղեցու ղեկավար դերը, դրա համար էլ հրաժարվում էին եկեղեցական խորհուրդներից և ապրում առանձին խմբերով, կամ փախչում ամայի վայրերն ու անապատները՝ գոյություն ունեցող անարդար կարգերին հակադրվելու նպատակով։ Այսպես, եկեղեցու հիմքը թուլանում էր, ներեկեղեցական ընդհարումներին ավելանում էին նաև աղանդավորական շարժումները, որոնք իրենց շուրջը համախմբելով դժգոհ տարրերին, կազմակերպում են նրանց պայքարը քաղաքական ու եկեղեցական իշխանությունների դեմ։ Ստեղծված իրավիճակը լուրջ անհանգստություն էր պատճառում կայսրության ղեկավարներին ու եկեղեցական վերնախավին։ Նրանք զգում էին, որ անհրաժեշտ էր հավաքագրել պետական ու եկեղեցական ուժերը և հակահարված տալ առաջին հերթին նեստորականներին, ապա, ընդհանրապես, աղանդավորներին։ Այդ նպատակով 431 թ. հրավիրվում է Եփեսոսի երրորդ տիեզերաժողովը, ուր փորձ էր արվում վերականգնել նախ և առաջ եկեղեցու միասնությունը, որովհետև բաժան-բաժան եղած եկեղեցական ուժերի դեմ թշնամի տարրերն ավելի դյուրին էին կազմակերպում իրենց հարվածները։ Ժողովում բանադրեցին Նեստորին և նեստորական ուսմունքը։ Հայ եկեղեցին ճանաչեց Եփեսոսի ժողովի իրավունքները, որովհետև այդտեղ ընդունված որոշումներն իրենց էությամբ համապատասխանում էին հայ եկեղեցու շահերին։ Պարսիկների կողմից հայերի նկատմամբ որդեգրած քաղաքական այդ նոր գիծը, այսինքն հայոց թագավորության վերացումն ու հայերին քաղաքական ինքնուրույնությունից զրկելու հիմնական փորձերը հայերին ստիպում էին Բյուզանդիայի և բյուզանդական եկեղեցու հետ մերձենալու նոր ուղիներ որոնել։

Եփեսոսը թեև Նեստորին և նեստորականներին հարվածեց, բայց չկարողացավ վերականգնել եկեղեցու միասնությունը, ընդհակառակը կրքերը բորբոքվեցին ու ծայր առան նոր վեճեր ու երկպառակություններ։ Պատճառն, անշուշտ, այն էր, որ Արևմուտքում Հռոմի պապը անհանգստացած էր Արևելյան եկեղեցու հեղինակության բարձրացումից ու նրա ծավալած աշխույժ

գործունեությունից։ Կայսրն էլ նույն մտահոգության մեջ էր, և մնում էր համագործակցության ուղի որոնել։ 451 թ. Քաղկեդոնում հրավիրված ժողովը այդ նպատակն էր հետապնդում, բայց այն պատճառ դարձավ եկեղեցու վերջնական բաժանման։ Ջնայած Քաղկեդոնում հավաքվել էին իբր Քրիստոսի աստվածային ու մարդկային բնությունների համակեցության հետ կապված հարցերը լուծելու, բայց իրականում, մասնակից խմբակցություններից յուրաքանչյուրն իր աստվածաբանական ձևակերպումներին մոտենում էր նախապես ունեցած քաղաքական նկատառումներով։ Կայսրն ու իր համախոհները Քաղկեդոնի ժողովի միջոցով ուզում էին մերձենալ Հռոմի եկեղեցու հետ, և նրանց հետ մեկտեղ հարվածել Ալեքսանդրիայի և ընդհանրապես Արևելյան եկեղեցու աճող հեղինակությանը։ Քաղաքական իշխանության կենտրոնացման ձգտող Բյուզանդական կայսրության համար ծայրամասային շրջաններում եկեղեցական իշխանության նման կենտրոնների առաջացումը, լուրջ վտանգ էր ներկայացնում։ Ուստի Մարկիանոս կայսրի ամբողջ ցանկությունն էր եկեղեցական գերագույն իշխանության ամուր կենտրոն դարձնել Կոստանդնուպոլսի պատրիարքությունը, որով կայսրն անմիջական ։սկողության տակ կվերցներ եկեղեցին։

451 թ. հոկտեմբերի 8-ին բացվում է ժողովը։ Առաջին իսկ նիստից զգացվում է, որ կայսրը դիմել է արտակարգ միջոցների և ձգտում է գործել նախօրոք կազմված ծրագրի համաձայն։ Ժողովին հրավիրված էին զինվորական հատուկ ջոկատներ, որոնք հսկում էին ժողովի ընթացքը և հարկ եղած դեպքում միջամտում։ Նիստերը ղեկավարում էին կառավարական պաշտոնյաները՝ թելադրելով իրենց կամքը։

Նոյեմբերի մեկին ժողովն ավարտվում է և ժողովականները վերադառնում են իրենց տեղերը, սակայն կրքերը հանդարտվելու փոխարեն ավելի են բորբոքվում։ Կայսրի և ընդհանրապես կայսրության հակառակորդներն ու դժգոհ տարրերը համախմբվում են հակաքաղկեդոնական դրոշի ներքո և ուժեղացնում պայքարը։ Վարդանանց պատերազմի կապակցությամբ 451 թ. հայ եկեղեցին չզբաղվեց նման հարցերով, և միայն 506 թ. Բաբգեն կաթողիկոսի օրոք հայերը Դվինում[11] պաշտոնապես դատապարտեցին Քաղկեդոնի ժողովը։

---

[11] Ե. Տէր Մինասյանց, *Հայոց եկեղեցու յարաբերութիւնները Ասորւոց եկեղեցիների հետ*, Էջմիածին, 1908, էջ 70։

Քաղկեդոնի ժողովից հետո Բյուզանդական կայսրության մեջ ապրող ասորիները և ընդհանրապես Մարկիանոս կայսրի գործունեությունից և եկեղեցական քաղաքականությունից դժգոհ տարրերը համախմբվում են միաբնակության դրոշի ներքո և իրենց պայքարը կազմակերպում միաբնակության անվան տակ։ Պարսկական տիրապետության մեջ հայերից բացի ապրում էին նաև ասորի միաբնակներ, որոնք նեստորականների իրար հաջորդող հարվածներից այնքան էին թուլացել, որ միաժամանակ հայ եկեղեցու օգնության շնորհիվ կարողացան իրենց գոյությունը պահպանել։

Ընդհանրապես միաբնակների վիճակը ծանրացել էր կայսրության մեջ, և միայն Զենոն կայսրի օրոք իրերի դրությունը փոխվում է, կայսրը նկատի ունենալով, որ իր տերության մեջ հետզհետե միաբանակների ազդեցությունն ուժեղանում է և այդ պատճառով հակաբյուզանդական տրամադրությունները խորանում են, ստիպված կայսրության եկեղեցական արտաքին քաղաքականության մեջ փոփոխություն է մտցնում և փորձում է իր «Հենոտիկոնով» հաշտության եզր գտնել միաբնակության ու երկաբնակության միջև։ Սակայն Զենոնի այս քայլից ավելի շատ օգտվում են միաբնակները, որոնք իրենց գործունեությունը սկսում են աշխուժացնել կայսրության արևելյան սահմաններում։

Այս կրոնական վեճերն իրենց արտացոլումը գտան ասորական մատենագրության էջերում։ Ասորի մատենագիրները հաճախ են անդրադարձել նման վեճերին, որոնք սակայն ցայտուն կերպով դրսևորվել են պատմագրության մեջ։

## 5. ՊԱՏՄԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

Երբ ակնարկ ենք նետում V դարի ասորական գրականության վրա, տեսնում ենք, որ բանաստեղծության ասպարեզում հանդես են եկել այնպիսի փայլուն դեմքեր, որոնք շարունակել են Բարդածանի և Եփրեմ Ասորու ավանդները, այն տարբերությամբ միայն, որ նրանց աշխատություններում նշանակալից տեղ են գրավում նաև պատմական կարևոր իրադարձություններին ու դեպքերին նվիրված գործեր։ Այսպես, IV դարի սկզբին, Իսահակ Ամիդացին երկարաշունչ չափածո մի ոտանավոր է գրել Հռոմի վերաբերյալ, իսկ Իսահակ Անտիոքացին 459 թ. Անտիոքի երկրաշարժի, նրա կատարած ավերածությունների ու ողբերգու-

թյունների մասին ունի նույնպես չափածո մի աշխատություն։ Եդեսիայի Ռաբուլա եպիսկոպոսը տարբեր առիթներով գրել է բազում նամակներ ու ոտանավորներ։

Մինչև 489 թ. ասորական մշակույթի կենտրոնն էր Եդեսիայի դպրոցը, որի սաները խոշոր դեր էին կատարում ասորական դրականության զարգացման գործում։ Թեև սկզբում այս դպրոցը թատերաբեմ էր նեստորականների ու միաբնակների միջև տեղի ունեցող պայքարի, սակայն վերջում արդեն նեստորականները տիրապետող դիրք էին գրավել, ուստի Զենոն կայսրը 489 թ. վերջնականապես փակել տվեց այն, նեստորական գործիչները ստիպված հեռացան Եդեսիայից և եկան «Մծբինի դպրոցը»։ Դեռևս 457-ին նեստորական խոշոր մատենագիրներից Մծբին էին տեղափոխվել Ներսեհը, Բարծուման, Ակակիոսը, Մանան, Աբշուտան և այլ գործիչներ[12]։ Այս տեղափոխություններից հետո Մծբինը դարձավ ասորական մշակույթի կարևոր օջախներից և նեստորական եկեղեցու հիմնական ամրոցներից մեկը։

Այստեղ, նորից սկսեցին ասորերեն թարգմանվել ոչ միայն հին հույն գրականության լավագույն գործեր, այլև ասորերենից ու հունարենից պարսկերենի թարգմանվեցին կարևոր աշխատություններ։

Զենոնի, և նրանից հետո բյուզանդական գահին բազմած Անաստաս կայսրի եկեղեցական նոր քաղաքականությունը, միաբնակների նկատմամբ նրանց ցուցաբերած բարյացակամությունը նոր շունչ հաղորդեցին ասորի, հույն և այլազգի միաբնակ գործիչներին, որոնք նպաստավոր պայմաններից ոգևորված, ոչ միայն ամրապնդեցին իրենց դիրքերը, այլև ուժեղ հարձակումներ սկսեցին քաղկեդոնիկների դեմ։ Նրանք մեծ հույսեր ունեին, որ կայսրի անմիջական օգնությամբ վերջնական հարված կհասցնեն քաղկեդոնականներին և եկեղեցական իշխանությունը կվերցնեն իրենց ձեռքը։

Չնայած Զենոն և Անաստաս կայսրերի եկեղեցական այս քաղաքականությունը ասորի միաբնակ եկեղեցական գործիչների համար իր դրական ազդեցությունն ունեցավ, բայց միաժամանակ պատճառ դարձավ եկեղեցու թուլացման և ասորի ժողովրդի ուժերի քայքայման։ Եկեղեցական այս նոր քաղաքականության շնորհիվ ասորի միաբնակ եկեղեցական գործիչների ու ընդհան-

---

[12] *J. Assemani,* Bib. Orientalis, t. I. p. 436.

րապես աշխարհիկ վերնախավի և հասարակ ժողովրդի միջև եղած կապը սկսեց թուլանալ։ Ստեղծված հնարավորությունից օգտվելով, ասորի եկեղեցական գործիչներից ոմանք դուրս եկան իրենց ազգային նեղ շրջանակներից և հեռանալով ժողովրդից իրենց ուժն ու եռանդը չխնայեցին կայսրության հետ համագործակցելու համար։ Սակայն ոմանք էլ՝ հատկապես Բյուզանդական կայսրության մեջ, զգալով մեծ վտանգը, հասկացան, որ ուժերի նման վատնումը կարող էր նախապատրաստել իրենց ժողովրդի ու եկեղեցու կործանումը, քայքայումը, ուստի այդ գիտակցությունից առաջնորդվելով, նրանք ազգային ամբողջականությունը, միասնությունը, համախմբումն ապահովող միջոցներ են փնտրում, նման վտանգի առաջն առնելու համար։ Կարևոր այդ միջոցներից է ասորական պատմագրության ստեղծումը։ Եթե այս նկատառումով կայսրության մեջ ապրող ասորի գործիչները հիմնականում զարկ են տալիս պատմական երկերի ստեղծման, ապա տարբեր պատկեր ենք տեսնում Պարսկաստանում իրենց եկեղեցու դիրքերն ամրացրած նեստորական գործիչների մոտ։ Եփեսոսի երրորդ տիեզերաժողովում Նեստորին և նեստորականներին բանադրելը այն հետևանքն ունեցավ, որ պարսիկները սկսեցին ավելի վստահել և թույլատրել նրանց ազատ գործունեությունը իրենց երկրում, մանավանդ, որ նրանք արդեն Պարսկաստանի տնտեսական ու մշակութային կյանքում նշանակալից դեր էին կատարում։ Հետաքրքրական է այն փաստը, որ Ամիդի եպիսկոպոս՝ Ակակիոսը 419 թ. Մծբինի շրջակայքում բյուզանդացիների ձեռքը գերի ընկած պարսիկներին գերությունից ազատելու համար փրկագին էր տվել այդ նպատակով վաճառված իր եկեղեցու սրբազան անոթներից ստացված գումարը։ Մարդասիրական նման արարքները պարսկական արքունիքի և ժողովրդի մեջ չէին կարող իրենց նկատմամբ համակրանք չստեղծել։ V դարի ընթացքում նեստորական բազում գործիչներ ծառայել են արքունիքում, կատարել արքայից-արքայի հատուկ հանձնարարականները, և որպես Պարսկաստանի դեսպան ուղարկվել Բյուզանդիա[13]։ Քաղաքական գործունեությունից բացի, նրանք գրական լայն գործունեություն էին ծավալում Պարսկաստանում։ Օրինակ, դեռևս Հազկերտ Ա-ի ժամանակ նեստորական նշանավոր գործիչներից՝ Մանան ասորերենից պահլավերեն է թարգմանել բազում աշխա-

[13] *J. Assemani*, Bib. Orientalis, t. I, pp. 195—196.

տուԹյուններ։ Հայտնի է նաև, որ Տիզբոն-Սելևկիայի կաթողիկոսական աթոռին բազմած նեստորականների կաթողիկոս Ակակիոսը (484—496), արքայից-արքա Կավատի խնդրանքով, Մծբինի եպիսկոպոս Եղիշեի «Ճառ հավատոյ» գործը նույնպես պահլավերեն է թարգմանել։

Թարգմանական աշխատություններից բացի, նեստորականներն իրենց ուշադրությունը կենտրոնացրել էին մեկնողական գրականության վրա։ Նրանք առաջին հերթին թարգմանել են Թեոդոր Մոպսուեստացու Աստվածաշնչին նվիրված մեկնողական այն երկերը, որոնց միջոցով նա շարադրել է քրիստոնեության վերաբերյալ ունեցած իր սկզբունքներն ու դատողությունները։ V դարի սկզբներից մեզ հասած ասորերեն ձեռագրերում պահպանվել են հունարենից արված այն թարգմանությունների նմուշները, որոնք հիմնականում կատարվել են Եդեսիայի դպրոցում։ Իսկապես, 370 թ. սկսյալ, Եդեսիայի դպրոցում, ասորերենին զուգահեռ, սովորողները տիրապետել են նաև հունարեն լեզվին։ Հավանաբար Եդեսիայի դպրոցում աշակերտները սովորել են նաև պահլավերեն, որովհետև Մանան, Ռաբուլան, Իբասը և նեստորական գործիչներից շատերը, որոնք պահլավերեն թարգմանություններով էին զբաղված, այս դպրոցի սաներից են։

Պետք է նշել, որ նեստորականները V դարի սկզբից մեծ տեղ էին տալիս հին հունական դասական գրականությանը և թարգմանեցին նրանց գործերից շատերը։ Հայտնի է, որ նույն ժամանակամիջոցում է թարգմանվել Արիստոտելի «Օրգանոն»-ը և այլ աշխատություններ։

Ի՞նչն էր ստիպում նեստորականներին հիմնականում զբաղվելու թարգմանական և մեկնողական գրականությամբ։ Պարզ է, որ նման գրական երկերը քարոզչական նպատակ էին հետապնդում և, իսկապես, երբ ակնարկ ենք նետում այդ ժամանակաշրջանի նրանց գործունեության վրա, տեսնում ենք, որ նրանք միսիոներական եռանդուն գործունեություն են ծավալել։ Դրան նպաստել է նաև այն, որ IV դարից սկսած, Միջագետքից, Ասորիքից և ասորական այլ շրջաններից տեղահանված բազմահազար ասորիներ պարսկական նոր քաղաքների շինարարությանը մասնակից այլ ժողովուրդներին քարոզում էին իրենց կրոնը։ Պարսիկները հետագայում լայն հնարավորություններ են տալիս ասորիներին ու ոմանց նույնիսկ պատասխանատու պաշտոնների նշանակում։ Ասորիները ապրանքներով բեռնավորված կարավաններով պարս-

կական քաղաքներից մեկնում էին հեռու երկրներ, մինչև Չինաստան ու Հնդկաստան։ Այս ճանապարհորդությունների ու շփումների արդյունքը լինում է այն, որ քրիստոնյա նեստորական քարոզիչները թափանցում են այլ ժողովուրդների մեջ և տարբեր երկրներում կազմակերպում քրիստոնեական համայնքներ ու եկեղեցիներ։ Պարսիկները քաջալերում, նպաստում ու օգնում էին նեստորականներին այս գործում, ոչ միայն առևտրական այս կապերից ստացված մեծ եկամուտները, այլև պարսկական քաղաքական ազդեցության ոլորտների ընդլայնումը նկատի ունենալով, որովհետև նեստորական գործիչների շնորհիվ Պարսկաստանի համար նոր շուկաներ էին նվաճվում և այդ շուկաներում Պարսկաստանին համակիր մթնոլորտ էր ստեղծվում։ Անշուշտ, քրիստոնյաներն իրենց ազդեցությունը այս ժողովուրդների մեջ ամրապնդելու համար քարոզչական աշխատանքներին զուգակցում էին գրական ու մշակութային լայն գործունեություն, նրանց ծանոթացնելով ասորական և հունական քրիստոնեական, փիլիսոփայական, աստվածաբանական ու հոգևոր մատյանների հետ։

Ստեղծված այս իրավիճակը բացասական արդյունք ունեցավ նեստորական եկեղեցու համար, որովհետև բազում գործիչներ կտրվելով իրենց երկրից ու ժողովրդից, ներքին ուժերի ջլատման ու բաժան-բաժան լինելու պատճառ դարձան։ Բացառիկ ընդունակություններով օժտված այս գործիչները, որոնք կարող էին օգտակար լինել իրենց ժողովրդին, նպաստել նրա գոյատևման պայքարին, հեռանալով երկրից, զրկվեցին այդ կարելիությունից։ Անշուշտ, նեստորական եկեղեցու թուլացման հիմնական գործոններից էին նաև միջեկեղեցական խռովություններն ու երկպառակությունները, որոնք ջլատեցին ներքին ուժերը և ասորական գրականության ու արվեստի անկման պատճառ դարձան։

Նեստորական եկեղեցու թուլացման ու անկման գործում մեծ դեր խաղացին նաև եկեղեցու ներսում շարունակվող գահակալական վեճերը, և այդ հանգամանքից օգտվելով, պարսիկները իրենց ցանկացած եկեղեցականին բազմեցնում էին եպիսկոպոսական ու կաթողիկոսական աթոռներին։

Այդ ժամանակ Պարսկաստանում տարածված էր այն սովորույթը, որ նեստորական եկեղեցականներից ոմանք կաշառում են պարսիկ պաշտոնյաներին՝ եպիսկոպոսական աթոռին տիրանալու համար։ Մեզ հասած նեստորական եկեղեցու արձանագրություններում նման բազում դեպքեր են հիշատակված։

Քաջալերված պարսիկ պաշտոնյաների կամայականություններից, եպիսկոպոսներից ոմանք չեն ենթարկվում կաթողիկոսին և հիմնում են առանձին կաթողիկոսություններ։ Այսպես, զրկված համաեկեղեցական հարաբերություններից ու քաղաքական կյանքից, նեստորականները հետզհետե կորցնում են իրենց հեղինակությունը։

VI դարի առաջին կեսից, նրանց կաթողիկոսներից՝ Հովսեփը, որը կաթողիկոսական աթոռին էր բազմել 552 թ., փորձում է նոր շունչ տալ իր եկեղեցուն։ Նրա օրոք սկսում են հատուկ ուշադրություն դարձնել բնական գիտություններին, մանավանդ բժշկությանը։ Նա լինելով բժիշկ, մեծ նշանակություն էր տալիս եկեղեցականի ու եկեղեցու հեղինակության բարձրացմանը, գտնում էր, որ բնական գիտությունների, մանավանդ բժշկության տիրապետումը մեծ դեր ունեն այդ գործում։ Իրոք, այդ գիտությունների տիրապետումը հետագայում օգնում է, որ նեստորական գործիչները արաբական արքունիքներում, և հատկապես Բաղդադում, մեծ ազդեցություն ձեռք բերեն և, որպես բժիշկներ փայլեն բժշկագիտական իրենց արժեքավոր աշխատություններով։

Նեստորականները քիչ են զբաղվել պատմագրությամբ և Միայն Մշիխա Զեխայի շնորհիվ է, որ գրվել է «Ադիաբենի, եկեղեցու պատմությունը», որը մեծ արժեք է ներկայացնում։ Միայն Մշիխա Զեխայի շնորհիվ է, որ իմանում ենք Ադիաբենի, նրա եկեղեցական հայտնի գործիչների և այդ երկիրը կառավարող մի շարք մարզպանների մասին։ Կարևոր է նաև այն, որ այստեղ օգտագործված են հին աղբյուրներ, որոնք մեզ չեն հասել։

Նեստորականները հիմնականում զբաղվել են մեկնություններով, հոգևոր գրքերի ու բնական գիտությունների ուսումնասիրություններով։ Իսկ հետագա դարերից մեզ հասած մի քանի պատմական երկերը մեծ մասամբ վանքերի պատմություններ են, ինչպես Թովմա Մարգացու «Կառավարիչների գիրքը» և այլն։

Պատմական արժեքավոր երկեր ստեղծեցին միաբնակ ասորիները։ Հետագայում գրվեցին պատմական այնպիսի հուշարձաններ, որոնք համաշխարհային գրականության պատմության մեջ գրավեցին իրենց ուրույն տեղը։ Յոշվա Ստիլիտի, Զաքարիա Հռետորի, Հովհան Եփեսացու կողքին կարելի է հիշատակել նաև Հակոբ Եդեսացուն, Դիոնիսիոս Տելլ Մահրացուն, Միքայել Ասորուն, Բար Էբրայուսին և ուրիշներին։

VI դարի ասորի պատմիչներն առաջին իսկ քայլերից

որդեգրել են հույների, հռոմեացիների և ընդհանրապես արևելյան ժողովուրդների մեջ արմատավորված պատմական սովորույթները։ Նրանք չեն բավարարվել ներքին, տեղական նշանակություն ունեցող դեպքերի արձանագրությամբ, այլ պատմական երևույթներն ու փաստերը լուսաբանել են իրենց կապակցության մեջ, հատկապես Պարսկաստանի ու Բյուզանդիայի միջև տեղի ունեցած պատերազմների լույսի տակ, և դա հաջողվել է, որովհետև իրենց երկիրը միշտ էլ թատերաբեմ է եղել այդ երկու հզոր պետությունների պատերազմական գործողությունների համար. և այդ պատճառով էլ, նրանց քաղաքները կործանվել կամ ավերվել են և բնակչությունը սովի, տառապանքների է մատնվել։ Ասորի մատենագիրները ծանր պայմաններում էլ գրիչը ցած չեն դրել և զրկանքների գնով մագաղաթին են հանձնել իրար հաջորդող թշվառությունների նկարագրությունը, որպեսզի գալիք սերունդները իմանան, ճիշտ կողմնորոշվեն, և հեռանան «չար գործերից ու մեղքերից» և գտնեն «լույսի ճանապարհը»։

Այսօր արժանին հատուցելու գիտակցությամբ, հայ ընթերցողի սեղանին ենք դնում VI դարի ասորի պատմիչներից չորսի (Մշիխա Զեխա, Կեղծ Յոշվա Ստիլիտ, Զաքարիա Հռետոր և Հովհան Եփեսացի) գործերը, հավատալով, որ դրանց հետ ծանոթությունը կօգնի և ասորիների պատմության որոշ շրջանի հարցերի ուսումնասիրության և մեր պատմության որոշ երևույթների ու դեպքերի ճիշտ ընկալման ու լուսաբանման կարևոր գործին։

# ՄՇԻԽԱ ԶԵԽԱՆ[1] ԵՎ ՆՐԱ ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆԸ

## 1. ԿՅԱՆՔՆ ՈՒ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅՈՒՆԸ

*Մշիխա Զեխան, դժբախտաբար, իր մասին համարյա ոչ մի տեղեկություն չի տալիս. իսկ ասորական գրականության մեջ այնքան քիչ փաստեր են պահպանվել, որ դժվար է որոշակի խոսք ասել։ Միայն գիտենք, որ նա Մծբինի մոտակայքում Իղալայի կամ Այզալայի բարձունքում, IV դարի սկզբներին, Մար Ավգինի կողմից կառուցված վանքի միաբանության անդամներից էր։ Նույն վանքի վանահայր Մար Պապան (569—628 թթ.[2])՝ ասորական խոշոր մատենագիրներից մեկը[3], որ բազում աշխատություններ է գրել[4], ի թիվս այլ վանականների, աքսորել է նաև Մշիխա Զեխային։ Թեև աքսորման պատճառների մասին տեղեկություններ չկան, բայց պիտի կարծել, որ Պապայր նեստորականության հակառակորդ լինելով, նեստորականներին է վտարել վանքից, որոնց մեջ էր նաև Մշիխա Զեխան։ Իղալա վանքից հեռանալուց հետո, գալիս է Դասենի շրջակայքը[5] և*

---

[1] *Նշանակում է «Քրիստոս հաղթեց»։*

[2] *J. Assemani,* Bib. Orientalis, t. III, i, p. 216.

[3] *Նույն տեղում, էջ 88—89։*

[4] *Նրա արժեքավոր աշխատություններից է պարսից Խոսրով Բ արքայի թագավորության ժամանակ նահատակված պարսիկ, ծագումով՝ ազնվական Միհրան Գուշնասպի, որի քրիստոնեական անունը Գեորգ էր, նահատակության պատմությունը կամ վարքը, տե՛ս* *Bedjan,* Histoire de Mar Jabalaha, p. 416.

[5] *«Դասնագաւառ այժմյան Ամադիեի շրջանը՝ 1075 կմ տարածությամբ։ Դասնը ասուրա-բաբելական արձանագրություններում հիշվում է՝* Tas *ձևով, իբր լեռների անուն, որոնք սահման էին կազմում Ուրարտուի և Ասորեստանի միջև։ Ասոր.* Bēd Dāsen, *իբրև Արբելայի (Էպարքիայի) թեմերից մեկը։ Արաբ.* Dēsin:

*Դասն գավառը, որը մտնում էր Նոր-Շիրական բդեշխության կազմում, 363 թ. հետո անջատվում է Մեծ Հայքից և միացվում Սասանյան Պարսկաստանի Հեգա-*

մի նոր վանք հիմնականում, որը հայտնի է Բեյթ Ռաբբան Ջեկալեշու անունով[6]։

Թե ե՞րբ և որտեղ է ծնվել Մշիխա Ջեխան, աղբյուրներում տեղեկություն չկա, միակ ենթադրությունը, որ կարելի է անել նրա աշխատությունից, այն է, որ նա ծնվել է Ադիաբենի ինչ-որ շրջանում, հավանաբար, Բեյթ Դասենում։ Այդ էր պատճառը, որ Իղալայում ուսում ստացած երիտասարդ Մշիխա Ջեխան, վանքից հեռացվելուց հետո, գալիս է իր հայրենի երկիրը և հիմնում վերոհիշյալ վանքը։ Մշիխա Ջեխայի Ադիաբենից լինելը երևում է նաև նրանից, որ նա Ադիաբենի մասին գրում է հարազատի ջերմությամբ ու սրտացավությամբ։ Ադիաբենից Պինես անունով մեկը դիմում է Մշիխա Ջեխային, որ նա դրի Ադիաբենում նահատակված քրիստոնյա գործիչների կյանքի, նրանց վարքի մասին։ Պինեսը, հավանաբար, որպես հայրենակցի էր դիմում նրան և ցանկանում, որ նման մի աշխատությամբ ցույց տրվի, թե ինչպես Ադիաբենի եպիսկոպոսական աթոռն ու քրիստոնյա հավատացյալները ևս իրենց արժանի տեղն ունեն եկեղեցու պատմության մեջ[7]։ Մշիխա Ջեխան սիրով է հանձն առնում այդ դժվար պարտականությունը և աշխատում հայրենասիրական ջերմ ոգով գովերգել հայրենի երկրում նահատակված քարոզիչների մեծագործությունները։ Պետք է ասել, որ այն հաջողվել է հեղինակին։

Ասորագետներից ոմանք Մշիխա Ջեխային[8] նույնացրել են Իշո Ջեխայի և Ջեխա Իշոյի 'հետ, սակայն Մշիխա Ջեխայի ասորերեն բնագրի հրատարակիչ Մինգանան իր գրքի առաջաբանում կանգ առնելով այդ հարցի վրա, ցույց է տվել, որ դրանք նույն անձնավորությունները լինել չեն կարող, որովհետև ապրել են տարբեր ժամանակաշրջաններում, և որ Իշո Ջեխան ապրել է ոչ թե VI, այլ VII դարում[9]։

---

յար (Ադիաբենե) նահանգին»։ Տե՛ս Ս. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, Երևան, 1963, էջ 48

6 J. Assemani, Bib. Orientalis, t. III, I, p. 216.

7 Շատ տեղերում, երբ դիմում է Պինեսին, Ադիաբենի համար օգտագործում է. «մեր երկիրը» արտահայտությունը։

8 Ասորերեն կոկորդային «հ» հայերեն թարգմանության մեջ դարձրել ենք «խ», թեև այն հայերեն «խ» ին հավասար չէ։ Կատարել ենք, նկատի ունենալով, որ ասորիները ունեն նաև «հ»։

9 A. Mingana, Sources Syriaques, p. VIII.

Մշիխա Զեխան որոշակի տեղեկություն չի տալիս այն մասին, թե ե՞րբ է գրել իր գիրքը, սակայն որոշ փաստերից այն հնարավոր է կռահել։ Հայտնի է, որ Մշիխա Զեխան Ադիաբենի եկեղեցու պատմությունը հասցնում է մինչև մար Խնանայի եպիսկոպոսական պաշտոնավարությունը Արբելայի աթոռին։ Գիտենք նաև, որ մար Խնանան Արբելայի աթոռին է բազմել մ. թ. 511 թ. և պաշտոնավարել մինչև այն օրերը, երբ նեստորականների կաթողիկոսական աթոռին է նստել մար Աբա Ա կաթողիկոսը (540—552)։ Մշիխա Զեխան Ադիաբենի եպիսկոպոսներից վերջինի՝ մար Խնանայի հատվածում հիշատակում է իր գործունեության ծաղկման շրջանը ապրող Բեյթ Ռաբբանցի Աբրահամին։ Նրա մասին գրված գովասանական տողերն ու ակնածանքի արտահայտությունները թույլ են տալիս ենթադրելու, որ Մշիխա Զեխան աշակերտել է վերջինիս, որովհետև նրա բառերում զգացվում է աշակերտական հարգանք դեպի իր ուսուցիչը։ Հայտնի է, որ Աբրահամը մինչև 569 թ. ղեկավարել է Մծբինի նշանավոր դպրոցը[10], որն այն ժամանակ նեստորականների ձեռքում էր։ Ուրեմն պետք է կարծել, որ Մշիխա Զեխան իր գիրքը գրել է մինչև 569 թ.։ Այս ենթադրությունն ավելի է հաստատ դառնում, երբ նկատի ենք ունենում նրա մի այլ վկայությունը Մծբինի եպիսկոպոս Պողոսի մասին։ Մշիխա Զեխան գրում է, որ «նա ձեռնադրվելու է այն ժամանակ երբ մար Աբա կաթողիկոսը վերադառնա Խուզիստանից» և գիտենք, որ մար Աբան Խուզիստանից վերադարձել է 550 թվականին[11], ուստի հնարավոր է եզրակացնել, որ Մշիխա Զեխայի այս աշխատությունը գրվել է 550—569 թթ. միջև ընկած տարիներում։ Ամենակարևոր փաստը, անշուշտ, կարելի է համարել այն, որ նա Խնանա եպիսկոպոսի մասին գրում է որպես իր ժամանակակցի։

## 2. ՄՇԻԽԱ ԶԵԽԱՅԻ ԱԴԻԱԲԵՆԻ ԵԿԵՂԵՑՈՒ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ

Ասորի մատենագիրները մինչև VI դարը հիմնականում գրում էին վարքեր, կրոնական ճառեր և հոգևոր երգեր, իսկ պատմագրությունը համարյա անտեսվել էր, ավելի ճիշտ իրենց համար

[10] *Barhadbšabba*, Narsai doctoris syri Homiliae et Carmina, I, Mossoul, 1905, p. 8 et 35.

[11] *J. Labourt*, Le Christianisme dans L'Empire Perse, Paris, 1904, p. 191.

հիմնական զործ էին դարձրել եկեղեցական ու կրոնական քարոզչական աշխատանքները, որովհետև ներքին եկեղեցական երկպառակությունների ու կրոնական դավանաբանական վեճերը այնպիսի սուր բնույթ էին ստացել, որ իրենց հորձանքի մեջ էին վերցրել ասորի եկեղեցական գործիչներին ու հայրերին։

VI դարի սկզբներից պարսկա-բյուզանդական պատերազմները շատ ծանր վիճակի մեջ են գնում ասորի ժողովրդին, որովհետև պատերազմական գործողությունները հիմնականում կատարվում էին այն քաղաքներում ու վայրերում, որոնց բնակիչները մեծ մասամբ ասորիներ էին։ Այս պատերազմների պատճառով երկու կողմից էլ ամենից շատ տուժում էին ասորիները, որոնք անմիջական հարձակումների, պաշարումների, դաժանությունների, սովի ու համաճարակների զոհ են դառնում։ Ժողովրդի ճակատագրական այս երկարատև ծանր վիճակը, աղքատությունը, հալածանքները, չարչարանքները ասորական պատմագրության առատ նյութ են մատակարարում և ասորի պատմիչները դրանց ազդեցության տակ գրիչ են վերցնում և գրում այդ «դժվարին» օրերի մասին։

Դեռ շատ վաղուց սկսված վեճերը նորից թարմացել ու աշխուժացել էին եկեղեցիների ու նույնիսկ ամեն մի եկեղեցական թեմի միջև, որովհետև ամեն մեկը իր հեղինակությունը բարձրացնելու ու մյուսի նկատմամբ իր առավելությունը ցույց տալու համար, փորձում էր ապացույցներ գտնել իր առաքելականությունը, առաջնային լինելը հաստատելու։ Այսպիսի վեճերի կապակցությամբ Ադիաբենի եպիսկոպոսներից՝ Պինեսը դիմում է Մշիխա Զեխային, որպեսզի վերջինս, հին աղբյուրներից ու եղած փաստերից օգտվելով գրի պատմական մի աշխատություն, ապացուցելու համար, որ Ադիաբենի եկեղեցին ոչ միայն առաքելական է, այլ նաև առաջիններից մեկը։ Ահա այս ոգով գրված «Ադիաբենի եկեղեցական պատմությունը» հասել է իր նպատակին։ Անշուշտ այդ երկի արժեքը ոչ թե կրոնական դատողություններն ու մտածողություններն են, այլ պատմական բազում հին փաստերն են, որոնք հեղինակը օգտագործել է վաղ շրջանի աղբյուրներից։ Աղբյուրներ, որոնք մեզ չեն հասել և նրանց մասին իմանում ենք նրա օգտագործած այդ փաստերից ու հատվածներից։

Իսկ ինչ վերաբերում է Մշիխա Զեխայի այդ աղբյուրներին, ապա պետք է ասել, որ նա իր այս երկը շարադրելիս ծանոթ էր

իր ժամանակի ինչպես ասորական, այնպես էլ հունական մատենագրության հայտնի գործերին, և օգտվել է ոչ միայն անհրաժեշտ աղբյուրներից, այլև դրանց նկատմամբ ցուցաբերել ինքնուրույն՝ մոտեցում։ Գրավոր աղբյուրներից բացի, ինչպես ինքն է վկայում, օգտվել է նաև ականատեսների պատմածներից[12]։ Ագիաբենի եկեղեցու պատմության վաղ շրջանը գրելու համար, ինչպես գիտենք, Մշիխա Զեխայի ձեռքի տակ է եղել Հաբել վարդապետի աշխատությունը[13]։

Հաբել վարդապետը, ինչպես կարելի է բովանդակությունից եզրակացնել, իր այս գիրքը շարադրել է այնպիսի մի ժամանակաշրջանում, երբ քրիստոնեությունը նոր էր մուտք գործել Ագիաբեն և երկրում քրիստոնյաների թիվը դեռևս քիչ էր և եկեղեցին ամուր հիմքեր չուներ։ Այս տեսակետից էլ նշված աղբյուրն առանձին կարևորություն է ներկայացնում։

Հետաքրքրական են նրա Ագիաբենում կազմավորվող առաջին քրիստոնեական համայնքի ստեղծման և այդ երկրում քրիստոնեական եկեղեցու հիմնադրման հետ կապված վկայությունները, որոնք տարբերվում են ասորական այլ աղբյուրների հաղորդած փաստերից, և իրենց խորքում ավելի հին են ու համոզիչ։ Ըստ Հաբելի, Աղիաբենի առաջին եպիսկոպոսը Պկիդան է։ Պկիդան, գրում է նա, մի աղքատ մարդու զավակ էր, իսկ նրա հայրը ծառայության էր մտել ինչ-որ մոգի մոտ։ Եվ ահա որդին՝ Պկիդան հայրենիքից հեռանալով գնում է Եդեսիա և ընկնելով քրիստոնյաների շրջապատ, ծանոթանում Ադդայի հետ։ Հինգ տարի նրան աշակերտելուց հետո, նրա թելադրանքով վերադառնում է հայրենիք և հիմնում Ագիաբենի կամ Արբելայի եպիսկոպոսական աթոռը։ Տասը տարի պաշտոնավարելուց հետո Պկիդան վախճանվում է. նրան հաջորդում է նրա սարկավագ՝ Շամշունը։ Մշիխա Զեխան օգտվելով Հաբելի գրքից, արժեքավոր տեղեկություններ է հաղորդում ու մանրամասն նկարագրում այն ժամանակ Ագիաբենում տարածված հեթանոսական «Շահրաբդաումուդ» տոնակատարությունը։ Ն. Վ. Պիգուլևսկայան այս աղբյուրի մասին խոսելիս ուշադրություն է դարձրել, որ Հաբել վարդապետն իր գրքում պարթևներին անվանում է նաև Արշակունիներ, ուստի այդ հանգամանքը նրան մտածել է տվել, որ

[12] Մշիխա Զեխա, Աղիաբենի եկեղեցու պատմություն։
[13] Նույն տեղում։

այդ աղբյուրը պետք է հայկական լինի[14]։ Դժբախտաբար ո՛չ հայկական, ո՛չ ասորական աղբյուրներում այդ իրադարձությունների և անձնավորությունների վերաբերյալ տեղեկություններ չկան, որպեսզի հնարավոր լինի հավաստի խոսք ասել։ Համենայն դեպս, երբ ուսումնասիրում ենք Հաբելի այն հատվածները, որոնցից օգտվել է Մշիխա Զեխան, տեսնում ենք, որ այդ հատվածներում առանձին տեղ են գրավում այն տեղեկությունները, որոնք վերաբերում են պարթևների թագավորության վերջին տարիներին և նրանց փոխարեն իշխանության գլուխ անցած Սասանյանների իշխանության առաջին տարիներին։ Այս տեղեկությունները ոչ միայն ճշգրիտ փաստեր են, այլև ականատեսի հուշերի տպավորություն են թողնում։ Զգացվում է, որ Հաբելը ապրել է այդ ժամանակաշրջանում և այդ դեպքերը նկարագրել կենդանի շնչով։

Հաբելի գրքի ամենակարևոր արժանիքներից է նաև այն, որ նա գրի է առել իր ժամանակ Ադիաբենում գոյություն ունեցող հեթանոսական հավատալիքները, բարքերն ու սովորույթները։

Մշիխա Զեխան Հաբելի երկից բացի հիշատակում է Եվսեբիոս Կեսարացու անունը, որի Եկեղեցական պատմությունը ևս որպես աղբյուր է ծառայել իրեն։ Եվսեբիոսի աշխատությունը ոչ միայն մեծ ազդեցություն է ունեցել վաղ շրջանի քրիստոնեական պատմագրության վրա, այլև քրիստոնյա պատմիչներն այդ գրքի հետևողությամբ շարադրել են իրենց աշխատությունները։ Մշիխա Զեխան ոչ միայն նշում է Եվսեբիոսի անունը, այլև հայտնում, որ ինքն օգտվել է նրա «Եկեղեցական պատմությունից»։

Մշիխա Զեխայի համար հիմնական աղբյուրներ են եղել նաև բազում վարքագրական երկերը։ Ասորական մատենագրության մեջ, օրինակ, պահպանվել է մի աշխատություն, որը հայտնի է «Վարք Ադիաբենի մարտիրոսաց» անունով[15]։ Այդ գրքի ասորերեն բնագիրն առաջին անգամ ասորերեն ձեռագրերից հրատարակել է ասորագետ Բեջանը։ Այստեղ ի մի են հավաքված մասնավորապես IV դարի առաջին կեսին, պարսից արքա Շապուհ Բ-ի հարուցած հալածանքների ժամանակ Ադիաբենում նահատակված քրիստոնյա հավատացյալների, գործիչների վարքերը։ Այս աշխատությունը բնագրերի համեմատությունից երևում է,

---

[14] *Н. Пигулевская*, Города Ирана в раннем средневековье, М.—Л., 1956, стр. 141.

[15] *Bedjan*, Acta mart. et sanct., t. IV, pp. 128—137.

որ եղել է Մշիխա Զեխայի կարևոր աղբյուրներից։ Այդ համեմատություններից պարզվեց, որ Մշիխա Զեխան Ադիաբենի եկեղեցական գործիչների, հատկապես Հովհան եպիսկոպոսի, Հակոբ քահանայի, Աբրահամի և այլ անձնավորությունների մասին գրելիս, իր տեղեկությունները մեծ մասամբ վերցրել է վերոհիշյալ, «Վարք Ադիաբենի մարտիրոսաց» գրքից։

Մշիխա Զեխան իր գրքում հիացական էջեր է նվիրել IV դարի ասորական եկեղեցական խոշոր գործիչներից՝ Հակոբ Մծբնացուն, որը պատմությանը հայտնի է նաև Հայաստանում իր ունեցած գործունեությամբ։ Հակոբ Մծբնացու մասին տեղեկություններ են պահպանվել IV դարից մեզ հասած Մար Ավգինի, ինչպես և Թեոդորետոսի գրած Հակոբ Մծբնացու վարքերում[16]։ Մշիխա Զեխան օգտվել է այս վարքերից և անդրադարձել 338 թ. Մծբինի վրա Շապուհ Բ-ի կատարած արշավանքի ժամանակ Հակոբ Մծբնացու հերոսական գործունեությանը, ցույց տվել թե ինչպես այս եպիսկոպոսը անձամբ մասնակցում էր քաղաքի ինքնապաշտպանությանը և անձնական օրինակով ու ոգեշունչ քարոզներով, բարձրացնում մարտիկների ռազմական ոգին[17]։ Այս տեղեկությունները Մշիխա Զեխան քաղել է վերոհիշյալ վարքերից։

Նա օգտվել է նաև Շապուհ Բ-ի ժամանակ 341 թ. քրիստոնյաների դեմ հարուցված հալածանքների ժամանակ նահատակված ադիաբենցի Այդիլահի վարքից[18]։ Այս պարսիկ մոգը, որ անձամբ ղեկավարում էր հալածանքները, հիացած քրիստոնյա նահատակների՝ մահվան նկատմամբ ցուցաբերած քաջությունից ու հավատքի նկատմամբ ունեցած սկզբունքայնությունից, ինքը ևս մկրտվում է, ընդունում քրիստոնեություն և դատապարտվում մահվան։ Ասորական գրականության փայլուն էջերից է նույնպես Տիգրոնի եպիսկոպոս մար Շամղունի վարքը, որն իր բանաստեղծական խոր ներշնչանքով ու վառ պատկերներով գրավել է մատենագիրների, նույնիսկ հայ պատմիչների ուշադրությունը[19]։ Այս երկը ևս օգտագործել է Մշիխա Զեխան, իր Ադիաբենի եկեղեցական պատմության մեջ[20]։

---

16 Նույն տեղում, հատ. III, էջ 262։

17 Մշիխա Զեխա, Ադիաբենի եկեղեցու պատմություն։

18 *Bedjan*, Acta mart. et sanct., t. II, p. 351.

19 Տե՛ս Հ. Մելքոնյան. Հայ-ասորական հարաբերությունների պատմությունից, էջ 134։

20 *E. Rahmani*, S. Confess. Guriae et Shamonae, Rome. 1889.

Մշիխա Զեխան չի գոհացել միայն վարքերով, նրա ձեռքի տակ եղել են նաև, այժմ մեզ ծանոթ, նեստորական եկեղեցու ժողովներում ընդունված կանոններն ու որոշումները։ Հայտնի չէ այն ժամանակ հավաքածու եղել է, թե ոչ, բայց բնական է, որ եպիսկոպոսությունները իրենց գործունեության ընթացքում իրենց պաշտոնավարությունների ժամանակ ղեկավարվել են այս եկեղեցական կանոններով ու որոշումներով։ Այդ կանոններն ու որոշումները մեզ հասել են որպես մի հավաքածու և հրատարկվել[21]։

Պատմիչը թեև աղբյուր չի հիշատակում, բայց պարսից արքա Կավատի Մծբինի վրա կատարած արշավանքը նկարագրելիս, օգտվել է Յոշվա Ստիլիտի պատմական աշխատությունից[22]։ Նա համառոտ ձևով տալիս է այդ արշավանքի նկարագրությունը։

Անշուշտ, կլինեն նաև այնպիսի աղբյուրներ, որոնք մեզ անծանոթ են։ Բայց կարևոր է նշել այն, որ նա կարողացել է բազմապիսի ավանդություններից, զրույցներից ու գրավոր այլ փաստաթղթերից կազմել Ադիաբենի Եկեղեցական պատմությունը։ Չնայած ժամանակագրական որոշ սխալներին, հիմնականում նա ճիշտ է շարադրել պատմությունը։ Այսպես, 1318 թ. մահացած նեստորական հայտնի գործիչներից Ղաբղ-Իշոն, որը թողել է մեզ նեստորական մատենագիրների գրքերի վերնագրերը, իր այս երկում գովասանքով է խոսում Մշիխա Զեխայի Ադիաբենի եկեղեցական պատմության մասին[23]։ Վերջերս եվրոպացի պատմաբաններից՝ Արտուր Վոոբուսը փորձեց կասկածի տակ առնել Մշիխա Զեխայի ճշմարտապատում լինելու հանգամանքը[24], սակայն գա համոզիչ չէ, որովհետև այսօր Մշիխայի վկայություններից շատերը հաստատվում են այլ աղբյուրների տվյալներով։ Այդպիսի ճշգրիտ փաստերից է օրինակ, պարթևների անկման և Սասանյանների տիրապետության սկզբի մասին հաղորդած նրա պատմական տվյալները։

Այսպես, Մշիխա Զեխան օգտվելով բազում աղբյուրներից, տվել է Ադիաբենում կազմավորված եկեղեցու պատմության սկզբնավորումից մինչև իր ժամանակի կարևոր դեպքերի նկարա-

---

[21] *J. B. Chabot*, Synodicon Orientale, Paris. 1902, p. 64.

[22] Մշիխա Զեխա, *Ադիաբենի եկեղեցու պատմություն։*

[23] *J. Assemani*, Bib. Orientalis, t. III, I, p. 216.

[24] *A. Voobus*, History of the Asceticism in the Syrian Orient, Louvain, 1958, p. 5.

գրությունը։ Նա այս գրքում կարողացել է տարբեր աղբյուրներից հավաքել Ադիաբենի եկեղեցու եպիսկոպոսական աթոռին բազմած քսան եպիսկոպոսների կամ առաջնորդների կյանքի ու գործունեության հետ կապված տվյալները և դրանք միահյուսելով կազմել մի աշխատություն, որն իր ոճով, կուռ կառուցվածքով և գեղարվեստական բարձր ճաշակով, ուշադրություն է գրավում։ Նա այն մատենագիրներից է, որը խուսափել է ավելորդաբանություններից ու կրոնական մոլեռանդ կրքերից։ Նույնիսկ նեստորական եկեղեցու խոշորագույն հակառակորդներից Կյուրեղ Ալեքսանդրացու մասին գրելիս, նա զուսպ է իր արտահայտությունների մեջ։ Անշուշտ այդ չի նշանակում, որ նա իր նեստորական հավատալիքների նկատմամբ տատանողական դիրք էր ունեցել, ո՛չ, նա հավատացած էր, որ ամենաճիշտ դավանանքը նեստորականությունն է և ձգտում էր, որ բոլորը հետևեն այդ դավանանքին, բայց համոզումով և ոչ թե բռնի ուժով։

Մշիխա Զեխայի այս աշխատության հիմնական արժեքն, անշուշտ, նրանում է, որ նա Ադիաբենի եկեղեցու և նրա եպիսկոպոսների կյանքն ու գործունեությունը ներկայացրել է իրականությունից չկտրված, այդ բոլորը նա վերլուծել է ոչ միայն Ադիաբենում, այլև հարևան երկրներում, մասնավորապես Պարսկաստանում, տեղի ունեցող քաղաքական իրադարձությունների լույսի տակ։ Այս տեսակետից էլ այն կարևոր հետաքրքրություն է ներկայացնում ոչ միայն քրիստոնեական եկեղեցու ծագման ու զարգացման հարցերով զբաղվողների, այլև Արևելքի երկրների քաղաքական, տնտեսական ու մշակութային պատմությունը ուսումնասիրողների համար։

## 3. ՄՇԻԽԱ ԶԵԽԱՅԻ ԱԴԻԱԲԵՆԻ ԵԿԵՂԵՑՈՒ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԱՍՈՐԵՐԵՆ ԲՆԱԳԻՐԸ

Մշիխա Զեխայի Ադիաբենի եկեղեցու պատմության ասորերեն բնագրի առաջին հրատարակիչ Մինգանան հետևյալ ձևով է նկարագրում իր գրքի առաջաբանում այս բնագրի հրատարակման հետ կապված որոշ փաստեր։ Նա գրում է, որ Զախոյից 16 փարսախ հյուսիս-արևելք և Աշիտայից 20 փարսախ հյուսիս-արևմուտք այժմ գտնվում է մահմեդական մի մեծ գյուղ, որը կոչվում է Էկրուր։ Ժամանակին այս գյուղում բնակվում էին քրիստոնյաներ, որոնք 150 տարի է արդեն, ստիպված հեռացել

են այս վայրից։ Անցյալում այս գյուղն իր ծաղկման շրջանն է ունեցել և եղել է նեստորական եկեղեցու եպիսկոպոսական թեմ, որի առաջնորդը բազմել է Էկրուրում։ Հետաքրքրական է, որ այս թեմի քրիստոնյա բնակիչները միշտ էլ առանձին նախանձախնդրություն են ցուցաբերել դեպի իրենց նախորդների թողած գրավոր ժառանգությունը, և ամեն կերպ աշխատել են փրկել իրենց հասած գրավոր մասունքները։ Այս թեմին էր պատկանում այն ձեռագիրը, որը պարունակում էր Մշիխա Զեխայի աշխատությունը, և այն փրկվել է երջանիկ պատահականությամբ, երբ քրիստոնյաները զայրացած ավազակային հարձակումներից, հեռացել են և իրենց հետ տարել այս ձեռագիրը[25]։

Ասորական էստրանգելո[26] տառատեսակով թղթի վրա (8") գրված այս ձեռագրի ժամանակը որոշելու համար, հրատարակիչը արտաքին տվյալներից եզրակացնում է, որ այն պետք է X դարում արտագրված լինի[27]։ Ձեռագիրը ինչպես հրատարակիչն է գրում, և ինչպես մենք տեսնում ենք, սկզբից և վերջից թերի է։ Ձեռագրի 49-րդ էջի լուսանցքում պահպանված տեղեկության շնորհիվ հնարավոր է եղել վերականգնել հեղինակի անունը։ Լուսանցքում դրված է. «Այս եկեղեցական պատմությունը գրել է Մշիխա Զեխան»։ Այս ծանոթությունը հնարավորություն է տվել ասորերեն բնագրի հրատարակչին, վերականգնելու հեղինակի անունը։

## 4. ՄՇԻԽԱ ԶԵԽԱՅԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ[28] ԵՎ ԱԴԻԱԲԵՆՈՒՄ ՔՐԻՍՏՈՆԵՈՒԹՅԱՆ ՏԱՐԱԾՄԱՆ ՀԱՐՑԸ

Ինչպես Ադիաբեն[29], այնպես էլ Ասորիք, Միջագետք, Հայաստան ու Պարսկաստան թափանցած քրիստոնեական վարդապետության, այդ երկրներում քրիստոնեական առաջին համայնքների

---

[25] *A. Mingana*, Histoire de l'église d'Adiabène, Mossoul 1907, pp. X—XI.

[26] Էստրանգելոն ասորական վաղագույն տառատեսակն է և վաղագույն ձեռագրերը այս տառատեսակով են գրված։

[27] *A. Mingana*, Histoire de l'église d'Adiabène, pp. X—XI. Ձեռագրի հետ կապված մանրամասնություններին կարելի է ծանոթանալ այսնույն գրքի առաջաբանից։

[28] *A. Mingana*, Histoire de l'église d'Adiabène.

[29] Ամմիանոս Մարկելինոսն իր գրքում ասում է, որ այս երկիրը «Ադիաբեն» է կոչվել իր երկու գետերից Ադիաբասի անունով, տե՛ս *A mmien Marcellin*,

ստեղծման ու առաջին քրիստոնյա քարոզիչների գործունեության պատմությունը մեր հասել է համեմատաբար ավելի ուշ շրջանի աղբյուրների շնորհիվ։ Դրանք փոփոխվել և երբեմն էլ հարմարացվել են ժամանակի պահանջներին, սակայն, այս հանգամանքը չի խանգարի, որ այդ ժամանակաշրջանի պատմությամբ զբաղվողները աշխատեն հնարավորին չափ ճիշտ լուսաբանել պատմական փաստերը։ Ճիշտ է, մեզ հասած այդ աղբյուրները վարքեր են, որոնք իրենց հրաշապատում զրույցների անվերջ շարանով միօրինակության տպավորություն են թողնում, բայց և այնպես մեզ տալիս են պատմական կարևոր մանրամասնություններ և նկարագրություններ։

Նման աշխատությունների կարգին կարելի է դասել VI դարի ասորի պատմիչներից՝ Մշիխա Զեխայի «Ադիաբենի եկեղեցու պատմություն» գիրքը, որը թեև իր էությամբ պատմական երկ է, բայց հիմնականում շարադրվել է հեղինակին ծանոթ վարքերի հետևողությամբ։ Անշուշտ, Մշիխա Զեխան այս վարքերից բացի, ինչպես աղբյուրների բաժնում նշվեց, ձեռքի տակ ունեցել է նաև պատմական այլ աղբյուրներ։

Մշիխա Զեխայի գիրքը այն աշխատություններից է, որ մեզ տեղեկություններ է տալիս Ադիաբենում կազմավորված առաջին քրիստոնեական համայնքի և այնտեղ տեղի ունեցած պատմական որոշ իրադարձությունների մասին։

Քրիստոնեական վարդապետության Ադիաբեն թափանցելու մասին առաջին տեղեկությունը գտնում ենք ասորական մատենագրության հայտնի՝ «Ադդայի վարդապետություն» կոչված աշխատության մեջ[30]։ Այդ աղբյուրի համաձայն, Ադիաբենի Նարսե թագավորը երբ իմանում է, որ Ադդա առաքյալը Եդեսիա է եկել և այնտեղ բազում հրաշքներ է գործում ու քրիստոնեություն տարածում, Եդեսիայի Աբգար թագավորին նամակ է գրում ու խնդրում, որ կամ Ադդային իր երկիրն ուղարկի, որպեսզի ինքն էլ տեսնի ու լսի նրան և կամ նամակով տեղեկացնի նրա գործունեության մասին։ Ըստ այս աղբյուրի Աբգար թագավորը Նարսեին պատասխանում է, և հայտնում անհրաժեշտ տեղեկությունները։ Նարսեյը երբ կարդում է ստացված նամակը, հիանում

Ou les dixhuit livres de son histoires, qui sons nous restes, t. II, Berlin, 1775, liv. XXIII, chpt. VI, p. 285.

[30] *W. Cureton*, Ancient Syriac Documents, Amsterdam, p. 6.

ու զարմանում է[31]։ Ըստ ասորական այս բնագրի, Ադդան մահանում է Եդեսիայում, մինչդեռ նույն այս բնագրի հայերեն վաղ թարգմանության մեջ Ադդան իրեն հաջորդ է նշանակում Ագգային[32], և ինքը կամենում է «գնալ ի կողմանս արևելից և յերկիրն Ասորեստանի քարոզել և ուսուցանել և այդ զնոր Վարդապետութիւնն Քրիստոսի և շինել եկեղեցիս յամենայն գաւառս և ի գեօղս ի կողմանս արևելից»[33] և մեկնում է։

Հետաքրքրական է, որ «Վարդապետութիւն առաքելոց» վաղ շրջանի ասորական մի այլ փաստաթղթում պահպանվել է մի ավանդություն, որի համաձայն ամբողջ Պարսկաստանը, ասորեստանցիները, հայերը, մեղացիները և Բաբելոնի շուրջ գտնվող երկրներն ու արևելյան մյուս ժողովուրդները քրիստոնեություն են ընդունել Ադդայի աշակերտ՝ Ագգայի միջոցով[34]։

Մովսես Խորենացու վկայությամբ Ադիաբենում և ընդհանրապես Պարսկաստանում քարոզելու է գալիս Ադդայի աշակերտներից՝ Սիմոնը։ Նա Նարսե թագավորին գրած նամակում այսպես է արտահայտվում. «Բայց յընկերաց նորա գլխաւորաց, Սիմովն անուն, այղր ի կողմանս Պարսից առաքեալ է. խնդիր արարեալ լուիցես նմա, յորժամ և հայրն քո Արտաշէս»[35]։

Ինչպես տեսնում ենք, այս վկայությունները տարբեր ավանդությունների հետ են կապված, և անկասկած իրենց մեջ խտացրել են նույն երկրի տարբեր շրջաններում գործած քարոզիչների անուններն ու գործերը։ Ինչպես նախօրոք նշեցինք Մշիխա Զեխան Ագիաբենի եկեղեցու հիմնադրումը վերագրում է Ադդայի աշակերտներից՝ Պկիդային, որն Եդեսիայում Ադդայից ձեռնադրվելուց հետո գալիս է իր հայրենիքը։ Այդ նշանակում է որ հիմնադրումը տեղի է ունեցել արդեն Ադիաբենցի Պկիդայի կողմից, մի հանգամանք, որ վկայում է, թե այդ ավանդությունը ավելի ուշ շրջանում է կազմված, այսինքն այն ժամանակ, երբ արևելքում քրիստոնեական եկեղեցիներից յուրաքանչյուրն իր ինքնուրույն վիճակը պահպանելու համար, հարմարվում էր

---

[31] Նույն տեղում, էջ 16։

[32] Ղեւոնդեա Եդեսացի, Թուղթ Աբգարու թագաւորի Հայոց եւ քարոզութիւնք սրբոյն Թադէի առաքելոյ, Յերուսաղէմ, 1868, էջ 42։

[33] Ղեւոնդեա Եդեսացի, էջ 42։ Վաղ շրջանի ինչպես ասորական, այնպես էլ հայկական աղբյուրներում Ադիաբենը անվանված է «Ասորեստան»։

[34] W. Cureton, Ancient Syriac Documents, p. 34.

[35] «Մովսիսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց», գիրք Բ, գլ. ԼԳ, էջ 156։

*տեղական կարգերին ու սովորույթներին։ Մինչդեռ Ադդայի զրույցը ավելի վաղ է կազմավորվել և առաջացել է այն ժամանակ, երբ Եդեսիայի եկեղեցին ուժեղ էր և շրջակա երկրների քրիստոնեական համայնքները գտնվում էին նրա ազդեցության ներքո։ IV դարից իրադրությունը փոխվում է և Պարսկական տիրապետության մայրաքաղաքում կազմավորված եպիսկոպոսական աթոռը, հետզհետե իր դիրքերը ամրացնելով, ձգտում էր կաթողիկոսական իրավունքներ ձեռք բերել։ Այս ժամանակաշրջանում մի նոր ավանդություն կամ զրույց է երևան գալիս, որը հայտնի է «Մար Մարիի վարք» անունով։ Այս վարքում վեր է հանված Տիղբոնի աթոռի[36] դերը և ըստ այս վարքի Տիզբոնի քարոզիչ մար Մարին է, որ գնում է հարևան երկրները և հիմնում առաջին քրիստոնեական համայնքները[37]։*

*Տիղբոնի նեստորական կաթողիկոսությունը տարբեր միջոցներով, հատկապես պարսիկների օգնությամբ, աշխատում է հարևան եկեղեցիները վերցնել իր գերիշխանության ներքո։ Նման փորձեր է կատարում նաև Հայաստանում, սակայն Մեսրոպ Մաշտոցի, Սահակ կաթողիկոսի ծավալած մշակութային լայն գործունեությունը, և մանավանդ, Պարսկաստանի դեմ իրար հաջորդող ազգային-ազատագրական շարժումները օգնեցին հայ եկեղեցուն ինքնուրույն մնալու գործում։ Մինչդեռ շատ վաղուց, քաղաքական անկախությունից զրկված ադիաբենցիները, նման հնարավորություն չունեին և ընկան նեստորական կաթողիկոսության ազդեցության տակ։*

*Թե ե՞րբ է առաջին անգամ Ադիաբենում կազմավորվել քրիստոնեական համայնք, որոշակի ասել դժվար է, սակայն ինչպես մեր մի այլ աշխատության մեջ նշել ենք[38], արևելյան այս երկրներում պետք է, որ նման քրիստոնեական համայնքներ կազմավորված լինեն II դարից, ուստի պիտի ենթադրել, որ այստեղ էլ վիճակը նույնը եղած կլինի, մանավանդ, աղբյուրներից կարելի է եզրակացնել, որ Եդեսիայից հետո քրիստոնյա քարոզիչները թափանցում են Ադիաբեն։ Մշիխա Զեխայի հիշա-*

---

[36] *Տիղբոնի կաթողիկոսական աթոռը գտնվում էր մայրաքաղաքից ոչ հեռու Կոկեի վանքում։*

[37] *Bedjan,* Acta martyrum et sanctorum, t. I, Parisits, 1890, p. 59.

[38] Հ. Մելքոնյան, *Հայ-ասորական հարաբերությունների պատմությունից (III—V դդ.), Երևան, 1970, էջ 164։*

տակած Ագիաբենի առաջին եպիսկոպոս Պկիդան եթե Ադդային է աշակերտել, ապա նա կարող է II դարի գործիչ լինել[39]։

Ինչպես ասացինք, Ադիաբենն Արևելքի այն երկրներից է, որտեղ քրիստոնյա քարոզիչներն առաջին անգամ պարարտ հող գտան և կարողացան լայն գործունեություն ծավալել։ Նրանց հաջողության հիմնական պատճառներից մեկն այն էր, որ գարեր շարունակ Ադիաբենում ապրում էին, ինչպես Հովսեպոս Փլավիոսն է վկայում[40], բազում հրեաներ։ Նրանք երկրի տնտեսական կյանքում կարևոր դեր էին կատարում և իրենց ազդեցությունը տարածում նույնիսկ արքունիքի վրա։ Հրեաներից, ասորիներից, պարսիկներից բացի Ադիաբենում էին ապրում շատ հայեր ու հույներ[41]։ Եվ դա արդյունք էր նրան, որ Արբելան՝ Ագիաբենի մայրաքաղաքը, ընկել էր Արևելքի և Արևմուտքի միջև կատարվող միջազգային առևտրի կարևոր ճանապարհներից մեկի վրա, և դա առաջացրել էր տարբեր ժողովուրդների ներկայացուցիչների միջև շփման հնարավորություն։ Նման շփման մի այլ կարևոր միջոց էր նաև պատերազմական ու քաղաքական նպատակների համար, նույն առևտրական ճանապարհներով օտար բանակների տեղափոխությունն ու առկայությունը։ Պարսկաստանը և Հռոմը տնտեսական մեծ եկամուտներ կորզելու նպատակով ամեն կերպ ձգտում էին իրենց տիրապետությունը տարածել այս միջազգային առևտրական ճանապարհներին և նրանց միջև ընկած երկրներին ու քաղաքներին։ Այս տեսակետից Հայաստանի հարավում գոյություն ունեցող երկրներից, առավել աչքի ընկնող դեր էին կատարում Եգեսիայի ու Արբելայի թագավորական իշխանությունները, որոնք թեև քաղաքական առանձին ուժ չէին ներկայացնում, բայց տնտեսական ու առևտրական փոխհարաբերություններում ունեին իրենց ազդեցությունը։ Մանավանդ, ինչպես վկայում է հույն պատմիչ Ստրաբոնը իր «Աշխարհագրություն» աշխատության մեջ, արաբական քոչվոր ցեղերն իրենց ավազակային հարձակումներով անապահով էին դարձրել Միջագետքից Եփրատի վրայով Արևմուտք գնացող կարավանների ճանապարհները[42], ուստի դրա

---

[39] Նույն տեղում։

[40] «Ծննդոց», ԺԱ, 31; «Եզեկիէլ», ԻԷ, 23; *F. Josephus*, The Antiquities of the Jeews, Book XX, chpt. II, § 1, p. 483.

[41] *Pliny*, Nouvelles Histoires, VI, 17, 19.

[42] *Страбон*, География, М., 1964, XVI, I, 26.

փոխարեն սկսել էին օգտագործել կենտրոնական Միջագետքից անցնող ուղիները, այսինքն անմիջական առևտուր էր ծավալվում Ասորիքի վրայով։ Այն ժամանակ Արբելայի միջով էին անցնում Մծբինից դեպի Պարսկական ծոց և դեպի Պարսկաստանի խոշոր քաղաքները գնացող առևտրական կարավանները։

Ինչպես կարելի է եզրակացնել Մշիխա Զեխայի վկայությունից, քրիստոնյա քարոզիչները ևս օգտվում էին առևտրական այս ճանապարհներից և տարբեր երկրներից ու քաղաքներից եկած մարդկանց մեջ տարածում իրենց նոր վարդապետությունը։ Այդ գործում մեծ դեր էին կատարում նաև առևտրական քարոզիչները, որոնք ապրանքների հետ միասին ներմուծում էին իրենց կրոնի հավատալիքները։ Այդ մասին լավագույն փաստ կարելի է համարել Հովսեփոս Փլավիոսի աշխատության մեջ պահպանված այն վկայությունը, թե ինչպես հրեա առևտրականները կարողացան Ադիաբենի Իզատեսին հրեական կրոնի պաշտամունքին դարձնել, որի մասին մի քիչ հետո։

Ադիաբենում դեռ վաղ դարերից, ինչպես Ստրաբոնն է վկայում, միդիացիների ու բաբելացիների հետ միասին ապրում էին հայեր։ Հայկական ցեղերը մեծ ազդեցություն են ունեցել այդ երկրում և Տիգրան Բ-ի ժամանակ Ադիաբենը եղել է Հայաստանի գերիշխանության ներքո[43]։ Հայկական գերիշխանության վերացումից հետո էլ, երբ Ադիաբենը գտնվում էր մեծ մասամբ Պարսկաստանի, երբեմն Հռոմի տիրապետության ներքո, փոխադարձ կապերը շարունակվել են, հատկապես մ. թ. I դարի ընթացքում։ Այսպես, երբ Հայոց թագավոր Տրդատ Ա-ն (Պարսկաստանի արքա Վաղարշ Ա-ի եղբայրը, 51—81), հռոմեական բանակների ճնշումից ստիպված, հեռանում է երկրից, Վաղարշը իր զորավարներից Մոնեզին տալիս է Տրդատին, որ ադիաբենցիների բանակի հետ միասին վտարեն հռոմեացիների դրածո Տիգրանին[44]։ Քաղաքական այս նույն իրադարձությունների մասին տեղեկություններ կան նաև Ստրաբոնի «Աշխարհագրությունում»։ Նույն պատմիչը գրում է, որ հռոմեացիների (դրածո) Տիգրանը Հայոց գահի վրա բազմելուց հետո, հարձակվեց հարևան երկրների վրա և հասավ մինչև Արբելա ու իր ճանապարհին

---

[43] *Страбон*, География, Книга XI, XIV, 15, стр. 501. Նաև XVI, I, 19, стр. 691.

[44] *Tacite*, Oeuvres Complètes, Annales, Paris, 1878, Book XV, IV, p. 338.

ամայացրեց բոլոր երկրամասերը[45]։ Ահա Պարսկական, հայկական և Ադիաբենի միացյալ ուժերը հարձակվում են Տիգրանի վրա ու նրան պարտության մատնելով, դուրս հանում երկրից։ Տրդատը նորից է բազմում հայկական գահին։ Նման համատեղ պայքարի փաստերը լավագույն ձևով արտացոլում են այն կապերը, որոնք գոյություն են ունեցել այս երկու երկրների միջև։ Այդ հարաբերությունները Պարսկաստանի. և նրան հարևան փոքր ժողովուրդների միջև աշխուժանում է մ. թ. I դարում՝ պարթև Վաղարշ Ա-ի թագավորության օրոք։ Նա իր հեռատես քաղաքականությամբ աշխատում էր արևելքի ժողովուրդների միասնական ուժերով կազմակերպել պայքար Հռոմի դեմ և այդ դաշինքն ամուր հիմքերի վրա դնելու ձգտումով, իր եղբայրներին ու հարազատներին բազմեցնում է այդ երկրների գահերին։ Հռոմն իր հերթին, ամեն կերպ ձգտում էր խանգարել և թույլ չտալ նման միության ամրացմանը։ Հակառակ հռոմեացիների ձեռք առած միջոցներին, Վաղարշի քաղաքական գործունեությունն իր դրական արդյունքը տվեց։ Հռոմի կայսր Ներոնի և Վաղարշ Ա-ի միջև կնքված խաղաղության դաշինքը աշխուժություն առաջացրեց այս երկրների տնտեսական կյանքում, և միջազգային առևտուրը նորից վերելք ապրեց։ Մենք նշել ենք, թե ինչպես այդ առևտրական կյանքում Արբելան խոշոր դեր էր կատարում և Մշիխա Զեխայի վկայությամբ, Արբելայից անցնող առևտրական կարավանները գնում էին նաև Հայաստան[46]։ Հայաստանը ևս ընդգրկվել էր նորից միջազգային առևտրի մեջ, և Տրդատ Ա-ի կողմից հայկական քաղաքների վերականգնումը այդ մասին է վկայում։

Ուշագրավ է այն, որ քրիստոնեական առաջին համայնքները ստեղծվում են ու աշխույժ գործունեություն են ծավալում առևտրական այս ճանապարհների վրա գոյություն ունեցող քաղաքներում և դա պատահականություն չպետք է համարել։

Այս երկրների և ընդհանրապես այն ժամանակաշրջանում պարսկական տիրապետության մեջ գտնվող ժողովուրդների առևտրական կյանքում հիմնական դեր կատարողներից էին մասնավորապես հրեաներն ու ասորիները, մանավանդ որ Վաղարշ Ա-ն քաջալերում էր ոչ հույն առևտրականների ու տարրերի գործունեությունը Արևելքում։

«Ադդայի վարդապետությին» ասորական այդ աղբյուրից

---

[45] *Страбон*, География, Книга XI, XIV, 15, стр. 501.
[46] *Mšiha Zekha*, Histoire de l'église d'Adiabène, p. 79.

էլ գիտենք, որ հրեա առևտրականներն ու հրեա արհեստավորները Եդեսիայում քրիստոնեական կրոնը տարածելու գործում խոշոր դեր են խաղում։ Ադդա առաքյալը քարոզելու նպատակով Եդեսիա գալիս, իջևանում է իր հայրենակցի տանը։ Մյուս կողմից շատ հետաքրքրական են նաև մ. թ. I դարի հրեա պատմիչ Հովսեպոս Փլավիոսի արժեքավոր տեղեկությունները այն մասին, թե ինչպես մ. թ. I դարում հրեա առևտրականները ձգտում էին իրենց կրոնը տարածել այս երկրներում։

Հովսեպոսը պատմում է, որ մ. թ. I դարի երկրորդ կեսում, Ադիաբենի թագավոր Մոնոբազոսը, որը կոչվում էր նաև Բազոս, ամուսնանում է (այն ժամանակ Արևելքում ընդունված օրենքի համաձայն) իր քրոջ՝ Հեղինեի հետ։ Նրանից ծնվում է մի տղա, որին անվանում են Իզատես։ Թագավորը, չնայած ուրիշ զավակներ ուներ (նաև այլ կանանցից), բայց ամենից շատ սիրում էր Իզատեսին, և, որպեսզի նա իր մյուս եղբայրների նախանձի զոհ չդառնա, Մոնոբազոսը Իզատեսին ուղարկում է Խարակս-Սպասինիի թագավոր Աբեններիգի մոտ[47]։ Այստեղ Իվատեսը ամուսնանում է թագավորի դուստր Սամակայի հետ[48]։ Նա վերադառնում է հայրենիք և հայրը տեսնելով նրան, ուրախանում է և շնորհում Կարրոնը իր շրջակայքով, որը հարուստ էր շուշմիրով[49]։ Իզատեսը Կարրոնում է ապրում մինչև իր հոր մահը։ Հոր մահից հետո նրա մայրը՝ Հեղինե թագուհին ժողովի հրավիրեց երկրի մեծամեծներին ու հրամանատարներին և ասաց, որ Մոնոբազոսի կամքն էր, որպեսզի Իզատեսը բազմի գահին։ Հավաքվածները, պատմիչի ասելով, ուրախանում են ու իրենց համաձայնությունը տալիս։ Բայց, մինչև Իզատեսի վերադարձը, ժամանակավորապես Մոնոբազոսի ամենամեծ որդուն, թագավոր նշանակեցին։ Իզատեսը ի վերջո լսում է հոր մահը, գալիս է իր երկիրը հոր աթոռին տիրանալու[49ա]։

Առանձին հետաքրքրություն են ներկայացնում Հովսեպոսի այս տեղեկությունները Ադիաբենի թագավոր Մոնոբազոսի,

---

[47] Եփրատի ու Տիգրիսի միախառնման շրջանում քաղաք է, որն այժմ կոչվում է Կարեմ։ Այն ժամանակին կոչվել է նաև Ալեքսանդրիա։ Խարակս անունով շատ քաղաքներ են եղել և՛ Փոքր Հայքում, և՛ Բյութանիայում, և Նիկոմիդիայում։ Տե՛ս *M. Bouillet,* Dictionaire Universel, Paris, 1854, p. 352.

[48] *F. Josephus,* The Jewish antiquities, Book XX, chpt. II, § 1. p. 483.

[49] Կակուլայ, Carda momum, տե՛ս Հ. Աճառեան, Արմատական բառարան, հատ. Ե, էջ 422։

[49ա] *F. Josephus,* The Jewish antiquities, Book XX, chpt. II, p. 482.

Հեղինեի և Իզատեսի մասին, որովհետև ֆրանսիացի ասորագետ Դյուվալը իր «Եդեսիայի պատմություն» գրքում գրում է, որ «մեր թվականության առաջին դարի վերջում Եդեսիայի իշխանության գլուխ է անցնում հայ պարթևական ծագումով կողմնակի մի ճյուղ, որը սկսվում է Իզատեսի որդի Աբդարով, շարունակվում Պարթամասպատով և վերջանում Իզատեսի որդի Մաղնուով։ Այս ճյուղը առաջացել է Ադիաբենի թագուհի Հեղինեի որդի՝ Իզատեսից, որն ընդունել է հրեական կրոնը[50]։ Դժբախտաբար մեզ չհաջողվեց պարզել, թե ինչպիսի՞ փաստերի ու աղբյուրների հիման վրա ֆրանսիացի պատմաբանը նման եզրակացության է եկել, համենայն դեպս, այս հանգամանքը մտածել է տալիս, որ Մովսես Խորենացին պատահականությամբ չէ, որ Աբգարին հայացրել է։ Նա, հավանաբար, իր ձեռքի տակ է ունեցել որոշ տվյալներ և հետագա պրպտումները գուցե հետազոտողին որոշ արդյունքի հասցնեն։ Ուշագրավ է նաև այն, որ Մովսես Խորենացին հիշատակում է Աբգարի իշխաններից մի քանիսին, ու գրում, որ Մար Իհաբը՝ Աղձնիքի բդեշխն էր, Շամշագրամը՝ Ապահունյաց տոհմի նահապետն էր[51], մինչդեռ նույն այս նախարարներին Տակիտոսը ներկայացնում է որպես Ադիաբենի իշխաններ[52]։ Նման վկայությունները մտածել են տալիս և շեշտում անհրաժեշտությունը հետագայում այն բոլորը ի մի բերելու և պատմության մեջ մութ մնացած այդ կետը լուսաբանելու համար։

Իզատեսի մասին Հովսեպոսը շարունակում է. նա Խարակս-Սպասինիում՝ եղած ժամանակ մտերմացել էր Անանիա անունով հրեա վաճառականի հետ, որը նրան ծանոթացրել էր հրեական կրոնի հավատալիքներին և Իզատեսը տարվելով այդ վարդապետությամբ, ընդունում է հրեական կրոնը։ Հայրենիք վերադարձին Իզատեսը իր հետ է տանում Անանիային։ Այնտեղ պարզվում է, որ մի ուրիշ գալիլիացի՝ Եղիազար անունով, քարոզչական աշխատանքներով է զբաղվել և Ադիաբենում հաջողացրել է մորը՝ Հեղինե թագուհուն ևս հավատափոխ անել[53]։ Եվ երբ Իզատեսի թլփատության հարցն է առաջանում, Հեղինե

---

[50] *R. Duval,* Histoire d'Edesse, „Jour. Asiat.", 8ème serie. t. XVIII, 1891, p. 113.

[51] «Մովսիսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց», գիրք Բ, գլ. Լ, էջ 148։

[52] *Tacite,* Annales, Book VI, 31 et 32.

[53] *F. Josephus,* The Jewish antiquities, Book XX, chpt. II, pp. 483—485.

թագուհին հակառակվում է, առարկելով, որ նման արարողություններ կարող է գրգռել երկրի մեծամեծերին և ժողովրդի մեջ ատելություն առաջացնել Իզատեսի դեմ, սակայն գալիլիացի Եղիազարը անհողդողդ է մնում և ստիպում է Իզատեսին թլփատվել[54]։

Հետաքրքրական է, որ Հեղինե թագուհու մասին տեղեկություններ է տալիս նաև Մովսես Խորենացին, միայն այն տարբերությամբ, որ այս Հեղինեն Եդեսիայի Աբգար թագավորի կինն է և քրիստոնյա։ Մեր պատմահայրը պատմում է, որ Ադդա առաքյալի հաջորդին սպանող Աբգար թագավորի որդին, իր ապարանքի վերնատանը սյուն կանգնեցնելիս, սյունը ընկնում ու ճզմում է այդ սրահին այնտեղ ներկա գտնվող թագավորին։ Նրա մահից հետո Եդեսիա քաղաքից պատգամավորներ են գնում Հայոց Սանատրուկ թագավորի մոտ և հայտնում են նրան, որ եթե նա համաձայնվի իրենց ազատ թողնել քրիստոնեական հավատում, ապա իրենք պատրաստ են տալ «զքաղաքն ի ձեռս և զգանձս թագաւորին»[55]։ Սանատրուկը պատրաստակամություն է հայտնում, բայց հետագայում դրժում է իր խոստումը. քաղաքին տիրանալուց հետո «նա և զամենայն զաւակ տանն Աբգարու մաշեաց սրով, բայց յաղջկանց, զորս եհան ի քաղաքէն բնակել ի կողմանս Հաշտենից։ Սապէս և զգլուխ կանանցն Աբգարու, որում անունն էր Հեղինէ, առաքեաց յիւրային քաղաքն բնակել ի Խառան, թողլով նմա զտիկնութիւնն ամենայն Միջագետաց, փոխանակ բարեացն զոր գտեալ էր ի ձեռն նորա յԱբգարէ»[56]։

Ըստ Խորենացու, Սանատրուկը Հեղինեին ուղարկում է Խառան՝ բնակվելու, սակայն ավելացնում է մեր պատմիչը. «Այս Հեղինէ ղարդարեալ հաւատովք, որպէս և զայր իւր զԱբգար, ոչ հանդուրժեաց բնակել ի մէջ կռապաշտիցն. այլ չոգաւ յԵրուսաղէմ յաւուրս Կղաւդեայ, ի սովին՝ զոր մարգարէացաւ Ագաբոս. և տուեալ զամենայն գանձս իւր յԵգիպտոս՝ գնեաց ցորեան բազում յոյժ և բաշխեաց ամենայն կարօտելոց. որում և վկայէ Յովսեպոս. որոյ և շիրիմ նշանաւոր կայ առաջի դրանն յԵրուսաղէմ մինչև ցայսօր ժամանակի»[57]։

Մովսես Խորենացին այս տվյալները շարադրելիս, ինչպես

---

[54] Նույն տեղում

[55] «Մովսիսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց», գիրք Բ, գլ. ԼԵ, էջ 159։

[56] Նույն տեղում։

[57] Նույն տեղում, էջ 160։

ինքն անձամբ վկայում է, ծանոթ էր Հովսեպոսի համապատասխան բաժնին, բայց ինչպե՞ս է, որ նման փաստի արձանագրումից հետո այլ վկայություններ է տալիս։ Նախ այստեղ մեջբերենք նաև Հովսեպոսի վերոհիշյալ հատվածը. «Մայրը Հեղինեն երբ տեսավ, որ իր որդի Իզատեսի գործերը բոլորն էլ կարգին են, ապա նա իր որդուց թույլտվություն խնդրեց և գնաց Երուսաղեմ. Երուսաղեմում սով էր, և երբ նա իմացավ ժողովրդի այգ դժբախտության մասին, անմիջապես իր ծառաներից ոմանց մեծ գումար տվեց և ուղարկեց Ալեքսանդրիա, որպեսզի նրանք այնտեղից ցորեն, իսկ ծառաների մյուս խմբին ուղարկեց Կիպրոս, որպեսզի չոր արմավ բերեն։ Ծառաները վերադարձան և բերեցին պահանջվածը։ Իզատեսն էլ իմանալով այդ սովի մասին, նա էլ մեծ գումար ուղարկեց սովյալներին օգնելու[58]։

Ինչպես տեսնում ենք, Խորենացու և Հովսեպոսի մոտ խոսվում է նույն Հեղինե թագուհու մասին, բայց նրանք ընդհանուր գծերով տարբերվում են։ Այդ ինչպե՞ս է, որ Խորենացին վկայակոչելով հանդերձ Հովսեպոսին, իր գրքում այլ ձևով է ներկայացնում. արդյո՞ք մեր պատմահայրը նման բացարձակ կեղծիք կարո՞ղ էր թույլ տալ, որովհետև Խորենացու Հեղինեն՝ քրիստոնեական կրոնն է ընդունել, իսկ Հովսեպոսի Հեղինեն՝ հրեական, մեկի մոտ Եդեսիայի թագավորի կինն է, մյուսի մոտ Ադիաբենի։ Դժվար է ասել, բայց մի բան պարզ է, որ Ադիաբենում քարոզված «հրեական կրոնը» եթե քրիստոնեական վարդապետությունը չէր, ապա այդ վարդապետության շատ մոտ մի նոր գաղափարախոսություն էր, և տարբերվում էր Մովսիսականությունից, որը իր էությամբ միայն Իսրայելի ժողովրդի փրկության գործին էր ծառայում։ Հետաքրքրական է օրինակ Հովսեպոսի այն տեղեկությունը, որ Մոնոբազոսը Իզատեսին շնորհում է Կարրոն քաղաքն իր շրջապատով, երբ վերջինս Սպասինիից վերադառնում է հայրենիք[59]։

Մարկվարտը կարծում է, որ Կարրոնը դա Խառանն է, սակայն հայտնի է, որ Խառանը իր շրջակայքով մտնում էր Եդեսիայի թագավորության մեջ, ուստի հարց է ծագում, թե ինչպե՞ս Ադիաբենի թագավոր Մոնոբազոսն իր որդի Իզատեսին է շնորհում այդ երկրամասը։

---

[58] *F. Josephus*, Antiquities, Book XX, chpt. II, § 1, pp. 483—485.

[59] Այս քաղաքի որտեղ լինելու մասին կլինի մի այլ ուսումնասիրություն։

Պիտի խոստովանել, որ ասորական աղբյուրներն էլ ոչ միայն հստակ տեղեկություններ չեն թողել, այլև իրենց վկայություններով կարծես ավելի են խճճել հարցը։ Այսպես, Եդեսիայի ժամանակագրության տվյալների համաձայն մ. թ. 50—57 թթ. Եդեսիայի գահի վրա բազմել է Մաղնու Ե, իսկ 57—71 թթ. մոտ 14 տարի նույն գահի վրա իշխել է նախորդի եղբայր՝ Մաղնու Զ։ Դրանից հետո գահ է բարձրանում վերջինիս որդի Աբգար Զ-ն, որը թագավորում է 71—91 թթ.։ Նույն ասորական աղբյուրի վկայությամբ[60] Աբգար Զ-ի մահից հետո, նա ժառանգորդ չի ունենում և այդ պատճառով երկպառակություն է սկսվում երկրում, և երկու տարի շարունակ ներքին կռիվների պատճառով ոչ ոքի չի հաջողվում իշխանության գլուխ կանգնել։ Ի վերջո, Պարթամասպատր տիրանալով գահին իշխում է 3 տարի և 10 ամիս։ Ըստ Եդեսիայի ժամանակագրության, Պարթամասպատին անմիջապես հաջորդում է Իզատեսի որդի Մաղնուն, և այդ աղբյուրի վկայությամբ, նա գահի վրա է մնում 16 տարի և 8 ամիս։ Ասորական մի այլ աղբյուրի հետևողությամբ, VIII դարի ասորի պատմիչ՝ Դիոնիսիոս Տելլ Մահրացու վկայությամբ, Աբգար Զ-ից հետո 18 տարվա ընդմիջում է լինում, և հայտնի չէ, թե երկիրը ինչպես է կառավարվում։ 18 տարուց հետո, այս նույն աղբյուրի վկայությամբ, Եդեսիայի գահին է բազմում Իզատեսի որդի Աբգար Է-ն և իշխում 6 տարի և 9 ամիս, այսինքն մ. թ. 109—116 թթ.։ Դիոնիսիոսի վկայությամբ, Իզատեսի որդի Աբգար Է-ից հետո է գահին բարձրանում Պարթամասպատր[61]։ Ինչպես տեսնում ենք, ասորական աղբյուրների վկայությունները մեզ չեն օգնում որոշ պարզություն մտցնելու այդ հարցում։ Հետաքրքրական է, որ Իզատեսի որդու՝ Եդեսիայի գահին բազմելու առթիվ, ֆրանսիացի ասորագետը գրում էր. «մեր թվականության առաջին դարի վերջից Եդեսիայում իշխանության գլուխ է անցնում հայ-պարթևական մի ճյուղ, և այն սկսում է Իզատեսի որդի Աբգարով և շարունակվում է Պարթամասպատով և վերջանում է Իզատեսի որդի՝ Մազնուով։ Այս ճյուղը,—գրում է նա—ծագում է Ադիաբենի հայտնի Հեղինե թագուհու Իզատես որդուց, որն ընդունել էր հրեական կրոնը»[62]։ Դյուվալը գտնում է, որ Գուտշմիդտը ճիշտ է, երբ Մովսես Խորենացու հետևողությամբ Եդեսիայի 18 տարիների

---

[60] *J. Assemani,* Bib. Orientalis, Rome, t. I. 1719, p. 91.

[61] Նույն տեղում, էջ 417—423։

[62] *R. Duval,* Histoire d'Edesse, p. 113.

ընդմիջումը կապում է Սանատրուկի հետ, այսինքն այդ տարիներին նա պետք է իշխած լինի Հայաստանից բացի՝ Եդեսիայի և Ադիաբենի վրա[63]։

Այս կապակցությամբ մի փաստ ես պետք է ուշադրության առնել, այն որ եթե Իզատեսի մայրը՝ Հեղինեն ամուսնացել է իր եղբոր՝ Ադիաբենի թագավոր Մոնոբազոսի հետ, որը Վաղարշ Ա-ի հարազատն էր, ուրեմն նա մեր Հայաստանի թագավոր Տրդատ Ա-ի հարազատն էր նաև։ Խորենացին Սանատրուկի մասին տալիս է հետևյալ տեղեկությունը. «Յետ մահուանն Աբգարու բաժանի թագաւորութիւնն հայոց յերկուս. քանզի Անանուն որդի նորա կալեաց թագ՝ թագաւորել յԵդեսիայ և քեռորդի նորա Սանատրուկ ի Հայս»[64]։

Խորենացու վկայությամբ Սանատրուկը Աբգարի քրոջ որդին էր, և եթե Հովսեպոսի տվյալներով Հեղինե թագուհու եղբայր և ամուսին Մոնոբազոսը Խորենացու Աբգարի հետ նույն անձնավորությունն է, ապա կարելի է ասել, որ Տրդատ Ա-ի մահից հետո Հայաստանի թագավորական գահին բազմած Սանատրուկը Տրդատի հարազատներից էր։ Մի փաստ ևս հայտնի է, որ Պարսկաստանի Վաղարշ Ա արքայից հետո, ինչպես Ադիաբենի, այնպես էլ նրա հարևան թագավորական գահերի վրա հիմնականում բազմել են նրա արյունակից հարազատները, և ստեղծված քաղաքական նման միջավայրում պարթևների ազդեցությունը շատ է ուժեղանում, և ամեն մի նախարարական ընտանիք, որ ձգտում էր ղեկավար դիրքի հասնել, փորձում էր իր ծագումը կապել պարթևների հետ, և ասորի պատմիչի մոտ եղած հետևյալ արտահայտությունը այդ մտայնության արդյունքն է. «պարթևները կամ պարսիկները պարթևներն ու ասորիները պարթևներն ու հայերը նույնն են»[65]։ Նման մտայնության ստեղծումը ցույց է տալիս, որ Վաղարշ Ա-ն և նրա հաջորդները կարողացել էին իրենց հեռատես քաղաքականությամբ, բավական ամուր կապեր ստեղծել Արևելքի այս երկրներում, և այդպիսով ամուր հենարան ունենալ։ Հովսեպոսը պատմում է, որ երբ պարսիկների արքա Արտաբանոսը, ներքին երկպառակություններից ստիպված փախչում է, նա գալիս է իր հարազատ Ադիաբենի թագավոր՝ Իզատեսի

---

[63] Նույն տեղում, էջ 206։

[64] «Մովսիսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց», գիրք Բ, գլ. ԼԴ, էջ 157։

[65] J. Assemani, Bib. Orientalis, t. III, p. 425.

մոտ, իսկ սա նրան թագավորական պատիվներով է ընդունում և օգնում, որ հետագայում նա վերագրավի իր գահը[66]։

Արևելքի այս ժողովուրդների քաղաքական, տնտեսական ու մշակութային ասպարեզներում ստեղծված մերձեցումը նպաստավոր եղավ քրիստոնյա առաջին քարոզիչների համար, որովհետև կապը այս ժողովուրդների միջև դյուրացրեց և, նրանք, բնականաբար, առևտրական կարավանների հետ միասին այս երկրները ավելի աղատ ձևով շրջելու հնարավորություն ունեցան։ Ի տարբերություն Մովսիսականությունից, քրիստոնեական վարդապետությունն էր, որ մի կողմ էր նետել ազգային հասկացությունը և կոչ էր անում բոլոր ժողովուրդներին, մասնավորապես ճնշվածներին, հալածվածներին՝ միավորվել և զինվել Քրիստոսի վարդապետությամբ, իրենց թագավորությունը ստեղծելու համար։ Այս նոր գաղափարախոսությունը եթե Հրեաստանում ապրող հրեաներից շատերի մոտ արձագանք չգտավ, ապա այն ջերմ ընդունելության արժանացավ հայրենիքից դուրս ապրող հրեաներից շատերի մոտ։ Քրիստոնեական վարդապետությունը խմորվել ու կազմավորվել էր հիմնականում Գալիլիայի լճակի ափերին, և այն իր շուրջն էր հավաքել գալիլիացի հասարակ մարդկանց, ձկնորսներին, և առաջին գործիչներն էլ գալիլիացիներ էին։ Այս առթիվ հետաքրքրական է Հովսեպոսի այն տեղեկությունը, թե Ադիաբենում Իղատեսին ու Հեղինեին քարոզած անձնավորությունը՝ Եղիազարը, գալիլիացի էր։ Անշուշտ սա բավարար փաստ համարել չի կարելի, ապացուցելու համար որ նա քրիստոնյա էր, բայց և այնպես ստիպում է մտածել այդ ուղղությամբ։

Մշիխա Զեխան իր «Ադիաբենի եկեղեցու պատմության» մեջ ոչ մի տեղեկություն չի տալիս Իղատեսի և Հեղինե թագուհու քրիստոնեություն կամ հրեական կրոն ընդունելու այս իրադարձության մասին։ Նա պատմում է Ադիաբենի առաջին եպիսկոպոսի՝ Պկիդայի մասին, որն Ադիաբենի առաջին եպիսկոպոսն էր եղել, և ըստ նրան, հիմնել եպիսկոպոսական աթոռ։

Դյուվալը իր «Եդեսիայի պատմություն» գրքում կանգ է առել Եդեսիայում ու նրա շրջակայքում կազմավորված առաջին քրիստոնեական համայնքների ու եկեղեցիների կազմավորման հարցի վրա և իր ուսումնասիրությունից հետո, եկել այն եզրակացության, որ Ադդան ու Ագգան թեև պատմական անձնավորություն-

---

[66] *F. Josephus*, The Jewish antiquities, chpt. III, p. 485.

ներ են, բայց նրանք ոչ թե I դարում, այլ ավելի ուշ են ապրել[67], այսինքն II դարում, և այդ ժամանակ էլ նրանք դեկավարել են Եդեսիայում ու նրա հարևան շրջաններում ստեղծված առաջին քրիստոնեական համայնքները։ Նրանց հիմնական կորիզը այն ժամանակ հրեաներն էին, մինչդեռ III դարի սկզբներից իրերի վիճակը փոխվում է, և գնալով համայնքների ներսում ավելանում են ոչ հրեական տարրերը, հատկապես ասորիները, և արդյունքը լինում է այն, որ III դարի սկզբներից, ղեկավարությունը Պալուտից սկսյալ, անցնում է ասորիների ձեռքը։ Այսպիսով, դնում են ասորական եկեղեցու հիմքը։ Անշուշտ չպետք է ենթադրել, որ այդ փոփոխությունը տեղի է ունեցել խաղաղ ճանապարհներով։ Պալուտից սկսվում է Եդեսիայի եպիսկոպոսական աթոռը ասորական հունի մեջ մտնել, և նույն պատկերն ենք տեսնում Ադիաբենում, Պկիդան այստեղ նույն դերն է կատարում։

Պկիդան ևս II դարի վերջի քրիստոնեական գործիչներից է, և Մշիխա Զեխան միայն իր աղբյուրներից՝ Հաբելի գրքի հետևությամբ է, որ նրան հասցրել է Տրայանոսի ժամանակները։ Ի միջի այլոց ասորական վարքերում առկա են նման ժամանակագրական բաղում տեղափոխություններ։ Պատմությունից հայտնի է, որ Ադիաբենը Տրայանոսի արշավանքների ժամանակ արդեն, մ. թ. 115 թ. նվաճվել էր հռոմեացիներից, և դարձել հռոմեական նահանգ՝ «Ասսիրիա» անունով։ Մինչդեռ Մշիխա Զեխան Պկիդային և նրա հաջորդ Շեմշունի մասին այնպես է գրում, որ նրանք ապրել են պարսիկների գերիշխանության օրոք և Շեմշունը գլխատվել է պարսիկների ձեռքով «Արշակունիների արքա՝ Խոսրովի, հռոմեացիների կայսր՝ Տրայանոսից պարտվելուց յոթը տարի անց»։ Ինչպես տեսնում ենք, այս վկայությունը չի համընկնում պատմության փաստերին։ Իսկապես Մշիխա Զեխայի գիրքը սկսում է սպարթևական դերիշխանության վերջին տարիներին տեղի ունեցած քաղաքական իրադարձությունների, նրանց պարտության ու Սասանյանների հարստության հիմնադրման հետ կապված դեպքերի նկարագրությամբ։ Այս ժամանակաշրջանում էլ հիմնված կլինի Ադիաբենի եպիսկոպոսությունը Արբելա քաղաքում։

Նոր կազմավորված եկեղեցին ու հավատացյալները, ինչպես Մշիխա Զեխան է նկարագրում, անհանգստացել են պարսկական

---

[67] *R. Duval*, Histoire d'Edesse, pp. 272–274.

տիրապետության մեջ տեղի ունեցած ներքին փոփոխություններից և ասում, որ «երբ պարսիկները Արևելքի տեր դարձան, քրիստոնյաները մի քիչ վախեցան, որ նրանք, իրենց սուր դանակներով կմորթեն, որովհետև նրանք Արևելքի բոլոր թագավորներին հաղթելով, իրենց ենթակա կառավարիչներ ու մարզպաններ էին նշանակում»[68]:

Սասանյան պարսիկները սկզբում քրիստոնյաների նկատմամբ բարյացակամ վերաբերմունք ունեին, որովհետև այդ կրոնի հետևորդներն իրենցից ինչ որ ուժ չէին ներկայացնում, և բացի այդ, նրանք Պարսկաստանի առևտրի և արհեստների զարգացման գործում նշանակալից դեր էին կատարում։ Սասանյաններին անհրաժեշտ էր առաջին հերթին վերականգնել ներքին պատերազմական գործողություններից քայքայված երկրի տնտեսական կյանքը ու դատարկված արքունի գանձարանը լցնել, իսկ այդ նպատակի համար քրիստոնյաները հարմար տարր էին։ Սակայն պարսիկների այս վերաբերմունքը գնալով փոխվում է, և որքան քրիստոնեությունը հիմնավորվում է հռոմեական կայսրության սահմաններում, այնքան քրիստոնյաների վիճակը վատթարանում է պարսկական տիրապետության մեջ։ Այդ երևույթը լուրջ վտանգ է ներկայացնում, երբ քրիստոնեությունը հռոմեական կայսրության մեջ ճանաչվում է որպես պետական կրոն։ Առիթից օգտվում են մոգերը և սկսում իրենց երկրում ապրող քրիստոնյաների դիրքերը հարվածել։ Ինչպես Մշիխա Զեխան է պատմում, «նրանք համոզում են արքային, որ քրիստոնյաները հռոմեացիների լրտեսներն են», ուստի նրանց պետք է հավատափոխ անել կամ ոչնչացնել[69]։ Եվ հասկանալի է, որ Պարսկաստանի տիրապետող խավի շատ ներկայացուցիչներ քրիստոնյաներին կասկածամտությամբ էին մոտենում։

Այդ հարցում, որոշ չափով մեղավոր էին նաև քրիստոնյաները, որովհետև շատերի հոգում այն հավատն էր առկայծել, որ քրիստոնեության հաղթանակը հռոմեական կայսրության մեջ կստեղծեր այն իդեալական կարգերը, որոնց համար իրենց նախնիները դարեր շարունակ պայքարել ու նահատակվել էին։ Բայց կարճ ժամանակից հետո հավատացյալները համոզվեցին, որ հուսախաբվել են, որովհետև քրիստոնեությունը հռոմեական կայսրության մեջ պետական կրոն դառնալուց անմիջապես հետո,

68 Մշիխա Զեխա, Ադիաբենի եկեղեցու պատմություն, VIII եպիսկոպոս։
69 Նույն տեղում։

եկեղեցու ու պետության ղեկավար գործիչները այն ծառայեցրին Հռոմեական պետության շահերին։ Այսպիսով, տիրող կարգերի դեմ ուղղված մի շատ առաջավոր ղաղափարախոսություն զրկվում էր իր առաջավոր սկզբունքներից և ի սպաս դրվում պետության ու եկեղեցու վերնախավին, և հասկանալի է, որ ճշմարիտ հավատացյալները նման մեքենայություններից ողբերգական հուսախաբություն ապրեցին։

## Ե. ՀԱՅԿԱԿԱՆ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ ԱԴԻԱԲԵՆԻ ՄԱՍԻՆ

Հայկական վաղ շրջանի աղբյուրներում, դժբախտաբար, շատ քիչ տեղեկություններ են պահպանվել, չնայած դարեր շարունակ այս երկու ժողովուրդները քաղաքական, տնտեսական ու մշակութային հարաբերությունների մեջ են եղել։ Այս լռությունը բացատրվում է նրանով, որ հայ մատենագրության ստեղծման և նրա զարգացման առաջին շրջանում հայ պատմիչների վերաբերմունքը ոչ բարեկամական է եղել Աղիաբենից եկած քրիստոնյա գործիչների նկատմամբ։ Աղիաբենը, ինչպես գիտենք, նեստորական եկեղեցու կարևոր կենտրոններից էր, և ինչպես Ղազար Փարպեցու Հայոց պատմությունից իմանում ենք, պարսիկները և պարսկական քաղաքականության համախոհ հայ նախարարները Ագիաբենի եկեղեցական բարձրաստիճան պաշտոնյաներին օգտագործում էին Հայաստանում իրենց ազդեցությունը ուժեղացնելու նպատակով։ Փարպեցին պատմում է, որ երբ պարսիկները հայոց թագավորությունը վերացրին, սկսեցին հարված հասցնել կաթողիկոսական իշխանության և պարսից Վռամ արքան հրամայեց «և զտունն կաթողիկոսական ի՝սրբոյն Սահակայ՝ յարքունիս ունել, փոխանակ զի ոչ միաբանեցաւ տալ վկայութիւն ընդ նախարարսն Հայոց»[70]։

Սահակին կաթողիկոսական աթոռից զրկելուց հետո, Սուրմակ Արծկեցի երեցին են բազմեցնում, սակայն ժողովուրդը դեմ է կանգնում, և շուտով, նրան հեռացնում են իր պաշտոնից և փոխարենը նշանակում Բրքիշոյին։ Մեր աղբյուրներում Ադիաբենը անվանված է Ասորեստան[71], իսկ Բրքիշոն Ասորեստանից

---

[70] «Ղազարայ Փարպեցւոյ Պատմութիւն Հայոց», աշխատութեամբ Գ. Տէր-Մկրտչեան եւ Ստ. Մալխասեան, Տփղիս, 1904, գր. Ա, գլ. ԺԵ, էջ 24—25։

[71] Ադիաբենը «Ասորեստան» է անվանվել, ինչպես գիտենք Տրայանոսի 115 թ. արշավանքի ժամանակ, երբ նա Ադիաբենը Հռոմեական կայսրության նահանգ դարձնելով, այն անվանեց «Ասսիրիա» կամ «Ասորեստան»։

էր, այսինքն Ադիաբենից։ Այդ մասին Ղազար Փարպեցին գրում է. «Խնդրեցին այնուհետև իւրեանց նախարարքն Հայոց յարքունուստ կաթողիկոս, և թագաւորն Վռամ ետ նոցա զԲրքիշոյ զոմն անուն, այր յազգէ Ասորւոյ, որ եկեալ յաշխարհն Հայոց իւրովք գաւառակցօք, որք կէին լոյծ կրօնիւք, եկեալք ընդ նմա յԱսորեստանէ, ըստ սովորութեան իւրեանց աշխարհին՝ տանտիկնօք և ոչ կէին ըստ սուրբ և ամբիծ կրօնիցն, զոր եղեալ էր և կարգեալ յամենայն եկեղեցիս Հայոց՝ սրբոյ նահատակին Գրիգորի»[72]։

Այս փաստը ցույց է տալիս, որ կապերը այնքան սերտ են եղել, որ հայոց կաթողիկոսական աթոռին բազմեցրել են ադիաբենցի եկեղեցականին։ Սակայն ժողովուրդը և նախարարության մեծ մասը դեմ է եղել նման ոտնձգություններին, որովհետև Բրքիշոն և նրա գործակիցները համարվում էին Պարսկական տիրապետության գործակալներ։ Փարպեցին խոսում է նրա ոչ ընդունելի վարքի մասին, նկատի ունենալով նրա նեստորական դավանանքը, սակայն այդ դավանանքը երկրորդական դեր կարող էր խաղալ։ Համենայն դեպս, նեստորականությունը հայերին ատելի է դառնում այն ժամանակ, երբ նեստորական գործիչները հակաբյուզանդական իրենց տրամադրություններից մղված պաշտպանություն գտան պարսիկների մոտ։ Հետաքրքրական է, որ Բրքիշոն մենակ չի գալիս Հայաստան, այլ իր հետ է բերում նաև բազում գավառակիցների, որոնք բնակություն են հաստատում Հայաստանում, և իրենց պարսկասիրական արարքներով արժանանում ժողովրդի ատելությանը։ Պարսիկները հայ ժողովրդին զրկելով քաղաքական ինքնուրույնությունից, վերջին հարվածն էին ուզում հասցնել հայ մշակութային օջախներին, այդ գործում օգտագործելով Ադիաբենի ասորի եկեղեցական հայրերին։ Հայ պատմիչների լռության պատճառը, մեր կարծիքով, ադիաբենցիների ու հայերի միջև եղած կապերի մասին, ոչ միայն հականեստորական տրամադրություններն էին, այլև այն, որ դարեր շարունակ Ադիաբենը աղանդավորական շարժման խոշոր կենտրոն է եղել, և հայ եկեղեցական գործիչները, բնականաբար, վտանգավոր համարեին նման կապերը։ Այսպես, Մշիխա Զեխայի «Ադիաբենի եկեղեցու պատմության» մեջ վկայություն կա այն մասին, թե ինչպես աղանդավորական խոշորագույն շարժումներից «Մեսսալյան» շարժումը կամ ինչպես հայկական աղբյուրներում այն անվանված է «Մծղնեականությունը»

---

[72] «Ղազարայ Փարպեցւոյ Պատմութիւն Հայոց», գր. Ա, գլ. ԺԶ, էջ 26։

կազմավորվել է և իրեն որպես կենտրոն ունեցել է Ադիաբենի մայրաքաղաք Արբելան[73]։ Այդ շարժումը երկրում այնքան մեծ ծավալ է ստացել, որ եկեղեցական հայրերը Արբելայում հատուկ դպրոց են բացել՝ Մծղնեականության դեմ պայքարելու համար։ Ինչպես գիտենք, այդ շարժման մասնակիցներն իրենց հետևորդներն ունեցան նաև Հայաստանում։ Ասորական մի այլ աղբյուրից պարզվում է, որ մի այլ աղանդավորական ուժեղ շարժում, որի հետևորդները հասել են մինչև մեր օրերը, նույնպես կազմավորվել է Ադիաբենում։ Այդ շարժման հիմնադիրներից է եղել Ադո անունով մի անձնավորություն. այս շարժումը պատմությանը հայտնի է Մանդեան անունով[74]։

Հայկական աղբյուրներում կցկտուր տեղեկություններ կան Ադիաբենի և կամ ադիաբենցիների մասին։ Մովսես Խորենացին պատմում է, որ երբ Արտաշեսը մեծացավ և պարսկական բանակում բազում քաջագործություններ կատարեց, Սմբատը պարսիկ նախարարների միջոցով խնդրեց արքայից արքային, որ «զԱրտաշէս որդի Սանատրկոյ, զմերժեալն ի թագաւորութենէ իւրմէ, հաստատել յիւրում թագաւորութեանն», և «յանձն առեալ արքային արքայից՝ տայ ի ձեռս Սմբատայ մասն ինչ ի զօրացն Ասորեստանի և զզօրս Ատրպատականի, զի տարեալ զԱրտաշէս հաստատեսցեն ի գահն հայրենի»[75]։

Մովսես Խորենացու այս հատվածը որոշ կողմերով հիշեցնում է Տակիտոսի վկայություններն այն մասին, թե ինչպես Վաղարշ Ա-ն ադիաբենցիների բանակը հանձնեց Տրդատ Ա-ին, որ գնան ու վերագրավեն Հայաստանը և թագավորական դահից վտարեն հռոմեացիների դրածո Տիգրանին։ Արդյո՞ք երկու վկայություններն էլ նույն իրադարձության մասին են, այժմ դժվարանում ենք ասել։ Եղիշեի ու Ղազար Փարպեցու աշխատություններում մի փոքր վկայություն կա նաև այն մասին, թե ինչպես Ավարայրի

[73] Մշիխա Զեխա, Ադիաբենի եկեղեցու պատմություն, XIX եպիսկոպոս։

[74] F. C. Burkitt, Church and gnosis, Cambridge, 1932, p. 102. Եվրոպացի պատմաբանը հետաքրքիր աշխատություն է գրել «Մանդեան» շարժման մասին, օգտվելով ասորական աղբյուրներից։ Տեղեկությունները հիմնականում վերցրել է VIII դարի ասորի պատմիչներից, հատկապես Թեոդոր Բար-Կոնիից։

[75] «Մովսիսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց», գիրք Բ, գլ. ԽԴ, էջ 168։ Գուցե սա արձագանքն է Վաղարշ Ա-ի ժամանակ Տրդատ Ա-ի, ադիաբենցիների ու պարթևական զորքի համատեղ այն պայքարի, որ մղում էին հռոմեացիների դեմ։

ճակատամարտից հետո պարսիկները հայ գործիչներից ոմանց աքսորում են Ասորեստան, որտեղի այնտեղ արքունի մշակներ դառնան։ Եղիշեն պատմում է, որ հայ գործիչներին տանջելուց հետո արքունի դահճապետը «և ետ տանել յԱսորեստան զի կայցեն ի մշակութեան արքունի»[76]։ Ղազար Փարպեցու վկայությամբ Բասենի Թաթիկ եպիսկոպոսը ևս այդ աքսորվածների մեջ էր և պարսից արքա Հազկերտը հրամայում է «սպանանել անդէն և անհետ առնել զմարմին սրբոյն»[77]։

Անկասկած, հայկական ապստամբությունից հետո պարսիկները իրենց վարչական կենտրոն էին դարձրել Ադիաբենը, և հայ գործիչների հետ հաշվեհարդար էին տեսնում այստեղ։ Եղիշեի ու Ղազար Փարպեցու վկայություններից երևում է, որ տեղի քրիստոնյաները հայ աքսորականների վիշտը թեթևացրել և նյութական ու բարոյական օգնություն են ցույց տվել, նույնիսկ իրենց անձը վտանգի ենթարկելով։

Հետագայում իրերի վիճակը փոխվում է, երբ Պարսկական տիրապետության մեջ մտնող երկրներում, մասնավորապես Ադիաբենում, նեստորական եկեղեցին, պարսիկների անմիջական օգնությամբ փորձում էր բոլոր քրիստոնյա եկեղեցիներին իր գերիշխանության տակ առնել։ Հայ եկեղեցին Վահան Մամիկոնյանի կազմակերպած հաջող ապստամբության շնորհիվ, գերծ էր մնում նեստորականների վտանգից։ Հականեստորականները, այսինքն պարսկական տիրապետության մեջ ապրող միաբնակ քրիստոնյաները, ամեն միջոցի դիմում էին հայ եկեղեցական գործիչներին այդ վտանգից ազատելու համար։ Հայ եկեղեցուն դիմողների մեջ էին, ինչպես իմանում ենք Գիրք թղթոցից, հատկապես Ադիաբենի միաբնակ հավատացյալները. «Թուղթ Հայոց ի Պարսս, առ ուղղափառս» նամակում Հայոց Բաբգեն կաթողիկոսը այլ հայ եպիսկոպոսների հետ դիմում են նամակով առ «սուրբ հաւատացեալք քրիստոնեայք յԱսորեստանի և ի Խուժաստանի, և ի Հերթ և ի Նսնաբարսաղէ»[78]։

Հայկական աղբյուրների այս կցկտուր տեղեկությունը, ան-

---

[76] «Եղիշէի վասն Վարդանայ եւ Հայոց պատերազմին», աշխատութեամբ Ե. Տէր Մինասյան, Երևան, 1957, Երրորդ յեղանակ, էջ 183։

[77] «Ղազարայ Փարպեցւոյ Պատմութիւն Հայոց», գր. Բ, գլ. ԽԸ, էջ 88։

[78] «Գիրք թղթոց», Թիֆլիս, 1901, էջ 41։

շուշտ դարեր շարունակ Ադիաբենի և Հայաստանի միջև գոյություն ունեցող կապերի լուսաբանման համար համարյա ոչինչ չի տալիս։ Եվ զարմանալի է նաև այն, որ մեզ հայտնի չեն այն բազմահազար հայերի ճակատագիրը, ինչպես հույն պատմիչն է վկայել, որոնք ապրում էին Ադիաբենում և այդ երկրի քաղաքական տնտեսական կյանքում նշանակալից դեր էին խաղում։

# ԱԴԻԱԲԵՆԻ ԵԿԵՂԵՑՈՒ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

## ԲՆԱԳՐԻ ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅՈՒՆ

## ԱԴԻԱԲԵՆԻ ԵԿԵՂԵՑՈՒ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ ՊԱՐԹԵՎՆԵՐԻ ԵՎ ՍԱՍԱՆՅԱՆՆԵՐԻ ՕՐՈՔ

*Իմ սիրելի Պինես[1], բազում անգամ, դու ինձնից խնդրել ես, որ գրեմ մեր թեմի (հյուպարկոսության) բոլոր եպիսկոպոսների, Քրիստոսի սիրույն նահատակված մարտիրոսների և բոլոր նրանց պատմությունը, որոնք այս և այն աշխարհում բարի անուն են թողել, որպեսզի այդպիսով, փառավորեն աստծուն, և որպեսզի մենք ևս, երկնքում բարի երաշխավորություն ունենանք, որովհետև ինչպես դու գիտես, եկեղեցու մեծամեծների պատմությունը մեզ հեշտությամբ տանում է դեպի եկեղեցու հիմնադիրը՝ մեր Տեր-Հիսուս Քրիստոսը, մեր խեղճ մարդկության կենարարը, որին դրա համար շատ ենք սիրում։ Նա պետք է լինի մեր մտածողության նպատակակետը և մենք պետք է ապավինենք նրա սիրույն։ Եթե այդպես վարվենք, սուրբ Հոգին մեր մեջ կապրի, և մենք սուրբ Երրորդության[2] համար սրբություն սրբոց կլինենք, և նա (Երրորդությունը) կապրի բոլորիս մեջ։ Այս պաշտելի Երրորդությունն է, որ «մեր մեջ այգի է տնկում, մեզ շրջապատում ցանկապատով և հնձանի գուբ փորում մեր շուրջ»[3], որովհետև մենք մի որթատունկ ենք, աստծու տունկը, նա է մեզ տնկել և մենք նրան ենք պատկանում, որովհետև գրված է. «Յիւրսն եկն»[4]։ Մի ցանկապատ, որն ի վերջո պետք է պահենք ու պահպանենք, որպեսզի մեր երևելի ու աներևելի թշնամիների ճիրանները չհոշոտեն մեզ։ Մարտիրոսների համար ասվել է՝*

---

[1] Պատվիրատուն։

[2] Քրիստոնեական եկեղեցին աստվածային հասկացողությունը բաժանում էր երեք անբաժանելի անձնավորությունների՝ Հայր աստված, Որդին աստված և սուրբ Հոգին։ Երեքի այս միությունը՝ Երրորդությունն է։

[3] «Մարգարէութիւն Եսայեայ», գլ. Ե, 1—5։

[4] «Աւետարան ըստ Յովհաննու», Ա, 11։

հնձաններ, որոնք Քրիստոսի սիրույն նահատակվեցին և խաղողի հատիկների նման ճզմվեցին անհավատ դահիճների ոտքերով։ Աստվածային Դավիթն ասում է. «Վասն քո մեռանիմք զօրհանապազ. համարեցաք որպէս զոչխար ի զենումն»[5]։ Ուստի աստծու կամքով, մենք կխոսենք մեծամեծների ու մարտիրոսների մասին, և մեր աղոթքում, բարի աստծուց օգնություն կհայցենք, որպեսզի իր շնորհիվ Նա մեզ ների մեր թուլությունների համար, և թո յլ տա ուրախ երեսով երևալ իր փառքի դահի առաջ. թող Նա օրհնյալ ու գովյալ լինի հավիտյանս հավիտենից։

## Առաջին եպիսկոպոս՝ Պկիդա[6]

Ադիաբենի առաջին եպիսկոպոսը, ինչպես Հաբել վարդապետն է ասում, մար Պկիդան ձեռնադրությունը ստացել է անձամբ Ադդա առաքյալից։ Նա Բերի անունով աղքատ մի մարդու զավակ էր, որը մի մոգի մոտ ծառայության մեջ էր։ Բայց սուրբ Հոգու շնորհիվ, որ առատությամբ մեր Տեր Հիսուս Քրիստոսը բաշխել է մեզ, (հավատը) շարժվեց նրա որդու սրտում, երբ սա տեսավ, թե ինչպես Ադդա առաքյալը հրաշքով մահացած մի երիտասարդ աղջկա գերեզման տանելիս նրան վերակենդանացրեց ու հանձնեց ծնողներին։ Ուստի որոշեց նրան (առաքյալին) աշակերտել։ Թե ինչպիսի տանջանքների ենթարկեցին նրան հայրն ու ազգականները, այդ (բոլորը), ոչ բերանը կարող է նկարագրել և ոչ էլ միտքը ըմբռնել։ Հակառակ այդ ամենին, նա անհողդողդ մնաց իր գաղափարների մեջ։ Ծնողները բանտարկեցին նրան մութ սենյակում, սակայն նրան օգնեցին, և դուռը բացվեց նրա

---

[5] «Գիրք Սաղմոսաց», գլ. ԽԳ (ԽԴ), 23։

[6] Մշիխա Զեխայի տվյալներով Պկիդան Ադիաբենում եպիսկոպոսական պաշտոնի վրա է եղել 103—113 թթ.։ Ինչպես պատմիչն է վկայում, Պկիդան պաշտոնավարել է 10 տարի. նրա մահից հետո աթոռը 6 տարի թափուր է մնում, և ապա բազմում է Շեմշունը 2 տարի. սա գլխատվում է Տրայանոսի կողմից՝ Ադիաբենը նվաճելուց 7 տարի հետո։ Հայտնի է, որ այն տեղի է ունեցել մ. թ. ա 116 թ., ուրեմն նա նահատակվել է ըստ Մշիխա Զեխայի մ. թ. 123 թ.։ Այսպիսով կարող ենք գտնել նաև Պկիդայի եպիսկոպոսության տարիները։ Եթե հանենք ուրեմն 18 տարիները, ապա կստացվի այն, որ Պկիդան եպիսկոպոսական աթոռին է բազմել 103—113 թթ.։ Ահա այս հաշվումներին հետևելով, ըստ Մշիխա Զեխայի վերականգնել ենք յուրաքանչյուր եպիսկոպոսի պաշտոնավարության տարեթիվը, որը, սակայն, ժամանակագրական փաստերին չի համապատասխանում։

առաջ։ Նա փախավ ու գնաց առաքյալին որոնելու, բայց նրան չգտավ։ Երբ իմացավ, որ նա գնացել է լեռան վրա (եղած) գյուղերը, իսկույն ուզեց գնալ ու միանալ՝ նրան աշակերտելու, և նրանից օրհնություն ստանալու համար։ Երբ բազում օրերից հետո հասավ երանելիի մոտ, նա (Երանելին) շատ ուրախացավ նրա մտադրության համար և սկսեց նրան իր հետ տանել ամեն տեղ, ուր որ գնում էր։ Ասում են, որ հինգ տարի հետո նրան ձեռնադրեց ու հայրենիք ուղարկեց։ Սա սկսեց քարոզել հեթանոս ամբոխներին, առաքյալների նման սքանչելիքներ ու հրաշքներ գործել և Քրիստոսի փարախն ընդունել մեծ թվով ոչխարների[7], որն աստծու շնորհիվ լցվեց։ Տասը տարի հետո նա վախճանվեց ու իր աշակերտների կողմից թաղվեց իր ծնողների կալվածքում, որոնք նույնպես հավատափոխ էին եղել ու հետևել իրեն։

## Երկրորդ եպիսկոպոս՝ Շեմշուն[8]

6 տարուց հետո Բեյթ-Զաբդեի[9] եպիսկոպոս Մեզրան, առևտրական կարավանների հետ միասին եկավ Ադիաբենե։ Նա երբ իմացավ, որ այստեղ կա քրիստոնյաների մի համայնք, գաղտնի եկավ նրանց մոտ ու երբ նրանք (քրիստոնյաները) վստահեցին նրան, թույլ տվեցին, որ նա տուն մտնի և նրան ասացին, որ վեց տարի է շարունակ ղեկավար չունեն։ Նրանից խնդրեցին, որ նա Շեմշուն սարկավագին իրենց համար եպիսկոպոս ձեռնադրի։ Անսալով նրանց բարի ցանկություններին, նրան ձեռնադրեց, որովհետև իմացավ, որ նա Պկիդայի սարկավագն է եղել։ Սա սկսեց իր հերթին կառավարել աստծու այդ համայնքը, և նրան «ի վայրի դալարւոջ բնակեցոյց»[10]։ Սա դուրս եկավ ու սկսեց քարոզել ու ձեռնադրել, հարևան գյուղերում, որոնք կրակ էին պաշտում այն մեծ տոնին, որը Շահրաբգամուդ[11] էր կոչվում։

---

[7] Այլաբանորեն է վերցված, նկատի ունի հավատացյալ մարդկանց։

[8] 121—123 թթ. (ըստ Մշիխա Զեխայի)։

[9] Գտնվում է Տիգրիսի Արևելյան ափի մոտ, Արզնից քիչ հեռավորության վրա, արևելյան կողմից։

[10] «Գիրք Սաղմոսաց», ԻԲ (ԻԳ), 2։

[11] Հետաքրքրական ասորերեն բարդ բառ է. «շահր» ասորերեն նշանակում է «հսկում», «սուգի օր», իսկ «աբ» «հայր, ծնող», «գամուգ» «նախնիներ», «լաց ու կոծ», «հագուստը պատառոտել»։ Կարծում ենք, որ այս տոնը եղել է մեռածներին հիշելու, սգալու օր։ Տոնի նկարագրությունն էլ այդ իմաստը ունի, այսինքն՝ «մեռելոցի օր»։



5—893

Նրանք (հեթանոսները) փոքր երեխաներին (կրակն) էին գցում. Հաբել պատմիչը այս տոնը հետևյալ ձևով է նկարագրում. «Այս տոնը,—գրում է նա,—տեղի էր ունենում իյար (մայիս) ամսում և ամբողջ երկիրը հավաքվում էր մեծ աղբյուրի մոտ։ (Աղբյուրում) լողանալուց հետո, նստում ճաշ էին պատրաստում ու տալիս իրենց ստրուկներին։ Նրանք չէին ճաշում մինչև որ իրենց փոքր երեխաներից մեկին կրակն էին գցում, հանում էին լյարդն ու երիկամունքները ու կախում մոտը եղած ծառից, ի հարգանս իրենց տոնին։ Ապա իրենց հաճույքի համար բազում ղիակներ նետում էին դեպի երկինք ու վերադառնում իրենց տները»[12]։

Երկու տարի շարունակ քարոզելուց հետո նա շատ մարդկանց մկրտեց, և քրիստոնեական կրոնը Շեմշունի առաքինության շնորհիվ տարածվեց երկրում։ Երբ կատարվածի մասին իմացան երկրի մեծամեծներն ու մոգերը, նրան բանտարկեցին ու բազում չարչարանքներից հետո գլխատեցին։ Այն տեղի ունեցավ, ասում է Հաբելը, Արշակունիների արքա՝ Խոսրովի՝ հռոմեացիների կայսր՝ Տրայանոսից պարտվելուց 7 տարի անց, երբ նա (Տրայանոսը) մեր երկիրն էր եկել[13]։ Մեր երկրում առաջին մարտիրոսը Շեմշունը եղավ ու երկինք բարձրացավ։ Թող Տերը մեզ նրա աղոթքներով օգնի և մենք հետևենք նրա օրինակին, մինչև որ ժառանգենք նրա երանությունները։

Ի՞նչ ասեմ այժմ, ինչպե՞ս գովեմ այս երանելի առաքյալին, որը մեր Տիրոջ օրինակին հետևելով, մեզ համար հայցելուց չի դադարում։ Երկրպագենք մեր Տիրոջ Հիսուս Քրիստոսին, որն իր խոսքի ավանդը վստահել է առաքյալներին, և նրանցից հետո, նրանց հաջորդներին, և Նա նրանց խոսքին ուժ է տվել, և այդ պատճառով, անկիրթ ու բարբարոս ժողովուրդները հիանում ու զմայլում են նրանց խոսքին, և այժմ այդ խոսքի արձագանքը տարածվել է ամբողջ աշխարհով մեկ, որովհետև գրված է. «Ընդ ամենայն երկիր ել բարբառ նոցա, մինչեւ ի ծագս աշխարհի են խօսք նոցա»[13ա]։ Նա է, որ նրանց ուժեղացնելով, ամեն ինչ նրանց միջոցով է կատարում, թող Նա միշտ, հավիտյանս հավիտենից փառավորվի, քանի որ նման մարդկանց է ծնել մեր

---

[12] Պատմիչը այս հատվածը ամբողջությամբ վերցրել է Հաբելի գրքից, դրա համար էլ առանձնացրել է։

[13] Տրայանոսը Ադիաբենը գրավել է Տեր թվականության 115 թ. ուստի Շեմշուն եպիսկոպոսը գլխատվել է 123 թվականին։

[13ա] «Գիրք Սաղմոսաց» ԺԸ (ԺԹ), 5։

երկիրը։ Իմ սիրելի Պինես, նրանց արյունով է, որ մեր երկրի ակոսները ոռոգվում են, և նրանց սերմերից են ծլում ու տալիս մեկին երեսուն, վաթսուն ու հարյուր։ Հին կտակարանի Շեմշունը[14] իր ուժով փախցրեց ու հպատակեցրեց փղշտացիներին, իսկ Նոր կտակարանի Շեմշունն իր ժամանակի փղշտացիներին՝ հեթանոսներին հնազանդեցրեց ու նրանց Քրիստոսի ծառայության լծի տակ դրեց, Տիրոջ ուժով, ծոմապահությամբ ու անձի ուրացումով, և այնպես կապեց նրանց, որ ոչ մի (ուժ) չի կարող խզել նրանց կապերը։ Հին կտակարանում (Տերը) ցույց տվեց իր ուժը, իսկ Նորում՝ իր շնորհը։ Թող նրա ուժն ու շնորհը անպակաս լինեն մեզանից։

## Երրորդ Եպիսկոպոս՝ Իսահակ[15]

Քրիստոսի այս մարտիկից հետո, բաղում քրիստոնյաների առաջնորդն էր մար Իսահակը, եռանդուն և համեստ մի մարդ, որն Իսահակի[16] նման կենդանի զոհ գարձավ։ Աստվածային նախախնամությունը թույլ չի տալիս, որ չարաբարո թշնամու սլաքները թափանցեն ամբողջ սրբության միջով։ Նա (ևս) իր հերթին, ինչպես իր եղբայրակիցները, անդադար քարոզեց ավետարանը։

Իր ժամանակ կար հայտնի ու հարուստ մի մարդ՝ Ռակբակտ անունով, որն ինչպես ասում են, արքայի կողմից նշանակվել էր այս երկիրը (Ադիաբենը) ղեկավարելու։ Երբ լսեց մար Իսահակի մասին, եղավ նրա մոտ և հարցրեց իր կրոնի մասին։ Ապա նա շատ խնդրեց, որ իրեն ընդունեն (շարքերը)։ Շատ օրեր հետո, Իսահակը նրան գաղտնի մկրտեց, որովհետև վախենում էր պարթևների արքա՝ Վաղարշ Բ-ից[17]։ Այս մարդու միջոցով ու օգնությամբ, Կոստանդիանոսի[18] ժամանակ քրիստոնեական կրոնը հարևան գյուղերում տարածվեց և հեթանոս քուրմերը նրա դեմ դուրս եկան, և ուզեցին նրան հավատափոխ անել, իզուր փորձերից հետո, ի վերջո որոշեցին նրան սպանել, որպեսզի մոգերի կրոնը իր գոյությունը շարունակի։

---

[14] Սամսոնը։

[15] 135—148 թթ. (ըստ Մշիխա Զխայի)։

[16] Նկատի ունի Հին կտակարանի Աբրահամի որդի Իսահակին, որին նրա հայրը աստծու հրամանով զոհ էր մատուցելու։

[17] Վաղարշ Բ թագավորը՝ թագավորել է 105—147 թթ.։

[18] Ի՞նչ Կոստանդիանոսի մասին է խոսքը, անհասկանալի է, որովհետև եթե Կոստանդիանոս կայսրի մասին է խոսքը, ապա նա ապրել է IV դարում։ Համենայն դեպս սա ճիշտ չէ, որովհետև խոսքը այստեղ Ռակբակտի մասին է։

Հետևյալն է պատմում Հարել վարդապետը. «Նրանք (քուրմերը) լեռներում ապրող իրենց կրոնակից մոգերին հրամայեցին, որ փոխեն իրենց զգեստները ու հագնվեն օտարական մեծամեծների նման և գնան Տիրոջ սուրբի մոտ, որպես ճանապարհորդ ու գիշերեն նրա մոտ, և ուշ գիշերին նրան սպանեն ու իրենց տեղերը վերադառնան»[19]։

Ամենաբարձրյալի թշնամիներն ու անիծյալ սատանայի բարեկամներն իրենց եղբայրակից մոգերի թելադրանքների ու ցուցմունքների համաձայն, ամեն ինչ արեցին։ Ուրեմն նախապես ուղարկեցին բազում ծառաների, որպեսզի հավատարիմ Ռակբակտին հայտնեն, որ հռոմեական հեռու երկրից իր մոտ են գալիս նշանավոր (մարդիկ), որոնք ուզում են իր մոտ գիշերել, հետևաբար նա նրանց պատվին արժանի խնջույքի սեղան պետք է պատրաստեր։ Տիրոջ սուրբը այդ իմանալով, մտածեց շտապ ամեն ինչ ըստ արժանվույն պատրաստել, և իր հոգին աստվածային ուրախությամբ լցվեց, որովհետև կարծում էր, որ գուցե կկարողանա նրանց, միակ աստծու, երկնքի և երկրի արարչի հավատին դարձնել։ Ամեն ինչ պատրաստ էր, երբ սատանայի պատվիրակները հասան, թամբած ձիերի վրա նստած։ «Իբրեւ ղի բարի է Աստուած՝ Իսրայելի, եւ ոյք ուղիղ են սրտիւք»[20], թեև նրան ուզում էին լարված աղեղով[21] վնասել, բայց մինչ նրանք ընթրում էին, Տիղբոնից՝ Վաղարշ արքայի մոտից պատգամավոր[22] եկավ տիրոջ սրբի մոտ և նրան հայտնեց, որ նա շտապի իր բարի ցանկությամբ, և մեկնի Տիղբոն, որպեսզի միասին, իրենց ուժերով, կարողանան ճնշել բարբարոս ցեղերի հարձակումը, որոնք Կարդու աշխարհում[23] կողոպտել ու կործանել էին բազում քա-

---

[19] Նորից ամբողջությամբ, ինչպես պատմիչն է վկայում, վերցրել է Հաբելի գրքից։

[20] «Գիրք Սաղմոսաց», ՀԲ (ՀԳ), 1։

[21] Այլաբանորեն է վերցված. «Գիրք Սաղմոսաց», Ժ (ԺԱ)-ից։

[22] Ասորերեն բնագրում «Թաբուլարա» է (taboulara), նշանակում է գրագիր, քարտուղար, պատգամավոր։

[23] Կորդվաց աշխարհ։ Թե ինչ ապստամբ ցեղերի մասին է խոսքը, դժբախտաբար, պատմիչը ոչինչ չի ասում։ Հավանաբար Կորգվաց աշխարհից ոչ հեռու ապրող ցեղախմբեր էին, որոնք ապստամբվելով Պարսից արքայի դեմ հարձակվել ու կողոպտել էին Կորդվաց աշխարհն ու քաղաքները։ Ահա այդ հյուսիսից եկած բարբարոս ցեղախմբերը դալիս իրենց երկրին են կողոպտում, և հետո նրանք, ինչպես պատմիչն է նկարագրում, լքում են այդ վայրերը ու գնում են իրենց երկիրը պաշտպանելու։ Հայտնի չէ նաև այս ցեղերը ո՞ր ծովից այն կողմ էին ապրում. Սև ծովի՞ թե Կասպից։

ղաքներ։ Նա մեկնելու պատրաստվեց, իսկ սատանայի հյուրերի խնամքը վստահեց իր եղբորը, որը հեթանոս էր, և շտապ ճանապարհ ընկավ պատգամավորի հետ, տնից մի քանիսի հետ ընկերակցելով, և կարգադրեց, որ իր եղբայրը ևս զորք հավաքի ու դրանց անձամբ առաջնորդի ու բերի Տիզբոն։

Այսպիսով մոգերի նյութած խաբեբայությունը խափանվեց և Ռակբակտր Տիրոջ օգնությամբ, հզորացած, խուսափեց (վտանգից), մինչ մոգերը իրենց ատելությունը թափեցին քաջ ու ամուր Իսահակի՝ Տիրոջ ծառայի գլխին։ Այսպես, երկու օր հետո, նրան ինչ-որ մութ սենյակում բանտարկեցին։ Ուզում էին նրան սպանել, սակայն վախենում էին խռովությունից ու ժողովրդի զայրույթից, և (մանավանդ) երկնչում էին բանակի հրամանատար՝ Ռակբակտից։

Երբ նա՝ հաղթականը (Ռակբակտը) աստծու օգնությամբ իմացավ այս տխուր լուրը, Տիզբոնից, որտեղ գտնվում էր, հրամայեց աստծու ծառային ազատել, և բանտից դուրս հանելով, բացարձակ ազատություն շնորհել։ Նա բազում երդումներով սպառնաց, որ կսպանի նրան, ով իր հրամանին չի ենթարկվի ու կատարելուց կհրաժարվի։ Այսպես աստծու մարգարեն բանտից դուրս եկավ։ Քաջ, հսկա Ռակբակտր 16 օր մնաց Տիզբոնում. այս քաղաքում էր նաև բանակի հրամանատար Արշակը, նա հրամայեց, և բազում զինվորներ, մոտ քսան հազար մարդ, բոլորն էլ հետևակ, իր մոտ հավաքվեցին և արշավեցին ապստամբների դեմ։ Աստված գիտե, թե ինչպիսի՜ դժվարությունների պատահեցին ճանապարհին և ինչպիսի՜ դժվարանցանելի լեռներ մագլցեցին, հասան ու հանդիպման առաջին իսկ րոպեից առաջամարտիկների փոքր խմբերի հետ (մարտի) մտան, և այդ ժամանակ ապստամբները պարտվեցին։ Սակայն վերջը ապստամբների ղեկավարներից մեկը՝ Կիզո անունով, (ստիպեց) Արշակին մտնել լեռների կիրճերը և նրան շրջապատեց։ Մեծ մարտ տեղի ունեցավ և այն երեք օր տևեց, սակայն սաստիկ սովից Արշակի զորքերը թուլացան, հուսահատվեցին և ցրվել սկսեցին։ Այն ժամանակ քաջ Ռակբակտր զորքի շարքից դուրս եկավ, կանչեց զինվորներին, և իր բույնը թողող արծվի նման մագլցեց լեռը. հարձակվեց ու սոսկալի իրարանցում առաջացրեց (ապստամբների) մեջ։ Նա ճանապարհ բացեց Արշակի ու մյուս զորքերի համար, որպեսզի նրանք փախչեն ու ազատվեն այդ ահավոր գայլերից։

Բայց աստուծո հերոսը ընկավ թշնամիների շարքերի մեջ։

նրանցից մեկը, նիզակի մի հարվածով ծակեց կողքը և նա Հուդա Մակաբայեցու նման[24], Տիրոջ ու իր ժողովրդի փրկության համար ընկավ, հողին ավանդեց ու մահացավ։ Եթե նա այդպիսի արագ ընկերասիրական քայլ չկատարեր, բոլոր զինվորները կարող էին ոչնչանալ։ Այս պատահարից հետո, ասպատամբները որոշեցին դաշտ իջնել ու Արշակից զրավել բոլոր քաղաքները, սակայն նրանք իրենց հերթին, իմանալով, որ մի այլ բարբարոս ժողովուրդ ծովն անցել ու գողերի նման եկել, իրենց քաղաքներն են կործանում, այրում ու տանում այնտեղ եղածներին, նույնիսկ իրենց կանանց, ետ վերադարձան, իրենց սեփական երկրին օգնության հասնելու համար։ Երբ նրանք հասան, երկու ամիս շարունակ նրանց դեմ (բարբարոսների) պատերազմեցին, մինչև նրանց հաղթեցին ու ստիպեցին, որ նրանք (բարբարոսները) անցնեն Ծովի այն կողմը։ Գրիչը չի կարող նկարագրել այն մեծ վիշտը, որ ընդգրկել էր մեր երկիրը, երբ ստացան Ռակբակտի մահվան լուրը։ Ճշմարիտ քրիստոնյաների արցունքները թափվում էին նրա համար և լացում, ինչպես Դավիթն էր (լացում) Հովնաթանի համար. «Զիա՞րդ անկան\զորաւորքն ի մէջ պատերազմի. Յովնաթան, ի վերայ բարձանց քոց վիրաւոր։ Յաւ է ինձ ի վերայ քո, եղբայր իմ Յովնաթան. գեղեցկացար ինձ յոյժ», և դու իմ ամբողջ երջանկությունն ես, և ո՞վ կարող է այժմ վերջ տալ այն վշտին, որ ընդգրկեց Իսահակին, իր պաշտպանի մահից հետո։ Այս հարցին լուռ ենք մնում, որովհետև դատաստանի օրը մենք իրերը կտեսնենք իրենց իսկության մեջ, այնպես ինչպես կան իրապես։

## Չորրորդ եպիսկոպոս՝ Աբրահամ[25]

Նրա (Ռակբակտի) մահից մի՝ քիչ անց վախճանվեց նաև Տիրոջ սիրելի մար Իսահակը, 13 տարի իր հոտը ղեկավարելուց հետո։ Այս դործունյա մարդը, որին Տիրոջ տան նախանձը «եկեր»[26], սա կառուցել ու օծել էր մի մեծ եկեղեցի, և որը մինչև մեր օրերը գոյություն ունի, և նրա անունով էլ կոչվում է։ Նրանից հետո (աթոռ) բարձրացավ Աբրահամ վարդապետը, ինչ որ մահացած Սողոմոնի որդին, որը հրեական ամրոցի[27] մոտա-

[24] «Գիրք Առաջներորդ Մակաբայեցւոց», գլ. Թ, 13։

[25] 148—163 թթ. (ըստ Մշիխա Զխայի)։

[26] «Գիրք Սաղմոսաց», ԿԸ (ԿԹ), 10։

[27] Այժմյան Մուսուլ քաղաքն ու շրջակայքը։ Հին ասորական գրականության մեջ այն կոչվում է հրեական ամրոց. տե՛ս Narsai, Homiliae et carmina, vol. II, p. 410.

Կայքում գտնվող իսկական Հերդա գյուղից էր։ Իր մեծ հայրը եկել ու հաստատվել էր Արբելա (քաղաքը) և նրա ծնողները դեռ նրա երիտասարդության ժամանակ, Շեմշուն եպիսկոպոսի օրոք, քրիստոնեություն էին ընդունել։ Նա (Աբրահամը) իր հերթին համայնքը ղեկավարեց ամեն գովեստից վեր բարությամբ ու համեստությամբ։ Երկար ժամանակ նա բարձր լեռներում բնակվեց, տարածում էր քրիստոնեական հավատը, քարոզում իսկական կրոնը և մկրտում, «յանուն Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ»[28]։

Բարձր լեռներում ապրելիս ու քրիստոնեական հավատը տարածելիս, մոգերը հալածանքի դուրս եկան մեր երկրի քրիստոնյաների դեմ, նրանց ամբողջ ունեցվածքը կողոպտեցին, և անողորմ ձևով տանջեցին։ Այդ լուրը հասավ մար Աբրահամ եպիսկոպոսին, և նա իջավ լեռներից ու իր կատարած հրաշքների ուժի միջոցով, և իր անիմանալի իմաստության շնորհիվ թույլ չտվեց, որ գայլերը հափշտակեն ու հոշոտեն Քրիստոսի բոլոր ծառաներին։ Նրանց հանդարտեցնելուց հետո, նա գնաց Տիզբոն։ Վաղարշ Բ արքան մահացել էր, և նրան հաջորդել էր Վաղարշ Գ[29]։ Տիրոջ ծառան իր հետ, քաղաքի մեծամեծների համար բազում նվերներ էր տարել, որպեսզի նրանց օգնությամբ, հեթանոսների արքայից, իր երկրի քրիստոնյաների օգտին մի նամակ ստանա, որպեսզի մոգերը իրենց իզուր ու անարդար տեղը չչարչարեն։ Թագավորության խառը գործերը թույլ չտվեցին, որ նա իր նպատակին հասնի, որովհետև այնտեղ, երկրի բոլոր կողմերից, բազում զորք էր հավաքվել և պատրաստվում էր հռոմեական երկրների վրա հարձակվել։ Ուստի նա առանց նամակը բերելու վերադարձավ։ Սակայն աստված չկամեցավ, որ (պարթև) արքաների ցանկությունը իրականանա, որովհետև, բազում հարվածներից հետո, պարթևները պարտվեցին և հռոմեական բանակներից հալածվեցին մինչև իրենց երկիրը՝ Տիզբոն։ Այսպես, աստված երկուսից էլ (պետություններից) վրեժ լուծեց, և նրանց դեմ բաց թողեց ահավոր մի ժանտախտ, և նրանցից շատերը ոչնչացան։ Հռոմեացիները ստիպված իրենց երկիրը վերադարձան, և փախուստից հետո էլ հանգիստ չգտան, որովհետև ժանտախտը, որը նրանց թակարդի մեջ էր գցել, շատերին հնձեց։ Նրանք պարթևներին մեծ քանակությամբ հարստություն

---

28 «Աւետարան ըստ Մատթէոսի», ԻԸ, 19։
29 Մ. Թ. 148—191 թթ.։

թողեցին, որովհետև վախից նրանք ժամանակ չունեցան իրենց ունեցվածքը տեղափոխելու։ Ժանտախտը տևեց 3 ամիս և շատ տներ ոչնչացրեց։

Երբ ժանտախտը տարածվեց նաև մեր երկրում, Աբրահամ եպիսկոպոսը իր մեջ թաքնված աստվածային ամբողջ ուժով ձգնեց սփոփել, թեթևացնել վարակվածների (ցավերը)։ Ինքը ևս ծանր վարակվեց։ Ուստի նա ձեռնադրեց իր սարկավագ Նոյին, և գրախտ գնաց, որտեղ էլ արդար դատավորից կստանա իր բարի գործերի վարձատրությունը։ Նա 15 տարի ղեկավարել է Ադիաբենի հայտնի թեմը։

## Հինգերորդ եպիսկոպոս՝ Նոյ[30]

Այս պարկեշտ մարդու ծնողները Անբարի անապատից էին ու եկել էին Երուսաղեմից։ Այնտեղ, նա փոքր հասակից կապվել էր քրիստոնյաների հետ ու աստվածային ուժի շնորհիվ մկրտվել։ Նրա ծնողները Արևելք եկան ու հաստատվեցին Ադիաբենում, որտեղ շատ հրեաներ կային։ Նրանք վախենում էին իրենց նախկին երկիրը վերադառնալուց, որովհետև անընդհատ դժվարությունների էին հանդիպում։ Երբ այս փոքր տղան՝ Նոյը իմացավ, որ այստեղ էլ քրիստոնյաներ կան, գտավ Աբրահամին ու դարձավ նրա բարեկամը։ Ծոմի, անդադար աղոթքների և անվերջ ու անհամար հսկումների շնորհիվ, հասավ սրբության բարձր աստիճանին ու տեսիլքների արժանացավ աստծուց, որոնց շնորհիվ նա կարողացավ առաքյալներին հավասար սքանչելիքներ ու հրաշքներ գործել։ Ո՞վ կարող է պատմել դրա պատճառով անհավատներից ու մոգերից կրած նրա տանջանքների մասին։

Այնտեղ է, որ իրենց վարձատրության մեծ բաժինը կտրվի առաքյալներին ու բոլոր աստծո եկեղեցու (հավատացյալներին)։ Գրված է. «Յիշեցէք զբանն զոր ասացի ձեզ, թէ ոչ է ծառայ մեծ քան զտէր իւր. եթէ զիս հալածիցեն, ապա եւ զձեզ հալածեսցեն»[31]։ Նորից «Զայս խօսեցայ ընդ ձեզ՝ զի մի գայթակղեսջիք։ Ի ժողովրդոց իւրեանց հանիցեն զձեզ. այլ եկեսցէ ժամանակ զի ամենայն որ սպանանիցէ զձեզ՝ համարիցի պաշտօն մատուցանել Աստուծոյ»[32]։ Եկեղեցին Քրիստոսի հոգեկան թագավորությունն է

30 163—179 թթ.։

31 «Աւետարան ըստ Յովհաննու», գլ. ԺԵ, 20։

32 Նոյն տեղում, գլ. ԺԶ, 1—2։

երկրի վրա, սակայն այս եկեղեցին խառնվել է չարերի, անհավատների մոդերի ու հեթանոսների հետ, և ամեն վայրկյան նրանց հետ պատերազմի մեջ է. մենք հուսով ենք, որ նա (եկեղեցին) միշտ կհաղթանակի ու կգերազանցի, որովհետև մեր Տերը ասել է. «Զի ես յաղթեցի աշխարհի»[33] և նրա առաջ դժոխքի դռները չեն բացվելու։ Այս թշնամությունը, որ գոյություն ունի Քրիստոսի եկեղեցու և աշխարհի միջև, շարունակվելու է մինչև աշխարհի վերջը, երբ ցորենը հավաքվելու է շտեմարանում, իսկ որոմնը՝ այրվելու[34]:

Նոյ եպիսկոպոսը այս էր հիշում, երբ նրան հինգ անգամ բանտ գցեցին. ծով երջանկությունը ողողում էր նրան, երբ տասներկու անգամ նրան գավազաններով, մտրակներով ծեծեցին, մինչև որ արյունը հոսեց «իբրև ոչխար ի սպանդ վարեցաւ»[35]։

Վերջում աստված ինքը ևս շարժվեց, վրեժ լուծելու իր սուրբի, նրան ապիրատների ձեռքից ազատելու համար. այսպիսով կատարվեց Դավթի խոսքը. «Մանուկ էի ես եւ ծերացայ, եւ ոչ տեսի զարդարն արհամարհեալ»[36]։ Մի օր Ռազահ անունով մի մարդու որդի, հարուստ և ազնվական, Ադիաբենի գյուղերից մեկի տան բարձրությունից ընկավ, ջարդեց ոտքի ու թևի գլխավոր առաջամասը։ Երբ այս դեպքը պատահեց, նա իր տանը չէր, այլ Արբելա քաղաքում, իր տան գործերով, նա վերադարձավ գառը արցունքներով, առանց իր տան գործերի ընթացքը իմանալու։ Սուրբ Նոյը, այն ժամանակ, այն մեծ գյուղում էր գտնվում, որը կառուցված էր Զաբի վրա, որովհետև նա այնտեղ էր փախել ու թաքնվել մոգերի թույնից։ Երբ Ռազահը հասավ ու տեսավ իր միակ (որդուն) մահամերձ, վշտի ծանրությունից ուշագնաց եղավ, և սկսեց մոխիր ցանել իր գլխին ու ամբողջ տան վրա։ Այն ժամանակ աստծո սուրբը այնտեղ գնաց և տանտերերին խոստացավ, որ նրանց որդուն ոտքի կկանգնեցնի, այն պայմանով, որ նրանք հավատան Հիսուս Քրիստոսին։ Նրանք պատասխանեցին՝ եթե դու այս սիրելի երեխային նորից վերակենդանացնես, դու ինչ որ ուզում ես, ամեն ինչ կանենք։ Ուստի սուրբը աղոթեց և ասաց. «Տեր, հայր Նահապետների, դու որ քո ուժը ցույց ես տվել հրեա ժողովրդիդ ու ընտրյալներիդ, դու որ Մովսեսի

[33] «Աւետարան ըստ Յովհաննու», գլ. ԺԶ, 33
[34] «Աւետարան ըստ Մատթէոսի», ԺԳ, 30։
[35] «Մարգարէութիւն Եսայեայ», գլ. ԾԳ, 7։
[36] «Գիրք Սաղմոսաց», գլ. ԼԶ (ԼԷ), 25։

միջոցով բաղում հոյակապ սքանչելիքներ ես գործել, և քո ամենակարող ուժով Իսրայելի որդիներին աղատել, դու որ բոլորին հայտարարել ես, որ չես ուրախանում մեղավորների մահով, այլ ուղում ես որ նրանք իրենց կատարած ամբարշտության համար պատժվեն, դու որ քո բարեկամ Ղադարին, որը չորս օր էր արդեն մահացել, նրան հարություն տվեցիր,[37] և դու, որ ասել ես. «Որ հաւատայն յիս, ըդործս զոր ես գործեմ, եւ նա գործեսցէ, եւ մեծամեծս եւս քան ընոյնս գործեսցէ»[38], և առաքյալները հրաշքների շնորհիվ ամեն տեղ քո անունը տարածեցին ու ստեղծեցին քո եկեղեցին ու այն կառուցեցին Սիմոն-Պետրոսի անառիկ վեմի վրա[39]։ «Դու Տեր այժմ նայիր քո ծառային, և այս փոքր տղային, որն իր մաքրությամբ ու լռությամբ քեզ է հավատում, և (դիտի) որ դու ես ճշմարիտ աստվածը»[40], կարեկցանքով նայիր այստեղ հավաքված այս ամբոխին, որը քո շնորհին է սպասում, վերակենդանացրու այս հոգին, որը քո նմանությամբ ու պատկերով է ստեղծված, և բուժիր նրան իր մարմնական հիվանդությունից»[41]։ Այս վերջին բառերը արտասանելիս նա երեխայի վրա խաչակնքեց։ Սա իսկույն վեր կացավ, բուժված իր ցավերից, հիվանդություններից ու վերքերից։ Բաղում մարդիկ իմացան այս հրաշքի մասին, և յուրաքանչյուրն աստծուն փառավորում էր, որ իր արարածների միջոցով ցույց տվեց իր մեծահոգությունը. Ռաղահն ու իր տան մարդիկ, իրենց խոստումը կատարեցին, մկրտվեցին ու իրենց ամբողջ կյանքը սրբությամբ ապրեցին։ Աստծո սուրբը մոգերի ահից այլևս չէր կարող Արբելա քաղաքը վերադառնալ, ապրեց Ռաղահի տանը ու գյուղի բոլոր բնակիչներին ճշմարիտ հավատին դարձրեց։ Նա ևս գնաց Նինվե երկիրը, և Քրիստոսի անունը տարածեց այն բաղում գյուղերում, որոնք նրա (Քրիստոսի) անունը չէին լսել։ Ռեշի կոչվող մի գյուղում ինչ- որ բևեկնու (ծառ) էին պաշտում, հավատափոխ արեց նրանց բոլորին, և նրանք հավատացին, որ հրեաներից խաչված Քրիստոսը, իսկապես աստծո որդին է։ Այս գյուղում (քրիստոնեական) սկզբունքներ ստանալուց հետո, ծառի շրջապատում ոչ ոք արյուն թափել չէր

---

[37] «Աւետարան ըստ Յովհաննու», գլ. ԺԱ, 17։
[38] Նույն տեղում գլ. ԺԴ, 12։
[39] «Աւետարան ըստ Մատթէոսի», գլ. ԺԶ, 18։
[40] «Աւետարան ըստ Յովհաննու», ԺԷ, 3։
[41] «Ծնունդք», գլ. Ա, 26։

համարձակվում[42]։ Մի օր երբ երեխաները խաղում էին այս անիծյալ ծառի մոտ, մի սև օձ դուրս եկավ։ Երեխաները աստծո հոգով թելադրված քարերով նրան սպանեցին, և նրա արյունը գետին թափվեց։ Երեկո եղավ, գյուղի բնակիչները գնացին նույն տեղը աղոթելու, բայց զարմանալի հրաշք կատարվեց, նրանք տեղում նորից արյուն տեսան։ Իսկույն վերադարձան և աստծո վախից սկսեցին ողբալ։ Աստծո սուրբն այնտեղ էր գտնվում, և սուրբ հոգու շնորհիվ, պաշտված ծառի վրա խաչակնքեց ու այն (ծառը) այնտեղից անմիջապես անհետացավ, և շատ օրեր հետո այն հայտնվեց Դակուկ[43] քաղաքում։ Հեթանոսները սրբին կապեցին ու պատրաստվեցին նրան կենդանի այրել, որովհետև հավատում էին, որ նա էր առաջին ու վերջին չարիքների հեղինակը։ Սակայն այն վայրկյանին, երբ ուզում էին վառել խարույկը, ծառն իր տեղը վերադարձավ ու ամրացավ։ Այդ (տեսնելիս), ապիրատները մեկը մյուսին ասում էին, որ իսկապես մեր աստվածը չի ուզում, որ սպանենք այս մարդուն, քանզի այն պահին երբ մենք ուզում էինք նրան սպանել, մեր աստվածը վերադարձավ, թվում է, որ այս կոչով, նա մեզ ասում էր, որ իրեն չսպանենք։ Մենք մեր աստծուն հակառակվել չենք կարող, քանի որ նա մեզ ցույց է տալիս իր կամքը։ Այս մարդն այն ծաղկի նման է, որ առատ անձրևից հետո փարթամորեն ծաղկում է, սակայն արևը երևալիս թառամում է, բայց նորից անձրևի տակ մնալիս, առավել քան երբեք աճում է։ Սա ևս չորացել էր, սակայն մեր աստվածը ուզեցավ, որ նրան մեր ձեռքից ազատի, այն ողողեց անձրևով։ Թողնենք նրան, ուրեմն և ազատություն տանք, քանի դեռ մեր Տիրոջ վրեժխնդրությունը չենք հրավիրել մեզ վրա։

Աստծո սուրբը տեսնելով, որ նրանք նման մտածմունքների մեջ են ընկղմված, սկսեց նրանց բացատրել քրիստոնյաների ճշմարիտ հավատը և շատերը նրան հավատացին։ Ընտրյալների մեջ էր նաև գյուղապետը, որը Ռազմարդուկ էր կոչվում։ Նա աստծու նախաձեռնությամբ լցված, այդ տեղերից արմատախիլ արեց մոգերի հավատը և նրա փոխարեն տարածեց Հիսուս Քրիստոսի հավատը։ Նա (սուրբը) նրանց սուտ աստվածներից

---

42 Խոսքը մատաղի մասին է։

43 Դակուկը Քերքուկից հյուսիս 8 ժամվա հեռավորության վրա է գտնվում, Մուսուլի և Բաղդադի ճանապարհին, այսինքն Նինվեից մոտ 10 ժամ հեռավորության վրա։

հեռացրեց, նրանց, ովքեր ականջ ունեն, բայց չեն լսում, լսել տվեց, բերան՝ բայց չեն խոսում, խոսել տվեց, աչքեր՝ բայց չեն տեսնում, տեսնել տվեց։[44]

Մի քանի ամիս անց, երանելի Նոյը, բոլոր բնակիչներին մկրտեց և ամբողջ մի տարի մնաց այնտեղ, որից հետո գաղտնի Արբելա մեկնեց։ Երկու տարի շարունակ, տիրոջ այգում աշխատելուց և բազում քահանաներ ու սարկավագներ ձեռնադրելուց հետո, գնաց իր Տիրոջ մոտ (մահացավ), որպեսզի նրանից ստանա իր բարի գործերի վարձատրությունը, անդուլ հսկումների, հրաշքներով ու սքանչելիքներով լեցուն իր կյանքի համար, որին նա արժանի էր։ Նա մեր թեմի մեջ եղող բազում քրիստոնյաներին 16 տարի ղեկավարել է։ Իր մահից հետո մեր եկեղեցին առանց հովվի էր, և հեթանոսների ու մոգերի ատելության պատճառով այրի մնաց։ Այդ ժամանակ մեր եղբայրները շատ տառապեցին։ Շատերը, որոնք երիտասարդ էին ու հավատով թույլ, նորից սատանաների կրոնին դարձան, որովհետև տեսնում էին, որ իրենց տները ավերում էին, տղաներին ու աղջիկներին կալանավորում կամ թաքցնում, և իրենց էլ դաժանորեն ծեծում։

## Վեցերորդ եպիսկոպոս՝ Հաբել[45]

Չորս տարի անց, մեր երկրի քրիստոնյաները, քահանաների ու սարկավագների հետ հավաքվեցին ու եպիսկոպոս ընտրեցին մար Հաբելին ու նրան Հանիտա քաղաքը տարան, որպեսզի (նույն) քաղաքի Զեքայա-Յաշուդ եպիսկոպոսը նրան ձեռնադրի։ Այս բոլորի հետ, երանելի Նոյի հիշատակը չջնջվեց հավատացյալների հիշողությունից։ Նրա անունով եկեղեցի կառուցեցին, որը մինչև այսօր գոյություն ունի։ Քրիստոնյաները ամեն օր դնում էին և իրենց ու իրենց ընտանիքի համար նրա (Նոյի) աղոթքների բարերար ազդեցությունն էին խնդրում։ Սիրելի Պինե՛ս, սրանք են այն նահատակները, որոնք մեր երկրում հանդես եկան և մեզ համար դարձան առաքինության ու սրբության օրինակ, և մենք պետք է անդադար նրանց նմանվենք։

Մար Հաբելը Զայրա[46] գյուղի մի ատաղձագործի տղա էր։

---

[44] «Գիրք Սաղմոսաց» (ճժե), 5—6։

[45] 183—190 թթ. (Ըստ Մշիխա Զեխայի)։

[46] Զայրա կամ Զիրա գյուղը, հավանաբար գտնվում էր Արբելայի հյուսիսարևելքում կամ համարյա մեկ օրվա հեռավորության վրա։ Ոչ մի այլ պատմիչ չի հիշատակում այս գյուղի անունը։

Երբ մեծացավ, հայրը նրան իր ունեցած ոչխարներին հովիվ կարգեց: Դեռ մանկությունից նա հայտնի էր իր բարի կենցաղով ու վայելուչ նկարագրով, և տեսնողներին հիացնում էր: Նա հոգով այն աղքատներից էր, որոնց մասին գրել է ավետարանը և որոնց խոստացել երջանկություն՝ «Երանի աղքատաց հոգւով, զի նոցա է արքայութիւն երկնից»[47]: Նրա հոգին կապված չէր երկրային որևէ բարիքի հետ և հայրը պարզ հասկանում էր, որ որդին այստեղի (երկրային) հարստություններ չի որոնում, այլ մի ուրիշ բան: Երբ նրանք խոսում էին երկրային իրերի շուրջ, նա ուշադրություն չէր դարձնում և ոչ էլ մտածում էր իր ունեցվածքը հարստացնելու մասին: Եթե ինչ որ բան պակասում էր, նա չէր տխրում և ոչ էլ տրտնջում: Այդ պատճառով էլ մի քանի անգամ մոռացել էր ոչխարների խնամքը, և իր հոտի պահպանությունը թողել շանը, և ինքը գնացել ու մտել էր ինչ որ քարանձավ՝ այս աշխարհի ունայնության ու անցողականության մասին խորհրդածելու համար: Այդ պատճառով էլ հայրը նրան երբեք չէր սիրում:

Մի օր, Հաբելը երկու գառ կորցրեց լեռան մեջ և դրա համար էլ հայրը նրան վտարեց տնից: Հաջորդ առավոտ երկու գառները վերադարձան փարախ, ուստի հայրը զղջաց որդուն վտարելու համար: Նա գնաց Արբելա ու աստվածային նախախնամության թելադրանքով տեղավորվեց քրիստոնյաների եկեղեցում: Նրանք (քրիստոնյաները) սկսեցին Քրիստոսի սիրույն նրան ուտելու բան տալ և նրանցից ամեն մեկը (հերթով) նրան տանում էր իր մոտ գիշերելու: Մի քանի օր անց, երեխան ուզեց մկրտվել, և երկու տարի հետո դարձավ մար Աբրահամի սարկավագը: Նա (Աբրահամը) վեց ամիս հետո (վախճանվեց): Երբ աստծո սուրբը վախճանվեց, երիտասարդը մշտապես կապվեց երանելի Նոյին, որին նա որպես հայր էր սիրում[48]: Ինչպես վերևում ասել ենք, այս հովիվը քաղցրաբարո էր և հեզ «զի նոքա ժառանգեսցեն զերկիր»[49], այսինքն երկնային աշխարհը: Իր քաղցրությամբ հանդարտեցնում էր քրիստոնյաների ու հեթանոսների միջև եղած անմիաբանության կրակը: Նա գիտեր սանձել իր լեզուն, որովհետև «Նովաւ օրհնեմք զՏէրն եւ զհայր եւ Նովաւ անիծանեմք

---

[47] «Աւետարան ըստ Մատթէոսի», Գլ. Ե, 3:

[48] Նույն տեղում:

[49] Նույն տեղում, գլ. Ե, 5:

զմարդիկ, որ ըստ նմանութեան Աստուծոյ արարան»[50]։ Մենք չպետք է կարծենք, որ (միայն) դրա համար էր, որ սիրեց դարի մանուկներին և նրանց ճանապարհով քայլեց, այլ որովհետև դիտեր, որ սրբերը, որոնք կատարյալ են և նրանց մեջ սուրբ Հոգին է, որ հեռու է պահում չարից, և դիտեր, նաև «Զի սէր աշխարհիս, թշնամութիւն է առ Աստուած»[51]։

Այն ժամանակ պարթևների թագավոր Վաղարշ Դ-ն[52] ուժեր հավաքեց և հարձակվեց ու հռոմեացիներից բազում հողեր գրավեց։ Ապա վերադարձավ այն պարսիկների դեմ, որոնք երկար ժամանակ նախապատրաստվել էին իրեն հարվածելու։ Վաղարշն անձամբ արշավեց նրանց դեմ 120 հազար զորքով։ Նրանք իրար հանդիպեցին Խորասանում։ Պարթևներն առաջին անգամ փոքր գետն անցնելով, տեսան, որ բոլոր կողմերից շրջապատված են՝ պարսիկների ու մեդացիների բանակներով։ Նրանք (պարթևները) մեծ ճակատամարտից հետո պարտվեցին ու սկսեցին փախչել։ Նրանք բարձրացան մոտակա լեռները, ցրվեցին և իրենց ձիերը թողեցին պարսիկներին։ Նրանք (պարսիկները) լեռներում նրանց շրջապատելով, հետապնդեցին ու անհաշվելի քանակությամբ (զինվորների) կոտորեցին։ Երբ պարթևները տեսան, որ առանց քաջաբար կռվելու, բոլորն էլ հաստատ կկոտորվեն, ստիպված նորից հարձակվեցին պարսիկների վրա և նրանց խուճապի մատնեցին և ստիպեցին փախչել։ Նրանց հետապնդեցին մինչև ծովը, և գետինը մարախների (ամպի) նման դիակներով ծածկեցին։ Վերադարձին հանդիպեցին այլ պարսիկների, որոնք իրենց ընկերներից անջատվել էին. մի նոր ճակատամարտ էլ սկսվեց նրանց միջև և տևեց երկու օր։ Երրորդ օրվա գիշերը, երբ բանակները ի վերջո հանգստանում էին՝ առավոտյան ճակատամարտը վերսկսելու համար, երբ պարթևներն արթնացան, ոչ մի պարսիկ չէր մնացել, բոլորը գիշերը փախել էին՝ իրենց ընկերներին միանալու և նրանց հետ խմբավորվելու համար։ Այսպես պարթևները հաղթական ու իրենց վրա վստահ վերադարձան։

Սիրելի Պինես, այն ժամանակ, ամեն կողմ պատերազմներ էին տեղի ունենում ու ամբողջ երկրում տխուր լուրեր էին (պտտվում), և եթե Տերն[53] անընդհատ իր եկեղեցու հետ չլիներ

[50] «Թուղթ Սրբոյ Արաքելոյն Յակովբայ կաթողիկէ», գլ. Գ, 9։

[51] Նույն տեղում, գլ. Դ, 4։

[52] Թագավորել է 191—208 թթ.։

[53] Այստեղ խոսքը Քրիստոսի մասին է։

և իր խոստման համաձայն իր (եկեղեցու) հիմքերը չամրացներ, ապա այն, հազար անգամ կործանված կլիներ, չնայած որ Հռոմեացիների երկրում, եկեղեցու հիմնադրումից սկսյալ հալածանքները երբեք չեն դադարել։ Մենք այդ իմանում ենք Եվսեբիոս Կեսարացու Եկեղեցական Պատմությունից։ Մեկը կարող է մտածել, թե ինչպես այդքան տանջանքներից ու տառապանքներից, կանոններն ու կարգը եղծանվելուց հետո եկեղեցին չկործանվեց, և այս (փաստն իսկ բավական է), որ մենք վստահ հավատանք, թե աստծո բանն (խոսքը) արգանդից է ծնվել։

Առաջինը, որ քրիստոնյաներին հալածեց, Ներոնն էր, ապիրատը, որ անձամբ նրանց տանջելուց չգոհացավ, այլ աշխատեց ցույց տալ, որ կատարված բոլոր ոճիրները նրանց պատճառով է, և արդյունքը եղավ այն, որ Հռոմ քաղաքի մեծ մասը այրվեց, և տարածվեց այն լուրը, թե քրիստոնյաներն էին այրել քաղաքը, ուստի նա (Ներոնը) հրամայեց, որ նրանց անխնա կոտորեն։ Անհավատները մեր եկեղեցու եղբայրներին ու որդիներին ոչընչացնելու մեջ ոչ մի զիջում չէին անում. նրանց (քրիստոնյաներին) նվաստացնում և տանջանքի ոչ մի ձև բաց չէին թողնում վնասելու համար։ Այս անգութ հալածանքների ժամանակ մահացան երկու մեծ օրհնյալ առաքյալները։ Պետրոսին ուզում էին, իր ուսուցչի նման խաչել, սակայն նա խնդրեց, որ իրեն, ոտքերը վեր ու գլուխը ցած խաչեն։ Պողոսի գլուխը ջարդեցին, և այն բոպեին այնտեղ, որտեղ նրանք նահատակվեցին, երկու հոյակապ ու փառավոր ծառ աճեց, որպեսզի, այդպիսով, նրանց (առաքյալների) կյանքն ու մահը և հալածողների ամոթն ու անարգանքը հավերժանա։ Ներոնից հետո, բազում այլ հեթանոս թագավորներ եկան, որոնք որոնեցին ու դժոխքին արժանի տարբեր տանջանքներ հնարեցին, և, անկասկած, սատանան էր, որ այդ բոլորը թելադրում էր ու ամբողջ ուժով արծարծում նրանց համարձակությունը։ Մարկիանոսը, Սեվերիանոսը և շատ ուրիշներ, Քրիստոսի աշակերտներին գլխատելուց չէին ձանձրանում ու հրաժարվում։ Նրանք (քրիստոնյաները) թաքնվում էին ամեն տեղ և (եթե) ապաստան չէին գտնում, լեռներն էին փախչում, իսկ հեթանոսները վագրերի նման թակարդ ընկածների արյունն էին ուզում (խմել)։ Իրենց տներում մնացած (քրիստոնյաները) կանանց և երեխաների հետ, դառների նման զոհվում էին, և նրանց, որոնց շնորհ էին անում, տաժանակիր աշխատանքի էին դատապարտում հանքերում՝ առավոտից մինչև երեկո։ Այսպես, նրանք, որոնց

աստծո որդի Քրիստոսը ազատել էր և իրեն բարեկամ համարել, դարձել էին ստրուկներ։ Ահ, ինչ դաժան գերություն, որի միջոցով աստծո զավակները կռապաշտների մոտ բռնի ստրկացված էին ու նրանց էին ծառայում։ Այսպես, Դոմետիանոսը, բոլոր մեղքերի աղբյուր հանդիսացող այս ծուլության մարմնացումը, դատարկությամբ ու երեխայական խաղերով տարված, չգոտեպնդվեց, քաջություն չունեցավ, և իր բանակները զինեց միայն քրիստոնյաներին կոտորելու համար։ Ինչպե՞ս այն ձեռքը, որ Հակոբ առաքյալի մահավճիռը ստորագրեց, իսկույն չկարկամեց և չկորցրեց իր շարժունակությունը։ Եվ, թեև առաքյալը անբարիշտների ու ապիրատների մասին իր Հայտնության գրքում գրեց, բայց ինչպե՞ս է, որ դրանք դեռ չեն կործանվել ու չեն ուղարկվել դժոխքի խորքը։

Սիրելի Պինե՛ս, հակառակ այս բոլորին, հավատանք, որ եթե երբեմն չարիքները մեզ շրջապատում են, դրանք մեր շահերի համար են լինում և նման չարիքները վերանալուց հետո, մեր սրտերը հրճվանքով են լցվում։ Հրեաներն իրենց վիշտն ու տառապանքները քաղցրացնելու համար ասում էին. «Առ գետս Բաբելացւոց՝ տնդ նստէաք եւ լացաք», և երբ, ինչպես տիեզերքի արարիչն էր սահմանել, ժամանակը եկավ, նրանք պարսիկ Կյուրոսի թագավորության օրոք (գերությունից) վերադարձան։

Նույնն էր նաև մեր ժամանակ, և, որովհետև Ադիաբենի թագավոր Նարսայր պարթևների հետ միասին չէր մասնակցել պատերազմին, ուստի այն անիրավ գայլերը զայրացած, պատերազմից հաղթական վերադառնալիս, պարթևները մեր երկիրը, կործանեցին ու ավերեցին մեր քաղաքները, և Նարսայ թագավորին էլ Մեծ Զարում խեղդելուց հետո, վերադարձան։ Այս կոտորածներից ու ավերածություններից մեր երկրում ապրող քրիստոնյաները շատ տուժեցին։ Նրանք ձեռքերը պաղատագին բարձրացնում էին ամենաբարձրյալին ու ապաշխարության երգերով դիմում Միակ Որդուն (Քրիստոսին), հավիտենական Բանին (խոսքին)։ Այսպես, ճնշված դառների հովիվ Հարելը, ինչպես հետո իմացանք, հավատացյալներից, սկսեց բոլոր գյուղերը շրջագայել, քաջալերել եղբայրներին, որպեսզի նրանք հանուն Քրիստոսի սիրույն, դիմանան այդ վշտերին։ Եվ երբ մի օր նա գտնվում էր Ռախտա գյուղում, ջերմով հիվանդացավ։ Ապա նա ձեռնադրեց իր սարկավագ Ղբեդ-Մշիխային և Իլուլ (սեպտեմբերի) ամսի 13-ի գիշերը վախճանվեց։ Քրիստոնյաների ունեցած վիշտը անասելի էր։

Երբ հինգ ամիս հետո Արբելա քաղաքից մի մեծ բազմություն եկավ, նրա մարմինը դեռ իր մաքրությունն ու թարմությունը պահպանել էր. նրան տեղափոխեցին և մեծ հանդիսությամբ եկեղեցում տեղավորեցին։ Տերը ինքը մասնակցում էր քրիստոնյաների այս արարողությանը, և իմանալի մի հրաշքով ցույց տվեց, որ ինչքան հաճելի ու ընդունելի էր իրեն այն ինչ որ կատարում էին իր ծառայի համար։ Մի մայր, իր երեխային եկեղեցի էր բերել, որպեսզի նա տեսներ Քրիստոսի ծառայի համար մատուցված արարողությունը։ Այս երեք տարեկան երեխան խուլ և համր էր և չէր կարող մի վանկ իսկ արտասանել։ Սուրբ Հոգուց թելադրված, մայրը երեխային տարավ սուրբի դիակի մոտ, և սովորեցրեց նրան, որ նա համբուրի նրա աջ ձեռքը, որը տարածված էր. երեխան համբուրեց և նրա լեզուն արձակվեց ու բացվեց, նա առանց դժվարության սկսեց խոսել։ Բոլոր ներկաները օրհնեցին աստծուն, որ սուրբի միջոցով իր կարողությունը ցույց տվեց։

## Յոթերորդ եպիսկոպոս՝ Ղբեդ Մշիխա[54]

Ղբեդ Մշիխան Արբելայից էր և մանկությունից սկսած երկար ժամանակ ապրել էր Անտիոքում և Դամասկոսում, այնտեղ էր, որ նա ընդունեց ճշմարիտ հավատը։ Նա իր հայրենիքը վերադարձավ ու նվիրվեց եկեղեցու, քահանաների և ժողովրդի ծառայությանը։ Ինքն իր հերթին, իր նախորդների օրինակով, ծայրագույն ջանք գործադրեց Ավետարանը քարոզելու և քրիստոնյաներին դժվարություններից ու դժբախտություններից հեռու պահելու համար։ Իր եպիսկոպոսության ամբողջ շրջանում, աստված ամեն կողմ խաղաղություն ու ապահովություն ստեղծեց և այդ պատճառով եկեղեցիները բազմապատկվեցին ու վանքերն աճեցին և բոլորի շրթներից փառքի խոսքեր էին լսվում։

Այս ժամանակ հռոմեացիների մոտ հայտնի էր աստվածային գիտությունների, մեջ (հմուտ) Կղեմես Ալեքսանդրացին[55]։ Չկար մի նյութ, որի մասին ճառ գրած չլիներ։ Նրա՝ այս հայտնի

---

[54] 190—225 թթ. «Ղբեդ Մշիխա» ասորերէն նշանակում է «Մեսիայի ծառա», այսինքն՝ «Փրկչի ծառա» կամ «Քրիստոսի ծառա»։

[55] Բ դարում է ապրել, սկզբում եղել է Պղատոնի փիլիսոփայության հետևորդ։



6—893

մարդու գրվածքների մասին դու կարող ես գտնել պատմիչներից՝ Եվսեբիոս Կեսարացու «Եկեղեցու պատմության» մեջ։

Ղբեդ Մշիխան 35 տարի շարունակ եպիսկոպոսական պաշտոնը վարելուց հետո, գնաց դրախտ՝ իր եղբայրակիցներին միանալու։

## Ութերորդ եպիսկոպոս՝ Խիրան[56]

Ղբեդ Մշիխայից հետո հանդես եկավ երանելի Խիրանը, որը Բեյթ-Արամեից էր[57]։ Իր եպիսկոպոսության սկզբին, ամեն կողմ սարսափ ու պատերազմներ եղան։

Արեր խավարեց, և իրեն բարկացնող ժողովրդի ցասումից, իր լույսով մեզ չէր լուսավորում։ Որովհետև այն ժամանակ, բազում պատերազմներ տեղի ունեցան հռոմեացիների ու պարթևների միջև և Արտավան վերջին արքան մտավ հռոմեացիների երկիրը, և այրեց Բեյթ-Արամեի շատ քաղաքներ։ Արբելայի թագավոր՝ Շարհատը նրա հետ միասին էր։ Հռոմեացիները լսելով այդ, մեծ բանակով նրա դեմ դուրս եկան[58]։ Պատերազմը նրանց միջև շարունակվեց, բայց վերջում երկու թագավորներն էլ համաձայնվեցին, որ առանց մեծ հիմքի, երկու կողմից մարդկային արյուն չթափեն, և երկուսն էլ վերադարձան իրենց երկրները։

Պարթևներն այն ժամանակ շատ ուժեղ, շատ կարող և հանդուգն էին. նրանք միայն կոտորելու մասին էին մտածում, սակայն աստված, որն իր մարգարեի միջոցով ասել է. «Եթե բարձրասցիս իբրեւ զարծուի, եւ եթէ ի մէջ աստեղաց դիցես զբոյն քո, եւ անտի իջուցից զքեզ»[59]; (այդպես էլ) սանձեց նրանց ու պատրաստեց նրանց կործանումը։ Հին ժամանակներում պարսիկները նրանց (պարթևներին) ուզում էին գահընկեց անել և պատերազմում փորձեցին իրենց ուժերը, սակայն ետ մղվելով չէին կարողանում պայքարել պարթևների հետ։ Այս ժամանակ նրանք (պարթևները) բազում պատերազմներից ու ճակատամարտերից թուլացան։ Պարսիկներն ու մեդացիներն այդ հասկանալով, և Ադիաբենի թագավոր՝ Շարհատի և Քարքա-Սլոխի թագավոր՝

---

[56] 225—258 թթ. (ըստ Մշիխա Զխայի)։

[57] Մծբինը իր շրջակայքով։

[58] Այս արշավանքը տեղի է ունեցել 217 թ. Կարակալլայի մահից անմիջապես հետո։

[59] «Մարգարէութիւն Աբդիու», գլ. Ա, 4։

Դոմիտիանի հետ միանալով, գարնանը պարթևների հետ մեծ պատերազմ սկսեցին։ Նրանք (պարթևները) պարտվեցին, և վերջնականապես նրանց թագավորությունը վերացավ։ Սկզբից նրանք (պարթևները) հարձակվեցին Միջագետքի, Բեյթ-Արամայեի ապա Բեյթ-Զաբդեյի և Արզունի վրա։ Մի տարվա ընթացքում նրանք գրավեցին այս քաղաքները, և պարթևների բոլոր միջոցառումներն արդյունք չտվեցին, որովհետև իրենց օրը հասել էր, երդը՝ երգվել։ Ի վերջո, Նրանք ամբողջովին փախան բարձր լեռները և պարսիկներին (Սասանյաններին) թողեցին իրենց ամբողջ երկիրն ու քաղաքներում պահված հարստությունները։ Արտավանի փոքր որդին, որ Արշակ էր կոչվում, պարսիկների կողմից անգթորեն սպանվեց Տիզբոնում, և այստեղ էլ նրանք (Սասանյանները) հաստատվեցին ու այն իրենց մայրաքաղաք դարձրին։ (Այսպիսով) քաջ Արշակի որդիների՝ պարթևների թագավորությունը վերջ գտավ հույների թագավորության 535 թ. Նիսան (ապրիլ) ամսի 27-ի չորեքշաբթի օրը[60]։ Պարսիկների տիրապետության սկզբում քրիստոնյաների համար խաղաղության (շրջան) եղավ, որը և օգնեց .(այդ կրոնի) տարածման ու ծավալման։

Այս բոլոր իրադարձությունները տեղի ունեցան Խիրան եպիսկոպոսի օրոք, սակայն նա ավելի և ավելի էր զորանում նեղությունների․ժամանակ և ավելի և ավելի քաջալերվում մեր Տիրոջ՝ Հիսուս Քրիստոսի մեզ պարգևած շնորհից։ Սիրելի Պինե՛ս, իմացիր, որ այն տարին, երբ պարսիկները ամբողջ Արևելքը նվաճեցին. արևմտյան, ինչպես նաև արևելյան բոլոր երկրներում բազում քրիստոնյաներ կային։ Բայց Արևմուտքում հալածանքները երբեք չէին դադարում և ամեն օր քրիստոնյաների արյունը հոսում էր շուկաներում ու փողոցներում և հանգիստ չկար։ (Իսկ) մեզ մոտ բոլորովին այդպես չէր, թագավորները ամեն օր զբաղված էին պատերազմներով և (այդ պատճառով) դեռ մեր դեմ անգութ հալածանքներ չէին սկսել։ Դրա համար է ասված (կարծես) Ավետարանի խոսքը. «Զգեաց ղորթ իւր մինչեւ ի ծով, մինչեւ ի գետ են շառաւիղք նորա»[61]։ (Արևելքում) կային քսան եպիսկոպոսներից ավելի, օրինակ Բեյթ-Զաբդեյի, Քարքա-դը-Բեյթ-Սլոխի, Կաշկարի, Բեյթ-Լափաթի, Հորմիզդ-Արտաշիրի, Պրաթ-

60 Մշիխա Զեխայի տվյալներով պարթևների անկումը եղել է 224 թ. ապրիլի 27-ի չորեքշաբթի օրը։

61 «Գիրք Սաղմոսաց», գլ. ՀԹ, (2)։

Մայշանի, Խանիթայի, Հերբաթ-Գելալի, Արզունի, Բեյթ-Նիկթորի, Շահր կարտի, Բեյթ-Մեսկենեի, Հոլուանի, Բեյթ-Կետրայեի, Բեյթ-Հեդայեի[62], Բեյթ-Դայլումայի, Շիգարի և այլ քաղաքների (եպիսկոպոսներ)։ Իսկ Մծբինն ու այլ քաղաքներ, հեթանոսների վախից, դեռ եպիսկոպոս չունեին։ Բայց երբ Արշակունի պարթևների տիրապետությունը վերջ գտավ, աստծո օգնությամբ, ինչպես տեղում կպատմենք, քրիստոնյաներն իրենց համար կաթողիկոս ուզեցին ունենալ։

Այս ժամանակ բոլոր գիտությունների մեջ հայտնի էր, հիանալի ու աստվածային ուսուցիչ Որոգինեսը, որի մասին ասում են, որ սուրբ Հոգին նրա բերանում դրել էր իմաստուն լեզու, և Եվսեբիոսը նրա մասին պատմում է, որ յոթր դպիր հաջողությամբ գրում էին նրա ասածները[63]։

Երբ պարսիկները Արևելքի տեր դարձան, քրիստոնյաները մի քիչ վախեցան, որ իրենց, սուր դանակներով կմորթեն, որովհետև Արևելքի բոլոր թագավորներին հաղթելով, փոխարենր [պարսիկները] իրենց ենթակա կառավարիչներ ու մարզպաններ էին նշանակել։ Պարսիկների առաջին արքա՝ Արտաշիրը, մեր երկիր ուղարկեց մի կառավարիչ, որն Ադորզահադ էր կոչվում։ Սակայն աստված, որ անդուլ իր աչքերը պահում էր եկեղեցու վրա, որպեսզի ալիքներն ու մրրիկները այն չընկղմեն, մեզ մի երջանիկ բախտավորություն շնորհեց։

Արտաշիր արքան հրամայեց, որ նոր ատրուշաններ կառուցվեն ի պատիվ աստվածներին, և արեր՝ ամբողջ տիեզերքի մեծ աստվածր, հատուկ երկրպագության արժանի լինի։ Ինքն առաջինը ընդունեց արքայից արքա և աստված տիտղոսը։ Այսպես, նա եղած անարդարություններին, ավելացրեց նաև անեծքը, (որովհետև) ուզում էր, որ իրեն աստվածների իրավունք տրվի։ (Ստիպում էր), որ բազում օտար հավատալիքներ ձուլվեն արևի և կրակի (պաշտամունքի) հետ։ Իսկ Խիրան եպիսկոպոսը զբաղված էր իր ժողովրդին սատանայի բոլոր չարիքներից ու թակարդներից հեռու պահելով։ Իսկական հովվի նման, նա իր անձր նվիրաբերում էր իր հոտի համար. իր նախանձախնդրության շնորհիվ կարողացավ Քրիստոսի փարախը մտցնել բազում հոգիների, որոնք հին թշնամու, ամբողջ մարդկության ոսոխի

---

[62] Տեղը անծանոթ է։

[63] «Եւսեբիոսի Կեսարացւոյ Պատմութիւն Եկեղեցւոյ», թարգմ. Ա. Ճարեան, Վենետիկ, 1877, դպր. Զ, գլ. ԻԳ, էջ 468։

ծառայության մեջ էին։ Երեսուն երեք տարի շարունակ իր հոգեկան տաղանդը արդյունավետությամբ (օգտագործելուց) հետո, ինչպես կարծում եմ, վախճանվեց խոր ծերության մեջ, և ահա արդար դատավորը նրան կտա նրա համար պատրաստված հաղթանակի պսակը։

## Իններորդ եպիսկոպոս՝ Շախլուփա[64]

Խիրանից հետո, ընտրյալների ու սրբերի (շարքերում), հանդես եկավ Շախլուփան, աստվածավախության նախանձախնդիր ու շատ գործունյա (մարդ)։ Այս հոգևոր հայրը նույնպես Բեյթ-Արամեից էր։ Դեռ մանկությունից, դաստիարակվել էր ճշմարիտ հավատով, ուստի և սկսեց քաջաբար գործել տեսանելի ու անտեսանելի թշնամիների դեմ։ Չար Մաքսիմիանոսը ամենափոքր առիթն իսկ օգտագործում էր երկրի երեսից նրանց (քրիստոնյաներին) ոչնչացնելու ու կործանելու համար։ Այս հալածանքի ժամանակ, երկինքը լցվեց շատ մաքուր հոգիներով, որոնք արարչին աղերսում էին, որ նա պակասեցներ տխրության օրերը և դրանք փոխակերպեր ուրախության։ Ինչպես ասել ենք, Արևելքում ամեն ինչ հանգիստ էր, և Շախլուփան ավելի ու ավելի էր վառվում աստծու սիրո նախանձախնդրությամբ։ Նա էր, որ Տել-Նիախա գյուղի բնակիչներին սովորեցրեց Երրորդության ուղղափառ հավատը, և այդ տեղի ունեցավ հրաշքով, որով, Տերը իր ծառայի խոսքի ճշտությունը ավելի բացահայտ դարձրեց։

Գյուղի մեծերից Նակիխա անունով մեկը, լուծով ծանր հիվանդացավ։ Եվ որովհետև նրա վիճակը ամեն օր վատթարանում էր, և գյուղում չկար մեկը, որ բուժեր նրան, ծնողները նրան տարան Արբելա քաղաքը։ Սուրբ Շախլուփան այդ իմանալով, աստծու թելադրանքով, երանելի Անանիայի օրինակով,[65] գնաց նրա մոտ այնպիսի ժամանակ, երբ ծնողները եկել էին նրա (հիվանդի) մոտ ու հավաքվել։ Նա նրանց խոստացավ նրան իր հիվանդությունից բուժել, եթե նրանք անեն այն ամենը, ինչ նրանցից կպահանջի, և նա սկսեց նրանց աստվածային գրքերով բացատրել քրիստոնեական հավատքը, ե թե (ինչպես) այն արագ ձևով երկրում տարածվում է։ Նա նրանց բացատրեց որ Երուսաղեմում հրեաներից խաչված Հիսուսը աստված է և աստծու

---

[64] 258—273 թթ. (ըստ Միխա Զեխայի)։

[65] «Գործք Առաքելոց», գլ. Թ. 10—19։

որդի, որ իր կամքով տառապեց, որպեսզի մեզ ազատի սատանաների ծառայությունից։ Նրա առաջարկությանը բոլորն էլ հավանություն տվեցին ու խոստացան, որ եթե նա Նակիխային բուժելով կապացուցի իր խոսքերի արժանահավատությունը, (ապա) իրենք կմկրտվեն ու կմտնեն սուրբ եկեղեցու գիրկը։ Սուրբ Շախլուփան սկսեց աղոթել, և խաչի նշանով նրան բուժեց, այդ անբուժելի հիվանդությունից, որովհետև աստծու համար ամեն ինչ դյուրին է։ Տել-Նիախա գյուղի բնակիչներից շատերը հավատացին աստուծո խոսքին ու մկրտվեցին։

Այս ժամանակ մահացավ պարսիկների արքա՝ Արտաշիրը, և Շապուհը հաջորդեց նրան։ Վերջինս ի բնե քիչ համբերող էր։ Իր թագավորության առաջին իսկ տարում, պատերազմեց Խուարազմիանների[66] և լեռ (բնակվող) մեդացիների հետ, և հաղթեց նրանց ահավոր մի ճակատամարտում։ Այնտեղից նա գնաց Գելերին[67], Դայլումներին, Գուրգանիաններին նվաճելու, որոնք հեռու, վերջին ծովի մոտ[68], լեռներում էին ապրում։ Նրանից բոլորը վախենում էին, և բազում անգամ նա պատերազմեց Հռոմեացիների դեմ։ Շապուհի բանակում մի մեծահարուստ քրիստոնյա կար, որը Գանդխան էր կոչվում. նա երբ Ադիաբեն եկավ ու տեսավ, որ (մեր) երկրում ու նրա գյուղերում բազում քրիստոնյաներ կան, Շախլուփային խնդրեց, որ նա Տիզբոն գնա, այնտեղ եղած փոքր համայնքի եղբայրների մոտ, որը սկսել էր (նոր) կազմավորվել[69]։ Շախլուփան գնալու մասին տատանվում էր, սակայն Գանդխանը նրան վստահեցրեց ու հանգստացրեց, իսկ նա հույսը աստծու վրա դնելով, գնաց և իր հետ տարավ Նակիխային (որին լուծ հիվանդությունից բուժել էր) և իր երկու սարկավագներին։ Սակայն ճանապարհին նա պատահեց խամայելացիների, որոնք նրան իրենց հետ տարան։ Միայն չորս ամիս հետո, կարողացավ նրանց մոտից փախչել, և ապա գնաց հարուստ քաղաք՝ Տիզբոն։ Այնտեղ, բոլոր եղբայրները հավաքվեցին, և նա նրանց (իր քարոզներով) քաջալերեց։ Շախլուփան

---

[66] Սրանք ապրում էին Թաբարիստանի և Մազենդերանի հյուսիսում։ Տե՛ս Barhebraeus, Chron. syr. p. 445. սրանց մայրաքաղաքը Գուրգանիա էր կոչվում (հայ. Վրկան)։

[67] Այժմ այդ ժողովուրդը կոչվում է «Գիլան» և ապրում է Կասպից ծովի հարավ-արևմուտքում։

[68] Նկատի ունի Կասպից ծովը։

[69] Այս փաստը խոսում է այն մասին, որ Տիզբոնում միայն III դարի երկրորդ կեսերից է սկսվել քրիստոնեական համայնքների կազմավորումը։

մեկին քահանա ձեռնադրեց, և երկու տարի մնաց այնտեղ, մինչև Շապուհ արքայի Տիղբոնից մեկնելն ու վերադառնալը: Շատ սարկավագներ (Արբելայից) եկան, նրան գտան ու Արբելա տարան, մեծ հանդիսավորությամբ: Սելևկիայի ու Տիզբոնի քրիստոնյաները նրան արցունքով ճանապարհ դրեցին և վիշտը, լցրել էր դրանց սիրտը: Նրանք այդ րոպեին նման էին առաքյալներին, ճիշտ այնպես, ինչպես դիտում էին մեր Տիրոջ երկինք համբարձումը: Նա (Շախլուփան) հայրենիք վերադառնալով, բազում գործեր կարգի դրեց ու շատ սարկավագներ ու քահանաներ ձեռնադրեց: Ինչպես հավատացյալներից իմացանք, Շուբխալիշոն՝ Բեյթ-Զաբդայի եպիսկոպոսը, նրան տեսնելու եկավ ու ամբողջ մի տարի մեծ մտերմությամբ միասին ապրեցին: Երկուսն էլ այցելեցին Հերբաթ-Գելալ[70] և Ռասոնին[71], և այնտեղ մի եպիսկոպոս ձեռնադրեցին: Ապա տեղափոխվեցին Շահր կարտ[72] և այստեղ էլ տեսան բազում քրիստոնյաների, որոնք այլ տեղերից էին հավաքվել: Նրանց համար ևս մի քահանա ձեռնադրեցին, որովհետև իրենց եպիսկոպոսը մի փոքր ժամանակ առաջ վախճանվել էր: Ի վերջո, երկուսն էլ Արբելա վերադարձան ու այստեղ էլ բաժանվեցին: Այսպես Շուբխա-Լիշոն իր երկիրը գնաց, սքանչացած, որ քրիստոնյաները շատանում էին, և (թե ինչպես) կարգ ու կանոնի շնորհիվ, եկեղեցիները բարեզարդվեցին: Նա սկսեց հետևել այդ կարգին ու փառավորեց աստծուն, որովհետև աճում էր Ադիաբենի թեմը իր եկեղեցական ու առաքելական կանոններով:

Մի քանի տարի հետո, երբ աստծո աննկուն ծառա՝ Շախլուփան, հյուծվեց ու հոգին հանձնեց իր Տիրոջ՝ Քրիստոսին, նա այս տառապանքների աշխարհից հեռացավ, երջանկության աշխարհը (գնալու) համար: Նրան թաղեցին Նոյի անունով եկեղեցում, որը Քրիստոսի հոտը կառավարելու վեհ պարտականության մեջ նախորդել էր նրան: Նա 15 տարի շարունակ ղեկավարեց Ադիաբենի գերապանծ թեմը:

---

70 Քաղաք, որ Փոքր Զաբի վրա է գտնվում տե՛ս *Hoffmann*. Auszuge aus syrischen Akten, p. 251.

71 Սա գուցե աղավաղված է և պետք է լինի «Լաշմոնին» 410 թ. այս քաղաքը իր եպիսկոպոսը ուներ: Տե՛ս Syr. Orient, p. 273. Այն գտնվում էր Արբելայի հյուսիս-արևմուտքում:

72 Քաղաք, որը գտնվում էր Դակուկի և Արբելայի միջև, տե՛ս *Bedjan*, Acta mart. et sanct., t. II, p. 515.

## Տասներորդ եպիսկոպոս՝ Ախադաբուհի[73]

Նրան հաջորդեց Ախադաբուհին, որը դյուրծունյա ու նախանձախնդիր մարդ էր, և Արբելա քաղաքի քուրմերից մեկի որդին էր։ Սա ասում են, որ չորս որդի ուներ և չորսն էլ քահանա դարձան։ Նրանց մայրը մոգերի սերնդից էր և որդիներից մեկի հետ հարաբերության մեջ էր եղել և ծնել Ախադաբուհին, և դրա համար էլ կոչվեց Ախադաբուհի, այսինքն՝ «հորը եղբայր»։

Նա երիտասարդ հասակում մոտ էր և գնացել էր Տիղբոս, հռոմեացիների դեմ պատերազմելու։ Այնտեղից իր երկիրը վերադարձավ քրիստոնեական հավատը ընդունած։ Նա մինչև իր ձեռնադրությունը Խիրան եպիսկոպոսի գործակիցը եղավ, և իր հերթին բազում հեթանոսների քարոզեց։

Իր ժամանակ Ադիաբենի մոգպետը[74] Գուփրաշնասպը ապստամբվեց պարսիկների արքա՝ Վարհարան Գ-ի դեմ[75]։ Նա լեռան մեջ կառուցել էր բարձր մի բերդ, որը նրան պետք է պաշտպաներ թշնամիների հարձակումներից։ Իր հետ բերեց բազում մարդկանց, 560 քաջ աղեղնավորների, և որոնք ըստ սովորության ամեն տարի փոխվում էին։ Սրանք ամեն օր 50 կամ 60 հոգով ճանապարհ էին դուրս գալիս և ում որ գտնում էին, կողոպտում ու թալանում էին։ Իրենց այս ավազակային հարձակումների պատճառով, քաղաքից քաղաք, գյուղից գյուղ երթևեկությունները դադարել էին։ Ադիաբենի շատ բնակիչներ լքեցին իրենց բնակավայրերը և այլ երկրներ գնացին, և (այսպես) հարուստ գյուղերը ամայացան։ Մարդիկ սերմանել չէին կարող, որովհետև հողագործները ավազակների վախից նույնիսկ տներից դուրս չէին գալիս։ Ի վերջո քաղաքներից բազում հարուստներ իրար հետ համաձայնվելով, գնացին իրերի վիճակը Վարհարանին ներկայացնելու։ Նա լսեց նրանց աղերսանքը և մեծաքանակ բանակ ուղարկեց, որոնք եկան Գուփրաշնասպի ամրոցը կործանելու ու ավերելու։ Սակայն նրանք նույնիսկ հեռվից չկարողացան մոտենալ, Գուփրաշնասպի զինվորների, մեծ վարպետությամբ, իրենց վրա արձակած բազում նետերի պատճառով։ Երկու ամիս շարունակ ոչինչ չկարողացան անել, և հոգնած, այդ մասին

---

[73] 273—291 թթ. (ըստ Մշիխա Զխայի)։

[74] Բնագրում «մոգպետը» օգտագործված է «մարզպան» կամ «կառավարիչ» առումով թեև հայերեն թարգմանության մեջ պահպանել ենք «մոգպետ» ձևը։

[75] Վահրամ Գ-ն թագավորել է 276—293 թթ.։

հայտնեցին Վարհարանին, և նա նորից անհամար զորք ուղարկեց Զարհասպ անունով հաջողակ ու փորձառու հրամանատարի գլխավորությամբ։ Սա ևս չկարողացավ ամրոցը գրավել, որովհետև այն շատ բարձր էր և ամրոցում ամրացած զինվորները շատ քաջ, հաջողակ նետաձիգներ էին, և թույլ չէին տալիս (թշնամուն) նույնիսկ հեռվից մոտենալ։ Ուստի երբ Զարհասպը տեսավ, որ (ամրոցը) չէր կարող քանդել, ապա մտածեց Գուփրաշնասպին դարանը գցել։ Նա նրա մոտ ուղարկեց իր որդուն, թանկարժեք ու հարուստ նվերներով, որ նրան ասի, թե «արքայից արքան լսելով քո քաջությունը, ուզում է մտերմանալ քեզ հետ, և քեզ դարձնել իր ամբողջ պետության ընդհանուր կառավարիչ։ Ուստի ես ուզում եմ քեզ հետ առանձին խոսել, այն պայմանով, որ մեզ հետ ոչ մի զինվոր չլինի։ Մարտին վերջ տուր, և միայնակ արի մի տեղ, և մենք միասին կխորհրդակցենք»։ Գուփրաշնասպը հավատաց հրամանատարին, և կամ գուցե ինքն էլ խաղաղության դաշինք կնքել էր ցանկանում, որովհետև պայքարը երկար էր տևել և ինքն էլ իր զինվորների հետ հոգնել էր։ Նա ամրոցից դուրս եկավ հեռու մի տեղ, և Զարհասպին հրավիրեց գալ և իր հետ բանակցել։ Զարհասպը բաղում քաջ զինվորների հրամայեց, որ իրենից ոչ հեռու դարան մտնեն, և նրանք երբ տեսան, որ իրենք նստեցին ու զրուցում են, այն ժամանակ հարձակվեցին ու Գուփրաշնասպին բռնեցին։ Նման խաբեությամբ Գուփրաշնասպը ձերբակալվեց. քանդեցին նրա ամրոցը և նրան մայրաքաղաք. բերեցին արքայից արքա Վարհարանի մոտ։ Զարհասպի այս քայլից նա (արքան) շատ ուրախացավ և հրամայեց, որ նրան (Գուփրաշնասպին) մորթազերծ անեն և կախեն իր թագավորական պալատում, որպեսզի բոլորը տեսնեն, վախենան և իմանան, թե արքայից արքան ինչպիսի խստությամբ ու արդարությամբ, վրեժխնդիր է լինում նրանցից, ովքեր նրան անհնազանդ են։

Քաջ Ախադաբուհին տեսնելով այս դաժանություններն ու վայրենությունները, չթողեց, որ իր հոգին վհատվեր և ոչ էլ քաջությունը կորցներ։ Նա սկսեց շրջագայել իր մեծ թեմում, բարի խորհուրդներ էր տալիս, խրատում, սպառնում էր, ինչպես որ վայել էր քրիստոնյաներին, և երկայնամտության ու ընկերասիրության (կոչ) էր անում։ Մի օր Տիզբոնից ուղարկված քրիստոնյա պատգամավորները նրան գտան ու խնդրեցին, որ նա Շախլուփայի օրինակով, որը նրան նախորդել էր, գա իրենց մոտ

քարոզի, սովորեցնի, և (ցույց տա) բարի կյանքի ուղին, քաջալերի, և մի քիչ էլ մխիթարի իրենց։ Նրանք հինգ հավատարիմ ու աստվածավախ մարդկանց էին ընտրել, որպեսզի նրանց ձեռնադրի։ Գործունյա ու ժրաջան վաճառականի նման, որ անընդհատ մտածում է բազմացնել իր ունեցվածքը, նա նրանց խնդրանքին զիջելով, այս մարդկանց ձեռնադրեց։ Նա ընկերացավ մայրաքաղաք գնացող պատվիրակների, Հերբաթ-Գելալի եպիսկոպոս՝ Զեխա-Յաշուղի և Բեյթ-Զաբդեյի եպիսկոպոս՝ Շաբթայի հետ։ Նրանք այնտեղ մի տարի ապրեցին, և ինչպես ընդունված էր, մոլորյալներին ուղղության էին բերում։

Մի օր Շաբթան կանգնեց բազմության մեջտեղ քարոզելու և ժողովրդին ասելու որ «Մի երկնչիք յայնցանէ որ սպանանեն զմարմին եւ զոգի ոչ կարեն սպանանել. այլ երկերուք դուք առաւել յայնմանէ որ կարողն է զոգի եւ զմարմին կորուսանել ի գեհենի»[76]։ Այս նյութի շուրջ շատ խիստ խոսեց և բացատրեց, որ մեր Տիրոջ հաղթանակը իսկական հաղթանակ է, մինչդեռ երկրային թագավորների հաղթանակը միայն գոռոզություն, ակնկալություն, ցավ, տառապանք, չարչարանք և մահ է։ Գոռոզություն, որովհետև թագավորները երբ հաղթում են, նրանք հաղթում են միայն մարմիններին, և այդ պատճառով էլ նրանք ամբարտավան են դառնում և ավելի ևս հպարտանում են։ Նրանք մոռանում են իրենց մահկանացիությունը, հավատում են աստվածներին, և այսպիսով նրանք անսահման ավելացնում են իրենց մեղքերը և նրանց վարձատրությունը անմար կրակը կլինի։ Ցավ, որովհետև նույնիսկ իրենց հաղթանակի դեպքում, ո՞վ կարող է պատմել անվերջ դժվարությունները։ Ճակատամարտը սկսելուց առաջ, նախապես ճակատամարտի ելքի մասին են մտածում անդադար, կհաղթե՞նք թե կպարտվենք։ Եվ սրա վրա, նրանք գիշեր ցերեկ մտատանջվում են, և ինչքան գիշերներ անքուն են մնում։ Մահ, երկու կողմից էլ մահ է լինում, և դա պատճառ է դառնում ծնողների ու հարազատների տանջանքներին, և մայրերը արցունք կթափեն սրով սպանված իրենց որդիների համար, ու կաթոգին սիրված որդիները նիզակի երկաթով սպանվում ու մի կողմ են նետվում։ (Մինչդեռ) Քրիստոսի հաղթանակը բոլոր մարդկանց երանության պատճառ է դառնում, նույնիսկ իր թշնամիների՝ հեթանոսների ու հրեաների համար։

Մինչ (Շաբթան) իր ճառն էր շարունակում, հեթանոսներից

[76] «Աւետարան ըստ Մատթէոսի», գլ. Ժ, 28։

մեկը, որ այնտեղ էր գտնվում, գնաց և արքայի մեծամեծներից մեկին հայտնեց, որ քրիստոնյաները քարոզում են, որ արքայից արքան պետք է կրակով տանջվի ու չարչարվի, և որ նրա հաղթանակը հաղթանակ չէ, այլ մի ապստամբություն ու հարըս-տահարություն։ Քրիստոնյաները այդ լուրը երբ իմացան, շատ տխրեցին ու թաքնվեցին իրենց տներում, ոմանք էլ փախան անապատ։ Շաբթա եպիսկոպոսը նույն գիշեր վեր կացավ, որ գնա, բայց խսկապես չգիտեր թե ու՞ր գնար. վախից չէր երևում մտածելով, որ իրեն կբռնեն ու կպատժեն։ Երկու տարի շարունակ նա այդ վիճակում ապրեց։ Տիղբոնի քրիստոնյաները Ռազդան անունով մեծամեծներից մեկին նվերներ տվեցին ու խնդրեցին, որ (իրենց) նկատմամբ արքայի բարկությունը մեղմի, որովհետև խաբեբա ու խռովարար մարդիկ ոչ ճիշտ տեղեկություններ էին տվել նրան իրենց մասին։ Աստված այնպես փափկացրեց Ռազ-դանի սիրտը, որ նա այդ գործը կարգադրեց և հեռացրեց նրա (արքայի) մեծ զայրույթը։ Նույնպես աստծո՝ ամեն ինչի Տիրոջ շնորհիվ, և երկաթը երկաթի հետ բախվելու փոխարեն, հալա-ծանքին (վերջ տրվեց), և խաղաղությունը վերահաստատվեց, և բազում եղբայրներ ոչնչանալուց ազատվեցին։ Իրականում, սակայն, հալածանքների ժամանակը դեռ չէր եկել։ Ախաղա-բուհին այս դժվարության ու սարսափի ամբողջ ընթացքում իր գիրքերից չհեռացավ և հավատացյալներին հուսադրելուց չդադա-րեց, որպեսզի նրանք վստահեն կենդանի աստծուն՝ իրենց Փրկչին։ Չեմ հավատում, որ մեկը կարող է ժխտել, որ այս խաղաղությունը միայն իր աղոթքների շնորհիվ եղավ։ Ո՞վ կարող էր չհիանալ, երբ ծունկի եկած, նա խոնարհ սրտով աղոթում էր. «Եւ զհոգի խոնարհ Աստուած ոչ արհամարհէ»[7]։

Տիղբոնի (քրիստոնյա) բնակիչները նրանից (Ախաղաբուհիից) խնդրեցին, որ նա շտապ իրենց համար եպիսկոպոս ձեռնադրե, որպեսզի նա (եպիսկոպոսը) միշտ իրենց հետ լինի։ Նրան ասացին, որ այստեղ շատ քրիստոնյաներ կան, և մեր մեծ տեր եպիսկոպոսները մեզանից հեռու են, և չեն կարող մեզ (օգնել)․ արդարության շավիղներով մեզ առաջնորդել, և հոգեպես ու ֆիզիկապես միշտ մեզ հետ լինել։ Նա ուրախությամբ նրանց խնդրանքին ընդառաջեց և Սուսի եպիսկոպոս Խայ-Բաղալին (այդ մասին) հայտնեց։ Երկուսն էլ համաձայնվեցին ու ընտրեցին

[7] «Գիրք Սաղմոսաց», գլ. Ծ (ԾԱ), 19։

ասորի Պապային, որը շատ գիտուն ու իմաստուն մարդ էր[78] ապա յուրաքանչյուրը գնաց իր երկիրը, սքանչանալով աստծու ազդող շնորհքի և իր եկեղեցու նկատմամբ ունեցած անդուլ հսկողության ու նախախնամության վրա, որովհետև Նա (Քրիստոսը) իր կողքից (խաչա) փայտի վրա թափված արյունով, միացավ Նրա (իր եկեղեցու) հետ։

Երբ Ախադաբուհին Արբելա եկավ, բոլոր քրիստոնյաները, բազում մոգեր ու հեթանոսներ նրան դիմավորելու դուրս եկան, և իր անբիծ վարքի, լեզվի քաղցրության և սղնիվ նկարագրի համար, շքեղ ընդունելություն կազմակերպեցին։

Բազում բարի գործերից հետո իր հոգին հանձնեց աստծո՝ իր արարչի ձեռքը, 18 տարի եպիսկոպոսական (պաշտոնը) վարելուց հետո։

## Տասնմեկերորդ եպիսկոպոս՝ Շարիղա[79]

Ախագաբուհիից հետո, Տիրոջ ժողովրդի ղեկավարությունը ստանձնեց նախանձախնդիր գործիչ և ճշմարիտ քահանա՝ Շարիղան։ Նա Արբելայից էր և ծագում էր Քրիստոսին սիրող քրիստոնյա ծնողներից։ Դեռ երեխայությունից եկեղեցի էր հաճախում ու ընդունվեց աստծո ծառայության մեջ։ Նա (ևս) իր հերթին սատանայի աշակերտների դեմ մեծ պայքար ծավալեց։ Ո՞վ Պինե՛ս, ո՞վ աստծո սիրելի, նրա ժամանակ եկեղեցու օգտին մեծ հաղթանակ եղավ։ Մոտ երեք հարյուր տարի, եկեղեցին հալածվել, տակնուվրա էր արվել, հիմքը խախտվել էր, իսկ (այժմ) Կոստանդիանոս հաղթական կայսրի միջոցով այն խաղաղվեց, և բոլոր թշնամիներին հաղթեց։

Նրա (թագավորությունից) մի քիչ առաջ, Դիոկղետիանոս ամբարիշտ կայսրը ուզում էր քրիստոնեության անունը ջնջել երկրի վրայից ու դրան էր ձգտում գիշեր և ցերեկ։ Ուստի նա հրամայեց, որ կործանեն եկեղեցիները և բոլոր հավատացյալներին անգթորեն կոտորեն։ Ամբողջ աշխարհում, ինչպիսի՜ սարսափ և ինչպիսի՜ սոսկում տիրեց, երբ նման անխիղճ հրաման արձակվեց։ Հեթանոսները քրիստոնյաներին մեկ մեկ կոտորելով

[78] Ըստ Մշիխա Զխայի, Պապան, Տիզբոնի եպիսկոպոսական աթոռն է բազմել Ախադաբուհիի եպիսկոպոսության վերջին տարիներին և իր պաշտոնին է մնացել մինչև 291 թ.։ Հավանաբար, նա այդ պաշտոնում է եղել 285—291 թթ.։

[79] 291—316 թթ. (ըստ Մշիխա Զխայի)։

չգոհացան, և նույնիսկ առանց դատավորներին ներկայացնելու, խմբերով այրում էին։ Տեսան, թե ինչպես երբեմն հայրը իր որդու դահիճն էր դառնում և եղբայրը՝ եղբոր։ Կարեկցության բնական պատնեշը վերացել էր։ Եվ որովհետև հռոմեացի կայսրերը անձնատուր էին եղել նման մեղքերի՝ անհագ սպանության կրքին, ուստի չէին կարողանում ղեկավարել ժողովրդին։

Պարսիկների Հորմիզդ արքան[80], իմանալով այդ, մեծ բանակ վերցրեց ու (եկավ) հռոմեական քաղաքները կողոպտեց։ Այս բոլոր սրբապղծություններին ի տես «Յարիցէ Աստուած եւ ցրուեսցին ամենայն թշնամիք նորա, փախիցեն ատելիք նորա յերեսաց նորա։ Որպէս պակասէ ծուխ՝ պակասեսցին. որպէս հալի մոմ...»[81]։ Առանց կարեկցանքի նրանց պատիժների ենթարկեց, և նրանց վրա իշխելու համար դրեց իր ծառա՝ Կոստանդիանոսին, որը խաչի նշանը բարձրացրեց լուսավոր ամպերի վրա և վրան գրվեց. «Այս նշանով դու կհաղթես»։ Նա այդ խաչի նշանը վերցրեց ու տվեց իր բոլոր զինվորներին։ Դրա միջոցով նա ճանճերի նման փախուստի մատնեց անհնազանդ սատանաների զինվորներին և խաչը, որ ամոթի նշան էր, բոլորի համար դարձավ հաղթանակի նշան և հարուստների, և աղքատների, և ազնվականների, և անարգների, և գիտունների, և տգետների համար։

Արևելքի եպիսկոպոս Պապային, որ ապրում էր մայրաքաղաքում (Տիզբոնում), որոշ եպիսկոպոսներ արտաքին (ոչ եկեղեցական, այլ պետական) գործերի համար դիմում էին նրա օգնության։ Ուստի այդ կապակցությամբ մտածեց բոլոր եպիսկոպոսների վրա գերիշխանություն ունենալ, և դառնալ նրանց միակ ղեկավարը։ Դրա վրա, մայրաքաղաքի քահանաներն ու ժողովուրդը հավաքվեցին և ուզեցին նրան գահընկեց անել. նույնիսկ նրա ավագ սարկավագ՝ Սիմոնը այս նորաձևությունը մերժեց, և (այդ մասին) տեղեկացրեց Սուսի՝ Միլես (եպիսկոպոսին), Քարքա-Դը-Բեյթ-Սլոխի՝ Ղկաբ-Ալլահին, և շատ ուրիշներին։ Ուստի Պապան շատ վախեցավ, որովհետև Սիմոնի ծնողները շատ մոտիկ էին արքային, և բոլորից էլ հարգված էին։ Ուստի նա Արևմուտքի եպիսկոպոսներին, ինչպես նաև Եդեսիայի եպիսկոպոսին, որը Սաղդա էր կոչվում, (Սիմոնի մասին) գրեց։ Բոլորը համաձայնվեցին, որովհետև գիտեին, որ նա (Սիմոնը)

80 302—309 թթ.։

81 «Գիրք Սաղմոսաց», գլ. ԿԷ (ԿԸ), 1—4։

*սոսկալի մարդ է, և նրանից կարելի է վախենալ, բայց խոստացան, որ իրեն կպաշտպանեն արքայից արքա Կոստանդիանոսի առաջ[82]։ Նրանք հասկանում էին, որ լավ կլինի եթե մայրաքաղաքի եպիսկոպոսը Արևելքի բոլոր եպիսկոպոսների վրա գերիշխանություն ունենա։ Ուստի իրենց թագավորների ու Արևմուտքի մեծամեծների անունից նրան (Կոստանդիանոսին) այս խնդրի շուրջ նամակ գրեցին, ասելով, որ «ինչպես Արևմուտքում, այսինքն հռոմեական կայսրության մեջ, բազում պատրիարքներ կան՝ Անտիոքի, Հռոմի, Ալեքսանդրիայի և Կոստանդնուպոլսի, թող Արևելքում էլ, այսինքն Պարսկական տիրապետության մեջ առնվազն մեկ պատրիարք լինի»։*

*Աստված, որ Ադամի մեղքի համար աշխարհ ուղարկեց իր միակ որդուն՝ Փրկչին, որպեսզի իսրայելցիները Եգիպտոսի հարվածներից իրենց ազատությունը գտնեն, և որը վուշերից մրգեր աճեցրեց, և մորենիներից ծաղիկներ ծաղկեցրեց, և որը կարող է միշտ վատից լավը դուրս բերել, թույլ տվեց, որ իր աստվածային նախախնամությամբ ու պաշտելի ղեկավարությամբ, Պապայի ցանկությունը կատարվի։ Այսպես, նա դարձավ ամբողջ Արևելքի եպիսկոպոսների ու քրիստոնյաների գլխավոր առաջնորդը։ Բոլոր (Արևելքի) եպիսկոպոսները հավանություն տվեցին Արևմուտքի որոշմանը այն վախից, որ Արևմուտքի եպիսկոպոսները կարող են իրենց երկու հզոր թշնամիների միջև թողնել, և Արևմուտքի՝ Հռոմի քրիստոնյաների կայսրի և Արևելքի՝ պարսիկների ամբարիշտ արքայի միջև։*

*Պապայի ավագ սարկավագ՝ Սիմոնը այս նորությունը չընդունեց և իր ծնողների միջոցով ուզում էր արքային (համոզել), որ այն ի չիք դարձներ իր որոշումը։ Սակայն Պապան խորամանկությամբ, հաճոյացրեց Սիմոնի հորը, նրան խոստանալով, որ իր մահից հետո իրեն հաջորդ կնշանակի։*

*Այդ ժամանակ սահմանային քաղաքում[83], հայտնի էր աստ-*

---

[82] *Այս տիտղոսը յուրահատուկ է պարսիկներին։ Մեզ թվում է, որ բնագրում «և» շաղկապն է կորել. հավանաբար այն այսպես եղած կլինի—«Արքայից արքայի» և Կոստանդիանոսի մոտ։ Մանավանդ բնագրի հետագա մասն էլ այդ է հուշում։*

[83] *Նկատի ունի Մծբինը։ Խոսքը Հակոբ Մծբնեցու մասին է։ Տե՛ս* Bedjan, Acta mart. et sanct., t. *III*, p. *263*. *Ըստ Էբրայուսի Մծբինի եպիսկոպոսությունը հիմնվել է մ.թ. 300—301 թ. Բաբո անունով եպիսկոպոսի օրոք, որը նույն աթոռին է բազմել մինչև 309 թ. Նրան հաջորդել է Հակոբ Մծբնացին, տե՛ս* *Barhebraeus*, Chron. Eccles., col. 31, № 2.

վածավախ Հակոբը, որն առաքյալների նման հրաշքներ ու մարգարեների նման սքանչելիքներ էր գործում։ Նա հաճախ ամբողջ գիշերը աղոթքով էր անցկացնում, ինչպես իր Տերը։ Նրա հսկումներն ու ծոմապահությունները բոլոր տեղերում հայտնի էին, ուստի իսկական աստվածային այս մարդու. մասին նորից կխոսենք։ Մեր Ծրիղան իր հերթին աստվածասիրության նախանձախնդությամբ այրվելով, բազում անդամ գնաց նրան գտնելու, որպեսզի նրանից (Հակոբից) օրհնվի և իրար հետ զրուցեն։ Անհամար խոնջություններից ու գործերից հետո, նա մահացավ հույների 627 թվականին ուրբաթ օրը, (316 թ.) և մեծ հանդիսավորությամբ թաղվեց եկեղեցում։

## Տասներկուերորդ եպիսկոպոս՝ Յոհանան[84]

Ծրիղայից հետո (եպիսկոպոս) դարձավ արթուն ու նախանձախնդիր հովիվ՝ Յուհանանը, որը կոչվում էր «Մարիամի որդի», որովհետև շատ էր սիրում երանելի Մարիամին, աշխարհի կենարարի ու վերանորոգողի մորը։ Նա ևս շատ հեթանոսների ու հրեաների մեջ Ավետարանը քարոզեց։ Եվ դրա համար է ասվել. «Ատելութիւն զոր ի նանիր ատեցին զիս»[85]։ Նրանց (հեթանոսների ու հրեաների) նենգության պատճառով նրան Արբելայից արտաքսեցին և նրա հետևից զինվորներ ուղարկեցին՝ սպանելու համար, սակայն նա թաքնվեց ու խուսափեց նրանց ծուղակից։ Նա երկար ժամանակ թափառեց գյուղերում ու լեռներում։ Նրա սերը աստծո նկատմամբ ավելի ու ավելի էր բազմապատկվում։ Նա կարողացավ Քրիստոսի փարախը մտցնել բազում ոչխարների։

Այն ժամանակ, երբ քրիստոնյա թագավորները կառավարում էին աշխարհը և եկեղեցու գործերը բարեհաջող էին, դժոխքն իր եղջյուրը բարձրացրեց, բացեց իր ապականված բերանը, և ուղղափառ հավատի հակառակ խոսքեր դուրս տվեց։ Նա (սատանան) սուտ, հանդուգն, չար ու ամբարիշտ Արիոս ծառային գտավ՝ իր վարդապետությունը տարածելու համար։ «Մարդ ի պատուի էր եւ ոչ իմացաւ»[86]։ Նա գտնում էր, որ ավելորդ է ասել, թե աստծո որդին՝ արարիչը (երկնքից) իջել է մեզ փրկելու համար։

---

[84] 317—346 թթ. (ըստ Մշիխա Ջեխայի)։

[85] «Գիրք Սաղմոսաց», գլ. ԻԴ, 19։

[86] «Գիրք Սաղմոսաց», գլ. ԽԸ, 13։

Ուստի նա ժխտեց Քրիստոսի աստվածությունն ու անմտաբար պնդում էր, որ Քրիստոսը արարիչ չէ, այլ արարած, որ նա բնությամբ աստծո որդին չէ, այլ միայն անվամբ։ Իր պատճառով մեծ աղմուկ բարձրացավ ամբողջ աշխարհում և 318 եպիսկոպոսներ նրան հերքելու համար հավաքվեցին Նիկիա քաղաքում, Կոստանդիանոս կայսեր ներկայությամբ։ Այս հայրերը բանադրեցին Արիոսին և բոլոր նրանց, ովքեր նրան համակարծիք էին։ Նրանք որոշեցին, որ Քրիստոսը՝ Որդին, իր Հոր նույն բնությունից է և նրան համադո։

Նույն այս ժամանակ, պարսիկների Շապուհ Բ արքան, մեկնեց բարձր լեռները, իրեն հնազանդեցնելու համար ծովի մոտակայքում (ապրող) լեռնցիներին, որոնք մի ասպատակության ժամանակ բաղում գյուղեր էին ավերել։ Նրանք մտածում էին հոռոմների շատ քաղաքներ կործանել, որն ինչպես հետո կտեսնենք, տեղի ունեցավ։ Ամեն մեկը կարող էր մտածել, որ մոտ է ժամանակը եկեղեցիների կործանման և սրբությունների հեթանոսացման։ Աստված, որ նախօրոք գիտեր տեղի ունենալիքը, տեսավ, լռեց և մեզ հանձնեց իր բուռն զայրույթին։ Շապուհ Բ արքան, որը թագավորեց հույների 620—690 թթ., մոտավորապես 70 տարի, (309—379) երբ տեսավ, որ մահացել է, աշխարհը սարսափով լցրած հաղթական Կոստանդիանոս կայսրը, և նրա տեղ բազմել է որդին՝ Կոստանդինը հոռոմների կայսրության արևելյան մասում, նա գտավ, որ ժամանակն է քրիստոնյաների երկիրը առանց արգելքի նվաճելու։ Ուստի գնաց և սահմանային քաղաք Մծբինը սլաշարեց։ Նա չգիտեր, որ այդ քաղաքը, արքայից արքայի բանակներից կպաշտպանվի ու կհսկվի մեր Տիրոջ կողմից այնպես, ինչպես վարդը փուշերի կողմից։ Այնպես, ինչպես աստված, որը Հուդիթին՝ թույլ կնոջ (օգնեց), խորտակելով ու ճնշելով Ոլիաբի զինվորների գոռոզությունը[87], և նա, որ Ոսթերի խեղճ կնոջ աղոթքի վրա Համանին փայտից կախեց[88], և նա, որ Սամսոնի միջոցով բազում փղշտացիների կոտորեց, այնպես էլ աստված այս դեպքում Շապուհին քաղաքից ետ դարձրեց, սրբասեր, ընտրյալ ու նշանավոր եպիսկոպոսի աղոթքների շնորհիվ[89]։

---

[87] «Յուդիթ», գլ. ԺԳ, 10—11։

[88] «Եսթեր», գլ. Է, 10։

[89] Շապուհի 338 թ. այս արշավանքի մանրամասն նկարագրությունը տե՛ս նաև *Bedjan*, Acta mart. et sanct., t. III, p. 464. Այստեղ խոսքը Հակոբ Մծբնացու մասին է։

Երբ հավատացյալների հայրը (Հակոբը) հասկացավ, որ իր որդիները սփռվելու են ամեն կողմ, անմաքուր սատանաների ծաղրի առարկա են դառնալու և նրանցից անարգվելու են, ինչպես Տիրոջ ընտրյալ՝ Մովսեսը[90], նա դուրս եկավ քաղաքի ամրությունների վրա և սկսեց Տիրոջը խնդրել, որ կամ իր ժողովրդին կորստի մատնի և կամ փրկի հեթանոսների ձեռքից ու մահից։ Տերը լսեց նրա աղաչանքը, և ահա միջատների մի բանակ երևաց երկնքում ու եկավ թափվեց Շապուհի բանակի վրա։ Այս միջատները ձիերի ունչերի մեջ մտնելով, նրանց տանջում էին, և աղոտացնում մարդկանց տեսողությունը, և ժամանակ չէին թողնում փախչելու։ Նրանք վախենում էին, որ այս կուրացման հետ միասին հոռոմների բանակը կարող էր անակնկալ գալ ու հարձակվել և այս անկարգ վիճակում իրենց կոտորել։ Մարդիկ գնացին Կոստանդինի մոտ և նրան հայտնեցին տեղի ունեցածի մասին։ Նա աստծուն փառավորեց և շնորհակալ եղավ, որ իր ծառա Հակոբի միջոցով, նման շնորհի արժանացրեց։ Արքան սպառնալիքներով վերադարձավ ու երդվեց, որ իր տիրապետության մեջ կջնջի հոռոմների կրոնը (քրիստոնեությունը)։

Մեր երկրի (Ադիաբենի) եպիսկոպոս՝ Յուհանանն այն ժամանակ իր հոտի հետ չէր, որովհետև հույների 640 թ. (329 թ.) այլ եպիսկոպոսների հետ մայրաքաղաք (Տիղբոն) էր գնացել, ի վերջո հավատարիմ ու իմաստուն մի մարդու պատրիարք ընտրելու համար, որովհետև Սելևկիայի թեմը, մար Պապայի դժբախտ մահից հետո, թափուր էր մնացել։ Ասում են, որ նա (Յուհանանը) երկու տարի մնաց մայրաքաղաքում, ապա այնտեղից էլ եկեղեցական գործերով գնաց Բեյթ-Հուզայե։ Այստեղ էր նա, երբ անգութ հրաման եղավ, և կոչ էր արվում բոլոր երկրների մոգպետներին[91], որ անխղճորեն կոտորեն քրիստոնյաներին, և նրանց բոլոր եկեղեցիները կործանեն։ Նիսան (ապրիլ) ամսի 6-ին[92], այս ամբարիշտ արքայի (Շապուհ Բ-ի) թագավորության

---

90 «Գիրք Սաղմոսաց», ճԵ (ճՁ), 23։

91 Ինչպես նշել ենք «մոգպետ» ասելով ասորի հեղինակը «մարզպան» նկատի ունի։

92 Ըստ Մշիխա Զեխայի հալածանքի երկու հրաման է եղել. առաջինը 339 թ. ապրիլի 6-ին և երկրորդը՝ 340 թ. սեպտեմբերին։ Սակայն ասորական վարքերում խոսվում է միայն առաջինի մասին, տե՛ս Bedjan, Acta mart. et sanct. t. II, p. 248.

31-րդ տարում, երբ նա գտնվում էր Բեյթ-Հուզայեյում, որպես վարձատրություն, սուրը սկսեց անգթորեն գործել, և ով որ համարձակվում էր ասել, որ քրիստոնյա է, կոտորվում էր։

Ուստի Արբելայի եպիսկոպոս՝ Յուհանանը Բեյթ-Հուզայեյից մեկնեց ու եկավ իր հոտի մոտ՝ իրեն վստահված ոչխարներն ու գառները արածացնելու համար։ Սակայն իր սիրտը ուրախությամբ լցվեց, երբ տեսավ, որ այն սուրը, որը պետք է մեր երկրի քրիստոնյաներին կոտորեր, դեռ իր պատյանի մեջ էր։ Որովհետև երկրի մոգպետ՝ Պագրասպը քաղաքի մեծամեծների հետ համաձայնվել էր մինչև Իլուլ (սեպտեմբեր) ամիսը, մինչև այգեկութի ավարտը քրիստոնյաներին չկոտորել[93]։ Ասում են, որ արքան զղջացել էր նման անգութ հրաման տալու համար, և ուզում էր այն ետ վերցնել, սակայն քրիստոնյաների անվան թշնամի՝ հրեաներն ու մանիքեականները, մոգերին համոզեցին, որ արքային թույլ չտան այդ անելու։ Նրանք (մոգերը) արքային հասկացրին, որ բոլոր քրիստոնյաները հռոմների լրտեսներն են, և եթե նրանք իրենց այնտեղի եղբայրներին ոչինչ չգրեն, իր տիրապետության մեջ ոչինչ չի պատահի, և (բացի այդ) նրանք (քրիստոնյաները) հարուստ են և ապահով կյանք ունեն, մինչդեռ արքայից արքան պատերազմների ու ճակատամարտերի պատճառած ծախսերի ծանրությունից կողոպտվել է, իսկ նրանք պատերազմներից ազատ լինելով, միշտ խաղաղություն են վայելել։ Մոգերը արքայի միտքը փոխեցին իրենց դրպարտություններով. և նա կոտորելու իր նախորդ հրամանից բացի, կարգադրեց որ քրիստոնյաները կրկնակի հարկ վճարեն։

Այսպես մենք հեթանոսների ու անհավատների ծաղրի առարկա դարձանք։ Հրեաները մեզ ծաղրում էին ասելով. «Ո՞ւր է ձեր աստվածը, թող այժմ վեր կենա, Գողգոթայի վրա նախատինքով խաչված Քրիստոսը, և ձեզ օգնի ու ձեր հալածողներին սպանի։ Միթե՞ նա ձեզ չի ասել, որ «ես ձեզ հետ եմ մինչ ի կատարածն աշխարհի։» Մանիքեացիները մեզ հրեաներից ավելի էին նախատում ու համարում էին ժողովրդի տականք։ Հովիվը

---

93 Պատմիչի այս վկայությունը շատ հետաքրքրական է, որովհետև այն ցույց է տալիս, որ գյուղերում նույնպես բազում քրիստոնյաներ կային և նրանք Ադիաբենի գյուղատնտեսության մեջ կարևոր դեր ունեին։ Հետաքրքրական է նաև պատմիչի հաջորդ վկայությունը, որը ցույց է տալիս, թե պարսիկները տնտեսական ինչպիսի քաղաքականություն էին կիրառում IV դարում իրենց տիրապետության մեջ ապրող քրիստոնյաների նկատմամբ։

*խփված էր և հոտը ցրված։ Խավարի ժամանակ էր և լույսը ծածկված։ Այնպիսի ժամանակ էր, որ սկիզբ ու վախճան ունեցող արարածը, արարչի փոխարեն էր պաշտվում։ Քանզի արևը, որ աստված մարդկանց համար էր ստեղծել, մարդիկ դրան էին պաշտում ու զոհ մատուցում։ Կրակը, որ Ադամի որդիների կարիքների համար էր ստեղծվել, լույսի որդիները դրա համար ատրուշաններ էին կառուցել։ Եվ փոխանակ երկնային Թագավորի եկեղեցիները մտնելու, նրանք սատանաների համար ատրուշաններ էին հիմնել և (այդպիսով) ընկել մոռացության հնոցը։ Ահ՜, մարդկային ին՜չ անեծք, ին՜չ անհնազանդություն, ին՜չ հակառակություն։*

*Ճիշտ այնպես, ինչպես մի մարդ, որ ուզում է մի ծառ կտրել, նախ արմատի շուրջն է փորում, ապա այն բացելով արմատն է կտրում, այնպես էլ հեթանոս մոգերը առաջադրել էին նախ հովիվներին ու ղեկավարներին ոչնչացնել։ Ուստի, անմիջապես նրանք բռնեցին Արևելքի աթոռը բազմած՝ մար Սիմոն Բար-Սաբըղային, ապա բազում քահանաների և սարկավագների, և նրանց տարան Քարքա-Դը-լադան, արքայի մոտ։ Աստծո զորությամբ, իր մեծ հովիվը, բազում հարցաքննություններից հետո չվախեցավ արքայի սպառնալիքներից ու չերկրպագեց ստեղծված արևին։ Շապուհը նրա 102 ընկերներին տանջանքների ենթարկեց, իսկ նրան էլ գլխատել տվեց։ Դրանից հետո քրիստոսի այս մարտիկները, այս կարճ տևողության պատերազմում, ավելի ուժեղացան ու քաջալերվեցին։ Այս (հալածանքը) սկսվեց Ավագ Ուրբաթ օր և շարունակվեց մինչև Զատկի հաջորդ կիրակին[94], և Արևելքի մեջ (այդ օրերին) սուրը չհանգստացավ։ Ճանապարհների վրա բավատացյալներին խումբ-խումբ, ոչխարների հոտերի նման անվերջ, սպանդանոց էին առաջնորդում, և այնտեղ սպանվածներն անթիվ էին։*

*Մեր երկրում՝ Ադիաբենում, բարեգութ մոգպետ Պագրասպի բարյացակամության շնորհիվ, շատ քիչ մարդիկ զոհվեցին, որոնց անունները (այժմ) անհայտ են։ Պագըասպ մոգպետի մահից մի տարի հետո[95], նրա փոխարեն նշանակեցին Պերոզ Տամշաբուրին և (այդ ժամանակվանից) քրիստոնյաների արյունը հոսել սկսեց։ Եվ երկիրը լցվեց անիծյալ սատանայի սուտ աշակերտների անիրավություններով ու չարություններով, և մաքրվեց այն*

---

94 *Տե՛ս նաև Bedjan,* Acta mart. et sanct., t. II, pp. 241 et 248.

95 *Ըստ Մշիխա Զեխայի մ. թ. 342 թ.*

և ամեն տեսակի կեղտոտությունից ու աղտից (քրիստոնյաների) մաքուր ու անմեղ արյան հեղեղով, և այսպիսով, դարձավ ի վերջո գեղեցիկ ու հաճելի հարսը երկնային փեսայի, որը նրա հետ խոսնցյալ է խաչի միջոցով, և իր աթոռն ու նախատինքը (թողել) է Գողգոթայի վրա, անասելի տանջանքների ու տառապանքների մեջ։

Նա (Քրիստոս) իր աշակերտներին, և նրանցից հետո, նրանց հաջորդներին ու եկեղեցու բոլոր գավակներին ասաց. «Երանի է ձեզ յորժամ նախատիցեն զձեզ եւ հալածեսցեն եւ ասիցեն զամենայն չար զձէնջ սուտ վասն իմ։ Ցնծացէք եւ ուրախ լերուք զի վարձք ձեր բազում են յերկինս զի այսպէս հալածեցին զմարգարէսն, որ յառաջ քան զձեզ էին»[96]։

Սիրելի Պինե՛ս, ինձ դժվար է մեկ առ մեկ թվարկել այն քրիստոնյաների անունները, որոնք ընկան ամբողջ Արևելքում։ Որովհետև անկարելի է հաշվել ու թվարկել ժուժկալ դաոներին, որոնք դահիճների դանակով, աստծո համար զոհվեցին, որպես երկնային արքայության կենդանի ու արժանի զոհեր։ Ես քո խնդրանքի համաձայն կհիշատակեմ միայն նրանց անունները, որոնք իրենց (արյունով) ոռոգեցին մեր քաղաքն ու երկիրը, որպեսզի դու իմանաս, թե ինչպիսի աստվածային մարդիկ են նախորդել քեզ, և թե ինչպես այժմ առանց դժվարության կարող ես նրանց հետքերով քայլել[97]։ Նրանք կատարելության ճանապարհին մեզ համար հրամանատարներ ու առաջնորդներ եղան, և բոլորը նրանց սիրով հետևեցին։

Այսպես, Շապուհի իշխանության 35-րդ տարում, Պերոզ Տամշապուրի հրամանով բռնեցին Յուհանան եպիսկոպոսին ու Հակոբ քահանային։ Այս մոգպետը, որը ոչ մի գթության նշան չուներ, նախ նրանց Բղիզար ամրոցում բանտարկեց։ Նրանք այնտեղ մնացին մեկ տարի շարունակ։ Հեթանոսները նրանց բազում տանջանքների էին ենթարկում, իսկ Քրիստոսի այս արթուն մարտիկները, այդ (բոլորը) տանում էին շատ զովելի համբերությամբ։ Նրանք ուրախ ու երջանիկ էին, ինչ որ չարչարվում Քրիստոսի սիրույն տանջվելու համար։

Նույն օրը խմբերով տղամարդկանց, կանանց ու բոլոր տարիքի հավատացյալներին կոտորեցին։ Նրանց մեջ էին (նաև)

---

[96] «Ավետարան ըստ Մատթէոսի», Գլ. Ե, 11—12։

[97] Պատմիչի այս վկայությունից կարելի է ենթադրել, որ Պինեսը Ադիաբենի առաջնորդ-եպիսկոպոսն էր, այսինքն թեմի առաջնորդը։

Նարսե քահանան, ինչպես նաև Անանիան ու եկեղեցու սարկավագ Ռախիման։ Ո՛չ հարցաքննությունը և ո՛չ էլ համոզելը, սատանային չօգնեցին, որ ընկճի նրանց հոյակապ արիությունը, և նրանց առաջնորդեցին քաղաքից դուրս, և խաչեցին իրենց կենարար Տիրոջ նման։ Քրիստոնյաները նույն գիշերը նրանց մարմինները ծածուկ տարան, և այժմ նրանց մասունքներից առաջացավ մի աղբյուր, որից ցայտում է աստվածային շնորհը, ի նպաստ Ադամի բոլոր մեղավոր որդիների, և դարձել է ապավեն։ Այդ օրվանից սկսյալ, մինչև տարվա վերջը, սուրը առանց հագենալու մեր արյունն էր խմում, և (այսպիսով) մոգերը մեր երկրի դահիճները դարձան։ Նրանք առանց իմանալու, կատաղած շների նման, ամեն օր մեր արյունն էին լիզում, որը ճահճի նման, կարմիր էր ներկում քաղաքի փողոցներն ու շուկաները, (ու այդպես) ավելի և ավելի էին խելագարվում ու մոլեգնում։

## Տասներեքերորդ եպիսկոպոս՝ Աբրահամ[98]

Ուստի քրիստոնյաները հավաքվեցին ու մար Աբրահամին ծածուկ ընտրեցին, որպեսզի նա աստծո եկեղեցին ղեկավարի, քանի դեռ Յուհանանը՝ Տիրոջ զինվորը բանտում էր։ Մոգերը շատ անգամ գնացին նրան (Աբրահամին) բռնելու, որովհետև իմացել էին, որ քրիստոնյաները նոր ղեկավար են ընտրել ու դրա համար նրանք զայրացել էին։ Սակայն սուրբը մի ամիս շարունակ թաքնվեց հավատացյալներից մեկի տանը և խուսափեց արյան ծարավի, ագահ գայլերի ատամներից։ Այդ օրերին, երբ արքան Բեյթ-Լափաթում էր գտնվում, Պերոզ Տամշաբուր մոգպետի մոտ պատգամավոր ուղարկեց, նրան հայտնելու, որ շտապ գա իր մոտ։ Սա որպեսզի ցույց տա, որ ինքը հլու հնազանդ է արքայից արքայի հրամանին, և որպեսզի նրա բարյացակամությունը շահի և իրենից հեռացնի սպառնացող (որևէ) վտանգ, իր հետ տարավ Յուհանանին ու նրա քահանա Հակոբին։ Երբ վերջիններս Բեյթ-Լափաթ հասան, նրանց պարտադրեցին, որ արև-աստծուն երկրպագեն, և երբ նրանք հրաժարվեցին ասելով, որ իրենք արարիչը չեն փոխարինի արարածով, (դրա վրա) արքան հրամայեց և նրանց սրով գլխատեցին Թեշրին երկրորդ (նոյեմբեր) ամսի 1-ին։ Թող նրանց հիշատակը օրհնությամբ լինի և

[98] 346—347 թթ. (ըստ Մշիխա Զեխայի)։

նրանց աղոթքները օգնեն մեզ։ Պերոզ Տամշաբուրը հավատում էր, որ այսպիսով արքայի կամքը բավարարեց, (սակայն) արքան նրան պաշտոնանկ արեց և նրա փոխարեն նշանակեց Ադուրպարհ անունով մեկին, որը նախկինում բանակի հրամանատար էր եղել (և ապա) մեր երկրից բազում պինվորներ հավաքեցին, որովհետև հոոոմների դեմ մեծ պատերազմի էին նախապատրաստվում։ Այսպես, ի վերջո քրիստոնյաները մի անգամ ևս զրկվեցին իշխանությունից ու քահանայությունից։ Այս մոգպետը նախորդից ավելի դաժան. էր։ Ատամներն էր կճրտում (քրիստոնյաների) արյան համար ու երդվում, որ նրանց կոտորելու է։ Երբ Աբրահամը իմացավ, որ այս դիշատիչ առյուծը մեր երկիրն է եկել, իսկույն գնաց Տել-Նախա գյուղը այն հույսով, որ գուցե կկարողանա թաքնվել և իլուր զոհ չի դառնա ապականող առյուծի ամբարտավանության։ Մոգպետը բազում մարդկանց նրա դեմ ուղարկեց։ Նրան (բռնեցին) և ստիպում էին, որ նա իր Տիրոջ՝ Քրիստոսին ուրանա, իսկ նա ծիծաղում էր նրանց սպառնալիքների և հարվածների վրա։ Նրանք այս գյուղում ավազակի (?) ...

## Տասնչորսերորդ եպիսկոպոս՝ Մարան Ջեխա[99]

Քրիստոնյաները նորից հավաքվեցին ու ծածուկ, Մարան Ջեխային ընտրեցին։ Թեև այն ժամանակ վշտի ու կորստի տարիներ էին և քիչ քրիստոնյաներ կային, և եթե (առաջ) յուրաքանչյուր քսան կամ երեսուն տարին մի անգամ էին հավաքվում հովիվ ընտրելու համար, ապա այժմ տարի չէր անցնում, որ իրենց հովիվը գայլերի զոհ չդառնար։ Տիրոջ բարկության պատճառով, բացահայտ, մեզ ճնշում էին, և Նա (Տերը) որոշել էր մեր մեղքերի ու ամբարշտության համար մեզ պատժել և վրեժ լուծել, որովհետև մենք ապականվել էինք Հիսուս Քրիստոսի՝ իր միակ որդու արյան դեմ մեղանչելով։ Նա իր բարկությամբ ու զայրույթով մեզ հանդիմանում էր, որովհետև մեր հոգին կործանվել էր։

Ուստի Մարան Ջեխան որպես արթուն հովիվ, գնաց և նրանց (հավատացյալներին) քաջալերեց, որ շուտով կվերջանա հալածանքը։ Ամրացրեց նրանց հավատը, որը հատու սրի ներքո

[99] 347—376 թթ. (ըստ Մշիխա Զխայի)։

սկսել էր թուլանալ։ Նա արթնացրեց նրանց մեջ քնած արիությունը, որը տատանվելու եզրին էր և բոլորովին վերանում էր։

Սիրելի Պինես, ո՞վ կարող է թվարկել մեր երկրում զոհվածներին։ Շատ ընտանիքներ ոչնչացան և ուրիշ շատ շատերն իրենց ղավակների կորստի համար մինչև այսօր արցունք են թափում։ Սուրը նրանց պարանոցի վրա կախված մնաց մինչև 662 թվականը[100]։

Նույն այս տարում Շապուհ արքան հավաքեց իր բոլոր բանակները և գնաց հոռոմների քաղաքները նվաճելու։ Նա շատ մարդկանց կոտորեց ու բաղում գյուղեր ավերեց։ Չկարողանալով գրավել Մծբինը, (ստիպված) այս քաղաքի (պարիսպների) մոտ և. ամբողջ Միջագետքում մեծ քանակությամբ զորք թողեց, վերադարձավ), որպեսզի ինքն էլ իր հերթին կարողանա իր քաղաքները պաշտպանել բարբարոսներից, որոնք հարձակվել էին ծովի այն կողմից[101]։

Այն ժամանակ Արբելա քաղաքում կար Շարբիլ աստվածուհու քուրմերից մեկը, որի անունը Այտիլահ էր, և որը կանանց նման տառապում էր արյունահոսությունից[102]։ Մի օր, երբ աստվածուհու տաճարում ցավից ստիպված գոռում էր, մի քրիստոնյա անցավ և նրա ձայնը լսեց։ Կարծեց, որ մեկն է մահացել և տաճար մտավ ու Այտիլահից հարցրեց, թե ի՞նչ էր պատահել։ Եվ երբ իմացավ, թե ինչ ունի, նրան ասաց. «Գնա քրիստոնյաներից Մարան-Զեխա կոչվող անձնավորության մոտ և նա քեզ աստծո կամքով կբուժի։ Ուստի նա վեր կացավ, որ գնա նրա մոտ, որովհետև ինքը եկեղեցուց հեռու էր (գտնվում), սակայն իսկույն նրա արյունահոսությունը դադարեց և նա բուժվեց։ Գնաց ու (գտավ) եպիսկոպոսին ու քրիստոսի հավաքված աշակերտներին։ Սրանք շատ վախեցան, որովհետև գիտեին, որ նա Շարբիլ աստվածուհու քուրմերից էր։ Նրանց իր խոսքով վստահեցնելուց ու հանգստացնելուց հետո, պատմեց իրենց մոտ գալուց առաջ իր հետ պատահածի մասին, թե ինչպես քրիստոնյաների աստվածը իրեն բուժեց. այսպես բոլորը փառավորեցին աստծուն, որ այսպիսի դժվարին օրերին ցանկացավ այս Հեթանոս քրմապետի միջոցով, որ անգթորեն կոտորում էր

---

[100] 351 թ. Տե՛ս նաև Bedjan. Acta mart. et sanct., t. IV. p. 166. ուրեմն մոտ տասը տարի տևում են Շապուհ Բ-ի հալածանքները։

[101] Կասպից ծովը։

[102] Տե՛ս նաև Bedjan. Acta mart. et sanct., t. IV. p. 133.

իրենց (քրիստոնյաներին), իր կարողությունը ցույց տալ։ Նա նրանց մոտ մի քանի օր մնաց, իսկ մոգերը նրան ուզում էին բռնել ու դաժան մահով սպանել։ Իսկ նա նույն գիշեր փախավ ու գնաց Շահրկարտ (քաղաքը), Խաբիբ եպիսկոպոսի մոտ։ Եվ որովհետև այնտեղ էլ մոգերից վախենում էր, ապաստանեց Մախուզա-Արիոնի հավատացյալների մոտ։ Այստեղ ուսումնասիրեց հավատի խոսքերը (գրքերը), որպեսզի մի առ ժամանակ հետո, պատրաստ լինի իր կյանքը այդ գործին նվիրելու։ Մկրտվեց ու վերադարձավ իր երկիրը, որպեսզի քարոզի մեկ աստված Երրորդության մեջ (վարդապետությունը)։ Այստեղ իսկապես զարմանալի տեսարան էր. Նա երկրորդ Սավուղն էր, և նա, որ նախապես ուզում էր քրիստոնյաներին կոտորել, ինքն ընդունեց նրանց հավատը, և դրա համար էլ թափեց իր արյունը։ Ինչքան մարդիկ զարմացած ու հիացած էին աստվածային այս նոր շնորհի արտահայտության ձևին, որն աստծու սիրով էր լցվել ու խաչն էր քարոզում։ Սա ամենաբարձրյալի կարողությունն էր, որ ոչինչը ինչի էր վերածում և հակասական բնավորությունները իրար միացնում։

Շատ մարդկանց մկրտելուց հետո նա (մեր) երկրի մոգերից մեղադրվեց, և Շաբուր Տամշաբուրը հրամայեց, որ նրան բռնեն։ Ուստի բոլոր քրիստոնյաները վախեցան ու սկսեցին գաղտնի փախչել։ Մարան-Զեխան ևս փախավ ու թաքնվեց բարձր լեռներում, քարանձավներում ու քարայրներում, մինչև որ անցնի այս երկյուղալի փոթորիկը, երբ անիծյալ սատանաները դուրս էին եկել աստծո եկեղեցու դեմ։ Այտիլահն ևս փորձեց փախչել, սակայն շուկայում լինելով, ճանաչվեց ու բերվեց արևի ամբարիշտ ծառաների մոտ։ Սա Միհրներսե անունով մի քրիստոնյայի, որ իր հավատն ուրացել էր (հրամայեց), որ աստծո ծառայի (Այտիլահի) ականջը կտրի։ Նա, այս Հուդան, որ իր Տիրոջը ուրացել էր, իսկույն կտրեց, բայց ինքը ևս այնպիսի վատ վերք ստացավ, որ տեսնողներին վախեցնում էր։ Այսպիսով, Քրիստոս՝ մեր աստվածը, իր մկրտված ծառայի համար վրեժ լուծեց։ Սակայն սատանայի ծառան չզգաստացավ այս փայլուն նշանից, այլ, ընդհակառակը, նրա հոգին քարացավ Փարավոն թագավորի նման, և հաստատապես արժանացավ իրեն համար վերապահված հավերժական կրակին, և հոգին էլ կործանվեց։ Այսպես, աստծո ծառան բանտարկվեց։ Մի քանի օր բանտում մնալուց հետո, իր մոտ բերեցին վշտակիցներ ու տառապանքի

*ընկերներ, որոնց մեջ էր Մատա-Ղարաբայայի սարկավագ՝ Խափսինը։ Որից հետո երկուսին էլ տարան մոգպետի մոտ, և որովհետև սրանք չուրացան իրենց հավատը, որոշեցին նրանց ուղարկել Բեյթ-Լափաթ, արքայի մոտ։ Ո՛չ երդումները, ո՛չ տանջանքները, ոչ խոստումները ոչնչով չօգնեցին անիծյալ սատանային, որպեսզի նրանք հրաժարվեն իրենց սկզբունքից, և (դրա համար էլ) նրանց գլխատեցին։ Նրանց մարմինները մնացին գետնի վրա, բայց նրանց հոգիները թռան ու բարձրացան դեպի արարիչը և այնտեղ էլ նրանք (այժմ) երջանկությունից ուրախանում ու ցնծում են, մինչ նրանց դահիճները տառապելու ու տանջվելու են հավիտյանս հավիտենից։*

*Սիրելի Պինե՛ս, մեր Տիրոջ մարտիրոսների սոսկալի տանջանքների նկարագրությունը (պահանջելով) գժվարացնում ես իմ գործը՝ գրածս։ Ոչ մի թիվ չի կարող հավասարվել նրանց (մարտիրոսների) քանակին*[103]*, և ոչ մի գրիչ չի կարող նկարագրել նրանց տանջանքները։ Շապուհի թագավորության ամբողջ ժամանակ մեր եղբայրների արյունը չցամաքեց և սուրը երբեք չգագարեց իր ավերածությունը գործելուց*[104]*։*

*Այսպես, Մարան Զեխան երկար ժամանակ լեռներում ու գյուղերում ապրելուց հետո, անասելի վախի ու սարսափի մեջ, Շապուհից առաջ վախճանվեց (եպիսկոպոսական) աթոռի վրա, հալածանքի 29 տարիներ բազմելուց հետո։*

## Տասնհինգերորդ եպիսկոպոս՝ Շուբխա Լիշյաշուղ[105]

*Մեր Շուբխա-Լիշյաշուղի ծնողները Քարքա-Դը-Բեյթ-Սլոխից էին, եկել ու ապրում էին Արբելայում։ Դեռ մանուկ հասակից նա եկեղեցի էր հաճախում։ Այստեղ նա աստիճան առ աստիճան աճեց իր շնորհքով, մինչև որ գարձավ ամբողջ Ադիաբենի թեմի առաջնորդը (եպիսկոպոսը)*[106]*։ Ասում են, որ նա շատ գեղեցիկ*

---

103 *Այսինքն «անսահման»։*

104 *Սոզոմենը գրում է, որ Շապուհի հալածանքների ժամանակ զոհվել է 16000 մարդ, տե՛ս* „Hist. Eccl.", t. II, 14:

105 *376—407 թթ.։*

106 *Զնայած Մշիխա Զեխան Ադիաբենի կառավարիչների անունները հիշատակում է, բայց այն կատարյալ չէ. համենայն դեպս նրա մոտ հետևյալ պատկերն է ստացվել.*

*1 Ռակբակտ 149 թ.*

արտաքին է ունեցել և հեռու երկրներից նրան տեսության են եկել։ Իր եպիսկոպոսության 10-րդ տարում (386 թ.) սկսեց քահանաներ ու սարկավագներ ձեռնադրել, որովհետև հալածանքի պատճառով նրանց քանակը պակասել էր. գյուղերից շատերում նույնիսկ մեկ քահանա չկար։ Քիչ տարիների ընթացքում մեր երկրում հավատը վերակենդանացավ ու ստացավ իր նախկին գեղեցկությունը, որը տեսնողներին զարմացնում էր։

Շուբխա Լիշուի ժամանակ բոլոր գիտությունների մեջ փայլում էր աստծո իսկական մարդ՝ Թեոդոր Թարգմանիչը։ Նա էր, որ առաջին անգամ, փիլիսոփայության ու տրամաբանության միջոցով բացատրեց մեր Տիրոջ ծննդյան ու չարչարանքի խորհուրդը և մեր Տիրոջ՝ Քրիստոսի անձի մեջ եղած երկու բնության վարդապետությունը։ Նա եղավ մար Նեստորի առաջին ուսուցիչը, որը նույնպես ուղղափառության համար թափեց իր արյունը։ Մեզ մոտ (Ադիաբենում). ամեն տեղ խաղաղություն էր և քրիստոնեության արմատները թափանցում էին օտար ժողովուրդների մոտ և ամրանում։ Մար Շուբխա Լիշուն այս ամբողջ աստվածային գործի համար մեծ օգնություն ցույց տվեց, և այդ (գործը) այնքան մոտ էր իր սրտին, որ ամբողջ գիշերը չէր քնում, այլ մտածում էր քարոզելու մասին։

Եպիսկոպոսության լուծը անասելի բազում դժվարություններով ու չարչարանքներով տանելուց հետո, վախճանվեց ու մեծ հանդիսավորությամբ թաղվեց 31 տարի շարունակ հավատացյալներին ղեկավարելուց հետո։

## Տասնվեցերորդ եպիսկոպոս՝ Դանիել[107]

Նրանից հետո Դանիել անունով քաղցրաբարո ու համեստ մի մարդ բազմեց (աթոռին), որը Տախլ գյուղից էր։ Հայրը հեթանոս էր և մայրը քրիստոնյա։ Նա քարոզեց ու մկրտեց բազում հեթանոսների, ինչպես նաև երկու մոգերի։ Ինչպես իր, այնպես էլ Մարան Զեխայի ժամանակ, երկու ամբարիշտ արքաների՝

2 Նարսա 189 թ.
3 Շարհաթ 225 թ.
4 Ադորղահադ 230 թ. mart. et sanct., t. IV, p. 128.
5 Գուվրաշնասպ 286 թ.
107 407—431 թթ.։
6 Պագրասպ 345 թ.
7 Պերոզ — Տամ — Շաբուր 346 թ. տե՛ս նաև Bedjan, Acta mart. et sanct., t. IV, p. 130.
8 Ադոր — Բարեհ 355 թ.

Հազկերտի ու Վարհարանի[108] դրդումով անգութ հալածանք բարձրացվեց քրիստոնյաների դեմ։ Նրանց (քրիստոնյաների) արյունով ողողվեց երկիրը և այդ պատճառով էլ պատերազմի կրակը վառվեց հեթանոս պարսիկների ու քրիստոնյա հոռոմների միջև։

Այս պատերազմում երկու կողմերն էլ համաձայնվեցին իրենց երկրներում բացարձակ ազատություն տալ կրոնի հարցում։ Այս պայմանով դաշնի սուրը պատյան դրվեց։

Քրիստոնյաներին տրված այս փոքր խաղաղությունից օգտըվելով, Մար Իհաբ պատրիարքը գրեց ու բոլոր եպիսկոպոսներին հրավիրեց, որ (գան) իր մոտ հավաքվեն եկեղեցական հարցերով[109]։

Դրանից առաջ մի անգամ էին հավաքվել մար Իսահակի օրոք[110] և որոշել էին, որ Արբելայի թեմը մետրոպոլիտություն լինի, և իրեն ենթակա այլ աթոռներ էլ ունենա, ինչպես օրինակ՝ Բեյթ-Նուհադրայի[111], Բեյթ-Բագաշի, Բեյթ-Դաժանի, Ռամոնինի[112], Բեյթ-Մահկարտի և Դաբարնայի։ Սակայն ծանր հիվանդության պատճառով մար Դանիելը չկարողացավ այս ժողովին մասնակցել և իր փոխարեն մասնակցեց մար Դադիշողը (ժողովին), և այն, չորս տարի հետո տեղի ունեցավ[113]։ Հայրերը հաստատեցին Տիզբոնի պատրիարքի գերիշխանությունը մյուս եպիսկոպոսների վրա, ինչպես որ Պետրոսը (առաքյալը) մյուս առաքյալների նկատմամբ գերիշխանություն ուներ։

Երբ Արևելքը խաղաղ էր, (այստեղ) միասնություն ու անպատմելի աստվածասիրություն էր տիրում (քրիստոնեական) վարդապետության մեջ, (մինչդեռ) Արևմուտքում վարդապետությունը խառնվել ու խռովվել էր երկրորդ փարավոն՝ Կյուրեղ Եգիպտացու կողմից, որը կայսրի օգնությամբ ու երկրային ուժով, պայքարում էր ճշմարտության դեմ ու հալածում ճշմարիտ մարտիրոս, Կոստանդնուպոլսո պատրիարք՝ մար Նեստորին։ Երբ մար Դանիելը իմացավ այս երկպառակության մասին, ասում են.

---

108 Հազկերտ Ա թագավորել է 399—420 թթ., իսկ Վահրամ Ե հաջորդել է նրան 420—438 թթ.։

109 420 թ. տե՛ս նաև J. B. Chabot. Synod. Orient., p. 272.

110 410 թ.։

111 Մասնագետները կարծում են, որ այն գտնվում էր Տիգրիս ու Խաբուր գետերի միջև եղած, Տուր-Ղաբդինի և Ճեբել-Սինճարի արանքներում։

112 Ռամոնին կամ Ռասոնին է կոչվում այն. գտնվում է Արբելայի հյուսիս-արևմուտքում։

113 Մար Իհաբի ժողովից հետո։ Այստեղ նկատի ունի Մար Դանիելի եպիսկոպոսական աթոռին բազմելուց չորս տարի հետո։

գուշակեց, որ ժամանակը եկել է և Արևմուտքը խավարելու է ու լույսը երևալու է Արևելքում։

Այսպիսի վշտերի ու մտածմունքների մեջ նա վախճանվեց Զատկի հաջորդ կիրակին, կյանքի 24 տարիների ընթացքում իր հոտը (կենդանի) ջրով արբեցնելուց հետո[114]։

## Տասնյոթերորդ եպիսկոպոս՝ Ռախիմա[115]

Մարի Ռախիման Արբելա քաղաքից էր, և երբ իսմայելացիները հաստատվեցին Ադիաբենում, նրան տարան իրենց մոտ։ Նա ըստ սովորության, նրանց մոտ ապրեց 15 տարի։ (Այնտեղից) նա փախավ մենակ ու անապատում թափառելուց հետո հասավ իր երկիրը։ Այսպես, նրա մոտ հայտնվեց սուրբ Հոգու շնորհքը, որը նրան կոչեց եպիսկոպոսության մեծ գործին։ Նա ևս իր սրտին մոտ էր (ընդունում) անհավատների դարձի հարցը, և բոլոր գյուղերի ու քաղաքների համար քահանաներ ու սարկավագներ ձեռնադրեց և իր թեմի բոլոր եպիսկոպոսներին (ժողովի) հրավիրեց, որ ի վերջո ճիշտ ուղու վրա դնեն սխալ գործերը, մեղավորներին զգաստացնեն, իսկ նրանց, որոնք ճիշտ ուղու վրա են կանգնած՝ ամրացնեն։

Արևելքում մինչ այդ զբաղված էին ժողովրդի գործերի ղեկավարությամբ ու հավատքի պահպանությամբ։ Արևմուտքում ամեն լավ գործ կործանվեց Եփեսոսի պիղծ ժողովում, որտեղ Կյուրեղ Եգիպտացին՝ անօրենության գործակալը, ընդունել տվեց ամենապիղծ, անիծյալ ու անխոհեմ այն (վարդապետությունը), որ կենարար Քրիստոսի մեջ կա մի անձ և մի բնություն. ոչ միայն մար Նեստոր պատրիարքը, այլև բազում եպիսկոպոսներ չմասնակցեցին (ժողովին), և ոչ ճիշտ բանադրվեցին ու վտարվեցին նենգ եգիպտացիների կողմից, և (այսպիսով) Արևմուտքը վերջնականապես պառակտվեց։ Կյուրեղը հանդարտվեց, որովհետև հասել էր իր չար նպատակին և խորտակել եկեղեցու միասնական անբաժանելի կապերը, և որպես իր գործակիցների վարձատրություն պատրաստեց հավերժական կրակը։

Այն ժամանակ մար Ռախիման Վարհարանի[116] թագավորու-

114 Այստեղ հեղինակը այլաբանորեն է գրում և ուզում է ասել հոգևոր սնունդ տալուց հետո։

115 431—450 թթ.։

116 Վահրամ։

թյան 16-րդ տարում[117], սկսեց շրջել իր ամբողջ թեմը, քարոզելով ճշմարիտ ուղին, խրատելով մոլորյալներին և նրանց ցույց տալով քրիստոնեական կրոնի իսկական ճանապարհը։ Վեճերն ու հակառակությունները ազդում էին Տիրոջ տան (եկեղեցու) ուղղափառ հավատի վրա և խախտում նրա հիմքերը, և այն քանդվեց հոռոմների մոտ, իսկ պարսկական տիրապետության մեջ այն կանգուն մնաց։ Այս հոգևոր գործունեության ընթացքում մար Ռախիման իր մահկանացուն կնքեց, և գնաց իր Տիրոջ միանալու, Հազկերտի (թագավորության) 12-րդ տարում։

## Տասնութերորդ եպիսկոպոս՝ Ղաբուշտա[118]

Նրան հաջորդեց Ղաբուշտան. այս հոգևոր հայրը լեռնային մի գյուղից էր, որը Տալպանա էր կոչվում։ Մանուկ հասակից ապրել է Մծբինում, ապա եկել Արբելա։ Ասում են, որ այս հայրը իր գործունեության սկզբից 25 եկեղեցի է կառուցել։ Նա հավատացյալներից, նույնիսկ հեթանոսներից, փող է հավաքել, և բոլորը նրա համար ձրի են աշխատել։

Այս ժամանակ Եդեսիայում հայտնի էր մի կատարյալ մարդ, մար Իհաբ եպիսկոպոսը[119], որ իր գործերով ուղղափառության մեջ շատ առաջ գնաց։ Մոլորության աշակերտներից կրած իր տանջանքներն ու դժվարությունները գրիչը չի կարող նկարագրել։ Սակայն նա չդադարեց մինչև իր մահը Եդեսիայի դպրոցում ճշմարիտ հավատը ուսուցանելուց և սխալը վերացնելուց։ Իր մահից հետո, մոլորության աշակերտները հրճվեցին, համախմբեցին իրենց ուժերը, և կարողացան քաղաքից դուրս վտարել տալ բոլոր պարսիկ աշակերտներին։ Բայց նրանք (աշակերտները) վերադարձան իրենց երկրները, և բազում դպրոցներ հիմնեցին, որպեսզի սատանային հաղթեն։ Մծբինի եպիսկոպոս՝ Բարծուման իր մոտ բերեց հայտնի վարդապետ Նարսային, որը բազում եղբայրների հետ միասին, մի մեծ դպրոց կառուցեց, որտեղ պատրաստվում էին աշակերտներ և հայտնի ուսուցիչներ, ընդհանրական (եկեղեցու) համար։ Նա (Նարսայը) այստեղ, ամբողջ Սուրբ Գրքի թարգմանությունը պատրաստեց առանց

---

[117] 436 թ.

[118] 450—499 թթ. (ըստ Մշիխա Զխայի)։

[119] Եդեսիայի եպիսկոպոսական աթոռին բազմել է 435—457 թթ.։

*Թարգմանչի*[120] *ոգուց շեղվելու։ Ինչպես վստահելի մարդկանցից լսել եմ, ասում են, որ բազում ադիաբենցիներ նրա մոտ (սովորելու) են գնացել։*

*Աջակողմյան որդիներից*[121] *էր Հովսեփը, որը հետագայում Ադիաբենի եպիսկոպոս դարձավ. Նրա մասին հետո գրելու ենք։ Այսպես, աստուծո եկեղեցին երկու հատվածի բաժանվեց. Արևմտյանները հավատում էին մեկ բնություն (Քրիստոսի) հասկացողության*[121ա]*, և ասում էին, որ աստվածությունը մարդեղանալով չի ազդվել ու փոխվել իր բնությամբ, իսկ Արևելյանները խոստովանում էին երկու բնություն, բայց մեկ անձ դավանանքը։*

*Քրիստոնեական կրոնը տարածելու նպատակով և հավատացյալների սրտում մարտիրոսության սիրո կրակը վառելու համար, մար Ղաբուշտան Քարքա-Դը-Բեյթ-Սլոխի եպիսկոպոս՝ Յուհանանի հետ կաթողիկոս Մարի Բաքուին տեղեկացրին, որ անհրաժեշտ էր ամեն տարի հավաքել Բեյթ-Գարմայի բոլոր եպիսկոպոսներին և տոնել Հազկերտի օրոք (նահատակված) բոլոր երջանիկ ու հաղթական մարտիրոսների հիշատակը, որոնք հաղթականորեն իրենց արյունը թափեցին Քրիստոսի սիրույն։*

*Նույն այս տարվա աբ (օգոստոս) ամսին, հոների դեմ պատերազմի գնալիս, մահացավ պարսիկների արքա՝ Պերոզը*[122]*։ Այս արքան չնայած հեթանոս էր, սակայն իր կյանքում միշտ Մծբինի (եպիսկոպոս) Բարծումայի խորհուրդներով շարժվելով ու ղեկավարվելով, քրիստոնյաներին շատ է օգնել*[123]*։*

*Արքայից արքա Վաղարշի (թագավորության) երկրորդ տարում, Ակակիոս կաթողիկոսը Արևելքի բոլոր եպիսկոպոսներին ժողովի հրավիրեց և այն, ըստ սովորության գումարվեց*[124]*։ Մար Ղաբուշտան չկարողացավ գնալ, որովհետև մի ծանր հիվանդություն էր վրա հասել և շատերը նրանից հույսը կտրել էին, սակայն Տիրոջ կամքով, և կատարյալ վանական, երջանկահիշա-*

---

120 *«Թարգմանիչ» ասելով հեղինակը նկատի ունի Թեոդոր Մոպսուեստացուն։ Մեկնիչներին ու դպրոցների ղեկավարներին ասորիները տվել են «թարգմանիչ» պատվանունը։*

121 *Աջակողմյաններն ըստ Աստվածաշնչի արդարներն են, որոնք վերջին դատաստանին բազմելու են աստծո աջ կողմը։*

121ա *Միաբնակները ընդունում էին Քրիստոսի մեջ մեկ բնություն։*

122 *Մահացել է 484 թ.*

123 *Տե՛ս նաև* *Barhebraeus,* Chron. Eccles.. II, p. 65. p. 126 et sv.

124 *Ակակիոսի ժողովը գումարվել է 486 թ. տե՛ս նաև՝ J. B. Chabot.* Syn. Orient., p. 299.

տակ աբբահայր Մշիխա-Ռախմահի աղոթքներով բուժվեց։ Նա վերանորոգեց Արբելայի եկեղեցին, որը մինչև մեր օրերը կանգուն է, և գեղեցկացրեց այն բոլոր տեսակի զարդերով, այնպես որ տեսնողը հիանում ու փառավորում է աստծուն. այն շնորհների համար, որոնք նա առատորեն պարգևել էր։

Ջամասպ արքայի 2-րդ տարում[125] երբ մար Բաբոյը բազմել էր Արևելքի պատրիարքական աթոռին, 10-րդ ժողովը տեղի ունեցավ, և բոլոր երկրներից եպիսկոպոսներ հավաքվեցին։ Եվ որովհետև մար Ղաբուշտան ծերացել ու զառամել էր, անձամբ չէր կարող գնալ, իր փոխարեն ուղարկեց քահանա Հովսեփին[126] և նոտար Սիգորային։ Այստեղ որոշեցին, որ չորս տարին մեկ անգամ, պատրիարքի մոտ եպիսկոպոսական ժողով լինի, ինչպես նախկինում սովորություն էր[127]։ Այս ժողովի հաջորդ տարին, պատվական ծերության մեջ վախճանվեց մար Ղաբուշտան և հավատացյալները երկար ժամանակ լաց եղան։ Նրա մահից առաջ մի կին որոշել էր Քրիստոսի սրբի մոտ իր որդուն տանել, որպեսզի սա խաչի օգնությամբ, բարձր ջերմությունից նրան բուժի։ Սակայն որդուն մահիճով տան վերևի սենյակից դուրս բերելիս, գլորվեց, ընկավ գետին ու իսկույն մահացավ։ Երբ մայրը իջավ ու իր որդուն մահացած տեսավ, վշտի ծանրությունից ուշաթափվեց։ Ուստի (ուշքի գալով) սկսեց աղոթել աստծուն, որ Ղաբուշտայի՝ նրա ծառայի աղոթքներով իբ (որդուն) կենդանացնի։ Նա դեռ իր աղերսը չէր վերջացրել, տղան ուրախ ու զվարթ վեր կացավ։ Նա աստծուն փառավորեց ու ամբողջ երկրում այս հրաշքի մասին պատմեց, և առիթը չէր կորցնում աստծուն շնորհակալ լինելուց։ Պատմում էր այն օգնությունների, հրաշքների ու սքանչելիքների մասին, որոնք (աստված) շնորհել էր իր ծառա Ղաբուշտային։

### Տասնիններորդ եպիսկոպոս՝ Հովսեփ[128]

Այս հայրը Տել-Դարա գյուղից էր։ 21 տարեկան հասակում գնաց Մծբինի դպրոցը ու սովորեց (ուսումնասիրեց) մար Նարսա վարդապետի մոտ մար Թեոդորոսի (գրած) բոլոր ճշմարիտ սուրբ

---

125 498 թ.։

126 Մեզ հասած նեստորականների ժողովների մատյանում հիշատակվում է Հովսեփը, սակայն այն սխալմամբ անվանվել է Ադիաբենի եպիսկոպոս։ Տե՛ս J. B. Chabot, Syn Orient., p. 313.

127 Նույն տեղում

128 499—511 թթ.

գրքերը։ Դեռ մանկությունից, նա աստվածային շնորհքի նշաններ էր ցույց տալիս, որի (շնորհիվ) էլ նա նոր մարդ էր դառնալու։ Նա (Մծբինում) 7 տարի մնաց և ըմպեց հոգևոր կաթը և խմեց ուղղափառության քաղցր ջրերը։

Այս ժամանակ մեծ պատերազմ ծագեց պարսիկների և հոռոմների միջև։ Երբ Կավատը երկրորդ անդամ անցավ իշխանության գլուխ[129], մեծ բանակով արշավեց հոռոմների երկրի վրա։ Այդ ժամանակ հոռոմների կայսրը Անաստասն էր։ Պարսիկները հոռոմներից բազում երկրներ՝ Ամիդն ու Ռաշ-էլ-Ղայնը գրավեցին։ Նրանց նպատակն էր նոր հալածանք սկսել քրիստոնյաների դեմ, սակայն դեռ պատերազմը չվերջացրած, պարսիկները ստիպված վերադարձան, որպեսզի իրենց երկիրը պաշտպանեն հոների ուժեղ հարձակումից։ Մար Նարսա վարդապետը մահացավ այն ժամանակ, երբ (պարսիկ) զինվորները Մծբինում էին[130]։ Նրան հաջորդեց Մարգայից[131] (եկած) Եղիշե Կուզբացին։ Սա իր ուսուցչին հետևեց ու գնաց նրա հետքերով։ Նա եկեղեցին հարստացրեց իր գրվածքներով և բոլոր նրանք որ դրանք կարդում էին, իսկապես դարմանում էին նրա աստվածային իմաստության վրա, որով նա լուսավորվել էր։

Այս ժամանակ մար Հովսեփ եպիսկոպոսը մտածեց լեռ բարձրանալ ու ճգնավոր դառնալ, խաղաղ կյանք վարելու համար, որպեսզի Նրա (Տիրոջ) պատվիրանի համաձայն, գործի ամբողջ սրտով, ամբողջ հոգով ու կարողությամբ իր աստծուն նվիրվի։ Ուստի նա հավաքեց բոլոր քահանաներին ու սարկավագներին, նրանց հայտնեց իր մտադրությունը։ Սրանք սկսեցին դառնապես լացել նրանից բաժանվելու առթիվ ու սկսեցին համոզել, որ նա ժողովրդի սիրույն, եկեղեցու բարեբարության համար, իր այդ մտքից հրաժարվի։ Եվ որովհետև ոչ ոք չկարողացավ համոզել նրան, այդ լուրը տարածվեց ամբողջ Թեմում։ Բոլորը խմբով նամակ գրեցին մար Շիլային, որ երկնային գանձի բանալիների իշխանություն ուներ[132]։ Մեր տեր պատրիարքը, աստծո անունով,

---

[129] Կավատը առաջին անգամ գահ է բարձրացել 488—496 թ.։ 496 թ. Պերոզի որդի Ջամասպը նրան փոխարինեց մինչև 498 թ.։ 498 թ. նորից նա գահը վերագրավեց և գահի վրա մնաց մինչև 531 թվականը։

[130] Նարսայը մահացել է 502 թ. տե՛ս Narsai, Homiliae et Carmina, I, p. 8.

[131] Մուսուլից հյուսիս Սլքոշ լեռան մոտակայքում։

[132] Նկատի ունի կաթողիկոսին, որ ըստ եկեղեցական կանոնների, եկեղեցական իշխանության գլուխն է ու Քրիստոսին փոխարինելով երկրի վրա, արքայության իշխանություն ունի։ Լատինական եկեղեցում, այդ իշխանու-

Նրան պարտադրեց, որ նա վերադառնա իր պաշտոնին. ահա նրան ուղարկված նամակի պատճենը.

«Ի Քրիստոս եղբայր, Ադիաբենի մետրապոլիտ՝ մար Հովսեփ եպիսկոպոսին, աստծո կամքով ու կարգադրությամբ. Շիլա եպիսկոպոս-պատրիարքս ողջունում եմ պայծառությունդ ու աղոթքներդ եմ խնդրում։

Քո պայծառությունը ինձնից ավելի լավ գիտի, որ աստված մարդկանց երկինք է բարձրացնում ու նրանց տարբեր տեսակի արժանիքների է հասցնում, ոմանց՝ ճգնավորությամբ, որոնք աշխարհի բոլոր աղմուկից ու աղաղակից հեռանում են, ոմանց՝ ավետարանական աղնիվ ամուսնությամբ, որոնք իրենց կնոջ հետ սիրով են կապված ու սիրտը (իրար) են նվիրել, և աստվածավախությամբ մեծացնում են իրենց զավակներին։ Ուրիշներ, իրենց առաջնորդությամբ ղեկավարում են ժողովրդին ու առաջնորդում ճշմարտության ուղիով, համախմբում են նրանց բազում մարդերի մեջ. այս վերիններին (երկնքում) ավելի մեծ վարձատրություն է խոստացված և ավելի ճոխ հատուցում, որովհետև սրանք իրենց գործունեությամբ ու ուսուցմամբ, երկնային արքայության մեջ, մեր Տիրոջ խոստման համաձայն, մեծ են կոչվում..., և ոմանք էլ այլ ձևերով։ Քո պայծառությունը գիտի նաև, որ ճգնավորությունը ամուսնության հետ անհամեմատելի է, ինչպես նաև առաջնորդության հետ, որովհետև այն արգելք է հանդիսանում ինչպես որ կա և ինչպես որ պետք է իր վրա դրված պարտականությունները կատարելուց։ Դու ես ով աստվածընտրյալ, կոչված ես առաջնորդության մեծ պաշտոնին 10 տաղանտով[133], և Տիրոջ խոսքի համաձայն դու չպետք է հրապուրվես ճգնավորությամբ ու հրաժարվես քո պաշտոնի պարտականություններից։ Հիշիր նաև ով պայծառություն, որ աստծո կամքը քեզ հայտնի է դարձել ամբողջ ժողովրդի միաձայն սիրով և քեզ է վստահել ու քեզ եպիսկոպոսության է կոչել, որպես առաջնորդի։ Դու գիտես, որ եթե դու չառաջնորդես, ժողովրդի մեջ անկարգություն կսերմանվի և դու կգնաս աստծո կամքին հակառակ, և այդ վատ է, որովհետև մեզ վրա է դրված անկարգության ու աստծո կամքի

---

թյունը պապի իրավասության մեջ էր մտնում։ Տվյալ դեպքում նկատի ունի նեստորականների կաթողիկոս Շիլային (505—523 թթ), որի աթոռը գտնվում էր Սելևկիա քաղաքում։

133 Մեկ տաղանդը 12000 դուգի է և կամ 3000 ստատեր արծաթ։ Այլաբանորեն է ասված։

*դեմ օրինազանցության վերացումը։ Ով գիտի, ինչ էլ որ լինի թող իմ մտածողությունից հեռու լինի այն, որ այս (ճգնավորության) գաղափարը գուցե գալիս է խավարի թագավորությունից, որովհետև ամբողջ մարդկության թշնամիները սովորություն ունեն մարդկանց առողջ մտածողություններից, աստծո ճշմարիտ ուղուց հեռացնել, և այդպիսով նրանց հեռացնում են մեղքերից ազատվելու հնարավորությունից։ Միթե՞ չենք տեսնում, որ ամեն օր անիծյալ մեսալյանների աղանդի (շարքերն) են մտնում անհամար թվով աստծու մարդիկ և մոլորվում թափառականության մեջ։ Այս և նման այլ պատճառներով, մեր Տիրոջ անունով և սուրբ Հոգու օգնությամբ, պատվիրում ու որոշում ենք, որ դու վերադառնաս նախկին պաշտոնին, որպեսզի դու ընդունես քո ժողովրդին և քո ժողովուրդը քեզ։ Աղոթիր, իմ թերության համար, մինչև որ Տերը ների ինձ իմ պակասությունների համար, և ապրի՜ր մեր Տիրոջ սիրով»։*

*Եվ որովհետև մար Հովսեփը հեզ մարդ էր, սիրում էր հնազանդվել Տիրոջ պատվիրաններին և մեծերի հրամաններին, ավելի քան ինքնագոհողության սովոր էր, ուստի շտապ ենթարկվեց մար (Շիլայի)՝ պատրիարքի հրամանին ու վերադարձավ Արբելա։ Ինչպիսի՜ մեծ ուրախությամբ լցվեցին քահանաների և սարկավագների սրտերը երբ վերստին տեսան իրենց հորը, (այդ) գրչով նկարագրել հնարավոր չէ։ Սակայն այդ ուրախությունը կարճ տևեց, որովհետև մար Հովսեփի վերջը հասել էր և արժանացել այն պսակին, որին նա ձգտել էր դեռ մանկությունից։ Նա մահացավ իլուլ (սեպտ.) 4-ին, Կավատ արքայի երկրորդ (անդամ) թագավորելու 12-րդ տարում[134]։*

## Քսաներորդ եպիսկոպոս՝ մար Խնանա[135]

*Այս հայրն էլ մար Նարսա վարդապետի աշակերտներից էր, ուրեմն սովորել էր Մծբինի դպրոցում, սակայն նրա ծնողները Ադիաբենի Տել-Նախա գյուղից էին։ Դպրոցից դուրս գալուց հետո, ինքը ևս օգտակար ճառեր գրեց, որոնք մենք հաճույքով ու հիացմունքով ենք կարդում[136]։*

*Այդ օրերին մահացավ Եղիշե Կուզբացին՝ դպրոցի թարգմա-*

---

[134] *511 թ.։*

[135] *511 թ.։*

[136] *Նրա այս գործերը չեն հասել։*

Նիշը[137], և նրան փոխարինեց նախանձախնդիր մի մարդ, գործունյա, աստվածավախության, ուսուցման մեջ շատ գիտուն և աստվածային գրքերին շատ հմուտ, մար Նարսայի բարեկամ՝ մար Աբրահամը։ Սիրելի Պինե՛ս, մեծ իմաստությամբ ղեկավարեց դպրոցը և մենք աղոթենք ու խնդրենք աստծուց, որ այսպիսի կատարյալ վարդապետների (քանակը) ավելացնի, քանզի «հունձքը առատ է և մշակները սակավ»[138]։ Սակայն այն վախից, որ մարդը կարող է հավատալ, թե ինքն իր եղածից (ավելի) իմաստուն է, (որպեսզի) չամբարտավանի, և չընկնի մեղքերի մայր հանդիսացող՝ գոռոզության մեջ, դպրոցի ուսուցիչներն ու դասատիարակները (ժողովի) հավաքվեցին և այդ ժողովում հատուկ կանոններ ընդունեցին ղեկավարի համար, և իր երիտասարդ տարիքի պատճառով, Աբրահամին օգնական տվեցին Բեյթ Ռաբանից՝ Յուհանանին, որովհետև դպրոցի ունեցվածքի հետ ոչ ճիշտ վարվելու պատճառով, անկարգություն էր առաջացել։ Մար Խնանան, որ եկել էր տեղի ունեցած անկարգության (պատճառը) իմանալու, մաշվում էր Տիրոջ տան նախանձախնդրությամբ, և գնաց Մծբին ու իր ազդու իմաստությամբ, այդ մեծ համայնքում, խաղաղությունը վերահաստատեց։ Եկեղեցու նավն իր հանգիստը ստացավ ու գործն ապահովության ուղիով առաջ էր գնում։ Վերադարձին այցելեց իր ամբողջ թեմին ու խրատեց ու սպառնաց (հավատացյալներին), և երկու տարի հետո, մահացավ Արշակունիների քաղաքում[139]։

Այս ժամանակ, աստծո եկեղեցին շատ դժվարություններ ունեցավ, բայց ոչ թե դրսի մարդկանցից, այլ ներսի, ոչ թե օտարականներից, այլ «տան» մարդկանցից[140]։ Որովհետև սատանան՝ մարդկության թշնամին, տեսնելով, որ պայքարով ու սրով չի կարող կաթողիկոսության դեմ դուրս գալ, և հեթանոս թագավորների միջոցով չի կարող (եկեղեցու) առաջադիմության ու տարածման աղբյուրը չորացնել, ուստի գտավ եկեղեցու զավակների միջև խռովություն առաջացնելու ու ղեկավարների միջև շփոթություն ու անկարդություն սերմանելու միջոցը։ Շիլա

---

137 Եդեսիայի և Մծբինի դպրոցների ղեկավարները «թարգմանիչ» էին կոչվում։

138 «Ավետարան ըստ Ղուկասու», գլ. Ժ, 2։

139 Հետաքրքրական է հեղինակի այս արտահայտությունը, տարօրինակ է, որ սասանյանների մայրաքաղաքը անվանված է «Արշակունիների քաղաք»։

140 Հավանաբար նկատի ունի աղանդավորներին և միաբնակներին։

պատրիարքի մահից հետո, երկու անգամ եպիսկոպոսական ժողով գումարվեց, և եկեղեցական կանոններին հակառակ, երկու պատրիարք ընտրեցին՝ Նարսային և Եղիշեին[141], Նրանցից յուրաքանչյուրը ձգտում էր իշխանությունն իր ձեռքը վերցնել։ Եկեղեցու թշնամիները ուրախանում էին, իսկ բարեկամները տխրում։ Ներքևում դժոխքը ցնծում էր ուրախությունից, իսկ վերևում երկինքը սգում էր։ Այս անհամաձայնությունը բազում տարիներ շարունակվեց։

Եվ դրա համար էր, որ մար Խնանան հափշտակությամբ ու մեծ տխրությամբ սկսեց երկչոտներին՝ քաջալերել, թույլերին՝ զորացնել ու ամրացնել։ Գնաց գիտությունների աղբյուրը՝ Մծբին և այնտեղ բազում ավերածություններ վերանորոգեց։ Նա իր մոտ կանչեց Արբելայից, Բեյթ-Նուհատրացի մար Պողոսին[142], և նրան վստահեց, իր բացակայության, թեմի մետրապոլիտի պաշտոնը։ Այս երջանկահիշատակ եպիսկոպոսը, նախօրոք՝ Նարսայի պատրիարքության ժամանակ, պաշտոնի էր կոչված ու այդ պատճառով էլ նրա թեմում երկպառակություն էր ծագել։

Մար Աբրահամ թարգմանիչը մար Խնանային ու Պողոս վարդապետին օգնեց, որ Ադիաբենում երեխաների համար դպրոց հիմնեն, որպեսզի հնարավոր լինի նրանց հոգում հավատը ամրացնել և նրանք կարողանան հերետիկոս մեսալյանների հարձակումներից պաշտպանվել։ Այս Պողոսը մեզ մոտ բնակվեց ավելի քան 30 տարի ու եկեղեցու ղեկավարներից իրեն վստահված պարտականությունը խոնարհությամբ ու աստվածավախությամբ կատարեց։ (Նա պաշտոնից) հրաժարվեց միայն մար Աբա կաթողիկոսի հրամանով, որը նրան, մեր Տիրոջ անունով ստիպեց, որ նա Մծբինի եպիսկոպոսությունը ընդունի, և այդ տեղի ունեցավ այն ժամանակ, երբ նա (կաթողիկոսը) Բեյթ-Հուզայայից[143] վերադարձավ, որի մասին հետո կտեսնենք (կպատմենք)[144],

[141] Շիլան մահացել է 522—523 թթ.։ Իսկ այս երկուսն էլ իշխել են մինչև 539 թվականը։

[142] Ամրն էլ հիշատակում է այս Պողոսին, Նարսայի ընտրողների ցուցակում. սակայն սխալմամբ նրան Արբելայի եպիսկոպոս է անվանում (էջ 22)։

[143] Խուզիստան։

[144] Բնագրի հրատարակիչը ձեռագիրը ուսումնասիրելով, եկել է այն եզրակացության, որ միայն 4 թերթ է պակասում։ Այս Պողոսին, որը Մծբինի եպիսկոպոս եղավ, պետք չէ շփոթել Պողոս պարսիկի հետ, որ այն ժամանակ (525—533 թթ) գտնվում էր Կոստանդնուպոլսում։ Տե՛ս Labourt, Le christianisme dans l'empire Perse, Paris, 1904, p. 166.

# ՅՈՇՎԱ ՍՏԻԼԻՏ (ՍՅՈՒՆԱԿԵԱՑ)

## 1. ՆԵՐԱԾՈՒԹՅՈՒՆ

*Ասորական պատմագրությունը հիմնականում իր վերելքն է ապրում VI դարի սկզբներից և նման վերելքը, կարելի է ասել շրջադարձը, պետք է բացատրել Միջագետքում տեղի ունեցած քաղաքական ու ներքին կյանքի փոփոխություններով, որոնք ասորի գործիչներին կանգնեցրել էին իրենց համար կենսական նշանակություն ունեցող այլ հարցերի առաջ։ Դեռևս V դարի առաջին կեսերից, ավելի ճիշտ 431 թ. 3-րդ տիեզերական ժողովից հետո, նեստորական և հականեստորական շարժումները, և ապա 451 թ. Քաղկեդոնի ժողովն ու քաղկեդոնականության առաջացումը հակասությունները սրել էին ներեկեղեցական կյանքում, որոնք իրենց արտացոլումն էին գտնում պետական միջոցառումներում։ Ասորիներն այդ ժամանակաշրջանում հայերի նման բաժանված էին երկու մեծ պետությունների՝ Պարսկաստանի ու Բյուզանդիայի միջև։ Տարբերությունն այն էր, որ հայերը կարողանում էին իրենց կիսանկախ քաղաքական վիճակը պահել, մինչդեռ ասորիները զուրկ էին այդ իրավունքից և, բնականաբար, ինքնուրույն գիծ ունենալու հնարավորություն չունեին, և ինքնաբերաբար ընկնում էին կա՛մ պարսիկների և կա՛մ բյուզանդացիների ազդեցության ներքո։ Նման հարաբերություններից տուժեց նաև ասորական եկեղեցին, որը չկարողացավ իր շուրջ հավաքել իր ժողովրդին, և չկազմակերպեց միասնական ուժերով պայքարը ընդհանուր թշնամու դեմ։ Ասորական եկեղեցին հիմնականում երկուսի բաժանվեց՝ նեստորականների և ոչ նեստորականների, վերջինները ավելի ուշ կոչվեցին «Հակոբիկյաններ»։ Հակոբիկյանները միաբնակներ էին ճիշտ հայերի նման, այսինքն ընդունում էին Եփեսոսի ժողովում Կյուրեղ Ալեքսանդրացու*

ձևակերպած հետևյալ դավանանքը. «Մի բնություն բանին մարմնացելոյ»։ Եվ որովհետև այդ հարցի վրա հետագայում մանրամասն կանգ ենք առնելու, առայժմ բավարարվում ենք փաստի նշումով։ Մինչև Զենոն կայսրի (477—491) թագավորությունը շատ ծանր էր ոչ նեստորական ասորիների դրությունը, որովհետև եթե նեստորականները պաշտպանություն էին գտնում Պարսկաստանում, և նեստորական եկեղեցին պաշտոնապես ճանաչվել էր Պարսկական պետության կողմից, ապա ոչ նեստորական ասորիները հալածվում էին որպես միաբնակներ՝ նաև բյուզանդական իշխանություններից։

Զենոն կայսեր թագավորության օրոք բարելավվում է վերջիններիս վիճակը, որովհետև կայսրն իր 482 թ. հենոտիկոնով ձգտում էր վերջ տալ միջեկեղեցական պայքարին, որպեսզի հնարավոր լիներ երկրի միասնությունը վերականգնել։ Անշուշտ նեստորականներին, որպես Պարսկական տիրապետության համակիրների այլ աչքով է նայում, և իր 489 թ. հրամանով կարգադրում փակել նեստորականների գաղափարախոսության գլխավոր օջախներից մեկը դարձած՝ Եդեսիայի դպրոցը, որն ասորական մշակույթի պատմության մեջ նշանակալի դեր է կատարել։ Բյուզանդական սահմաններում ապրող նեստորականները հեռացել էին երկրից, եկել Մծբին ու վերահիմնել Մծբինի դպրոցը։ Զենոնին հաջորդած Անաստաս կայսրն էլ (491—518) նույն եկեղեցական քաղաքականությունն է շարունակում, և կայսրության մեջ ժամանակավորապես դադարեցվում են միաբնակների դեմ հարուցված հալածանքները։

Քաղաքական այս իրադարձությունների մասին խոսելիս հատուկ ուշադրություն պետք է դարձնել նաև սոցիալական շարժումների վրա, որոնք այս երկու պետությունների ներսում ապրող բազում ճնշված տարրերին ոտքի էին հանում իրենց գոյության համար պայքարելու։ Նրանց ելույթները, ինչպես աղբյուրներից հայտնի է, անհանգստացրել էին պետական գործիչներին ու վերնախավի ներկայացուցիչներին։ Անապատականությունը, մծղնեականությունն ու նրանց նման սոցիալական այլ խմբավորումներ խոշոր վտանգ էին դարձել։ Զենոնի և Անաստաս կայսեր զիջումներն ու եկեղեցու միասնությունն պահպանելու և հեղինակությունը բարձրացնելու համար եղած միջոցառումներն այն նպատակն էին հետապնդում, որ ուժեղացնեն եկեղեցին, որովհետև ուժեղ եկեղեցին լավագույնս կարող էր պայքարել

Հասարակության ներսում առաջացած ժողովրդական ու ցանկալի երևույթների դեմ։ Այսպիսի բարդ իրադրության մեջ բնական էր, որ ասորի մատենագիրներն ու գործիչները քաղաքական այլատանքների փոխարեն, զարկ են տալիս ներքին, այսինքն եկեղեցու դիրքերի հեղինակության ամրապնդմանն ու բարձրացմանը, և նման ձգտումը իրագործելու ամենահարմար միջոցը մեկը պատմագրությունն էր, որովհետև նման երկերի միջոցով հնարավոր կլիներ պատմական երևույթներին ցանկալի բացատրություն տալ և մասսաներին իրենց հետևից [illegible] Այդ նույն ցանկությամբ տարված, Միջագետքի վանքերից մեկի վանահայր՝ Սարգիսը դիմում է իրեն ժամանակակից [illegible]ներից մեկին, որ նա գրի իրենց ժամանակի պատմությունը, որպեսզի իրենցից հետո եկող սերունդներն այդ [illegible] կարդալով «հեռու մնան մեղքերից» և «աստծու պատժին չարժանանան»[1]։ Ինչպես այս, և ընդհանրապես վաղ շրջանից սկսած, ամբողջ միջնադարյան պատմական երկերում [illegible]նում այն միտքն է տիրապետում, որ մարդկանց դժբախտությունների հիմքում ընկած է մեղքը։ Այս և նման [illegible] գաղափարախոսությունների առկայությունը պատմական աշխատություններում, անշուշտ, ոչնչով չեն նսեմացնում այս երկերի բացառիկ արժեքը. և անկախ այդ դատողություններից, դրանք անփոխարինելի աղբյուրներ են, որոնք այս կամ այն ձևով հարստացնում են համամարդկային մշակույթի գանձարանը։ Ասորական դրականությունը VI դարում հարստացել է նման մի շարք պատմական երկերի ստեղծմամբ, որոնցից նախ կխոսենք այն ժամանակագրության մասին, որը վերագրվել է Յեշուա Ստիլիտին[2]։

Մեր աշխատության մեջ ընդգրկված ասորի պատմիչներից միայն Մշիխա Զեխան է, որ նեստորական է. իսկ մյուս երեք պատմիչները միաբնակ եկեղեցուն էին պատկանում։ VI դարում տիրող քաղաքական պայմաններում եկեղեցական վեճերի բնույթը

---

[1] «Ժամանակագրություն», § 1։

[2] Այս բնագիրը առաջին անգամ հրատարակել է բնագրի ֆրանսերեն թարգմանությամբ հանդերձ Պոլ Մարտենը, ապա այն բնագրական ծանոթագրություններով ու անգլերեն թարգմանությամբ լույս է տեսել անգլիացի հայտնի ասորագետ Ռայթի կողմից։ Բնագրի ռուսերեն թարգմանությունը [illegible] ծանոթագրություններով և ուսումնասիրությամբ լույս է ընծայել Նինա Վիկտորովնա Պիգուլևսկայան։ Տե՛ս *Paul Martin*, Chronique de Josué le Stylite, Leipzig, 1876; W. Wright, The Chronicle of Josua the Stilite, Cambridge, 1882; *Н. Пигулевская*, Месопотамия на рубеже V—VI вв. Н. Э. М.—Л., 1940.

*փոխվել էր և եթե նախկինում ասորի միաբնակները Բյուզանդիայի հալածանքին էին ենթակա, ապա Զենոնի հենոտիկոնից հետո ստեղծված բարդ իրադրության մեջ, ասորի միաբնակները մնալով նորից իրենց դավանաբանական դիրքերում, ձգտում էին կայսրության կյանքի ներքին ոլորտները ներթափանցել։*

*Նման պայմաններում է, որ զարգացավ ասորի պատմագրությունը VI դարում, որի միաբնակ ներկայացուցիչներից երեքին ընդգրկել ենք այս աշխատության մեջ։*

## 2. ԿԵՂԾ ՅՈՇՎԱ ՍՏԻԼԻՏԻ (ՍՅՈՒՆԱԿՅԱՑԻ) «ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆՆ» ՈՒ ՆՐԱ ՀԵՂԻՆԱԿԻ ՀԱՐՑԸ

*Այժմ Յոշվա Ստիլիտի անվամբ ծանոթ ժամանակագրությունը միջին դարերում համարվում էր կորած, և դրա համար հետագա պատմիչները և հատկապես երկու խոշոր ասորի պատմիչներ՝ Միքայել Ասորին և Բար էբրայուսը իրենց պատմությունը շարադրելիս, համապատասխան ժամանակի համար օգտվել են ոչ թե այս «ժամանակագրությունից» այլ Զաքարիա Միտիլինացու գրքից*[3]*։*

*Այս գործի գոյությունը առաջին անգամ մատնանշել է XVIII դարի խոշոր ասորագետ Ասեմանին և ցույց տվել, որ VIII դարի ասորի մատենագիրներից՝ Դիոնիսիոս Տելլ-Մահրացուն վերագրված հավաքածուի 3-րդ բաժինը այս «ժամանակագրությունից» է կազմված և լուսանցքում գրչի կողմից ավելացրած Յոշվա Ստիլիտի անվան վրա հենվելով եզրակացրել է, որ այս «ժամանակագրության» հեղինակը Յոշվա Ստիլիտն է*[4]*։*

*Դրանից հետո XIX դարում, ֆրանսիացի ասորագետ՝ Պոլ Մարտենը Ասեմանիի տվյալների վրա հիմնվելով, Յոշվա Ստիլիտի անունով հրատարակում է այս «ժամանակագրության» ասորերեն բնագիրն ու ֆրանսերեն թարգմանությունը։ Նրա օրինակին հետևելով անգլիացի գիտնական Ռայտը նույնպես Յոշվա Ստիլիտի անունով հրատարկում է ասորերեն բնագիրը*

---

[3] *Н. Пигулевская*, Месопотамия на рубеже, стр. 10.

[4] *J. Assemani*, Bib. Orientalis, Vatican, 1719—1725, t. I, pp 260—283. *260—283 Ձեռագիրը IX դարից է. այն պատկանել է Նիտրիական անապատում եղած ասորական վանքին։ Ասեմանին Վատիկանի «Արևելյան ձեռագրերի ցուցակում» գրում է, որ այս ձեռագիրն այն խմբի մեջ է եղել, որը 932 թ. Տագրիտ վանքի վանահայր՝ Մովսես Մծբնացին բերեց ու կազմեց մեզ հայտնի Տագրիտի գրադարանը։ Այդ մասին մանրամասն տե՛ս Н. Пигулевская*, Месопотамия на рубеже, стр. 10.

որոշ ճշտումներով ու նրան կցում բնագրի անգլերեն թարգմանությունը։

Սակայն եվրոպացի բանասեր՝ Նոն, Դիոնիսիոս Տելլ-Մահրացուն վերագրված վերոհիշյալ հավաքածուն մանրակրկիտ ուսումնասիրելուց հետո, եկել է այն եզրակացության, որ վերոհիշյալ հավաքածուի 3-րդ բաժնի այսինքն՝ «Ժամանակագրության» հեղինակը չի կարող Յոշվա Ստիլիտը լինել, և ցույց է տվել, որ Յոշվա Ստիլիտը ոչ թե «Ժամանակագրության» հեղինակն է, այլ հավաքածուն կազմողը, իսկ «Ժամանակագրության» համար ասում է, որ հեղինակը սնծանոթ է կամ Անանուն է[5]։ Իր հիմնական փաստերից մեկն այն է, որ վերոհիշյալ Տելլ-Մահրացուն վերագրված հավաքածուի ընդօրինակող գրիչ՝ Եղիշեն, որ Ամիդ քաղաքի մոտակայքում գտնվող հայտնի Զուքնինի վանքի միաբաններից էր, հիշատակում է նույն մենաստանի վանական Յոշվա Ստիլիտին, և հայտնում, որ Յոշվան գրել է Միջագետքում տեղի ունեցած թշվառությունների ժամանակագրությունը և պարսիկ արքայի՝ կատարած ավերածությունների մասին[6]։

Մինչդեռ «Ժամանակագրության» մեջ եղած ինքնակենսագրական փաստերից երևում է, որ հեղինակը Եդեսիացի է, ապրել է Եդեսիայում ու դասավանդել քաղաքի դպրոցներից մեկում[7]։ Իսկապես նա Եդեսիային նվիրած իր բազում էջերում այնպիսի սրտացավությամբ ու անմիջական զգացմունքով է գրում, որ միայն քաղաքին շատ հարազատ անձնավորությունը կարող էր այդպիսի ամուր կապ զգալ իր և Եդեսիայի միջև։

Նոն իր պրպտումները շարունակելով, գտնում է, որ այս ժամանակագրությունը մտել է նաև VI դարի խոշոր գործիչներից ու ասորի մատենագիրներից՝ Հովհան Եփեսացու Եկեղեցական պատմության մեջ։ Հայտնի է, որ այս պատմիչից մեզ է հասել երեք բաժնից կազմված մի «Եկեղեցական պատմություն», որի ամեն մի բաժինը բաղկացած էր վեց գրքերից. առաջին երկու բաժինները սկսում էին Հուլիոս Կեսարից ու հասնում մինչև Հուստինիանոս Բ կայսեր թագավորության 7-րդ տարվա պատմությունը, այսինքն մինչև մեր թվականության 572 թ.։ Հովհան

---

[5] *F. Nau*, Etude sur les parties inedites de la chronique ecclesiastique attribuee a Denys de Tellmahre, „Revue de l'Orient chretienne", t. II, 1897, p. 47.

[6] *W, Wright*, The Chronicle of Joshua, p. IX: Ed. P. Martin, p. 18.

[7] *F. Nau*, Analyse des parties inedites, Paris, 1918, p. 12.

Եփեսացու «Եկեղեցական պատմության» առաջին բաժինն ամբողջությամբ կորել է և մեզ չի հասել, իսկ երկրորդից, կարևոր մասեր պահպանվել են Բրիտանական թանգարանի VII—IX դարերի ձեռագրերից երկուսում[8]։ Այս կարևոր մասերը հրատարակել է Լանդը[9]։ Ինչպես հայտնի է Դիոնիսիոս Տելլ-Մահրացու անունով մեզ հասած Պատմության մեջ հեղինակը վկայում է, որ իր աշխատության 3-րդ բաժինը շարադրել է Հովհան Եփեսացու «Եկեղեցական պատմության» 2-րդ բաժնի հետևությամբ։ Նոն ուսումնասիրել է Տելլ-Մահրացու համապատասխան բաժինը Լանդի հրատարակած մասերի հետ և ցույց տվել, որ իսկապես առաջինը բառացի արտագրել է Հովհան Եփեսացու «Եկեղեցական պատմության» երկրորդ բաժնից[10]։ Այսպես, ֆրանսիացի բանասերն ու պատմաբանը իր պրպտումները եզրափակել է ասելով, որ «Ժամանակագրության» հեղինակը մեզ անծանոթ է և Յեշվա Ստիլիտը չէր կարող այդ երկի հեղինակը լինել»։

Համարյա նույն կարծիքին են Բաումշտարկն ու Շաբոն, որոնք ևս գտնում են, որ «Ժամանակագրությունը» սխալմամբ վերագրվել է Յեշվա Ստիլիտին և թե հեղինակը մեզ անծանոթ է[11]։

Սովետական պատմաբան Նինա Պիգուլևսկայան նույնպես կանգ է առնում այս հարցի վրա և գտնում, որ Նոյիի այդ եզրակացություններից քննադատությունը ոչինչ չի կորցնի եթե մենք «Ժամանակագրության» հեղինակին անվանենք «Կեղծ Յեշվա Ստիլիտ»[12]։

Դժբախտաբար ասորական գրականության մեջ այլ տեղեկություններ չեն պահպանվել Յեշվա Ստիլիտի և կամ «Ժամանակագրության» իսկական հեղինակի մասին։ Տարօրինակ է, նույն շրջանի պատմության մասին գրած, նրանից հետո ապրած՝ Զաքարիա Հռետորի, և ավելի զարմանալի, նույն դարաշրջանի հայտնի պատմիչներից՝ Հովհան Եփեսացու լռությունը որ ինչպես գիտենք իր «Եկեղեցական պատմության» մեջ ընդգրկել էր մեզ հայտնի «Ժամանակագրությունը» ամբողջությամբ։

Այսպես, երբ ի մի ենք բերում բոլոր տվյալներն ու այդ կապակցությամբ արտահայտված կարծիքները, տեսնում ենք,

---

[8] Add. 14647, 688 թ. ձեռագիր և Add. 14650, 875 թ. ձեռագիր։

[9] *Land*, Anecdota Syriaca, pp. 385—391.

[10] *F. Nau*, Analyse der parties ine'dites, p. 33.

[11] *Baumstark*, Geschichte der Syrischen Literatur, Bonn, 1922, p. 146; *J. B. Chabot*, Littérature syriaque, Paris, 1934, pp. 67—68.

[12] *Н. Пигулевская*, Месопотамия на рубеже, стр. 12.

որ «Ժամանակագրության» հեղինակի հարցը փաստորեն պիտի համարել չլուծված, և իրադրությունը չի փոխվի, եթե նույնիսկ պայմանականորեն ընդունենք, որ «Ժամանակագրության» հեղինակը Յոշվա Ստիլիտ անունով մի վանական է։ Հեղինակը մինչև V դարի վերջերը ապրել է Ամիդ քաղաքի մոտակայքում գտնվող Զուքնինի վանքում և ապա VI դարի սկզբներից տեղափոխվել է Եդեսիա, և Եդեսիայի պաշարման ժամանակ եղել է քաղաքում, և որպես ականատես պատերազմական գործողություններին ու քստմնեցուցիչ ու սարսափելի տեսարանների, գրի է առել դրանք։ Նրա այս գիրքը կարդալիս տեսնում ու զգում ենք, որ այն գրվել է դեպքերի անմիջական ազդեցության ներքո, և ի պատիվ նրան պիտի խոստովանել, որ նա իր դատողությունների ու իրադարձությունների նկարագրության մեջ մնացել է դեպքերն իրենց բնական շրջանակներում ընկալելու ճիշտ դիրքերում։ Նա աշխատել է հնարավորին չափ լինել ճշմարտապատում, և այդ է պատճառը, որ սույն աշխատությունն այդ ժամանակաշրջանի պատմության լավագույն աղբյուրն է։

Մեզ հայտնի չէ, թե հեղինակը ինչպիսի՞ կրթություն էր ստացել, սակայն «Ժամանակագրության» մեջ երբ նա պատմում է Նիկոպոլսի երկրաշարժի մասին, նշում է, որ այդ երկրաշարժին զոհ են գնացել նաև իրենց դպրոցից որոշ եղբայրներ[13]։ Ճիշտ է, դպրոցի անունը չի հիշատակված, բայց պատճառը հասկանալի է, որովհետև այն շատ հայտնի Եդեսիայի դպրոցի մասին է. գիտենք, որ 363 թ. հետո, երբ պարսկա-բյուզանդական դաշինքի համաձայն Մծբինը միացվեց պարսկական տիրապետության, ասորի շատ գործիչներ ու մատենագիրներ հեռացան Մծբինից ու եկան հաստատվեցին բյուզանդական սահմաններում գտնվող Եդեսիա քաղաքում, և այստեղ էլ՝ IV դարի ասորական գրականության խոշորագույն դեմքերից՝ Եփրեմ Ասորու գլխավորությամբ հիմնեցին Եդեսիայի նշանավոր դպրոցը, որը հայտնի է նաև «Պարսկական դպրոց» անունով։

Այսպես, հիմնադրման օրից մինչև 489 թ. այգ դպրոցը դարձել էր բյուզանդական և պարսկական պետության մեջ ապրող ասորի քրիստոնյաների լուսավորության այն օջախը, որտեղ տարբեր երկրներից եկած երիտասարդները կատարելագործում են իրենց ուսումը։ Ինչպես ասացինք, միայն 489 թ. Զենոն կայսրի հրամանով այն փակվեց, և կայսրը այդ միջոցառման էր

[13] Յ. Ստիլիտ, *Ժամանակագրություն*, § 34։

դիմել, որովհետև դպրոցը դարձել էր նեստորական եկեղեցու հիմնական կենտրոններից մեկը, իսկ նեստորական եկեղեցին մեկն էր, որ այդ ժամանակ ճանաչվել էր պարսկական պետության կողմից, և որոնք արդեն Պարսկաստանի սահմանամերձ այդ շրջաններում ծավալած իրենց հակաբյուզանդական գործունեությամբ, անհանգստացնում էին Բյուզանդիայի կայսրին, և նա նման միջոցառումներով ուզում էր կանխել այդ վտանգը։

Եթե Զենոն կայսրը մի կողմից հականեստորական նման միջոցառումների էր դիմում, ապա մյուս կողմից աշխատում էր քրիստոնեական եկեղեցիների ներսում սկսված շատ ուժեղ քաղկեդոնական և հակաքաղկեդոնական, այսինքն միաբնակության և երկաբնակության վեճերին վերջ տալ, որովհետև նման կրոնական երկպառակությունները խախտել էին երկրի միասնությունը և ազդում էին կայսրության քաղաքական գործունեության վրա։ Նրա 482 թ. «Հենոտիկոնը» փաստորեն գրված էր մի կողմից վերջ տալու համար մինչև այդ կայսրության մեջ հարուցված հալածանքներին և մյուս կողմից հաշտության եզր որոնել, սիրաշահել միաբնակներին։ Առիթից օգտվում են նաև Եդեսիայի միաբնակ ասորիները, աշխուժացնում են իրենց գործունեությունը և դպրոցի աշխատանքները վերցնում իրենց ձեռքը։ Անկասկած «Ժամանակագրության» հեղինակը Եդեսիայի միաբնակ եկեղեցականներից էր։

### 3. ՊԱՏՄԻՉԻ ԱՇԽԱՐՀԱՅԱՑՔԸ

Միջին դարերում մատենագրությամբ հիմնականում զբաղվում էին եկեղեցականները, և այդ պատճառով էլ մատենագրական աշխատություններում կրոնական հասկացողություններն ու դատողությունները հաճախ, իրենց կնիքն են դրել։ «Ժամանակագրության» հեղինակը այդ տեսակետից շատ եկեղեցական պատմիչներից ու գրողներից բարձր է կանգնած։ Ճիշտ է, նա չի խուսափել իր ժամանակի համար բնորոշ երևույթներից, բայց պիտի խոստովանվել, որ նա հրաշքներն իսկ նկարագրելիս փորձել է չընկնել չափազանցությունների մեջ և աշխատել է դրանք ևս ինչ որ չափով հիմնավորել, կապելով քաղաքական իրադարձությունների հետ։ «Ժամանակագրության» հեղինակի մոտ տիրապետող հասկացողությունը հիմնականում հետևյալն է. «մարդիկ իրենց չար գործերի և մեղքերի համար աստծու կողմից

պատժվում են տարբեր տեսակի պատուհասներով ու դժբախտություններով, անշուշտ աստված այդ պատիժներով ուղում է մարդկանց ուղղել, որպեսզի նրանք գտնեն փրկության ճանապարհը»։ Այս է հիմնական այն մեկնակետը, որով բացատրվում էին աշխարհում գոյություն ունեցող անարդարություններն ու չարիքները։ Բարեբախտաբար «Ժամանակագրության» հեղինակը այս աշխարհայեցողությունը իրեն նպատակ չի դարձրել և փորձել է պատմական իրադարձությունների խորքը թափանցել ու կյանքը առաջ շարժող որոշ օրինաչափությունների հիմքը որոնել, և տեսնել թե ինչպես աստված քրիստոնյաներին, անզգամ պարսիկների միջոցով արդարացի է պատժում, բայց ինչու՞ օրինակ նույն այդ «անզգամ» «չար» պարսիկներին նրանց չարությունների համար չի պատժում։ Թեև որպես եկեղեցական ինչ որ բացատրություն փորձում է տալ, բայց զգացվում է, որ նա այդ անում է խուսափելու համար հեռուն տանող իր այս դատողություններից։

«Ժամանակագրության» հեղինակի աշխարհայացքային այս ըմբռնումների մասին խոսելիս, պիտի նշել այն կարևոր գիծը, որով նա առաջնորդվել է. նա հասկանում է, որ պատմություն գրելիս, պատմիչը չպետք է դիմացինին ազդելու նպատակով այն աղավաղի վշտալի ու ազդու բառերով, այլ պետք է լինի ճշմարտացի ու ճշմարտապատում։ Այսպես, Սարգիս վանահայրը, որը նրան նամակով դիմել էր այս պատմությունը գրելու, պահանջել էր, որ այն գրելիս նա ցավալի ու վշտալի բառերով ազդեցիկ դարձնի։ Նրա այս առաջարկին պատասխանել է հետևյալ ձևով. «իմացի՛ր, որ այլ է ազդու դրել և այլ է ճշմարտացին, որովհետև բնական պերճախոսությամբ օժտված անձը եթե ուղում է, կարող է ցավալի ու վշտալի պատմություններ գրել։ Բայց ես խոսքի մեջ սովորական մարդ եմ և կգրեմ այն ամենը, որը մեզ մոտ ապրող բոլոր մարդիկ կարող են վկայել, թե դրանք ճշմարտացի են»[14]։ Աշխարհայցքային կարևոր նշանակություն ունի նաև այն, որ պատմիչը դավանանքով միաբնակ է, թեև իր աշխատության մեջ ոչ մի բացահայտ ակնարկ չկա այդ մասին, և այն անձնավորություններին որոնց նա հիշատակում է կամ որոնց հետ առնչվում է, միաբնակներ են։ Այդ կետի վրա ուշադրություն ենք դարձնում, որովհետև ասորի միաբնակ-

---

14 Յ. Ստիլիտ. Ժամանակագրություն, § 4։

ների քաղաքական կողմնորոշումը, ինչպես նշել ենք, այլ էր, մանավանդ Զենոն և Անաստաս կայսրերի օրոք։

Այս բնագիրը ուսումնասիրողներից ոմանք նույնիսկ գտնում են, որ նա «չափավոր» միաբնակներից է[15]։ Անկասկած պատմիչի լռությունը Քաղկեդոնի և քաղկեդոնականության և ապա նեստորականության մասին, նրանց նման եզրակացության են բերել. սակայն նրա այդ լռությունը հավանաբար հետևանք էր այն քաղաքական իրադրությանը որի մեջ գտնվում էր ժողովուրդը։ Այդ դժբախտությունների ու ծանր վիճակի մասին գրելիս, հեղինակը կարծես նախընտրում է լռել դավանաբանական հարցերի կամ վեճերի մասին։ Եթե «Ժամանակագրության» հեղինակը «չափավորներից» լիներ, ապա նա պետք է սիրով «ողջուներ Զենոն կայսրի (477—491) գահակալությունը և բարյացակամ լիներ նրա նկատմամբ, մինչդեռ նա Զենոնին ներկայացնում է որպես չարամիտ, նենգ ու վրիժառու[16]։ Եվ ընդհանրապես «չափավոր» միաբնակ հասկացողությունը մեզ թվում է, որ վերացական հասկացողություն է։ Այդ մասին կխոսվի հետագա էջերում, երբ կանգ առնենք միաբնակության հարցերի վրա։

Ճիշտ է, պարսկա-բյուզանդական պատերազմները նկարագրելիս նրա համակրանքը Բյուզանդիայի կողմն է, բայց այդ կարծես թե նրա մոտ ավելի շատ քաղաքացիական պարտականություն է, և անհրաժեշտ դեպքերում նա չի թաքցնում իր դատողությունները ու տեղին հարվածում է նաև բյուզանդացիներին իրենց անարդարացի արարմունքների համար։ Հատկապես նման հարվածի է արժանանում բյուզանդական «փրկարար» բանակը, որն իր գործողություններով ու վարմունքով ոչնչով չէր տարբերվում պարսկական թշնամի զորքից. այդ առթիվ նա գրում է. «Նրանք որոնք մեզ որպես փրկարարներ օգնության եկան, **մեզ այնպես կողոպտեցին, ինչպես մեր թշնամիները** (ընդգծումը մերն է)։ Շատ խեղճ մարդկանց հանեցին անկողիններից ու տեղը իրենք քնեցին, մինչ անկողինների տերերը նույնիսկ ցուրտ եղանակին գետնին պառկեցին. ոմանց իրենց սեփական տներից ստիպեցին ու դուրս հանեցին, և փոխարենը իրենք բնակվեցին դրանց մեջ. ոմանց ոչխարներին, որպես պատերազմական ավար, բռնի տարան, ոմանց շորերը վրայից հանեցին ու տարան, ոմանց

[15] *Gelzer*, Josua Stilites und die damaligen Kirchlichen Parteinen des Ostens, „Byzantinische Zeitschrift“, B. I, 1892, p. 47.

[16] Յ. Ստիլիտ, *Ժամանակագրություն*, § 10։

*էլ ոչինչ բանի համար անգթորեն ծեծեցին»*[17]։ *Այս մի քանի տողերն իրենց մեջ խտացնում են այն ամբողջ վերաբերմունքը, որը ժողովուրդը տածում էր դեպի բյուզանդացիները։ Պատմիչի այս խոսքերում արտացոլվում է այն փաստը, որ պատերազմական այս գործողությունների ժամանակ միշտ տուժողը տեղական ժողովուրդն էր, որի հողի վրա երկու մեծ պետությունները արյուն ու ավերածություն էին սփռում։*

*Ինչպես այս, այնպես էլ նման բաղում հատվածներ, վկայում են այն մասին, որ պատմիչը չնայած իր համակրանքին դեպի բյուզանդական կարգերը, բայց և այնպես իր հոգու խորքում նա հայրենասեր է ու դեպքերը նկարագրում է իր ժողովրդի շահերի տեսանկյունից։ Կարողացել է փաստերը ներկայացնել այնպես, ինչպես որ կան, մի առավելություն, որը չէին կարող ունենալ ոչ բյուզանդացի և ոչ էլ պարսիկ պատմիչները։ Անշուշտ սա պատահականություն չէ, այլ այն բխում է նրա աշխարհայացքային ըմբռնումներից։ Այդ դիրքորոշումը նա դրսևորել է իր աշխատության մեջ և ցույց տվել, թե ինչպես տեղական վերնախավը, այսինքն ասորի մեծամեծներն ու պաշտոնյաները իրենց անձնական շահերի մղումով համագործակցում են բյուզանդացիների, պարսիկների հետ, երբ նրանցից որևէ մեկը հերթականությամբ իր գերիշխանությունն է հաստատում ասորական քաղաքների կամ գավառների վրա, և նման դեպքերում իրենք ևս մասնակցում են հասարակ մարդկանց կեղեքումին։ Ճիշտ է, այս եզրահանգումները նրա մոտ որոշակի չեն արտացոլվել, բայց նրա նշած փաստերն այդ միտքն են արտահայտում։*

## *4. «ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅԱՆ» ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ*

*«Ժամանակագրության» հեղինակն իր աղբյուրների մասին հետևյալն է գրում. «Ալեքսանդրի 806 թ. (494—495 թթ)։ Ո՜վ մեր հայր, քեզ բավարար չափով հայտնեցի թե ինչ պատճառով և ինչպես սկսեց պատերազմը։ Ճիշտ է, այս պատմությունները համառոտ գրեցի խուսափելու համար երկարաբանություններից։ Դրանից մի մասը ես գտա հին գրքերում, մի այլ մասը իմացել եմ այն մարդկանցից, որոնք երկու միապետների մոտ դեսպան*

---

36 Յ. Ստիլիտ, *Ժամանակագրություն*, § *86*։



9—893

են եղել. մի մասն էլ իմացել եմ այն անձնավորություններից, որոնք ականատես են եղել այս իրադարձություններին»[18]։

Այսպես, հեղինակը իր աղբյուրները երեք խմբի է բաժանում, և որովհետև դեսպանների պատմածների ու ականատեսի հուշերի ակունքների մասին խոսել ավելորդ կլիներ, ապա մնում է կանգ առնել «Հին գրքերի» վրա։ Նա դժբախտաբար ոչ մի տեղեկություն չի տալիս, այսպես կոչված, այգ «Հին գրքերի» վերաբերյալ, և այգ պատճառով Ն. Պիգուլևսկայան աշխատության մեջ փորձել է բյուզանդական ու ասորական աղբյուրների համեմատությամբ ու ուսումնասիրությամբ, գտնել թե ի՞նչ «Հին գրքեր» էին դրանք.

Նա եկել է այն եզրակացության, որ Պերոզից և Զենոնից մինչև Կավատի ու Անաստասի թագավորությունն, հատկապես Զենոնի դեմ Իլլուսի բարձրացրած ապստամբության պատմությունը շարագրելիս, հիմնականում նա օգտվել է բյուզանդական մի աղբյուրից կամ պատմությունից, որը մեզ չի հասել[19]։ Բյուզանդացի պատմիչները հիշատակում են մի այդպիսի դիրք, որը և նրանց համար էլ աղբյուր է ծառայել այդ ժամանակաշրջանի մասին գրելիս, դա Եվստաթիոս Ապամայեցու Պատմության գիրքն է։ Եվագրիոսը, որ օգտվել էր նրա գրքից, գրում է, որ Եվստաթիոսի Պատմությունը երկու բաժնից էր բաղկացած, առաջին բաժինը,—ասում է նա—, վերջանում էր Տրոյայի կործանումով, իսկ երկրորդ բաժինը հասնում էր մինչև Անաստաս կայսեր թագավորության 12-րդ տարին[20]։

Եվստաթիոսի գրքից օգտվել են Հովհան Մալալան, Թեոփանեսը և Պրոկոպիոս Կեսարացին[21]։ Դժբախտաբար Եվստաթիոսի այդ աշխատությունը մեզ չի հասել. այդ պատճառով Ն. Պիգուլևսկայան վերոհիշյալ աղբյուրները համեմատում է «Ժամանակագրության» հետ և գալիս այն եզրակացության, որ Յեշվան ծանոթ էր և կամ իր ձեռքի տակ ունեցել էր Եվստաթիոսի աշխատանքը, սակայն իր այս գիրքը շարադրելիս ձեռքի տակ եղել են այլ նյութեր, որոնք հիմնականում ասորական շրջապատից էին բխում,

---

[18] Յ. Սաիլիտ. *Ժամանակագրություն*, § 25։

[19] *Н. Пигулевская*, Месопотамия, стр. 18.

[20] *Evagrius*, The ecclesiastical History, I, 1, ed. Bidez and Parmantier, London, 1898, V, 24, p. 219.

[21] *Joannes Malalas*, Chronographia ex recensione L. Dindorfii, Bonnae, 1831, 16: *Theophanis*, Chronographia recensuit, C. de Boor, vol. I, Lipsiae, 1883: Պրոկոպիոս Կեսարացի, *Թարգմ. Հ. Բարթիկյան, Երևան, 1967*։

և որպես նորություններ, բարձրացնում «Ժամանակագրության» արժեքը[22]։ Միևնույն ժամանակ պիտի նշել որ այդ նորությունները «Ժամանակագրության» մեջ վերցված են բանավոր խոսքերից ու գեսպանների պատմածից։ Ն. Պիգուլևսկայան մանրամասն գրել է այս հարցերի շուրջ, ուստի մենք կանգ ենք առնելու հարցի այլ կողմի վրա։ Միայն վերջացնելուց առաջ, վերստին հիշեցնում ենք, որ «Ժամանակագրության» հեղինակը օգտվել է Եվստաթիոսից, և ինչպես ասել ենք, գրել էր մինչև Անաստաս կայսեր թագավորության 12-րդ տարին, այսինքն ներառյալ Կավատի Թեոդուպոլիս, Ամիդ և Միջագետքի այլ քաղաքների վրա կատարած արշավանքների պատմությունը, մինչև 503 թ., իսկ այդ ժամանակ դեռ խաղաղության դաշինք չէր կնքված Բյուզանդիայի և Պարսկաստանի միջև և բյուզանդացիները չէին սկսել սահմանի վրա Մծբինից ոչ հեռու Դարա քաղաքի հիմնադրումը։ Վերջինիս մասին տեղեկություններ կան Թեոփանեսի, Մալալայի, Եվագրիոսի մոտ, որոնց ընդհանուր աղբյուրը պետք է համարել այս անգամ ոչ թե Եվստաթիոսին, այլ Պրոկոպիոս Կեսարացուն[23]։

Արդ, Պարսկաստանի, Հայաստանի և հեփթաղների մասին իր տեղեկությունններն ու նյութը որտե՞ղից կարող էր վերցրած լինել «Ժամանակագրության» հեղինակը։ Պարսկաստանի այդ ժամանակվա քաղաքական պատմությունը գրել են նաև նրանից հետո Զաքարիա Միտիլինացին[24] և Թաբարին, իսկ վերջինս, ինչպես հայտնի է, օգտագործել է պարսկական աղբյուրներ[25]։ Ընդհանուր գծերով այս երեք աղբյուրների հաղորդածները համընկնում են։ Պրոկոպիոս Կեսարացու հաղորդած վկայությունններն էլ այդ ժամանակաշրջանի մասին, այսինքն Պերոզի ժամանակի պատմության վերաբերյալ, ընդհանուր շատ բան ունեն ասորական աղբյուրների հաղորդածի հետ։ Ն. Պիգուլևսկայան գտնում է, որ այդ տեղեկությունների աղբյուր եղած կլինեն այն անձնավորությունները, որոնք Բյուզանդիայից գնում էին Պարսկաստան պետական գործերով ու վերադառնում։ Այսպես, Զաքարիա Միտիլինացին պատմում է, որ բյուզանդական պետության հպատակներից՝ Եվսեբիոսը զինվորական ներկայացուցչի պաշտոնով գտնվում էր Պերոզի արքունիքում. մի այլ բյուզանդիացի՝ Եվստաթիոս Ապամայեցի

[22] *Н. Пигулевская*, Месопотамия, стр. 20.

[23] Նույն տեղում։

[24] Հաջորդ բաժնում մանրամասն գրել ենք այս հեղինակի մասին։

[25] *Tabari-Noeldeke*, Geschichte der Perser und Araber, Leiden, 1879, pp: 117—132.

վաճառականը, հեփթաղների գլխավոր խորհրդականն էր։ Նույն Եվստաթիոսի գրած պատմությունից օգտվում էր նաև «Ժամանակագրության» հեղինակը. ուրեմն կարելի է ենթադրել, որ պարսկական, հայկական և հեփթաղների մասին եղած տեղեկությունների ակունքը եղած լինի նույն Եվստաթիոսը[26]։ Անշուշտ, ինչպես մի անգամ էլ նշել ենք, նա չի բավարարվել միայն իր այս աղբյուրով, և ունեցել է այլ գրավոր աղբյուրներ, ինչպես օրինակ՝ Հակոբ Սարուգացու կամ Սրճեցու «Արևելյան նահանգներին» գրած նամակը և .այլն։ Բացի այդ, ինչպես գրել ենք, քաղաքական գործիչներից ու բազում հեղինակավոր անձնավորություններից հետաքրքրական տեղեկություններ էր քաղել։ Սրանց շարքին պետք է դասել նաև առևտրականներին, որոնք այն ժամանակ իրենց ճանապարհորդությունների շնորհիվ իմանում էին տեղի նորությունները, երբեմն պատահմամբ և երբեմն հատուկ հանձնարարությամբ ու հաղորդում համապատասխան մարմիններին ու անձնավորություններին։ Հայտնի է, որ Մծբինը այն սահմանային քաղաքն էր, որտեղ Բյուզանդիայից ու պարսկական տիրապետությունից եկած առևտրականները հանդիպում էին ու ապրանքների փոխանակություն կատարում։ Նման հանդիպումների ու քաղաքում ապրող ծանոթների միջոցով իմացվում էին «նորությունները»։ Հայտնի է, Եդեսիան ինչպիսի մեծ դեր էր կատարում Արևելքի ու Արևմուտքի միջև կատարվող միջազգային առևտրի ճանապարհին։ Մծբինից ոչ շատ հեռու գտնվող Եգեսիայի և Եդեսիայում ապրող մարդկանց համար շատ ավելի լայն հնարավորություններ կային սահմանից այն կողմում տեղի ունեցածը իմանալու համար։ Ուստի «Ժամանակագրության» հեղինակը իր այս աշխատությունը շարադրելիս օգտվել է նաև առևտրական կարավանների ուղիներով բերված նորություններից, մանավանդ որ ապրանքների ու առևտրի մասին նա բազում տեղեկություններ արձանագրել է իր գործում։

«Ժամանակագրության» հեղինակը ինքնուրույն է Եդեսիայի մասին գրելիս, և պիտի ասել, ճիշտ է, գրքի վերնագիրն է Միջագետքին հասած դժբախտությունների պատմություն, սակայն գրքի մեծ մասը նվիրված է Եդեսիային։ Ինչպես գիտենք, դեռ հռոմայեցիների օրոք էր, որ Միջագետքը երկուսի էր բաժանված Հյուսիսային Միջագետք՝ Ամիդ կենտրոնով և հարավային՝ Օսրոյեն, Եդեսիա կենտրոնով։ Վարչական այդ նույն բաժանումը

---

[26] *Н. Пигулевская*, Месопотамия. стр. 25։

շարունակվել է մինչև VI դարը։ Օսրոյենում հիմնական բնակչությունը ասորիներն էին, թեև այնտեղ ապրում էին նաև արաբներ, պարսիկներ, հայեր և խոսակցական լեզուն նույնպես ասորերենն էր։ Քաղաքը, ինչպես «Ժամանակագրության» մեջ էլ մանրամասն գրել է, ղեկավարում էր կայսրից նշանակված հեգեմոնը կամ ինչպես ասորիներն այն անվանել են՝ «դատավորը»։ Դատավորի ձեռքում էր կենտրոնացած մաքսերի գանձումը, հարկերի հավաքումն ու մայրաքաղաք (Կոստանդնուպոլիս) ուղարկելը, վարչական ու դատական գործերը, ոստիկանությունը, մի խոսքով «Դատավորը» Բյուզանդիայի լիազոր-ներկայացուցիչն էր, և Եդեսիայում նստած ղեկավարում էր Միջագետքի վարչական գործերը։

## 5. «ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆՆ» ՈՒ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԴԵՊՔԵՐԸ

V դարում հայ մատենագրությունը բացառիկ կերպով հարուստ էր պատմագրությամբ, սակայն այս դարաշրջանին հաջորդող VI դարը նախորդի հակապատկերն է, և դժբախտաբար, այդ ժամանակից հայկական պատմական գրքեր մեզ չեն հասել։ Հայ պատմագրության մեջ նման ամլությունը պիտի բացատրել քաղաքական այն խոշոր իրադարձություններով, որոնք Հայաստանը մի քանի տասնամյակներ շարունակ պատերազմական գործողությունների թատերաբեմ դարձրին. բացի այդ, եկեղեցիների միջև սկսված սուր վեճերն ու հակասությունները, և երկու մեծ պետությունների կողմից կազմակերպված հաճախակի կրոնական հալածանքները քայքայում էին ժողովրդի կյանքն ու տնտեսությունը ու հայ գործիչների միտքը հիմնականում կենտրոնացնում այլ հարցերի շուրջ։

V դարի պատմիչներից Ղազար Փարպեցին, որ իր Հայոց պատմությունը սկսել է Հայաստանի բաժանումից և հասցրել Վահան Մամիկոնյանի մարզպանության սկիզբը, այսինքն մինչև 485 թ. իր աշխատության մեջ բազում էջեր է նվիրել պարսից արքայից արքա՝ Պերոզի ու հայերի և Պերոզի ու հեփթաղների միջև տեղի ունեցած փոխհարաբերություններին ու պատերազմական գործողություններին։ Ղազար Փարպեցին այս ժամանակի քաղաքական եղելությունները նկարագրելիս, թեև ընդհանուր գծերով նմանություն ունի ասորական ու բյուզանդական աղբյուր-

ների հետ, բայց նկատվում է, որ նա իր ձեռքի տակ ունեցել է ավելի լայն տեղեկություններ, ինչպես հայ-պարսկական, այնպես էլ պարսիկների ու հեփթաղների միջև տեղի ունեցած դեպքերի մասին։ Ղազար Փարպեցին, որը Վահան Մամիկոնյանին մոտիկ կանգնած անձնավորություն էր, և նրա թելադրանքով էլ գրում էր իր այս Հայոց պատմությունը, բնականաբար հնարավորություն ուներ ոչ միայն պաշտոնական անձերի հետ շփվելու ու նրանցից նորություններ իմանալու, այլև, հավանաբար, Վահանն իրեն տրամադրած կլիներ նաև Հայաստանի մարզպանի դիվանատանը պահվող փաստաթղթերը։ Ըստ նրան, Պերոզի հեփթաղներից պարտվելու ու սպանվելու մասին տեղեկությունները իմանում ենք այդ պատերազմական գործողություններին մասնակցած ու սաստիկ կոտորածից ճողոպրած, պարսիկ մեծամեծներից մեկի շնորհիվ, որ եկել էր Հայաստան և Հայաստանի Շապուհ մարզպանին նամակ էր բերել։ Բացի նամակից, դեսպանը մանրամասնություններ է հաղորդել և ասել, որ պարսիկների պարտության մեջ մեղավորը Պերոզն էր, որովհետև այդ պատերազմական գործողությունները նախապատրաստելու և հարձակումը կազմակերպելու ժամանակ արքայից արքան ինքնիշխան է գործել, և չի լսել ու խորհրդակցել իր ավագանու հետ։ Երբ պարսկական բանակի սպարապետ Վահրամը համարձակվում է մի քանի անգամ զգուշացնել, նա՝ Պերոզը «ոչ լսէր ումեք, և ոչ զգայր և ոչ յիշէր բնաւ զառաջին թշնամանս խայտառականաց իւրոց, զոր եգիտ անձամբ և ամենայն Արեօք ի Հեփթաղէն»[27]։ Ըստ այս դեսպանի ասածների, պարսկական բանակն իր պարտության վրա համոզված էր, որ նրանք պատերազմի էին գնում «որք իբրև զմահապարտ ի մահ, և ոչ իբրև զպատերազմողս ի կռուել երթային»[28]։ Ղազար Փարպեցին այս դեսպանի պատմածների հիման վրա այնպիսի տեղեկություններ է հաղորդում, որոնք մեզ հայտնի են ասորական և բյուզանդական աղբյուրներից ևս։ Թե ինչպես, օրինակ, Պերոզը հեփթաղներից կրած իր առաջին պարտությունից հետո երդվել էր, որ այլևս չի հարձակվի հեփթաղների վրա, և այդ առթիվ հեփթաղների թագավորը այսպես է արտահայտվում Պերոզին. «Քո ընդ իս ուխտ է երդմամբ գրով և կնքով, թէ չկռուիմ ընդ քեզ. և սահմանս

[27] «Ղազարայ Փարպեցւոյ Պատմութիւն Հայոց», աշխ. Գ. Տէր-Մկրտչեանի և Ստ. Մալխասեան, Տփղիս, 1904, Գլ. ԶԵ, էջ 155։

[28] Նույն տեղում։

կարգեցաք, զորովք չիշխեսցուք թշնամութեամբ անցանել առ միմեանս. արդ՝ յիշեա զուխտն և զնեղութեան պաշարումն, յորմանէ ոզորմեալ իմ արձակեցի զքեզ, և ոչ սպանի, և ի բաց դարձիր խաղաղութեամբ, և մի՛ մեռանիր»[29]։ Սակայն Պերոզը սաստիկ զայրանում է և հպարտությամբ պատասխանում Հեփթաղին ու ասում.

«Զայս բազմութիւն գնդին, զոր դուք տեսանէք՝ կիսովս ընդ ձեզ ձկռուիմ և կորուսանեմ, և կիսովս զհող տեզեացդ, ուր դու լինիս՝ կրել տամ, ո՛ր ի ծովն և ո՛ր ի վիսն զոր հատին՝ լնում»[30]։

Սակայն երբ սկսում է ճակատամարտը, արդյունքը լինում է այն, որ կոտորվում է Պերոզի ամբողջ բանակը և միայն քչերն են ազատվում և ինքը Պերոզը «կորեաւ ինքն ամենայն որդւովք իւրովք և աշխարհաւ»[31]։

Ղազար Փարպեցու պատմածները Պերոզի մասին ընդհանուր գծերով նման են «Ժամանակագրության» ու Պրոկոպիոս Կեսարացուն, թեև Ղազարն այնպիսի մանրամասնություններ է հաղորդում, որոնք չկան մյուս պատմիչների մոտ. համենայն դեպս Ղազարի աղբյուրը տեղական բնույթ ունի և անկախ է ասորական ու բյուզանդական աղբյուրներից, անշուշտ խոսք չի կարող լինել վերը հիշվածների մասին, որոնք իրենց Պատմությունը գրել են Ղազարից հետո։

Ղազար Փարպեցին իր Հայոց պատմության մեջ գրել է նաև Պերոզին հաջորդած, նրա եղբայր՝ Վաղարշի (484—488 թթ) մասին, այն տարբերությամբ, որ Ղազարը ավելի լայն փաստեր է հաղորդում։ «Ժամանակագրության» մեջ նրա մասին կան հետևյալ տողերը. «Պերոզի հանկարծակի կորստից հետո, իր եղբայր՝ Վաղարշը նրա փոխարեն թագավորեց պարսիկների վրա։ Սա խոնարհ և խաղաղասեր մարդ էր»[32]։ Վաղարշը հաջորդում է իր եղբորը[33], սակայն այնպիսի պայմաններում, ինչպես «Ժամանակագրության» մեջ նշված է. «պետական գանձարանը հոների դեմ մղված պատերազմների պատճառով դատարկվել էր

29 Նույն տեղում։

30 Նույն տեղում։

31 «Ղազարայ Փարպեցւոյ Պատմութիւն Հայոց», էջ 156։

32 Ց. Ստիլիտ, Ժամանակագրություն, § 18։

33 Պրոկոպիոս Կեսարացին սխալմամբ Վաղարշին չի հիշատակում և Պերոզի հաջորդ է համարում Պերոզի ամենակրտսեր որդի Կավատին։ Տե՛ս Պրոկոպիոս Կեսարացի, Պարսկական պատերազմի մասին, գիրք I, գլ. 5, էջ 9։

և երկիրն էլ երկպառակտվել ու կործանման եզրին էր գտնվում»։ Վաղարշին մնում էր նախ գանձարանի վիճակը բարելավել և ապա ներքին խռովությունները վերացնել, իսկ այդ նպատակին հասնելու համար անհրաժեշտ էր մեղմ ու սիրաշահելու քաղաքականություն վարել։ Ինչպես Փարպեցին է պատմում, նա բանակցությունների մեջ է մտնում այդ ժամանակ Հայաստանում ապստամբների գլուխ կանգնած Վահան Մամիկոնյանի հետ և որոշ զիջումներով, այսինքն՝ հայերին կիսանկախ վիճակ խոստանալով, հանդարտեցնում ու վերջ է տալիս հայկական ապստամբությանը։ Այս նույն մեղմ քաղաքականությունը նա վարում է իրեն հպատակ այլ ժողովուրդների հետ։

Սակայն Վաղարշին չի հաջողվում երկար մնալ գահի վրա, նրա գահընկեցության առթիվ «Ժամանակագրության» մեջ հետևյալ վկայությունը կա. «Եվ որովհետև Վաղարշը փող չուներ իր բանակներին տալու, ուստի ընկավ նրանց աչքից։ Մոգերն էլ նույնպես ատում էին նրան, որովհետև նա փորձում էր իրենց օրենքները փոխել և ուզում էր իրենց քաղաքներում լողանալու համար բաղնիքներ կառուցել, և երբ (մոգերը) տեսան, որ նա իր բանակներից չի հարգված, նրան բռնեցին, կուրացրին և փոխաբեն (գահին) բազմեցրին նրա եղբորորդի՝ Կավատին»։ Եվ որովհետև Ղազար Փարպեցին իր Հայոց պատմությունը հասցրել է մինչև Վահան Մամիկոնյանի մարզպանությունը, այսինքն մինչև (485 թ. գարնանը), երբ պարսից արքայից արքա Վաղարշը հատուկ հրովարտակով Հայոց սպարապետ և Մամիկոնյան տոհմի տանուտեր ճանաչեց Վահան Մամիկոնյանին, իսկ նույն տարվա աշնանը, նրան դարձրեց Հայաստանի մարզպան. ուստի բնական է, որ ոչ մի տեղեկություն չլինի այնտեղ Կավատի գահակալման մասին, որն իշխանության գլուխ անցավ 488 թվականին։

Հետաքրքրական է, որ Ղազար Փարպեցին այս անցքերի մասին գրելիս ոչ մի խոսք չի ասում հայ-բյուզանդական հարաբերությունների մասին, նա բացարձակ լռության է մատնել այն։ Ըստ երևույթին, նա այդ կատարել է գիտակցորեն, չնայած նա կրթություն էր ստացել բյուզանդական մշակույթի կենտրոններում և տիրապետում էր հունարենին, և այդ առթիվ գրել «Տարեալ զիս ըստ վարդապետաց իմոց հրամանի ի Հոռոմս՝ ժամանակեցի անդ ամս»[34], և մի քանի էջ այն կողմ ավելացրել «Բայց իմ ըստ կարի պարապեալ յունական ուսմանցն», և

[34] «Ղազարայ Փարպեցւոյ Պատմութիւն Հայոց», Թիֆլիս, էջ 187։

հայտնել, որ ինք հունարեն գրքեր է ունեցել իր մոտ և իր թշնամիները վերցրել են դրանք և ցեցերի կերակուր են դարձրել. «Զի անգամ և զհոռոմ գրեանդ ոչ եսուն զկնի իմ. որք կան այդր ընկեցեալ ի կերակուր ցեցոյ»[35]։ Ասացինք, որ հայ-բյուզանդական հարաբերությունների մասին գիտակցորեն է լռել և նույնիսկ ոչ մի տեղ չի հիշատակել բյուզանդացի կայսրերի անունները, որովհետև նա իր այս գիրքը գրել է Վահան Մամիկոնյանի խնդրանքով, իսկ վերջինս այդ ժամանակ պարսիկներից նշանակված հայոց մարզպանն էր, և հայ բյուզանդական կապերի վրա կանգ առնելը կարող էր անցանկալի լինել։ Այսուհանդերձ մեր «Ժամանակագրությունից» իմանում ենք, որ երբ Վաղարշին հաջորդող Կավատը սկսում է նեղել հայերին, վերջիններս Վահան Մամիկոնյանի գլխավորությամբ ապստամբվում են պարսիկների դեմ, այրում Հայաստանում գտնվող ատրուշանը և դիմում բյուզանդացիների կայսր Անաստասին, որ օգնի, սակայն նա պարսիկներին չգրգռելու համար, հրաժարվում է նման օգնությունից։ Այս վկայությունը ցույց է տալիս, որ հայերը Վահան Մամիկոնյանի գլխավորությամբ պարսիկների հետ դաշինք կնքելուց հետո էլ, շարունակել են կապ պահպանել բյուզանդացիների հետ և մտածել են հարմար առիթից օգտվելով, բյուզանդացիների օգնությամբ վերջնականապես թոթափել պարսիկների լուծը։

Դժբախտաբար 485 թ. հետո Հայաստանի քաղաքական պատմության մասին մինչև VII դարը, հայկական աղբյուրները կցկտուր տեղեկություններ են պահպանել, և ահա այս հարցում Յոշվա Ստիլիտին վերագրված «Ժամանակագրությունը», ինչպես նաև VI դարի այլ պատմիչներ՝ (Զաքարիա Հռետոր և Հովհան Եփեսացի) հետաքրքրական մանրամասնություններ են հաղորդում VI դարի հայոց պատմության վերաբերյալ։

«Ժամանակագրության» հեղինակը քաջածանոթ էր այն պատճառներին, որոնց հետևանքով մոգերը բռնեցին Վաղարշին, կուրացրին և նրա փոխարեն Պերոզի որդի՝ Կավատը բազմեց գահին (488—531)։ Սա իշխանության գլուխ անցնելուց հետո, դեսպանություն ուղարկեց Կոստանդնուպոլիս, որ բյուզանդացիներից փող պահանջեն Ճորա դռների պահպանության համար։ Մինչ դեսպանությունը Անտիոք քաղաքն էր հասել, իմանում է, որ Զենոն կայսրը մահացել է և նրան հաջորդել էր Անաստասը

[35] Նույն տեղում, էջ 196։

(491—511 թթ.)։ Կավատի երկրորդ կարգադրությամբ դեսպանությունը ճանապարհը շարունակում է ու գալիս Կոստանդնուպոլիս, ինչպես պատմում է ասորի պատմիչը, և «երբ դեսպանը փոխանակ Կավատի կողմից շնորհավորական խոսքեր ասելու, սպառնալից խոսքեր ասաց, Անաստաս կայսրը զայրացավ, և երբ մանավանդ իմացավ, որ Կավատը վերականգնել է զրադաշտական պիղծ կրոնը ու սովորեցնում, որ կանայք հասարակաց լինեն, և բացի այդ, երբ տեղեկացավ, որ Կավատը իր իշխանության տակ եղած հայերին վնասել էր այն պատճառով, որ վերջինները հրաժարվել էին կրակը պաշտելուց, Անաստաս կայսրը մերժեց Կավատի խնդրանքը և փող չտվեց, պատճառաբանելով, որ եթե Մծբինը մեզ չվերադարձնեք ոչ մեկ փող չեմ տա»[36]։

Այսպես, ուրեմն պարսկական դեսպանությունը 491 թ. հասնում է Կոստանդնուպոլիս, և «Ժամանակագրության» տվյալներով արդեն հայերի ու Կավատի միջև ընդհարումներ էին տեղի ունեցել, և Վաղարշի հետ կնքված հայ-պարսկական դաշինքը անտեսելով, նորից սկսվել էին պարսկական ոտնձգությունները։ Ինչպես Կավատի, այնպես էլ իրեն նախորդած արքայից արքաների նպատակն էր նախ հայերին կրոնափոխ անել ու այդպիսով նրանց հեռացնել բյուզանդացիներից և ապա հնարավոր դարձնել հայերի, պարսիկների հետ ձուլումը։ Այդ քաջ գիտենալով, հայերը, ըստ երևույթին, հարմար առիթի են սպասել Կավատի դեմ ապստամբելու համար, և այդպիսի առիթ են համարել պարսից դեսպանության ձեռնունայն վերադարձը Կոստանդնուպոլսից։ «Ժամանակագրության» մեջ գրված չէ, թե երբ է վերադառնում դեսպանությունը Պարսկաստան, բայց պիտի կարծել, որ այն վերադարձել է մոտավորապես 492 թվականին[37]։

---

[36] Ց. Ստիլիտ. Ժամանակագրություն, § 19։

[37] Ինչպես գիտենք աղբյուրներից Անաստաս կայսրը 491 թ. վերջին օրերին է իշխանության գլուխ անցել, ուստի պիտի կարծել, որ պարսկական դեսպանությունը տեղ է հասած 492 թ. սկզբներին ու մինչև գարուն արդեն վերադարձել։ Հայկական այս ապստամբության մասին Ս. Երեմյանը գրել է «Հայ ժող. պատմ.» (Մակետ)։ Նա այդ ապստամբության սկզբի մասին թեև որոշակի չի գրում, բայց գրվածքից ստացվում է, որ այն սկսել է 491 թ. (տե՛ս «Հայ ժող. պատմ.», Երևան, 1948, էջ 154—155)։ Այդ ապստամբության վրա իր հոդվածում կանգ է առել նաև Վ. Իսկանյանը, և այն դրել է 492 թ.։ Տե՛ս Վ. Իսկանյան, Մարզպանական Հայաստանի ապստամբությունը Պարսկաստանի դեմ և Բյուզանդիան (V դ. վերջ և VI դ. սկիզբ), «Պատմա-բանասիրական հանդես», 1969, № 1, էջ 32։

Ըստ «Ժամանակագրության» պարսկական տիրապետության մեջ ապրող հայերը, երբ լսեցին, որ Կավատը խաղաղասիրական պատասխան չի ստացել, քաջալերվեցին ու միավորվելով հարձակվեցին ու խորտակեցին պարսիկների Հայաստանում կառուցած ատրուշանները. բացի այդ կոտորեցին այն մոգերին, որոնք Հայաստանում էին գտնվում[38]։ Կավատի դեմ հայերի ապստամբության մասին, ինչպես նշել ենք, հայկական աղբյուրներում մանրամասնություններ չկան, և այդ մանրամասնությունները պարտական ենք «Ժամանակագրությանը»։ Թե ե՞րբ էին հայերը սկսել այս ապստամբությունը, ճշգրիտ թվականը չի հիշատակում պատմիչը. ըստ երևույթին հայերը ապստամբվել են, հենց 492 թ., որովհետև հայտնի է, որ Անաստաս կայսրը իշխանության գլուխ է անցնում 491 թ. դեկտեմբերի 10-ից հետո, ուրեմն դեսպանությունը միայն 492 թ. սկզբներին կարող էր լինել Կոստանդնուպոլսում ու վերադառնալ առ առավելն մի երկու ամսից, հետևաբար ապստամբությունը պետք է լիներ այս նույն տարվա գարնանը կամ ամռանը[39]։

Կավատը ապստամբ հայերի դեմ մի պարսիկ մարզպանի, բանակով ուղարկեց Հայաստան, սակայն հայերը ջախջախեցին պարսիկներին և այդ հաղթությունից ոգևորված դիմեցին Անաստաս կայսրին ու նրանից օգնություն խնդրեցին, սակայն բյուզանդական կայսրը պարսիկների հետ պատերազմական գործողությունների մեջ չմտնելու համար, մերժեց հայերի խնդրանքը։ Այդ մասին ասորի պատմիչը մանրամասնություններ չի հաղորդում, սակայն գրում է, որ «Կավատը մի պարսիկ մարզպանի իր բանակով ուղարկում է Հայաստան, բայց հայերը դիմադրում ու ջախջախում են պարսկական բանակը» այսպես պարսիկները իրենց նպատակին չեն հասնում, մանավանդ ինչպես «Ժամանակագրության» մեջ պատմված է, հայերի ապստամբությունից մի քիչ անց, Մծբինից ոչ հեռու ապրող կուդիշացիները ևս ապստամբվեցին ու փորձեցին նույնիսկ գրավել Մծբինն ու այնտեղ իրենցից մեկին թագավոր նշանակել[40]։ Կավատը ստիպված եղավ երկարատև կռիվներ մղել նաև սրանց դեմ։ Նրանց օրինակին հետևեցին նաև Պարսկաստանում ապրող Թիմուրացի-

---

38 Յ. Ստիլիտ, Ժամանակագրություն, § 21։

39 Յ. Ստիլիտ, Ժամանակագրություն, § 22։

40 Նույն տեղում։ Տե՛ս նաև Bury, History of the later Roman Empire, 1923, pp. 429—430.

ները, որոնք իրենց բարձունքներին ապավինած, հաճախակի իջնում էին իրենց լեռներից ու կողոպտում, թալանում էին շրջակայքում գտնվող գյուղերի բնակիչներին, և եկվոր ու տեղացի վաճառականներին։ Պարսկական գերիշխանության տակ ապրող արաբները ևս օգտվելով քաղաքական իշխանության թուլությունից, սկսեցին ավազակային հարձակումները երկրի ներսում։ Այս անկայունությունը, բնականաբար, դժգոհություն առաջացրեց վերնախավի ներկայացուցիչների մեջ, և որովհետև Կավատը Մազդակյան շարժման կողմնակիցներից էր[41], ուստի պարսիկ ազնվականներն ատելությամբ լցվեցին Կավատի դեմ և որոշեցին նրան սպանել, նրա «անբարոյական» սկզբունքներն ու օրենքները եղծելու ցանկությունը նկատի ունենալով։ Կավատը երբ իմացավ իր դեմ նյութվող դավերի մասին, լքեց իր թագավորությունը ու փախավ հոների մոտ[42]։ Թե Կավատը ե՞րբ է փախել հոների երկիրը, մեր այս ասորական «Ժամանակագրության» մեջ (ժամանակը) չի նշվում, և ընդհանրապես, ինչպես բյուզանդական աղբյուրներից՝ Պրոկոպիոսի մոտ[43], այնպես էլ իրանական-արաբական աղբյուրներում ասված է, որ մոգերը նրան բանտարկում են ու ապա նա իր կողմնակիցների օգնությամբ փախչում է[44]։ Ն. Պիգուլևսկայան իր ուսումնասիրության մեջ գտնում է, որ այս տեղեկությունները տիպական բնույթ ունեն

---

[41] Սոցիալ-դասակարգային բնույթի շարժումները Մերձավոր Արևելքում, ինչպես այժմ պարզված է, գտնվել են մեծ մասամբ, մազդակյանների ուսմունքի ազդեցության տակ։ Սասանյան Պարսկաստանի Կավատ թագավորի ժամանակ (488—531) այս ուսմունքը, ինչպես հայտնի է, անարգել տարածվել էր Պարսկաստանում և մեծ հաջողություն ունեցել ժողովրդական ստորին խավերի մեջ։ Կրոնական հասկացողությամբ այս աղանդը պարզապես խառնուրդ էր զրադաշտական դուալիզմի և պարսկա-քրիստոնեական մանիքեական աղանդի։ Սոցիալական հարցերում նա քարոզում էր ֆեոդալական դասային արտոնությունների վերացում, ընդհանուր հավասարություն և գույքերի ու հարստությունների, ինչպես և կանանց հավասար բաշխում բոլոր մարդկանց միջև։ Մազդակի ու նրա հետևորդների ասելով, անհավասարությունը չար ու դիվային երևույթ է, իսկ հավասարության հաստատումը արդար մի պահանջ և համապատասխանում է բարի աստծու կամքին (Հ. Մանանդյան, Քննական տեսություն...։ բ, Բ մաս, Երևան, 1960, էջ 208։ Մի այլ տեղ նույն գրքում գրել է. «Ենթադրում են, որ Կավատն օգտվել է այդ ուսմունքից, ազնվականության դեմ պայքարելու համար, էջ 13)։

[42] Յ. Ստիլիտ, Ժամանակագրություն, § 23։

[43] Պրոկոպիոս Կեսարացի, Պարսկական պատերազմի մասին, գիրք Ա, գլ. 6, § 6, էջ 12։

[44] *Christensen*, L'Iran sous les Sasanides, p. 344.

և դալիս են Կավատի վեպից։ Նա եզրակացնում է, որ ասորական «Ժամանակագրությունը» այս հարցում ավելի ճիշտ ուղու վրա է։ Այսպես, ըստ իրանական պատմական հուշարձանների, Կավատը երկրից փախչում է 496 թվականին[45]։ Նրան փոխարինում է եղբայրը՝ Ջամասպը (497—499)։

Հոների մոտ Կավատը ամուսնացավ թագավորի աղջկա հետ, որը փաստորեն իր քրոջ աղջիկն էր[46]։ Ապա նա համոզում է հոների թագավորին և օգնական զորք ստանալով վերադառնում Իրան։ Վաղարշը երբ լսում է նրա վերադարձի մասին, թողնում է արքունիքը և փախչում։ Կավատը (498—499) իշխանությունը վերստանձնելուց հետո, սկսում է երկրի կայունացման մասին մտածել ու գործնական քայլերի դիմել։ Նա իրեն հակառակորդ ազնվականներին վերացնում է մեջտեղից, ապա սպառնալով թիմուրացիներին, հանդարտեցնում է նրանց՝ Բյուզանդիայի դեմ մղվելիք պատերազմից ստացված ավարից բաժին հանելու խոստումով։ Իսկ արաբները ոգևորվելով ստացվելիք ավարի հեռանկարով, մեծ ուրախությամբ միացան Կավատին։ Այսպիսով, մնում էին միայն հայերը, որոնց հետ անհրաժեշտ էր լեզու գտնել։

«Ժամանակագրությունը» պատմում է, թե հայերը վախենալով, որ Կավատը կարող է վրեժխնդիր լինել կործանված ատրուշանների համար, չուզեցին ենթարկվել, բայց Կավատը բանակ հավաքեց և արշավեց Հայաստան։ Նորից սկսվեցին պատերազմական գործողությունները։ Ինչպես երևում է ասորի պատմիչի հաղորդածներից, Կավատի ցանկությունը հայերի հետ պատերազմելը չէր, այլ նման տեղաշարժերով ուզում էր հայերին վախեցնել, միևնույն ժամանակ որոշ զիջումներով սիրաշահել նրանց, որպեսզի իրեն օգնեն բյուզանդացիների դեմ պատրաստվող արշավանքներին։ Հոների մոտից վերադառնալուց հետո, Կավատը ինչպես կարելի է կռահել իր գործողություններից, իր գործելակերպում փոփոխություն էր մտցրել և անհրաժեշտ էր գտնում հարևան ու իր գերիշխանության ենթակա ժողովուրդների ուժերի հետ հաշվի նստել, մանավանդ որ Պարսկաստանը դեռ քաղաքական ու ռազմական կայուն վիճակ ձեռք չէր բերել։ Դրա համար, թեև «Ժամանակագրության» հեղինակը գրում է, թե նա հայերին խոստանում է, որ այլևս չի բռնադատի նրանց կրակը

[45] *Al-Tabari*, Annales, I, éd. Nëldeke, ZDMG, XXVIII, p. 435.

[46] Հոների թագավորը ամուսնացել էր Պերոզի դստեր հետ, իսկ Կավատը՝ Պերոզի որդին էր։

պաշտել[47], բայց կարծում ենք, որ հարցը միայն դրանով չի սահմանափակվում. ըստ երևույթին Վահան Մամիկոնյանը նրանից պահանջել էր հարգել Նվարսակում 485 թ. հաստատված հայ-պարսկական դաշինքի պայմանները, և ինչպես դիտենք, կրոնական ազատության խնդիրն այդ պայմանագրի կետերից մեկն էր միայն, այսինքն հայերը նորից ընդունելով պարսկական դերիշխանությունը, պահպանում էին իրենց կիսանկախ վիճակը։

Այսպես, ասորական «Ժամանակագրության» հաղորդած այս եղելությունները կարևոր արժեք են ներկայացնում և մենք այդ վկայությունների շնորհիվ կարողանում ենք V դարի վերջին տասնամյակի որոշ դեպքեր վերականգնել։ Հայ ժողովուրդն իր պետականությունը վերականգնելու նպատակով համառ պայքար էր մղում, այնպիսի պայմաններում, երբ Բյուզանդիան մենակ էր թողել հայերին՝ պարսկական հզոր պետության դիմաց։ Սակայն Անաստաս կայսրի ու բյուզանդական վերնախավի անհեռատես քաղաքականության պատճառով, ինչպես իմանում ենք «Ժամանակագրությունից», Կավատը բոլոր պատրաստությունները տեսել էր Բյուզանդիայի վրա հարձակվելու համար, և 502 թ. օգոստոսի 22-ին նա անցավ բյուզանդական սահմանը ու պաշարեց հայկական Թեոդուպոլիս քաղաքը, իսկ մի քանի օրից տիրեց քաղաքին. փաստորեն քաղաքը դիմադրություն ցույց չտվեց, որովհետև քաղաքի կառավարիչ՝ Կոստանդինը, որը կայսրի հետ թշնամացել էր, քաղաքը հանձնեց պարսիկներին[48]։ Պարսիկները քաղաքը գրավելուց հետո այնտեղ պահակազորք թողեցին ու նույն տարվա հոկտեմբերի 5-ին արդեն պաշարեցին Ամիդը[49]։ «Ժամանակագրության» հեղինակը դրում է, որ Կավատը միևնույն ժամանակ ամայացրել էր Անգեղտունը, Ծոփքը, բուն Հայաստանն ու Հյուսիսային գավառները[50]։ Այստեղ պատմիչն, անշուշտ, նկատի ունի հայկական այն գավառները որոնք Հայաստանի 387 թ. բաժանումից հետո մտել էին Բյուզանդական տիրապետության մեջ։ Պրոկոպիոս Կեսարացին էլ իր «Պարսկական պատերազմի մասին» գրքի առաջին մասում, դրել է այս իրադարձությունների մասին, և շատ կարճ նշել նաև, որ Կավատը նա ինքն անձամբ

---

47 Ց. Ստիլիտ, Ժամանակագրություն, § 25։

48 Նույն տեղում, § 50։

49 Նույն տեղում։

50 Նույն տեղում։

հարձակվեց Հայաստանի վրա և մեծ ավար վերցրեց[51]։ Այստեղ, անշուշտ, խոսքը ոչ թե պարսկական, այլ բյուզանդական Հայաստանի մասին է և Պրոկոպիոսի այս վկայությունը ճշտվում է «Ժամանակագրության» տվյալներով, որտեղ հիշատակված են հայկական շրջաններն իրենց անուններով։

Թեև «Ժամանակագրության» մեջ չի նշված, բայց նույն երկի անուղղակի հաղորդումներից պիտի ենթադրել, որ հայկական զորքն էլ մասնակցում էր Կավատի այս արշավանքներին, որովհետև ինչպես գիտենք ասորական այս աղբյուրից, Կավատը համաձայնության եկավ հայերի հետ այն պայմանով, որ նրանք ևս իրենց օգնեն բյուզանդացիների դեմ մղվելիք պատերազմում։ Բայց ի՞նչ քանակությամբ հայ զինվորներ էին միացել պարսկական բանակին և ի՞նչ գործեր են կատարել այդ արշավանքների ժամանակ, մեզ հայտնի չէ, (բայց) մի բան պարզ է, որ հայերը ակամա մասնակցում էին այդ պատերազմին։ Խոսքն, անշուշտ, Պարսկա-Հայաստանի մասին է, մինչ Բյուզանդական Հայաստանի զորքը ստիպված էր լինել բյուզանդական բանակի կողքին։ Մենք այստեղ կանգ չենք առնի նաև այն պատերազմական գործողությունների ու պատերազմի պատճառով առաջացած թշվառությունների ու ժողովրդի տնտեսական ծանր վիճակի վրա, որոնք ասորի պատմիչը այնքան դիպուկ նկարագրել է։

## 6. ՀԱՅԿԱԿԱՆ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ ԵՎ VI ԴԱՐԻ ԴԵՊՔԵՐԸ

VI դարի առաջին կեսի հայոց պատմության համար կարևոր փաստաթղթեր են Գիրք թղթոցում պահպանված նամակները, որոնք Հայաստանում գումարված եկեղեցական ժողովների մասին տեղեկություններ են տալիս. այդ նամակների հիմքում ընկած են եկեղեցական հայրերի քաղաքական հարցերի նկատմամբ իրենց ունեցած վերաբերմունքը։ 431 թ. Եփեսոսի 3-րդ տիեզերական ժողովում հիմնական հարվածը ուղղված էր Նեստորի և նեստորականության դեմ։ 451 թ. Քաղկեդոնում գումարված 4-րդ ժողովից հետո միջեկեղեցական հարաբերություններն այլ ընթացք ստացան և այս անգամ պայքարը սրվեց միաբնակության դեմ, որովհետև բյուզանդական եկեղեցին Կոստանդնուպոլսո պատրի-

---

51 Պրոկոպիոս Կեսարացի, *Պարսկական պատերազմի մասին*, գլ. 7, § 7, էջ 14։

արքի և կայսրի գլխավորությամբ քաղկեդոնական դավանանքը դարձրին պետական պաշտոնական դավանանք։

Հայ եկեղեցին, որը սկզբից էլ փորձում էր ինքնուրույն դիրք գրավել երկրում, և մանավանդ 451 թ. գոյության պայքար էր մղում հատկապես Վահան Մամիկոնյանի Հայաստանի մարզպան դառնալուց հետո՝ այսինքն 485-ից մտածում էր իր դիրքերի կայունացման մասին, ի վերջո 490 թ. Կավատի դեմ հայերի բարձրացրած հաջող ապստամբությունից հետո, Կավատը ստիպված եղավ հայ եկեղեցին ևս պաշտոնապես ճանաչել։ Այդ ճանաչումը պետք է, որ հոների մոտից երկրորդ անգամ վերադառնալուց հետո եղած լինի։ VII դարի հայ պատմիչ Սեբեոսն իր գրքում հետևյալն է գրել Կավատի՝ քրիստոնյաների նկատմամբ վարած նոր քաղաքականության մասին. «Մինչև հրաման տալ Կավատայ արքայի և որդւոյ նորին Խոսրովու՝ եթէ «իւրաքանչիւր ոք զիւր հաւատս կալցէ, և զհայս նեղել ոք մի իշխեսցէ, ամենեքին մեր ծառայք են մարմնով իսկ վասն հոգւոցն, որ զհոգին դատէ՝ նա գիտէ»[52]։ Այսպես, փաստորեն Կավատը որդեգրում է իր նախորդի Վաղարշի մեղմ քաղաքականությունը։ Գիտենք, որ Պերոզի մահից հետո Վաղարշը 485 թ. գարնանը հատուկ հրովարտակով Հայոց սպարապետ և Մամիկոնյան տոհմի տանուտեր ճանաչեց Վահան Մամիկոնյանին, իսկ նույն տարվա աշնանը Վահան Մամիկոնյանը դարձավ Հայաստանի մարզպան։ Դա նշանակում է, որ պարսիկները ընդունում էին Հայաստանի կիսանկախ վիճակը։ Կավատը պաշտոնապես ճանաչում է նաև հայ եկեղեցու ինքնուրույնությունը։ Հայ եկեղեցին, բնականաբար, նման իրավունքների հասնելուց հետո պետք է որ գործնական քայլերի դիմեր, սակայն 502 թ. սկսված պատերազմական գործողությունները Պարսկաստանի ու Բյուզանդիայի միջև ժամանակավորապես կասեցրին նման միջոցառումների իրագործումը, մինչև պատերազմի վերջը։

Կավատի կրոնական այս նոր քաղաքականության շնորհիվ, հայ եկեղեցին կարողացել էր ոչ միայն իր դիրքերը ամրացնել երկրի ներսում, այլև հնարավորություն էր ստացել իր հեղինակությունը բարձրացնել պարսկական տիրապետության մեջ ապրող այն քրիստոնյա ժողովուրդների առաջ, որոնք միաբնակներ էին։ Այդ մասին է վկայում օրինակ Գիրք Թղթոցում պահպանված «Թուղթ Հայոց ի Պարսս առ ուղղափառս» նամակը։ Ըստ այս

[52] «Պատմութիւն Սեբէոսի եպիսկոպոսին ի Հերակլն», Թիֆլիս, 1913, էջ 195։

նամակի Կավատի թագավորության 17-րդ տարում[53], Հայոց Բաբգեն կաթողիկոսի գլխավորությամբ և «Ամենայն եպիսկոպոսաւք և վանականաւք և նախարարաւք ժողովեալ էաք յԱյրարատ գաւառ, յոստանն Հայաստան աշխարհիս ի Դուին քաղաք»[54]։

Ահա այս ժողովին հայ նախարարներից ներկա էին՝ նախ Վահան Մամիկոնյանի հաջորդ, նրա եղբայր Վարդան Մամիկոնյանը, Սահակ Կամսարական Արշարունյաց տերը, Սպանդիատ Հայոց ասպետը և այլն։ Այս ժողովին մասնակցում են նաև պարսկական իշխանության մեջ մտնող տարբեր գավառներից եկած ասորի ու պարսիկ միաբնակ վանականներ ու եկեղեցականներ։ Արդեն, ոչ նեստորական եկեղեցականներն ու հավատացյալները իրենց հենարան էին դարձնում հայ եկեղեցին և նեստորականների հալածանքից ազատվելու համար օգնություն էին հայցում հայերից, որովհետև պետական ճանաչում ստացած հայ եկեղեցին, հնարավորություն ուներ, անկասկած, նրանց իր հովանավորության տակ վերցնելու։ Իսկապես ասորիների՝ հայերին գրած նամակում դրսևորվում է նման վերաբերմունքը։ Այդ նամակից մեջ ենք բերում հետևյալ տողերը. «Գիտեմք մեք, ո՜վ ճշմարիտք, զի հարք արդարք և հաւատացեալք էք, և բժիշկք իմաստունք հիւանդաց, և վասն այսորիկ որպէս որդիք որ խնդրեն ի հարանց, նոյնպէս և մեք խնդրեմք զկարաւտութիւն մեր ի ձեր հայրութենէ։ Եւ որպէս հիւանդք որ ցուցանեն զցաւս իւրեանց բժշկաց, նոյնպէս և մեք ցուցանեմք ձեզ, զի եմք մեք յաշխարհի հերձուածողաց, և բնակեալ եմք ի մէջ սոցա որպէս գառինք ի մէջ գայլոց, և համարեալ եմք սոցա թշնամիք. զի քարոզեմք զճշմարիտ հաւատս և կրեմք ի սոցանէ զբազում չարչարանս, կապանս, զհարուածս, և զհալածականութիւնս և զաւարառութիւնս կենաց. և վասն այսորիկ աղաչեմք զճշմարտութիւն ձեր. եթէ աւգնեցէ՛ք տկարութեանս մերում, և տուք ձեռն եկեղեցւոյ Քրիստոսի ի ժամանակի նեղութեան»[55]։ Այս մի քանի տողերը բնորոշում են այդ ժամանակ մի կողմից՝ հայ-պարսկական փոխհարաբերությունների էությունը, և մյուս կողմից՝ հայ միաբնակ ասորիների կապերը։ Եթե մինչև V դարի վերջերը հայերը հակված էին դեպի հայ բյուզանդական

---

[53] Այս ժողովի մանրամասնությունները տե՛ս Ն. Տէր-Մինասեանց, Հայոց եկեղեցու յարաբերությունները ասորւոց եկեղեցիների հետ, էջմիածին, 1908 թ., էջ 66։ Ն. Տեր-Մինասյան, Նեստորականությունը Հայաստանում 5—6 դդ., Երևան, 1946,

[54] «Գիրք թղթոց», Թիֆլիս, 1901, էջ 42։

[55] Նույն տեղում, էջ 40։

հարաբերությունների ամրացմանը, ապա VI դարի սկզբներից բեկում է զգացվում, և ինչպես հետագա տարիների իրադարձությունները էլ ցույց են տալիս, գնալով անդունդը խորանում է, և հայերն ավելի հայ պարսկական կողմնորոշում են ցուցաբերում, որովհետև պարսկական տիրապետության պայմաններում, հայերը որոշ չափով ավելի լայն հնարավորություններ են ունենում մի շարք հարցերում ինքնուրույն գործելու, մանավանդ այն ժամանակ, երբ Անաստաս կայսրի մահից (518 թ) հետո, Հուստինոս Ա-ն գահ է բարձրանում և նրա օրոք հակաքաղկեդոնական հալածանքները գնալով ուժեղանում են Բյուզանդական կայսրության մեջ։ Այսպես, Գիրք թղթոցում եղած այս մի քանի նամակները, հատկապես Բաբգեն կաթողիկոսի և ասորիների պատասխան նամակները թեև քաղաքական իրադարձությունների մասին տեղեկություններ չեն տալիս ու հիմնականում շոշափում են կրոնական ու եկեղեցական հարցեր, այսուհանդերձ իրենց մեջ արտացոլում են քաղաքական իրադրությունը։

Գիրք թղթոցից բացի V դարի վերջերի և VI դարի սկզբների վերաբերյալ հայկական այլ աղբյուրներում շատ կցկտուր տեղեկություններ կան։ Դրանք հիմնականում վերաբերում են այդ ժամանակաշրջանում թագավորած արքայից արքաների ու կայսրերի թագավորության տևողության։ Այսպես, VII դարի հայ հայտնի մատենագիրներից Անանիա Շիրակացին դրում է. «Անաստաս՝ ամս քսան եւ եւթն։ Սա ի նմին միաւորութեան Զենոնի զուղղափառութիւն հաստատեալ կարդեաց՝ յաղագս շարժեցեալ Քաղկեդովնի ժողովոյն սահման հաւատոյ հանդերձ, նշովիւք. եւ ի նորին աւուրս եղև հուր սաստիկ արտագոչ. աղաղակեցին առ Աստուած եւ ապրեցաւ քաղաքն»[56]։ Ժամանակագրական նման տեղեկություններ կան նաև Սեբեոսի մոտ. «Եւ ի խզ երորդին Պերոզի՝ թագաւորէ Զենոն ի վերայ Յունաց՝ ամս ժէ։ Պերոզ՝ խԶ։ Զենոն զառաջինն։

Յամի չորրորդի Զենոնի՝ թագաւորէ Պարսից Զամասպ՝ Ը։ Զենոն ի վերայ Յունաց զչորրորդն։ Զամասպ զառաջինն։

Եւ ի վերայ Ե երորդի ամի Զենոնի կայսեր՝ թագաւորէ Պարսից Կաւատ, ամս խա։ Զենոն՝ զ։ Կավատ զառաջինն։

Յամի ժԳ երորդի Կաւատայ՝ թագաւորէ Յունաց Անաստաս՝ ամս խէ։ Կաւատ՝ դԺդ։ Անաստաս զառաջինն»[57]։

---

[56] «Անանիա Շիրակացու մատենագրությունը», աշխ. Ա. Գ. Աբրահամյան, Երևան, 1944, էջ 394։

[57] «Պատմութիւն Սեբէոսի», էջ 30։

Այս ժամանակագրական տեղեկությունները երբ համեմատում ենք այլ աղբյուրների հետ, տեսնում ենք, որ դրանք իրար չեն համապատասխանում։ Ուստի դժվար է ասել, թե Սեբեոսն դրանք որտեղից է վերցրել։ Իսկ ինչ վերաբերում է Անանիա Շիրակացու այն վկայությանը, որ Անաստասը թագավորել է 27 տարի, այն պատմական է ու ճշգրիտ, որովհետև հայտնի է, որ Անաստաս կայսրը ղեկավարել է բյուզանդական պետությունը 491 թ. մինչև 518 թ.։

Ասողիկը ևս հիշատակում է Զենոն կայսրին ու նշում նրա Հենոտիկոնը։ Նա Զենոնի մասին մի հետաքրքիր զրույց է պատմում. «Ոնտոս Զենոն ամս ԺԲ. սա էր այր որկորեայ և յաւուր բարեկենդանին ագահացեալ յուտել և յըմպելն մինչև ի լուսանալն պահոց. ապա յարուցեալ ի քնոյ՝ մնացած ինչ մսոյ ճգիտ յատամունսն դի Հոռոմք ոչ ունին սովորութիւն յետ կերակրոյն լուանալ և մաքրել զբերանն, մանաւանդ լուալի իրօք, զոր օշնանն կոչեն, այլ լոկ ջրով ողողեն։ Ապա հրամայեաց հրամանաւ պատրիարքին նզովիւք չափ՝ զվերջին բարեկենդանն պանրուտոյ առնել։ Սա գրեաց Թուղթ առ ամենայն աշխարհն Յունաց և Հոռոմոց, որ կոչի Հենատիկոն, յորում նզովէ զժողովն Քաղկեդոնի և որք երկու բնութիւն ասեն ի Քրիստոս[58]։

Այս զրույցն ավելի հասկանալի ձևով պատմում է Կիրակոս Գանձակեցին իր Հայոց Պատմության մեջ։ Նա գրում է. «Այս Զենոն նզովեաց զժողովն Քաղկեդոնի երկոտասան գլուխ նզովից կարգեաց ընդդեմ նորա։ Զսմանէ ասեն, թե յաճախ ուտէր միս. և յաւուր միում յանչափ ուտելոյն քացախեալ յորովայն նորա կերակուրն. յայնմանէ տաղտկացեալ օրէնս եդ զերկու շաբաթս բարեկենդանին ոչ ուտել միս, այլ պանիր, զոր Պանրուտայն անվանեն մինչև ցայսօր»[59]։

Անաստաս կայսրի մասին Ասողիկի մոտ կա հետևյալ վկայությունը. «Անաստաս ամս ԻԷ, սա եկաց ի նմին միաբանութեան Զենոնի ուղղափառութեանն»[60]։ Ինչպես դժվար չէ կռահել, Ասողիկն իր այս տեղեկությունը վերցրել է Անանիա Շիրակացու գրքից, որովհետև բառացի կրկնում է նրա խոսքերը։ Պարսից արքայից արքա Պերոզի, Վաղարշի, Կավատի և Ջամասպի թա-

---

58 «Ստեփանոսի Տարօնեցւոյ Ասողկան Պատմութիւն Տիեզերական», Պետերբուրգ, 1885, էջ 140։

59 Կիրակոս Գանձակեցի, Պատմութիւն հայոց. աշխ. Կ. Մելիք-Օհանջանյան, Երևան, 1961, էջ 36։

60 «Ստեփանոսի Տարօնեցւոյ Ասողկան Պատմութիւն Տիեզերական», էջ 112։

դավորությունների տևողության տարիները նա վերցրել է Սեբեոսից։ Նա գրում է. «Պերոզ ամս ԻԵ, Վաղարշ ամս Դ, Կավատ ամս ԺԱ, Ջամասպ ամս Դ, Կավատ ամս ԼԱ»[61] միակ առարկությունը, որ կարելի է անել, այն է, որ Ջամասպը երկու տարի էր փոխարինել Կավատին, ուստի Կավատի թագավորությունը եթե անընդմեջ հաշվելու լինենք, կստացվի 42 տարի։

Թովմա Արծրունին իր «Պատմութիւն Տանն Արծրունեաց» գրքում մի քանի տողերով բնորոշել է Կավատի և Ջամասպի թագավորության շրջանը. նա գրել է. «Յերկարեալ վտանգ նեղութեան հայոց, որպէս ցուցանեն բազումք ի պատմագրաց, մինչ ի ժամանակս Ջամասպայ եւ Կաւատայ մինչ ի Խոսրով արքայ։ Եւ նախարարքն հայոց կրէին կիրս ծանրաբեռինս ի զէն եւ ի ճակատամարտ»[62]։ Թե ին՞չ բազում պատմագրերի մասին է Թովմայի խոսքը, դժբախտաբար, իմանալ դժվար է, նախ հայերից որևէ մեկին նշել հնարավոր չէ, քանի որ, ինչպես տեսանք, այդ ժամանակաշրջանի պատմությունը դրող հեղինակ չունենք. գուցե օտարներին նկատի `ունի, բայց նրա լռությունը անկարելի է դարձնում որևէ եզրակացություն անել։ Թովմայի այս վկայությունը կարևոր է սակայն այն տեսակետից, որ թեև նա ուղղակի չի նշում բայց նրա այս հաղորդումից երևում է, որ հայ նախարարները իրենց գնդերով ստիպված մասնակցում էին Կավատի հետ՝ բյուզանդացիների դեմ մղած արշավանքներին, և այդ բռնի մասնակցությունը շատ ծանր էր նստում նախարարների վրա։

Ահա այս է այն ամբողջը, որ կա հայկական աղբյուրներում V դարի վերջերի և VI դարի սկզբներում տեղի ունեցած այդ իրադարձությունների մասին և ինչպես դժվար չէ պատկերացնել, այդ տեղեկությունները վերաբերում են տվյալ ժամանակի արքայից արքաների ու կայսրերի թագավորության տևողությանը։

Ուստի այս հանգամանքը նկատի ունենալով պիտի խոստովանենք, որ ինչպես ասորական այս աղբյուրը, այնպես էլ VI դարի մյուս աղբյուրները, որոնք Հայաստանի ու հայերի մասին տեղեկություններ են թողել, մեծ արժեք են ներկայացնում, որովհետև այդ վկայությունների հիման վրա հնարավոր է դառնում Հայոց պատմության ու որոշ հայ գործիչների գործունեության պատկերը վերականգնել։

---

[61] Տե՛ս «Պատմութիւն Սեբէոսի», էջ 286։

[62] «Պատմութիւն տանն Արծրունեաց ի Թովմայ վրդ. Արծրունւոյ», Կոստանդնուպոլիս, 1852, էջ 91։

## ՈՒՌՀԱՅԻ, ԱՄԻԴԻ ԵՎ ՀԱՄԱՅՆ ՄԻՋԱԳԵՏՔԻ ԾԱՆՐ ԺԱՄԱՆԱԿՆԵՐԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ[1]

*1. Ով ամենասքանչելիդ մարդկանց մեջ՝ Սարգիս քահանա և վանահայր, ստացել եմ քո աստուածասեր սրբությանդ նամակը, որով խնդրում ես քեզ որպես հիշատակ գրել այն մասին, թե ե՞րբ մորեխները թափվեցին (մեր երկիրը), և ե՞րբ խավարում, երկրաշարժ, սով ու համաճարակ եղավ մեզ մոտ, և ե՞րբ պատերազմեցին հոռոմները պարսիկների հետ։ Այս խնդրանքներից բացի նամակում իմ մասին կար նաև գովասանք, որը շատ էր ամաչեցնում ինձ, նույնիսկ այն ժամանակ, երբ ես մենակ էի լինում ինձ հետ, որովհետև իրականում այդ գովեստներից ոչ մեկին արժանի չեմ։ Այժմ ես էլ ուրախությամբ կգրեի քո ունեցած առավելությունների մասին, սակայն իմ բանականությունը անկարող է ստուգել և տեսնել իսկականը, այնպես ինչպես որ կա։ Հիանալի զգեստը, որ դու քո կորովի կամքով գործեցիր քեզ համար և դրանով զգեստավորվեցիր, ցույց է տալիս, որ դու այրվում ես օրենքը իրագործելու սիրով, որովհետև դու հոգատար ես ոչ միայն այն եղբայրների նկատմամբ, որոնք այժմ գտնվում են քո հովանավորության ներքո, այլև բոլոր նրանց, որոնք գիտության սիրով (լցված) կմտնեն հետագայում քո երանելի վանքը։ Եվ մեր մեղքերի պատճառով մեզ ուղարկված պատիժների և մեզ հետ պատահածների մասին կարդալիս ու իմանալիս, նրանք կարող են հեռու մնալ մեր (կատարած) ՝ մեղքերից և ազատվել (նման) պատիժներից։ Իսկապես քո մասին ըստ էության խոսել չեմ կարող, որովհետև ես հեռու եմ եղել քեղանից և լոկ մի տեսակցությունից հետո, ի՞նչ կարող եմ ասել քո մասին։*

[1] *W. Wright*, The Chronicle of Joshua the Stylite, Cambridge, 1882.

2. Հովնաթանի[2] նման (որպես) ճշմարիտ բարեկամ, դու քեզ սիրով ես կապել ինձ հետ։ Բայց Հովնաթանի հոգին Դավթին կապվեց այն ժամանակ, երբ նա տեսավ, որ հսկան տապալվել էր նրա կողմից և նրան հանձնված բանակը այնպես հրաշալի չէր, ինչպես նա (Դավիթը), որովհետև նա (Հովնաթանը) սիրում էր նրան (Դավթին) իր լավ գործերի համար, ինչպես դու ինձ քեզանից ավելի ես սիրել, առանց իմ մեջ հատուկ լավ բան տեսնելու։

Ոչ էլ արժանի է զարմացման, եթե համեմատելու լինենք այն, որ Հովնաթանը փրկեց Դավթին Սավուղի (կողմից սպառնացող) մահից, քանզի նա (Հովնաթանը) ինչ որ բանով պարտական էր (Դավթին), որովհետև նա առաջին անգամ մահից փրկեց (Հովնաթանին) և կյանք տվեց նրան ու վերադարձրեց հորենական տունը, որպեսզի նա չոչնչանա փղշտացիների ձեռքով։ Եվ, չնայած, ես ոչինչ նման բան չեմ արել քեզ, բայց դու ամեն ժամանակ աղոթում ես աստծուն ինձ համար, որպեսզի փրկվեմ սատանայից և որպեսզի նա (սատանան) չկործանի ինձ մեղքերիս պատճառով։ Բայց պետք է ասեմ, որ դու ինձ սիրում ես այնպես, ինչպես Դավիթը Սավուղին[3], որովհետև դու այն աստիճան հրապուրված ես քո զգացման մեծությունից ու սիրո ջերմությունից, որ չգիտես իմ կշիռը, բայց ինձ նայելով պատկերացնում ես բաներ, որոնք ինձանից հեռու են։ Դու քո նամակների միջոցով ինձ չես դաստիարակել և չես օգնել վերացնելու իմ թերությունները, այնպես ինչպես ծնողներն են հոգատար, որոնք թեև իրենց երեխաներից շահ չունեն, բայց հոգում են նրանց բոլորի կարիքները։ Եվ դու այսօր քո ընտրությամբ, խոնարհեցրել ես քեզ և խնդրել ինձ, որ քեզ համար գրեմ բաներ, որոնք շատ դժվար են ինձ համար, որովհետև դու (մտածում ես որ) դրանք կարող են, եթե գրելու լինես, հատկապես քեզ գովելու առիթ հանդիսանալ և դրա համար չնայած դու դրանք ինձնից ավելի լավ գիտես, բայց ցանկանում ես ինձանից իմանալ։ Ուստի այս մասին ես չեմ գանգատվի քեզ, ոչ էլ կհրաժարվեմ կատարելուց այն, ինչ որ դու հրամայել ես։

3. Իմացիր ուրեմն, որ ես ևս երբ տեսա այն նշանները, որոնք կատարվում էին և հալածանքները, որոնք հաջորդեցին,

---

[2] Հովնաթանը Հին կտակարանի դեմքերից է։ Նա հրեաների թագավոր Սավուղի երեց որդին էր։ Տե՛ս «Թագավորությանց առաջին», ԺԷ—ԺԸ։

[3] Նույն տեղում, գլ. ԺՁ, 21։

մտածում էի՝ դրանք արժանի են, որ դրի առնվեն ու պահվեն ինչ որ հիշատակարանում։ Բայց երբ նկատի ունեցա իմ մտքի տկարությունն ու ամբողջ տգիտությունը, հրաժարվեցի այն անելուց։ Այժմ, երբ խնդրել ես ինձ անելու այն, ես այնպիսի վախ եմ զգում, ինչպես լավ լողալ չիմացող մեկին հրամայում են գնալ ջրի խորքերը։ Բայց ես ապավինում եմ քո աղոթքներին, որոնք դու աստծուն ուղղում ես իմ փոխարեն։ Հավատացած եմ, որ նախախնամությամբ կփրկվեմ խեղդվելուց և դուրս կգամ այն ծովից, որի մեջ գցել ես ինձ, ուստի իմ լավագույն կարողությամբ կլողամ ծանծաղուտներում, որովհետև դրա խորքերը պեղել հնարավոր չէ։ Ո՞վ կարող է պատմել այն ամենը, որոնք աստված իր իմաստությամբ ուղարկել էր ջնջելու համար մեղքերը և պատժելու հանցանքները, քանզի աստվածային կառավարման ճշմարիտ բնությունը ընդունված է նույնիսկ հրեշտակներից, ինչպես այն կարող ենք իմանալ Ավետարանի Որոմնի առածից, երբ տանտիրոջ ծառաները ասացին. «Կամի՞ս զի երթիցուք քաղեսցուք զայն ի բաց»։ Եվ նա, որ գիտեր իրականությունը, ասաց նրանց. «Մի, գուցէ մինչ քաղիցէք զորոմնն, եւ զցորեանն ընդ նմին ի բաց խլիցէք»[4]։ Մեր իմացածի չափով կասենք այն, որ մեր բազում մեղքերի պատճառով էին հարուցվում հալածանքները, և եթե աստծու հովանավորությունը չընդգրկեր ամբողջ աշխարհն ու չպահպաներ այն տարրալուծումից, ապա բոլոր մարդկանց կյանքը կարող էր կործանվել, որովհետև ե՞րբ է որ մարդկանց նման դաժանությամբ այսպիսի տառապանքներ են պատահել, եթե ոչ միայն մեր ապրած ժամանակում։ Եվ քանի դրանց պատճառը չի վերացել, դրա համար էլ այն չի դադարի։ Գումարած նրան նաև այն, որ մենք տեսանք մեր սեփական աչքով և լսեցինք մեր սեփական ականջով, և այն, ինչ մենք ապրեցինք մեզ սարսափեցնում է։ Հեռվից և մոտիկից (լսվող) լուրերն ու թշվառությունները, տարբեր տեղերում պատահած սարսափելի երկրաշարժերը, քաղաքների կործանումները, սովերն ու ժանտախտները, պատերազմներն ու խռովությունները, բոլոր գավառների գերեվարությունն ու տարագրությունը, եկեղեցիների կործանումն ու այրումը, այս բոլորը իրենց հաճախակիությամբ ապշեցրել են քեզ և դու խնդրել ես գրել այդ բոլորի մասին, ցավի ու վշտի բառերով, որպեսզի դրանք իրենց ահավորությամբ

---

[4] «Մատթէոս», ԺԳ, 24։

տպչեցնեն և՛ ընթերցողներին, և՛ լսողներին։ Ես գիտեմ, դու այն ասել ես դեպի լավը ունեցած քո ցանկությունից, որպեսզի այդ բոլորը լսողներին, զղջման ու ապաշխարության առիթ հանդիսանան։

4. Բայց իմացիր, որ այլ է պղդու գրել, և այլ ճշմարտացի. որովհետև բնական պերճախոսությամբ օժտված մեկի համար. եթե ուզում է, կարող է պղդու ու վշտալի պատմություններ գրել։ Բայց ես խոսքի մեջ սովորական մարդ եմ և կգրեմ այն ամենը, որը մեզ մոտ ապրող բոլոր մարդիկ կարող են վկայել, որ դրանք ճշմարտացի են, և բոլոր նրանք, որոնք կկարդան և կլսեն, եթե ուզում են, կարող են ստուգել և (ապա) զղջալ։ Գուցե մեկը ասի թե ի՞նչ օգուտ նման պատմություն կարդալուց, երբ դրան չի զուգորդված խրատը։ Բայց այդպիսի մեկին կարող եմ ասել, որ մեզ պատահած այս դժբախտությունները բավական են, որպեսզի մեր հետնորդները զգուշանան և կարդալով կամ հիշելով իմանան, որ դրանք (դժբախտությունները) ուղարկվել էին մեզ, մեր մեղքերի պատճառով։ Եթե դրանք (դժբախտությունները) մեզ այն չսովորեցնեն, ապա դրանք մեզ համար անօգուտ կլինեն։ Բայց այդ կարելի չէ ասել, որովհետև դժբախտությունները սովորեցնում են մեզ, և երկնքի տակ ապրող բոլոր հավատացյալները վկայում են, որ այս ամենը պատահում է մեզ մեր մեղքերի պատճառով, և սուրբ Պողոսի խոսքերի համաձայն, որ ասում է. «Եւ եթէ դատիմք, ի Տեառնէ խրատիմք. զի մի ընդ աշխարհի դատապարտեսցուք»[5]: Որովհետև հալածված մարդկանց գլխավոր խնդիրը այն է, որ նրանք հրաժարվեն իրենց մեղքերից, որպեսզի աշխարհի դատաստանի օրը գուցե նրանց էլ լուսավորի։ Քանզի նրանք, որոնք մեղավորների համար հալածվում են և սակայն իրենք չեն մեղանչում, նրանց կրկնակի հատուցում կլինի։ Բայց գթասրտություն կլինի նույնիսկ նրանց համար, որոնք անարժան են աստծու բարության, շնորհին և համբերության, որ (աստված) իր անմռաց բանականությամբ կամենում է, որ այս աշխարհը գոյատևի մինչև ի կատարած աշխարհի։ Եվ Սուրբ Գրքի վկայություններով և մեզ պատահած իրադարձությունների պատճառով, այս ամենը այնքան հստակ է, որ մտածեցինք դրանք գրի առնել։

5. Որովհետև դեռ մեր վրա ծանրացած էին մորեխների պատճառով (եղած) սովն ու ժանտախտը, ուստի մենք կործանման եզրին էինք, սակայն չնայած, որ արժանի չէինք, աստված

[5] «Թուղթ առ Կորնթացիս», Ա, ԺԱ, 32։

գթաց մեզ, և մեզ հասած դժբախտություններից մի փոքր հանգիստ տվեց։ Եվ այս, ինչպես ասել եմ, իր բարության շնորհիվ էր։ Բայց նա ծանրացրեց մեր տառապանքները որոշ հանգստից հետո, և պատժեց մեզ ասորեստանցիների ձեռքով, որոնք բարկության գավազան են անվանված[6]։ Այժմ ես չեմ ցանկանում առարկել պարսիկների ազատ կամքին, երբ ասում եմ, որ աստված պատժեց մեզ նրանց միջոցով, և ոչ էլ աստծուց հետո կարող եմ որևէ մեղադրանք անել նրանց (պարսիկների) անզգամության համար, որովհետև նրանց մասին մտածելիս, գալիս եմ այն եզրակացության, որ նա (աստված) նրանց չի սլատժում մեր մեղքերի պատճառով։ Այժմ այս անզգամ ժողովրդի մեծ ուրախությունը երևում է հատկապես այն բանից, որ նրանք ոչ մի գթասրտություն չեն ցուցաբերում իրենց ձեռքը ընկածների նկատմամբ, որովհետև նրանք սովոր են մարդկանց պատճառած իրենց վնասի համար ուրախանալ և հրճվել, և այսպիսիներին նկատի ունենալով մարգարեն Բաբելոնի ամայացման առթիվ մարգարեանում է և Տիրոջ անունով նախատում ու ասում. «Ես բարկացեալ էի ի վերայ ժողովրդեան իմոյ, զի պղծեցին ղժառանդութիւն իմ. ես մատնեցի զնոսա ի ձեռս քո, եւ դու ոչ արարեր ի վերայ նոցա ողորմութիւն»[7]։ Մեզ ևս նրանք իրենց սովորության համաձայն անգութ հրճվանքով չարիք պատճառեցին։ Եվ թեպետ նրանց հալածանքի գավազանը չհասավ մեզ և նրանք չկարողացան տիրել մեր քաղաքին, որովհետև հնարավոր չէ Քրիստոսի խոստումը ջնջել, որը հավատացյալ Աբգար թագավորին խոստացավ ասելով. «Քո քաղաքը օրհնյալ լինի և ոչ մի թշնամի չտիրանա դրան»[8]։ Եվ, այսպիսով, այլ գրավված քաղաքների հավատացյալները կողոպտվեցին, գերեվարվեցին, կոտորվեցին, ջարդվեցին և դարձան փողոցների ցեխի նման, և բոլոր նրանք, որոնք սովորել էին տառապողների համար մղկտալ, ոչ քիչ չափով ճաշակեցին դառնության բաժակը։ Եվ բոլոր նրանք, որոնք հեռու էին այս (տեսարանից), իրենց հավատքի թուլության պատճառով, վախենում էին իրենց կյանքի համար, որովհետև մտածում էին, որ թշնամին կտիրի Եդեսիային

6 «Մարգարէութիւն Եսայեայ». Ժ. 5։

7 Նույն տեղում, ԽԷ. 6։

8 W. Cureton, Ancient Syr. Documents, p. 10.

Խոսքը այն զրույցի մասին է, ըստ որի Քրիստոսը օրհնել է Եդեսիա քաղաքը և ասել, որ ոչ մի թշնամի այդ քաղաքը ներս չի մտնելու։

նույնպես, ինչպես մյուս քաղաքներին։ Ահա սրանց մասին է, որ ուզում ենք գրել քեզ։

6. Իմաստուն Սողոմոնի ասածի համաձայն, որ «Առաջնորդությամբ մղի պատերազմ», և դու ցանկանում ես իմանալ թե ինչ պատճառով սկսվեց այն (պատերազմը). իմ նպատակն է հաղորդել քեզ պատճառների ծնունդի մասին, նույնիսկ այն պայմանով (վտանգով), որ կարող են մտածել, թե ես խոսում եմ այն բաների մասին, որոնք վաղուց կատարվել են։ Եվ ապա մի քիչ հետո կբացահայտեմ նույնիսկ թե ինչու այդ պատճառները ուժ էին պահանջում։ Եվ որովհետև այս պատերազմը մեր դեմ ծագեց մեր մեղքերի պատճառով, ուստի հիմքը դալիս է հայտնի որոշ փաստերից որոնց (մասին) կպատմեմ քեզ, որպեսզի դու կարողանաս հստակությամբ ծանոթանալ ամբողջ խնդրին, և հետևելով մի քանի հիմար մարդկանց, չմեղադրես ամենատեր և հավատացյալ Անաստաս կայսրին, քանզի նա պատերազմ հրահրողը չէր, այլ այն ծագել էր շատ ավելի վաղ ժամանակից, ինչպես կհասկանաս այն բաներից, որ սկսելու եմ պատմել քեզ։ Իրադարձությունները, որոնց մասին նպատակադրվել եմ գրել, այնքան պարզ են և՛ Սուրբ Գրքի վկայություններից[9], և՛ այն եղելություններից, որոնք մեզ մոտ տեղի ունեցան։

7. Հունաց 609 թ. (մ. թ. 297) հռոմները գրավեցին Մծբին քաղաքը և այն մնաց պարսիկների դերիշխանության ներքո 65 տարի։ Հուլիանոս կայսրի մահից հետո, որը տեղի ունեցավ 674 թ. (մ. թ. 363) հույների վրա իշխեց Հովիանոսը, որ ամեն ինչից վեր դասելով խաղաղությունը, համաձայնվեց Մծբին քաղաքը տալ պարսիկներին 120 տարով, որից հետո այն պետք է վերադարձվեր (նախկին) տերերին։ Այդ տարիները վերջանում էին հույների Զենոն կայսեր ժամանակ, բայց պարսիկները չէին ցանկանում քաղաքը վերադարձնել և այս խնդիրը վեճի առարկա դարձավ։

8. Հետո, հռոմների և պարսիկների միջև դաշինք գոյություն ուներ, որ եթե մեկը մյուսի կարիքը զգար որևէ ժողովրդի դեմ պատերազմի ժամանակ, պետք է մյուս [կողմը] նրան տար 300 մարդ իրենց զենքերով ու ձիերով և կամ յուրաքանչյուրի [զինվորի] փոխարեն տար 300 ստատեր[10], պահանջողի համաձայնությամբ, եթե նա օգնության կարիք ունի։ Այժմ ամենատեր հռոմ-

[9] «Առակք Սողոմոնի», ԻԴ, 6։
[10] Ստատերը փողի չափ է (ոսկի փող)։

ները, աստծու օգնությամբ կարիքը չունեին երբեք պարսիկների օգնությանը, քանզի հավատացյալ կայսրերն այն օրվանից մինչև այժմ իշխել են և երկնքի օգնությամբ է նրանց իշխանությունը հաստատվել։ Պարսիկ արքաները դեսպաններ էին ուղարկում և փող էին ստանում իրենց կարիքների համար, բայց այն ոչ որպես հարկ էին ստանում, ինչպես շատերը ենթադրում են։

9. Նույնիսկ մեր օրերում պարսիկների արքա Պերոզը քուշանների կամ հոների դեմ վարած պատերազմի պատճառով, հռոմներից փող էր ստացել, ոչ թե որպես հարկ, այլ որպես նախանձախնդրություն, ասելով որ իբր «ես կռվում եմ ձեզ (հռոմներիդ) համար, և չեմ թողնում, որ նրանք (այսինքն քուշանները) անցնեն ձեր սահմանը»։ Նրա այս խոսքերը ճշմարիտ էին հնչում, քանի որ հոները 707 թ. (396 մթ.) Մեծն Թեոդոսիոսի որդիներ՝ Հոնորիոս և Արկադիոս կայսրերի ժամանակ, ամայացրին հռոմների հողերը և գերեվարեցին մարդկանց, և ամբողջ Ասորիքը անցավ նրանց ձեռքը, Ռուփինոս հյուպարքոսի դավաճանության և Ադդա ստրատելատի թուլության պատճառով։

10. Հռոմներից ստացած փողի օգնությամբ Պերոզը նվաճեց հոներին և նրանց հողերից շատ տեղեր վերցնելով, կցեց իր պետությանը, սակայն ի վերջո նրանց ձեռքը գերի ընկավ։ Երբ հռոմների Զենոն կայսրը լսեց այդ, իր սեփական փողից ուղարկեց, նրան ազատեց և հաշտեցրեց նրանց (հոների) հետ։ Պերոզը հոների հետ դաշինք կնքեց, որ նա այլևս սահմանը չի անցնի նրանց (հոների) հետ պատերազմելու համար։ Սակայն նա դրժեց խոստումը և վերադարձավ պատերազմելու Սեդեկիայի[11] նման, և ճիշտ նրա նման էլ, ընկավ իր թշնամիների ձեռքը և բանակը ջարդվեց, ցրվեց և ինքն էլ կենդանի (գերի) ընկավ։ Իր կյանքի փրկության համար նա հպարտությամբ խոստացավ, որ 30 ջորու բեռ զուզե[12] կտա։ Եվ նա մարդ ուղարկեց իր գերիշխանության տակ եղող երկրները, բայց այնտեղից հազիվ կարողացան 20 բեռ հավաքել, որովհետև նախորդների օրոք թագավորական գանձարանը, նախապես կատարած պատերազմների պատճառով, դատարկվել էր։ Եվ մյուս տաս բեռների փոխարեն իր Կավատ որդուն գրավ և պատանդ թողեց մինչև որ նրանց կուղարկեր մնացածը, և նա երկրորդ անգամ նրանց հետ պայմանագիր կնքեց, որ այլևս չի պատերազմելու։

---

[11] «Մարգարէութիւն Երեմեայ», ԾԲ, 3։

[12] Զուզե, արծաթ փող, դրախմի կամ դիրհամ (դրամ)։

11. Երբ նա վերադարձավ իր թագավորությունը, ամբողջ երկրում գլխահարկ նշանակեց և ուղարկեց 10 բեռ վուղեն և ազատեց որդուն։ Նա նորից բանակ հավաքեց և գնաց պատերազմելու, և իսկապես կատարվեց մարգարեի խոսքը, որն ասում է. «Տեսի ղամպարիշտն վերացեալ բարձրացեալ որպէս ղմայրս Լիբանանու։ Անցի՝ եւ ահա ոչ էր, խնդրեցի՝ եւ ոչ գտաւ տեղի նորա»[13]։ Քանզի երբ ճակատամարտը տեղի ունեցավ և երկու կողմից զորքերը խառնվեցին իրար, իր ամբողջ բանակը ջարդվեց և նրա դիակն էլ փնտրեցին ու չգտան, և մինչև այժմ էլ հայտնի չէ, թե ի՞նչ պատահեց նրան. արդյո՞ք նա մնաց դիակների տակ թաղված կամ ինքն իրեն ծովը գցեց, թե թաքնվեց ինչ որ տեղ գետնի տակ՝ քարայրում և սովից մեռավ և կամ թաքնվեց անտառում և հոշոտվեց վայրի գազաններից։

12. Պերոզի թագավորության օրերին հոռոմների կայսրությունը նույնպես խառը վիճակում էր, քանզի պալատականներն ատում էին Զենոն կայսրին, որովհետև նա ծագումով Իսավրացի էր, և Բազիլիկոսը ապստամբվեց նրա դեմ ու նրա փոխարեն կայսր դարձավ։ Սակայն հետո Զենոնը հզորացավ և վերստին բազմեց գահի վրա։ Եվ որովհետև իր նկատմամբ շատերի ատելությունն էր զգում, իր համար անմերձենալի ամրոց պատրաստեց հայրենիքում, որպեսզի եթե որևէ չարիք պատահի, այն որպես ապաստարան ծառայի։ Այս գործում իր վստահելին էր Անտիոքի ստրատելատ՝ Իլլուս անունով մեկը, որը նույնպես Իսավրացի էր։ Որովհետև Զենոնը իր բոլոր հայրենակիցներին պատվի և իշխանության պաշտոններ էր պարգևում, այդ պատճառով էլ հույները նրան ատում էին։

13. Երբ ամրոցը ամբողջությամբ լցվել էր անհրաժեշտ իրերով և անչափ քանակությամբ փող էր պահ տրվել այնտեղ Իլլուսի կողմից, նա (Իլլուսը) գնաց մայրաքաղաք (Կոստանդնուպոլիս) Զենոնին հաղորդելու, որ կատարել է նրա ցանկությունը։ Բայց Զենոնը գիտեր, որ նա դավաճան է և ձգտում է իշխանության, ուստի իր զինվորներից մեկին հրամայեց, որ սպանի նրան։ Դրանից հետո այն մարդը, որին հանձնարարվել էր, շատ օրեր առիթ էր որոնում, որ նրան գաղտնի սպանի։ Ի վերջո հանդիպեց Իլլուսին պալատի ներսում, և երբ հանեց սուրը ու բարձրացրեց,

---

[13] «Գիրք Սաղմոսաց», ԼԶ (ԼԷ) 35, 36։ Այս հատվածը հայկականից տարբերվում է, բնագրում «որպէս զմայրս Լիբանանու» փոխարեն գրված է «անտառի ծառերի նման»։

որ սպանի նրան, սակայն հանկարծ Իլլուսի ուղեկից զինվորներից մեկը, խփեց ձեռքին դանակով և սուրը նրա ձեռքից վայր ընկավ, կտրելով միայն Իլլուսի ականջը։ Զենոնը, որպեսզի Իլլուսի նկատմամբ իր ունեցած նենգությունը չբացվի, հրամայեց անմիջապես առանց հարցաքննության կտրել զինվորի գլուխը։ Հատկապես վերջին պարագան ստիպեց Իլլուսին, ենթադրել, որ Զենոնն էր այն հրամայել։ Նա վեր կացավ և գնաց Անտիոք որոշելով, որ հարմար առիթը ներկայանալիս վրեժխնդիր լինի։

14. Զենոնը վախենալով Իլլուսից, որովհետև նա գիտեր նրա չար դիտավորությունը, նրա մոտ՝ Անտիոք ուղարկեց մի քանի հայտնի մարդկանց, որ նրան հրավիրեն իր մոտ, որպես թե ինքը (Զենոնը) ցանկանում էր արդարանալ և ձևացնում էր, որ ինքը չի ուզել նրան սպանել։ Համենայն դեպս չկարողացավ փափկացնել Իլլուսի սիրտը, որովհետև նա (Իլլուսը) ատում էր նրան և չէր ցանկանում հրամանին ենթարկվելով գնալ նրա մոտ։ Ի վերջո Զենոնը նրա մոտ ուղարկեց մի այլ ստրատելատի, որի անունը Լեոնտիոս էր, և որն իր ձեռքի տակ ուներ բանակներ, որպեսզի նրան ուժով բերի, և եթե (Իլլուսը) դիմադրեր, ապա պետք է սպաներ նրան։ Երբ այս մարդը Անտիոք հասավ, կաշառվեց Իլլուսի ոսկիներից և հայտնեց նրան սպանելու համար իր ստացած հրամանի մասին։ Եվ երբ Իլլուսը տեսավ, որ նա ոչինչ չի թաքցրել իրենից, ինքը ևս ցույց տվեց նրան մեծ քանակությամբ ոսկին, որ ուներ իր ձեռքում, և որի համար Զենոնը ուզում էր սպանել իրեն։ Համոզեց Լեոնտիոսին, որ միանա իրեն և ապստամբվի, միևնույն ժամանակ մատնանշեց այն ատելությունը, որ հույները ունեին Զենոնի նկատմամբ։ Եվ երբ սա համաձայնվեց, Իլլուսը կարողացավ նրան հայտնել իր դիտավորությունների մասին և (ասել), որ ինքը մենակ չի կարող ապստամբվել, ոչ էլ կարող է կայսր դառնալ, քանի որ հույները իրեն ևս ատում էին իր ծագման և դաժանության պատճառով։

15. Լեոնտիոսը հետո անվանապես կայսր դարձավ Անտիոքում, մինչ փաստորեն Իլլուսն էր վարում գործերը։ Ինչպես ոմանք ասում են, նա ծրագրում էր սպանել Լեոնտիոսին, եթե հաղթեին Զենոնին։ Նրանց հետևում էր Պամպրեպիոս անունով մի վատահամբավ խաբեբա, որն իր ասածներով խառնեց գործը և փոխեց ծրագիրը։ Որպեսզի իրենց իշխանությունն ամրացնէն, նրանք դեսպաններ ուղարկեցին Պարսկաստան մեծ քանակությամբ փողով և ուզեցին բարեկամության դաշինք կնքել, որպեսզի անհրաժեշտության դեպքում (պարսիկները) բանակով օգնեին իրենց։ Եվ

երբ Զենոնը լսեց, թե ինչ է կատարվում Անտիոքում, նա մեծ բանակով այնտեղ ուղարկեց իր ստրատելատներից մեկին՝ Հով-հան անունով[14]։

16. Երբ Իլլուսն ու Լեոնտիոսը լսեցին իրենց դեմ արշավող մեծ բանակի մասին, սրտները ղող ընկավ, իսկ Անտիոքի ժողո-վուրդը նույնպես վախենում էր, որ չի կարողանա պաշարումը տանել. նրանք աղմկեցին ու պահանջեցին, որ թշնամին հեռանա քաղաքից, և եթե ճակատամարտելու են, հանդիպեն (այլ տե-ղում)։ Այս պարագան Իլլուսի կողմնակիցներին ավելի վախեցրեց և նրանք ծրագրեցին մեկնել Անտիոքից և անցնել Եփրատ գետը, դալ Արևելք։ Եվ նրանք իրենց կողմնակիցներից Մատրոնիոս անունով մեկին ուղարկեցին 500 ձիավորներով, որպեսզի սա իրենց իշխանությունը տարածի Եդեսիայի վրա, սակայն եդեսա-ցիները դեմ դուրս եկան նրան, փակեցին քաղաքի դռները և պատերազմական սովորության համաձայն, հսկողություն նշանա-կեցին պարսպի վրա և թույլ չտվեցին նրանց մտնել (քաղաքը)։

17. Երբ Իլլուսի կողմնակիցները լսեցին այս, ստիպված եղան Հովհաննի հետ ընդունել ճակատամարտը, բայց նրանք դրա համար այնքան ուժեղ չէին, ուստի երբ Հովհանը հարձակվեց նրանց վրա և քաջաբար ջարդեց նրանց հետ եղած զորքերի մեծ մասին, մնացածները ցրվեցին, յուրաքանչյուրն իր քաղաքը։ Իլլուսի կողմնակիցները չդիմացան նրա հարվածին և հավաքելով իրենց հետ եղածներին, փախան անմերձենալի ու մթերքով հա-րուստ այն ամրոցը, որի մասին ես ձեզ ասել եմ նախապես[15]։ Հովհանը հետապնդեց, բայց չկարողացավ բռնել նրանց, ուստի պաշարեց ամրոցն ու սկսեց հսկողությունը։ Նրանք հույսը դնելով ամրոցի անմերձենալիության վրա, թույլ տվեցին, որ իրենց հետ եղած զորքերը վերադառնան և պահեցին միայն ընտրյալներին ու քաջերին։ Հովհանն իր բարկությունը թափեց ամրոցից դուրս եղածների վրա, բայց Իլլուսին վնասել չկարողացավ՝ դիրքի բնական ամրության շնորհիվ, որը համարյա անանցանելի էր դարձել մարդկանց կատարած աշխատանքով։ Ճանապարհը այն-պիսին էր, որ միանգամից երկու մարդ չէր կարող բարձրանալ, որովհետև այն շատ նեղ էր։ Համենայն դեպս, Հովհանի երկար ժամանակ (կազմակերպած) դավերն արդյունք տվեցին և իլլու-սականներն իրենց մարդկանց ձեռքով մատնվեցին ու ձերբակալ-

---

[14] Հովհան Սկյուտացին։
[15] Հատված 12։

վեցին քնած վիճակում։ Զենոնի հրամանով երկուսն էլ (Իլլուսն ու Լեոնտիոսը), ինչպես նաև մատնիչները սպանվեցին, իսկ նրանց հետ եղածների ձեռքերը կտրեցին։ Այսպիսին էին Պերոզի թագավորության օրոք Հռոմների կայսրության մեջ եղած դժվարությունները։

18. Ինչպես վերևում նշել եմ, Պերոզի հանկարծակի կորստից հետո[16], իր եղբայր Վաղարշը նրա փոխարեն թագավորեց պարսիկների վրա։ Նա խոնարհ և խաղաղասեր մարդ էր։ Նա պարսկական գանձարանում ոչինչ չգտավ, որովհետև երկիրն ամայացել էր հոների արշավանքներից։ Համենայն դեպս քո իմաստությանը (նկատի ունի Սարգիս քահանային) հայտնի է, թե թագավորները պատերազմների ժամանակ ինչպիսի ծախսերի ու վնասների տակ են ընկել, նույնիսկ երբ նրանք հաղթել են, և մանավանդ ավելին են (ծախսել) երբ պարտվել են։ Բայց նրանք հռոմներից ոչ մի օգնություն չստացան, ինչպես իր եղբոր ժամանակ էր։ Նա դեսպաններ ուղարկեց Զենոնի մոտ, որպեսզի վերջինս նրան փող ուղարկեր։ Բայց որովհետև սա զբաղված էր Իլլուսի և Լեոնտիոսի հետ պատերազմելով և մանավանդ հիշելով, որ ապստամբության սկզբում նրանց (Իլլուսի և Լեոնտիոսի) ուղարկած փողը մնացել է պարսիկներին, ուստի ոչինչ չուղարկեց, և հայտնեց որ «բավական են քեզ այն հարկերը, որ ստանում ես Մծբինից, որովհետև դրանք վաղուց պատկանում են հռոմներին»։

19. Եվ որովհետև Վաղարշը փող չուներ իր բանակներին տալու, ուստի ընկավ նրանց աչքից։ Մոգերն էլ էին ատում նրան, որովհետև նա փորձում էր իրենց օրենքները փոխել. ուզում էր իրենց քաղաքներում լողանալու համար բաղնիքներ կառուցել, և երբ նրանք (մոգերը) տեսան, որ նա իր զորքի կողմից հարգված չի, նրան բռնեցին, կուրացրին, և փոխարեն բազմեցրին (գահին) նրա Պերոզ եղբոր որդի՝ Կավատին, որի անունը վերևում նշել ենք, և որը պատանդ էր մնացել հոների մոտ, և քանի որ (հռոմները) փող չտվեցին, նա էլ պատերազմ սկսեց հռոմների դեմ։ Նա դեսպանների հետ կայսրին որպես նվեր ուղարկեց մի մեծ փիղ, որպեսզի նա էլ (կայսրը) իրեն փող ուղարկի։ Բայց մինչև դեսպանները Ասորիքի Անտիոք քաղաքը կհասնեին, Զենոնը մահացավ և նրանից հետո փոխարենը կայսր դարձավ Անաստասը։ Եվ երբ պարսիկ դեսպանն իր տիրոջ՝ Կավատին հայտնեց հռոմների կառավարության մեջ տեղի ունեցած փոփոխության մասին,

[16] Հատված 11։

նա (Կավատը) նրան հաղորդեց, որ շտապ գնա և պահանջի փողը ըստ սովորության, ապա թե ոչ թող «պատերազմ ընդունի»։

20. Եվ այսպես փոխանակ, ինչպես պետքն էր խաղաղության մասին խոսելու, և կամ վերջինիս, աստծու կողմից նրան շնորհված իշխանության գլուխ անցնելու կապակցությամբ ողջունելու, նրա (Կավատի) սպառնալից խոսքերը ջղայնացրին Անաստաս կայսրին։ Եվ երբ նա լսեց նրա հպարտ սպառնալիքները և իմացավ, որ նա (Կավատը) վերականգնել է մոգական պիղծ զրադաշտական կրոնը, և սովորեցնում էր, որ կանայք պետք է հասարակաց լինեն և յուրաքանչյուրը պետք է ապրի ում հետ ուզում է, և ապա այն, որ նա իր իշխանության տակ գտնվող հայերին վնասել է այն պատճառով, որ նրանք (հայերը) չէին ուզում կրակը պաշտել, և (այս բոլորի համար) նա անարգեց նրան (Կավատին) և փող չուղարկեց, ասելով, որ «ինչպես Զենոնը, որն ինձանից առաջ թագավորեց և փող չուղարկեց, այնպես էլ ես չեմ ուղարկի, մինչև որ Մծբինը ինձ չվերադարձնի։ Ես էլ զբաղված եմ հեթանոսների դեմ պատերազմելով, որոնք կոչվում են հեպայիդցիներ[17] և բլեմյացիներ[18] և այլ շատ ուրիշների դեմ։ Ես չեմ թողնի հունական բանակը և չեմ կերակրի քոնը»։

21. Երբ հայերը, որոնք Կավատի գերիշխանության ներքո էին, լսեցին, որ նա (Կավատը) հոռոմներից խաղաղասիրական պատասխան չի ստացել, քաջալերվեցին և միավորվելով քանդեցին այն ատրուշանները, որոնք պարսիկները կառուցել էին իրենց երկրում և կոտորեցին իրենց մոտ եղած մոգերին։ Կավատը նրանց դեմ ուղարկեց մի մարզպանի՝ իր բանակով, որպեսզի նա պատժի և կրակապաշտ դարձնի նրանց, բայց հայերը կռվեցին նրա դեմ և ջախջախեցին նրան ու նրա զորքը, և ապա դեսպաններ ուղարկեցին կայսրին և հայտնեցին, որ ուզում են նրա գերիշխանությանը ենթարկվել։ Սակայն նա չցանկացավ ընդունել նրանց, որպեսզի պարսիկները չմտածեն, որ ինքն է հրահրում հայերին պատերազմելու պարսիկների դեմ։

Եվ եթե նրան (կայսրին) մեղադրում են նրա համար, որ նա փողը չտվեց, ապա նրանք թող մեղադրեն նաև նրան, որն ուժով պահանջում էր այն, ինչ որ իրեն չէր հասնում։ Եթե նա (Կավատը) խաղաղությամբ ու հոժարամտությամբ խնդրեր այն, ապա այդ (փողը) նրան ուղարկված կլիներ, սակայն նա խստասրտությամբ, ինչպես փարավոնը, սպառնում էր պատերազմով։ Բայց մենք

[17] Ասորերեն բնագրում այս ցեղի անունը հավանաբար աղավաղված է։
[18] Աֆրիկյան ցեղեր։

հույս ունենք աստծու արդարադատության վրա, որ նա (աստված) նրան ավելի մեծ պատժի կարժանացնի, որովհետև նա ցանկանում էր եղծել բնության օրենքը և ջնջել աստծու վախը (հավատը)։

22. Մի քիչ ժամանակ անց կուդիշացիները[19], որոնք Կավասի գերիշխանության ներքո էին, ապստամբվեցին նրա դեմ և փորձեցին մտնել Մծբին և այնտեղ իրենցից մեկին թագավոր նշանակելով, նրանք երկար ժամանակ կռվեցին։ Տիմուրացիները, որոնք ապրում են Պարսկաստանում, երբ տեսան, որ իրենք ոչինչ չեն ստանում, նրանք նույնպես ապստամբվեցին, հույսը դնելով իրենց ապրած բարձր լեռների վրա. նրանք իջնում էին (լեռներից) կողոպտում ու թալանում շրջակա գյուղերի (բնակիչներին), տեղացի եկվոր վաճառականներին և նորից բարձրանում։ Իր թագավորության մեջ եղած ազնվականները նույնպես ատում էին (Կավատին), որովհետև նա թույլ էր տալիս նրանց կանանց դավաճանել (ամուսիններին)։ Արաբները նույնպես, որոնք իր գերիշխանության ներքո էին, երբ տեսան պետության ներսում ստեղծված անկարգությունը, իրենց ուժի ներածին չափ. սկսեցին ավազակային հարձակումները։

23. Այն ժամանակ մի այլ խռովություն տեղի ունեցավ հունաց երկրում. իսավրացիները[20] Զենոնի մահից հետո ապրստամբվեցին Անաստաս կայսեր դեմ և ուզում էին մի այլ կայսր նշանակել, որն իրենց համար ցանկալի էր։ Երբ այդ մասին իմացավ Կավատը, օգտագործեց հարմար ժամանակը և դեսպաններ ուղարկեց հոռոմների աշխարհը, ենթադրելով, որ նրանք կվախենան և իրեն փող կուղարկեն, քանի որ իսավրացիները ապստամբվել են նրանց դեմ։ Բայց Անաստաս կայսրը պատասխանեց ասելով, «եթե դու այն, որպես պարտք ես ուզում, ես կուղարկեմ քեզ, բայց որպես պարտավորություն ոչ, որովհետև ես չեմ ղրկի հունական բանակներին, որոնք զբաղված են իսավրացիների հետ պատերազմելով, որպեսզի օգնեմ պարսիկներին»։ Այս խոսքերով Կավատը հանգստացավ, թեև իր ուզածը չստացվեց։ Իսավրացիները պարտվեցին, խորտակվեցին, կոտորվեցին և նրանց բոլոր քաղաքներն ամայացվեցին ու այրվեցին։ Պարսիկ ազնվականները որոշեցին գաղտնի սպանել Կավատին իր անբարոյական սկզբունքների ու օրենքների եղծման պատճառով, և երբ

---

[19] Սրանք ապրում էին Սինջարի և Դարայի մոտակայքում։

[20] Փոքր Ասիայում Տավրոսի շրջաններում ապրող ժողովուրդ։ Նրանք իսավրացի են կոչվել իրենց գլխավոր քաղաք Իսավրայի անունով։

նա այդ իմացավ, լքեց թագավորությունը ու փախավ հոների երկիրը, այն թագավորի մոտ, որի պալատում նա որպես պատանդ մեծացել էր։

24. Նրա եղբայր Ջամասպը եղբոր փոխարեն իշխեց պարսիկների վրա. Կավատը հոներից կին առավ իր քրոջ աղջկան. քույրն այն պատերազմին էր գերի ընկել, երբ հայրը սպանվեց, և որովհետև ինքը թագավորի դուստրն էր, ուստի դարձավ հոների թագավորի կինը և նրանից ծնվեց մի աղջիկ։ Երբ Կավատը փախավ այնտեղ, քույրը իր աղջկան որպես կին տվեց նրան։ Թագավորի փեսա դառնալով, նա համարձակություն ստացավ և սկսեց ամեն օր լաց լինել, խնդրել նրան (թագավորին), որ սա օգնի իրեն զորքով, որպեսզի կարողանա գնալ ու սպանել ազնվականներին և նորից բազմել իր գահին։ Աներն իրեն տվեց մի փոքր բանակ նրա խնդրանքի համաձայն։ Երբ նա հասավ պարսիկների աշխարհը, եղբայրը լսեց այդ մասին և փախավ նրանից, իսկ սա իրագործեց իր ցանկությունը և սպանեց ազնըվականներին։ Տիմուրացիներին նա (Կավատը) լուր ուղարկեց և սպառնաց ասելով, եթե նրանք կամավոր չհանձնվեն, ապա նա պատերազմով կնվաճի նրանց, իսկ եթե նրանք միանան իր բանակին և իրեն հետ մտնեն հոռոմների երկիրը, ապա նա այն ժամանակ ստացված ավարից նրանց էլ բաժին կհանի։ Նրանք վախենալով Մծբինում հավաքված զորքերից, համաձայնվեցին ու ենթարկվեցին նրան։ Արաբներն երբ իմացան, որ նա պատերազմելու է հոռոմների դեմ, մեծ ուրախությամբ հավաքվեցին իր մոտ։ Հայերը, մյուս կողմից վախենալով, որ նա կարող է վրեժխնդիր լինել կործանված ատրուշանների համար, չուզեցին ենթարկվել, սակայն Կավատը բանակ հավաքեց և պատերազմեց նրանց (հայերի) դեմ։ Չնայած նա շատ ավելի ուժեղ էր, քան նրանք (հայերը), սակայն չնվաճեց նրանց, այլ խոստացավ, որ չի ստիպի կրակապաշտությունն ընդունել, եթե նրանք իրեն օգնեն հոռոմների դեմ պատերազմում։ Նրանք վախից ակամա համաձայնվեցին։ Ինչ որ արեց Կավատը հոռոմների սահմանն անցնելուց հետո ես կպատմեմ ժամանակին, իսկ այժմ ինչպես ինձ խնդրել ես (Նկատի ունի պատվիրատուին) կգրեմ հրաշքների ու հալածանքների մասին, որոնք հաջորդաբար տեղի ունեցան, ապա (կգրեմ) մորեխների, ժանտախտի, թանկության մասին հերթականությամբ, և որպեսզի շփոթություն չառաջանա, առանձին առանձին կնշեմ տարեթվերը և յուրաքանչյուրի տակ կգրեմ, թե

այն ժամանակ ինչ էր պատահել, իսկ թող աստծու օգնությունն ու քո՝ Նրա ընտրյալի աղոթքները ինձ օգնական լինեն։

25. Ալեքսանդրի 806 թ. (495 մ. թ.)։ Քեզ բավարար չափով հայտնեցի, թե ինչ պատճառով և ինչպես սկսվեց պատերազմը ով մեր հայր, ճիշտ է, ես քեզ համար համառոտ գրեցի այս պատմությունները, խուսափելու համար երկարաբանությունից։ Դրանց մի մասը ես գտա հին գրքերում, մի այլ մասը իմացել եմ մարդկանցից, որոնք դեսպան են եղել երկու միապետների մոտ, մի մասն էլ (իմացել եմ) այն անձնավորություններից, որոնք ականատես են եղել այս իրադարձություններին։ Այժմ ես ուզում եմ քեզ հայտնել այն մասին, թե ինչ պատահեց մեզ մոտ, քանի որ այդ տարվանից էր, որ սկսվեցին մեր օրերի ահավոր պատիժներն ու նշանները։

26. Այս ժամանակ մեր մարմինները կատարյալ առողջ էին, սակայն մեր հոգիների տկարություններն ու հիվանդությունները շատ։ Բայց աստված, որ ուրախանում է, երբ մեղավորները զղջում են իրենց մեղքերի համար և (ուզում է, որ) ապրեն, ուստի մեր մարմինները մեզ համար հայելի դարձրեց, և ամբողջությամբ վերքերով լցրեց, որպեսզի արտաքինից մեզ ցույց տա, թե ինչի է նման մեր ներքինը, որպեսզի մեր մարմինների վերքերը մեզ հասկացնեն, թե ինչպիսին են մեր հոգիների վերքերը, և որովհետև բոլոր մարդիկ էլ մեղանչել էին, ուստի բոլորն էլ ստացան նույն պատիժը, բոլորի մարմիններին դուրս եկան ուռուցքներ և այտուցվեցին, և բոլորն էլ սարսափելի տեսք ունեին. կային այնպիսիները, որոնց դեմքերն էին այտուցված, ուրիշները՝ թարախակալվել էին, ոմանց՝ ամբողջ մարմինը լցված էր վերքերով ու պալարներով, ափերից մինչև ձեռքերը, ոտներից մինչև ներբաններըր, ոմանց մոտ էլ՝ խորը վերքեր էին բացվել մարմնի զանազան անդամների վրա։

Համենայն դեպս, աստծու բարությունը օգնեց, որը նրանց հովանավորում էր, այս հիվանդությունները մարդկանց վրա երկար չմնացին և մարմնի վրա էլ պակասություն, վնասվածք կամ հետք (չթողեցին) և վերքերը լավանալիս փակվեցին, և մարմնի անդամներն իրենց դերը կատարեցին (գործեցին)։ Այս ժամանակ Եդեսիայում 30 մոտի[21] ցորենը վաճառվում էր մեկ դինարի և 50 մոտի դարին՝ մեկ դինարի։

27. 807 թ. (մ. թ. 496 թ.) Նույն այս տարվա մայիս ամսի

[21] Մոտին հռոմեական 40 լիտր է։

17-ին երկնքից առատորեն բարիքներ ներքև ուղարկվեցին բոլոր մարդկանց համար, և՛ աստծու օրհնությամբ հունձքը առատ էր և՛ (եղանակը) անձրևային, և՛ երկրային մրգերը աճում էին ժամանակին։ (Եդեսիայի) բնակիչների մեծ մասը կորցրեց կյանքի փրկության հույսը բացահայտ մեղանչելով։ Մխրճվելով բոլոր տեսակի զեղխ հաճույքների մեջ, նրանք նույնիսկ փառք չտվեցին աստծուն պարգևների համար և, մոռանալով (իրենց պարտականությունը), ապականվեցին՝ մեղքերի հիվանդությամբ։

Եվ երբ նրանք չբավարարվեցին անհայտ և հայտնի մեղքերով, որոնց անձնատուր էին եղել, ներկայացավ այն նշանավոր օրն, այսինքն այն ուրբաթ երեկոն մինչև շաբաթ առավոտ, երբ պարողը [դերասան] որի անունը Տրիմերիուս էր, պարում էր։ Նրանք անհամար լապտերներ վառեցին ի պատիվ տոնին, մի սովորություն, որը նախապես անծանոթ էր այս քաղաքին։ Թատրոնի դարպասից մինչև Գրոտների[22] դարպասը՝ գետի երկու ափերը լուսավորեցին լապտերներով, որոնք ամրացված էին սյունագավիթներից[23], Անտիֆորոսից[24], վերին փողոցներից և շատ այլ տեղերից։ Այս անզգամության պատճառով աստված նրանց հրաշալի նշան ցույց տվեց, որպեսզի նրանց կշտամբի։ Որովհետև խաչի նշանը, որը գտնվում էր օրհնյալ Կոստանդին կայսեր արձանի ձեռքում, հեռացավ նրա ձեռքից մի կանգուն առաջ, և այդպես մնաց ուրբաթից մինչև շաբաթ երեկո։ Կիրակի օրը նշանը (ձեռքը) ինքնիրեն մոտեցավ իր տեղը, և արձանը այն վերցրեց իր ձեռքը, այնպես, ինչպես առաջ էր։ Այս նշանով հայտնի դարձավ այն, որ կատարվածը աստուծո կամեցողությունից շատ հեռու է գտնվում։

28. 808 թ. (մ. թ. 497 թ.) բայց երկնքից (եկած) այս նշանը բավական չէր մեզ համար, որպեսզի հետ կանգնեցներ մեզ մեր մեղքերից, ընդհակառակը մենք դարձանք ավելի ժպիրհ ու առավել հեշտությամբ հանձնվեցինք մեղքերին։ Թույլերը զրպարտում էին իրենց հարևաններին, իսկ ուժեղները լի էին կեղծավորությամբ։ Նախանձն ու նենգությունը իշխում էին մեզ բոլորիս, իսկ

---

[22] Կամ «գերեզմանատան դարպաս», որը գտնվում էր քաղաքի արևմուտքում, Տե՛ս Sachau, Reise in Syrien und Mesopotamien, 1883, p. 200.

[23] Ասորերենը «ստոա» հունարենից է։

[24] Սա գտնվում է քաղաքի հարավ-արևմուտքում, այնտեղ կար մի բլրակ, որտեղ և գտնվում էր հին քաղաքը։ Աբգար IX ապրում էր այստեղ։ Տե՛ս Chronicon Edessenum, Corpus scriptorum christianorum orientalium, t. 4, p. 12

շնությունն ու պոռնկությունը բազմացել էին։ Մարդկանց մեջ վերքերը ավելացան և քաղաքում ու գյուղերում շատերի աչքերը փակվեցին։ Ըստ պատշաճի էր մար Կյուրոս եպիսկոպոսի նախանձախնդրությունը, երբ նա հորդորեց քաղաքացիներին ի պատիվ հաղորդության սկիհների, պատրաստել արծաթից մի արկղ, որպեսզի հնարավոր լինի դրանք տեղավորել արկղի մեջ, և պետք եղած դեպքում սրբերից մեկի հիշատակին նվիրված պատարագի համար, այն տեղափոխել։ Յուրաքանչյուրը տվեց ըստ իր կարողության, սակայն Ավրելիայի ամուսին Եվտիկիանոսը, առաջինը պատրաստակամություն ցուցաբերեց և իր ունեցվածքից 100 դինար տվեց։

29. (Պաշտոնից) հանվեց հեգեմոն[25] Անաստասիոսը և նրա փոխարեն, տարվա վերջին, եկավ Ալեքսանդրը։ Նա փողոցները մաքրեց գարշահոտությունից և վերացրեց կրպակները, որոնք արհեստավորները կառուցել էին սյունազավիթներում ու փողոցներում։ Նա նաև մի արկղ դրեց իր պալատի դիմաց և կափարիչի վրա անցք բացեց ու այսպես գրեց, թե ով ուզում է ինչ որ բան հայտնել իրեն և այն չի կարող բացահայտ կատարել, ուստի նա կարող է այդ մասին գրել և առանց վախի նետել արկղի մեջ։ Եվ այս ձևով նա շատ բան իմացավ, որոնց մասին շատերը գրել ու նետել էին արկղի մեջ։ Ամեն ուրբաթ կանոնավոր ձևով, նա նստում էր սուրբ Հովհաննես Մկրտչի և սուրբ Ադդա առաքյալի վկայարաններում և դատում էր առանց փողի։ (Այսպիսով), անիրավվածները անիրավների, կողոպտվածները կողոպտողների դեմ համարձակություն ստացան և եկան բողոքեցին, և նա (Ալեքսանդրը) դատեց նրանց նույնիսկ այնպիսի հարցերով, որոնք 50 տարվա հնություն ունեին և մոռացության էին տրված, այդ հարցերը ներկայացվեցին իրեն, և նա լուծեց։ Նա կառուցեց Ճեմասրահ, որը գտնվում էր Գրոտների դարպասի մոտ։ Նա սկսեց նույնպես կառուցել հասարակաց բաղնիք, որը ծրագրված էր տարիներ առաջ՝ հացահատիկի շտեմարանի մոտ։ Նա հրամայեց, որ շաբաթ երեկոյից (կիրակի) արհեստավորները իրենց խանութներից հինգ վառված լապտերներով խաչեր կախեն։

30. 809 թ. (մ. թ. 498 թ.) մինչ այս իրադարձությունները տեղի էին ունենում, նորից մոտեցան այդ (հեթանոսական) տոնի օրերը, որի ժամանակ երգվում էին հեթանոսական առասպելներ, իսկ (Եդեսիայի) քաղաքացիները, նույնիսկ սովորականից ավելի

---

[25] Ասորերեն „Badpatan" — Բադպատան։

անհամբեր էին։ 7 օր բազմությունը կտավից շորեր հագած, խույրեր[26] կապած և կոնքերին գոտիները թուլացրած, երեկոները դնում էին թատրոն։ Լապտերները լուսավորում էին նրանց և նրանք խունկ էին ծխում և ամբողջ գիշերը քաղաքում թափառում ու փառաբանում պարողին, մինչև առավոտ երգով, բացականչություններով և ամոթալի (խոսքերով)։ Այդ պատճառով էլ նրանք մոռանում էին աղոթելու գնալ, և նրանցից ոչ մեկը չէր էլ մտածում իր պարտականության մասին, և հպարտությամբ ծիծաղում էին հայրերի միամտության վրա ու ասում. «Նրանք չգիտէին այս բոլորը անել մեզ նման», և ասում նաև «Նախկինում (մեր) քաղաքի բնակիչները ապուշ ու հիմար էին»։ Այս ձևով նրանք հպարտանում էին իրենց ամբարտավանությամբ, և չկար մեկը, որ զգուշացներ, կշտամբեր կամ խրատեր նրանց։ Այս ժամանակ Եդեսիայում էր գտնվում Մաբբոգի[27] եպիսկոպոս Քսանիասը, և կարծում էին, որ սա իր վրա կվերցնի նրանց դաստիարակելու գործը, սակայն նա միայն մի օր խոսեց այդ մասին նրանց հետ։ Բայց աստված իր գթասրտությունն ու ողորմածությունը բացահայտ ցույց տվեց, որպեսզի նրանք կարողանան հեռու մնալ իրենց անօրենությունից, որովհետև երկու բազիլիկներն ու ամառային բաղնիքը[28] փուլ եկան, բայց աստծու բարությամբ այնտեղ ոչ ոք չվնասվեց, թեև շատ մարդիկ էին աշխատում ներսում ու դրսում. մահացան միայն երկու մարդ, որոնք ճզմվեցին, երբ փախչում էին բաղնիքի ընկնող դռան աղմուկից. երկու կողմից մոտենալով նրանք ուզեցել էին բացել այն, սակայն վեճի էին բռնվել, թե նրանցից ո՞վ պետք է առաջինը դուրս գար, և (այդ ժամանակ) քարերը ընկել էին նրանց վրա և մահացել էին։ Բոլոր հայտնի մարդիկ փառք տվեցին աստծուն, որ նա պահպանեց քաղաքը շատերի ողբից, որովհետև այս բաղնիքը պետք է բացվեր մի քանի օրից։ Այնքան կատարյալ էր կործանումը, որ նույնիսկ ներքևի շարքերի քարերն անգամ, որոնք դրված էին հողի երեսին, իրենց տեղերից շարժվել էին։

---

26 Ասորերեն՝ „paglla“ հայերեն՝ «փակեղ», սակայն այժմ այն վանականներն են օգտագործում.

27 Այժմյան Սիրիայի Մեմբիջ քաղաքը։

28 Նկարագրությունից երևում է, որ այդ բաղնիքները արևելյան բաղնիքների կառուցվածքը ունեն. դրանով նման են այն բաղնիքներին, որոնց այժմ հանդիպում ենք Մերձավոր Արևելքի շատ երկրներում։

31. Այս նույն տարին Անաստաս կայսրի հրովարտակը եղավ, որը վերացնում էր (ոսկու) հարկը[29], որն արհեստավորները վճարում էին չորս տարին մեկ անգամ, (և այսպես) նրանք ազատվեցին հարկից։ Հրովարտակը տրվել էր ոչ միայն Եդեսիայի, այլև հոռոմների գերիշխանության տակ մտնող բոլոր քաղաքների համար։ Եդեսացիները չորս տարին մեկ անգամ վճարում էին 140 լիտր ոսկի[30]։ Ամբողջ քաղաքը՝ մեծից փոքրը ուրախացավ, սպիտակ հագուստներ հագած տանում էին վառված մոմեր և խնկով լի ծխացող բուրվառներ. նրանք սաղմոսներ և շարականներ (երգելով) գնում էին ս. Սարգիս և ս. Սիմոն եկեղեցիները, փառք տալիս աստծուն և օրհնում կայսրին. այնտեղ էլ պատարագ եղավ։ Հետո (բազմությունը) վերստին գնաց քաղաք ու ամբողջ շաբաթը ուրախությամբ ու զվարճությամբ տոնեցին (այն), և որոշեցին, որ դրանից հետո ամեն տարի տոնեն այդ օրը։ Բոլոր արհեստավորները նստած (սեղանների շուրջ) զվարճանում էին, և կամ լողանում, և կամ ուրախանում եկեղեցիների բակերում, և կամ քաղաքի բոլոր սյունազավիթներում[31]։

32. Այս տարում Հազիրան (հունիս) ամսի 5-ին մար Կյուրոս եպիսկոպոսը հեռացավ այս աշխարհից և Պետրոսը հաջորդեց նրան։ Նա տարվա տոներին ավելացրեց նաև Ծաղկազարդը։ Նա սահմանեց, որ Ջրօրհնեքը (կատարվի) Ավագ հինգշաբթի օրը ամբողջ ժողովրդի ներկայությամբ. բացի (այս տոներից) նա կարգավորեց նաև այլ տոներ[32]։

Ալեքսանդրը՝ հեգեմոնը հեռացվել էր և նրան հաջորդել Դեմոսթենեսը. սրա հրամանով քաղաքի սյունազավիթները սպիտակացվեցին. գործերին փորձառու մարդիկ շատ անհանգստացած էին, որովհետև նրանք ասում էին, որ դա գալիք չարիքների ազդանշան է։

33. 810 թ. (մ. թ. 499 թ.)։ Աստծո արդարության մի օրինակը

---

29 Χρυσάργυρον «խրիսարգիրոն» դա հարկի տեսակ էր (փողով), որը վերացրեց Անաստաս կայսրը 498 թ.։

30 «Տաս լիտր ոսկին հավասար է 720 ոսկեդրամի՝ դահեկանի։ Տաս լիտր միլիարիսիա՝ տաս լիտր արծաթ դրամ։ Մեկ միլիարիսիոնը հավասար էր ոսկեդրամի 1/12 մասին». տե՛ս Կոստանդին Ծիրանածին, թարգ. Հ. Բարթիկյանի, Երևան, 1970, էջ 219։

31 Այս նախադասության ասորերեն բնագիրը աղավաղված է և մենք այն թարգմանել ենք հետևելով բովանդակությանը։

32 Այս նախադասությունն էլ բնագրում աղավաղված է, թարգմանել ենք ըստ իմաստի։

հայտնվեց մեզ այս ժամանակ, որպեսզի մեր չար վարքին վերջ տանք, որովհետև այս տարվա Իյար (մայիս) ամսին, երբ մոտեցավ զազրելի հեթանոսական տոնի օրը, հարավից մեծ քանակությամբ մորեխներ եկան մեր երկիրը. թեև նրանք ոչինչ չփչացրին ու չոչնչացրին այդ տարում, բայց մեծ թվով ձվեր ածեցին մեր երկրում։ Հողում իրենց ձվերը դնելուց հետո, երկրի վրա սարսափելի երկրաշարժեր եղան և պարզ է, որ դրանք տեղի ունեցան մարդկանց մեղքերի պատճառով, որոնց մեջ մխրճվել էին, և (կատարվում էր) այն, արթնացնելու համար նրանց, որպեսզի նրանք (այլևս) սովով ու ժանտախտով չպատժվեն։

34. Այս տարվա Աբ (օգոստոս) ամսին Անաստաս կայսրից հրովարտակ եղավ, որը հունական կայսրության քաղաքներում արգելում էր վայրի գազանների մենամարտը։ Իլուլ (սեպտեմբեր) ամսին ուժգին երկրաշարժ եղավ և երկրի վրա երկնքից լսվեց ահավոր մի ձայն, և ձայնից երկիրը իր հիմքերից շարժվեց։ Բոլոր գյուղերն ու քաղաքները լսեցին այդ ձայնը և զգացին երկրաշարժը։ Անհանգստացնող լուրեր և վատ տեղեկություններ էին գալիս բոլոր կողմերից, և ինչպես ոմանք պատմում են, հրաշալի նշան է երևացել Եփրատ գետում և Աբառնեի[33] տաք ջրերում. ջրերը, որոնք հոսում էին այդ ակունքից, չորացել էին։ Ինձ թվում է, այդ (պատմվածը) սուտ չէ, որովհետև ամեն անգամ, որ երկիրը երկրաշարժից պատռվում է, և այնպես է երբեմն պատահում, որ հոսող ջրերը պատռված մասերում դադարում են հոսելուց և կամ երբեմն փոխում են իրենց ուղղությունը, նույնպես, ինչպես երանելի Դավիթը պատմում է իր 18-րդ Սաղմոսում թե աստված պատժեց իր թշնամիներին երկրաշարժերի ու լեռների սասանումով, և այդպես արեց, որ իմանանք եղածի մասին. նա ասում է. «Երևեցան աղբերք ջուրց, եւ յայտնեցան հիմունք աշխարհի, ի սաստէ քումմէ, Տէր»[34]։

Այս ամսում նույնպես նամակ ստացվեց, որը կարդացվեց եկեղեցում ամբողջ միաբանության առաջ այն մասին, որ Նիկո-

---

[33] «Աբառնէ (Վաղարշակուպոլիս) քաղաք—... այժմ՝ Ջերմուկ (թուրք. Ջերմիկ)։ Հնուց ի վեր այն հայտնի էր իր տաք, բուժիչ ջրերով։ Բյուզանդական կայսր Թեոդոս Մեծը (389—395) այս վայրը հանձնել է «յուտեստ» Պապի որդուն՝ Բագաժառանգ Վաղարշակին, ուստի նրա անունով այս վայրը կոչվեց «Վաղարշակուպոլիս»։ Տե՛ս Ս. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, էջ 31։

[34] «Գիրք Սաղմոսաց», ժէ (ժԸ), 16։

պոլիսը[35] հանկարծ կես գիշերին ավերվել է և բոլոր բնակիչները ծածկվել են (ավերակներով)։ Նույնպես, օտարականներ, որոնք այնտեղ էին, և մեր դպրոցից որոշ եղբայրներ[36], որոնք գտնվում էին տեղում, թաղվել են (ավերակների տակ)։ Այնտեղից վերադարձած իրենց ընկերները (այդ մասին) պատմեցին մեզ։ Քաղաքը շրջապատող ամբողջ պարիսպը և ամեն ինչ որ ներսում էր, ավերվել է այդ գիշերվա ընթացքում և նույնիսկ մեկ մարդ կենդանի չի մնացել, բացի քաղաքի եպիսկոպոսից և երկու այլ մարդկանցից, որոնք քնած էին եկեղեցու խորանի հետևը եղած նախատանը։ Երբ սենյակի առաստաղը, որի մեջ քնած էին, փլվեց, մի ծայրի գերանները ամրացած մնացին խորանի պատից և այսպես դրանք չծածկվեցին (ավերակներով)։ Եղբայրներից մեկը, որի ճշմարտախոսությունը (կասկածելի չէ), հետևյալը պատմեց ինձ. «Այն գիշերը, երբ Նիկոպոլիսը կործանվեց, մենք պառկած էինք քաղաքում՝ ես և ընկերս։ Նա անհանգիստ էր և ասաց ինձ. «Վեր կաց գնանք և գիշերը անցկացնենք քաղաքից դուրս այն քարայրում, ինչպես սովոր ենք, որովհետև այստեղ օդը տոթ է և չեմ կարողանում հանգստանալ ու քնել։ Այսպես մենք վեր կացանք՝ ես և ինքը, և քաղաքից դուրս եկանք ու գիշերը անցկացրինք քարայրում։

Երբ առավոտը մոտ էր, ես արթնացրի եղբորս, որն ինձ հետ էր և ասացի նրան «վեր կաց, արշալույս է, արի գնանք քաղաք, որպեսզի մեր գործերը հոգանք»։ Այսպես վեր կացանք՝ ես և ինքը, և եկանք քաղաք և գտանք բոլոր տները ավերված, ժողովուրդը, հողը, եղներն ու ուղտերը ծածկվել էին այնտեղ, լսվում էին նրանց հառաչանքի ձայները գետնի տակից։ Նրանք, ովքեր եկան այնտեղ, նրանց հետ միասին, դուրս բերեցինք եպիսկոպոսին գերանների տակից, որոնցով նա պահպանվել էր։ Նա հաց և գինի խնդրեց, որպեսզի պատարագ մատուցենք, սակայն ոչինչ չէր մնացել քաղաքում, որովհետև ամեն ինչ փչացել էր։ Համենայն դեպս պատահեց, որ այստեղ հասավ մի անցորդ, մի լավ մարդ, որը նրան (եպիսկոպոսին) տվեց հացի մի քանի կտոր և մի քիչ գինի։ Նա պատարագ մատուցեց, աղոթեց և ներկաներին հաղորդություն տվեց։ Նա այս ժամանակ նման էր, ինչպես թվում է

---

35 «Նիկոպալիս քաղաք—ԲՅ, այժմ՝ Բուրգ (Պյուրկ)»․ տե՛ս Ս. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, էջ 72։

36 Եղբայր, այստեղ միաբան, կամ վանականի իմաստով է։

ինձ, Ղովտին, երբ նա փախավ Սոգոմից։ Այն ինչ որ պատմեցինք (այս մասին) բավական է։

35. Հյուսիսում կար նաև մի եկեղեցի, որը կոչվում էր Արշամաշատ[37], այն կառուցված էր շատ ամուր ու գեղեցիկ զարդարված։ Ամեն տարի նույն օրը, հատկապես այնտեղ թաղված սրբերի տոնին, բոլոր տեղերից շատերը հավաքվում էին, ոմանք աղոթելու, ոմանք էլ առևտրի (նպատակով), որովհետև այդ առթիվ (տոնի) հավաքվածների համար շատ ապրանքի կարիք էր զգացվում։ Երբ տղամարդկանց և կանանց բոլոր տարիքի ու դասի մեծ ամբոխ էր հավաքված, ուժեղ կայծակ խփեց և սարսափելի որոտմունք ու ահազդու աղմուկներ (լսվեցին) և բոլորը փախան եկեղեցի, որպեսզի ապաստան գտնեն սրբերի մասունքների մոտ։ Եվ մինչ նրանք մեծ սարսափի մեջ, մինչև կեսգիշեր աղոթում էին, եկեղեցին փուլ եկավ և իր փլատակների տակ ծածկեց այնտեղ եղած մարդկանց մեծ մասին։ Այս պատահեց ճիշտ այն օրը, երբ կործանվեց Նիկոպոլիսը։

36. 811 թ. (մ. թ. 500)։ Բոլոր այս երկրաշարժերից և դժբախտություններից (հետո), համենայն դեպս, մեզանից ոչ մեկը ետ չկանգնեց իր չար ճանապարհից և այդ պատճառով, մեր երկիրն ու քաղաքը անպարտ չմնացին, որովհետև (մինչ այդ) մենք հեռու էինք մնացել ուրիշներին պատահած չարիքներից, և ստացված լուրերը չէին անհանգստացրել մեզ, ուստի մենք ևս անբուժելի հարված ստացանք։ Պետք է ճանաչենք աստծո արդարությունը և ասենք. «Արդար ես դու, Տէր, եւ ուղիղ են դատաստանք քո»[38]։ Որովհետև նա իր երկայնամտությամբ դեռևս ցանկանում էր նշանների ու հրաշքների շնորհիվ մեզ ետ կանգնեցնել չար գործերից։

Այս տարվա առաջին թեշրին (ամսի) (հոկտեմբեր 500 թ.) 23-ին, օրը շաբաթ էր, արևածագին (արևի) պայծառությունը

---

[37] «Արշամաշատ քաղաք» այժմ՝ Խարաբա-Նաջարան, ավերակների գյուղ։ Արշամաշատը (ʼΑρσαμόσατα Ptol. v, 12) Ծոփաց թագավորության մայրաքաղաքներից մեկն էր, սակայն մ. թ. առաջին դարերում ավերվել է և միջին դարերում հայտնի էր իբրև ավան Աշմուշատ (բյուզ. ʼΑσμίσατον. արաբ. Šimsat) անունով։ Մինչև վերջին կոտորածները տեղացիներն այս քաղաքի շրջակայքը անվանում էին Աշմուշատ։ Իբրև այդ քաղաքի քաղաքային տերիտորիա, մինչև 387 թ.՝ ամբողջ Բալահովիտ գավառը պիտի կոչվեր Արշամաշատ։ Տե՛ս Ս. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, էջ 40։

[38] «Գիրք Սաղմոսաց», ճժԸ (ճժԹ), էջ 137։

չքացավ, գունտի լույսը արծաթի նման էր և չուներ ճառագայթներ և մեր աչքերը դյուրությամբ ու անարգել կարողանում էին նայել [արևին], որովհետև այն չուներ իր փայլն ու լուսավորությունը, որոնք [առաջ] խանգարում էին իրեն նայելու ինչպես դյուրին էր նայել լուսնին, այնպես էլ մենք նայում էինք նրան։ Այսպես, մնաց մոտավորապես մինչև ժամը ութը։ Երկիրը, որը լուսավորվում էր եղած փոքր լույսով, թվում էր, թե շաղ է տված մոխրով և ծծումբով։ Ճիշտ նույն օրը մի այլ ահավոր ու սարսափելի նշան պատահեց քաղաքի պարսպի վրա, որը իր նախկին թագավորի հավատի և բնակիչների անարատության շնորհիվ արժանացել էր մեր Տիրոջ օրհնությանն[39], իսկ այժմ իրենց բազում մեղքերի պատճառով, բնակիչները ոչնչացման եզրին էին կանգնած։ Պարսպի հարավից մինչև Մեծ դարպասը ճեղքվածք առաջացավ, և այդ մասում քարերից մի քանիսը ընկան (պարսպից) ոչ մեծ հեռավորության վրա։ Մեր հայր մար Պետրոս եպիսկոպոսի հրամանով, հրապարակային աղոթքներ մատուցվեցին և յուրաքանչյուրը դիմեց աստծո գթասրտության։ Նա հավաքեց իր ամբողջ կղերականներին և միաբանությունների բոլոր անդամներին՝ տղամարդկանց և կանանց ու սուրբ եկեղեցու հավատացյալներին (աշխարհականներին), հարուստին ու աղքատին, տղամարդկանց, կանանց և երեխաներին, որոնք սև հագուստներ հագած, անցան քաղաքի բոլոր փողոցներով, տանելով խաչեր և (երգելով) սաղմոսներ ու շարականներ։ Մեր երկրամասի բոլոր վանքերը նույնպես մեծ եռանդով շարունակում էին աղոթքները և այսպես սուրբերի աղոթքներով, արևի լույսն իր նախկին վիճակն ստացավ և մենք մի փոքր ուրախացանք։

37. Թեշրին երկրորդի (նոյեմբերի 23, 500 թ.) կեսօրին, երկնքի վրա երեք նշան տեսանք. դրանցից մեկը հարավից երկնքի մեջտեղում էր և իր գույնով ամպերի մեջ եղած ծիածանին էր նման, և գոգավոր մակերեսով վերև էր կարծես, այսինքն, իր կորընթարթ մակերեսով ներքև էր, իսկ ծայրերը վերև։

Մի ուրիշը (երևաց) արևելքում և մեկ ուրիշը արևմուտքում։ Ապա Քանուն երկրորդ (հունվար 501 թ.) ամսում, մենք մի այլ նշան տեսանք՝երկնքի հարավ-արևմտյան մասում, որը նման էր

---

[39] Խոսքը այստեղ Հիսուսի Եդեսիայի Աբգար թագավորին գրած նամակի մասին է. այդ նամակում Հիսուսը օրհնում է Եդեսիա քաղաքը ու ասում, որ այն անմատչելի է լինելու թշնամիներին։

նիզակի[40]։ Ոմանք ասում էին, որ սա մաքրագործման ավելն է, իսկ ուրիշները ասում էին, որ այն պատերազմի նիզակն է։

38. Մինչև այժմ մեզ խրատում էին շշուկներով և նշաններով, բայց մեր երկիրը բոլոր կողմերից շրջապատող տառապանքների մասին ո՞վ կարող է պատմել։ Այս տարվա Աղար ամսին (մարտ 501 թ.) գետնի տակից մեզ վրա թափվեցին մորեխներ, որոնք այնքան շատ էին, որ ենթադրեցինք, թե դրանք ոչ միայն գետնի տակ թուխս դրած ձվերից էին, այլ նաև օդից էին թափվում կամ երկնքից իջնում մեզ վրա։ Դեռ սողոսկելիս նրանք ոչնչացրին և մաքրեցին ամբողջ Արոբների[41] երկիրը և ամբողջ Ռասըլ-Ղայնը[42], Տելլան[43] և Եդեսիան։ Իսկ երբ նրանք կարողացան թռչել, տարածվեցին Ասորեստանի սահմանից մինչև Արևմտյան ծովը[44] և գնացին դեպի հյուսիսային կողմերը, մինչև Օրտայեի սահմանը[45]։ Նրանք կերան ու ամայացրին այս գավառներում այն ամենը, ինչ որ կար այնտեղ, այն աստիճան, որ նույնիսկ պատերազմը սկսելուց առաջ, մենք մեր աչքերով տեսանք, այն ինչ որ ասված է բաբելացիների համար. «Իբրև զդրախտ փափկութեան երկիրդ առաջի նորա, եւ զկնի նորա դաշտ ապականութեան»[46]։ Եվ եթե աստծո նախախնամությունը չզսպեր դրանք, նրանք կուտեին մարդկանց և արջառներին, ինչպես լսել ենք ինչ որ գյուղում, երբ մարդիկ աշխատանքի ժամին երեխային թողել էին դաշտում և իրենք դաշտի մի ծայրից մյուսը դեռ չէին հասել երբ, մորեխները թափվել էին (երեխայի) վրա և նրան զրկել կյանքից։ Այն ժամանակ Նիսան ամսին (ապրիլ 501 թ.) սկսեց թանկանալ ամեն տեսակ հացահատիկն ու ամեն ինչ։ Զորս մոտի ցորենը վաճառվում էր մեկ դինարի։ Հազիրան և Թամմուզ (հունիս,

---

[40] Հետաքրքրական է, որ «նիզակ» ասորերենում էլ „Nizak" է. տե՛ս J. **Payne Smith**, A compendious Dictionary, Oxford, 1957, p. 338.

[41] „Arb" —ղարաբների երկիր, գտնվում էր Մծբինի արևմուտքում, տե՛ս **Marquart**, Eranšahr, Berlin, 1901, pp. 162—163.

[42] Ռաշ-Ղայն քաղաք, ասոր. Rēsainā, բյուզ. Θεοδοσιούπολις, այժմ՝ Ռաս-էլ-Ղայն քաղաք, Խաբուր գետի ձախ ափին։

[43] Կամ Կոստանդինա քաղաք։

[44] Միջերկրական ծով։

[45] «Անձիտ գավառն է։ Ասուրա-բաբելական Enzitu, Չորրորդ Հայքի 6-րդ գավառը՝ 3825 կմ² տարածությամբ։ Գրավում էր Խարբերդի դաշտի հիմնական մասը։ Այս գավառումն էին գտնվում Անձիտ, Հոռեբերդ, Ծովք և այլ ամրու-թյունները»։ Տե՛ս Ս. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, էջ 36։

[46] «Մարգարէութիւն Յովելայ», Բ, 3։

հուլիս 501 թ.) ամիսներին այս շրջաններում բնակվողները զրկվեցին ապրուստի բոլոր միջոցներից։ Նրանք կորեկ ցանեցին անձնական օգտագործման համար, բայց այն իրենց չէր բավականացնում, որովհետև շատ չէր աճում։ Դեռ տարին չբոլորած խեղճությունն ու սովը մարդկանց ստիպեցին մուրացկանություն անել, նրանք վաճառեցին իրենց ունեցվածքը կես արժեքով՝ իրենց ձիերին, եզներին, ոչխարներին ու խոզերին։ Եվ որովհետև մորեխները կերել էին ամբողջ բերքը, ապա մարդկանց և անասունների համար ուտելիք չէին թողել, ուստի շատերը լքեցին իրենց բնակավայրերն ու գնացին հյուսիսային ու արևմտյան շրջանները։ Եվ հիվանդները, որոնք գյուղերում էին, ինչպես նաև ծերերն ու տղաները, կանայք ու երեխաները և նրանք, որոնք սովից հյուծված էին, չկարողացան քայլել և ավելի հեռու տարբեր տեղեր գնալ. նրանք մտնում էին քաղաքներն ու մուրացկանությամբ իրենց ապրուստը հոգում, և այսպես շատ գյուղեր ու շեներ[47] մնացին անմարդաբնակ։ Համենայն դեպս պատժից չխուսափեցին նույնիսկ նրանք, որոնք շատ հեռու տեղեր էին գնացել, բայց ինչպես գրված է Իսրայելի որդիների մասին «Եւ ձեռն Տեառն էր նոցա ի չարութիւն», այդպես էլ եղավ սրանց հետ, որովհետև ժանտախտը հասավ իրենց այն տեղերում, որտեղ որ գնացել էին, նույնիսկ (հիվանդացան) նրանք, որոնք Եդեսիա մտան։ (Ժանտախտի) մասին այժմ իմ ամբողջ կարողությամբ կպատմեմ (քեզ), չնայած կարծում եմ, որ ոչ մեկը այն չի կարող այնպես նկարագրել, ինչպես կա։

39. Այժմ համենայն դեպս. ինչպես դու ինձ խնդրել ես, կգրեմ քեզ թանկության մասին։ Ճիշտ է, ես չէի ուզում այդ մասին որևէ բան գրել, բայց ես ինձ ստիպեցի որպեսզի դու չկարծես որ ես քո հրամանը արհամարհել եմ։ Ցորենն այն ժամանակ վաճառվում էր 4 մոտին մեկ դինարի, իսկ գարիինը՝ 6 մոտին։ Մի կաբ[48] սիսեռը 500 նումիա[49] (արժեր), մի կար լոբին՝ 400 նումիա, ոսպի կաբը 360 նումիա էր. սակայն միսն այնքան թանկ չէր։ Համենայն դեպս, ժամանակի հետ միասին ավելի թանկանում և սովի տանջանքները մարդկանց ավելի ու ավելի էին նեղում։ Այն ինչ որ ուտելու չէր, էժան էր, ինչպես օրինակ՝ հագուստեղենը և տնային կահ կարասին, որովհետև այս բաները վաճառվում էին

---

47 Agursa-ἀγρός, շեն, դաշտ, հող, հիվանդանոց, ագարակ։

48 Kab-Κάβος, դա անում է մոտավորապես կես կիլո։

49 Նումիա—nummus—հրեական լուման է հավանաբար։

կես կամ մեկ երրորդ արժեքով, բայց դրանք տերերին (կերակրվելու) համար չէին բավականացնում, քանի որ հացը շատ թանկ էր։ Այն ժամանակ մեր հայր մար Պետրոսը, գնաց (Կոստանդնուպոլսի) կայսրին այցելության, որպեսզի նրանից խնդրի, որ նա հարկը վերացնի, որովհետև դատավորը գյուղացի հողատերերին նեղում էր և դաժան բռնությամբ բռնագրավում (հարկերը). այսպես, մինչև եպիսկոպոսը կհամոզեր կայսրին, դատավորը փող ուղարկեց մայրաքաղաք։ Երբ կայսրը տեսավ, որ իրեն փող են ուղարկել, նա չուզեց այն վերադարձնել, բայց մեր հորը (մար Պետրոսին) դատարկ ետ չուղարկելու համար վերացրեց գյուղացիներից երկու պալաս[50] (հարկը), իսկ քաղաքացիներին ազատեց հռոմների բանակի համար ջուր մատակարարելու (պարտականությունից)։

40. Ինքը՝ դատավորը նույնպես կայսրին այցելության գնաց, սուրը կապած, և իր փոխարեն Եվսեբիոսին թողեց, որ նա քաղաքը ղեկավարի։ Երբ Եվսեբիոսը տեսավ, որ հացագործները չեն կարողանում շուկայի[51] համար անհրաժեշտ հաց մատակարարել, քանի որ գյուղերից շատ մարդիկ էին եկել, լցվել քաղաքը, և որովհետև աղքատները իրենց տներում հաց չունեին, նա հրամայեց, որ ով կցանկանա կարող է հաց թխել և վաճառել շուկայում։ Հրեա կանայք եկան, որոնց նա ցորեն տվեց պետական շտեմարանից և նրանք շուկայի համար հաց թխեցին։ Չնայած դրան, աղքատները կարիքի մեջ էին, և որովհետև փող[52] չունեին հաց գնելու, ուստի թափառում էին շուկաներում, սյունագավիթներում և բակերում, մի կտոր հաց մուրալու, սակայն չկար մեկը, որի տանը ավելորդ հաց լիներ։ Եվ եթե նրանցից մեկը մի քանի մաղա[53] ողորմություն էր ստանում, նույնիսկ չէր կարողանում դրանով հաց գնել, այլ գնում էր շաղգամ, կաղամբ կամ մոլոշ, և հում-հում ուտում։ Այդ պատճառով բանջարեղենի և ընդհանրապես ամեն ինչի պակասություն էր քաղաքում և գյուղերում, այնպես որ մարդիկ համարձակվում էին մտնել սուրբ տեղերը և համակ սովածացած, որպես սովորական հաց ուտում էին օրհնըված հացը (մասը)։ Ուրիշները դիակներից, որոնց ուտելը հնարա-

---

[50] Pals-φόλλις-follis, պղնձյա մանր դրամ։

[51] Šuka, ասորերեն՝ «շուկա»։

[52] Այստեղ փողը ոչ թե dahaba (ոսկի) ձևով է արտահայտված, այլ talma ձևով։

[53] Magha—մաղա—abolus, quadrams—փոքր դրամ։

վոր չէր (միսը), կտրում էին, եփում և ուտում։ Բաներ, որոնց հավաստիությունը, դու ինքդ քո ճշմարտախոսությամբ կարող ես հաստատել։

41. 812 թ. (մ. թ. 501 թ.)։ Այդ տարի, այգեկութից հետո, գինու 6 կիլան[54] վաճառվում էր մեկ դինարի և մեկ կաբ խաղողը 300 նումիայի։ Սովը ուժեղանում էր գյուղերում և քաղաքում, նրանք որոնք մնացել էին գյուղերում, ուտում էին դառը վիգ[55], իսկ ուրիշները եփում էին խաղողի գետին ընկած հատիկները և ուտում. սակայն նույնիսկ այս հատիկներից այնքան չկար, որ բավարարեր նրանց։ Եվ նրանք, որոնք քաղաքում էին, թափառում էին փողոցներում, հավաքում կեղտի մեջ կորած բանջարեղենի արմատներ ու տերևներ և ուտում։ Նրանք քնում էին սյունասրահներում ու փողոցներում, սովի ցավերից կոծում էին գիշեր ու ցերեկ, նրանց մարմինները քայքայվում էին վատթար վիճակից։ Նրանք իրենց մարմնի նիհարությամբ նման էին շնագայլերի։ Ամբողջ քաղաքը լի էր նրանցով, և նրանք սկսեցին մահանալ սյունագավիթներում ու փողոցներում։

42. Երբ հեգեմոն Դեմոստենեսը գնաց կայսրի մոտ և նրան հաղորդեց այս դժբախտության մասին, կայսրը բավական փող տվեց աղքատներին բաժանելու։ Երբ նա վերադարձավ նրա մոտից Եդեսիա, նրանցից (կարիքավորներից) շատերի վիզը կնիքով կնքեց և յուրաքանչյուրին ամեն օր մեկ լիտր հաց տվեց[56]։ Համենայն դեպս նրանք չէին կարողանում ապրել, որովհետև տիրող սովի տանջանքներից մաշվել էին և քայքայվել։ Այս ժամանակ Թեշրին երկրորդ ամսում (նոյեմբերին 501 թ.) ժանտախտն ուժեղացավ, իսկ առաջին Քանուն ամսում (դեկտեմբեր), երբ սկսեցին ցուրտն ու սառնամանիքը և որովհետև իրենք գիշերում էին սյունագավիթներում ու փողոցներում, քնած տեղերում էլ մահանում էին։ Երեխաներն ու փոքրիկները փողոցներում լաց էին լինում։ Ոմանց մայրերը մահացել էին, ուրիշների մայրերը լքել էին (երեխաներին) ու փախել, որովհետև նրանք ուտելու բան էին ուզում, բայց ոչինչ չկար նրանց տալու։ Մեռած դիակներն ամեն մի փողոցում լիքն էին, որովհետև քաղաքացիները չէին հասցնում թաղել դրանք, և նախապես մեռածներին տանելիս վերադարձին ուրիշներին էին գտնում։ Հյուրընկալ[57] մար Նոնուսի

---

[54] Kila—կիլա, հեղուկի չափ։

[55] Վայրի ոլոռ։

[56] Չափ՝ երկուսուկես կմ։

[57] Կսանդագրա—հյուրընկալ—փակակալ։

խնամատարությամբ, եղբայրները[58] դրանից հետո շրջում էին քաղաքով ու հավաքում մեռածներին։ Քաղաքի բոլոր մարդիկ հավաքվում էին դարպասի մոտ, և գնում (դիակներին) թաղելու՝ առավոտից մինչև առավոտ։ Եկեղեցու հոգաբարձուներ՝ հայր մար Տևատիլն ու մար Ստրատոնիկոսը, որը հետագայում Խառան քաղաքի եպիսկոպոսը դարձավ, Եդեսիայի տաճարներից մեկը հիվանդանոց դարձրին։ Նրանք, որոնք շատ հիվանդ էին, գնում էին այնտեղ և պառկում. հիվանդանոցում շատ մահացածներ էին լինում, որոնց ևս թաղում էին հյուրանոցում մահացածների հետ։

43. Հեգեմոնը փակեց ձմեռային բաղնիքի մոտ եղած ճեմասրահի դարպասները և փռել տվեց հարդ ու փսիաթ, որպեսզի նրանք (հիվանդները) քնեն այնտեղ. բայց այդ էլ չէր բավականացնում։ Երբ քաղաքի երևելիները տեսան այդ, նրանք ևս հիվանդանոցներ պատրաստեցին և հիվանդներից շատերը գնացին և ապաստան գտան դրանց մեջ։ Հոռոմ զինվորները ևս տեղեր (հիվանդանոցներ) պատրաստեցին, որոնց մեջ հիվանդները կարող էին քնել և նրանց (հոռոմների) հաշվին ապրել։ Տառապալից ու ցավալի ձևով էին մեռնում նրանք և չնայած նրանցից շատերին (հասցնում էին) թաղել ամեն օր, սակայն (մեռնողների) քանակը ավելանում էր, որովհետև Եդեսիայի շրջանում լուրեր էին տարածվել թե եդեսացիները կարիքի մեջ եղածներին լավ են խնամում և այս պատճառով մարդկանց մի անհամար բազմություն էր քաղաք եկել։ Բաղնիքը ևս, որը (քաղաքի) մեծ դարպասի կողքին էր, Առաքյալների եկեղեցուց ներքև էր գտնվում, լի էր հիվանդներով ու բազմաթիվ մահացածների դիակներ էին այնտեղից ամեն օր դուրս բերում։ Քաղաքի բոլոր բնակիչները եռանդով ու հարության հույսով լի, հավաքվում էին և սաղմոսներով, շարականներով ու օրհներգներով, տանում էին պանդոկում մահացածներին։ Կանայք ևս իրենց աղի արցունքով ու լաց ու կոծով (մասնակցում էին)։ Իսկ սրանց առջևից գնում էր ժրաջան հովիվ մար Պետրոսը և նրա հետ՝ դատավորն ու ազնվականները (beni Khara)։ Սրանց թաղելուց հետո վերադառնում էին և այս անգամ մասնակցում (յուրաքանչյուրը) հարևանների թաղմանը։ Եվ որովհետև պանդոկի և եկեղեցու բակերը լցվել էին (մեռելներով կամ ղերեզմաններով) հեգեմոնը (ստիպված) գնաց ու բացել տվեց հին գերեզմանատները, որոնք գտնվում էին մար

[58] Նկատի ունի վանականներին։

Կոնա եկեղեցու մոտ և որոնք մեծ դժվարությամբ կառուցվել էին մեր նախնիների կողմից, և նրանք (սկսեցին) լցնել դրանք (ևս)։ Ապա բացեցին ուրիշները (դերեզմանատներ) և դրանք էլ շբավարարեցին և ի վերջո բացում էին, ինչպիսին որ լիներ, մի հին գերեզման, և լցնում։ Ամեն օր պանդոկից հարյուրից ավելի մահացածների, օր էր լինում մինչև 120-ին կամ 130-ին, տանում էին Թշրին (նոյեմբերի 501 թ.) ամսի սկզբից մինչև Ադար (մարտ) 502 թ.) ամսի վերջը։ Ամբողջ այս ժամանակ քաղաքի բոլոր փողոցներում մահացածների վրա (կատարված) լացից ու հիվանդների ցավագին կանչերից բացի ուրիշ ոչինչ չէր լսվում։ Շատերը մահանում էին եկեղեցու, քաղաքի, իշխանատան բակերում և կամ ճանապարհներին երբ քաղաք էին գալիս։ Շեբաթ (փետրվար) ամսում ևս պարենի ավելի մեծ պակասություն եղավ և ժանտախտը ուժեղացավ։ Ցորենի 13 կաբը վաճառվում էր մեկ դինարի, իսկ գարին՝ 18 կաբը։ Մսի լիտրը 100 նումիա էր, իսկ հավի մսի մի լիտրը 300 նումիա, մի ձուն 40 նումիա։ Կարճ ասած, ուտելեղենները բոլորն էլ թանկ էին։

44. Ադար (մարտ 502 թ.) ամսում հասարակաց աղոթքներ եղան ժանտախտի առթիվ, որպեսզի այն չհասնի օտարականներին, և քաղաքի բնակչությունը նրանց համար բարեխոսելիս, նմանվում էր երանելի Դավթին, որն իր ժողովրդին կոտորող հրեշտակին ասում էր. «Աւասիկ կամ, ես մեղայ, ես հովիւս յանցեայ, եւ դոքա ոչխարքդ զ՞ի արարին. եղիցի ձեռն քո յիս եւ ի տուն հօր իմոյ»[59]։

Նիսան (ապրիլ 502 թ.) ամսում ժանտախտը տարածվեց քաղաքի բնակչության մեջ, և մեկ օրում բազմաթիվ դագաղներ դուրս տարան (թաղելու), բայց քանակի մասին ոչ ոք չի կարող բան ասել։ Եվ ոչ միայն Եդեսիայում էր (հնձում) ժանտախտի այս սուրը, այլև Անտիոքից մինչև Մծբին, տվից ու ժանտախտից մարդիկ նույն ձևով կոտորվեցին ու տանջվեցին։ Հարուստներից շատերը, որոնք սոված չէին բայց մեռան և այս նույն տարում մեռան նաև երևելիներից շատերը։ Հազիրան (հունիս 502 թ.) և Թամուզ (հուլիս) ամիսներին հունձից հետո հույս ունեինք, որ կազատվենք թանկությունից, սակայն մեր ցանկությունները, ինչպես մտածում էինք, չկատարվեցին, և նոր հունձի ցորենը վաճառվում էր շատ թանկ, 5 մոդին մեկ դինարի։

---

59 «Թագաւորութեանց երկրորդ», գլ. ԻԴ, 17։

45. 813 թ. (502 թ.) մորեխի, սովի և ժանտախտի դժբախտությունններից հետո, որոնց մասին ես քեզ գրեցի, մի փոքր հանգիստ շնորհվեց մեզ աստծու գթասրտությամբ, որպեսզի կարողանայինք, ինչպես դեպքերն էին սովորեցրել, տոկալ գալիքին։ Խաղողի առատ բերք եղավ և հնձանից գինու 25 կիլան[60] վաճառվում էր մեկ դինարի, և աղքատները առատ կերակրվում էին այգիներում եղած չամիչով։ Հողագործներն ու գյուղացիները ասում էին, որ չամիչը ավելի առատ էր, քան ցորենը, որովհետև երբ խաղողը հասունացել էր, տաք քամի եղավ և (խաղողի) մեծ մասը չորացավ։ Խելահաս մարդիկ ասում էին, որ այն տեղի ունեցավ բոլորիս Տիրոջ՝ աստծու բարի կամեցողությամբ, և որ այս գթասրտությունն իր մեջ միավորում էր նաև պատիժ, որպեսզի գյուղացիները չամիչով սնվելով, չմահանային սովից, ինչպես անցյալ տարի, որովհետև այն ժամանակ ցորենի չորս մոգին վաճառվում էր մեկ դինարի, իսկ գարինը՝ 6 մոգին։ Երկու Թեշրին (հոկտեմբեր և նոյեմբեր) ամիսների ընթացքում (աստծո) գթասրտության հետևյալ հրաշքը եղավ. այս տարվա (502 թ.) ամբողջ ձմեռը բացառապես անձրևային էր և ցանված ցորենը մինչև նիսան (ապրիլ) ամիսը մարդու հասակից էլ ավելի էր բարձրացել. նույնիսկ հողի ոչ բերրի մասերում ցանվածից մոտավորապես ավելին էր ստացվել։ Տների տանիքներում շատ խոտ աճեց, որը որոշ մարդիկ քաղում ու որպես դաշտային խոտ վաճառում էին, որովհետև այն ուներ և՛ հասկ, և՛ բարձրություն, իսկ գնորդները չէին նկատում (տարբերությունը)։

Մենք ակնկալում և հուսով էինք, որ այս տարի հացահատիկը էժան կլինի, ինչպես նախկին տարիներին, սակայն մեր հույսերը չքացան, որովհետև Իյար (մայիս) ամսին 3 օր տաք քամի փչեց և մեր հողամասերում հացահատիկը չորացավ, և փրկվեց միայն որոշ վայրերում։

46. Այս ամսին մոտեցավ այն օրը, երբ տոնում էին (հին) հունական առասպելների ապականյալ տոնը, որի մասին մենք վերևում խոսել ենք։ Անաստաս կայսեր հրամանը եղավ, որ այլևս պարողները չպարեն իր կայսրության մեջ գտնվող ոչ մի քաղաքում։ Ուստի որևէ մեկը եթե այս եղելությանց առաջացման (պատճառներին) նայի, մեզ չի մեղադրի այն բանի համար, որ իրար հաջորդող դժբախտությունների՝ սովի ու ժանտախտի պատ-

[60] Գինու, ձեթի, ցորենի չափ։ Տե՛ս J. Payne Smilh, A Compendious Dict. p. 213.

ճառը, քաղաքի բնակչության այս (հեթանոսական) տոնակատարությունների ժամանակ ցուցաբերած ապիրատությունն էր։ Ահավասիկ (տոնակատարության) վերացումից 30 օր հետո, ցորենը, որ վաճառվում էր 4 մոդին մեկ դինարի, արդեն (սկսել էր) վաճառվել 12 (մոդին մեկ դինարի) իսկ գարին որի 6 մոդին էր մեկ դինար, (արդեն) վաճառվում էր 22 մոդին (մեկ դինարի)։ Եվ բոլորին պարզ դարձավ, որ աստծո կամքը կարող է օրհնել քիչ բերքը և տալ առատություն նրանց, որոնք զղջում են իրենց մեղքերի համար։ Չնայած հացահատիկի բերքը չորացել էր, ինչպես ասել եմ, սակայն որոշ տեղերի (եղածը) 30 օրվա ընթացքում՝ հուսադրեց։ Գուցե այժմ մեկը ասի, որ ես ճիշտ չեմ դատում, որովհետև այդ զղջումը կամավոր չէր, որպեսզի դրա համար (աստծո) գթասրտությունը լիներ, քանի որ կայսրն էր, որ ուժի միջոցով վերացրեց տոնակատարությունը և կարգադրեց, որ պարողները այլևս չպարեն։ Մենք հակառակն ենք ասում, որ աստված բազում ողորմությամբ առիթ էր փնտրում իր գթասրտությունը ցույց տալու համար նույնիսկ նրանց, որոնք արժանի չէին։ Սրան որպես փաստ ունենք այն որ, նա գթաց Աքաաբին, երբ Եղիայի կշտամբանքով նա ամաչեց, և (Տերը) նախապես վճռված չարիքը չհասցրեց նրա տան վրա[61]։ Չեմ ուզում ասել, որ միայն այս մեղքը գործվեց մեր քաղաքում. որովհետև հայտնի և անհայտ շատ մեղքեր էին կատարվում, բայց որովհետև մեծամեծներն (գլխավորներն) էլ նույնպես դրանց մասնակից էին, ուստի չեմ ուզում որոշակի բացահայտել այդ մեղքերը, որպեսզի հնարավորություն չտամ նրանց, որոնք սիրում են բամբասել, ասելու, որ ես խոսում եմ մեծամեծների (Rišana) դեմ։ Բայց այն բոլորովին անհայտության մեջ թողնել չեմ կարող, որովհետև վերևում ես խոստացա քեզ հայտնի դարձնել, թե ինչպես սկսեց պատերազմը մեր դեմ, և որպեսզի ոչինչ չասեմ հանցավորների մասին, ես մեջ կբերեմ մարգարեի խոսքերը, որոնցից դու կարող ես հասկանալ (ասելիքս), և երբ (մարգարեն) տեսավ, որ իր հայրենակիցները անում էին այն, ինչ որ այս օրերին կատարում էին մեր քաղաքում, հատկապես այնտեղ, որտեղ դու ապրում ես, և դրա շրջակայքում, Տիրոջ բերանով ասաց նրանց. «Վա՜յ որ ասիցէ ցհայր իւր՝ թէ ընդէ՞ր ծնար զիս. եւ ցմայր իւր՝ թէ ընդէ՞ր երկնեցեր զիս»[62]։ Մնացածի մասին

---

61 «Թագաւորութեանց երրորդ», ԻԱ, 29։

62 «Մարգարէութիւն Եսայեայ», գլ. ԽԵ, 10։

ավելի լավ է լռել, որովհետև ճշմարիտ է Սուրբ Գիրքը, որ ասում է. «Վասն այնորիկ որ իմաստունն է՝ ի ժամանակին յայնմի՛կ լռեսցէ, զի ժամանակն չար է»[63]։ Եթե Տերը կամենա, որ ես քեզ կենդանի տեսնեմ, հնարավորին չափ այդ մասին կխոսենք իրար հետ։

47. Այժմ լսիր այս տարի պատահած թշվառությունների և այն հրաշքի մասին, որ երևաց (դժբախտություն) պատահած օրը, որովհետև այդ մասին ևս դու խնդրեցիր ինձ (գրել)։ Այս տարվա Աբ (օգոստոս 502 թ.) ամսի 22-ին հինգշաբթի գիշերը (լույս ուրբաթ) մեծ կրակ երևաց, որը վառվում էր (երկնքի) հյուսիսային մասում ամբողջ գիշերը, և կարծում էինք, որ կրակի հեղեղն այդ գիշեր կոչնչացնի ամբողջ երկիրը, սակայն մեր Տիրոջ ողորմածությունն անվտանգ պահեց մեզ։ Համենայն դեպս նամակ ստացանք, ինչ որ հայտնի անձնավորությունից, որը ճանապարհորդում էր դեպի Երուսաղեմ, որի մեջ նշված էր, որ նույն գիշերը, երբ մենք տեսանք այդ բոցավառվող կրակը, Պտղոմեոս կամ Աքքա քաղաքը ավերվել էր և կանգուն ոչինչ չէր մնացել։ Նորից մի քանի օր հետո, մեզ մոտ եկան մի քանի տյուրոսցիներ և սիդոնցիներ[64], և պատմեցին, որ նույն օրը երբ կրակը երևաց և Պտղոմեոս (քաղաքը) ավերվեց, նույն օրը իրենց քաղաքները Տյուրոսի և Սիդոնի կեսը կործանվել էր։ Բեյրութում նույն օրը միայն հրեաների սինագոգն էր ավերվել։ Նիկոմիդիայի բնակչությունը անձնատուր էր եղել սատանային և դրա համար շատերը դևերի միջոցով տանջվեցին ու պատժվեցին մինչև որ վերհիշեցին մեր Տիրոջ խոսքերը և հաստատուն մնացին ծոմապահությամբ ու աղոթքներով, և բուժվեցին։

48. Ճիշտ նույն օրը, երբ կրակը երևաց, պարսիկների թագավոր Պերոզի որդի Կավատը հավաքեց պարսկական ամբողջ բանակը և գնաց դեպի հյուսիս։ Հոների (զորքի) օգնությամբ, որ իրեն հետ էր, նա մտավ հոռոմների երկիրը և շրջապատեց Հայաստանի Թեոդոսուպոլիս քաղաքը[65] և գրավեց այն մի քանի օրում, որովհետև տեղի կառավարիչը, որի անունը Կոստանդին

---

[63] «Մարգարէութիւն Ամովսայ», գլ. Ե, 13։

[64] Այժմ Լիբանանի քաղաքներից՝ «Սուր» և «Սայդայի» բնակիչներ։

[65] «Կարին, այժմ էրզրում։ Թեոդոս Բ Փոքրը (408—450) մեծ ամրություններ կառուցեց, քաղաքը դարձնելով Բյուզանդական Հայաստանի ռազմական ու վարչական կենտրոն և այն կոչեց Թեոդոսուպոլիս, կոչվում էր նաև Թեոդուպոլիս». տե՛ս Ս. Երեմյան, Հայաստանը..., էջ 58։

էր, ապստամբվեց հոռոմների դեմ և այն (քաղաքը) հանձնեց՝ կայսրի դեմ իր ունեցած թշնամության պատճառով։ Կավատը հաջորդաբար կողոպտեց քաղաքը, ավերեց, այրեց ու ամայացրեց հյուսիսային գավառներում եղած գյուղերը և մնացած փախստականներին գերի տարավ։ Կոստանդինին դարձրեց իր զորավարներից, և Թեոդոսուպոլսում պահակազորք թողնելով, գնաց այնտեղից։

49. 814 թ. (503 թ.) Միջագետքում նույնպես, որտեղ մենք ապրում ենք այս տարի մեծ դժբախտություններ տեղի ունեցան, այնպես որ այն, ինչ որ մեր Տեր Քրիստոսը գուշակել էր Երուսաղեմի համար, և այն ինչ որ ասել էր աշխարհի վերջի մասին իր Ավետարանում, այդ բոլորը իսկապես տեղի ունեցան և հարմարվում էր մեր ժամանակներում պատահածների հետ։ Որովհետև դրանից հետո տարբեր տեղերում երկրաշարժեր եղան, ինչպես ես քեզ գրել եմ։ (Եղավ) սով և ժանտախտ, ահ և սարսափ, և ապա երկնքում երևացին մեծ հրաշքներ, ազգ-ազգի դեմ, թագավորություն թագավորության դեմ դուրս եկավ, և մենք ընկանք հատու սրի տակ և գերի տարվեցինք տարբեր տեղեր, և մեր երկիրը կոխոտվեց օտար ազգերի ոտների տակ, այնպես որ իրականացավ մեր Տիրոջ խոսքը, որ ասել է. «լսելոց էք պատերազմունս եւ համբաւս պատերաղմաց. զգոյշ լերուք, մի խռովեսջիք, զի պարտ է լինել այնմ ամենայնի, այլ չեւ է կատարած»[66]։ Մենք համարձակվեցինք ասել, որ աշխարհի վերջը եկել է, ինչպես շատերը մտածում ու ասում էին, սակայն այդ այդպես չէ, որովհետև այս պատերազմը տեղի չի ունենում ամբողջ աշխարհում, բացի այդ, պետք է վերհիշել նաև ս. Պողոսի խոսքերն, որոնց միջոցով նա զգուշացնում էր թեսաղոնիկեցիներին մեր Տիրոջ գալստյան առթիվ ասելով որ «մի վաղվաղակի խռովել ձեզ ի մտաց եւ մի զարհուրել, մի հոգւով եւ մի բանիւ եւ մի թղթովք՝ իբրեւ թէ ի մէնջ. որպէս թէ եկեալ հասեալ իցէ օր Տեառն»[67], և նա (Պողոս առաքյալը) ցույց է տվել թե չի կարող լինել աշխարհի կատարածը եթե չգա կեղծ Քրիստոսը[68]։ Ուստի մեր Տիրոջ և Նրա առաքյալի այս խոսքերից հասկացանք, որ այս բոլորը ոչ թե աշխարհի վերջը լինելու պատճառով էր տեղի

---

66 «Մատթէոս» գլ. ԻԴ, 6։

67 «Թուղթ առ Թեսաղոնիկեցիս բ», գլ. Բ, 2։

68 Նույն տեղում, № 3-ը համեմատել. հեղինակի ամբողջ միտքը մի նախադասությամբ է արտահայտում։

ունենում մեզ հետ, այլ մեզ պատժելու, որովհետև մենք բազում մեղքեր ունեինք։

50. Պարսիկների թագավոր Կավատը՝ հյուսիսից եկավ առաջին Թեշրին (հոկտեմբեր 503 թ.) ամսի 5-ին շաբաթ օրը, և իր բանակով պաշարեց Ամիդ[69] քաղաքը, որը գտնվում է մեզ մոտ՝ Միջագետքում։ Երբ հոռոմների կայսր Անաստասը լսեց, որ Կավատը հավաքել է իր զորքերը, նա նրան փող ուղարկեց Ռուփինոսի միջոցով, որին հրամայել և ասել էր, որ եթե Կավատը սահմանի վրա է, և դեռ չի անցել հոռոմների սահմանը, փողը տուր նրան և ետ ուղարկիր Կավատին։ Բայց երբ Ռուփինոսն եկավ Կապադովկիայի Կեսարիա քաղաքը և լսեց, որ Կավատը ամայացրել է Անգեղտունը[70], Ծոփքը[71], Հայաստանն ու հյուսիսային գավառները[72], նա փողը թողեց Կեսարիայում և գնաց նրա (Կավատի) մոտ, և ասաց նրան, որ եթե (հոռոմների) սահմանից ետ վերադառնա, ապա փողը կստանա։ Թեև նա չէր ուզում. սակայն ձերբակալեց նրան (Ռուփինոսին) և պահեց հսկողության տակ։ Նա և իր ամբողջ բանակը գիշեր և ցերեկ բոլոր միջոցներով կռվեցին Ամիդի դեմ և փայտյա (բերդ) կառուցեցին պարսպի դիմաց, սակայն Ամիդի բնակիչները (տեսնելով այն), ավելի

---

[69] Միջագետքի հնագույն կենտրոններից մեկը, ասուրա-բաբելական աղբյուրներում Ամեդու քաղաքը, այժմ կոչվում է Դիարբեքիր։

[70] «Անգեղտուն ասորական բնագրում անվանված է Agil։ Ամիդի հյուսիսում է գտնվում։ Ասուրա-բաբելական աղբյուրների purulumzi երկիրը և ուրարտական Arme երկրի կենտրոնական մասը՝ Ingalawa՝ հայերեն Անգղ գավառը՝ համանուն քաղաքով։ 160 թ. մոտերքը Ծոփքի Արկաթիաս թագավորը խլեց այս գավառը Մեծ Հայքից և միացնելով Ծոփքին՝ դարձրեց իր թագավորության կենտրոնը։ Անգղը վերանվանվեց Արկաթիակերտ և հռչակվեց իբրև մայրաքաղաք, իսկ գավառը կոչվեց նաև Մեծ Ծոփք։ Ծոփքի թագավորության վերացումից հետո (93 թ.), երբ այն վերամիացվեց Մեծ Հայքին, Անգեղ-տունը մտավ Աղձնյաց բդեշխության կազմում։ Այնուամենայնիվ, հայերը Անգեղտունը շարունակում էին կոչել Մեծ Ծոփք»։ Տե՛ս Ս. Երեմյան, Հայաստանը..., էջ 35։

[71] «Ծոփաց կողմն (Չորրորդ Հայք)։ Մեծ Հայքի 2-րդ նահանգը, բաժանված էր 8 գավառների և ուներ 15890 կմ² տարածություն։ Այս նահանգը ընդգրկում էր հելլենիստական ժամանակաշրջանի Ծոփաց թագավորության տարածքը, ուստի կոչվում էր Ծոփաց կողմն։ 387 թ. հետո հիշյալ նահանգի տերիտորիան բաղկացած էր հինգ նախարարական տերություններից՝ սատրապիաներից, որոնք բյուզանդական օրենսդրական աղբյուրներում անվանվում են gens, այսինքն՝ «ազգեր»։ Հուստինիանոս Ա-ի 536 թ. Նովելայով Ծոփաց կողմը դառնում է առանձին պրովինցիա՝ Չորրորդ Հայք (Armenia Quarta) անունով»։ Տե՛ս Ս. Երեմյան, Հայաստանը..., էջ 57։

[72] Այստեղ նկատի ունի Մծբինի շրջակայքը։

բարձրացրին պարիսպը։ Եվ երբ պարսիկները բերդ կանգնեցրին պարսպի դիմաց և այնտեղից սկսեցին խոյերով հարվածել պարիսպը, մեծ չափով վնասվեց և նոր կառուցված մասը քանդվեց, որովհետև դեռ չէր ամրացել, ուստի փլվեց։ Բայց ամիդցիները պարսպից անցք բացեցին (փայտյա) բերդի տակ։ Դրգված հողը գաղտնապես ներս տարան, և այդ աշխատանքը անելիս, նրանք բերդը հենեցին գերաններին, և այսպես, բերդը շարժվեց և փուլ եկավ։

51. Երբ Կավատը գտավ, որ չի կարող տիրել քաղաքին, նա արաբների թագավոր Նուղմանին[73] իր բանակով ուղարկեց, որ գնա հարավ Խառանի շրջակայքը։ Պարսկական բանակի մի մասը առաջացավ մինչև Կոստանտինա կամ Տելլա[74] քաղաքը, և նրանք կողոպտում, թալանում և ամայացնում էին ամբողջ (շրջանը)։ Երկրորդ Թեշրին (նոյեմբերի 503 թ.) 19-ին Տելլայի դուքս Օլիմպիոսն ու Մելիտինեի դուքս Եվգենիոսը որոնք եկել էին այդ ժամանակ իրենց զինվորներով, դեմ դուրս եկան և կոտորեցին պարսիկներին, որոնց գտան Տելլայի մոտակա գյուղերում։ Եվ երբ ուզում էին քաղաք վերադառնալ, նրանցից մեկն ասաց, որ իրենցից ոչ հեռու ձորերից մեկում կա 500 մարդ (պարսիկներ)։ Նրանք պատրաստվում էին նրանց դեմ գնալ, սակայն իրենց (դուքսերի) հետ եղած հռոմ զինվորները ցրվեցին, որպեսզի կողոպտեն մեռյալներին, և որովհետև գիշեր էր, Օլիմպիոսը հրամայեց կրակ վառել բլրի բարձունքին և հնչեցնել շեփորները, որպեսզի նրանք, որոնք ցրված էին, կարողանան միանալ իրենց։ Սակայն պարսիկ զորավարները[75], որոնք բանակել էին Տելլ-Բեշմա[76] գյուղում, երբ տեսան կրակի լույսը և լսեցին շեփորների ձայնը, նրանք զինվեցին հնարավորին չափ և ելան նրանց դեմ։ Երբ հռոմների հեծելազորը տեսավ, որ պարսիկները իրենցից շատ են, փախուստի դիմեցին, սակայն հետևակը փախչել չէր կարող և ստիպված էր կռվել։ Այսպես հավաքվեցին և պատրաստվեցին կռվի, կազմելով, այսպես կոչված, կալունա[77], կամ կրիա

---

[73] Բնագրում արաբների Taïaï-ի թագավոր. խոսքը Նողման 3-րդի կամ Նողման Իբն-ալ-Ասվադի մասին է, որն իշխել է 498—503 թթ. տե՛ս Caussin de Perceval, Essai sur l'histoire des Arabes, t. II, p. 67.

[74] Հույները կոչում են «Կոստանտինա» կամ «Կոստանտիա». Մարդինի և Եդեսիայի մեջտեղը, Դերիկի արևմտյան մասում։

[75] Ասորերեն բնագրում գրված է «մարզպան»։

[76] Մարդինի արևմուտքում՝ Դերիկի մոտ։

[77] «Կալունա» հունարեն բառ է՝ Χελώνη և նշանակում է «կրիա»։

(ռազմական տակտիկան) և կռվեցին երկար ժամանակ։ Եվ որովհետև պարսկական բանակը գերակշռում էր, և դրանց ավելացրած նաև հոներն ու արաբները, ուստի նրանց շարքերը թուլացան, մատնվեցին անկանոնության և խառնվեցին հնծելազորի հետ, կոխկրտվեցին և ճզմվեցին արաբների ձիերի սմբակների տակ։ Հոռոմներից շատերը սպանվեցին, իսկ մնացածները դերի ընկան։

52. Ամսի 26-ին Նումանը հարավից եկավ և մտավ Խառանացվոց երկիրը, ամայացրեց, կողոպտեց և ամբողջ Խառանի[78] շրջակայքից (վերցրեց) հոտերն ու ունեցվածքը և մարդկանց էլ գերի տարավ։ Ամայացնելով, կողոպտելով և գերի վերցնելով բոլոր գյուղերից, նա հասավ մինչև Եդեսիա։ Իր հետ դերի տարած մարդկանց թիվը, սպանվածներից բացի 18500 էր, չհաշված անասունները, ունեցվածքներն ու այլ ավերածությունները։ Բոլոր այս մարդիկ գյուղերում էին այն պատճառով, որ խաղողի բերքահավաքի ժամանակ էր, որովհետև ոչ միայն գյուղացիներն էին բերքահավաքի դուրս գալիս, այլ նաև շատ խառանցիներ, եդեսացիներ և սրանք էլ գերի ընկան։ Այս պատճառով (Նումանի արշավանքի) Եդեսիան փակեցին, հսկողություն սահմանեցին, խրամատներ փորեցին, պարիսպը վերանորոգեցին և քաղաքի դարպասները քարերով ամրացրին, որովհետև դրանք փտել էին։ Նրանք ուզում էին նորը դնել և ձողեր պատրաստել գետի հոսանքի դիմաց, որպեսզի այնտեղից ոչ ոք չկարողանա մուտք գործել, սակայն այդ գործի համար բավական երկաթ չունեին, ուստի հրաման եղավ, որ Եդեսիայում ամեն մի տուն պետք է 10 լիտր երկաթ մատակարարեր։ Երբ այս (հրամանը) կատարեցին, գործը գլուխ եկավ։ Երբ Եվգենիոսը տեսավ, որ նա չի կարող բոլոր պարսկական (ուժերին) դիմադրել, վերցրեց իր հետ եղած զորքերին և գնաց այն պահակազորի դեմ, որը գտնվում էր Թեոդոսուպոլսում և ոչնչացրեց այնտեղ եղածներին ու վերագրավեց քաղաքը։

53. Կավատը դեռ շարունակում էր պատերազմել Ամիդի դեմ, ձգտում ու աշխատում էր նորից վերականգնել բերդը, որը վայր էր ընկել։ Նա հրամայեց պարսիկներին դրա (փայտյա) բերդի տակ քարեր և գերաններ լցնել, մազից, բրդից, կտավից շորեր բերել և դրանցից տոպրակներ ու պարկեր պատրաստել, դրանք հողով լցնել և դիզել իրենց պատրաստած բերդի վրա, այնպես որ այն արագորեն բարձրացվի պատի դիմաց։ Ապա ամիդցիները

[78] Այժմ էլ նույն անունով կա և աշխարհիս ամենահին քաղաքներից մեկն է։

պատրաստեցին մի մեքենա, որը պարսիկները անվանեցին «չախչախիչ» որովհետև այն ի դերև հանեց իրենց աշխատանքը և կործանեց իրենց։ Ամիդցիներն այս մեքենայով ահարկու քարեր էին նետում, որոնցից յուրաքանչյուրը 300 լիտրից ավելի էր կշռում, այնպես որ բամբակյա ծածկոցը, որի տակ պարսիկները թաքնվում էին պատառոտվեց և նրանք, որոնք կանգնած էին տակը, ճզմվեցին։ Քարերի անվերջ և անընդհատ տարափով կործանեցին նաև (պարսիկների) խոյը (ռազմական մեքենան), որովհետև ամիդցիները պարսիկներին կարող չէին շատ վնասել միայն հսկա քարերով, քանի որ բամբակյա ծածկոցը միշտ էլ ծածկել էր բերդը։ Պարսիկները ջուր լցրին ծածկոցի վրա, որ այն խոնավ լինի և չվառվի, և (մտածում էին) որ ծածկոցի հաստության պատճառով այն նետերից անխոցելի կլինի, սակայն «չախչախիչ» մեքենայից նետած հսկա քարերը ոչնչացրին և՛ ծածկոցը, և՛ մարդկանց, և՛ զենքերը։ Այսպիսով պարսիկները պարտվեցին և հրաժարվեցին բերդ պատրաստելուց և սկսեցին խորհրդակցել իրենց հայրենիք վերադառնալու մասին, որովհետև 3 ամսվա ընթացքում (քաղաքի) շուրջ նստելիս, իրենցից 50000 մարդ էր կոտորվել՝ օր ու գիշեր տեղի ունեցող մարտերի ժամանակ։ Բայց ամիդցիները վստահ իրենց հաղթանակով, անզգույշ հարձակումներ էին գործում և նախկին ջանասիրությամբ չէին պաշտպանում պարիսպը։ Երկրորդ Քանուն (հունվար) ամսի 10-ին պարսպի պահապանները ցրտի պատճառով մեծ քանակությամբ գինի խմեցին և երբ գիշեր էր, նրանք քնեցին ու թաղվեցին խորը քնի մեջ. նրանցից ոմանք լքեցին իրենց դիրքերը, որովհետև անձրև էր գալիս, և գնացին ներքև իրենց տներում (անձրևից) պաշտպանվելու համար։ Այս անհոգության, ինչպես կարծում ենք, թե՛ դավաճան մատնության պատճառով, ինչպես մարդիկ ասում են, թե՛ որպես աստվածային պատիժ, պարսիկները ելարանների միջոցով գրավեցին պարիսպը, առանց դարպասները բացելու կամ պարիսպը քանդելու։ Նրանք ամայացրին քաղաքը, կողոպտեցին ունեցվածքը, անարգեցին սրբությունը, ծաղրեցին (եկեղեցական) արարողությունը, թալանեցին եկեղեցիները և բնակիչներին էլ՝ ծերունիներից, հաշմանդամներից և թաքնվածներից բացի (մյուսներին) գերի տարան։ Նրանք (պարսիկները) այնտեղ թողեցին 3 հազար մարդկանցից բաղկացած մի պահակախումբ և մնացածը շարժվեց դեպի Շիգարի լեռները[79]։ Այն

---

[79] Կամ Սինջար, գտնվում է Մծբինի հարավում։

պարսիկները, որոնք մնացին, որպեսզի չնեղվեն ամիդցիների նեխած դիակների հոտից, դիակները տարան հյուսիսային դարպասից դուրս, և երկու փոսերի մեջ լցրին։ Հյուսիսային դարպասից տարվածների (դիակների) թիվը 80000-ից ավել էր, բացի նրանցից, որոնց կենդանի վիճակում քաղաքից դուրս հանեցին ու քարկոծեցին, չհաշված նաև նրանց, որոնց դաշունահարեցին բերդի վերևում, որն իրենք էին պատրաստել, (չհաշված) նաև Տիգրիս գետը նետվածներին և կամ տարբեր պայմաններում մեռածներին, որոնց մասին հնարավորություն չունենք պատմելու։

54. Ապա Կավատը թույլ տվեց, որ Ռուփինոսը գնա և պատմի կայսրին եղածի մասին, և նա ամեն տեղ պատմում էր այդ գազանությունների մասին, և այդ տեղեկություններից սարսափել էին Եփրատի արևելքում եղած քաղաքների (բնակիչները) և նրանք պատրաստվում էին փախչել դեպի արևմուտք. հարգելի նվիրակ Հակոբը[80], որը շատ ճառեր է գրել Սուրբ Գրքի անցքերի շուրջ, և գրել բազմաթիվ օրհներգեր ու գանձեր մորեխների ժամանակի մասին, չզլացավ և իրեն պարտականություն համարեց բոլոր քաղաքներին զգուշացնող նամակներ գրել, խնդրելով նրանց, որ հավատան աստվածային փրկության, և համոզեց նրանց չզաղթել։ Անաստաս կայսրն էլ երբ լսեց այս, հոռոմ զինվորների մի մեծ բանակ ուղարկեց քաղաքներում ձմեռելու ու դրանք պահպանելու համար։

Կավատը չէր բավարարվել ստացված ամբողջ ավարից, իր հետ տարած գերիներից, և ոչ էլ հագեցել էր թափված մեծ քանակությամբ արյունից, ուստի դեսպաններ ուղարկեց կայսրին, ասելով որ «ինձ կամ փող ուղարկիր կամ պատրաստվիր պատերազմի»։ Սա եղավ Նիսան (ապրիլ) ամսում։ Կայսրն այնուամենայնիվ չուղարկեց փողը, բայց պատրաստություններ տեսավ վրեժ լուծելու և հատուցում պահանջելու նրանց համար, որոնք մեռան։ Իյար (մայիս) ամսում նա նրա դեմ ուղարկեց երեք զորավարների[81] Արյոբինդոսին, Պատրիկիոսին և Հիպատիոսին և

---

[80] Ծնվել է Եփրատի մոտ՝ Կուրտամում, Սարուգի գավառում, սկզբում եղել է քորեպիսկոպոս նույն գավառի Հավրա քաղաքում։ Այս քաղաքից էլ գրել է իր նամակները։ 519 թ. նշանակվել է Սարուգ գավառի գլխավոր քաղաքի՝ Բատնանի եպիսկոպոս։ Մահացել է 521 թ.։ Նա միաբնակ է եղել և հայ եկեղեցում խոշոր հեղինակություն ունեցել. դեռ վաղ շրջանից նրա ճառերից շատերը թարգմանվել են նաև հայերեն։ Տե՛ս R. Duval, La Litterature Syriaque, Paris, 1907, pp. 352—354.

[81] Զինվորների մեծ „Risa Khaïluta".

այլ շատ զորագլուխների[82]։ Արյոբինդոսը իջավ դեպի ցած և գնաց ամրացավ Դարայի և Ղամուդայի մոտ, Մծբին քաղաքի դեմ, իր հետ ունենալով 12000 մարդ։ Պատրիկիոսն ու Հիպատիոսը ամրացան 40000 մարդով Ամիդի դիմաց, որպեսզի այնտեղից դուրս վտարեն պարսիկ պահակախմբին։ Այս ժամանակ դուրս եկավ նաև Ապպիոն հյուպարքոսը և բնակվեց Եդեսիայում, որպեսզի կարողանա սնունդ մատակարարել բյուզանդական բանակներին։ Քանի որ հացագործները չէին հասցնում բավարար չափով հաց թխել, նա հրամայեց, որ Եդեսիայի բոլոր ընտանիքներին ցորեն տան, որպեսզի նրանք իրենց հաշվին, զինվորների համար հաց թխեն։ Առաջին իսկ անգամ (օրը) եդեսացիները 630000 մոդի հաց թխեցին։

55. Երբ Կավատը տեսավ, որ Արյոբինդոսի հետ եղածները քանակով քիչ էին, նա նրա դեմ ուղարկեց իր հետ Շիգարում եղած 20000 պարսիկ զինվորներին, սակայն Արյոբինդոսը երկու անգամ կոտորեց նրանց մինչև որ նրանց քշեց Մծբինի դարպասները, և փախստականներից շատերը երբ փորձում էին դարպասից ներս մտնել, հեղձամաղձուկ եղան։ Թամմուզ (հուլիս) ամսում հոներն ու արաբները միացան պարսիկների հետ, որպեսզի Կոստանդինի գլխավորությամբ գնան նրա (Արյոբինդոսի) դեմ։ Երբ նա (Արյոբինդոսը) լրտեսների միջոցով իմացավ այդ մասին, Կալլիոպիոս Հալեբցուն ուղարկեց Պատրիկիոսի և Հիպատիոսի մոտ, ասելով, որ «եկեք ինձ մոտ և օգնեցեք ինձ, որովհետև (պարսիկների) մի մեծ բանակ գալիս է իմ դեմ»։ Նրանք սակայն չլսեցին նրան և մնացին իրենց տեղերում՝ Ամիդի մոտ։ Երբ պարսիկները եկան Արյոբինդոսի բանակի դեմ, նա (Արյոբինդոսը) նրանց հետ պատերազմել չէր կարող, ուստի թողեց իր բնակատեղը և փախավ Տելլա և Եդեսիա, իսկ նրա ամբողջ ունեցվածքը նրանք (պարսիկները) թալանեցին ու տարան։

56. Պատրիկիոսի և Հիպատիոսի զինվորները (մինչ այդ) մեծ ծախսերով փայտից երեք աշտարակ պատրաստեցին, որեպզի Ամիդի պարիսպներից ներս մտնեն, և որպեսզի դրանք ոչնչով չվնասվեն, պատեցին երկաթով, սակայն երբ իմացվեց սահմանի վրա պատահածի մասին, նրանք այրեցին աշտարակներն և սկսեցին հետապնդել պարսիկներին, բայց նրանց չգտան։ Զորագլուխներից մեկը, որի անունը Փարազման էր և մեկ ուրիշը՝ Թեոդոր անունով, խորամանկությամբ դեպի Ամիդ ուղարկեցին

---

[82] Madbarnà զորագլուխ, առաջնորդ, դատավոր, կառավարիչ։

ոչխարների մի հոտ, իսկ իրենք, իրենց զինվորներով դարան մտան։ Երբ պարսիկները Ամիդից տեսան ոչխարների հոտը, իրենցից մոտ չորս հարյուր ընտրյալ մարդ հարձակվեցին (ոչխարներին) բերելու, սակայն դարան մտած հոռոմները դուրս եկան և կոտորեցին նրանց, ղեկավարին էլ կենդանի (գերի) բռնեցին, որը խոստացավ (ազատվելու դեպքում) Ամիդը հանձնել նրանց. և այդ պատճառով էլ այնտեղ վերադարձան Պատրիկիոսն ու Հիպատիոսը, բայց երբ այդ մարզպանը չկարողացավ իր խոստումը կատարել, որովհետև քաղաքի ներսում եղածները չհամաձայնվեցին, ուստի ստրատելատը[83] հրամայեց նրան ցըցահարել։

57. Պարսկաստանի արաբները առաջացան մինչև Խաբուր[84], և Կալլինիկայի[85] դուրս՝ Տիմոստրատոսը դուրս եկավ նրանց դեմ և ոչնչացրեց նրանց։ Հոռոմների երկրում ապրող արաբները նույնպես, որոնք կոչվում էին տաղլաբիտներ[86], գնացին Խիրտա[87] Նումանի մայրաքաղաքը և գտան ուղտերի մի կարավան, որը գնում էր իրեն (Նումանի) մոտ։ Նրանք հարձակվեցին, նրանց կոտորեցին և ուղտերին վերցրին, բայց Խիրտայում չմնացին, որովհետև այն գտնվում էր անապատի խորքում։

Նորից Աբ (օգոստոս) ամսին պարսկական ամբողջ բանակը՝ հոնական, քուդիշական[88] ու հայկական զորքերի հետ հավաքվեցին ու եկան Օպատայի[89] դեմ։ Պատրիկիոսն ու իր զորքերը երբ լսեցին, վեր կացան ու գնացին նրանց դեմ, և մինչ հոռոմները ճանապարհին էին, և չէին պատրաստվել մարտի, պարսիկները

---

[83] Զորապետ, զորագլուխ։ Կազմված է հունարեն στρατός «բանակ» և ἐλαύνω «վարել» բառերից։ Տե՛ս Հ. Աճառեան, Հայերեն արմատական բառարան, հատ. 6, Երևան, 1932, էջ 461։

[84] Χαβώρας, 'Αβώρας արաբ. Alkhabur: Այժմ՝ Խաբուր-սու, Մեծ Հայքի սահմանն էր Տիգրիսի հովտում։

[85] Այժմյան Ar-RaKKah քաղաքն է։

[86] «Բենու Տաղլաբահ»-ները Բեկր-Իբն-Վայելի մեծ ցեղի առաջնորդող ճյուղերից էր, որոնք հարավային Կինդահ ցեղի հետ դաշնակցելով, գրավել էին Սիրիայի անապատի մեծ մասը։

[87] Արաբական լախմիտ թագավորության մայրաքաղաքը։ Տե՛ս Caussin de Perceval, Essai sur l'histoire des Arabes, t. II. p. 1.

[88] Լեռնային ցեղեր։

[89] Նյոլդեկեն գտնում է, որ Յակուտի նկարագրած «Al-Fudain» գյուղն է, որը գտնվում էր Խաբուր գետի ափին, Մակիսինի և Կարկիսիայի միջև։ Սակայն Հոֆմանը գտնում է, որ այն Տելլ Արագն է։ Տուր-Ղաբդինի՝ Կաֆր-Ճոզի հյուսիս-արևմուտքում։ Տե՛ս W. Wright, The Chronicle of Joshua, p. 46.

պատահեցին առաջապահներին, հարձակվեցին նրանց վրա, և երբ հարձակման ենթարկվածները վերադարձան, վախն ընկավ նրանց զինվորների մեջ, և այլևս մարտի չսպասեցին ու առաջինը փախավ Պատրիկիոսը, նրա հետևից էլ իր զորքը։ Նրանք անցան Եփրատը և ապաստանեցին Շեմիշատ[90] քաղաքում։ Այս մարտում Նումանն էլ՝ պարսիկ արաբների թագավորը, վիրավորվել էր։ Հոռոմների զորապետներից մեկը, որի անունը Պետրոս էր, փախավ Աշպարին[91] ամրոցը, և երբ պարսիկները պաշարեցին ամրոցը, բնակիչները վախեցան նրանցից ու հանձնեցին նրան. պարսիկները նրան գերի տարան։ Նրանք սպանեցին նրա (Պետրոսի) հետ եղած հույն զինվորներին, բայց ամրոցի մարդկանց ոչ մի վնաս չհասցրին։

58. Պարսիկների թագավոր Կավատը մտածում էր գնալ Արյոբինդոսի դեմ՝ Եդեսիա, որովհետև արաբների թագավոր Նումանը այդ էր պահանջում իր կարավանի հետ պատահածի համար։ Բայց Նումանյան Խիրտայի ցեղապետներից մեկը, որը քրիստոնյա էր, պատասխանեց և ասաց. «Թող ձերդ մեծությունը իզուր չգնա Եդեսիայի դեմ պատերազմելու, որովհետև կա Քրիստոսի ստույգ խոսքը, որին մենք պաշտում ենք, ըստ որի ոչ մի թշնամի չի տիրանալու նրան (Եդեսիային)»։ Երբ Նումանը լսեց այն, երդվեց, որ նա Եդեսիայում ավելի վատը կանի, քան Ամիդում, և ասաց ամբարիշտ խոսքեր։ Եվ Քրիստոս դրա վրա ցույց տվեց իր հրաշքը, որովհետև ճիշտ այն ժամանակ, երբ նա (Նումանը) ամբարշտացավ, իր գլխի վրա ստացած վերքը ուռեց և ամբողջ գլուխը այտուցվեց, և նա վեր կացավ ու գնաց պատերազմելու։ Երբ Տելլա հասավ, տեղավորվեց դրա (քաղաքի) դիմաց, և հրեաները որոնք այնտեղ էին, մտածում էին քաղաքը հանձնել իրեն։ Նրանք իրենց սինագոգի աշտարակում, որն իրենց էր հանձնված հսկելու, անցք բացեցին և պարսիկներին լուր ուղարկեցին, որ նրանք էլ իրենց կողմից փորեն և մտնեն

---

[90] Սամոսատ քաղաքը։ Շամուշատ- Σαμόσατα, Samosata (Ptol. 14, 8) Կոմագենե թագավորության կենտրոնը (այժմ՝ Սումեյսատ) ասուրա-բաբելական արձանագրություններում կոչվում է Kummaha անտիկ շրջանում եղել է Commagenae, որի անունով էլ կոչվում է ամբողջ երկիրը։ Շամուշատ անունն այս քաղաքը ստացել է ի պատիվ Շամէս Ա թագավորի (Samos, I, 240 թ. մոտերքը) Երուանդունի դինաստիայից»։ Տե՛ս Ս. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, էջ 73։

[91] Աշպարին կամ Սիֆրիստ՝ ամրոց։

(քաղաքը)։ Սա հայտնի դարձավ կոմիս[92] Պետրոսին, որը դերության մեջ էր, և նա համոզեց իր հսկողներին, որ իրեն թույլ տան մոտենալ պարսպին, ասելով, որ ինքը շորեր և տարբեր իրեր է թողել քաղաքում և ցանկանում է տեղլացիներին խնդրել, որ դրանք հանձնեն իրեն։ Պահապաններն իր խնդրանքի համաձայն թույլ տվեցին մոտենալ։ Նա պարսպի վրա կանգնած զինվորներին ասաց, որ կանչեն կոմիս Լեոնտիոսին, որին այդ ժամանակ վստահված էր քաղաքի ղեկավարությունը, նրանք կանչեցին նրան և զորապետներին։ Պետրոսը նրանց հետ հունարեն խոսեց և բացահայտեց հրեաների դավաճանությունը։ Որպեսզի իր կատարած գործը հայտնի չլինի պարսիկներին, նա նրանցից խնդրեց, որ իրեն մի զույգ հագուստ բերեն։ Սկզբում ձևացրին, որ նրանից նեղացել են, ապա պարսպից ցած գցեցին մի զույգ հագուստ, որովհետև իսկապես էլ նա հագնելու շորի կարիք ուներ։ Հետո նրանք պարսպից իջան և ձևացնելով, որ ոչինչ չգիտեն հրեաների դավաճանության մասին, գնացին (պարըսպի) շուրջը և ստուգեցին ամբողջ պարսպի հիմքերը, ցույց տալու համար, թե արդյո՞ք դրանք ամրացման կարիք ունեն։ Այդ կատարեցին Պետրոսի համար, որպեսզի պարսիկները չիմանան, որ նա է բացել գաղտնիքը, և նրա հետ ավելի վատ չվարվեն։ Ի վերջո, նրանք եկան այնտեղ, որտեղ հրեաները հսկում էին և գտան, որ այն փորված է ու նրանք աշտարակի կենտրոնում մի մեծ անցք էին պատրաստել, այնպես, ինչպես իրենց ասել էին։ Երբ հոռոմները տեսան, թե ինչ կար այնտեղ, նրանք մեծ բարկությամբ լցվեցին նրանց դեմ, ամբողջ քաղաքը շրջեցին և սպանեցին այն բոլոր հրեաներին որոնց գտան՝ տղամարդկանց և կանանց, ծերերին և երեխաներին։ Այսպես մի քանի օր շարունակ, և միայն Լեոնտիոսի հրամանի և երանելի Բար Հագագի խնդրանքով դադարեցին նրանց սպանելուց։ Նրանք օր ու գիշեր զգուշությամբ հսկում էին քաղաքին և սուրբ Հադադը անձամբ շրջում և այցելում էր նրանց, աղոթում և օրհնում նրանց համար, գովում նրանց զգուշությունը քաջալերում ու սուրբ ջուր սրսկում նրանց և քաղաքի վրա։ Նա շրջագայելիս իր հետ էր տանում հաղորդությունը, որպեսզի նրանց տեղում հաղորդի, և դրա համար ստիպված չլքեն իրենց դիրքերը և ցած չիջնեն պարսպից։ Նա համարձակ գնաց (նաև) պարսիկների թագավորի մոտ, խոսեց ու հանդարտեցրեց նրան։

---

92 Κόμης, Comes՝ կոմս։

Երբ Կավատը տեսավ այս մարդու արժանիքն ու համոզվեց հոռոմների զգուշության վրա, զգաց, որ իր և իր զորքի համար ավելորդ էր մնալ Տելլայի մոտ, նախ և առաջ նրա համար, որ սնունդ չկար ամբողջովին ամայացված շրջապատում, և երկրորդ՝ վախենում էր, որ հոռոմ զորավարները կարող են ի մի համախմբվել և իր դեմ դուրս գալ։ Այս պատճառով նա արագորեն շարժվեց դեպի Եդեսիա և քսան օր մնաց Գալլաբ գետի[93] մոտ, որը տարբեր ձևով՝ անվանվում էր նաև Մարական։

59. Իր զորքերից մի քանի առավել հանդուգները կտրեցին, անցան շրջանը և ամայացրին այն։ Իլուլ (սեպտեմբեր) ամսի 6-ին եդեսացիք քանդեցին բոլոր այն վանքերն ու իջևանատները, որոնք պարսպի մոտ էին, այրեցին Կեֆար Սելեմ[94] գյուղը, որը կոչվում էր նաև Նեգբաթ։ Նրանք կտրատում էին պարտեզների ու այգիների ցանկապատերը, որոնք (պարսպի) շրջապատում էին գտնվում և դրանց մեջ եղած ծառերը։ Բերեցին մարտիրոսների մասունքները (եկեղեցիներից), որոնք քաղաքից դուրս էին գտնվում. (ռազմական) մեքենաներ տեղավորեցին պարսպի վրա և քուրձերով փաթաթեցին (պարսպի վրայի) դիտակետերը։ Այս նույն ամսի 9-ին Կավատը պատգամ ուղարկեց Արյոբինդոսին ասելով, որ նա պետք է կամ իր մարզպանին ընդունի քաղաքում և կամ դաշտ դուրս գա, որովհետև նա ցանկանում է խաղաղության դաշինք կնքել նրա հետ։ Նա համենայն դեպս գաղտնի հրամաններ տվեց իր զորքերին, որ եթե Արյոբինդոսը թույլատրի իրենց քաղաք մտնել, ապա նրանք (անմիջապես) պետք է վերադառնան ու գրավեն (մեծ) դարպասն ու մուտքը, մինչև որ ինքը նրանցից հետո կգա և կմտնի, և եթե նա (Արյոբինդոսն) ինքը դուրս գա, ապա նրանք պետք է դարան մտնեն ու նրան կենդանի (բռնեն) ու բերեն իր մոտ։ Բայց, որովհետև Արյոբինդոսը վախենում էր նրանց թույլ տալ քաղաք մտնելու, հետևաբար ինքը դուրս եկավ քաղաքից ոչ հեռու ս. Սարգիս եկեղեցու մոտ։ Նրան դիմավորեց Բավինը, որ աստաբիտ (սպահապետն) էր[95], այսինքն պարսիկների բանակի հրամանատարն[96] էր և ասաց

---

[93] Այս գետը գտնվում է Եդեսիա քաղաքի արևելքում։

[94] Եդեսիայի արևելյան պարսպի մոտ էր գտնվում նաև այս գյուղը։

[95] Ասորերեն այս բառը պարսկերենի աղավաղված ձևն է և համապատասխանում է հայկական սպարապետ, զորապետ ձևին։ Այս մասին տե՛ս Հ. Աճառեան, Հայերեն արմատական բառարան, հատ. Զ, էջ 383։

[96] Զորավար, զինվորական բարձրաստիճան պաշտոնյա։ Տե՛ս L. Bréhier. Les institutions de l'empire Byzantin, Paris, 1949, p. 101.

Արյոբինդոսին. «Եթե ուզում ես խաղաղություն կնքել, տուր մեզ 10000 ոսկի և դաշինք կնքիր մեզ հետ, որպեսզի ըստ սովորության ամեն տարի փողի այդ գումարը ստանանք»։ Արյոբինդոսը խոստացավ 7000 ոսկի տալ, բայց նրանք չհամաձայնվեցին և նրա հետ վիճեցին առավոտից մինչև ժամը 9-ը, և որովհետև նրան խաբելու առիթ չգտան, հսկող հռոմ զինվորների պատճառով, և բացի այդ, Նումանի հետ նման դեպք պատահելուց հետո վախենում էին Եդեսիայի դեմ կռվելուց, նրանք Արյոբինդոսին թողեցին Եդեսիայում ու գնացին Խառանի դեմ կռվելու, իսկ բոլոր արաբներին նրանք ուղարկեցին Սերուգ[97]։ Սակայն Ռիփիթը, որը Խառանում էր, գաղտնի դուրս եկավ քաղաքից և հարձակվեց նրանց վրա. նրանցից 60 հոգու սպանեց և կենդանի գերի վերցրեց հոների ղեկավարին։ Եվ որովհետև սա հայտնի անձնավորություն էր և մեծ պատիվ ուներ պարսիկների թագավորի մոտ, խոստացավ չպատերազմել խառանցիների հետ, եթե նրան կենդանի վերադարձնեն, և որովհետև նրանք վախենում էին կռվելուց, ուստի տվեցին հոնին, և նրա հետ որպես նվեր ուղարկեցին նաև 500 ոչխար և այլ իրեր։

60. Պարսիկ արաբները, որոնք Սերուգ էին ուղարկվել, հասան մինչև Եփրատ, ամայացնելով, գերի վերցնելով և կողոպտելով այն ամենը, ինչ կարող էին։ Պատրիկիոսը՝ հույն զորապետներից մեկը, իր որդի՝ Վիտալիանոսի հետ արևմուտքից գալիս է պատերազմելու։ Նա հանդուգն էր ու անվախ, որովհետև նախապես պատահածներին ականատես չէր եղել։ Երբ (Եփրատ) գետն անցավ, հանդիպեց պարսիկ զորապետներից մեկին, կռվեց և կոտորեց նրա հետ եղած պարսիկներին. պատրաստվեց, որ գնա Եդեսիա, սակայն իմացավ, որ Կավատը շրջապատել է քաղաքը (ուստի ետ) վերադարձավ, անցավ դետը և կանգ առավ Շեմիշատում (Սամոսատում)։ Այս ամսի 17-ին, որը չորեքշաբթի էր, մենք տեսանք, որ Քրիստոսի խոսքերն՝ Աբգարին տված խոստումը, իսկապես կատարվեց, որովհետև Կավատը հավաքեց ամբողջ իր ուժն ու Եփրատ գետն անցնելով, եկավ ու հաստատվեց Եդեսիայի դեմ։ Իր բանակատեղին տարածվում և անցնում էր ս. Կոզմասի և ս. Դամիանոսի եկեղեցիներից, պարտեզներից,

---

97 Սերուգի շրջան, որի գլխավոր քաղաքն էր Բատնանը. գտնվում էր Եդեսիայի արևմուտքում, այն խաչմերուկում, որն Եդեսիայից ու Խառանից արևմուտք էր տանում։

սուրբ Սարգսի եկեղեցուց[98] և Բեկին գյուղից[99] և (հասնում) մինչև Խոստովանողների եկեղեցին, իսկ (բանակատեղիի) լայնքը հասնում էր Սեուինի[100] զառիվայրը։ Զորքերի այս բազմությունը Եղեսիան պաշարեց մեկ օրում, բացի այն ջոկատներից, որոնց թողել էր բլուրներում և բարձունքների վրա (քաղաքի արևմտյան մասում)։ Փաստորեն ամբողջ դաշտը լի էր նրանցով։ Քաղաքի դարպասները բաց էին, բայց պարսիկները չէին կարողանում ներս մտնել՝ Քրիստոսի օրհնության պատճառով։ Ընհակառակը, վախը ընկել էր նրանց մեջ, նրանք մնացին իրենց դիրքերում և ոչ ոք նրանց հետ մարտի չմտավ առավոտից մինչև ժամը 9-ը։ Հետո ոմանք քաղաքից առաջ անցան և կռվի բռնվեցին նրանց հետ և սպանեցին շատ պարսիկների, նրանցից միայն մեկն ընկավ։ Կանայք ևս ջուր էին բերում պարսպից դուրս, որպեսզի նրանք, որոնք կռվում էին, կարողանային խմել. փոքր երեխաները ևս քարեր էին արձակում պարսատիկներից։ Այսպես, մի խումբ մարդիկ, որոնք քաղաքից դուրս էին եկել, նրանց ետ քշեցին և հեռացրին պարսպից, որովհետև նրանք (պարսպից) մի նետի հեռավորության վրա էին գտնվում, և գնացին ու ամրացան Կուբբե[101] գյուղի մոտերքում։

61. Հաջորդ օրը Արյոբինդոսը ևս քաղաքի մեծ դարպասից դուրս եկավ, և մինչ նա կանգնած էր պարսկական բանակի դիմաց, լուր ուղարկեց Կավատին՝ ասելով. «Այժմ փորձից տեսնում ես, որ քաղաքը քոնը չէ, և ոչ էլ Անաստասինը, այլ Քրիստոսի քաղաքն է, որն օրհնեց այն, և դիմադրեց քո զորքերին, որպեսզի չկարողանաք տիրել դրան»։ Կավատը լուր ուղարկեց նրան ասելով. «Պատանդներ տուր ինձ, որ իմ հետևից դուրս չեք գա, երբ պատրաստվեմ մեկնելու, և ինձ ուղարկիր այն մարդկանց, որոնց երեկ վերցրիր, և այն ոսկին, որ դու խոստացար, և ես կհեռանամ քաղաքից»։ Արյոբինդոսը նրան տվեց կոմիտ Վասիլին և այն մարդկանց որոնց նա վերցրել էր նրանից, որոնք 14-ն էին, և նրա հետ պայմանագիր կնքեց, որ 12 օրից հետո 2000 լիտր ոսկի կտա։ Կավատը դուրս բերեց բանակը և

---

98 Գտնվում էր հավանաբար ս. Կոզմաս և ս. Դամիանոս եկեղեցիների հարավ-արևելյան մասում։

99 Այս գյուղը գտնվում է, հավանաբար. ս. Սարգիս եկեղեցու հարավ կամ հարավ-արևելյան մասում՝ Խառանի ուղղությամբ։

100 Եդեսիայից ոչ հեռու ղարիթափ էր։

101 Եղեսիայի հարավ արևելյան մասում՝ Խառանի ուղղությամբ։

գնաց, բանակեց Դահբանայում[102]։ Սակայն նա մինչև նշանակված ժամկետը չսպասեց և հաջորդ օրն իսկ իր մարդկանցից Հորմիզդ անունով մեկին ուղարկեց ու հրամայեց նրան բերել 300 լիտր ոսկի։

Արյոբինդոսն իր մոտ կանչեց քաղաքի մեծամեծներին, որպեսզի մտածեն, թե ինչպես հավաքեն այդ փողը։ Սակայն նրանք երբ տեսան, որ Հորմիզդը շտապ եկել էր, նրանք Քրիստոսի հավատքով ավելի ամրապնդվեցին համարձակվեցին ու ասացին Արյոբինդոսին. «Մենք փող չենք ուղարկի այդ նենգ մարդուն, քանի որ ինքը ետ կանգնեց իր խոսքից և չսպասեց մինչև քո նշանակած օրը, ուստի երբ փողը ստանա կգնա և կխաբի մեզ։ Մենք հավատում ենք, որ եթե նա մեզ հետ մարտի մեջ մտնի, ամոթով կմնա, որովհետև Քրիստոսը կանգնած է մեր քաղաքի դիմաց»։ Ապա Արյոբինդոսը քաջալերվեց և լուր ուղարկեց Կավատին ասելով, որ «այժմ դիտենք, որ դու թագավոր չես, որովհետև այն, որ մի խոսք է ասում և ետ է կանգնում դրանից, և խաբում է՝ նա թագավոր չէ։ Քանի որ դու խաբեցիր, ե՛տ ուղարկիր կոմիս Վասիլին և ինչ որ կարող ես կատարիր»։

62. Այսա Կավատը կատաղեց, և զինեց իր փղերին և մեծ զորքով եկավ Եդեսիայի դեմ կռվելու՝ իլուլ (սեպտեմբեր) ամսի 24-ին չորեքշաբթի օրը։ Բոլոր կողմերից պաշարեց քաղաքը, ավելի մեծաթիվ զորքով, քան նախորդ անգամ, երբ դարպասները բաց էին։ Արյոբինդոսը հրամայեց իր զորքին մարտի մեջ չմտնել, որպեսզի նրանից չխաբվեն։ Սակայն ինչ որ գյուղացիներ, որոնք քաղաքում էին, դուրս եկան նրա դեմ պարսատիկներով և կոտորեցին զգեստավորվածներից[103] շատերին, իսկ իրենցից ոչ մեկը չընկավ։ Նրա լեգեոնները բավական վստահ էին, որ կմտնեն քաղաք, բայց երբ մոտեցան դարպասներին, փոշու ամպ բարձրացրած պատնեշի նման, նրանք ընկճվեցին, ճնշվեցին և ետ վերադարձան։ Համենայն դեպս, այրուձիի արագությունից պարսավարները խառնվեցին նրանց հետ, և չնայած պարսիկները նետահարում էին, հոները շողացնում էին լախտերը և արաբները նիզակներն էին ուղղում իրենց, սակայն նրանք ոչ ոքի վնասել չկարողացան, փղշտացիների նման, որոնք Սամսոնի դեմ

---

[102] Գտնվում է Եդեսիայի հարավում, Խառանի այն կողմում՝ Ar-RaKKah-ի ճանապարհի վրա։

[103] «Զգեստավորված» էին կոչվում պարսկական բանակում այն զինվորները, որոնք զրահավորված էին։

գնացին և թեև (փղշտացիները) բաղում էին և զինված, բայց չկարողացան սպանել նրան, որովհետև (Սամսոնը) առանց զենքի, ավանակի մի ծնոտի ոսկորով նրանցից հազարին սպանեց[104]։ Ճիշտ այդպես էլ պարսիկները, հոներն ու արաբները իրենց ձիերով ընկնում էին պարսատիկների քարերից, իսկ իրենք չկարողացան նույնիսկ մեկին սպանել։ Հետո, երբ տեսան, որ չեն կարող քաղաք մտնել, ոչ էլ վնասել անզեն մարդկանց, որոնք իրենց հետ էին խառնվել, այրեցին ս. Սարգիս և խոստովանողների եկեղեցիները և այն վանքերը, որոնք (պարսպից դուրս) էին մնացել, դրանց թվում և Նեզբատ (գյուղի) եկեղեցին, որոնք քաղաքացիները լքել էին։

63. Երբ ստրատելատ Արյոբինդոսը տեսավ գյուղացիների եռանդը, որոնք ամոթով չթողեցին, և օգնություն ցույց տվեցին, նա հաջորդ օրը (Մեծ) եկեղեցին կանչել տվեց Եզեսիայում եղած բոլոր գյուղացիներին, և որպես նվեր 300 դինար տվեց նրանց։ Կավատը Եդեսիայից մեկնեց և գնաց բանակեց Եփրատ գետի մոտ, և ապա դեսպաններ ուղարկեց կայսրի մոտ՝ հայտնելու իր գալու մասին։ Իր հետ եղած արաբներն անցան գետի արևմտյան մասը և կողոպտեցին, գերի վերցրին ու այրեցին այն ամենը, ինչ որ գտան։ Պարսկական այրուձիի մի մասը գնաց Բատնան, և որովհետև (քաղաքի) պարիսպը քանդված էր, նրանք չկարողացան դիմադրել և առանց կռվի հանձնեցին քաղաքը։

64. 815 թ. (504), երբ հոռոմների կայսրն իմացավ պատահածի մասին մագիստրոս Կելլերին ուղարկեց մեծ բանակով։ Լսելով այդ Կավատը շարժվեց Եփրատ գետի երկայնքով, որպեսզի գնա և ամրանա իր երկրում, որը կոչվում էր Բեյթ-Արամայե[105]։ Երբ նա համարյա մոտեցավ Կալինիկոսին[106], իր մարզպաններից մեկին ուղարկեց նրա հետ կռվելու։ Տիմոստրատոս դուքսը նրա դեմ դուրս եկավ և խորտակեց նրա ամբողջ բանակը և նրան էլ (մարզպանին) կենդանի (գերի) բռնեց։ Կավատը մոտեցավ քաղաքին, իր ամբողջ ուժը դուրս բերեց (Կալինիկոսի) դեմ, երդվելով, որ եթե նրան (մարզպանին) չհանձնեն, նա քաղաքի բոլոր բնակիչներին սրից կանցկացնի և

---

104 «Դատավորք», ԺԵ։

105 Արամեացիների երկիր՝ Բաբելոնի հյուսիսում՝ Սելևկիայի և Տիզբոնի միջև։ Ասորիները հետագայում այս անվան տակ հասկանում էին Տիզբոնի կաթողիկոսական թեմերը։

106 Ar-RaKKah.

գերի կտանի։ Դուքսը վախեցավ պարսիկների հսկա բանակից, և նրանց հանձնեց։

65. Երբ մագիստրոս Կելլերը հասավ Մաբբոգ[107], որը Եփրատ գետի ափին էր, տեսավ որ Կավատն իրենից առաջ բանակը տեղափոխել էր, բայց որովհետև ձմեռն էր գալիս, այլևս հնարավոր չէր լինի նրա հետևից գնալ, ուստի նա կանչեց հոռոմ զորավարներին[108], կշտամբեց, որ իրար չեն լսում, ապա նրանց բաժանեց քաղաքների վրա, որպեսզի ձմեռեին այստեղ մինչև որ պատերազմը սկսելու ժամանակը լիներ նորից։

66. Առաջին քանուն (դեկտեմբեր) ամսի 25-ին կայսրից հրաման ելավ, որ ամբողջ Միջագետքից հարկը[109] վերացնում է։ Ամիդում եղած պարսիկները երբ տեսան, որ հոռոմների բանակը իրենցից շատ էր հեռացել, բացեցին Ամիդ քաղաքի դարպասները, դուրս եկան ու մտան այնտեղ, որտեղ ուզում էին, և վաճառականներին ծախեցին պղինձ, երկաթ, կապար, հին շորեր, ինչ որ կար նրա (քաղաքի) մեջ. (ապա) պահեստ կառուցեցին։ Երբ Պատրիկիոսը իմացավ այդ, դուրս ելավ Մելիտինեից, որտեղ նա ձմեռում էր, և եկավ ու բանակ դրեց Ամիդի առաջ։ Բոլոր այն վաճառականներին որոնց գտավ և որոնք այնտեղ տարել էին ցորեն, յուղ, և կամ (գնել) էին նրանցից (ապրանքներ) սպանեց (բոլորին)։ Նա գտավ նաև պարսիկների, որոնց Կավատն էր ուղարկել այնտեղ, ցորեն, ոչխար բերելու համար, կոտորեց նրանց ևս, և վերցրեց այն ամենը ինչ որ կար նրանց հետ։ Երբ Կավատն իմացավ այդ, նրա դեմ ուղարկեց մի մարզպանի, որ վրեժ լուծի նրանից։ Նրանք իրար մոտեցան կռվելու համար, հոռոմները վախեցան հիշելով նախկին պարտությունները, խորհուրդ տվեցին Պատրիկիոսին փախչել, և նա լսեց նրանց։ Խուճապի մեջ չիմանալով ուր են գնում, նրանք հասան Խլատ գետին[110], և որովհետև ձմեռ էր (դետը) վարարած, և հնարավոր չէր այն անցնել, ով որ շտապում էր անցնել, իր ձիու հետ միասին խեղդվեց գետում։ Երբ Պատրիկիոսը տեսավ այդ, խրախուսեց հոռոմներին ասելով. «Ով հոռոմներ, եկեք ամոթով

---

107 Այժմյան Սիրիայի քաղաքներից է, և կոչվում է Մեմբրիջ։

108 Ասորերեն բնագրում գրված է՝ «զորքի պետերին»։

109 Suntalia -սունտալիա-հարկ. ըստ երևույթին «հարկ» ընդհանրապես։

110 «Այժմ՝ «Բաթման Սու»։ Տիգրիսի մեջ ամենից նշանավորը ձախ կողմից նրա մեջ թափվող Բաթման գետն է, իր Խուլփ վտակով։ Բաթման գետը հնում հայտնի էր Քաղիրգ և Նիմֆիոս անուններով»։ Տե՛ս Թ. Հակոբյան, Ուրվագծեր Հայաստանի պատմական աշխարհագրության, էջ 48։

չթողնենք մեր ժողովրդին, և մեր (զինվորական) գործը թողած, չփախչենք մեր թշնամիներից, դեմ գնանք և գուցե կարողանանք չափվել նրանց հետ։ Եվ եթե նույնիսկ մեզանից շատ ուժեղ լինեն, ավելի լավ է պատվով մեռնել սրով. քան թե որպես վախկոտ կորչել՝ խեղդվելով»։ Ապա հոռոմները լսեցին նրա խորհուրդը, և (անանցանելի) գետից էլ բռնադատված, կատաղած վերադարձան պարսիկների դեմ ու նրանց կոտորեցին, իսկ մեծամեծներին կենդանի բռնեցին։ Դրանից հետո նորից նրանք Ամիդի դեմ բանակ դրեցին։ Պատրիկիոսը (մարդ) ուղարկեց և այլ քաղաքներից արհեստավորներ ու շատ գյուղացիներ հավաքեց և հրամայեց նրանց պարսպի հողը փորել և անցք բացել, որպեսզի այն (պարիսպը) թուլանա և փուլ գա։

67. Ադար (մարտ) ամսում, երբ մնացած հոռոմները հավաքվում էին մագիստրոսի հետ գնալու, աստծու կողմից իսկական հրաշք պատահեց, որպեսզի քաջալերվեն և վստահ լինեն իրենց հաղթանակին։ Այդ մասին մեզ հայտնի է Զեվգմայի[111] եկեղեցական հայրերի գրվածքներից։ Որպեսզի չմտածեն, որ ես ինձանից եմ հնարում և կամ սուտ լուրեր եմ լսել ու հավատացել, կհիշատակեմ նրանց նամակից (տողեր), որ մենք ստացանք. այն հետևյալն է.

68. «Լսեք այս հրաշքի և փառավոր Նշանի մասին, որի նմանը չի եղել և որը վերաբերվում է մեզ, ձեզ. և բոլոր հոռոմներին, որովհետև երկրավորներիս համար դժվար է հասկանալ և հավատալ այդ զարմանալի երևույթը։ Բայց այն մենք տեսանք մեր աչքով, շոշափեցինք և մեր շրթներով կարդացինք, ուստի դուք առանց կասկածի պարտավոր եք հավատալ դրան։ Ադարի (մարտ) 19-ին ուրբաթ օրը, մեր Փրկչի սպանման (խաչելության) օրը, Զեվգմա գավառի Ղագար գյուղում մի սագ մի ձու ածեց, որի վրա կային, պարզ, հստակ ընթեռնելի հունարեն տառեր։ (Տառերը) ձվի մասն էին կազմում, երևում ու շոշափվում էին, ճիշտ այն տառերի նման, որ վանականները փորագրում են սկիհների վրա, այնպես որ ցցվածքը կույրերն անգամ կարող են զգալ. այսպես էր այն. ձվի մի կողմը նկարված էր

[111] «Այժմյան Բիրեճիկի մոտ։ «Զեւգմա» քաղաքը. այժմյան Խալֆան գյուղի մոտ նշանավոր գետանցք Եփրատի վրա։ Զեվգմայի գետանցքը հայտնի էր հնագույն ժամանակներից։ Այստեղ էր գտնվում Խալպու քաղաքը, որին տիրելու համար Ուրարտուն կատաղի պայքար էր մղում Ասորեստանի դեմ»։ Տե՛ս Ս. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, էջ 52։

խաչ, որը պտտվում էր ձվի շուրջը և գալիս հասնում գրված հունարեն տառերին։ Նորից մի այլ խաչ էր նկարված (որը պտտվելով) միանում էր դրան, որտեղ որ գրված էր (հունարեն) «կհաղթեն»։ Խաչերն ու բառերը նկարված ու գրված էին իրար տակ։ Եվ չկար ոչ մի քրիստոնյա կամ հրեա, որ տեսնելով այս հրաշքը, անդադար չփառավորեր (աստծուն)։ Բայց ինչ վերաբերում է տառերին, որոնք աստված իր աջ աչով նկարել էր (սագի) ներսում, մենք չենք կարող նմանը արտագրել, որովհետև դրանք չափազանց գեղեցիկ էին։ Ով որ լսի այս (հրաշքի մասին), առանց կասկածի թող հավատա»։ Ահա սրանք են զեվգմացիների նամակի խոսքերը։ Իսկ ձուն, նույն գյուղի մարգիկ տվեցին Արյոբինդոսին։

69. Հոռոմները մեծ բանակ հավաքեցին, ելան, գնացին ու բանակեցին Ռաշլղայն քաղաքի մոտ։ Կավատը նույնիսկ 10000 մարդ ուղարկեց Պատրիկիոսի դեմ։ Նրանք գնացին ու տեղավորվեցին Մծբինում, որպեսզի հանգստանան, իսկ իրենց հոտերն ուղարկեցին Շիգարի լեռներն արածելու։ Երբ մագիստրոսը լսեց այդ, նա Կալլինիկոսի դուքս Տիմոստրատոսին ուղարկեց 6000 ձիավորներով, որոնք գնացին ու հարձակվեցին նրանց (պարսիկների) վրա, որոնք ձիեր էին արածեցնում, կոտորեցին նրանց, ձիերն ու ոչխարները ավար վերցրին ու վերադարձան հոռոմների բանակ՝ Ռաշլղայն (քաղաքը)։ Ապա (նորից) բոլորը միասին դուրս եկան, գնացին ու բանակեցին Ամիդ քաղաքի դեմ՝ Պատրիկիոսի կողքին։

70. Իյար (մայիս) ամսում Կալլիոպիոս Հալեբցին եպարքոս դարձավ։ Նա եկավ ու հաստատվեց Եդեսիայում ու եդեսացիներին ցորեն տվեց, որպեսզի իրենց հաշվին զինվորների համար հաց թխեն։ Այս ժամանակ 850000 մոդի ցորենից (հաց) թխեցին։ Ապպիոնը Ալեքսանդրիա գնաց, որպեսզի այնտեղ էլ զինվորների համար հաց թխեն, և ուղարկեց։

71. Անմիջապես, որ Պատրիկիոսն իր փորած անցքի միջոցով մտավ պարսպի տակ, (հրամայեց) և այն լցրին գերաններով ու կրակ տվեցին, որի պատճառով էլ պարսպի արտաքին մասը թուլացավ ու փուլ եկավ, մինչդեռ ներքին մասը կանգուն մնաց։ Նա մտածեց այդ անցքով շարունակել փորելը և քաղաք մտնել։ Երբ փորեցին անցքն ու հոռոմները սկսեցին մտնել, Ամիդացի մի կին նրանց տեսնելով ուրախությունից անմիջապես բացականչեց. «Հոռոմները քաղաք են մտնում»։ Պարսիկները լսեցին նրա

բացականչությունը և անմիջապես վազեցին ու հարվածեցին առաջին բարձրացողին։ Նրանից հետո բարձրացավ մի Գոտացի Ալդ[112] անունով, որը Խառանում տրիբուն էր եղել, և սա հարվածեց այնտեղ եղած երեք պարսիկներին։ Նրանից հետո ոչ մի հռոմ չբարձրացավ, որովհետև պարսիկներից վախենում էին։ Երբ Ալդը տեսավ, որ ոչ ոք չի բարձրանում, վախեցավ և ետ վերադարձավ, բայց մտածեց իր հետ վերցնել մեռած հռոմի մարմինը, որպեսզի պարսիկները չանարգեն նրան։ Երբ նա տանում էր մեռածին, անցքի մուտքի մոտ պարսիկները նրան ևս հարվածեցին ու վիրավորեցին (ապա պարսիկները) մոտակայքում գտնվող աղբյուրի ջրի ուղղությունը փոխեցին (դեպի անցքը) և խեղդեցին չորս զինյալ հռոմների, որոնք պատրաստվում էին բարձրանալ։ Մնացածը փախան և դուրս եկան այնտեղից։ Պարսիկները քաղաքի ներսից քարեր հավաքեցին ու փակեցին անցքը, ապա մեծ քանակությամբ վերևից (պարսպի) շուրջ հող լցրին և հսկողություն սահմանեցին, որպեսզի (պարսպի) մի այլ մասից անցք չբացեն։ Նրանք (պարսիկները) ամբողջ պարսպի երկայնքով փոսեր փորեցին և դրանք ջրով լցրին, այնպես որ եթե հռոմները մի այլ անցք բացեն, ապա ջուրը հոսի այնտեղ և դրանից էլ նրանք իմանան։ Երբ Պատրիկիոսը մի դասալիքից, որ իր մոտ ցածր էր եկել (պարսպից), այդ իմացավ, հրաժարվեց անցքեր փորելուց։

72. Մի օր, երբ ամբողջ հռոմ բանակը հանգիստ ու խաղաղ էր, հետևյալը կռվի պատճառ դարձավ։ Մի տղա ուղտեր և էշեր էր արածացնում և մի էշ արածելով (հեռացավ) ու մոտեցավ պարսպին. տղան վախեցավ, որ մոտենա պարսպին ու ետ տանի նրան, մի պարսիկ տեսավ, պարսպից պարանով իջավ և այն (էշին) մորթոտեց և ուզում էր ուտելու համար տանել, որովհետև քաղաքում ուտելու միս չկար։ Մի հռոմ զինվոր, որը ծագումով գալիլլիացի էր, քաշեց իր սուրը, ձախ ձեռքով վերցրեց վահանը և վազեց պարսիկի վրա, որ սպանի նրան։ Երբ մոտեցավ պարսպին, նրանք որոնք կանգնած էին պարսպի վրա, մեծ քար գցեցին գալիլիացու վրա և ճզմեցին նրան, իսկ պարսիկը սկսեց պարանով բարձրանալ իր տեղը։ Երբ բարձրացավ պարսպի կեսը, հռոմ սպաներից մեկը, որի առջևից գնում էին երկու վահանակիրներ, մոտեցավ և երկուսի արանքից նետահարեց ու խփեց

112 Հելլադիոս։ Hellad[ios]-Nöldeke, Zeitschrift der Deutschen morgenländischen Gesellschaft, t. 36, 1882, p. 688.

պարսիկին և փոեց նրան գալիլիացու կողքը։ Երկու կողմից էլ բացականչություններ լսվեցին և այդ պատճառով հուզվեցին ու կռվի ելան։ Հռոմների բանակներն ավելի խտացրին քաղաքի շրջապատումը, և նրանցից ընկան 40 մարդ ու վիրավորվեցին 150-ը։ Պարսիկներից, որոնք պարսպի վրա էին, մեռան 9-ը և մի քանիսն էլ վիրավորվեցին, որովհետև դժվար էր նրանց հետ կռվել, մանավանդ որ նրանք պարսպի վերևում էին, և պարսպի երկայնքով իրենց համար փոքր տնակներ էին կառուցել մտել դրանց մեջ, և այնտեղից կռվում էին, դրա համար էլ դրսից նրանք չէին երևում։

73. Մագիստրոսն ու զորապետները մտածեցին, որ չարժե կռվել նրանց հետ, որովհետև նրանց սպանելով, հռոմները հաղթանակ չեն ձեռք բերի, քանի որ պատերազմը բոլոր պարսիկների դեմ էր, և եթե Կավատը պարտվեր, սրանք էլ (շրջապատվածները) կհանձնվեին կամ կոչնչանային իրենց բանտերում։ Ուստի հրամայեցին, որ ոչ ոք չկռվի նրանց հետ, որպեսզի ոչ մի հռոմ չսպանվի կամ վիրավորվի։ Բանակի մեծ մասը սարսափահար էր եղել։

74. Խազիրան (հունիս) ամսում, Կոստանդինը, որ անցել էր պարսիկնշրի կողմը, երբ տեսավ, որ իրենց գործը բարեհաջող չի գնում, փախավ նրանցից, Ամիդից երկու հայտնի կանանց հետ, որոնց Կավատն էր տվել իրեն։ 14 օր նա գիշեր և ցերեկ, իր հետ եղած մի քանիսի հետ, ճանապարհորդեց անմարդաբնակ անապատներում, և հասավ ինչ որ բնակեցված վայր և հայտնեց իր ով լինելու մասին հռոմ արաբներին, և նրանք վերցրին նրան ու բերեցին ամրոցը, որը կոչվում էր Շուրա[113], և այնտեղից էլ նրան ուղարկեցին Եդեսիա։ Երբ կայսրն իմացավ նրա վերադարձի մասին, (մարդ) ուղարկեց նրա հետևից, որ նրան քահանա ձեռնադրեն, և (այա) նրան հրամայեց գնալ ու բնակվել Նիկիայում, և այլևս չերևալ իրեն և չխառնվել (պետական) գործերին։

75. Երբ Կավատը գրավեց Ամիդը, գնաց այնտեղի բաղնիսը և զգաց լողանալու առավելությունը. իր հայրենիք վերադառնալուց անմիջապես հետո, հրամայեց պարսկական բոլոր քաղաքներում բաղնիսներ կառուցել։

Ղադիդ արաբը, որը պարսկական դերիշխանության ներքո էր, իր ամբողջ բանակով հանձնվեց հռոմներին և դարձավ նրանց հպատակը։ Թամմուզ (հուլիս) ամսում, հռոմները նորից

---

113 Այս ամրոցը գտնվում է Ար-Ռակկայից (Ar-RaKKah-ից) վերև։

կովեցին Ամիդում եղած պարսիկների հետ, արաբիայի[114] դուքս Գայնասը նետահարեց նրանցից շատերին։ Երբ օրերը տաքացան, զրահով կովելը հնարավոր չէր, ուստի նա՝ (Գայնասը) զրահի գոտին մի քիչ թուլացրեց, առիթից օգտվելով, նրանք (պարսիկները) Ամիդից բաբանով նետեր արձակեցին և հարվածեցին նրան, և նա մեռավ։ Երբ մագիստրոսը տեսավ, որ Ամիդի առաջ նստելը վնաս է հասցնում իրեն, նա վերցրեց իր բանակը և գնաց դեպի պարսկական երկիրը, թողնելով Պատրիկիոսին Ամիդում։ Արյոբինդոսն ևս վերցրեց իր բանակը մտավ պարսկական Հայաստան, և նրանք հայերից, պարսիկներից 10000 մարդ կոտորեցին և 30000 հազար էլ՝ կանանց և երեխաներին գերի վերցրին, կողոպտեցին և այրեցին շատ գյուղեր։ Երբ ետ շարժրվեցին դեպի Ամիդ, նրանք իրենց հետ բերեցին 120000 ոչխար, եզ, և ձի։ Երբ անցնում էին Մծբինով, հոռոմները դարան մտան, իսկ ավարը հանձնարարվեց մի փոքր խմբի տանել։ Երբ ինչ որ մարզպան տեսավ, որ նրանք թվով քիչ են, զինեց իր բանակը և դուրս եկավ, որ ետ վերցնի այն (ավարը)։ Նրանք փախուստ ձևացրին և պարսիկները ոգևորվելով հետապնդեցին նրանց։ Երբ նրանք բավական հեռացան իրենց ամրություններից, հոռոմները դուրս եկան դարաններից և կոտորեցին նրանց, և ոչ մեկը չկարողացավ փախչել։ Նրանք մոտավորապես 7000 մարդ էին։ Մուշլեկ[115] հայը, որը պարսիկների գերիշխանության ներքո էր, իր ամբողջ ուժով (զորքով) հանձնվեց և դարձավ հոռոմների հպատակ։

76. 816 (505) թիվ։ Փախստականները և նրանք, որոնք ճողոպրել էին սրից և Ամիդում մնացած բնակիչները սաստիկ կարիքի մեջ էին և տառապում էին սովից։ Պարսիկները վախենում էին նրանցից, որ նրանք քաղաքը կհանձնեն հոռոմներին և (դրա համար) նրանք կապկպեցին այնտեղ եղած տղամարդկանց և գցեցին ամֆիթատրոն, որպեսզի սովից ու մշտական շղթանե-

---

114 Նկատի ունի Դամասկոսի շրջակայքում ապրող արաբներին։

115 «Մուշեղ» պետք է լինի։ «Մուշեղը հաթեան Muršili անունից է, որով կոչվել են հաթեան մի քանի թագավորներ։ Ըստ այսմ՝ հայերենի հին ձևն է Մուրշեղ, որ ապա ր-ի անկումով դարձել է Մուշեղ»։ Տե՛ս Հ. Աճառյան. Հայոց անձնանունների բառարան, հատ. Գ, Երևան, 1946, էջ 455։ Հայտնի է հայկական աղբյուրներից «Մուշեղակ, իշխան հայոց. տիրում էր Դ հայոց կողմերում։ Երբ Անաստաս կայսեր Արովբինդ զորավարն արշավեց այն կողմերը, Մուշեղակը վախեցավ և ընդունեց կայսեր հպատակությունը (503)։ Նույն տեղում, էջ 457։ Խոսքը այստեղ նույն Մուշլեկի մասին է։

րից ոչնչանան։ Սակայն կանանց տալիս էին իրենց ուտելիքի մի մասը, որովհետև նրանց հետ կենակցում էին, և բացի այդ, նրանք (կանայք) պետք էին ցորենը աղալու և (հաց) թխելու համար։ Սակայն երբ ուտելիքը պակասեց, նրանք մոռացան նրանց և առանց սննդի թողեցին։ Նրանցից ոչ ոք տարվա ընթացքում օրական մի բուռ գարիից ավելի ոչինչ չստացավ, իսկ միս, գինի և կամ այլ ուտելիքներ բոլորովին չկային։ Եվ որովհետև նրանք շատ վախեցած էին հռոմեներից, ուստի երբեք չէին հեռանում իրենց դիրքերից. իրենց համար փոքր վառարաններ էին պատրաստել պարսպի վրա ու վերև էին (պարսպի) տարել ձեռքի աղացներ և իրենց տեղերում նստած աղում էին մի բուռ գարին, եփում ու ուտում էին։ Նրանք վերև էին բարձրացրել նաև մեծ տաշտեր և տեղավորել ռազմիկների միջև, դրանք լցրել էին հողով, կանաչեղեն էին ցանում և աճեցրածը ուտում։

77. Եթե նկարագրելու լինենք այն ինչ որ կանայք կատարեցին տեղում, մեզանից հետո եկողները կարող են չհավատալ։ Այժմ չկա մեկը, որ չփորձեր իմանալ եղածի մասին, նույնիսկ նրանք, որոնք մեզանից շատ հեռու են գտնվում, լսել են այդ մասին. այսպես, կանայք հանդիպում էին իրար, երեկոները դուրս գալիս քաղաքի փողոցները և ում որ պատահում էին, կին, երեխա կամ տղամարդ, բռնի ուժով նրան տուն էին տանում, սպանում, խաշում կամ տապակում և սալա ուտում։ Այս (գաղտնիքը) հայտնի դարձավ տապակածի հոտից, և երբ այդ իմացավ մարզպանը, որն այնտեղ էր, տանջեց նրանցից շատերին և մահվան դատապարտեց, իսկ մնացածներին խստիվ պատվիրեց նորից չկրկնել և ոչ ոքի չսպանել։ Համենայն դեպս, նա թույլատրեց մահվան դատապարտվածների (դիակները) ուտել, և նրանք բացեիբաց կերան դիակները։ Ուրիշները փողոցներից ու պողոտաներից հավաքում էին հին կոշիկներ, ներբաններ և այլ կեղտոտություններ ու ուտում։

Հռոմների բանակները ոչնչի կարիք չէին զգում, ամեն ինչ ստանում էին ժամանակին, և մեծ ուշադրությամբ կատարում կայսրի կարգադրությունը։

Իսկապես նրանց բանակատեղերում միսը, խմիչքը, կոշկեղենը, հագուստեղենն ավելի շատ էր վաճառվում, քան քաղաքներում։ Բոլոր քաղաքներում հացագործները զինվորների համար հաց էին թխում և ուղարկում, հատկապես եդեսացիները, որովհետև այս տարի ևս իրենց տներում եպարքոս Կալլիոպիոսի

հրամանով 630000 մոդի (հաց) էին թխել, չհաշված գյուղացիների, հացագործների, օտարականների և տեղական բնիկների ամբողջ շրջանում թխածը։

78. Այս տարի մար Պետրոս եպիսկոպոսը նորից գնաց կայսրի մոտ խնդրելու, որ հարկը վերացնի։ Կայսրը խիստ պատասխանեց և կշտամբեց նրան, որ նա այսպիսի ժամանակ մոռացած աղքատների խնամքն, եկել էր իր մոտ (Կոստանդնուպոլիս)։ Նա ասաց, որ առանց որևէ մեկի թելադրանքին ինքը՝ աստված իր սրտում կարթնացնի օրհնյալ (Եդեսիա) քաղաքին բարերարություն անելու (զգացումը)։ Համենայն դեպս, մինչ եպիսկոպոսն այնտեղ էր, առանց (եպիսկոպոսի) գիտության, ուրիշի միջոցով լուր ուղարկեց ամբողջ Միջագետքում (հարկը) վերացնելու մասին, իսկ Մաբբոգի[116] շրջանից հարկի մեկ երրորդը վերացրեց։

79. Հռոմ զորավարները, որոնք բանակել էին Ամիդի մոտակայքն, ասպատակությունների էին գնում պարսկական երկիրը, կողոպտում, գերի էին վերցնում և ավերում, այդ պատճառով պարսիկները (բնակիչները) նրանցից փախչելով, անցան Տիգրիսն ու այնտեղ հանդիպեցին պարսկական այրուձիին, որը հավաքվել էր հռոմների դեմ գնալու համար. նրանց տեսնելիս քաջալերվեցին և մնացին Տիգրիսի ափին։ Հռոմները նրանց (փախստականների) հետևից անցան գետը և կոտորեցին ամբողջ պարսկական այրուձին, որ (բաղկացած) էր 10000 մարդկանցից, և կողոպտեցին բոլոր փախստականների ունեցվածքը։ Նրանք շատ գյուղեր այրեցին, սպանեցին տասներկու և դրանից վեր տարիք ունեցող տղամարդկանց, իսկ կանանց և երեխաներին գերի վերցրին։ Որովհետև մագիստրոսն այդպես էր հրամայել բոլոր զորավարներին թե որևէ մեկը հռոմներից գտնվի, որ փրկելու է տասներկու և դրանից վեր տարիք ունեցող տղամարդկանցից մեկին, ապա դրա փոխարեն իրեն են մահվան դատապարտելու, և ինչ գյուղ որ մտնեն չպետք է նույնիսկ մի տուն կանգուն թողնեն։ Այս նպատակով նա հռոմներից առանձնացրեց ուժեղներին, և շատ գյուղացիներ միացան նրանց, երբ նրանք ճանապարհ ընկան։

Այն բանից հետո, երբ այրեցին (տների) տանիքները, քանդեցին պատերը, կտրատեցին ու ոչնչացրին որթատունկերն ու ձիթենիները, և ընդհանրապես բոլոր ծառերը։ Հռոմ արաբներն

---

[116] Մեմբիջ՝ այժմյան Սիրիայում է գտնվում։

էլ անցան Տիգրիս գետը և կողոպտեցին, գերի վերցրին, կոտորեցին բոլոր նրանց, որոնց գտան պարսկական երկրում։

Ինչպես գիտեմ, ամեն ինչ ուշադիր ուսումնասիրում ես, և քո սրբությանը հայտնի պետք է լինի, որ սա արաբների համար հարմար առիթ էր կրկնակի հարստանալու, և իրենց կամքը պարտադրելու երկու պետություններին։

80. Երբ Կավատը տեսավ, որ հոռոմներն իր երկրին վնասում են, և չկար մեկը որ նրանց դիմագրեր, նա ուզեց գնալ և հանդիպել նրանց, և այդ նպատակով նա աշտաբիդին 20000 զորքով ուղարկեց մագիստրոսի մոտ խաղաղության համար բանակցելու։ Նա Ամիդում գերի վերցրած նշանավոր մարդկանցից բացի եւ ուղարկեց նաև Պետրոսին[116], որին Աշպարինից էր բերել, և Վասիլին, որին որպես պատանդ էր վերցրել Եդեսիայից։ Իր մոտ որպես դեսպան եկած ու մահացած Օլիմպիոս դուքսի դիակը նույնպես կնքված դագաղով ուղարկեց, ցույց տալու համար, որ նա ոչ թե այլ բանից, այլ բնական մահով էր մահացել, և որպես վկա (ուղարկեց նաև) նրա ծառաներին և նրանց, որոնք նրա հետ էին եկել։ Մագիստրոսն ընդունեց նրանց և ուղարկեց Եդեսիա, բացի Ամիդի դատավորից և կոմս Պետրոսից, որովհետև նրանց վրա շատ էր բարկացել ու զայրացել, և ուզում էր նրանց մահապատժի ենթարկել, ասելով որ նրանց անհոգության պատճառով էր, որ ամրությունները հանձնվեցին, քանի որ իրենք պարսիկներն էլ են վկայում, որ Ամիդի պարիսպը անանցանելի էր։ Աշտաբիդը խնդրում և աղաչում էր նրան (մագիստրոսին), որ իր հետ բերածների փոխարեն տան այն պարսիկներին, որոնք շրջապատված են Ամիդում, որովհետև նրանք թեև շարունակում են վախից պահպանել (քաղաքը), սակայն սովի պատճառով մեծ տանջանքների մեջ են։ Սակայն մագիստրոսն ասաց. «այդ մասին ինձ մի հիշեցրու, որովհետև նրանք շրջապատված են մեր քաղաքում և նրանք մեր ստրուկներն են»։ Աշտաբիդր ասաց նրան. «լավ, այն ժամանակ թույլ տուր ինձ, ուտելիք ուղարկել նրանց, որովհետև քեզ վայել չէ, որ քո ստրուկները սովից մահանան, որովհետև երբ որ ցանկանաս դու կարող ես նրանց սպանել»։ Նա ասաց նրան. «Ուղարկիր»։ Աշտաբիդն ասաց. «Երդվիր ինձ, որ քո բոլոր զորավարներն ու զորագլուխներն իմ ուղարկածներից ոչ մեկին չեն սպանի»։ Բոլորը երդվեցին բացի Նոննոս դուքսից, որ իրենց հետ չէր այս բանակցությունների ժամանակ, որովհետև մագիստրոսը նրան թողել էր այն նպատակով, որ եթե որևէ երդում

[116] Զորավար։

լինի, ապա նա ազատ լինի այդ երդումից։ Աշտաբիդն այն ժամանակ ուղարկեց հացի տոպրակներով բեռնավորված երեք հարյուր ուղտ, որոնց (տոպրակների) մեջ կային նետեր։ Նոննոսը հարձակվեց նրանց վրա և (ուղտերին) վերցրեց, իսկ նրանց (ուղտերի) հետ եղածներին սպանեց։

81. Երբ շատ օրեր անցան իր (խաղաղություն) խնդրելուց հետո, և ուժեղ ցրտեր սկսեցին ու շատ ձյուն ու սառնամանիք (եղավ), հոռոմները մեկը մյուսի ետևից լքեցին իրենց բանակատեղերը։ Յուրաքանչյուրը վերցրեց իրեն հասած ավարը և մեկնեց, որպեսզի գնա իր երկիրը։ Նրանք, որոնք մնացին և չգնացին իրենց տները, անցան Տելլա, Ռաշղայն և Եդեսիա՝ ցրտից պաշտպանվելու համար։ Երբ աշտաբիդը տեսավ, որ հոռոմները թուլացել են և ցրտին չեն դիմանում, լուր ուղարկեց մագիստրոսին ասելով. «կամ խաղաղության դաշինք կնքիր և կամ թույլ տուր, որ պարսիկները դուրս գան, և կամ ընդունիր պատերազմ»։ Մագիստրոսը կոմիս Յուստինին հրամայեց բանակ հավաքել, բայց նա չկարողացավ։ Երբ նա տեսավ, որ հոռոմների մեծ մասը ցրվեց և լքեց իրեն, նա խաղաղության դաշինք կնքեց և թույլ տվեց, որ պարսիկները դուրս գան Ամիդից այն պայմանով, որ իրենց կնքած խաղաղության դաշինքը ընդունելի կլինի երկու թագավորներին և (այն) կհաստատեն, ապա թե ոչ պատերազմը կշարունակվի իրենց միջև։

Երբ հոռոմների կայսրն իմացավ եղածի մասին, կարգադրեց, որ ամեն մի քաղաքում (ցորենի) պահեստներ կառուցեն, հատկապես Ամիդում, որպեսզի թշնամությունը վերացնի և խաղաղությունը վերահաստատի։ Նա նույնպես մի մարդու միջոցով, որը Լևոն էր կոչվում, Կավատին նվերներ ու ընծաներ ուղարկեց՝ ոսկուց պատրաստված ճաշի ամբողջ մի սպասք։

82. Թե ինչքան Եդեսացիները չարչարվեցին, որոնք Ամիդ ցորեն էին տանում, ոչ ոք չգիտե, բացի նրանցից, որոնք այդ գործով զբաղված էին, որովհետև նրանցից շատերն իրենց կենդանիների հետ մահացան ճանապարհին։

83. Ամիդի եպիսկոպոս պատվական Հովհանը վախճանվել էր մինչ պարսիկների կողմից դրա պաշարումը։ Եկեղեցականներից ոմանք գնացին սուրբ և աստվածասեր, աստվածային բոլոր գեղեցկություններով օժտված, քաջասիրտ ու հայտնի մար Փլավիոսի՝ Անտիոքի պատրիարքի մոտ, խնդրելու, որ իրենց համար եպիսկոպոս նշանակեր։ Եվ ամբողջ ժամանակ, մինչ

նրանք այնտեղ էին, նա (պատրիարքը) նրանց հետ մեծ հարգանքով վարվեց։ Դրանից հետո, երբ Ամիդի եկեղեցու հովիվ ու վարդապետ Նոննոսը գերությունից փախավ, կղերականությունը խնդրեց պատրիարքին, որ նրան իրենց եպիսկոպոս ձեռնադրի։ Երբ. պատվական Նոննոսը եպիսկոպոս ձեռնադրվեց, նա իր քորեպիսկոպոս Թովմասին Կոստանդնուպոլիս ուղարկեց, որ այնտեղ եղած ամիդցիներին գտնի, որպեսզի նրանք կայսրից ինչ որ նվիրատվություն խնդրեն։ Այնտեղ եղածների հետ նա խորհրդակցեց, և նրանք էլ Թովմասին խնդրեցին, որ նա լինի իրենց եպիսկոպոսը (Կոստանդնուպոլսում)։ Կայսրն իրենց խնդրանքը բավարարեց և պատրիարքին էլ լուր ուղարկեց, որ չընդիմանա նրանց։ Կայսրը նրանց խնդրանքի համաձայն, նրան կառավարիչ[117] նշանակեց։ Կայսրն ու պատրիարքը[118] Ամիդի եկեղեցու համար նվերներ և փողի մի մեծ գումար տվեցին, որպեսզի այն բաժանեն աղքատներին։ Այդ պատճառով էլ այնտեղ հավաքվեցին բոլոր նրանք, ովքեր տարբեր տեղերում էին թափառում։ Ամեն օր նրանք Ամիդից դուրս էին բերում մեռածների դիակները, և ստանում իրենց հասանելիքը։

84. Ուրբիկիոսը՝ կայսրի ներքինին[119], որը մեծ նվերներ էր բաժանել Երուսաղեմի շրջակայքում և այլ վայրերում, եկավ (Ամիդ) և բաժանեց դինար դինարի հետևից։ Այնտեղից նա անցավ Եդեսիա, որտեղ նա յուրաքանչյուր (ողորմություն) ուզող կնոջ տվեց մի թրեմիսիոն[120] և ամեն մի երեխայի՝ մի զուզե[121]։ Համարյա բոլոր կանայք՝ կարիքավոր և ոչ կարիքավոր (փող) ստացան։

85. Նույն այս տարում պատերազմը դադարելուց հետո, վայրի գազանները հարձակվում էին մեր վրա այն պատճառով, որ այս պատերազմում ընկածներից շատերի դիակներն էին ուտում և սովորել էին մարդկային մարմիններ (ուտել)։ Երբ մեռածների դիակները փտեցին ու քայքայվեցին, այս անգամ վայրի գազանները մտնում էին գյուղերը և երեխաներին փախցնում ու ուտում։ Նրանք հարձակվում էին նաև ճանապարհների

---

[117] Ասորերեն բնագրում գրված է «դատավոր» (Daïana)։

[118] Այստեղ նկատի ունի Կոստանդնուպոլսո պատրիարքին։

[119] Կարծում ենք «ներքինի» ասելով հեղինակը նկատի ունի «սենեկապետին»։ Սենեկապետները շատ անգամ ներքինի էին լինում։

[120] Ոսկու մեկ երրորդ մասը (լատիներեն tremis)։

[121] Փոքր դրամ։

վրա եղած մենակ մարդկանց վրա և նրանց ուտում։ Ի վերջո նրանք (մարդիկ) այնքան վախեցան, որ հունձքի ժամանակ ոչ ոք մեր շրջանից չէր ուզում գիշերել իր ցորենի կալում առանց խրճիթ (մտնելու), վայրի գազանների սարսափից։ Սակայն մեր Տիրոջ օգնությամբ, որը միշտ էլ հովանավորել է մեզ և իր ողորմածությամբ պահպանել մեզ փորձանքներից, դրանց մի մասը (գազանների) ընկավ գյուղացիների ձեռքը, որոնք սպանեցին նրանց և ուղարկեցին Եդեսիա. ուրիշներ բռնվեցին որսորդներից, որոնք կապկպեցին նրանց ու կենդանի բերեցին, որպեսզի ամեն ոք տեսնի դրանց ու փառք տա աստծուն, որ ասել է. «Եւ ահ եւ երկեւղ ձեր ի վերայ ամենայն գազանաց երկրի»[122]։ Քանզի մեր մեղքերի պատճառով նա մեր վրա ուղարկեց պատերազմը, սովը, ժանտախտը, գերությունը, վայրի գազաններ, գրված և չգրված պատիժներ, և իր ողորմածությամբ փրկեց մեզ այդ բոլորից։

86. Ինձ ես թույլ արարածիս, նա իր ողորմածությամբ և քո աղոթքների շնորհիվ ուժեղացրեց, որպեսզի իմ ուժերի լավագույն հնարավորությամբ գրեմ պատահարների մասին, որպես հուշ նրանց համար, որոնք տարան այդ (դժվարությունները), և որպես ուղեցույց նրանց համար, որոնք կգան մեզանից հետո, որպեսզի նրանք, որոնք ուզենան, խոհեմ դառնան իմ այս քիչ գրածով էլ. թեև իմ բաց թողածը (չգրածը) ավելի շատ է, քան իմ գրածը, և իսկապես ինչպես սկզբից ասացի, բոլորի մասին ես չեմ կարողանա պատմել, որովհետև այն տառապանքները, որ յուրաքանչյուրս կրեցինք, այնպիսին էին, որ կարելի էր երկար պատմություններով նկարագրել, բայց դրա համար մի մեծ գիրք չէր բավարարի։ Քեզ հայտնի է ուրիշների գրածից նրանց մասին, որոնք իբր թե մեզ օգնության եկան որպես փրկարարներ[123], որպեսզի մեզ օգնեն, սակայն նրանք եկան ու գնացին ու մեզ այնպես կողոպտեցին, ինչպես մեր թշնամիները։ Շատ խեղճ մարդկանց հանեցին իրենց անկողիններից և տեղը իրենք քնեցին, իսկ տերերը (անկողինների) նույնիսկ ցուրտ եղանակին, գետնին պառկեցին։ Ոմանց իրենց սեփական տներից ստիպեցին ու դուրս հանեցին և փոխարեն իրենք բնակվեցին դրանց մեջ։ Ոմանց ոչխարներին որպես պատերազմական ավար, բռնի տարան, ոմանց շորերը վրայից հանեցին ու տարան, ոմանց էլ ոչինչ բանի համար անգթորեն ծեծեցին, ուրիշների հետ վիճեցին փողոցներում և

---

[122] «Ծննդոց», գլ. Թ, 2։

[123] Նկատի ունի հոռոմներին (բյուզանդացիներին)։



14—893

փոքր առիթով նախատեցին։ Նրանք բացահայտ կողոպտեցին յուրաքանչյուրի ուտելիքի պահեստը և այն պահեստները, որ ոմանք ունեին գյուղերում ու քաղաքներում։ Որովհետև քաղաքի (Եդեսիա) տներն ու իջևանատները իրենց չէին բավականացնում, ուստի տեղավորվում էին (նաև) արհեստավորների խանութներում։ Փողոցներում ու տներում բոլորի աչքի առջև նրանք բռնաբարում էին կանանց։ Ծեր կանանցից, այրիներից և աղքատներից վերցնում էին յուղ, փայտ, աղ և այլ բաներ իրենց օգտագործման համար, և նրանց, գործից կտրում էին, իրենց սպասարկելու համար։ Կարճ ասած բոլորին մեծին և փոքրին ձանձրացրել էին, և չկար մեկը, որին նրանք ինչ որ վնաս ու վիշտ պատճառած չլինեին։ Նույնիսկ երկրի մեծամեծները, որոնք նշանակված էին նրանց կարգի հրավիրելու ու (բնակությունը) դասավորելու, ձեռքերն երկարում էին կաշառք վերցնելու, և որովհետև բոլորից վերցնում էին, ուստի ոչ ոք չէր ազատվում, նույնիսկ նրանք, որոնց մոտ նախօրոք (բյուզանդացի) զինվորներ էին ուղարկվել բնակվելու, և ապա մի քանի օրից հետո նորից այլ (զինվորներ) էին ուղարկվում։ Նրանք բնակվելու ուղարկում էին (զինվորներին) նույնիսկ քահանաների և սարկավագների մոտ, չնայած որ սրանք կայսրից կոնդակ ունեին, որ ազատվում էին այդ բանից (պարտականությունից)։ Բայց ինչու այդ մասին շատ խոսել, երբ նույնիսկ նրանք, որոնք ինձնից էլ մեծ են[124], անկարող են այդ պատմել։

87. Եփրատ գետը դեպի արևմուտք անցնելուց հետո մագիստրոսը գնաց կայսրի մոտ (Կոստանդնուպոլիս), Արյոբինդոսը գնաց Անտիոք, Պատրիկիոսը՝ Մելիտինե, Փարազմանը՝ Ապամեա[125], Թեոդորը՝ Դարմեշուկ (Դամասկոս), Կալլիոպիոսը՝ Մաբբոգ։ Այսպես, Եդեսիան մի քիչ շունչ քաշեց և այն սակավ մարդիկ, որոնք մնացել էին այնտեղ (քաղաքում)՝ ուրախ էին։ Հեգեմոն Եվլոգիոսը զբաղված էր քաղաքի վերակառուցումով[126], և կայսրը նրան (տվել էր) 200 լիտր ոսկի՝ շինարարության համար։ Նա վերանորոգեց և վերակառուցեց արտաքին պարիսպը, որը շրջապատում էր քաղաքը։ Վերահաստատեց ու վերա-

---

124 Հեղինակը, հավանաբար, եկեղեցական աստիճանը նկատի ունի։

125 Apameia-ն գտնվում է Եփրատի գետանցի աջ կողմում, Զեվգմայից հարավ։

126 Այստեղ ասորերեն բնագիրը պակասավոր է։ Ռայտը՝ բնագրի անգլերենի թարգմանիչը, ըստ իմաստի պակասավոր բառերը լրացրել է։

նորոգեց երկու ջրուղիները, որոնք գալիս էին Տելլզեմա և Մուգագ գյուղերից[127]։ Վերակառուցեց ու վերջացրեց հանրային բաղնիսը, որը փուլ էր եկել։ Նա նույնպես վերանորոգեց իր պալատը[128], և այլ շատ (շենքեր) կառուցեց ամբողջ քաղաքում։ Կայսրն եպիսկոպոսին ևս տվեց 20 լիտր ոսկի՝ պարսպի վերանորոգման ծախսերի համար, իսկ ներքինի Ուրբիկիոսը 10 լիտր ոսկի տվեց, որպեսզի եկեղեցի կառուցեն երանելի Մարիամի անունով։ Բայց ձեթը, որը մատակարարվում էր եկեղեցիներին ու վանքերին հանրային պահեստներից, և որը հասնում էր 6800 կեստեի[129], հեգեմոնը նրանց զրկեց այդ իրավունքից, և հրամայեց դրանով (ձեթով) լուսավորել քաղաքի սյունազավիթները (պորտիկները)։ Ժամկոչները շատ խնդրեցին (որ ձեթից չզրկեն), բայց նրանց չլսեց։ Եվ որպեսզի չկարծեն, որ ինքն աստծու համար կառուցված եկեղեցիներն արհամարհում է, իր անձնական ունեցվածքից յուրաքանչյուր եկեղեցու համար տվեց 200 կեստե։

Մինչ այս տարի ցորենի մոգին վաճառվում էր մեկ դինարի, գարիինը՝ վեց մոգին, և գինիինը՝ երկու կիլան[130], բայց նոր հունձից հետո ցորենի 6 մոգին էր վաճառվում մեկ դինարի և գարիինը՝ 10 մոգին։

88. Պարսկական արաբները երբեք խաղաղ ու հանգիստ չէին, ուստի անցան հոռոմների երկիրը առանց պարսիկների և դերի վերցրին երկու գյուղերի (բնակիչներին)։ Երբ պարսիկների մարզպանը, որ Մծբինում էր, այդ իմացավ, բռնեց նրանց մեծամեծներին և մահվան դատապարտեց։ Հոռոմ արաբները նույնպես առանց հրամանի անցան պարսիկների երկիրը և գերի վերցրին մի գյուղակի (բնակիչներին)։ Երբ մագիստրոսն իմացավ այդ, որովհետև տարվա վերջին Ապամեա էր գնացել, Կալլինիկոսի դուքս՝ Տիմոստրատոսին հրաման (ուղարկեց), իսկ ինքը բռնեց նրանց մեծամեծներից 5-ին, երկուսին սրով սպանեց և մյուս երեքին ցցահարեց։ Փարազմանը դուրս եկավ Ապամեայից, երբ նա (մագիստրոսը) վերադարձավ և գնաց ու մնաց Եդեսիայում

[127] Հավանաբար Եդեսիայի հյուսիսում էին գտնվում այս գյուղերը։

[128] Ասորերեն բնագիրն ունի հունարեն ձևը՝ «պարետրին»։

[129] 1/4 կալոն։ Հեղուկաչափ։

[130] Նույնպես հեղուկաչափ է, երբեմն օգտագործվել է նույնիսկ ցորեն չափելու համար։ Տե՛ս J. Payne Smith, A compendious syriac Dictionary. p. 213.

մինչև կայսրից Հիպատիոսի փոխարեն զորապետ դառնալու[131] իրավունք ստացավ։

89. Սերուգում, Բատնան ամրոցի պարիսպը, որը բոլորովին ոչ բարվոք ու քանդված (վիճակում) էր, Եդեսիայի հեգեմոն Եվլոգիոսի միջոցով այն վերակառուցվեց ու վերանորոգվեց։ Պատվական հայր Այեդեսիոսն Եդեսիայի (մեծ) եկեղեցու, տղամարդկանց դասի դռները պղնձով պատեց։

90. 817 թ. (506 թ.) հոռոմների բանակի հրամանատարները կայսրին հայտնեցին, որ մեծ չափով վնասվում են, որովհետև սահմանի վրա չունեն (ամրացված) քաղաք։ Ամեն անգամ երբ հոռոմները Տելլայից ու Ամիդից գնում էին արաբների դեմ արշավանքի, որտեղ որ լինում էին, թշնամու մեքենայություններից մշտապես վախենում էին։ Եվ եթե պատահում էր, որ նրանք (պարսիկները) հարձակվում էին իրենցից ավելի մեծ ուժով (նման դեպքերում) մտածում էին ետ դառնալ, և դրա համար շատ հոգնում էին, որովհետև մոտակայքում քաղաք չկար, որ կարողանային ապաստանել։ Այս պատճառով կայսրը հրաման տվեց, որ Դարա գյուղի շուրջը՝ որ գտնվում էր սահմանի վրա, պարիսպ կառուցեն։ Ամբողջ Ասորիքից քարհատներ հավաքվեցին ու գնացին այնտեղ ու սկսեցին կառուցել այն, մինչ պարսիկները դուրս էին գալիս Մծբինից ու ստիպում նրանց դադարեցնել (կառուցումը)։ Դրա համար Փարաղմանը Եդեսիայից դուրս եկավ ու գնաց Ամիդ բնակվելու, և այնտեղից էր գալիս (պարիսպը) կառուցողներին օգնելու։ Նա նույնպես վայրի գազանների մեծ որս էր կազմակերպում, հատկապես վայրի վարազների, որոնք շրջակայքի ամայացումից հետո շատացել էին։ Նա մի օրում դրանցից քառասունից ավելին որսաց, և իր վարպետության որպես ապացույց, նույնիսկ դրանցից մի քանիսին կենդանի ու սատկած վիճակում ուղարկեց Եդեսիա։

91. Բիրտա ամրոցի պատվական Սարդիս եպիսկոպոսը, որը գտնվում էր Եփրատի ափին, սկսեց իր քաղաքի համար նույնպես պարիսպ կառուցել և կայսրն այդ ծախսերի համար քիչ փող չտվեց։ Մագիստրոսն ևս Եվրոպոսի[132] շուրջ պարիսպ կառուցելու հրաման տվեց, որը գտնվում էր գետի ձախ ափին

---

[131] Ասորերեն բնագրում գրված է «ռաբ-խայլա» (Rab-Khaïla), որը նշանակում է «զորքերի մեծ», «հրամանատար»։

[132] Այժմյան Սիրիայի Մնմբիջից ոչ հեռու Ջարաբլուս (Jerabis կամ Jerabolus) քաղաքն է։

և մտնում էր Մաբբոդի թեմի մեջ, և տեղի ժողովուրդը դրա (պարսպի) վրա իր ուժերից վեր աշխատեց։

92. Փարաղմանի Ամիդ գնալուց հետո, նրա փոխարեն եկավ Ռոմանոս դուքսը և իր բանակով տեղավորվեց Եդեսիայում, և աղքատներին մեծ բարերարություններ արեց։ Կայսրն այս տարի իր նախկին բարեգործություններին ավելացրեց նաև (այն), որ (հրամայեց) ամբողջ Միջագետքից հարկը վերացնել, որի համար ուրախացած գյուղատերերը փառաբանեցին կայսրին[133]։

93. Սակայն հասարակ մարդիկ տրտնջում էին, բացականչում ու ասում «Գոթերը չպետք է մեզ մոտ տեղավորվեն, այլ գյուղատերերի մոտ, որովհետև նրանք օգտվեցին (հարկի) վերացումից»։ Եպարքոսը հրամայեց նրանց պահանջը բավարարել, սակայն երբ գործի անցան, քաղաքի մեծամեծները հավաքվեցին Ռոմանոս դուքսի մոտ և նրան խնդրեցին ասելով. «Թող ձեր մեծությունը հրամայի, որ գոթերին միայն մեկ ամսով ընդունեն, և երբ նրանք հարուստների տները մտնեն, չկողոպտեն այնպես, ինչպես կողոպտեցին հասարակ մարդկանց»։ Նա բավարարեց նրանց խնդրանքը, և հրամայեց, որ նրանք ստանան՝ «մեկ ասփադ[134] ձեթ ամեն ամիս, 200 լիտր փայտ, անկողին և մահճակալ երկուսի համար»։

94. Երբ գոթերը լսեցին այս հրամանը, շտապեցին Ռոմանոս դուքսի մոտ, որ ապրում էր Բարսայի ընտանիքի բնակարանում, և ուզեցին նրան սպանել։ Երբ նրանք բարձրանում էին բնակարանի աստիճաններից, նա լսեց նրանց աղմուկն ու աղաղակը և հասկացավ, թե ինչ են ուզում անել։ Նա շուտով հագավ իր զրահը, վերցրեց իր զենքերը, քաշեց սուրը և կանգնեց իր ապրած բնակարանի տան վերևի դռան մոտ։ Համենայն դեպս, նա գոթերից ոչ մեկին չսպանեց, այլ միայն ճոճում էր սուրը և խափանում առաջին (գոթացուն), որը բարձրանում էր իր մոտ գալու համար։ Նրանք, որոնք ցածրում էին, բարկությամբ ստիպում էին նրանց, որոնք իրենցից վերևում էին, որ բարձրանան ու գնան նրա մոտ։ Ինչպես լավ դիտի քո սրբությունն,

133 Հետաքրքրական է, որ այս արտոնությունից կամ հարկի վերացումից օգտվում են միայն գյուղատերերը (ինչպես հաջորդ հատվածն է ցույց տալիս), իսկ գյուղացիությունը շարունակում է հարկ տալ։

134 Հեղուկի չափ։ Կարող է «տիկ» լինել։ Կարաս, որովհետև «ասփադա» նշանակում է նաև գինու կարաս, այստեղ ձեթի աման, ինչ որ ընդունված չափով։

այսպես շատ մարդ լցվեց տան ստրիճաններին։ Երբ ի վերջո, առաջինները, որոնք բարձրացել էին, չկարողացան ներս մտնել սրի վախից, իսկ հետևում եղածները ճնշում էին նրանց, և շատ մարդ կար աստիճանների վրա, ուստի դրանք (աստիճանները) չդիմացան այդ ծանրության, փուլ եկան ու ընկան նրանց վրա։ Նրանցից մի քանիսը սպանվեցին, շատերը այնպես ջարդվեցին, որ անբուժելի հաշմանդամ դարձան։ Ռոմանոսն այս պատահարից օգտվելով, առիթը գտավ և մի տանիքից մյուսն անցնելով, փախավ։ Բայց նա նրանց ոչինչ չասաց, և այդ պատճառով էլ նրանք մնացին իրենց հաստատված տեղերում և անում էին այն, ինչ որ իրենց հաճելի էր, որովհետև մեկը չկար, որ կասեցներ նրանց, զգուշացներ կամ արգելք հանդիսանար։

95. Այս տարի մեր մար Պետրոս եպիսկոպոսը շատ ծանր հիվանդ էր։ Նիսան (ապրիլ) ամսում մեր քաղաքում ավելի ուժեղացան դժբախտությունները, որովհետև մագիստրոսը հավաքեց իր ամբողջ բանակը, վեր կացավ, որ գնա պարսիկների երկիրը, որպեսզի վերանորոգի նրանց հետ կնքված խաղաղության դաշինքը։ Երբ Եդեսիա մտավ, պարսիկներից իր մոտ դեսպաններ եկան և հայտնեցին, որ աշտաբիդը[135], որը գալիս էր իրեն հանդիպելու, խաղաղության պայմանագիր կնքելու, մահացավ և նրանք խնդրեցին ու ասացին, որ «եթե նա խաղաղության նպատակով է եկել, ապա չանցնի Եդեսիայից այն կողմ, մինչև որ մի ուրիշ աշտաբիդ կուղարկի պարսիկների արքան»։ Նա (մագիստրոսը) բավարարեց նրանց խնդրանքը և հինգ ամիս մնաց Եդեսիայում։ Եվ որովհետև իր հետ գոթերը չէին տեղավորվում քաղաքում, ապա նրանց բնակեցրեց նաև գյուղերում, ինչպես նաև քաղաքի շրջակայքում եղած մեծ ու փոքր վանքերում։ Նույնիսկ նրանք, որոնք միայնության մեջ էին ապրում, թույլ չէին տալիս իրենց սիրած միայնության մեջ ապրել, որովհետև այսպիսիների վանքերում էլ նրանք տեղավորվել էին։

96. Որովհետև նրանք (զինվորները) եկած առաջին իսկ օրից իրենց հաշվին չէին ապրում, ուստի նրանք ուտելու և խմելու մեջ այնպես շատակեր դարձան, որ նրանցից ոմանք խմում էին տների տանիքներում և գիշերը գինուց հարբած (մոռանում) էին ու քայլելով ընկնում (ցած), և այսպիսով զրկվում կյանքից։ Ոմանք նստած խմելիս, խորը քնում էին (ու քնի մեջ) ընկնում տան բարձունքից ու տեղնուտեղը մահանում։

---

[135] Բանակի կամ զորքերի հրամանատար։

Ոմանք շատ ուտելուց տանջվում էին իրենց անկողիններում։ Ոմանք իրենց սպասարկողների ականջը, փոքր հանցանքի համար, եռացրած ջուր էին լցնում, ոմանք դնում էին պարտեզ կանաչեղեն հավաքելու և երբ պարտիզպանը վեր էր կենում ու չէր թողնում հավաքել, նրանք նետով սպանում էին նրան, և արյունը մնում էր անպատիժ։ Ոմանց մեջ, երբ ուժեղացավ անզգամությունն, և չկար մեկը, որ նրանց կասեցներ (սկսեցին) իրար կոտորել, որովհետև ում մոտ որ ապրում էին, նրանք (տանտերերը վախից) մեծ զգուշությամբ, ըստ իրենց ցանկության (անում էին ամեն ինչ), որպեսզի իրենց վնաս հասցնելու հնարավորություն չտան։ Թեև իրենց մեջ կային նաև այնպիսիները, որոնք պարկեշտ կյանք էին վարում, որովհետև անկարելի է, որ այսպիսի բանակում չլինեն նաև նման մարդիկ, այդ քո իմացությունից թաքցնել հնարավոր չէ։ Համենայն դեպս անզգամ չարությունը այնքան շատացավ, որ եդեսացիներից նրանք, որոնք չարակամ էին, անվայել արարք կատարեցին և քարտեզների[136] վրա մագիստրոսի դեմ բողոք գրեցին ու դրանք գաղտնի կախեցին քաղաքի հասարակաց վայրերում։

Երբ նա այդ իմացավ, չբարկացավ, չնայած նա կարող էր, և ոչ էլ որոնեց անողներին, և ոչ էլ մտածեց քաղաքին վնաս հասցնել իր բնավորության պատճառով, բայց բոլոր իր կարելին արեց Եդեսիայից շուտ և արագ մեկնելու համար։

97. 818 թ. (507 թ.). Մագիստրոսը վերցրեց իր ամբողջ բանակը և գնաց սահման։ Այնտեղ Դարա քաղաքում իր մոտ եկավ պարսիկ դեսպանը և հետը բերեց պատանդներ, որոնց աշտաբիդն էր ուղարկել, և նրանք ևս նրան խնդրեցին ասելով որ եթե ինքն ուզում է խաղաղություն կնքել, նույնպես պարտավոր է պատանդներ տալ իր ստացածների փոխարեն, ապա երկու կողմերն էլ կարող են մոտենալ բարեկամաբար և հանդիպել անձամբ իրար հետ, ունենալով (յուրաքանչյուրը) 500 անզեն ձիավոր, նստել ժողովի և անել անհրաժեշտը։ Նա ընդունեց նրանց առաջարկը, պատանդներ ուղարկեց և նշանակված օրն անզեն գնաց աշտաբիդին հանդիպելու։

Բայց որովհետև նա վախենում էր, որ պարսիկները կարող են որևէ դավաճանություն կազմակերպել իր դեմ, նա բերեց զինված հոռոմների բանակը, կանգնեցրեց, նրանց տվեց (գաղտնի) ազդանշան և հրամայեց, որ երբ նրանք տեսնեն այդ ազդանշանը,

---

136 Մագաղաթ։

անմիջապես իր մոտ գան։ Երբ աշտաբիդը եկավ իրեն հանդիպելու, և հռոմները և բոլոր զորավարները որոնք իր հետ էին, ժողովի նստեցին հռոմ զինվորներից մեկն ուշադրություն դարձրեց և նկատեց, որ նրանք որոնք աշտաբիդի հետ էին եկել, իրենց շորերի տակ զենք էին կրում։ Նա այդ մասին հայտնեց զորավար Փարազմանին, Տիմոստրատոս դուքսին, և նրանք ազդանշան տվեցին բանակին, որի վրա նրանք (հռոմները) աղաղակներով եկան աշտաբիդին ու նրա հետ եղածներին գերի վերցրին։ Պարսկական բանակում գտնվող զինվորները երբ իմացան, որ աշտաբիդին ու նրա ընկերներին գերի են վերցրել, վախից փախան և մտան Մծբին։ Հռոմներն ուզեցին աշտաբիդին ու նրա հետ եղածներին սպանել, սակայն մագիստրոսը խնդրեց նրանց, որ պատերազմի առիթ չտան և չվերացնեն խաղաղության (հնարավորությունը)։ Դժվարությամբ համաձայնվեցին, բայց ի վերջո լսեցին նրան, և թույլ տվեցին որ նա (աշտաբիդը) և նրա ընկերներն առանց վնասի մեկնեն իրենց մոտից, որովհետև հաղթանակի դեպքում հռոմ զորավարները բարեսեր են լինում։

Երբ աշտաբիդր գնաց իր բանակը, նա տեսավ, որ պարսիկները Մծբին են գնացել, վախեցավ մենակ մնալուց, և գնաց նրանց միանալու։ Նա փորձեց ստիպել նրանց իր հետ քաղաքից դուրս բերել, սակայն նրանք վախից չէին ուզում գնալ։ Որպեսզի իրենց վախը հայտնի չդառնա հռոմներին, նա իր դստերը Մծբին բերել տվեց, և պարսկական սովորության համաձայն, ամուսնացավ նրա հետ։ Երբ մագիստրոսը լուր ուղարկեց նրան ասելով, որ «ոչ ոք քեզ չի վնասի, եթե նույնիսկ մենակ գաս», նա պատասխանեց. «ոչ թե վախից չեմ գալիս, այլ հարսանեկան հանդիսավոր օրերը դեռ չեն վերջացել»։ Չնայած մագիստրոսն ամեն ինչ շատ լավ գիտեր, սակայն այն ընդունեց այնպես, որպես թե ոչինչ չգիտի։

98. Մի քանի օրից հետո, երբ աշտաբիդր եկավ իր մոտ, նա հանուն խաղաղության, հրաժարվեց այն բոլոր պայմաններից, որ նա որոշել էր պահանջել պարսիկներից. նա դաշինք կապեց ու խաղաղություն կնքեց։ Նրանք փաստաթղթեր գրեցին ու որոշեցին ժամանակը, որի ընթացքում իրար հետ չէին պատերազմելու, զորքը ուրախ էր և ցնծում էր խաղաղության համար։

99. Մինչ նրանք դեռ սահմանի վրա էին, Կելլերոս մագիստրոսն ու Կալլիոպիոսն Անաստաս կայսրից նամակ ստացան, որն ամբողջ Միջագետքի նկատմամբ լի էր հոգատարությամբ ու

ողորմածությամբ. նա այսպես էր գրել նրանց, որ եթե նրանք գտնում են, որ պետք է վերացնեն հարկը (Միջագետքում) ապա կատարյալ իրավունք էր տալիս անհապաղ այն վերացնելու։ Նրանք որոշեցին Ամիդի շրջակայքից ամբողջ հարկը վերացնել ինչպես և Եդեսիայի (հարկի) կեսը, նրանք Եդեսիա լուր ուղարկեցին և հայտնեցին այդ մասին։ Մի քիչ անց, նրանք մի այլ նամակ ուղարկեցին խաղաղության լուրերով։

100. Վերջին Թեշրին (նոյեմբեր 507 թ.) ամսի 28-ին նա վերցրեց իր ամբողջ բանակը և սահմանից վերադարձավ։ Երբ հասավ Եդեսիա, մագիստրոսը մտածում էր իր դեմ եղած գանգատների պատճառով (քաղաք) չմտնել, սակայն Տելլայի երանելի Բար Հագագ եպիսկոպոսը խնդրեց նրան, որ տեղի չտա իր ունեցած բարկության, և մի կողմ թողնի որևէ մեկի նկատմամբ ունեցած իր ատելությունն ու վրդովմունքը։ Նա անմիջապես ընդունեց նրա խնդրանքը և բոլոր եդեսացիները՝ մեծ ու փոքր, մեծ հոժարակամությամբ, դուրս եկան դիմավորելու նրան մոմեղեն ճրագներով։ Ամբողջ կղերականությունը, միայնակյացներն ու վանականները եւս դուրս եկան դիմավորելու, և նրանք (հռոմները) մեծ ցնծությամբ մտան քաղաք։ Նա (մագիստրոսը) ճիշտ նույն օրը բանակներին (հրամայեց) ճանապարհը շարունակել, բայց ինքը երեք օր մնաց և հեգեմոնին 200 դինար տվեց, որ նվերներ բաժանի։

Քաղաքի բնակչությունը ուրախանում էր եղած խաղաղության համար և հրճվում տառապանքներից ազատվելու առիթով, որ մինչ այդ շարունակվում էր, նրանք պարում էին գալիք լավ բաների համար և աստծուն էին փառավորում, որովհետև նա իր բարությամբ ու ողորմածությամբ երկու թագավորություններին խաղաղություն տվեց։ Մեկնելիս, նրան (մագիստրոսին) փառքի երգերով ճանապարհ դրեցին, որն արժանի էր (այդ պատվին), և նա էլ (կայսրը), արժանի էր որ ուղարկել էր նրան։

101. Եթե այս կայսրն իր կյանքի վերջում տարբեր ձևով իրեն դրսևորեց, թող ոչ ոք այս գովասանքներից չզարմանա, և թող նա հիշի Սողոմոնին, թե նա ինչ արեց իր կյանքի վերջում[137]։

Ահա շատերից այս քիչը կարողացա կամա թե ակամա գրել, քո սիրույն, մի կողմից ակամա, որպեսզի չձանձրացնեմ իմ իմաստուն ընկերոջ, որն ինձնից ավելի լավ գիտի այս ամենը, քան

---

[137] Բնագրի անգլերեն թարգմանիչը ենթագրում է, որ այս նախադասությունը հետագայում է ավելացված ուրիշ գրչի ձեռքով։

ես։ Մյուս կողմից կամա, քո հրամանին լսած լինելու համար։ Այժմ խնդրում եմ քեզ, որ դու էլ կատարես քո նամակում եղած խոստումը ու միշտ աղոթես աստծուն մեղավորիս համար։

Այժմ, երբ իմացա քո ցանկությունը, իմ ամենակարևոր խնդիրն է լինելու, գալիք օրերին ինչ որ պատահի և ինչ որ արժանի լինի գրի առնելու, եթե ողջ մնամ, ես՝ կգրեմ, ի՛մ հայր, և քեզ կուղարկեմ։ Դրա համար եկեք աղոթենք՝ ես այստեղից, և դու ի՛մ հայր՝ այնտեղից, և բոլոր տեղերում եղած մարդիկ, որ գրվի պատմությունը գալիք այն մեծ փոփոխության, որը տեղի է ունենալու աշխարհում։ Ճիշտ այնպես, ինչպես պատահած բազմաթիվ դժբախտությունների պատճառով, չկարողացանք նկարագրել այս ծանր օրերի մասին (ըստ արժանվույն), թող այնպես էլ գալիք բազմաթիվ բարիքների պատճառով, չկարողանանք նկարագրել ապագան։

(Նրանի) խոսք գտնենք պատմելու մեր հայրենակիցների երջանիկ կյանքի, նրանց ունեցած անդորրության, խաղաղության, մեծ առատության և աստծու օրհնությամբ հունձքի ժամանակ լինելիք գերլիության մասին, ինչպես ասվել է. «Ջի մոռասցին զնեղութիւնս առաջինս. եւ ոչ եւս անկցի ի սիրտս նոցա»[138]։ Թող օրհնյալ լինի Նա հավիտյանս հավիտենից, ամեն։

---

[138] «Մարգարէութիւն Եսայեայ», գլ. կե, 16։

## Գ ՄԱՍ

# ԶԱՔԱՐԻԱ ՄԻՏԻԼԵՆԱՑՈՒ (ՀՌԵՏՈՐ) «ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ»

## ԶԱՔԱՐԻԱ ՄԻՏԻԼԵՆԱՑԻ

### 1. ԿՅԱՆՔՆ ՈՒ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅՈՒՆԸ

*Մատենագրության մեջ Զաքարիա Հռետորը հայտնի է նաև Զաքարիա Միտիլենացի[1] անունով, և նա այդպես է կոչվել, որովհետև իր կյանքի վերջին տարիներին եղել է այդ քաղաքի եպիսկոպոսը։ Թեև նրա կենսագրությունից շատ տեղեկություններ չեն հասել մեզ, բայց գիտենք, որ Զաքարիան ծնվել է V դարի երկրորդ կեսին. Գազա քաղաքից ոչ հեռու գտնվող Մայումե նավահանգստում։ Ուսում ստանալու համար իր ծննդավայրից մեկնել է Ալեքսանդրիա քաղաքը, և ինչպես իր աշխատության մեջ է ասում, այնտեղ է եղել մինչև 489 թ. այսինքն մինչև այն ժամանակ, երբ տեղի ունեցավ Իլլուսի, Լեոնտիոսի, Պոմպրեպիոս մոգի ապստամբությունը Զենոն կայսեր դեմ (488—489)։ Իր գիտելիքները կատարելագործելու նպատակով Եգիպտոսից մեկնում է Բեյրութ, որն այդ ժամանակ իրավաբանության դպրոցով առանձին հռչակ էր վայելում։ Զաքարիան ընդունվում է այդ դպրոցը և հաջող ավարտելուց հետո նրան տալիս են «Հռետոր» կամ «սքոլաստիկոս» տիտղոսը։ Դեռևս Զենոնի կենդանության օրոք փոխադրվում է կայսրության մայրաքաղաքը, և երկար տարիներ ապրում որպես իրավաբան։ Թե ե՞րբ է նա նշանակվել Միտիլեն քաղաքի եպիսկոպոս, մեզ հայտնի չէ, բայց մի բան պարզ է, որ նա որպես Միտիլեն քաղաքի եպիսկոպոս, մասնակցել է 536 թ. Կոստանդնուպոլսում գումարված եպիսկոպոսական ժողովին։ Չգիտենք նաև նրա մահվան թվականը,*

---

[1] *Միտիլեն* (Mitylène) *այժմ Մեդըլին* (Médelin), *Լեսբոս կղզու մայրաքաղաքը, արևելքից այն գտնվում էր Մեթիմնի* (Mèthymne) *և Մալեի* (Malée) *միջև։ Սա Հունաստանի գլխավոր քաղաքներից էր և էլիեն միության մասն էր կազմում։*

բայց հայտնի է, որ 553 թ. արդեն Միտիլենի եպիսկոպոսական աթոռին բազմել էր մի այլ անձնավորություն՝ Պալլադիոս անունով, դա նշանակում է, որ Զաքարիան վախճանվել էր կամ այդ տարի և կամ նախորդ տարում[2]։ Ահա հիմնականում այս է այն ամենը, ինչ որ գիտենք Զաքարիայի մասին։

Զաքարիան եղել է իր ժամանակի զարգացած ու բեղմնավոր գործիչներից մեկը. նրա աշխատություններից մեզ հայտնի են «Բանախոսությունը», Մանիքեականների դեմ գրած «Հակաճառությունը»։ Թեև այս երկերի հունարեն բնագրերը չեն պահպանվել, բայց ասորի թարգմանիչների շնորհիվ այսօր մեր ձեռքի տակ ունենք վերոհիշյալ գործերի ասորերեն թարգմանությունները[3]։ Նա գրել է նաև Եսայի ճգնավորի և VI դարի միաբնակ խոշոր գործիչ՝ Սևերիանոս Անտիոքացու վարքերը[4], բացի այդ, նրան է վերագրվել Մայումիի կամ Գազայի՝ Պետրոս Իվերացու վարքը, սակայն ինչպես ֆրանսիացի ասորագետ Շաբոն ճիշտ ցույց է տվել, այդ աշխատությունն այլ հեղինակի գրչին է պատկանում[5]։

Սակայն նրա ամենաարժեքավոր գործը «Ժամանակագրությունն է» որի հունարեն բնագիրը ևս դժբախտաբար մեզ չի հասել, և այժմ ունենք այդ երկի ասորերեն մի խմբագրություն, որի մասին կխոսենք հաջորդ էջերում։ Համենայն դեպս, Զաքարիան իր այս գիրքը գրել է Կոստանդնուպոլսում, արքունիքի Ներքինիսենեկապետ՝ Եվպրակսիոսի[6] խնդրանքով և, անկասկած, նրա նյութական օգնությամբ։ Գիրքը սկսվում է 451 թ. դեպքերի նկարագրությամբ ու ավարտվում Զենոնի մահով, այսինքն մինչև 491 թ.։ Զաքարիան ապրելով մայրաքաղաքում և կապված լինելով արքունիքի հետ, հնարավորություն է ունեցել օգտագործել մինչ այդ հայտնի պատմական երկերն ու արքունական դիվանատանը գոյություն ունեցող փաստաթղթերը։ Բացի այդ, ինքը լինելով բարձրաստիճան եկեղեցական պաշտոնյա, անմիջապես

---

[2] Ասորական մատենագրության մեջ սխալմամբ Զաքար Միտիլինացուն շփոթել են Մելիտինե քաղաքի Զաքարիա եպիսկոպոսի հետ. այդ մասին տե՛ս M. A. Kugener, La Compilation historique de pseudoZacharie le Rheteur, „Revue de l'Orient chretien", Paris, 1900.

[3] Նույն տեղում։

[4] Н. Пигулевская, Сирийские источники, стр. 10.

[5] J. B. Chabot, La litterature syriaque, Paris, 1935, p 152.

[6] Ասորերեն բնագրում ասված է, որ Եվպրակսիոսը գտնվում էր արքունական ծառայության մեջ. տե՛ս Զաքարիա Հռետոր, Ժամանակագրություն։ Սակայն հայտնի է, որ նա արքունիքում սենեկապետ էր։

մասնակցել է այդ ժամանակ կայսրությանը և նրա մեջ ապրող ժողովուրդներին հուզող վեճերին ու պայքարին։ Նրա գրքից բացարձակ հայտնի է, որ նա եղել է միաբնակ, հակաքաղկեդոնական, և այդ դիրքավորումն էլ նպաստել է, որ նա ավելի մոտ կապերի մեջ լինի ժամանակի միաբնակ խոշոր գործիչներից՝ Անտիոքի պատրիարք Սեվերիանոսի հետ, որն իր աթոռից զրկվել և 518 թ. կայսրի կողմից աքսորվել էր Ալեքսանդրիա[7]։

Զաքարիայի «Ժամանակագրության» մասին, հիշատակություն կա VI դարի հույն պատմիչներից՝ Եվագրիոսի մոտ։ Նա իր 593 թ. գրած աշխատության մեջ ոչ միայն մեջբերումներ է արել Զաքարիայի գրքից, այլև հեղինակի անունն է տալիս և նրան անվանում Զաքարիա Հռետոր[8]։

Ինչպես նշեցինք, Զաքարիա Հռետորի «Ժամանակագրության» հունարեն բնագիրը մեզ չի հասել, միայն ասորի ինչ որ պատմիչ իր պատմական երկը շարադրելիս ոչ միայն օգտվել է Զաքարիայից, այլև բազում գլուխներ հունարենից ասորերեն թարգմանելով, մտցրել է իր գրքի մեջ, և այդ է պատճառը, հավանաբար, որ ասորական այս «Ժամանակագրությունը» հետագայում մատենագրության մեջ հայտնի դարձավ Զաքարիայի անունով, և մինչև այժմ էլ հրատարակվել է այդ անունով կամ «կեղծ-Զաքարիա» ձևով։

Ո՞վ է այն ասորի հեղինակը, կամ բանաքաղը, որ օգտագործել ու որոշ գլուխներ թարգմանել է ամբողջությամբ. դժբախտաբար նրա անունը մեզ չի հասել և մենք ստիպված նրան կարող ենք անվանել «Անանուն» բանաքաղ։ Նինա Պիգուլևսկայան մեզ հասած ասորական բնագրի բովանդակությունից եզրակացրել է, որ նա Ամիդի եկեղեցական գործիչներից պետք է լինի, և եթե ծննդով ամիդցի չէ, համենայն դեպս երկար տարիներ ապրել է Ամիդում, իր երկը շարադրելիս օգտվել է նաև Ամիդ քաղաքի դիվաններից[9]։

---

[7] Սեվերիանոսը 512 թ. բազմում է Անտիոքի պատրիարքական աթոռին. նրա ծավալած գործունեության շնորհիվ միաբնակներն ամրացրին իրենց դիրքերը կայսրության մեջ։ 518 թ. կայսրը նրան աքսորեց Եգիպտոս, և այնտեղ Հալիկառնասի եպիսկոպոս Հուլիանոսի հետ ունեցած աստվածաբանական վեճերի ընթացքում նա միաբնակության մեջ մտցրեց մի նոր ուղղություն։ Նա գտնում էր, որ Քրիստոսի մարմինը «ապականացու» է, մինչդեռ Հուլիանոսը հակառակն էր պնդում, թե Քրիստոսի մարմինը «անապական է»։

[8] Ahrens-Kruger, Die sogenannte Kirchengeschichte von Zacharias Rhetor, Leipzig, 1899, pp. XXVII—XXVIII.

[9] Н. Пигулевская, Сирийские источники, стр. 12.

Բացի այդ ասորի բանաքաղի մասին կարելի է ավելացնել նաև այն որ նա, ինչպես նաև Զաքարիա Հռետորն, երկուսն էլ միաբնակության հարած գործիչներ են, և այս հանգամանքը շատ կարևոր է, որովհետև միաբնակության կողմնակից լինել այդ ժամանակ, նշանակում էր, որ նա քաղաքական որոշակի խմբակցության մեջ էր մտնում, այն էլ Սևերյանների խմբակցության, որովհետև Սևերիանոսի մասին գրված ջերմ խոսքերն ու նրան «ուսուցիչ» անվանելը, լավագույն վկայությունն են այդ մասին։ Զաքարիա Հռետորի, ասորի բանաքաղի աշխարհայացքային այս ըմբռնման վրա հատուկ ուշադրություն ենք դարձնում, և ինչպես եկեղեցական ու դավանաբանական վեճերը քննարկելիս կտեսնենք, այս հեղինակները քաղաքական իրադրություններն ու իրադարձությունները նկարագրել կամ գնահատել են այդ տեսանկյունից ելնելով։

Նրանց աշխարհայացքային այս ըմբռնման մասին գրելիս, կարելի է նշել նաև այն, որ հակառակ միաբնակության դեմ (մասնավորապես Անաստաս կայսրից հետո) կայսրության մեջ կազմակերպված հաճախակի հալածանքներին, դաժան բռնություններին իրենք պարսկական տիրապետության համեմատությամբ ավելի բարձր են գնահատել Բյուզանդական կայսրության կարգերը և այդ տեսակետից էլ չեն թաքցրել իրենց համակրանքը կայսրության նկատմամբ։ Աշխարհայացքային այս նրբությունը ևս անհրաժեշտ է նկատի ունենալ հատկապես պարսկա-բյուզանդական պատերազմներին նվիրված էջերը կարդալիս։

## 2. ԶԱՔԱՐԻԱ ՀՌԵՏՈՐԻ ԵՐԿԻ ԱՍՈՐԵՐԵՆ ԲՆԱԳԻՐԸ

Այս գիրքը կազմված է 12 բաժիններից, որոնցից յուրաքանչյուրը բաղկացած է բազում գլուխներից։ Մինչ այս բաժիններին ծանոթանալը, պետք է նշել այն, որ ասորի բանաքաղը որոշել է գրել ամբողջական պատմություն և այն շարադրելիս, նա հնարավորին չափով խուսափել է կրկնել իրեն նախորդող պատմիչներին, ինչպես՝ Եվսեբիոս Կեսարացուն, Սոկրատին, Թեոդորիտ Կյուրացուն, և դա պետք է ասել, որ ասորի հեղինակի առավելությունն է[10]։ Առաջին մասում տվել է «Ծննդոց» գրքի համառոտ վերլուծությունը, իսկ նույն բաժնի մյուս գլուխներում ներկայացրել Հովսեփի և Ասանեթի զրույցը, որը թեև մեզ է հասել

[10] Н. Пигулевская, Сирийские источники, стр. 9.

պակասավոր, սակայն այն կարելի է ամբողջացնել նրա հունարեն բնագրից[11]։ Այս բաժնում տվել է Սեղբեստրոսի վարքը, որի ասորերեն այս օրինակի առավելությունն այն է, որ նա մեզ հասած նույն վարքի հունարեն և լատիներեն բնագրերից շատ ավելի հին մի խմբագրության թարգմանությունն է։ Այն մինչև VI դարի երկրորդ կեսը կատարված թարգմանություն է[12]։ Այս բաժինների մանրամասն ու գիտական վերլուծությունն իր աշխատության մեջ տվել է ասորերեն բնագրի առաջին հրատարակիչ Լանդը[13]։ Առաջին բաժնի 8-րդ գլուխը Ս. Էտիենի «Գյուտ Նշխարացն» է[14]։ Երկրորդ բաժնում նա գրի է առել այն զրույցը, որը հայտնի է «Եփեսոսի յոթը քնած պատանիներ» անունով[15]։ Այստեղ կա նաև միաբնակության ծայրահեղ մեկ թևի հիմնադիր՝ Եվտիքիոսի ուսմունքի մասին տեղեկություն, որն ասում էր «Քրիստոսի մարդկային բնությունը աստվածայինի հետ համեմատած նման է ծովի մեջ եղած մի կաթիլ ջրին»։ Այս բաժնում կա նաև Պրոկղի նամակը հայերին, որով Կոստանդնուպոլսո պատրիարքը զգուշացնում էր հայերին՝ հեռու մնալ նեստորական աղանդից։ Թեև նամակի բովանդակությունը կրոնական է, բայց այն ցույց է տալիս, որ կայսրության մայրաքաղաքում այն ժամանակ ճանապարհներ էին որոնում հայերին սիրաշահելու, որպեսզի հնարավոր լիներ նրանց միջոցով հակազդել նեստորականների գործունեության վրա, որոնք պարսկական տիրապետության հովանավորությամբ արևելքում փաստորեն հակաբյուզանդական քաղաքականություն էին վարում։ Այդ նամակի հայերեն պատճենը հասել է մեզ «Գիրք թղթոցի» շնորհիվ[16]։

Ասորերեն այս հավաքածուի 3—4-րդ բաժինները ամբողջությամբ թարգմանաբար վերցված են Զաքարիա Հռետորի «Ժամա-

---

[11] J. Land, Anecdota Syriaca, t. III, p. 18.

[12] Այս զրույցը VI գ. թարգմանել է Մովսես Ագելացին։ Նույն զրույցի հունարեն բնագիրը հրատարակել է Batiffol, Dia patristica, Paris, 1889, իսկ լատիներեն բնագիրը՝ G. Oppenheim, Fabula Josephi et Asenethae apocrypha e libro syriaco latine versa, Berlin, 1886.

[13] Նույն տեղում, էջ 17—23։

[14] Այս վարքի ասորերեն բնագիրը հրատարակել է Բեջանը՝ Բեռլինի ձեռագրից, տե՛ս Bedjan, Acta martyrum et sanctorum, t. III p. 188.

[15] Surius, Vitae sanctorum, au 27 Juillet, les Bollandistes, Acta sanctorum, t. VI, pp. 375—387.

[16] «Գիրք թղթոց», «Թուղթ Պրոկղեայ եպիսկոպոսի առ սուրբն Սահակ հայրապետ Հայոց եւ առ սուրբն Մաշտոց», էջ 1։

նակագրությունից» և այդ պատճառով էլ ասորական այս ամբողջ հավաքածուն հայտնի է դարձել նրա անունով։ Իսկ ինչ վերաբերում է 5—6-րդ բաժիններին, ապա ինչպես ասորի բանաքաղն է վկայում, իր աշխատության այդ բաժնում նա Զաքարիայից օգտվել է համառոտելով այն[17]։ Այս չորս գրքերում խոսվում է Քաղկեդոնի ժողովից, այսինքն 451 թ. մինչև Զենոնի թագավորության վերջը տեղի ունեցած միջեկեղեցական հարաբերությունների ու դավանաբանական վեճերի մասին։ Այս բաժնում կան պատրիարքների, եպիսկոպոսների ու եկեղեցական գործիչների նամակները, և այդ ամբողջի մեջ բացահայտվում են կայսրի ու կայսրության պաշտոնյաների մեքենայություններն ու սադրանքները։ Զաքարիա Հռետորը Կոստանդնուպոլսում ապրած լինելով, ոչ միայն հնարավորություն է ունեցել V դարի երկրորդ կեսից եկեղեցական իրադարձությունների հետ կապված փաստաթղթերին ծանոթանալ, այլև անձամբ մասնակցել ու ականատես է եղել կատարված իրադարձություններին։

6-րդ բաժնի վերջում ասորի բանաքաղը ասում է, որ այս բոլորը վերցրել է Զաքարիա Հռետորի աշխատությունից[18]։ Թեև այս ամբողջ նյութը մեծ արժեք է ներկայացնում եկեղեցու պատմությունը ուսումնասիրողների համար, սակայն կարևոր և հետաքրքրական են ասորերեն այս հավաքածուի 7-ից մինչև 12-րդ բաժինների նյութերը։ Այդ տեսակետից այլ բովանդակություն է ստանում 7-րդ բաժինն իր 15 գլուխներով։ Ասորերեն բնագրի այս բաժնում նկարագրված են այն իրադարձությունները, որոնք տեղի են ունեցել Անաստաս կայսեր օրոք. նախ նրա գահակալությունն, ապա Իսավրյանների ապստամբությունը։ Իսավրյանների ապստամբության մասին, գրել են ինչպես ասորի պատմիչներից՝ Եպիփանեցին, Եվստաթիոսը, Յոշվա Ստիլիտն, [Սյունակյաց] այնպես էլ հույն այլ պատմիչներ։ Մեզ անծանոթ ասորի այս բանաքաղը կարող էր օգտվել նրանցից վերոհիշյալ 7-րդ բաժնի 2-րդ գլուխը շարադրելիս։ Թվում է, անշուշտ, որ Յոշվա Ստիլիտը չէր կարող նրան աղբյուր ծառայած լինել, որովհետև Յոշվա Ստիլիտը շատ ավելի համառոտ է[19], ուստի պետք է կարծել, որ նրա համար հիմք է հանդիսացել Եպիփանեցու գործը, մանավանդ

---

17 Զաքարիա Հռետոր, 6, գլ. 7։

18 Նույն տեղում։

19 Յոշվա Ստիլիտ, գիրք 7, պր. 23։

որ հույն պատմիչներն էլ այդ իրադարձությունների վերաբերյալ իրենց նյութերը քաղել են Եպիփանեցուց[20]։

7-րդ բաժնի 3-րդ գլխից սկսած նա տեղական նյութերին հետևելով նկարագրում է նախ հոների արշավանքը պարսկական տերության վրա՝ պարսից արքայից արքա Պերոզի ժամանակ, Պերոզի ու հոների բանակցությունները, պատերազմն ու Պերոզի պարտությունը, անշուշտ այս բոլորը նա հաղորդում է մեզ շատ համառոտ ձևով։ Ապա անցնում է Կավատի թագավորության և պատմում, թե ինչպես նա բյուզանդացիներին մեղադրում էր հոներին պարսիկների դեմ գրգռելու մեջ, և այդ պատճառով էլ նա բանակ է հավաքել ու արշավել է Հայաստանի Թեոդոսուպոլիս քաղաքը[21], գրավել այն և ապա արշավել հոկտեմբերին՝ Ամիդ քաղաքի վրա ու պաշարել։ Պատմիչը նկարագրում է քաղաքի ինքնապաշտպանությունը, և 4-րդ գլխում սալիս, թե ինչպես ի վերջո դավաճանությամբ քաղաքը անցնում է պարսիկների ձեռքը, որոնք անխնա կոտորում են բնակիչներին, թալանում ու մի մասին գերեվարում։ Նույն՝ 5-րդ գլխում պատմում է դրանից հետո Ամիդում տեղի ունեցած ահավոր սովի, բյուզանդական բանակի ձեռնարկած գործողությունների և պարսիկների ու բյուզանդացիների միջև կնքված դաշինքի մասին։ 6-րդ գլխում ասորի հեղինակը պատմում է, թե ինչպես Անաստաս կայսեր օրոք և նրա կարգադրությամբ ու Ամիդ քաղաքի եպիսկոպոս՝ Թովմասի գլխավորությամբ, Մծբինից ոչ հեռու բյուզանդացիներն իրենց սահմանի վրա, նկատի ունենալով սահմանային պաշտպանության կարևորությունը, կառուցում են Դարա ամրոց քաղաքը։ Պետք է ասել, որ ինչպես Ամիդի պաշարումն ու գրավումը, այնպես էլ Դարա քաղաքի կառուցումը, բավական մանրամասն է նկարագրված։ Նինա Պիգուլևսկայան Յոշվա Ստիլիտի «Ժամանակագրության» ուսումնասիրության մեջ կանգ է առել այս իրադարձությունների վրա և ցույց տվել այգ առթիվ հունական ու ասորական աղբյուրների միջև եղած կապերն ու տարբերությունները։ Ուսումնասիրելով այդ բոլորը, հատկապես ասորականը, նա եկել է այն եզրակացության, որ Զաքարիա Հռետորի անվամբ մեզ հասած ասորի հեղինակն իր ձեռքի տակ ունեցել է Ամիդի դիվանատան

---

20 Evagrius, The Ecclesiastical History, t. 1, 19, ed. Bidez and Parmantier, London, 1898, p. 28.

21 502 թ. օգոստոսի 28, տե՛ս Յոշվա Ստիլիտ, պր. 47, 48, հարձակվում են Թեոդոսուպոլսի, ապա հոկտեմբերի 5-ին՝ Ամիդի վրա։

փաստաթղթերը։ Մինչդեռ այս նույն դեպքերը, ինչպես Հովհան Եփեսացին է վկայում, նկարագրել է՝ հիմնվելով իր իսկ հիշողությունների վրա, որովհետև այն ժամանակ Հովհան Եփեսացին դեռ երիտասարդ էր և սովորում էր Ամիդի Օրդայե անունով վանքի հայտնի ուսումնարանում։

Ցոշվա Ստիլիտն Ամիդի պաշարման ու գրավման վերաբերյալ իր նյութերը վերցրել է առաջին ձեռքից, միայն այն տարբերությամբ, որ նա գիտակցորեն լռում է դավաճանության մասին[22]։

Ինչպես մեր աշխատության սկզբում նշել ենք, ասորական այս հավաքածուն կազմող հեղինակը պետք է որ Ամիդից եղած լիներ և նրա Ամիդցի լինելը հաստատող բազում փաստեր են պահպանվել նրա գրքում։ Երբ ծանոթանում ենք ասորի բանաքաղի՝ Ամիդի պաշարման ու գրավման մասին հաղորդած նյութերին, տեսնում ենք, որ այն առաջին հերթին աչքի է ընկնում իր անմիջականությամբ, քաղաքի ու իրադարձությունների քաջածանոթ նկարագրությամբ։ 4-րդ գլխի վերջում նա հետևյալ արտահայտությունն է անում, նկատի ունենալով այն ողբերգությունը, որը տեղի է ունեցել Ամիդում՝ պարսիկների ձեռքով։ Վերհիշելով Ամիդում տեղի ունեցած կոտորածի ահավոր տեսարանները, ասորի հեղինակը բացականչում է, «թե ինչպես պատահեց այս ամենը, չնայած պատմությունը սարսափելի է ու եղկելի, բայց պատմվածը ճշմարտություն»[23]։ Նա իր այս տողերը շարադրում է հուշերի ազդեցությամբ, բայց այդքան միայն, որովհետև հիմնականում նա հետևել է Ամիդի դիվանատանը եղած փաստաթղթերին, թեև սովորականի նման չի հիշատակում այդ մասին, հասկանալի այն պատճառով, որ որպես ամիդցի, իր քաղաքի պատմության մասին գրելիս պետք է, որ օգտվեր նույն քաղաքի դիվանատնից։

7-րդ բաժնի 7-րդ գլխից, ասորական այս աշխատության մեջ կա ինչ որ Սիմոն Վանականի՝ Կոստանդնուպոլսի թեմերից մեկի առաջնորդ Սամուելին գրած նամակը[24]։ Այս նամակում նա պատմում է մայրաքաղաքում վերստին բորբոքված եկեղեցական վեճերի և այդ պատճառով Անաստաս կայսեր դեմ նյութվող դավադրությունների մասին։ Սակայն, գրում է նամակագիրը, կայսրը իմանալով այդ բոլորի մասին, անմիջապես գործնական

---

[22] Н. Пигулевская, Месопотамия на рубеже, стр. 98.
[23] Զաքարիա Հռետոր, գիրք 7, գլ. 7։
[24] Նույն տեղում։

միջոցների է դիմում, բռնում է դավադիրներին, ոմանց ոչնչացնում և ոմանց էլ աքսորում է։ Այստեղ պարզ երևում է, որ նամակի հեղինակը միաբնակ է և Անաստասի կողմնակից, բայց կարևորն այն է, որ նա ինչ որ հասարակ անձնավորություն չէ, այլ արքունիքի գործերին մոտ կանգնած մարդկանցից, որը ծանոթ է եղել պալատի դաղտնիքներին։ Այս բաժնի մյուս գլուխներում ևս պատմվում է այդ ժամանակվա եկեղեցական ու կրոնական վեճերի մասին, և հետաքրքրականն այն է, որ արժեքավոր վկայություններ կան Տիրոս քաղաքում դումարված միաբնակների կրոնական ժողովի վերաբերյալ։ 7-րդ բաժինը վերջանում է Անաստաս կայսեր (491—518) մահով և նրան հաջորդած Հուստինոս կայսեր (518—527) հիշատակությամբ։ Հուստինոսի մասին տրված է միայն այն տեղեկությունը, որ նա Ամիդում Կավատի զորքերի դեմ պատերազմող ստրատեգներից էր, և չնայած իր առաջացած տարիքին, սպիտակ մազերին, ուներ գեղեցիկ արտաքին, բայց անգրագետ էր[25]։

8-րդ բաժնի առաջին երկու գլուխներում ատորի անանուն հեղինակը պատմում է Հուստինոսի թագավորության ժամանակ ծագած ներքին խլրտումների մասին, իսկ 3-րդ գլխում տալիս է մի շատ հետաքրքրական փաստաթուղթ,[26] որը վերաբերում է հոմերիտներին (հիմյարիներ), այսինքն հարավ արաբական այն ցեղերին, որոնք ապրում էին այժմյան Եմենի երկրամասում։ Այս փաստաթղթում նկարագրված են ոչ միայն այնտեղ ապրող

---

[25] 8-րդ գրքի 3-րդ գլուխը նամակ է. Բեյթ Արշամի եպիսկոպոս Սիմեոնը՝ Գաբբուլա վանքի վանահայրը, Հուստինոս I կայսեր թելադրանքով 524 թ. հունվարին մեկնում է Եմեն։ Նա գալիս է ու գրում այս նամակը, որի մեջ նկարագրել է արաբական ցեղերի կողմից քրիստոնյա քարոզիչների դեմ հարուցած հալածանքները։ Նամակն առաջին անգամ հրատարակել է Ասեմանին՝ „Bibliotheca Orientalis", t. I, p. 364.

Այս նամակը նա վերցրել է Դիոնիսիոս-Տելլ-Մահրացու գրքից, իսկ սա էլ այն դրի է առել Հովհան Եփեսացու «Եկեղեցական պատմությունից»։ Սակայն երբ համեմատում ենք սկզբնական բնագրի հետ, տեսնում ենք, որ Զաքարիայի այս աշխատության մեջ եղածն ավելի համառոտ օրինակն է։ Այդ մասին տե՛ս Esteves Pereira, Historia dos Martyres de Nagran, Lisbonne 1899, p. 3. Գուիդին, Բորժիայի թանգարանի մի ձեռագրից, և Բրիտանական թանգարանի երկու այլ ձեռագրերից, գտել է այս նամակի նախնական խմբագրություններից մեկը՝ ամբողջական վիճակում և այն հրատարակել է „La Reale Accademia dei Lincei"-ում, որն ունի հետևյալ վերնագիրը „La lettra de Simeone de Beith Arscham Sopra i martiri Omeriti", 1881.

[26] Այդ բնագիրը վերահրատարակել է Բեջանը՝ „Acta mart. et sanct"., t. I, p. 372.

քրիստոնյաների հալածանքները, քրիստոնյա քարոզիչների գործունեությունը, այլև հետաքրքիր մանրամասնություններ կապված այս ցեղերի կենցաղի հետ։

9-րդ բաժինը, որ ամենաընդարձակներից է, ընդգրկում է Հուստինիանոս Ա կայսեր (527—565) թագավորության առաջին տաս տարիները։ Այս գրքի առաջին տաս գլուխները քաղաքական պատմության հետ են կապված, և վերաբերում են այն դեպքերին որոնք 531 թ. վերսկսվել էին պարսիկների ու բյուզանդացիների միջև Հուստինիանոս Ա կայսեր ժամանակ։ Այս նյութը, ինչպես կարելի է հետևցնել այդ հատվածի բովանդակությունից, ասորի հեղինակը վերցրել է նույնպես Ամիդի արխիվից, իսկ ինչ վերաբերում է մնացած 16 գլուխներին, դրանք բոլորն էլ Անտիոքի պատրիարք Սեվերիանոսի նամակներն են, Հալիկառնասի Հուլիանոս եպիսկոպոսին, Անթիմոսին և Ալեքսանդրիայի Թեոդոսիոս պատրիարքին գրված, և տրված են նաև նրանցից ստացված պատասխանները։ Հնարավոր է, որ այս նամակներն էլ ասորի բանաքաղը վերցրած լինի Ամիդի եպիսկոպոսարանում գտնվող դիվանատնից։

10-րդ բաժինը, գժբախտաբար, շատ պակասավոր վիճակում է հասել մեզ. այս գրքից միայն մի քանի գլուխներ են պահպանվել, մի քանիսից էլ այլ պատմիչների մոտ հատվածներ են մնացել, որոնք հրատարակիչը փորձել է հավաքել։ Գլուխը ամբողջությամբ չի հասել, որովհետև ինչպես նախաբանում հեղինակն է վկայել, 10-րդ գլխում նկարագրվել է բյուզանդական բանակի հրամանատարներ՝ Մարտինի և Հուստոսի պարսկական Հայաստան կատարած արշավանքի մասին, և ապա թե ինչպես այնտեղից նրանք վերադարձել են[27]։ Այս գրքի բովանդակությունն էլ, հավանաբար, հիմնականում վերցվել է Ամիդի արխիվից, և ինչպես վկայում է հավաքածուն կազմողը, 10-րդ գրքում կային նաև այն եղելությունները, որոնք տեղի են ունեցել հույների թվականության 848—859 թթ., այսինքն մեր թվականության 537—548 թթ.։

11-րդ բաժինը ամբողջությամբ չի հասել, ինչպես նաև 12-րդ գրքի առաջին երեք գլուխներն ու նույն գրքի վերջին մասը։ Սակայն այն ինչ որ ունենք մեր ձեռքի տակ 12-րդ գրքից, այդ էլ մեծ արժեք է ներկայացնում. այս գրքի 7-րդ գլխում նախ Պտղոմեոսի աշխարհագրության հետևելով, և մասնավորապես

[27] Զաքարիա Հռետոր, գիրք 10, գլ. 10։

ականատեսների վկայության վրա հենվելով, ասորի բանաքաղը շարադրել է իր հավաքածուի այս մասը։ Օրինակ հոների մասին գրելիս նա ասում է. «Ես այդ մասին կգրեմ ինչպես լսել եմ ճշմարտախոս մարդկանցից՝ Ռեշղղայնցի Հովհաննեսից (որը մնում էր Ամիդի Բեյթ Ասխակունի վանքում) և կաշեգործ Թովմասից[28]։ Այս անձնավորությունները այն գերիներից էին, որոնք Կավատի կողմից Պարսկաստան էին տարվել ու վաճառվել հոներին (503 թ.)։ Նրանց գնող հոները տարել էին իրենց երկիրը, ուր այս մարդիկ մնացել էին երեսունչորս տարի, ամուսնացել ու երեխաներ ունեցել։ Նրանք պատեհ առիթը գտնելով, վերադառնում են իրենց հայրենի երկիրը, և այնտեղ մեր հեղինակը հանդիպում է նրանց ու լսում հոների մասին պատմածներն ու գրի առնում։ Մեր ասորի մատենագիրը բացի այս անձնավորություններից, տեղեկություններ է հավաքում նաև Կովկասյան լեռներից այն կողմ ապրող վայրենի ցեղերի մասին, քրիստոնյա այն քարոզիչներից, որոնք երբեմն բռնի, որպես գերի, տարվել էին այդ կողմերը, և երբեմն էլ կամավոր, քարոզչական նպատակներով գնացել էին այդ ժողովուրդների մեջ քրիստոնեություն տարածելու։

12-րդ բաժնի 7-րդ գլխում մեզ՝ հայերիս համար շատ մեծ հետաքրքրություն ներկայացնող նյութեր կան, այդ վկայություններին եթե այսօր ուշադիր նայենք, կտեսնենք, որ հնարավոր է որոշ եզրակացությունների հանգել։

Ինչպես մեր աշխատության սկզբում գրել ենք, ասորի բանաքաղը ամիդցի կամ Ամիդում ապրող մի եկեղեցական է, և խսկապես էլ նա Հայաստանի և նրա հարևան ժողովուրդների մասին խոսելիս, որպես հյուսիսում ապրող ժողովուրդներ է ներկայացնում, որովհետև այդ երկրները Ամիդի հյուսիսում են գտնվում։ Նախ տեսնենք, թե ինչ է գրում. «Այս հյուսիսի շրջանում կա հինգ հավատացյալ ժողովուրդ, որոնք ունեն քսանչորս եպիսկոպոսներ (ուզում է ասել եպիսկոպոսություններ) որոնց կաթողիկոսը ապրում է Դվինում՝ Պարսկական Հայաստանի մայրաքաղաքում։ Նրանց կաթողիկոսի անունը Գրիգոր էր, որ իմաստուն և հայտնի մարդ էր»[29]։ Ասորի եկեղեցականի այս վկայությունը արժանի է հատուկ ուշադրության, որովհետև այս հինգ ժողովուրդներին նա գիտի որպես կրոնական մի ամբողջու-

---

[28] Զաքարիա Հռետոր, գիրք 12, գլ. 7։

[29] Նույն տեղում։

թյան մեջ մտնող համայնք՝ իր Դվինի կաթողիկոսով և քսանչորս եպիսկոպոսություններով։ Այս փաստը գալիս է մի անգամ ևս հաստատելու հայկական աղբյուրների ճշմարտապատում լինելը, այն մասին, որ մինչև VII դարը Հայաստանի հարևան եկեղեցիները ղեկավարվել են Հայոց կաթողիկոսության գլխավորությամբ, այսինքն քսանչորս տարբեր եպիսկոպոսություններ՝ թեմական իրենց վիճակով մտել են հայ կաթողիկոսության իրավասության ներքո։ Դեռևս IV դարում (2-րդ կեսից) ամեն մի պատրիարքություն փորձել է որոշել իր եկեղեցու մեջ մտնող սահմաններն ու իրավունքները։

Քրիստոնեության հաղթանակը Հայաստանում պատահական երևույթ չէր, այն վկայում էր այն մասին, որ երկրում հակապարսկական, ավելի ճիշտ հակասասանյան տարրերը հաջողություն էին հասել և այդպիսով հայ քաղաքական գործիչները քրիստոնեության միջոցով ուզում էին անջրպետ ստեղծել Պարսկաստանի և իրենց միջև և դա իր հետ բերում էր պայքարի նոր ձև։ Իսկ նման անհավասար պայքարում անհրաժեշտ էր հենարան ստեղծել ոչ միայն ներքին ուժերի, այլև հարևան փոքր ժողովուրդների մեջ։ Քրիստոնեական կրոնը կարող էր նման համատեղ պայքարի լայն հնարավորություններ ստեղծել, և այդ էր պատճառը, որ նրանք առաջին իսկ օրից, այսինքն քրիստոնեության Հայաստանում հաստատվելուց հետո, նվիրվում են այդ գործին։ Ինչպես Ագաթանգեղոսի Հայոց պատմության մեջ, այնպես էլ նրա տարբեր լեզուներով մեզ հասած թարգմանություններում, հատկապես հայտնի պատմաբան Մառի հրատարակած արաբերեն օրինակում, տեղեկություններ կան այն մասին, թե ինչպես Հայաստանում քրիստոնեությունը պետական կրոն դառնալուց հետո, Գրիգոր Լուսավորիչը քահանաներ ու եպիսկոպոսներ է ձեռնադրում և ուղարկում ոչ միայն Հայաստանի տարբեր շրջաններն, այլև հարևան երկրները, օրինակ՝ նա Սոփրոնիոսին առաքում է նույնիսկ Աբխազների երկիրը[30]։ Այդ հեռանկարը իրականացնելու հույսով էր, որ Մեսրոպ Մաշտոցը գործունեություն ծավալեց հարևան ժողովուրդների մեջ։ Անշուշտ, մշակութային այս միջոցառումներից բացի քաղաքական հաճախակի մերձեցման փորձեր էլ կատարվել են, և այդ ձգտումը ամենից վառ ձևով դրսևորվել է Ավարայրի ճակատամարտի նախօրեին։

---

[30] Н. Марр, Крещение Армян, Грузин, Абхазов и Аланов святым Григорием, СПб., 1905, стр. 137.

Հայ քարոզիչները եղել են նաև հեթանոս կիսավայրենի ժողովուրդների մոտ, այդ նպատակով քարոզել քրիստոնեություն։ Նրանք շարունակել են գործել նաև VI դարի առաջին կեսին և պետք է ասել, որ միայն քարոզչական գործերով չեն զբաղվել, այլ աշխատել են քրիստոնեական գաղափարախոսության հետ մեկտեղ տեղի ժողովուրդներին սովորեցնել հողագործությամբ, բանջարաբուծությամբ ու շինարարությամբ զբաղվել։ Հայ գործիչների այս վերաբերմունքը հիացմունք է առաջացրել կիսավայրենի ժողովուրդների ղեկավարների մոտ և նրանցից յուրաքանչյուրը ձգտել է իր երկրամասը տանել նրանց, որպեսզի իրենց մոտ ևս զբաղվեն հողագործությամբ[31]։ Դժբախտաբար հայկական աղբյուրներում հայ այս գործիչների մասին տեղեկություններ չեն պահպանվել և մենք ասորական աղբյուրների տվյալների վրա միայն կարող ենք որոշ պատկերացում ունենալ այն մարդկանց մասին, որոնք իրենց հայրենի երկրից ու տնից հեռու, նպաստել են բարբարոսների ոչ միայն տնտեսական, այլև մշակութային կյանքի զարգացմանը։ Արդ այդ բոլորը բացատրել սոսկ կրոնական ջերմեռանդությամբ, սխալ կլիներ. անշուշտ կրոնական գաղափարներն իրենց դերն ունեին այդ գործունեության մեջ, բայց այդ բոլորի հիմքում ընկած էին նաև քաղաքական նպատակներ։ Այդ էր պատճառը, որ Բյուզանդական կայսրությունը VI դարի առաջին կեսից սկսեց հատուկ ուշադրություն դարձնել միսիոներական աշխատանքներին ու քաջալերեց այն և՛ նյութական և՛ բարոյական միջոցներով։ Այդ ժամանակներից արդեն պետականորեն կազմակերպված գործունեություն էին ծավալում ոչ միայն Կովկասյան լեռներից այն կողմ ապրող բարբարոս ցեղերի շրջապատում, այլև Միջագետքում ու Մերձավոր Արևելքի տարբեր շրջաններում եղած արաբական ցեղերի մեջ։ Այդ մասին մենք ավելի մանրամասն կխոսենք Հովհան Եփեսացու կապակցությամբ։ Այժմ տեսնենք, թե ասորի բանաքաղն իր այս հավաքածուն կազմելիս ինչ աղբյուրներից է օգտվել։ Նշել ենք, որ ասորի մատենագիրն իր աշխատության 12-րդ գրքի 7-րդ գլուխը շարադրելիս օգտվել է Պտղոմեոսի «Տիեզերքի նկարագրություն» ձեռնարկից։ Նա, սխալմամբ, այն վերագրել է Եգիպտոսի թագավոր՝ Պտղոմեոս Փիլոմետորիոսին, որպես թե այդ թագավորն իր գերիշխանության 30-րդ տարում, այսինքն մեր թվականությունից առաջ 150 թ. գրել է այն, մինչդեռ հայտնի է, որ այդ

[31] Զաքարիա Հռետոր, գիրք 12, գլ. է։

աշխատությունը պատկանում է մեր թվականության II դարում ապրած Կլավդիոս Պտղոմեոսին։

Ինչպես ասել ենք, Զաքարիա Հռետորն իր «Ժամանակագրությունը» սկսել է 451 թ. դեպքերի նկարագրությամբ և այն հասցրել մինչև Զենոն կայսեր մահը։ Ասորի բանաքաղը տարբեր աղբյուրների հետևությամբ իր պատմությունը հասցրել է մինչև հույների 880 թ. այսինքն մինչև 569 թ.[32]։ Հակառակ աղբյուրների բազմազանության, ասորի բանաքաղին հաջողվել է կազմել ամբողջական մի հավաքածու։

Այս կապակցությամբ պետք է կանգ առնել նաև այն հարցի վրա, թե ասորի բանաքաղը իր աշխատությունը գրելիս արդյո՞ք օգտվել է VI դարի երկու այլ հայտնի պատմիչների գործերից՝ Յոշվա Ստիլիտից և Հովհան Եփեսացուց։ Ինչպես գիտենք, Յոշվա Ստիլիտի անունով մեզ հասած գործը գրվել է VI դարի երկրորդ տասնամյակում, և որպես այդ շրջանի աշխատություն, կասկածից դուրս է, որ այն ծանոթ էր մեր ասորի մատենագրին, և ինչպես փաստերն են ցույց տալիս, ասորի բանաքաղը օգտվել է այս աղբյուրից։ Այդ երևում է հատկապես, երբ կարդում ենք Անաստաս կայսեր ժամանակ տեղի ունեցած երկրաշարժի (Գիրք 7, գլ. 2), Պերոզի հոների դեմ մղած պատերազմների նկարագրությունը (գիրք 7, գլ. 3), Կավատի Բյուզանդիա կատարած արշավանքների հետ կապված որոշ նյութեր, և այլն։ Ճիշտ է նա այս բաժիններում օգտվել է Յոշվա Ստիլիտի Պատմությունից, սակայն ինչպես նշել ենք, հատկապես Կավատի 502 թ. Ամիդի վրա արշավելու պատմության հետ կապված հիմնական վկայությունները նա վերցրել է Ամիդի դիվանատնից և այն գրադարանից, որը հայտնի է Մորո եպիսկոպոսի անունով։ Մորոն Ամիդի եպիսկոպոսն էր, և որպես միաբնակության ղավանանքի հետևորդ, Հուստինոս կայսեր օրոք 519 թ. արտաքսվեց Ամիդից նախ Պետրա քաղաքը, և ապա Ալեքսանդրիա։ Նրա մահից հետո, ինչպես ասորի բանաքաղն է պատմում, նրա գրադարանը տեղափոխվեց Ամիդ[33]։ Եվ եթե նա այս տեղեկությունները տալիս է Մորոյի գրադարանի վերաբերյալ, և խոսում իրեն ծանոթ իրողության մասին, բնականաբար պիտի հետևցնել, որ նա օգտվել է նաև այդ գրադարանից, իրեն անհրաժեշտ նյութերը քաղելու համար։

Իսկ ինչ վերաբերում է Հովհան Եփեսացու Եկեղեցական

[32] Զաքարիա Հռետոր, գիրք 12, գլ. 7։

[33] Զաքարիա Հռետոր, գիրք 8, գլ. 5։

պատմության, ապա հայտնի է, որ Հովհանի աշխատությունն ավելի ուշ է գրվել, այսինքն 569 թ. հետո, խոսք չի կարող լինել ասորի բանաքաղի այգ գրքից օգտվելու մասին, այլ ընդհակառակը, Հովհանը իր ձեռքի տակ ունեցել է ասորական այս ժամանակագրությունը և օգտվել նրանից, հատկապես VI դարի քսանական թվականների դեպքերի նկարագրության ժամանակ, բայց պիտի խոստովանել, որ այդ բաժնում ևս կան որոշ փոքր տարբերություններ. Ն. Պիգուլևսկայան ճիշտ է, երբ գրում է, որ Հովհանի պատմածները ավելի խորհրդավոր են ներկայացված, ու ցույց տվել, որ նրա մոտ գերբնական ուժերը երբեմն միջամտում են դեպքերին ու միստիկական են դարձնում պատմությունը։ Այդ անշուշտ, ոչնչով չի արժեքազրկում ասորական երկու աղբյուրների դերն ու նշանակությունը։

Զաքարիա Հռետորի «Ժամանակագրությունը» մեզ է հասել Բրիտանական թանգարանում պահվող ասորերեն № Add. 17202 ձեռագրի միջոցով[34]։ Թեև ձեռագիրը հիշատակարան չունի, սակայն ուսումնասիրողները ձեռագրական արտաքին փաստերի վրա հիմնվելով եկել են այն եզրակացության, որ ձեռագիրը պետք է գրված լինի VI դարի վերջերին և կամ VII դարի սկզբներին, մի հանգամանք, որ շատ կարևոր է և ցույց է տալիս, որ մեր ձեռքին եղած օրինակը նախնական խմբագրության շատ հարազատ մի բնագիր պետք է եղած լինի։ Այս ձեռագիրն առաջին անգամ հրատարակել է եվրոպացի պատմաբան Լանդը և դրան կցել ուշագրավ ուսումնասիրություն[35]։ Բնագրի հրատարակությունից հետո Ահրենդն ու Կրուգերը ոչ միայն այն թարգմանել են գերմաներեն, այլև գրել մի ուսումնասիրություն[36]. իսկ նույն տարում Համիլտոնն ու Բրուկսը այս աշխատությունը թարգմանել են անգլերեն[37]։ Եվրոպական երկու լեզուներով այս թարգմանությունների մեջ բաց են թողնված առաջին և երկրորդ գրքերում գտնվող վրույցները, բացի այդ անգլերենի թարգմանիչը չի թարգմանել նաև առաջին գրքի 2—5-րդ գլուխները։

---

[34] **W. Wright**, Catalogue of the syriac manuscripts in the British Museum, t. I-II, 1870—1872, p. 1046.

[35] **J. Land**, Anecdoton Syriacorum, Zachariae Episcopi Mitylenes, t. III, Lugduni. 1870.

[36] **Ahrens, Krueger**, Die Sogenannte Kirchengeschichte von Zacharias Rhetor, Leipzig, 1899.

[37] **Hamilton, Brooks**, The syriac Chronicle known as that of Zachariah of Mitylene, London, 1899.

1941 թ. Ն. Պիգուլևսկայան հրատարակել է այս բնագրի համառոտ ռուսերեն թարգմանությունը և գրան կցել նաև հետաքրքրական մի ուսումնասիրություն[38]։

Բրիտանական թանգարանի 17202 ձեռագրից բացի, այլ ձեռագրերում[39] ևս պահպանվել են ասորական այս հավաքածուից այլ հատվածներ։ Վատիկանի CXLV ձեռագրում[40], որ Ասեմանին անվանում է «Pervetustus syriacis literis stronghylis exaratus» այս աշխատությունից կան որոշ հատվածներ, որոնք, սակայն ներկայացված են որպես բյուզանդացի պատմիչներ՝ Սոկրատի և Թեոդորիտի երկերի շարունակություն[41]։ Այս հատվածների մեջ մեզ համար արժեք ներկայացնողն այն բաժինն է, որտեղ պատմված է Հռոմի մասին և այգ կապակցությամբ հետաքրքրական փաստեր են հաղորդված քաղաքի ճարտարապետական կառույցների, արձանների ու արվեստի կոթողների մասին։

Լանդն իր հրատարակած ասորերեն բնագրի վերջում, Բրիտանական թանգարանի Add 12174 ձեռագրի տվյալների հիման վրա որպես Զաքարիա Միտիլենացու աշխատություն հրատարակել է նաև Երուսաղեմի եպիսկոպոս՝ Թեոդոսի մահվան պատմությունն ու Իսահակ ճգնավորի վարքը, սակայն ինչպես մասնագետներն են ցույց տվել, այս վերջին երկու գործերը Զաքարիայինը չեն, և ասորի բանաքաղը դրանք վերցրել է այլ աղբյուրներից[42]։ Պետք է նշել նաև այն, որ անգլերեն թարգմանության վերջում անգլիացի թարգմանիչները կատարել են մի

---

[38] Н. Пигулевская, Сирийские источники.

[39] Բրիտանական թանգարանի ասորերեն ձեռագրեր, Add. 7190, 12154, 12174, 14620, 14641, 14650, տե՛ս Land, Anec. syr., t. III, p. XIII-XIV.

[40] Վատիկանի № 145 (էջ 78 և շար.) cat. t. III թ. 253. այն առաջին անգամ հրատարակել է Ասեմանին Bib. Orient., t. II p. 54. Ասեմանին գտնում է, որ այս ձեռագիրը չի կարող VIII դարից վաղ լինել, որովհետև այս ձեռագրում է գտնվում նաև Եղիա պատրիարքի աշխատությունը, որը պատրիարքական աթոռին էր բազմել 708—728 թթ.։ Այս հատվածը վերահրատարակել է Գուիդին Il testo siriaco della descrizione di Roma, „Bulletino della Commissione archelogica di Roma" հանդեսում, 1884 թ.։ Հռոմի այս հատվածի մի այլ համառոտ տարբերակը. այդ մասին տե՛ս Guidi, Iltesto, p. 235.

[41] J. Assemani, Bib. Orientalis. t. II, p. 54.

[42] Ինչպես Ռայտը, այնպես էլ Կրուգերն ու Բրուկսը գտնում են, որ վերոհիշյալ վարքերը Զաքարիա Հռետորինը չեն (տե՛ս Krueger, Die sogenannte p. XVI և Hamilton et Brooks, The syr. chronicle, p. 2, note 4), որովհետև Հովհան Եփեսացին ասորի բանաքաղից հետո է գրել իր պատմությունը, ուստի նա չէր կարող օգտագործել Հովհան Եփեսացու Եկեղեցական պատմությունը։

շնորհակալ աշխատանք ևս։ Նրանք փորձել են ի մի բերել հետագայի ասորի պատմիչների բոլոր այն հատվածներն որոնք շարադրելիս այս հավաքածուից են օգտվել[43]։

Համենայն դեպս, ասորական այս հավաքածուն ցույց է տալիս, որ նրա հեղինակը եղել է VI դարի ասորի զարգացած մատենագիրներից մեկը և նա ոչ միայն քաջ տիրապետել է մայրենի լեզվին, այլ մոտ է կանգնած եղել հունական մշակույթին, տիրապետել է հունարենին, որից և ազատ թարգմանություններ է արել։ Նրա աշխատության մեջ քիչ չեն հունաբանությունները, և նա կարողացել է հունարենից վերցրած մտքերը շարադրել մայրենի լեզվով։ Ցավոք, VI դարի ասորի այս խոշոր մատենագրի անունն անհայտ է և մենք ստիպված ենք նրան անվանել «Ասորի բանաքաղ» կամ, ինչպես եվրոպացի պատմաբաններն են անվանել, «Կեղծ Զաքարիա»։

## 3. «ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆՆ» ՈՒ ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ՀԱՐՑԵՐ

Ինչպես Զաքարիա Հռետորն, այնպես էլ ասորի բանաքաղը միջեկեղեցական հարաբերությունների, եկեղեցական վեճերի ու ներքին եկեղեցական պայքարի մասին գրել են բազում ու հետաքրքիր էջեր, բայց ինչպես այդ ժամանակվա պատմիչների, այնպես էլ սրանց մոտ, կրոնական այս հարցերն այնպես են ներկայացված, որ կարծես միջպետական ու քաղաքական իրադարձություններին ընթացք տվողը դրանք են, և ամեն ինչ որոշվում էր այդ տեսանկյունից, սակայն ինչպես գիտենք, իրականում հակառակն է եղել։ Երևույթների այս ձևով ընկալումն ու ներկայացումը չէր նշանակում, որ վաղ շրջանի հեղինակներից շատերը գիտակցորեն աղավաղում էին պատմական փաստերը, ո՛չ, նրանք որպես կրոնավորներ ու եկեղեցական գործիչներ, այդպես էին մտածում, ելնելով իրենց հասկացողությունից և աշխարհայացքից։ Երբ այս պատմիչները նույն ձևով էին դատում, դա դեռևս չէր նշանակում, որ նրանք ունեին նաև միասնական գիծ, կրոնական վեճերն ու միջեկեղեցական երկպառակություններն իրենց հերթին, նրանց բաժանում էին տարբեր խմբերի։ Այսպես, եթե V դարի առաջին կեսին երկու հիմնական դավանաբանական տարբեր ուղղություններ էին գործում՝ նեստորականությունն ու հականեստո-

[43] Hamilton et Brooks, The syriac Chronicle, p. 312—315.

րականությունն, ապա V դարի երկրորդ կեսից և հատկապես VI դարում եկեղեցական թատերաբեմում իրար դեմ են գործում երկու այլ խոշոր խմբակցություններ՝ միաբնակներն ու երկաբնակները։ Զաքարիա Հռետորն ու նրա Անանուն ասորի բանաքաղը միաբնակներ էին և այս առիթով անհրաժեշտ է անդրադառնալ այդ դարերում առաջացած կրոնական տարբեր խմբակցություններին։

Աշխատության առաջին բաժնում ցույց ենք տվել, որ քրիստոնեական գաղափարախոսությունը կազմավորվել էր Հրեաստանում տեղի ունեցող սոցիալական ու քաղաքական պայքարի բովում և որպես ցածր խավի ու տիրող կարգերից դժգոհ տարրերին միավորող կրոն, տարածվել էր Արևելքի ու Արևմուտքի մի շարք երկրներում։ Սակայն սոցիալապես դժգոհ տարրերից բացի այլ խավի ներկայացուցիչներ ևս մտան քրիստոնեության շարքերը և սրանց ազդեցությամբ վարդապետությունը կորցնելով իր մարտական դիրքերը, սկսեց հարմարվել վերնախավին։ Արդեն 313 թ. Կոստանդիանոս կայսրն իր Միլանի հրովարտակով փորձեց քրիստոնեական գաղափարախոսությունը ծառայեցնել տարբեր ազգություններից, ցեղախմբերից ու կրոնական տարբեր հավատալիքներ ունեցող բազմություններից կազմված իր պետականությունը միավորելու, միասնական դարձնելու նպատակին։ Սակայն նրա հույսերը չարդարացան, որովհետև, ինչպես վերևում նշեցինք, քրիստոնեական կազմակերպություններն ու նրանց գործիչները միատարր չէին և հակասություններն ավելի սրվեցին այն ժամանակ, երբ եկեղեցին բացարձակապես ընկավ պետության ազդեցության տակ։ Կոստանդիանոս կայսրը մտածեց 325 թ. Նիկիո Տիեզերական առաջին եկեղեցական ժողովի միջոցով համատեղ գործունեության ծրագիր մշակել և որի միջոցով ամրապնդել իր և պետության շահերը։ Այս ցանկությունը ճիշտ է նա չկարողացավ իրագործել, որովհետև եկեղեցական կազմակերպությունների մեջ մտած տարբեր խավերի ներկայացուցիչներն ամրացրել էին իրենց դիրքերը, և դժվար էր նրանց հետ հաշվի չնստել։ Բայց Կոստանդիանոսին հաջողվեց քրիստոնեական եկեղեցին դնել Բյուզանդական պետության ազդեցության ներքո։ Եկեղեցական բարձրաստիճան կրոնավորները համաձայնվեցին նման զիջման, որովհետև նրանք իրենց կրոնական իշխանությունից բացի, որպես պետական պաշտոնյաներ, ձեռք բերեցին նոր իրավասություններ ու արտոնություններ։ Ներեկեղեցական պայքարը այնքան սուր բնույթ է ստանում V—VI դդ., որ այս կամ այն կողմի ներկայա-

ցուցիչներն իրար դեմ պայքարելիս, երբեմն նույնիսկ ամենախիստ արտահայտություններն ու ձևերն էին օգտագործում։ Եկեղեցական հայրերից շատերն իրենց գործունեությամբ աշխատում էին ոչ թե հեշտացնել ու մեղմել իրենց վստահված հոտի հոգսերն, այլ ընդհակառակը, կրոնական մոլեռանդությունից տարված, աշխարհիկ տերերի նման հարվածում էին այն հավատացյալներին, որոնք չէին ուզում իրենց նման մտածել և չէին ենթարկվում իրենց հրամանին։ Նրանք նույնիսկ հասել էին այն ծայրահեղության, որ հերետիկոսներին ու աղանդավորներին ավելի վտանգավոր թշնամի էին համարում, քան հեթանոսներին։

Այս տեսակետից պարսկական տիրապետության մեջ ապրող քրիստոնյաների վիճակը այն ժամանակ համեմատաբար ավելի տանելի է եղել, մասնավորապես III դարում, և այդպես շարունակվել է մինչև 340 թ.։ Ճիշտ է, մինչ այդ երբեմն պարսկական տերության մեջ ապրող քրիստոնյաներին հալածել են, բայց դրանք զանգվածային չեն եղել։ Ինչպես ասորական աղբյուրից իմանում ենք, երբ սասանյանները տապալում են պարթևներին և անցնում իշխանության գլուխ, տեղի քրիստոնյաները սկզբում շատ են վախենում ու մտածում, որ շուտով իշխանության գլուխ անցած նոր տերերը նրանց կկոտորեն ու կոչնչացնեն[44]։ Բայց սպասածին հակառակ, պարսիկ պաշտոնեությունը բարյացակամ է գտնվում, անկասկած նկատի ունենալով, որ քրիստոնյաներն իրենց երկրում արհեստների, առևտրի և ընդհանրապես տնտեսական կյանքում կարևոր դեր են կատարում և հարստացնում են արքունի գանձարանը։ Նույն ասորի պատմիչի վկայությամբ, պարսկական տիրապետության մեջ քրիստոնյաների թիվը շատանում է և եպիսկոպոսություններն ավելանում[45]։ Անշուշտ, քրիստոնյաների ավելացումը տեղի էր ունենում ոչ թե պարսիկների հաշվին, այլ ոչ պարսիկ տարրերի, որովհետև պարսկական օրենքով խստիվ արգելվում էր պարսիկներին քրիստոնեություն քարոզել ու մկրտել։ Հետագա տարիներում պարսիկների վերաբերմունքը քրիստոնյաների նկատմամբ հետզհետե փոխվում է և նրանք չեն թաքցնում իրենց հակակրանքը դեպի քրիստոնեացող Հռոմեական կայսրությունը, մանավանդ որ այդ կրոնը պետականորեն ճանաչվել էր հարևան Հայաստանում։ Այս իրադարձություններն ուղղակիորեն ազդեցին Պարսկաստանի վրա, և արդյուն-

[44] Մշիխա Զեխա, *Ադիաբենի եկեղեցու պատմություն, 8-րդ եպիսկոպոս։*
[45] *Նույն տեղում։*

քրն եղավ այն, որ Շապուհ Բ-ն սկսեց զանգվածային հալածանքներն ու կոտորածները։

Ինչպես միշտ, այս անգամ էլ հալածանքները պարսիկներին դրական արդյունք չտվեցին, այլ ընդհակառակը, կրքերը բորբոքեցին և քրիստոնյաները ստիպված ուղիներ որոնեցին իրենց գոյությունը պահպանելու համար և անցան ընդհատակ։ Սակայն հասարակ քրիստոնյաների այդ համակրանքը երկար չտևեց և նրանք հուսախաբվեցին, երբ տեսան, որ Բյուզանդիան ևս քրիստոնեական կրոնը օգտագործում էր իր քաղաքական նպատակներին հասնելու համար, և, իսկապես, 370 թ. սկսած արևելքում, հատկապես ասորի քրիստոնյաները շրջադարձ ապրեցին, երբ արևելք ժամանած Վաղես կայսրը փորձեց բռնի ուժով ու աքսորներով ասորական եկեղեցին դնել բյուզանդականի ազդեցության ներքո։ Կայսրի նման արարքներն ատելություն առաջացրին ասորի եկեղեցականության ու ժողովրդի մոտ։

Պարսիկները հասկացան, որ իրենց համար շահավետ է օգտվել միջեկեղեցական երկպառակություններից, և հակաբյուզանդական թևին պաշտպանության տակ վերցնելով անմերձենալի անջրպետ ստեղծել, և այդ հաջողվեց, մանավանդ V դարից սկսած։ Նեստորականները վտարվելով Բյուզանդական կայսրությունից, եկան պարսկական տիրապետության մեջ մտնող երկրները, և օգտվելով իրենց նկատմամբ պարսիկների ցուցաբերած բարյացակամությունից, հակաբյուզանդական գործունեություն ծավալեցին։

Նեստորականության հիմնադիր Նեստորը ծնվել էր Կիլիկիայի Գերմանիկ (այժմ՝ Մարաշ) քաղաքում և աշակերտել Թեոդոր Մոպսուեստացուն[46]։ 428 թ. Թեոդոսիոս Փոքրի օրոք նա դարձավ Կոստանդնուպոլսո պատրիարք։ Նեստորի, նրա ուսուցչի, ինչպես նաև նրանց համախոհների ստեղծած վարդապետության ճշմարիտ պատկերը մեզ հայտնի չէ, որովհետև այդ վարդապետության մասին տեղեկությունները մեծ մասամբ հասել են հակառակորդների գրվածքների միջոցով, և բացի այդ նրանց քարոզած սկզբունքները ժամանակի ընթացքում կերպարանափոխվել են։

Քրիստոնեական խոշորագույն օրրաններից մեկը՝ Անտիոքը չնայած հունական մշակույթի ազդեցության, հիմնականում մնում էր արևելյան քաղաքակրթության, ավանդությունների ու

---

[46] Թեոդոր Մոպսուեստացին ծնվել է Անտիոքում՝ մ. թ. 350 թ. և մահացել 439 թ.։ Իր ժամանակի խոշոր մտածողներից ու գործիչներից էր։

հասկացողությունների շրջանակում։ Քաղաքում ու շրջակայքում ապրողների ճնշող մեծամասնությունը սեմական տարրեր՝ հրեաներ ու ասորիներ էին, որոնք ինքնուրույն խառնվածքով ու մտածողությամբ ստեղծում էին իրենց ուրույն աշխարհը և դա իր կնիքն էր դնում մարդկային հարաբերությունների, այսինքն սոցիալական վիճակի վրա, որովհետև հունական ու հռոմեական իշխող տարրերից հալածված, ճնշված, արհամարհված ու կողոպտրված սեմական ժողովուրդների համար քրիստոնեական նոր գաղափարախոսությունն այն լավագույն դրոշակն էր, որի շուրջ համախմբվեցին հասարակ մարդիկ։ Այս հանգամանքը էական նշանակություն ունեցավ Անտիոքի եկեղեցու կամ դպրոցի հետագա գործունեության ընթացքի վրա, որովհետև այն ամեն կերպ աշխատեց հավատարիմ մնալ քրիստոնեության բերած գաղափարներին ու սկզբունքներին. մինչդեռ քրիստոնեության պետականացումն ու վերնախավի շահերին նրա սկզբունքների հարմարեցումը, հակասություն էր առաջացնում քրիստոնեական նախնական գաղափարներին հավատարիմ հավատացյալների հոգում, մանավանդ նման հարմարեցումով քրիստոնեությունը զգեստավորվում էր հունական մշակույթի, մտածողության, փիլիսոփայության, այսինքն հունականացման գույներով, և դա խորթ էր սեմական ու արևելյան աշխարհըմբռնողության մեջ ծնված ու սոցիալական պայքարի բովում կոփված քրիստոնեական վարդապետության համար։

Անտիոքը ձգտելով հավատարիմ մնալ այդ գծին, բնականաբար, հակադրվում էր այդ փոփոխություններին ու այդ էր պատճառը, որ Անտիոքն ու շրջակայքը դառնում են աղանդավորական շարժման գլխավոր կենտրոններից մեկը։ Այդ հակադրության, ավելի ճիշտ դիմադրության արդյունքն էր նեստորականության ձևավորումը, որը խորքում խտացնում էր արևելյան, հատկապես երկուության կամ կրկնապաշտության (dualism) սկզբունքը։ Նեստորն ու իր համախոհները Նաղովրեցի Հիսուսին դավանում էին որպես իրենց վարդապետության առաջնորդի, ղեկավարի, այսինքն գերմարդկային հատկություններով օժտված մի մարդու, որն իր գործունեությամբ այնքան է հաճոյացել աստծուն, որ վերջինս նրան որդեգրել է։ Ահա այս հիմնական սկզբունքներից մեկն է, որ ընկել է Նեստորի, նրա ուսուցչի, հետևորդների դավանաբանական ըմբռնումների հիմքում. ըստ նրանց Հիսուսն ուներ «երկու բնություն և երկու անձ», այսինքն «և՛ իսկական մարդ էր և՛ իսկական աստված» և աստվածային բնությունը



16—893

ընկալել էր իր ծնունդից հետո որպես իր աստվածահաճո գործունեության վարձատրություն։ Այսպիսի բացատրությունը, բնականաբար, ժխտում էր Հիսուսի աստվածային ծագում ունենալն ու այդ հասկացողության հետ կապված բոլոր աստվածաբանական բարդ բացատրությունները, որոնք, անշուշտ, հասարակ մարդկանց, սպարզ հավատացյալների մտքի ու հասկացողության համար անհասանելի էին։ Մինչդեռ նեստորականությունը հասկանալի էր բոլորին. ըստ նրանց բացատրությունների՝ Հիսուսը սոսկ մարդ էր և իր գործունեությամբ կատարյալ մարդ դարձավ, և նրա միջոցով արարչագործության մեջ խաթարված ներդաշնակությունը վերահաստատվեց։ Նրանք ասում էին նաև այն, որ մարդն իր էությամբ կատարյալ է, բայց մեզ շրջապատող իրականության պատճառով, այսինքն «չարի» առկայությամբ նրա էությունը, ներդաշնակությունը խաթարվել է։ Ուստի մարդ պետք է «չարին» հաղթելով նորից հասնի իր կատարելության, իսկ կատարելության ճանապարհը ինքը՝ Հիսուսն է, այսինքն նրա ուսմունքին հետևելով կարելի է հասնել կատարելության։ Ինչպես նախօրոք ասել էինք, նեստորականության հիմքում ընկած է երկուության՝ չարի և բարիի պայքարի սկզբունքը, և ի վերջո կա բարիի հաղթանակի գիտակցությունը։

Նեստորը չնայած արդեն բազմել էր Կոստանդնուպոլսո պատրիարքական աթոռին, սակայն հարվածը չուշացավ նրա դեմ. Եփեսոսում գումարված 3-րդ Տիեզերական ժողովում[47] բանադրեցին և՛ Նեստորին և՛ նեստորականությունն, և ընդունեցին Կյուրեղ Ալեքսանդրացու աստվածաբանական այն բանաձևը, որը Քրիստոսի մեջ ընդունում էր «Մի բնութիւն, բանին մարմնացելոյ» սկզբունքը, այսինքն մարմնացած Բանը՝ «Լոգոսը» անբաժանելիորեն միացած և՛ աստված էր և՛ մարդ։

Այս բանաձևը որպես դավանաբանական բացատրություն էապես չի տարբերվում առաջինից. իրականում դրանք երկուսն էլ իրար լրացնում են, որովհետև երկուսի, այսինքն Անտիոքյան և Ալեքսանդրյան դպրոցների կամ ուղղությունների հիմքում ընկած է նույն երկուության, կրկնապաշտության սկզբունքը։ Երկուսն էլ մտահոգված են գտնել այնպիսի մի բանաձև, որը կարողանար համատեղել Քրիստոսի մեջ երկու տարբեր բնությունների՝ աստվածայինի ու մարդկայինի համակեցությունը։ Ալեքսանդրիայի պատրիարք Կյուրեղը պաշտպանում էր երկու բնությունների

[47] Ժողովը հրավիրվեց 431 թ. Թեոդոսիոս Բ կայսեր օրոք և հրամանով։

բնական միությունը, իսկ Նեստորն ավելի նվազ հաղորդակցություն էր տեսնում Քրիստոսի երկու բնությունների միջև[48], այնպես որ այս երկու բանաձևերի մեջ էական տարբերություն չկար։

Տարբերությունը այդ բանաձևերից արված հետևությունների մեջ էր, որոնք ծառայեցվում էին քաղաքական ու եկեղեցական այս կամ այն շահերի դիրքերից։ Պետք է ասել, որ դրանք սկզբունքային բնույթ էլ չունեին և փոխվում էին քաղաքական իրադարձությունների ընթացքի համաձայն, և այդ էր պատճառը, որ օրինակ, Մարկիանոս կայսեր ժամանակ պետությունը կանգնած էր այլ բանաձևերի պաշտպանության դիրքերում, Զենոնի, Անաստասի ժամանակ՝ այլ։ Քանի որ այդ մասին խոսելու ենք մեր աշխատության հաջորդ բաժնում, ուստի բավարարվենք այդ տեսակետների մասին համառոտ տեղեկություններով։ Նեստորականությունը փաստորեն ժխտում էր Հիսուսի աստվածային ծագումը և գտնում, որ «աստված դառնալու», կատարելության հասնելու ուղին՝ գործն է, այսինքն չարի դեմ պայքարել է պետք, և այսպիսով կոչ էր արվում զանգվածներին պայքարել չարի դեմ, և այդ չարը տվյալ դեպքում գոյություն ուներ տիրող կարգերում։ Ուրեմն համաձայն այս սկզբունքի, մարդիկ անարդար կարգերի դեմ պայքարելով կարող են հասնել երջանկության, մի սկզբունք, որ ընկած է իսկապես քրիստոնեական վարդապետության հիմքում, և որը ժամանակի ընթացքում գունազարդվելով կորցրել է իր իմաստը։ Նեստորականներն իրականում նորից վերակենդանացնում էին Քրիստոսի բերած առաջավոր սկզբունքն, և ամենից կարևորն այդ հարցում այն էր, որ ըստ նեստորականության (այդ ևս քրիստոնեական նախնական գաղափարախոսության հիմնական մտքերից էր) չարը հավերժական չէր և այն հնարավոր էր վերացնել պայքարելով նրա դեմ, այսինքն ըստ այս սկզբունքի, տիրող կարգերն, օրենքները հավերժական չեն և չեն աստվածացվում։ Պիտի խոստովանել, սակայն, որ նեստորական այս առաջավոր մտքերը ևս մնացին թղթի վրա, որովհետև նեստորականները, հատկապես սլարսկական տիրապետության հովանավորությունից օգտվելով, տվյալ պետության սահմաններում իրենց համար կաթողիկոսական աթոռ ստեղծելուց և եկեղեցական իշխանություն ունենալուց հետո, հեռացան պաշտպանած դիրքերից և ինչպես մեզ հասած փաստաթղթերն են վկայում, համագործակցելով այս

[48] J. B. Bury, Later Roman Empire, vol. I, New-York, 1958, p. 351.

անգամ արդեն պարսկական պետության հետ, իրենք ևս եղան տիրող կարգերի փառաբանողներ։

Անշուշտ, Կյուրեղյան բանաձևի հիմքում ևս, ինչպես ասել ենք, ընկած էր երկուության սկզբունքն, այսինքն Հիսուսի մեջ աստվածն ու մարդը գոյություն ունեին, միայն այդ երկուսը նրա անձնավորության մեջ անբաժանելիորեն, անքակտելիորեն միացած էին, և այդ հասկացողությունը Ալեքսանդրիայի Կյուրեղ եպիսկոպոսի բացատրությամբ ձևակերպված էր, ինչպես ասել ենք հետևյալ ձևով՝ «մի բնութիւն բանին մարմնացելոյ»։

Թեև այս տեսակետի կողմնակիցներն իրենց թեզը պաշտպանելու համար այլ բացատրություններ են տալիս, սակայն Կյուրեղյան դավանաբանական հասկացողությունը տանում էր մի այլ ծայրահեղության, այսինքն մարդկայինը Հիսուսի մեջ ձևական բնույթ էր ստանում, քանի որ աստվածայինն ինքը կամավոր իջել էր և մարմին «զգեցել»։

Այս բացատրությամբ առաջ էր քաշվում Հիսուսի աստվածային ծագում ունենալու խնդիրը, իսկ ինչպես տեսանք, Նեստորական ուսմունքի հիմնադիրներն ու համախոհները ասում էին, որ «Հիսուսը Մայրամից որպես մարդ է ծնվել, ուրեմն Մայրամը աստվածածին չէ, և չէր էլ կարող լինել», մինչդեռ Կյուրեղյան բացատրությամբ «Մայրամն աստվածածին է «և ինքը աստված երկնքից իջավ և ծնվեց «կույս Մայրամից»։ Կյուրեղյան այս մեկնաբանությունն, որ իր մեջ խտացնում էր հունական հին փիլիսոփայական թեզեր ու հավատալիքներ, փաստորեն քրիստոնեական եկեղեցու ընդհանուր պատմության մեջ շատ կարևոր շրջադարձ էր։ Այն իրականում վերջնականապես հարվածում էր սեմական ժողովուրդների մեջ ծնված ու նրանց շրջանակներում կազմավորված, սոցիալական պայքարի կոչով համակված քրիստոնեական վարդապետության սկզբունքներին, և դառնում սոսկ փիլիսոփայական մի ուսմունք։ Վերնախավը փաստորեն Եփեսոսի ժողովի որոշումով ձգտում էր եկեղեցու հունականացման, իսկ հունականացումը նպաստելու էր կայսրության ներսում մշակույթի ընդհանրացման։ Դրանով պիտի բացատրել այն, որ այդ բանաձևի ընդունումից հետո, անմիջապես նոր վիճաբանությունների դուռ բացվեց և հակառակորդներն օգտվելով այս դավանաբանական բանաձևի թույլ կողմերից, սկսեցին զանազան մեկնաբանություններով հանդես գալ։ Այսպես, օրինակ, Եվտիքիոսն իր համախոհներով եկավ այն եզրակացության, որ «մարդկայինը Հիսուսի մեջ համարյա ոչնչություն է» և ըստ բացատրության, «աստվածայինի

համեմատությամբ այն նման էր մի կաթիլ ջրի ամբողջ ծովի մեջ» և այլն։ Դրանից հետո քաղկեդոնականները հանդես եկան իրենց նոր մեկնաբանությամբ. վիճաբանությունների բեմի վրա տեսնում ենք Անտիոքի պատրիարք՝ Սևերիանոսին և Հալիկառնասի եպիսկոպոս՝ Հուլիանոսին, որոնք վիճում էին «Հիսուսի մարմնի ապականացու և ոչ ապականացու լինելու մասին»։

Բայց այս բոլոր կրոնական վեճերն ու ընդհանրացումներն, արդյունք էին ոչ թե զուտ կրոնական հասկացողությունների, այլ այդ հասկացողություններն առաջանում էին տարբեր կողմերի՝ մի կողմից Բյուզանդական կայսրության, մյուս կողմից տարբեր եպիսկոպոսական աթոռների, տարբեր ժողովուրդների և նույնիսկ ընդհանուր եկեղեցու որպես առանձին կազմակերպություն, շահերի բախումից։ Կյուրեղյան բանաձևում, օրինակ, թաքնված էր նաև Եգիպտոսի պատրիարքության այն ձգտումը, որով նա ուզում էր եկեղեցու հեղինակությունը բարձրացնել և պետությունը եկեղեցու բարձր իշխանության ենթարկել։ Իսկապես այդ բանաձևից հետևցվում էր, որ «թեև եկեղեցին երկրավոր կազմակերպություն է, բայց այն հիմնված էր աստծու կողմից և նրա ամեն մի մասն և ամեն մի օրենքն աստվածային է», այսինքն «նա վեր է մյուս բոլոր իշխանություններից»։ Թեև այդ ժողովում այլ հարցեր էլ էին շոշափվում, բայց Ալեքսանդրյան եկեղեցին կարողացավ հակառակ բոլոր դժվարությունների, անցկացնել իր այս գիծը։ Կայսրն ու նրա խորհրդականներն, անշուշտ, այդ ժողովը գումարելիս առաջին հերթին մտահոգված էին նախ եկեղեցական մի միասնական գաղափարախոսություն ունենալու ցանկությամբ, որովհետև պետության ներսում կրոնական վեճերը գնալով սուր բնույթ էին ստանում և տարբեր խմբակցություններ առաջացնում։ Սակայն ժողովի ժամանակ ներքին հակասություններն այնպիսի բուռն ձևով դրսևորվեցին, որ կայսրը ստեղծված պայմաններից ելնելով ստիպված էր պաշտպանել Եփեսոսի որոշումներն ընդունողներին և մնալ հականեստորականության գիրքերում, քանի որ նեստորականությունը կայսրության համար լուրջ վտանգ էր ներկայացնում։ Թեոդոս կայսրը մտածեց Նեստորին ու նեստորականությանը հարվածելու միջոցով իր շուրջ համախմբել մյուսներին, բայց այդ էլ արդյունք չտվեց։ Նա Նեստորին աքսորեց նախ Պետրա քաղաքը, և ապա 435 թ. Եգիպտոս, նրան թատերաբեմից հեռացնելու նպատակով։ Նեստորի կղզիացումով հարցերը չլուծվեցին և, բնականաբար, նրանք զենքը վայր չդրեցին և այս անգամ բացահայտ հանդես եկան հակաբյուզանդական նշանաբանով։

կայսրության ներկայացուցիչները սկսեցին հալածանքը նեստորականների դեմ և այդ հալածանքներից փախուստ տված բազում գործիչներ ու այդ ուսմունքի հետևորդներ ապաստան գտան պարսկական տիրապետության մեջ:

Պարսիկներն իրենց պետության սահմաններում ապրող քրիստոնյաների նկատմամբ որոշակի քաղաքականություն չեն ունեցել, չնայած պարսիկ պաշտոնյաները միշտ էլ կասկածանքով են վերաբերվել քրիստոնյաներին և դտել են, որ նրանք իրենց երկրում Բյուզանդական կայսրության համար ամուր հենարան են: Նրանք երբեմն ուժեղ հալածանքներ են կազմակերպել քրիստոնյաների դեմ, սակայն մեծ մասամբ նպաստել են նրանց գործունեությանը:

Այդ մեղմությունը արդյունք էր այն իրողության, որ քրիստոնյաները պարսկական տերության մեջ արհեստների, ապրանքների արտադրության, հատկապես միջազգային առևտրի ասպարեզում, Պարսկաստանին ի նպաստ շատ կարևոր գործ էին կատարում, և բացի այդ, գանձվող հարկերով հարստացնում արքունի գանձարանն ու վերնախավի գրպանները: Սակայն այդ բարյացակամությանը և մեղմությանը վերջ տրվեց, երբ Պարսկաստանի գահին բազմեց Հազկերտ Բ (438/39—457 թթ), որն իր ներքին նոր քաղաքականությամբ փորձում էր բոլոր միջոցները կենտրոնացնել պարսիկների ձեռքը և քրիստոնյաներին դավանափոխ անելով, վերջնականապես զրկել նրանց մշակութային ու քաղաքական այլ հարաբերություններից ու վերջնականապես նրանց կապել Պարսկաստանի հետ: Բայց նրա այդ գործելակերպը չարդարացրեց իրեն և նրան հաջորդած Պերոզ արքայից արքան (459—484) ավելի ճիշտ ուղու վրա կանգնեց: Նա հետևելով պարսկական նախկին քաղաքականությանը, նորից փորձեց օգտվել քրիստոնեական եկեղեցիների մեջ առաջացած հակասություններից: Ասորական աղբյուրներն այդ փոփոխության պատճառն, այսինքն Պերոզին հուշողը ասում են, որ եղել է Մծբինի եպիսկոպոս Բարծումանը[49]: Այդ է պատճառն, որ ասորի նեստորական հեղինակները բարձր գնահատական են տալիս Պերոզին[50], հավանաբար

---

[49] Michel le Syrien, Chronique, t. II, Paris, 1963, p. 123. Բարծուման ծննդով Կորդվաց աշխարհից էր և ծագումով ստրուկ, ազատվել ու եկել էր սովորելու Եդեսիայի եպիսկոպոս Իբասի օրոք՝ Եդեսիայի հայտնի դպրոցում: Տե՛ս Assemani, Bib. Orientalis, t. I, p. 351.

[50] Msiha Zekha, Histoire, p. 147.

նկատի ունենալով պարսկական եկեղեցական քաղաքականության մեջ տեղի ունեցած այս փոփոխությունը։

Բարծուման, անշուշտ, պարսկական արքունիքին քաղաքական նման գիծ թելադրելով ոչ միայն ծառայություն էր մատուցում պարսկական կառավարությանը, այլև ուղում էր նման միջոցառումներով պարսկական տերության մեջ եղող քրիստոնեական եկեղեցիները և հավատացյալներին համախմբել նեստորական եկեղեցու գերիշխանության ներքո։ Բարծումայի նման միջոցառումները ձեռնտու էին պարսիկների համար, որովհետև այդ ուժերի կենտրոնացումով ու համախմբումով ուժեղ ճակատ կարելի էր ստեղծել Բյուղանդիայի և նրա անմիջական հովանավորության տակ գտնվող բյուղանդական եկեղեցու դեմ։ Իր նպատակին հասնելու համար ասորի պատմիչը պատմում է, որ նա դիմում էր բոլոր միջոցների, պարսկական բանակի օգնությամբ գործի էր գնում բռնի ուժը, հալածանքը, աքսորն ու բանտարկությունը. Նա նեստորական եկեղեցու կաթողիկոս Պապայի՝ Բյուզանդիայի կայսրին գրած նամակը հանձնում է արքայից արքա Պերոզին, և Բարծումայի այս մատնության արդյունքը լինում է այն, որ կաթողիկոսը մեղադրվում է լրտեսական գործունեության մեջ և գլխատվում[51]։ Ասորական աղբյուրներից երևում է, որ նա այդ քայլին էր դիմել, որպեսզի ինքը բազմի կաթողիկոսական աթոռին, բայց այդ չի հաջողվում, որովհետև նրա նման արարքները ասորի եկեղեցականության ու ժողովրդի մեջ ատելություն են առաջացնում, և նրան չեն ընտրում։

Զաքարիա Հռետորի ժամանակ նեստորականությունը լուրջ վտանգ չէր ներկայացնում կայսրության համար և փոխարեն կազմավորվել էր մի այլ ուժ՝ միաբնակությունը, որ իր գործունեությամբ լուրջ անհանգստություն էր պատճառում կայսրին, նրա շրջապատին և մանավանդ Կոստանդնուպոլսո պատրիարքությանը։ 431 թ. Եփեսոսի 3-րդ Տիեզերական ժողովում, Ալեքսանդրիայի պատրիարքության՝ նեստորականության դեմ տարած հաղթանակից հետո, Ալեքսանդրիայի պատրիարքության դիրքերն ավելի էին ամրացել և նրա ծավալած գործունեության շնորհիվ նրա ազդեցության ոլորտներն այնքան էին մեծացել, որ հակառակորդներին լուրջ մտահոգություն էին պատճառում։ Այսպիսով ոչ միայն եկեղեցական խոշոր ուժն ապակենտրոնացվում էր և դուրս գալիս կայսրության անմիջական հսկողության ոլորտներից, այլև

51 Michel le Syrien, Chronique, t. II, p. 123.

եկեղեցու հիմնական ուժը, կտրվելով մայրաքաղաքից, կայսրության համար կարող էր ծանր հետևանք ունենալ։ Եկեղեցին նույնիսկ քաղաքական իշխանության մեջ կարող էր որոշող գեր ստանալ, մանավանդ, ինչպես նշել ենք մեր այս աշխատության նախորդ էջերում, Կյուրեղ Ալեքսանդրացու դավանաբանական նուրբ ձևակերպումները տանում էին այդ հասկացողության, այսինքն «հավերժական եկեղեցին է և պետությունն ի վերջո պետք է ենթարկել եկեղեցական իշխանության»։ Այս վիճակին վերջ տալու համար Մարկիանոս կայսրը 451 թ. Քաղկեդոնում ժողով գումարեց և որոշեց կայսրության սպառնացող լուրջ վտանգի առաջն առնել և միևնույն ժամանակ այդ ժողովի միջոցով բարձրացնել Կոստանդնուպոլսո պատրիարքության հեղինակությունը։ Անշուշտ, ժողովը չկարողացավ լուծել հարցերը, այլ ընդհակառակը, կրքերը բորբոքվեցին և այդ ժամանակվանից առանձին սրությամբ ծայր առավ քաղկեդոնական և հակաքաղկեդոնական պայքարը։

Այդ տարիներին հայ եկեղեցին գոյության պայքար էր մղում Հայաստանում պարսիկների գործած բռնությունների ու հալածանքների դեմ, բայց հետագայում շատ ավելի ուշ, անցավ միաբնակության շարքերը, որովհետև նա ևս հայ ժողովրդի հետ միասին ինքնուրույնության ձգտելով, չէր կարող հանդուրժել Կոստանդնուպոլսո պատրիարքության ու կայսրության անմիջական գերիշխանությունը։ Այդ հարցերի վրա կանգ ենք առնելու Հովհան Եփեսացու Եկեղեցական պատմության ուսումնասիրության կապակցությամբ, ուստի առայժմ բավարարվում ենք այսքանով։

Զաքարիա Հռետորը ու նրա ասորի բանաքաղն իրենց աշխատության մեջ հետաքրքիր մանրամասնություններ են հաղորդում Բյուզանդական կայսրության մեջ և նրա սահմաններից դուրս ծավալված միջեկեղեցական վեճերի, բանավեճերի ու երկպառակությունների շուրջ։ Ճիշտ է, ինչպես նախօրոք ասել ենք, նրանք փաստերն ու իրադարձությունները նկարագրել են կրոնական իրենց մտահայեցողության ոլորտների հետևողությամբ, բայց դա չի խանգարում, որ մենք բարձր գնահատենք վաղ շրջանից հասած այս կարևոր աղբյուրը։

## 4. ԱՍՈՐԻ ԲԱՆԱՔԱՂԸ ՈՐՊԵՍ ԲԱՐԲԱՐՈՍ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԱՂԲՅՈՒՐ

Ասորի բանաքաղը կովկասյան ժողովուրդների մասին տեղեկություններ տալուց հետո գրում է նաև տասներեք բարբարոս ժողովուրդների մասին, որոնք ապրում էին Մերձկասպյան ու Միջին Ասիայի շրջաններում։ Այս ցեղերի վերաբերյալ ասորի պատմիչի հաղորդումները կարևոր արժեք են ներկայացնում, որովհետև ինչպես իր աշխատության մեջ հայտնում է, նա այդ վկայությունները վերցրել է այնպիսի մարդկանցից, որոնք որպես գերի տարվել են վերոհիշյալ երկրները և կամ քարոզչական նպատակներով երկար տարիներ շարունակ շրջագայել ու ապրել են վաչկատուն այդ ցեղերի շրջապատում, ոմանք նույնիսկ ամուսնացել, ընտանիք են կազմել ու տարիներ հետո իրենց հայրենի երկիրն են վերադարձել։ Ահա սրանցից ոմանց հանդիպում է պատմիչը ու իր այս տեղեկությունները քաղում նրանցից։ Չնայած այդ փաստերը աշխատության մեջ համեմատաբար քիչ են, սակայն հետաքրքիր նորություններ են պարունակում այդ ցեղերի պատմությունը ուսումնասիրողների համար։

Մինչ այժմ բազմաթիվ ուսումնասիրություններ են լույս տեսել այս ժողովուրդների մասին[52], որոնց հեղինակները հիմնվելով այդ և նման այլ աղբյուրների վրա, ձգտել են վերացնել տարբեր ցեղերին վերաբերող շփոթմունքն ու սխալ նույնացումը և ճշգրտել նրանց էությունը։ Այդ հարցի պարզաբանմանը օգնում է նաև ասորական այս աղբյուրը։ Նույնացման կամ շփոթության պատճառն, ինչպես պարզել են[53], եղել է այն, որ պատմական որոշ ժամանակաշրջանում այս ցեղերից մեկն ուժեղանալով կարողացել է մյուսներին իրեն ենթարկել և այդ ցեղերը ճանաչվել են գերիշխողի անունով և երբեմն, երբ գերիշխողը թուլացել է և նրան փոխարինել է մեկ ուրիշը, ապա սրանք ևս շարունակվել են ճանաչվել նախկինների անունով։ Եվ դա էլ պատճառ է եղել, որ ինչպես ասորական ու բյուզանդական աղբյուրներում, այնպես

---

[52] E. Drouin, Notice géographique et historique sur la Bactriane, Paris, Notice sur les Huns, 1884; „Notice historique et géographique sur la Characène", Paris-Louvain, 1890. „La numismatique Araméenne sous les Arsacides et en Mésopotamie" Paris, 1899. Н. Пигулевская, Сирийские источники, стр. 47.

[53] E. Drouin, Mémoires sur les Huns Ephtalites dans leurs rapports avec les rois Perses Sassanides, Louvain, 1895.

էլ հայկականում այս ցեղերի կամ ժողովուրդների մասին հստակ պատկերացում չեն ունեցել, մանավանդ նրանցից շատերն, իրենց արտաքինով ու նիստուկացով իրար նման են եղել։ Օրինակ՝ Եղիշեն նույնացնելով հոներին ու քուշաններին, գրում է. «Հոնաց աշխարհին, զոր Քուշանս անուանեն»[54]։ Իսկ ասորական աղբյուրներից Յեշվա Ստիլիտի անունով մեզ հասած գրքում նա բարբարոս այս ցեղերին բոլորին էլ «հոներ» է անվանում, և պարզվում է, որ նրան հայտնի չեն ո՛չ հեփթաղ, ո՛չ կիդարիտ և ո՛չ էլ այլ անուններ։

Հույն պատմիչներից՝ Պրոկոպիոս Կեսարացին հետաքրքրական մանրամասնություններ է արձանագրել իր երկում. Նա այսպես է գրում. «Հեփթաղները թեև հոնական ժողովուրդներ են, բայց չեն շփվում և հարաբերության մեջ չեն մտնում այն հոների հետ, որոնց մենք գիտենք, որովհետև ոչ սահմանակից են նրանց, ոչ էլ նրանց մոտիկ են բնակվում, այլ ապրում են Պարսկաստանի հյուսիսային հեռավոր ծայրամասերից մեկում, ուր գտնվում էր Գորգո քաղաքը։ Ահա այս վայրում հաճախ սահմանային (վեճերի) կապակցությամբ կռիվներ էին ծագում։ Սրանք հոնական մյուս ժողովուրդների նման քոչվոր չեն, այլ վաղուց նստակյաց են՝ բարեբեր երկրի վրա։ Այդ (ժողովուրդը) առանձին երբևիցե որևէ արշավանք չի կատարել հռոմեական երկրի վրա, այլ միայն պարսից զորքի հետ միասին։ Հոներից միայն սրանք են սպիտակամորթ և տգեղ չեն։ Բացի դրանից, սրանց կենցաղը տարբերվում է մյուս (հոների) կենցաղից, և անասնական կյանք չեն վարում, ինչպես նրանք։ Սրանք ղեկավարվում են թագավորի կողմից, օրինական պետություն ունեն. միմյանց, ինչպես և հարևանների հետ վարվում են օրինավոր և արդար կերպով, ոչ պակաս, քան հռոմեացիներն ու մնացած բոլոր (ժողովուրդները)։ Սրանց հարուստներն ընտրում են մինչև քսան ընկեր, գուցե և ավելի, որոնք հավիտյան սեղանակիցներ են դառնում։ Նրանց բոլոր դրամական միջոցները ընդհանուրին են, և յուրաքանչյուրը տնօրինում է հավասար իրավունքներով։ Երբ նրանցից որևէ մեկը վախճանվում է, ապա, ըստ սովորության, (մնացած) տղամարդիկ նրա հետ ողջ-ողջ գերեզման են իջնում»[55]։

Պրոկոպիոսից բերված այս հատվածը որոշ հստակություն է

---

[54] «Եղիշէի վասն Վարդանայ եւ Հայոց պատերազմին», աշխատութեամբ Ե. Տէր-Մինասեան, Երևան, 1957, էջ 11։

[55] Պրոկոպիոս Կեսարացի, Պատերազմների մասին. գիրք առաջին, գլ. 3, էջ 4։

մտցնում հոներին և հեփթաղներին տարբերելու գործում, և այստեղից էլ իմանում ենք, որ սպիտակ հոները դրանք հեփթաղներն են։ Այս առթիվ Պիգուլևսկայան գրում է, որ «հիոնիտները, կիդարիտները, հեփթաղները պատկանում են նույն էթնիկական տիպին, սակայն կազմված են տարբեր հորդաներից ու տարբեր ցեղերից, և այս կամ այն ցեղի գերիշխանության դեպքում փոխվել է նաև անվանումը»[56]։ Նույն պատմաբանը հետևելով ասորական ու հունական աղբյուրներին, ցույց է տալիս, որ պարսից արքայից արքա Պերոզն, որ իր թագավորության մեծ մասն անցկացրեց այս բարբարոս ցեղերի դեմ պատերազմելով, և ի վերջո այդ պատերազմներից մեկի ժամանակ էլ սպանվեց, գտնում է, որ Պերոզի դեմ պատերազմական գործողությունները նրա թագավորության առաջին շրջանում, այս բարբարոս ժողովուրդներից՝ կիդարիտներն էին ղեկավարում, և այդ ժամանակ էր, որ պարսիկները որոշ հաջողությունների են հասնում։ Սակայն Պերոզի թագավորության վերջին շրջանի (484) պատերազմներն անհաջող էին, և այս անգամ արդեն այդ ցեղերը պատերազմում էին նրա դեմ՝ հեփթաղների գլխավորությամբ[57]։

Համենայն դեպս, ինչպես ասել ենք, ասորի բանաքաղը տալիս է տասներեք ցեղերի անուններ, որոնց մեծ մասը հայտնի է հունական աղբյուրներից, ինչպես՝ սաբիրներ, սարգուրններ և այլն[58]։

Այս բարբարոս ցեղերի անունների մի ցուցակ էլ պահպանվել է Փավստոս Բուզանդի Պատմության գրքում, որը, սակայն, երբ համեմատում ենք ասորական այս աղբյուրների տվյալների հետ, տեսնում ենք, որ ընդհանուր նմանություն չկա այդ անունների միջև։ Մեջ ենք բերում Փավստոսի վերոհիշյալ հատվածը. «Յայն ժամանակի թագաւորն Մազքթաց Սանէսան անհնարին նիւթեաց զարտմտութիւն ոխութեան ընդ իւրում ազգակցին խոսրովու արքային Հայոց, և գումարեաց ժողովեաց..., Իժմախաց, Գաթաց և Աղուարաց, Գուգարաց, Շչբաց և Ճղբաց և Բաղասճաց և Եգերսուանացն, և այլոց խառնաղանճ բազմութեամբ անթիւ անբնակն վաշկատուն զօրութեանց. որում միանգամ ինքն իշխէր զօրացն բազմաց»[59]։

---

[56] Н. Пигулевская, Сирийские источники, стр. 83.

[57] Նույն տեղում, էջ 50, 54։

[58] Նույն տեղում։

[59] «Փավստոսի Բուզանդացւոյ Պատմութիւն Հայոց», դպր. Գ, գլ. է, էջ 30։ Նաև մի ցուցակ էլ կա Եղիշեի մոտ. պարսից արքան «յղէր և կոչէր գունդս

Նման բայց բավական մեծ տարբերությամբ մի ցուցակ կա «Աշխարհացույց»-ում, այնտեղ կարդում ենք թե (Կասպից ծովից) արևմուտք, ըստ Պտղոմեոսի, բնակվում են՝ Ա(ր)դոն, Ալան-Դոն, Սոնդաս (Տսոնդաս) և Գեռուա ցեղերը համանուն գետերով, որոնք Կովկասից հոսում են ՚ծով, մինչև Աղվանքի սահմանը։

Սարմատիայում բնակվող ցեղերից են համարվում, սկսած արևմուտքից, մինչև արևելք, նախ Աշ-Դիգոր Ալանաց ցեղը, որոնցից հարավ են նրանց հետ բնակվող Խեբուրք, Քութետք, Արգուելք կամ Մարգուելք, Սկյումիք կամ Թակոյրք ցեղերը։ Իսկ Ալանք ապրում են Դիգորից հետո, Կովկասյան լեռների Արդոզ աշխարհում, որտեղից հոսում է Արմն գետը, որը գնալով դեպի հյուսիս, լայնատարած դաշտերով թափվում է Աթլ գետը։

Նույն լեռներում Արգոզյան ցեղից հետո բնակվում են՝ Ռաճանք (Փինճք), Դուալք (Հոնք), Յխոյմք, Ավսուրք, Ծանարք, որտեղ գտնվում է Ալանաց դուռն և մյուս դուռը, որը կոչվում է Ծելքան դուռն համանուն (Ծելքանք) ցեղի...։ Այս՝ Յխավատք, Գուդամակարք, Դուրծուկք, Դիդոյք, Լեկք, Տապասարանք (կամ՝ Կատապաստիանք), Աղ‐ւտականք, Խենավք, Շիղբք Ճիղբք (Լ)փնիք, (Խեղայք, Կաղբք, Փուխք) ցեղերը[60]։

«Աշխարհացույց»-ում նշված են նաև այն ցեղերի անունները, որոնք ապրում են Կովկասյան լեռնաշղթայի հյուսիս արևելքում. դրանք են «Թավասպարք, Հեճմատակք, Իժմախք, Փասխք, Փուսխք, Փյուքոնակք, Բաղկանք, որտեղից սկիզբ է առնում երկար պարիսպը, որը կոչվում է Ապզուտ-Կավատ՝ (և ձգվում է) մինչև Ալղմինոն մորը և ծովը։ Այս պարսպից հյուսիս, Վարդանյան դաշտում, բնակվում է Մասքութան ազգը, մինչև Կասպից ծովը, որտեղ վերջանում է Կովկասից եկող լեռնաբազուկը և որտեղ կառուցված է Պարիսպն՝ Դարբանդայ, այսինքն Կապ և դուռն քաղաք Պահակին Ճորայ, որ (իրենից ներկայացնում) է ծովի մեջ կառուցված հսկայական աշտարակ։

Նրանից (Դարբանդի պարիսպներից) հյուսիս ծովափին գտնվում է Հոների թագավորությունը իսկ նրանից արևմուտք,

---

բազումս ի պահակն Ճորայ, և զՎրաց աշխարհն բովանդակ անդ դումարէր, զզօրսն Լփնաց և զՃղբաց, և զՎատն, զԳաւն և զԳդուարն և զԽրսանն և զՀեճմատակն, զՓասխն և զՓոսխն, զՓիւքուան և զամենայն զօրսն Թաւասպարանն». տե՛ս «Եղիշէի Վասն Վարդանայ...», չորրորդ յեղանակ, էջ 94։

[60] Ս. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացույց»-ի, էջ 102։

կովկասյան լեռներում գտնվում է հոների Վառաչան քաղաքը, և Ջունդար և Սմընդըռ քաղաքները։

Այս (քաղաքներից) արևելք մինչև Աթլ գետը բնակվում են Սավիրները։ (Աթլ գետը) հոսում է Ասիական Սարմատք (երկրով) և Սկյութիա աշխարհով, որը Ապախթարք է կամ Թուրքաստանք։ Եվ հյուսիսի թագավորն է Խաքանը, որը խազիրների ինքնակալն է, և Խաթունը՝ նրանց թագուհին, բասիլների ցեղից, Խաքանի կինն է»[61]։

Ինչպես տեսնում ենք հայ պատմիչները քաջածանոթ են և ավելի հարուստ տեղեկություններ են տալիս բարբարոս այս ցեղերի մասին[62], և այդ ծանոթությունը գալիս է վաղ դարերից, երբ հայերը քաղաքական ու այլ հարաբերությունների մեջ են եղել։ Նման բազում փաստեր են հայտնի մեզ, և այդ փաստերից կարելի է հիշատակել հայոց արքա Արտաշեսի և Ալանների թագավորի դուստր՝ Սաթենիկի ամուսնությունը[63]։ Հայտնի է, որ նման ամուսնությունները սոսկ ձևական բնույթ չունեին, դրանք միաժամանակ երկու ժողովուրդների մերձեցման ազդակ էին դառնում։

Մովսես Խորենացու Հայոց պատմության մեջ տեղեկություններ կան այն մասին, թե ինչպես Հայոց Սմբատ սպարապետը հյուսիսի այս ժողովուրդներից գերի վերցնելով, մեծ բազմությամբ նրանց բերում և բնակեցնում է Արտաշատում[64]։ Իսկ Ագաթանգեղոսը պատմում է, որ երբ Սասանյանները Պարսկաստանում անցնում են իշխանության գլուխ, հայոց Խոսրով թագավորն աղվանների, վրացիների և հոների բանակի հետ համագործակցելով հարձակվում է Սասանյան Պարսկաստանի վրա[65]։ Եվ պատահական պիտի չհամարել այն, որ Գրիգոր Լուսավորիչը Հայաստանում քրիստոնեություն տարածելուց հետո, քարոզչական նպատակներով իր աշակերտներին ուղարկում է հյուսիսային այդ երկրները, որպեսզի այնտեղ ևս նոր կրոնը տարածեն։ Ագաթանգեղոսն այդ կապակցությամբ գրում է. «Եւ այսպէս ընդ ամենայն երկիրն Հայոց ի ծագաց մինչև ի ծագս,

---

61 Ս. Երեմյան, *Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի*, էջ 103։

62 *Մովսես Խորենացին էլ բազում տեղեկություններ է տալիս հյուսիսային այս ժողովուրդների ու նրանց հետ հայերի ունեցած փոխհարաբերությունների մասին։ Տե՛ս* Մ. Խորենացի, *Պատմութիւն Հայոց*, գիրք Բ, գլ. Ը. ԿԵ, ՁԵ։

63 *Նույն տեղում*, գլ. Ծ։

64 *Նույն տեղում*, գլ. ԾԲ։

65 *«Ագաթանգեղեայ Պատմութիւն»*, գլ. Ա, § 19, էջ 16։

ձգտէր տարածանէր ղմշակութիւն քարոզութեանն և աւետարանութեանն ի Սատաղացւոց քաղաքէն մինչև առ աշխարհաւն խաղտեաց, մինչև առ Կաղարջօք, մինչ ի սպառ ի սահմանս Մասքթաց, մինչև ի դրունս Ալանաց, մինչ ի սահմանս Կասպից, ի Փայտակարան քաղաք արքայութեանն Հայոց»[66]։ Ագաթանգեղոսի արաբական օրինակում նշված են աբխազները, ալանները՝ այն ժողովուրդներից, որոնք քրիստոնեություն են ընդունել Գրիգոր Լուսավորչի միջոցով[67]։ Հետաքրքրական է Եղիշեի հաղորդած այն փաստը, թե ինչպես Ավարայրի ճակատամարտից հետո Հազկերտի բանակի հետ տարվող հայ գերիների ծանր վիճակը տեսնելով՝ «Հոն մի որ էր յազգէ Թագաւորացն ի Խայլանդրաց աշխարհէն, Բէլ անուն և ի ծածուկ խոնարհէր առ քրիստոնեայսն, և սիրով յօժարութեամբ ուսանէր ի նոցանէ, զճշմարտութիւնն և կամօք իւրովք նուաճեալ էր ընդ իշխանութեամբ Թագաւորին, և կարի յոյժ դառնանայր ի միտս իւր յորժամ տեսանէր չարչարեալ զսուրբսն։ Եւ իբրեւ այլ ոչ ինչ էր ձեռնհաս, փախստականն անկանէր առ արքայն Քուշանաց»[68]։

Այստեղ մեզ հետաքրքրում է այն փաստը, որ հոների մեջ արդեն քրիստոնյաներ կային։ Նրանք կապերի մեջ էին հայ եկեղեցական գործիչների հետ և, կարծում ենք, որ այդ կապերի ուսումնասիրությունը հետաքրքրական փաստերի կարող է հանգեցնել։

Այդ կապերի հեսւազոտման համար արժեքավոր նյութ են Զաքարիա Հռետորի աշխատության ասորի բանաքաղի հայտնած տեղեկությունները։ Նա հետևելով իր բանավոր աղբյուրների տվյալներին, պատմում է որ VI դարի սկզբներին կամավոր կամ բռնի տարված քրիստոնյա գործիչները աշխուժացրել էին իրենց գործունեությունը հեռավոր այս երկրներում՝ կիսավայրենի այս ժողովուրդների շրջանակներում։ Այդ առթիվ գրում է, որ իրենց կամքով այնտեղ էին ժամանել Մակու անունով մի հայ եպիսկոպոս՝ իր գործակից եղբայրների հետ։ Սրանք, գրում է ասորի պատմիչը, զբաղված էին ոչ միայն քարոզչական աշխատանքներով, այլև այս քոչվոր ցեղերին սովորեցնում էին հողագործություն, այգեգործություն։ Ասորի պատմիչի այս վկայությունները

---

[66] «Ագաթանգեղեայ Պատմութիւն», գլ. ԾԻ, § 842, էջ 439։

[67] Н. Марр, Крещение Армян, стр. 175.

[68] «Եղիշէի Վասն Վարդանայ եւ Հայոց պատերազմին», Աթենեայի յեղանակ, էջ 141։

Հայ գործիչների նման սխրագործությունների մասին, հարգանք է ներշնչում դեպի հայ ժողովրդի զավակները, որոնք հակառակ իրենց հայրենիքում եղած շարունակական մտահոգությունների ու քաղաքական ծանր վիճակին, չեն զլացել իրենց գիտական իմացությունն ու կարողությունները, և անձուրացաբար նվիրվել են հետամնաց այս ժողովուրդների մշակութային ու տնտեսական կյանքի մակարդակը բարձրացնելու գործին։

## «ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆ»

*Այս յոթերորդ գիրքն իր 15 գլուխներով պատմում է այն, ինչ տեղի ունեցավ Անաստասիոսի գերիշխանության ժամանակ. առաջին գլխում՝ նրա թագավորության սկզբի և Եվփեմիոս եպիսկոպոսի վտարման մասին է. երկրորդ գլուխը՝ ապստամբված իսավրացիների հնազանդեցման և նրանց բռնակալ ղեկավարների սպանության մասին է. երրորդ գլխում՝ Թեոդոսուպոլիս և Ամիդ քաղաքների նվաճման մասին է. չորրորդը՝ թե ինչպես գրավեցին Ամիդ քաղաքը և ապա ինչպես պարսիկները հեռացան այնտեղից. վեցերորդը՝ Դարա(քաղաքի) կառուցման մասին է. յոթերորդը՝ Մակեդոնիոսի՝ Կոստանդնուպոլսից արտաքսման ու վտարման մասին է. ութերորդը՝ պարունակում է Սիմեոն քահանայի այն նամակը, որը տեղեկություն է տալիս իր արտաքսման մասին. իններորդը՝ նրա հաջորդ Տիմոթեոսի և նրա օրոք Կոստանդնուպոլսում եղած այն արտահայտության մասին, թե «ո՞վ էր խաչվել մեզ համար». տասներորդը՝ հույների 823 թ.[1] նրա (կայսրի) թագավորության 5-րդ տարում, Փլավիոս ու Ակշանայա եպիսկոպոսների օրոք, Սիդոնում[2] գումարված ժողովի մասին է. տասնմեկերորդը՝ արևելյան վանականների և Անտիոքի Կոզմա (եպիսկոպոսի) ժողովին ներկայացրած խնդրագրի մասին է. տասներկուերորդ՝ Սևերոս և Ակշանայա (եպիսկոպոսների) գլխավորությամբ Տիրոսում գումարված այն ժողովի մասին է, որը մեծ համարձակությամբ բանադրեց Քաղկեդոնի ժողովն ու Լևոնի տոմարը[3]. տասներեքերորդ գլխում՝ Արիադնա թագուհու մահվան*

---

[1] *Մ. թ. 512 թ.։*

[2] *Փյունիկիայի քաղաքներից՝ այժմ գտնվում է Լիբանանում, Տյուրոս քաղաքի հարավում։ Ինչպես Տյուրոսի, այնպես էլ Սիդոնի ծիրանին հայտնի էր։ Այժմ անվանում են Սայդա։*

[3] *«Լևոնի» տոմարը դա Հռոմի Լևոն պապի 450 թ. Հռոմում գումարված ժողովից հետո գրած նամակն է։ Այս նամակում նա մերժում է 449 թ. Եփեսոսի*

մասին է, և այն բոնակալ Վիտալիայի, որը գերի վերցրեց Տիմոթեոսին, և սա մահացավ ու նրան հաջորդեց Հովհանը. ապա (պատմում է), թե ինչպես սատանաները մտան Խաչի տոնին Երուսաղեմ ժամանած եգիպտացիների, ալեքսանդրացիների և արաբների մեջ, և թե ինչպես նրանք խաչը թաքցրել էին, ապա հանեցին[4]։ Տասնհինգերորդը պատմում է, թե ովքեր էին քահանայապետներն Անաստասիոսի օրոք. ապա հույների 829 թ. 342-րդ ոլիմպիադայում[5] (տեղի ունեցած) Անաստասիոսի մահվան մասին։

ԳԼՈՒԽ Ա

VII գրքի առաջին գլխում պատմում է Անաստասիոս կայսեր գերիշխանության, որը Զենոնից հետո ստացավ թագավորությունը, և Եվփեմիոս եպիսկոպոսի մասին, որը վտարվեց։

Ինչպես վերևում՝ 6-րդ գրքի· գլուխներում գրել եմ, Զենոնը 17 տարի իշխելուց հետո մահացավ· 317-րդ ոլիմպիադայում, այսինքն հույների 802 թ. (491 թ.), 14-րդ ինդիկտոնի[6] Ավագ չորեքշաբթի օրը. Անաստասիոսը՝ որը սիլինտիար դեկուրիոն[7] էր, ստացավ թագավորությունը։ Այս մարդը Դիրակիում[8] քաղաքից

---

մեջ գումարված ժողովի որոշումները և Դիոսկորոսի վարդապետությունը և իբր հավատո կանոն հռչակում է Փլաբիանոսին ուղղած իր նամակը։ Այդ մասին տե՛ս Մ. Օրմանյան, Ազգապատում, հատ. Ա, մասն Ա, Պեյրութ, 1959, էջ 493։

[4] Ասորերեն բնագրի անգլերեն թարգմանիչն այս նախադասությունը մեր կարծիքով սխալ է թարգմանել. նա գրել է «խաչի վրա հաչեցին» մինչդեռ այն ոչ թե ասորերեն «Šalin»բառն է, այլ «knakh», որ նշանակում է «թաքցնել». Ճիշտ թարգմանելիս նախադասության վերջին բառն էլ իմաստավորվում է։

[5] Հին Հունաստանում՝ չորս տարվա ժամանակաշրջանը, որ անցնում էր օլիմպիական մի խաղից մինչև մյուսը, որով և հին հույները հաշվում էին իրենց տարիները։ Առաջին օլիմպիադան սկսվում է մ. թ. ա. 776 թ. իսկ վերջինը 392—396 թթ. (մ. թ.)։

[6] 15 տարվա ժամանակաշրջան. այն հաստատել է Կոստանդիանոս կայսրը 312 թ. սեպտեմբերին։

[7] Սիլինտիար տասնապետ։ Սիլինտիարները «նախապես պատկանում էին կուբիկուլարիոսների դասին, որը կայսեր սենեկապետությունն էր ներկայացնում։ Գտնվում էին պրեպոզիտոսի ենթակայության մեջ։ Չորս սիլենտիարիոս ծառայում էին կայսրուհուն։ Կայսերական ընդունելությունների ժամանակ արարողապետության պաշտոնն էին վարում։ Տե՛ս Կոսաանդին Ծիրանածին, թրգմ. Հ. Բարթիկյանի, Երևան, 1970, էջ 296։

[8] Այժմ Դուրացցո, Իլլիրիայի քաղաքներից, Ադրիականի ափերին։

էր, առնական արտաքինով, կորովի մտքով, և հավատացյալ։ Զինվոր եղած ժամանակ մտերմական կապերի մեջ էր Արիադնա թագուհու հետ, և սա էլ ցանկացավ ու համաձայնվեց նրան թագավոր դարձնել։ Այս մարդու իշխանության գլուխ անցնելուց մի քանի օր առաջ, Ամիդից Դիտի եղբայր՝ Հովհան Սքոլաստիկոս անունով մեկը, մի արի մարդ, արդար, հավատարիմ, աստվածավախ ու չարին հակառակ կացող, և իր ցանկությամբ, ինքնակամ, կրոնական աստիճան էր ստացել և դարձել էր եկեղեցական քարոզիչ։ Իր քաղաքի հետ կապված ինչ որ խնդրով, որպես դեսպան եկել էր Կոստանդնուպոլիս։ Սա մեկ, և ապա երկրորդ անգամ տեսիլք տեսավ, որի համաձայն սիլինտիար Անաստասիոսը պետք է թագավոր դառնար։ Նա կանչել տվեց նրան ու ասաց. քո ուղղամտությունն, առաքինություններն ու հոգու գեղեցկությունը նկատի ունենալով, և որպեսզի դու աստծու բարի կամքը կատարես, հայտնում եմ քեզ, որ դու շատ շուտով թագավոր կլինես, ուստի եղիր խաղաղասեր, մարդասեր, պարկեշտ ու արդար, և քո ազգակիցների նկատմամբ հեզ ու բարեսեր։ Ես այդ չեմ ասում քեզ շողոքորթելու, ինչ որ բան քեզնից ուզելու համար, այլ հայտնում եմ քեզ, որ դու շատ շուտով թագավոր կլինես։ Եվ որովհետև այս Հովհանն իր արժանիքների համար հայտնի էր ու հարգված, շատերին ծանոթ էր որպես ճարտարաբան, Անաստասիոսը հավատաց նրան, ու նրա մոտ մնաց ու մասնակցեց եկեղեցական արարողությանը։ Սակայն երբ նա ստացավ թագավորությունն ու ցանկացավ այս բարեկամին նվերներով իր շնորհակալությունն ու երախտագիտությունը հայտնել, հասկանալով, որ նման վերաբերմունքը հաճելի ու ցանկալի է մարդկանց, Հովհանը նրանից բոլորովին ոչինչ չվերցրեց ու շուտով թողեց քաղաքն ու վերադարձավ իր հայրենիքը։ Նա միայն բավարարվեց Զենոնի (ժամանակին) տված փաստաթղթերով, և որպեսզի դրանք ընդունելի լինեն, Անաստասիոսին վավերացնել տվեց։

Սակայն (Կոստանդնուպոլսո) եպիսկոպոս Եվփեմիոսը վճռել էր Պետրոս (Ալեքսանդրացուն) պաշտոնանկ անել, որովհետև սա, իր նախորդին Փրավիտային ժողովական թղթով վճռական պատասխան էր գրել ու բանադրել Քաղկեդոնի ժողովն ու Տոմարը, և այն ուղարկել էր ինչ որ կղերականների՝ Լոնգինոս քահանայի ու Անդրեաս սարկավագի միջոցով։ Սակայն այն ժամանակ, այնտեղ (մայրաքաղաքում) գտնվող իմաստուն մի մարդի՝ Կեսարիայի եպիսկոպոս Արքեղայոսի խորհրդով հրաժարվեց այդ մտքից։

Եվ երբ Պետրոսը վախճանվեց, Եվփեմիոսը շարունակեց նույն ատելությունն ունենալ Ալեքսանդրիայի եպիսկոպոսությունում Պետրոսին հաջորդած՝ Աթանասիոս (եպիսկոպոսի) նկատմամբ, որ ավելի բացահայտ ու պաշտոնապես բանադրեց (Քաղկեդոնի) ժողովն ու Տոմարը։ Նրան պաշտոնազրկելու համար Եվփեմիոսը պատրաստություն էր տեսնում և այդ նպատակի համար օգնության կանչեց Հռոմի Փելիքս (եպիսկոպոսին)։ Սակայն նրա մեքենայությունները իր ապոկրիսարիոսի[9] միջոցով հայտնի դարձավ Աթանասիոս (եպիսկոպոսին), որը սրան էր ուղարկել (Եվփեմիոսի) Փելիքսին գրած նամակի պատճենը։

Այն ժամանակ Աթանասիոս (եպիսկոպոսը) նամակ գրեց Երուսաղեմի Սալլուստ (եպիսկոպոսին) և նրանից պատասխան ստացավ, որ հավատի խնդրում նույն տեսակետն էր պաշտպանում։ Դրա վրա երկուսն էլ (Ալեքսանդրիայի ու Երուսաղեմի) Անաստասիոս կայսրին գրեցին այն մասին, որ Եվփեմիոսը հերետիկոս է, և ի հաստատումն իրենց ասածի, վկայաբերեցին նրա (Փելիքսին) գրած նամակի պատճենը։ Եվ երբ պատահաբար Կոստանդնուպոլսում եղած մի քանի եպիսկոպոսներ և Ալեքսանդրիայից ու Արևելքից եկած հավատացյալ վանականներ քննեցին նրա արարքները, նրան զրկեցին իր աթոռից, վտարեցին և նրա փոխարեն (բազմեց) Մակեդոնիոսն, որ ինչպես ներքևում դրել ենք, տասնհինգ տարի հետո նույնպես աքսորվեց։

## ԳԼՈՒԽ Բ

*Այս գրքի երկրորդ գլխում պատմվում է, թե ինչպես Իսավրիան ապստամբվեց։*

Այժմ Իսավրացիները Զենոնի օրոք ղարդացան, որովհետև նա (Զենոնը) Վասիլիսկոս և Մարկոս բռնակալների առջևից փախչելով, եկել ու որպես փախստական բնակվել էր նրանց (Իսավրացիների) Սալմոն կոչված ամրոցում. և որովհետև Զենոնը

[9] Այս պաշտոնի կապակցությամբ Պրոկոպիոսը հետևյալ տեղեկությունն է տալիս իր աշխատության մեջ. «Կայսերական ապոկրիսարիոս Թեոդորոսը, որի պաշտոնն էր կայսեր հաղորդել կարիքավորների դիմումների մասին և վերջիններիս հայտնել (կայսեր) որոշումները։ Հռոմեացիներն այդ պաշտոնը վարողին լատիներեն անվանում են «ռեֆերենդարիոս»։ Տե՛ս Պրոկոպիոս Կեսարացի, Պատերազմների մասին, էջ 138։ Անկասկած պատրիարքարաններն էլ ունեցել են նման պաշտոնյաներ, որովհետև այստեղ պատրիարքարանի պաշտոնյայի մասին է խոսքը։

նրանց նկատմամբ երախտապարտ էր զգում, նրանց արժանացրել էր ամեն տեսակ պատիվների, ուստի Զենոնի օրոք պետության մեջ մեծ ազդեցություն ձեռք բերեցին, բայց նրանք ապերախտ գտնվեցին, հպարտացան ու ամբարտավանացան, և երբ Անաստասիոսը կայսր դարձավ, նրանք ապստամբվեցին նրա դեմ և իրենց համար ղեկավար նշանակեցին, և երբ Անաստասիոսը նրանց նվերներ ուղարկեց, հրաժարվեցին (ընդունել)։ Նրանք ոչ միայն չհամաձայնվեցին նրան հարկ տալ, այլև ասպատակեցին շրջակա եպարքոսությունները[10]։ Երբ այդ մասին բողոքեցին ու մեղադրանք ներկայացրին կայսրին, նա բանակ ուղարկեց և նրանց դեմ պատրաստություն տեսավ։ Իսավրացիները մարտում պարտվեցին, և պարզվեց, որ թույլ էին, նվաճվեցին ու նրանց բռնակալներն էլ սպանվեցին։

Երկրաշարժ եղավ։ Մորեխները խուժեցին Միջագետքի Ղարոբ[11] (գավառը)։ Անաստասիոսի(9-րդ տարում) (500 թ.) սով եղավ, որի մասին Անաստասիոսի թագավորության 11-րդ տարում Բատնայի վարդապետ՝ Հակոբը[12] մի տեղեկագիր գրեց։ Արաբներից շատերը Ամիդում և իրենց փախած այլ վայրերում՝ մահացան։

ԳԼՈՒԽ Գ

*Այս VII գրքի 3-րդ գլխում հայտնում է, թե ինչպես Հայաստանի Թեոդոսուպոլիսը նվաճվեց և Միջագետքի Ամիդ քաղաքի մասին։*

Երբ պարսիկների Պերոզ արքան իշխում էր իր սեփական երկրում, Անաստասիոսի 13-րդ (տարում) հոները պարսիկների կողմից պահպանված (Ալանաց) դռներից դուրս եկան և լեռնային շրջաններով արշավեցին պարսիկների երկիրը։ Պերոզը վախեցավ, բանակ հավաքեց ու գնաց նրանց հանդիպելու։ Նա նրանցից իմացավ իր երկիրը ներխուժելու ու արշավելու պատճառների

---

10 «Եպարքոս» լատ. praetorius-ից. Հին Հռոմում praetor էին կոչվում ամեն տեսակի կառավարիչները, քաղաքապետները, գլխավոր զորահրամանատարները, գլխավոր դատավորը։ Տե՛ս Պրոկոպիոս Կեսարացի, էջ 298։

11 Մծբինի շրջակայքը։

12 Հակոբը ասորական մատենագրության VI դարի խոշոր դեմքերից է։ Ծնվել է Եփրատի մոտակայքում գտնվող Սարուգ գավառի Կուրտամ գյուղում, այդ պատճառով մատենագրությանը հայտնի է նաև «Սարուգեցի» անունով։ 519 թ. ձեռնադրվել է Բատնանի եպիսկոպոս։ Նրանից հասել են նամակներ, ճառեր և այլ աշխատություններ։ Նա հայտնի միաբնակ գործիչներից է։

մասին. նրանք ասացին նրան. «Պարսկական պետությունը մեզ բարբարոսներիս ի՞նչ է տալիս որպես հարկ. մենք ատոծու կողմից, գիշակեր գազանների նման հյուսիս-արևմտյան շրջանն ենք նետվել ու ապրում ենք մեր զենքերով, աղեղներով ու սրով և կերակրվում ամեն տեսակ մսեղենով։ Հռոմների կայսրը իր դեսպանների միջոցով խոստացել է կրկնակի հարկ տալ, եթե մենք բարեկամական կապերը խզենք ձեզ՝ պարսիկներիդ հետ. դրա համար էլ պատրաստվեցինք ու եկանք այստեղ. կամ մեզ տվեք այնքան, ինչքան հռոմներն են խոստանում և մենք ձեզ հետ կվերահաստատենք մեր դաշինքը, և կամ եթե չեք ուզում այդքան տալ մեզ, ապա պատերազմ ընդունեք»։ Երբ Պերոզն իմացավ հոների պահանջների մասին, և չնայած նրանք քանակով շատ ավելի քիչ էին, քան իր բանակը, մտածեց խաբել ու ստել և խոստացավ նրանց, որ պահանջված գումարը կտա. Հոների ղեկավարներից 400 մարդ հավաքվեցին, որոնց մեջ էր նաև Եվստաթիոսն Ապամեայի վաճառականներից մի խելացի մարդ, որի խորհրդով էլ նրանք շարժվում էին։ Պերոզն իր հետ 400 մարդ վերցրեց ու հանդիպեցին իրար։ Եվ նրանք բարձրացան լեռը ու դաշինք կնքեցին և իրար հետ ճաշեցին ու ձեռքերը երկինք բարձրացրած երդվեցին։ Եվ երբ հոներից մի քանիսը մնացին 400 մարդկանց հետ, որպեսզի հարկը (փողը) վերցնեն և (հոներից) մնացածները ցրվեցին՝ իրենց երկիրը վերադառնալու համար, տասը օրից հետո (սակայն) Պերոզը հրաժարվեց իր խոստումից ու պատերազմի պատրաստվեց ցրված հոների և չորս հարյուրի դեմ։ Բայց Եվստաթիոս վաճառականը քաջալերեց հոներին, ու ասաց, որ նրանք չվախենան, չնայած (քանակով) ավելի քիչ են (քան պարսիկները)։ Եվ Եվստաթիոսի խորհրդի համաձայն երդվեցին, այրվող կրակի վրա մուշկ ու անուշահոտ յուղեր լցնելով ու աստծո զոհ մատուցելով, որ կկարողանան հաղթել ստախոսներին, և (ապա) նրանք պատերազմ սկսեցին Պերոզի դեմ, սպանեցին նրան ու նրա բանակից շատերին, ապա կողոպտեցին Պարսկաստանը և վերադարձան իրենց հայրենի երկիրը։ Պերոզի դիակը չգտան, և իրենց երկրում, նրան (Պերոզին) ստախոս անվանեցին։

Սակայն Կավատը, որը հաջորդեց նրան, և իր մեծամեծներն ատելությամբ էին լցված հռոմների դեմ, ասելով որ նրանք իրենց երկրի ասպատակության, կողոպուտի ու ամայացման պատճառ եղան։ (Ուստի) Կավատը բանակ հավաքեց ու գնաց հռոմներին պատկանող հայկական Թեոդոսուպոլիս (քաղաքը) և

նվաճեց այն, թեև քաղաքի բնակիչների հետ բարեսրտությամբ վերաբերվեց, որովհետև նրանցից վիրավորանք չէր ստացել, սակայն նա գերի վերցրեց քաղաքի Կոստանդին կառավարչին[13]։

Թեշրին (հոկտեմբեր) ամսին նա հասավ Միջագետքի Ամիդ քաղաքը։ Թեև սուր նետերի անվերջ հարվածներով և ռազմական խոյերով (մեքենաներ) հարվածում էին պարիսպը, որպեսզի այն փուլ գա, բայց կաշվե ծածկոցները պահպանում էին այն, նրանք (պարսիկները) պարսպի բարձրության ջրի[14] պատրաստեցին սակայն երեք ամիս շարունակ չէին կարողանում հարձակումով գրավել քաղաքը։ Եվ իր (Կավատի) մարդիկ աշխատանքի ու կռվի պատճառով շատ դժվարությունների էին հանդիպում, և նա անվերջ իր ականջներով հայհոյանք, հեգնանք ու ծաղր էր լսում, պարսպի վրա եղած անկանոն զորքից։ Նա շատ վշտացավ, զայրացավ, ու ցավ ապրեց, որովհետև ձմեռն իր դաժանությամբ վրա հասավ ու լայն պատմուճաններ հագած պարսիկները չէին դիմանում (ցրտին), նրանց աղեղներն էլ օդի խոնավությունից թուլացել էին և խոյերը չէին կարողանում վնասել կամ անցք բացել պարսպի վրա, որովհետև (պաշարվածները պարսպի) սրածայր մասերում շղթաներով անկողիններ էին ամրացրել և խոյի հարվածները հասնում էին դրանց և դրանք էլ պարիսպը վնասվելուց պաշտպանում էին։ Իրենք (ամիդցիները) պարսպի ներսից անցք բացեցին և հետզհետե ջրոււ տակ լցված հողը ներս տարան ու (փոխարեն) այն գերաններով ամրացրին։ Պարսիկ ընտրյալ ռազմիկները բարձրացան ջրոււ վրա և պարսպի վրա գերաններ դնելով փորձեցին ներս մտնել։ Արքան իր ուժերով մոտենում էր նրանց և օգնում զենքով ու նետերի հարվածներով, և քաջալերում բացականչություններով, ոգևորում իր ներկայությամբ ու մոտիկությամբ՝ ստիպում էր նրանց առաջանալ. (առաջացան) մոտ 500 մարդ. (պաշարվածները) պարսպից փայտերի (ջրոււ) վրա մորթիներ էին նետում, այնպիսիները, որոնք նոր էին քերթում եզներից և այն լցնում նավթով ու խոլորձով, իսկ խոլորձու հյութն էլ շաղ էին տալիս մորթիների վրա, որպեսզի դրանք լպրծուն լինեն։ Ապա ջրոււ տակ եղած նեցուկներին կրակ տվեցին. մոտ

---

[13] Այստեղ թեև չի նշված ո՞ր «թեշրին» ամսի մասին է՝ առաջին թե երկրորդ, սակայն Յոշվա Ստիլիտի տեղեկություններից իմանում ենք, որ թեշրին առաջինի մասին է խոսքը, այսինքն հոկտեմբերի։

[14] Բառացի ասորերեն «Kudnata» բառը նշանակում է ջրրի։ Պարսպի առաջ նման բարձրություններ էին պատրաստում, որպեսզի հնարավորություն ստեղծեն և այնտեղից պարսպի վրա կռվողներին հարվածեն ու ներս թափանցեն։

6 ժամ մարտի մտած (պարսիկներին) չհաջողվեց մտնել ներս, իսկ կրակը բոցավառվեց և այրեց նեցուկների փայտերը. մյուս նյութերն էլ կրակի ուժգնությունից անմիջապես մոխիր դարձան, ջորին քանդվեց և փուլ եկավ, իսկ պարսիկները, որոնք բարձրացել էին դրանց վրա, այրվեցին և ճզմվեցին պարսպի վրա կանգնածների նետած քարերից։

Արքան ամոթով ու վշտով վերադարձավ և ավելի շատ ծաղրի ու ծանակի ենթարկվեց արկածախնդիր, հպարտ ու պարծենկոտ մարդկանցից։ Այդ քաղաքում եպիսկոպոս չկար, որ նրանց ղսպեր ու կարգի բերեր։ Հովհան եպիսկոպոսն, որը համեստ, ազնիվ ու բարեգործ մի մարդ էր, մինչ այդ, մի քանի օր առաջ վախճանվել էր։ Նա կանչվել էր Կարտամին վանքից[15], և ընտրվելուց հետո դարձել նրանց (ամիդցիների) եպիսկոպոսը։ Դրանից հետո էլ նա իր ճգնավորական (կյանքն) ու ինքնախարազանման սովորությունը չթողեց, այլ մշտապես գիշեր ու ցերեկ այդպես էր (ապրում)։ Նա զգուշացրեց ու կշտամբեց քաղաքի հարուստներին, արաբների արշավանքների և ժանտախտի կապակցությամբ ասելով, որ նրանք չպետք է թաքցնեն հացահատիկը, դժբախտության և սովի օրերին, այլ պետք է ծախեն և տան աղքատներին, որպեսզի այն պահելով, չանցնի թշնամու ձեռքը, ինչպես ասում է (Սուրբ) Գիրքը։ Եվ իսկապես այդպես եղավ, իրեն բացահայտ երևաց մի հրեշտակ, որը կանգնած էր խորանի մոտ և հայտնեց նրան թշնամու գալստյան մասին, և որպես արդար մարդ, ասաց (հրեշտակը), որ մինչ թշնամու գալուստը, ինքը վախճանվելու է։ Նա ավածը հասկացավ և այդ մասին հայտնեց քաղաքի բնակիչներին, որպեսզի նրանք ետ դառնան (չարի ճանապարհից) և փրկվեն (աստծո) զայրույթից։

## ԳԼՈՒԽ Դ

*VII գրքի այս 4-րդ գլուխը պատմում է, թե ինչպես Ամիդ քաղաքը նվաճվեց և ինչ պատահեց բնակիչներին։*

Երբ Կավատի ու իր բանակի ղանազան հարձակումները քաղաքի վրա անհաջող անցան և զինվորներից շատերը ոչնչացան, նրա ձեռքերը թուլացան (վախեցավ), և այն ժամանակ խնդրեց, որ իրեն ոչ մեծ քանակությամբ արծաթ նվեր տան և ինքը կհեռանա քաղաքից։ Սակայն Պապպիոսի որդի՝ Լեոնտիոսը,

[15] Կարտամին վանքը գտնվում էր Մարգին քաղաքի մոտակայքում։

սենատորների գլխավորը, հեգեմոն Կյուրոսը և մառանապետ Պողոս Ջայնաբի որդին, Կավատի մոտ ուղարկված դեսպանների միջոցով պահանջեցին այգիներից նրա զինվորների կերած կանաչեղենի, ինչպես նաև գյուղերից հավաքած հացահատիկի ու խաղողի արժեքը։ Եվ երբ այս պահանջից շատ վշտացած, համարյա պատրաստվել էր ամոթով հեռանալ, բայց, ինչպես հետո պատմել է, գիշերը տեսիլքում երևացել է Քրիստոս և ասել որ երեք օրից նա իրեն կհանձնի քաղաքի բնակիչներին, որովհետև նրանք մեղանչել են իր դեմ։ Եվ ահա այսպես եղավ. քաղաքի արևմտյան մասում՝ Տրիպիրգիոնի[16] մոտ պահակություն էին անում վանականները, որոնք եկել էին Հովհան Օըտայեցու[17] վանքից և որոնց վանահայրը պարսիկ էր։ Դրսում այս հսկվող աշտարակի դիմաց տեղավորվել էր ինչ որ կաղ մարզպան՝ Կանարակ անունով։ Ամեն օր՝ գիշեր և ցերեկ նա ուշադիր ջանասիրությամբ հետևում ու ծրագրում էր, թե ինչպես գրավի քաղաքը։ Քաղաքում մեկը կար, որին Կուտրիգո[18] էին կոչում, մի կովասեր ու գող մարդ. այս մարդը շատ հանդուգն էր պարսիկների դեմ կատարած իր բոլոր հարձակումների ժամանակ։ Նա ասպատակություններ էր անում և խլում նրանցից անասուն և ապրանքներ. Նրանք (պարսիկները) ևս պարսպի վրայից լսել էին նրա՝ Կուտրիգո անունը, ուստի նրանք էլ նրան կոչում էին Կուտրիգո։ Կանարակը նկատել ու հասկացել էր, որ նա Տրիպիրգիոնի հետ կապ ունեցող ջրմուղից դուրս եկավ և (գտածը) խլեց ու գնաց ներս։ Պարսիկները թույլ տվեցին, որ նա ինչ որ ժամանակ իր կամքը կատարի, հետևեցին ու քննեցին նրա շարժումները և տեսան, որ նա դուրս եկավ ու ներս գնաց։

Այն գիշեր, երբ քաղաքը նվաճվեց, մութ էր և խիտ ամպերից թեթև անձրև էր մաղում, ինչ որ մարդ բարեկամաբար խնճույք կազմակերպեց Տրիսլիրգիոնում հսկող վանականների համար և նրանց, մինչև ուշ գիշեր, գինի տվեց խմելու, հետևաբար նրանց քունը տարավ և նրանք, սովորականի նման, աչալրջությամբ չէին հսկում։ Երբ Կանարակն ու մի քանի զինվորներ վեր բարձրացան Կուտրիգոյի հետքերին հետևելով մոտեցան պարսպին։ Վանական-

---

16 Հունարեն բառ է և նշանակում է «երեք աշտարակ» կամ «բուրգ»։

17 Անձիտ գավառի «Օրտայան» նույնացված էր ասորական գրականության մեջ Անձիտի հետ. տե՛ս Land, Anec. Syr., t. II. p. 279.

18 Payne-Smith-ը իր բառարանում գրում է, որ այն հունարենից է գալիս Κατηγορεῖν. ամբաստանել, մեղադրել, այպանել, տե՛ս Payne-Smith, A Compendious syr. Dictionary, p. 503.

ները չբղավեցին և ոչ էլ քարեր գցեցին, այսպիսով նա հասկացավ, որ նրանք քնած են, ուստի նա ուղարկեց աստիճաններ ու զինվորներ (բերելու), իսկ իր հետ եղածները ջրմուղներից ներս մտան, մագլցեցին վանականների աշտարակը և սպանեցին նրանց։ Նրանք գրավեցին աշտարակը և ապա որմնախորշը[19]։ Նրանք ամրացրին աստիճանները պարսպի դեմ և (լուր) ուղարկեցին արքային։

Բայց երբ նրանք, որոնք հարևան աշտարակն էին հսկում, լսեցին աղմուկը, բղավեցին ու ուզեցին գնալ վանականների մոտ, բայց նրանք արդեն սպանված էին, այդ պատճառով էլ չկարողացան։ Նրանցից ոմանք վիրավորվեցին պարսիկների նետերից ու մահացան։ Երբ լուրը հասավ հեդեմոն Կյուրոսին, նա վերև բարձրացավ. նրան ուղեկցում էին ջահերով, և նա շատ հեշտ վիրավորվեց պարսիկների նետից, որոնք մթում կանգնած անվնաս էին մնում աղեղների (հարվածներից)։ Վիրավորված (Կյուրոսին) տարան։

Երբ առավոտ եղավ, արքան ու իր բանակը տեղ հասան, աստիճաններ դրեցին պարսպի դեմ. նա հրամայեց իր զինվորներին վերև բարձրանալ. շատերը, որոնք վերև բարձրացան, մահացան՝ վիրավորվելով նետերից ու քարերից (կամ) ետ մղվեցին նիզակներից։ Նրանք, որոնք վախից ետ էին դառնում և աստիճաններով ցած փախչում, արքայի հրամանով որպես դասալիքների ու վախկոտների սպանում էին։ Այսպես, պարսիկները քաջալերվեցին ու որոշեցին կամ հաղթել, նվաճել ու գրավել քաղաքը, կամ վիրավորվել մարտում, խուսափելու համար իրենց արքայի մեղադրանքից ու սպանդից, որովհետև նա մոտ էր կանգնած և դիտում էր իրենց ճակատամարտը։ Քաղաքացիները փորձեցին քանդել աշտարակի կամարի պորտաքարը, որի վրա կանգնած էին պարսիկները, նրանք սկսեցին քանդել հենարանը, և մինչ այդ տեղի էր ունենում, մի այլ աշտարակ նվաճվեց, ապա մեկ ուրիշը և նորից մի ուրիշը, (այսպես) պարսպի պահակները սպանվեցին։

Սակայն Պետրոսը հսկա հասակ (ուներ) ու քաջ (մարդ) էր, հագած երկաթյա զրահ ու հերոսաբար պաշտպանում էր (աշտարակի) տարածությունը և թույլ չէր տալիս, որ պարսիկները անցնեն, և նրանց, որոնք դրսից ու ներսից հարձակվում էին, իր նիզակով ետ էր մղում և կանգնած հերոսաբար դիմադրում էր,

[19] Պարսպի կամ ամրոցի միջև եղած բաց տարածություն։

մինչև որ արդեն աշտարակներից հինգը կամ վեցը գրավվեցին և ի վերջո ինքը փախավ և չսպանվեց։ Սկզբում պարսիկները գրավեցին ամբողջ պարիսպը, և պահեցին այն. ապա երկու գիշեր և մի ցերեկ զբաղվեցին պահակներին սպանելով ու ետ քշելով։ Եվ ի վերջո նրանք իջան ու բացեցին դարպասները և բանակը մտավ. ստացան արքայի հրամանը, որ երեք օր ու գիշեր կոտորեն բոլոր դասի ու տարիքի տղամարդկանց ու կանանց։ Սակայն Խառանից քրիստոնյա մի իշխան, Մեծն Քառասուն Մանկանց եկեղեցում հավաքվածների համար միջնորդեց արքային և փրկեց նրանց։ Արքայի հրամանով երեք օր ու գիշերից հետո ջարդը դադարեցվեց։ Մարդիկ ներս գնացին հսկելու եկեղեցու գանձերին ու քաղաքի հարուստներին, որովհետև ինչ որ նրանց մոտ գտնվեր պատկանում էր արքային։ Նույնպես հրաման եղավ, որ բոլոր սպանվածների դիակներն ու խաչվածների (մարմինները) հավաքեն ու տանեն քաղաքի հյուսիսային կողմը, որպեսզի արքան, որ գտնվում էր հարավում, կարողանա մտնել քաղաք։ Հավաքեցին (դիակները) և տանելիս հաշվեցին, որ 80000 են, բացի նրանցից, որոնց (դիակները) կուտակված էին խանութներում կամ նետված ջրմուղների մեջ և կամ մնացել էին տներում։

Ապա արքան մտավ եկեղեցու գանձարանը և այնտեղ տեսնելով մեր տեր Հիսուսի նկարը՝ Գալիլիացու կերպարանքով, հարցրեց, թե ո՞վ է նա։ Նրանք պատասխանեցին, որ «Նազովրեցիների աստվածն է»։ Նա գլուխը խոնարհեց նրա (նկարի) առաջ ու ասաց. «Նա է, որ ինձ ասաց մնա՛ ու կստանաս ինձնից քաղաքը և բնակիչներին, որովհետև նրանք մեղանչել են իմ դեմ։ Նա (արքան) մեծ քանակությամբ արծաթյա ու ոսկյա սուրբ անոթներ և թանկարժեք զգեստներ վերցրեց, որոնք նախապես պատկանել էին քաղաքի հարուստ հյուպատոս՝ Իսահակ Բար Բարղային, և մի քանի տարի առաջ էր, որ եկեղեցին ժառանգել էր այդ բոլորը։ Նա այնտեղ գտավ նաև մրուրի մեջ չորացած լավ գինի, որը դուրս էին բերում և արևի տակ յոթը տարի պահում, մինչև որ չորանում էր. մառանապետներն իրենց ճանապարհորդությունների ժամանակ սովորություն ունեին այս փոշուց մի քիչ վերցնել և դնել մաքուր կտավից տոպրակի մեջ, և խմելիս ջրի հետ խառնում էին, որ գինու քաղցրություն ու հոտ էր տալիս. անծանոթներին նրանք ասում էին, որ սա հնանայե է[20]։ Արքան սրա վրա շատ զարմացավ և իր հետ վերցրեց այն։ Այդ

---

[20] Ըստ երևույթին «հնանայեն» քաղցրահամ օշարակ էր։

ժամանակվանից եկեղեցու զավակները մոռացան այս հաճելի խմիչքի պատրաստման եղանակը։

Հարուստների տներից վերցրած արծաթը, ոսկին ու գեղեցիկ զգեստները հավաքվեցին ու տրվեցին արքայի գանձապետներին։ Նրանք վերցրին նաև քաղաքի արձաններն ու արևի ժամացույցը, մարմարը և հավաքեցին բրոնզն ու այն ամենն, ինչ որ ուզում էին, և այդ բոլորը տեղավորեցին իրենց պատրաստած փայտյա նավակների վրա և Տիգրիս գետի վրայով ուղարկեցին, որը քաղաքի արևելքից անցնում, հոսում ու (գնում) էր իրենց երկիրը։ Արքան (պահանջեց), որ որոնեն քաղաքի մեծամեծներին ու ղեկավարներին և իր մոտ բերեցին Լեոնտիոսին, հեգեմոն Կյուրոսին, որը նետից վիրավորված էր, և մնացած հայտնի մարդկանց։ Պարսիկները սպանեցին Պողոս բար Զայնաբ մառանապետին, որովհետև նրա մոտ ոսկի շատ գտան և վախեցան, որ այդ մասին կհայտնի արքային։ Լեոնտիոսին ու Կյուրոսին կեղտոտ շորեր հագցրին, վզներից խոզի պարաններ կապեցին ու ստիպեցին, որ խոզ քշեն, և ման ածեցին (քաղաքում) ցուցադրելով, աղաղակելով ու ասելով, որ «այն ղեկավարները որոնք իրենց քաղաքը լավ չեն կառավարում և կամ իրենց ժողովրդին չեն զսպում արքային անարգելուց, ապա նման պատժի են արժանի»։ Ի վերջո հարուստներին ու վարպետներին իրար մոտ բերեցին, կապեցին և որպես արքայի գերիներ, զինվորների ուղեկցությամբ ուղարկեցին իրենց երկիրը։ Արքայի բանակի ազդեցիկ մարդկանցից մոտեցան նրան՝ արքային և ասացին. «Մարտում քաղաքի բնակիչների կողմից մեր հարազատներն ու եղբայրները սպանվեցին» և նրանից խնդրեցին, որ տղամարդկանց տասից մեկին տա, որ իրենց վրեժը լուծեն։ Հավաքեցին հասարակ մարդկանց, հաշվեցին և հանձնեցին, որոնց նրանք տարբեր ձևերով սպանեցին։

Արքան լողացավ Պողոս բար Զայնաբի բաղնիսում, և ձմեռը անցնելուց հետո մեկնեց քաղաքից։ Նա Գլոն հրամանատարին (քաղաքի) կառավարիչ նշանակեց, իսկ երկու մարզպանների ու մոտավորապես 3000 զինվոր էլ (թողեց) քաղաքը պահպանելու համար. հարուստներից Հովհան Բար Հաբլոյին, Սարգիս Բար Զաբդունին (նշանակեց) ժողովրդին ղեկավարելու համար։

Ամռանը հռոմները եկան, որոնց առաջնորդում էին մեծ ստրատեգ Պատրիկիոսը[21], ծերունի, արդար ու հավատացյալ մի մարդ,

[21] Զորավար։

*որը սակայն մտային թույլ կարողություններ ուներ, Հիպատիոսը, մագիստրոս Կելլերը և ի վերջո նաև Արյոբինդոսը։ Իրենց հետ էր նաև կոմիս Հուստինոսը, որը թագավորեց Անաստասից հետո։ Նրանք հանդիպեցին իրար, և հարձակվեցին քաղաքի վրա փայտյա աշտարակներով ուականահատներով և բոլոր տեսակի (ռազմա-կան) մեքենաներով։ Նրանք հրդեհեցին նաև քաղաքի դարպասը, որ կոչվում էր Մար Զեորի դարպաս, որպեսզի գնան պարսիկների վրա, սակայն այն չհաջողվեց, (որովհետև) նրանք հանգստանում էին ու ներս չխուժեցին, իսկ պարսիկները (կարողացան) փակել դարպասը։ Հոռոմները չգրավեցին քաղաքը և ոչ էլ կարողացան հարձակումով վերցնել այն, չնայած բնակիչներն ամենօրյա սովից այն աստիճան տանջվում էին, որ սկսել էին իրար ուտել։ Թեև սա սարսափելի պատմություն է, բայց իրական. ես այդ մասին կպատմեմ այս՝ 7-րդ գրքի հաջորդ 5-րդ գլխում։*

## ԳԼՈՒԽ Ե

*VII գրքի այս 5-րդ գլուխը Պատմում է Ամիդը նվաճելուց հետո եղած սովի մասին և թե ինչպես պարսիկներն այնտեղից (քաղաքից) դուրս եկան և մեկնեցին իրենց երկիրը։*

*Ինչպես վերևում նշեցինք, Կավատ արքան բանակի հետ իր երկիրը մեկնելիս, Գլոն հրամանատարին, երկու մարզպանների և մոտավորապես 3000 զինվորների թողեց քաղաքը պահպանելու համար։ Ինչպես նաև երկու կամ երեք հարուստ մարդկանց և մի քանի հասարակ անձանց (քաղաքը ղեկավարելու)։*

*Այս հոռոմ հրամանատարները, սակայն, չկարողացան վերցնել ու նվաճել քաղաքը։ Ի վերջո Պատրիկիոսը գնաց պարսիկների գերիշխանության տակ եղող Արզանեն (գավառը) և այնտեղից գերիներ տարավ ու նվաճեց ամրոցներ։ Արյոբինդոսն ու Հիպատիոսը գնացին Մծբին, բայց չկարողացան գրավել այն, որովհետև պարզվեց, որ թույլ էին, չնայած (Մծբինի) բնակիչների համակրանքը հոռոմների կողմն էր։ Համենայն դեպս պարսիկների արքան երբ լսեց, իր բանակով եկավ հոռոմների դեմ և նրանք (հոռոմները) նրա առաջից փախան և թողեցին իրենց հետ եղած վրաններն ու ծանր բեռները։ Արյոբինդոսը փախավ Արզամենայից[22], որ Ապադնան է, իսկ Հիպատիոսը, Պատրիկիոսն ու մյուսները*

---

[22] *Միջագետքի Կոստանդինե քաղաքից երկու օրվա հեռավորության վրա։*

(փախան) Տելլա ամրոցից։ Նրանց ձիերից ու ձիավորներից շատերն ընկան լեռների ժայռերից, ճզմվեցին, կտոր-կտոր եղան ու մահացան։

Նրանք վախենում էին միայն Փարազմանից՝ ռազմասեր (մի մարդ), մարտերում մի քանի անգամ հաջողության հասած, պարսիկներին էլ հայտնի։ Նրա անունն էլ ահ էր ազդում. իսկ նրա քաջագործությունները նրանց վախեցնում ու թուլացընում էր. (պարզվեց), որ նրա ներկայությունից սարսափում էին ընկնելու աստիճան։ Ի վերջո այս մարդը Ամիդ եկավ 500 ձիավորներով և հետևելով պարսիկներին, որոնք դուրս էին եկել ու գնում էին գյուղերը, սպանեց նրանցից մի քանիսին և խլեց նրանց հետ եղած անասուններին[23], ինչպես նաև նրանց ձիերին։

Ինչ որ Կադոնո անունով խորամանկ մի մարդ, Ակհարա գյուղից, որին անձամբ ճանաչում եմ, պայման կապեց նրա (Փարազմանի) հետ, որ նա կհրապուրի նրան՝ Գլոնին, պարսիկ հրամանատարին ու ինչ որ պատրվակով դուրս կբերի 300 կամ 400 ձիավորների հետ։ Եվ որովհետև վերոհիշյալ Կադոնոն վայրի գազանների, կաքավի, ու աղավնու[24] որս էր անում, ազատ գնում էր Գլոնի մոտ, իր ձեռքին որսից ստացված մի բան նվեր տանելով, նրա ներկայությամբ հաց էր ուտում ու փոխարեն նրանից ինչ որ (նվեր) ստանում իր բերածի արժեքին հավասար։

Եվ ի վերջո նրան ասաց, որ քաղաքից յոթ մղոն հեռավորության վրա, Ղապտա-Ռաղին[25] կոչված վայրում մոտ հարյուր հոռոմներ կան, որոնք հինդ հարյուր ձիեր են արածացնում, և որպես բարեկամ խորհուրդ տվեց, որ դուրս գան, հոռոմներին սպանեն, անասուններր վերցնեն ու այդպիսով անուն վաստակեն։

Նա (Գլոնը) խուզարկուներ ուղարկեց, որոնք մի քանի հոռոմների տեսան ձիերի հետ. վերադարձան ու (տեսածի) մասին նրան տեղեկացրին։ Նա պատրաստություն տեսավ և իր հետ վերցրեց չորս հարյուր ձիավորների և Կադոնին ջորու վրա նստեցրեց, որ առաջնորդի իրենց, և այսպես նա բերեց նրանց

---

[23] Այստեղ թեև ասորերեն բառը Khauta նշանակում է կարագ, սակայն մենք Hamilton-ի և Brooks-ի անգլերեն թարգմանության հետևողությամբ տվեցինք «անասուն», որ իր իմաստով ճիշտ է։

[24] Բնագրում «nuna»-է, որը նշանակում է ձուկ, սակայն Հռոմի ձեռագրի համապատասխան բաժնում «Յունա»՝ juna է, որը նշանակում է աղավնի։ Մեր կարծիքով վերջինն ավելի ճիշտ է։

[25] «Ղապտա-Ռաղին» ասորերեն նշանակում է հովիվների վայր։

հռոմների դարանի մեջ, իսկ այստեղ արդեն հռոմները սպասում էին։ Այսպես, հռոմները պարսիկներին կոտորեցին, և Գլոնի էր գլուխը կտրելով, իրենց հետ Կոստանդինա (քաղաքը) տարան։

Սրա վրա Գլոնի որդին ու մարզպանները ջղայնացան ու բարկացան ու փակված բնակիչներին այլևս թույլ չտվեցին պարսպից այն կողմ շուկա գնալ, որտեղ հավաքվում էին գյուղերից եկած գյուղացիներն՝ առևտրի համար։ Նրանք բերում էին գինի, ցորեն, և այլ մթերքներ ու դրանք վաճառում և՛ պարսիկներին և՛ քաղաքացիներին։ Այդ ընթացքում ձիավոր (պարսիկները) հետևվում ու հսկում էին նրանց մինչև վերագարձը ներս (քաղաքը)։ Պարսիկների գեղեցիկ մի օրենքի համաձայն ոչ ոք իրավունք չուներ (շուկա եկած) գյուղացիներից բան խլելու, և նրանք գալիս էին իրենց ուզածը վաճառում և փոխարեն փող կամ մթերք էին ստանում, դրա համար էլ նրանք շուկա էին գալիս նույն ժրաջանությամբ։ Սակայն Գլոնի և ձիավորների սպանության կապակցությամբ այլևս շուկան չէր բացվում։ Քաղաքի մնացած մեծամեծներն ու մոտ տաս հազար մարդ ձերբակալվեցին ու փակվեցին ստադիոնում. նրանք այնտեղ պահվում էին առանց ուտելիքի։ Ուտում էին իրենց կոշիկները, կղկղանքը ու խմում՝ մեզը։ Մինչև որ հարձակվեցին իրար վրա։ Երբ համարյա բոլորը ոչնչացան, ստադիոնում մնացածներին բաց թողեցին, որոնք (նման) էին դագաղից դուրս եկած մեռելների։ Այնտեղ եղած սովահար կանայք, խմբերով մի քանի տղամարդկանց վարպետությամբ, փաղաքշանքով ու նենգությամբ բռնեցին, սպանեցին և կերան։ Կանայք ավելի քան 500 տղամարդ կերան։ Քաղաքում տարածված այս մեծ սովը գերազանցեց Սամարիայի պաշարումն ու Երուսաղեմի կործանումը, որոնց մասին պատմված է Սուրբ Գրքում և Հովսեպոսի մոտ։

Ի վերջո Փարաղմանը եկավ քաղաք և դաշինք կնքեց այնտեղ եղած պարսիկների հետ, որովհետև իրենք էլ այլևս թուլացել էին։ Հռոմ ու պարսիկ ներկայացուցիչները նստեցին քաղաքի դարպասի մոտ. մինչ պարսիկները դուրս եկան, տանելով իրենց հետ այնքան, ինչքան կարող են, և նրանց չխուզարկեցին։ Եվ քաղաքացիներից ովքեր ուզում էին գնալ պարսիկների հետ, հարցնում ու թողնում էին, այսպես տեղի ունեցավ քաղաքի դատարկումը։

Մագիստրոս Կելլերը 1000 ոսկի տվեց Կավատին՝ քաղաքի ազատման ու խաղաղության համար։ Երբ փաստաթղթերը պատ-

րաստ էին, պայմանագիրը բերեցին, որ արքան ստորագրի, սակայն երբ արքան քնեց, տեսիլքում նրան ասացին, որ նա չպետք է խաղաղություն կնքի, ուստի երբ արթնացավ, պատռեց պայմանագիրը, իր հետ տանելով ոսկին, մեկնեց իր երկիրը։

Փարաղմանը մնաց քաղաքում, ղեկավարելու համար քաղաքի բնակիչներին ու (ընդհանրապես ղեկավարելու նաև) շրջանը։ Կայսրը 7 տարով հարկից ազատեց քաղաքի բնակիչներին ու գթասրտություն ցուցաբերեց նրանց նկատմամբ։ Նրանք, որոնք գերությունից վերադարձան, առատ նվերներ ստացան, ըստ աստիճանի նրանց քաղցրությամբ ընդունեց, քաղաքը հանգստացավ ու վերաբնակեցվեց։ Պարսպի վրա նոր շինարարություն կատարեցին։ Դայատի խորհրդով նորից քաղաք ուղարկվեց մի բարեսիրտ եպիսկոպոս՝ Թովմաս անունով, որը հեզ, բարի մի վանական էր։ Բացի այդ աստծո նախախնամությամբ այնտեղ կոչվեց ու ուղարկվեց Կատարա վանքից, արդար Սամուելը, որը մի հրաշագործ էր և «լուծանէ զիրս կապեալս»[26], և կանգուն էր պահում քաղաքն իր աղոթքներով և օգնում բնակիչներին։

## ԳԼՈՒԽ Զ

*Այս յոթերորդ գրքի VI գլխում պատմում է, թե ինչպես Անաստասիոս կայսեր և Ամիդ քաղաքի Թովմաս եպիսկոպոսի օրոք, հոռոմների երկրում, Պարսկաստանի սահմանի վրա, կառուցվեց Միջագետքի Դարա քաղաքը։*

Անաստասիոս կայսրը պարսիկների դեմ պատերազմելուց հետո կայսերական քաղաք ժամանած հոռոմ ստրատեգներին[27] ու հրամանատարներին խիստ նկատողություն արեց այն պատճառով, որ նրանք չկարողացան իր կամքի համաձայն, Տիրոջ հովանավորությամբ հաղթել ու դուրս քշել պարսիկներին։ Պարսիկներին Ամիդից դուրս հանել կարողացան միայն իր ուղարկած նվերների ու ոսկու միջոցով։ Նրանք ի պաշտպանություն իրենց, վկայակոչում էին այն, որ նա (պարսիկը) որպես Ասորեստանցի ու թշնամի, Տիրոջ կողմից էր ուղարկվել հոռոմների երկիրը, ի

---

[26] «Մարգարէութիւն Դանիէլի», Ե, 12։
[27] Կառավարիչներին։

պատիժ մեր մեղքերի, և ավելի դժվար էր նման հսկա բանակ ունեցողի դեմ, նույնիսկ նրա (արքայի) բացակայության, նվաճել Մծբինը, որովհետև իրենք պատրաստի (ռազմական) մեքենաներ չունեին, և ոչ էլ ապաստարան՝ հանգստանալու համար։ Մանավանդ ամրոցները հեռու էին և շատ փոքր և դժվար էր դրանց մեջ բանակ տեղավորելը, և բացի այդ, դրանց (ամրոցների) մեջ բավարար ջուր չկար և ոչ էլ ուտելիք։ Նրանք կայսրից խնդրեցին որ նրա հրամանով (սահմանի վրա) լեռան կողքին քաղաք կառուցվի, որպեսզի բանակը հանգստանալու համար կարողանա այնտեղ ապաստանել և զենք պատրաստել, և ապա կարելի լինի հսկել արաբների երկրին՝ պարսկական ու արաբական ասպատակություններից սլաշտպանելու համար։ Ոմանք խոսում էին հօգուտ Դարայի և ոմանք Ամուդի։ Նա (կայսրը) պատգամ ուղարկեց Ամիդի Թովմաս եպիսկոպոսին և նաև ճարտարապետներին[28], որոնք հատակագիծը պատրաստեցին։ Եվ այս սուրբ Թովմասը այն (հատակագիծը) իր հետ կայսրին բերեց։ Կայսրն ու մեծամեծները համաձայնվեցին, որ Դարան քաղաք կառուցվի։

Այն ժամանակ Փիլիսիմոսը դուքսն էր, մի կորովի, իմաստուն մարդ, և բոլորովին փողասեր չէր, արդար էր և գյուղացիների և աղքատների նկատմամբ։ Այժմ Կավատը պատերազմում էր տամուրացիների[29] և իր երկրի այլ թշնամիների դեմ։

Կայսրը Թովմաս եպիսկոպոսին գյուղի (Դարայի) արժեքի դիմաց ոսկի տվեց, որովհետև այն պատկանում էր եկեղեցուն ու գնեց այն գանձարանի հաշվին։ Ազատեց այնտեղ եղած ճորտերին[30], և իրենց պարգևեց յուրաքանչյուրի հողն ու տունը։ Քաղաքի եկեղեցու կառուցման համար նա տվեց մի քանի հարյուր ոսկի և երդումով խոստացավ, որ ինչ ծախս էլ կատարի եպիսկոպոսը, նա առատաձեռն վճարելու է, և չի հրաժարվելու իր պարտքից։ Ի վերջո, բոլոր մանրամասնություններով կայսերական հրովարտակ ուղարկեց, որպեսզի անհապաղ սկսեն քաղաքի կառուցումը եպիսկոպոսի ղեկավարությամբ ու հոգատարությամբ։ Այստեղ եղած արհեստավորներն, ստրուկներն ու գյուղացիները, որոնք

28 Ասորերեն բնագրում «Մեխանիկոս է»։

29 Պարսկական գերիշխանության տակ ապրող արաբական լեռնային ցեղեր։

30 Բնագրում «tutba»-է, «տուտբա»-է, որը նշանակում է նաև օտարական, պանդուխտ, բայց այստեղ կարծում ենք «ճորտ» իմաստով է օգտագործված։

անհարժեշտ ապրանքներ էին մատակարարում, լավ հասույթ ու օգուտ ունեին։

Եվ նա ուղարկեց շատ քարտաշների ու որմնադիրների և հրամայեց, որ ոչ ոքի չզրկեն իր վաստակած աշխատավարձից, որովհետև նա ճիշտ էր հասկանում, որ պարզապես նման միջոցներով միայն հնարավոր է սահմանի վրա շտապ քաղաք կառուցել։ Երբ Տիրոջ օգնությամբ պատրաստվեցին ու սկսեցին աշխատանքը, գործը ղեկավարում ու հսկում էին Կիր-Ղատան և Եվտիքիոս քահանաները, և ապա Պափնուտ, Սարգիս ու Հովհան սարկավագները և Ամիդից եկած այլ եկեղեցականներ։ Եվ ինքը՝ եպիսկոպոսը հաճախ անձամբ այցելում ու տեղում գիտում էր (աշխատանքը)։ Առատությամբ, անհաշիվ ոսկի էր տրվում, սահմանված գնով՝ արհեստավորների կատարած բոլոր աշխատանքների համար։ Օրական ամեն մի աշխատողի տալիս էին 4 կերատիոն[31] և եթե իր հետ ավանակ էր լինում՝ 8 կերատիոն։ Այսպես, շատերը հարստացան ու մեծատուն դարձան։ Երբ հայտնի դարձավ, որ մաքուր աշխատանք է և աշխատավարձն էլ կանոնավոր վճարում են, Արևելքից ու Արևմուտքից բազում աշխատողներ ու արհեստավորներ լցվեցին։ Աշխատանքներին հսկողները ևս առատ փող էին ստանում ու գրպանները լցնում, որովհետև պարզվեց, որ նա (եպիսկոպոսը) մեծահոգի, համեստ ու ազնիվ մի մարդ էր և առատությամբ (վարձատրում էր), հավատալով կայսրի իրեն տված խոստումներին։ Եվ երկու երեք տարում քաղաքը կառուցվեց, ավելի ճիշտ, մի անգամից աճեց սահմանի վրա։ Եվ երբ Կավատն իմացավ այդ մասին, ցանկացավ կասեցնել աշխատանքները, բայց չկարողացավ, որովհետև պարիսպը բարձրացված էր և կառուցված այնքան բարձր, որ կարող էր պաշտպանել նրա ետևում ապաստան գտնողներին։ Կառուցվել էին նաև բաղնիսներ, ընդարձակ մառան։ Կառուցվեց նաև ջրմուղ, որ անցնում էր լեռան ստորոտից, և ջրի համար հրաշալի ջրամբար՝ քաղաքի կենտրոնում։ Կայսրի կողմից՝ աշխատանքը ստուգելու համար հաճախ մարդիկ էին գալիս եպիսկոպոսի մոտ, և բոլորն էլ վերադարձին եպիսկոպոսի ուղղամտության ու արգարամտության մասին հոյակապ լուրեր էին հաղորդում։ Եվ նա շատ շնորհակալ էր նրանից, և ի պատասխան նրա խնդրանքին, նա անմիջապես կատարեց նրա պահանջը և ոսկի ուղարկեց։ Եվ ի վերջո եպիսկոպոսը ծախսված մի կենտինար ոսկու համար գրավոր փաստաթուղթ ներկայացրեց

[31] Արծաթ դրամ, ոսկու 1/24 մասը։

և հաղորդեց կայսրին, թե երդվում է աստծու առաջ, որ այդ փողը ծախսված է աշխատանքի վրա, և դրանից ոչինչ չի մնացել իր ձեռքում և ոչինչ էլ չի տվել իր եկեղեցուն: Եվ նա (կայսրը) անմիջապես տվեց կայսերական հրովարտակ արքունի դանձատան ստացականով միասին, որը հաստատում էր, թե ուղարկված փողը իսկապես ծախսված է քաղաքի կառուցման համար: Դարան ամբողջացավ և բարեպաշտ կայսեր անունով անվանվեց՝ Անաստասիոպոլիս: Եվ նա երդվեց իր թագով, որ ոչ ինքը և՛ ոչ էլ կայսրության իր հաջորդներից որևէ մեկը ո՛չ Թովմասից և ո՛չ էլ նրա եկեղեցուց հաշիվ չեն պահանջելու: Եվ նա (Թովմասը) նշանակեց ու ձեռնադրեց (Անաստասիոպոլսի) առաջին եպիսկոպոս՝ Եվտիքիոս քահանային, որը նախանձախնդիր ու բանիմաց մեկն էր: Եվ Ամիդի եկեղեցական կանոնադրության համաձայն, ինքնուրույնության որոշ իրավունքներ տվեց: Նրան միացավ Ամիդի հռոմ զինվորներից՝ Հովհանը: Եվտիքիոսը խուզեց սրա մազերը, քահանա ձեռնադրեց և նշանակեց փակակալ: Եվ երբ նա (Եվտիքիոսը) գնաց կայսերական քաղաք, այս Հովհանը ընկերացավ նրան, և կայսրի հետ տեսակցելիս, կայսրը նրա եկեղեցու համար հասույթ սահմանեց:

Այս ժամանակ Աբրահամ բար Կայլին, Տել-Միտիից՝ Կոստանդիայի Եփրեմի որդին, նոտար էր: Նա ևս միացավ Եվտիքիոս եպիսկոպոսին, որը նրան քահանա ձեռնադրեց: Եվ նրան ուղարկեց որպես աշխատանքի և կառուցվող բաղնիսի տեսուչ: Ի վերջո նա եղավ եկեղեցու մատակարար:

Կայսրը Եվտիքիոսին սուրբ անոթներ ու ոսկի նվեր տվեց, որպեսզի քաղաքում մեծ եկեղեցի կառուցեն և ետ ուղարկեց նրան: Եպիսկոպոսը կարճ ժամանակից հետո վախճանվեց: Նրան հաջորդեց Ռեսալղայնից՝ Թովմաս բար Ղաբդոնան, որը հռոմ (զինվոր) էր եղել, և նշանակվել էր Ամիդի եկեղեցու մատակարար: Նա ևս բանիմաց ու հմուտ էր գործում: Հովհան փակակալը, որ ազնիվ ու պարկեշտ մարդ էր, նրա հավատարիմն ու սիրելին դարձավ: Եվ երբ այս սուրբ Թովմասը հեռացվեց իր աթոռից՝ հավատի նկատմամբ ունեցած նախանձախնդրության պատճառով, այս հավատացյալ Հովհանը ընկերացավ նրան և նշանակվեց քորեպիսկոպոս: Նա (Թովմասը) մոտ 17 տարի, աքսորում տարբեր տեղեր ապրեց: Նրան (Հովհանին) ուղարկեց Բերոյա[32], և այնտեղ միացավ Մարդեի վանականներին, որոնք փախել էին

---

[32] Այժմյան Սիրիայի Հալեպ քաղաքը:

թշնամուց։ 3-րդ (տարում[33]) երբ Խոսրովն Անտիոք արշավեց, նա վախճանվեց և թաղվեց Բեյթ-Թիրա վանքում, եպիսկոպոսի կողքին, որը մահացել էր իրենից առաջ։

### ԳԼՈՒԽ ԺԳ

*Այս գրքի XIII գլխում պատմում է Արիադնա թագուհու մահվան մասին, և թե ինչպես հանդես եկավ Վիտալիան բռնապետը, որը և Հիպատիոսին պատերազմական գերի վերցրեց։*

Զենոնի կին՝ Արիադնա թագուհին իր ամուսնու մահից հետո, ամուսնացավ այս Անաստասիոսի հետ և նրան էլ կայսր դարձրեց։ Իր առաջին և երկրորդ ամուսնության ընթացքում, շատ տարիներ՝ մոտ քառասուն տարի իշխեց, և մահացավ հույների 824 (513) թ.։ Իր ամուսինն ապրեց, պահպանելով սուրբ հավատը, չնայած առաջացած իր տարիքին (շարունակում էր) զբաղվել կայսերական գործերով։ Նա վշտանում ու անհանգստանում էր Գոթացի Վիտալիանի պատճառով, որ ստրատեգ, պատերազմասեր, քաջ, հանգուցն և ճարտար էր պատերազմում։

Այս մարդուն միացան շատ բարբարոս ցեղեր և նա առատաձեռնորեն ոսկի էր տալիս նրանց, և բացի այդ, նրանք հարստանում էին Անաստասիոսի տերությունից վերցրած ավարներով։ Երկար ժամանակ խաղաղ մնալուց հետո, Վիտալիանոսը դրժեց իր խոստումը, և ապստամբվեց, վնասեց հոռոմների տերությանը, նեղեց կայսրությանը, արհամարհեց և զոռոզաբար առանց վախենալու առաջացավ մինչև Կոստանդնուպոլսո արվարձանները։ Անաստասիոսը բանակ ուղարկեց Հիպատիոսի գլխավորությամբ, սակայն նրանք (հոռոմները) նրա կողմից փախուստի մատնվեցին և Հիպատիոսը գերի ընկավ։ Նա մեծ արհամարհանքով վարվեց նրա հետ, և որպես վիրավորանք նրան փակեց խոզանոցում։ Այս առիթով բացահայտ ամոթանքի ենթարկեց նրան, ամենաստորացուցիչ ձևով, ման ածելով բանակի առաջ, որովհետև ժամանակին Հիպատիոսը Վիտալիանի կնոջ գերի էր վերցրել և նրան բռնաբարել, ուստի Վիտալիանի ատելությունը նրա դեմ շատ ուժեղ էր։ Հիպատիոսն իր երիտասարդության ժամանակ անզուսպ, հեշտասեր, լպիրշ ու կնամոլ էր։ Վերջի վերջո իրեն համար ուղարկված

[33] 540 թ.։

մեծ գումարով գնվեց և վերադարձավ Վիտալիանի գերությունից՝ պատժի ազդեցությամբ խելոքացած։

## ԳԼՈՒԽ ԺԴ

7-րդ գրքի 14-րդ գլուխը
պատմում է մահացած Տիմոթեոսի և նրա հաջորդ՝
Հովհանի և մի քանի այլ մարդկանց մասին, որոնք
Երուսաղեմ տոնակատարության եկան և սատանաների
(ազդեցության) ենթարկվելով, խաչի տոնին
հայհոյեցին խաչին։

Տիմոթեոսը վեց կամ յոթ տարի ապրելով, վախճանվեց 11-րդ տարում[34], և Հովհանը հաջորդեց նրան։ Եվ այն տարին, երբ Անաստասիոս կայսրը մեռավ, մի քանի եգիպտացիներ, ալեքսանդրացիներ, անդրհորդանանցիներ, եդեմիտներ, արաբներ, որոնք Երուսաղեմ էին եկել, Գյուտ խաչի տոնակատարության սեպտեմբերի 14-ին, սատանաները նրանցից շատերին իրենց ազդեցության տակ վերցրին, և նրանք (սկսեցին) հայհոյել խաչին, և ապա թողեցին ու գնացին։ Եվ այդ, հավատացյալներին անհանգստացրեց ու վիշտ պատճառեց, և նրանք իսկապես չհասկացան պատճառը, մինչև որ դեպքը պատահեց. խոսքը հավատի վեճի մասին է, որը այնուհետև գայթակղության քար դարձավ։ Աստված նախօրոք հայտնի դարձրեց, որ նկատի ունենանք փորձությունը և մեր համբերությամբ ամուր ու հաստատուն մնանք (հավատքում), որպեսզի ուրախանանք, ինչպես Հակոբ առաքյալն է ասում. «Ամենայն ուրախութեան արժանի համարիջիք, եղբարք, յորժամ ի պէսպէս փորձութեանց ի մէջ անկանիցիք. գիտասջիք զի հանդէս ձերոց հաւատոցն յօրինեալ գործէ զհամբերութիւն։ Իսկ համբերութիւնն գործ կատարեալ ունիցի, զի իցէք ողջանդամք եւ կատարեալք, եւ ոչ ինչ իւիք նուազեալք»[35]։

Արդ Անաստասիոսը մահացավ հուլիսի 9-ին։ Նրան հաջորդեց Հուստինոսը[36], որը այն ժամանակ, երբ Կավատ արքան եկավ Ամիդ, նա բանակի և ստրատեգների հետ միասին գնացել էր պարսիկների դեմ։ Նա սպիտակ մազերով, գեղեցիկ ծերունի էր, բայց ոչ զարգացած, և հավատի հարցում նա բաժանում էր Հռոմի մարդ-

[34] 518 թ.։

[35] «Թուղթ սրբոյ առաքելոյն Յակովբայ կաթողիկէ». Գլ Ա, 2—4։

[36] Հուստինոս Ա-ին, 518—527 թթ.։

կանց տեսակետները, որովհետև պատկանում էր այդ իշխանության, լինելով Մավրիանա[37] կոչվող ամրոցից, որի ջուրը վատն էր և երբ եռացնում են, արյուն է դառնում։

Այս գիրքը պարունակում է Անաստասիոսի 27 տարիների ու երեք ու կես ամիսների ժամանակաշրջանի (պատմությունը)։

## ԳԼՈՒԽ ԺԵ

### VII գրքի 15-րդ գլուխը վկայում է թե Անաստասիոս կայսրի օրոք ովքեր էին քահանայապետները։

Այժմ, Անաստասիոսի օրոք քահանայապետները հետևյալներն էին. երկաբնակներից Հռոմում՝ Փելիքսը և իրեն հաջորդ՝ Սիմակոսը և Հորիմզդան, որ դեռ կենդանի է։

Ալեքսանդրիայի ուղղափառներից՝ Աթանասիոսն ու նրա հաջորդ՝ Հովհանը, և նորից մի այլ Հովհան և Դիոսկորոսը, որն այժմ գրավում է աթոռը։

Անտիոքում՝ Փլավիանոսը, որ վտարվել էր և Սեվերոս ուղղափառը։

Կոստանդնուպոլսում՝ Եվփեմիոսը և Մակեդոնիոսը, որոնք վտարվել էին, և Տիմոթեոս ուղղափառը և նրա հաջորդ՝ Հովհանը, որ ընդունեց (Քաղկեդոնի) ժողովը Հուստինոսի գահակալության սկզբում և վախճանվեց (դրանից) քիչ հետո. Եպիփանոսը հաջորդեց նրան։

Երուսաղեմի՝ Սալլուստն ու նրա հաջորդ՝ Եղիան, որը վտարվեց, և Հովհանը, որ ընդունեց (Քաղկեդոնի) ժողովը Հուստինոսի օրոք, և նրա հաջորդ՝ Պետրոսը։

## ԳԻՐՔ ՈՒԹԵՐՈՐԴ

VIII գրքի գլուխներում, ինչպես ներքևում ասվեց, նախ Հուստինոսի գահակալությունը (պատմությունը), և ապա Ամանտիոս վերակացուի, որ սպանվեց պալատում, և նրա ծառա Թեոկրիտոսի և Անդրեաս սենեկապետի մասին. երկրորդում,

---

[37] Հուստինոսը, հայտնի է, որ Դարգանիայից էր։ Դարդանիան Բալկանյան թերակղզու վրա լեռնային մի երկիր է՝ Միլիայի և Մակեդոնիայի միջև։ Սկզբնական շրջանում եղել է Միզիայի կազմում, հետագայում դարձավ Իլլիրիայի ենթակա մի նահանգ։ Մավրիանան Դարդանիայի կամ Իլլիրիայի ամրոցներից էր։

խոսում է Վիտալիան բռնակալի մասին, որը (նույնպես) սպանվեց պալատում, իր նոտար՝ Պողոսի և ծառա՝ Կելլերի հետ։ Երրորդ գլխում խոսվում է այն մարտիրոսների մասին, որոնք նահատակվեցին Նագրինում՝ հոմերիտների[38] մայրաքաղաքում, հրեա բռնակալի կողմից։ Չորրորդ գլխում նկարագրված է, թե ինչպես հորդած ջուրը լցվեց Եդեսիա, և թե ինչպես Երուսաղեմում կանգնեցրին Սելովամի ջրի հոսանքը, և թե ինչպես Անտիոքն երկրաշարժից կործանվեց իսկ Բաղալբեգ քաղաքի՝ Սողոմոնի տաճարն էլ այրվեց։ Հինգերորդ գլխում տեղեկություն կա այն բանակցությունների մասին, որոնք սահմանի վրա տեղի ունեցան, և արաբների թագավոր՝ Մունդիրի մասին, որ արշավեց հոռոմների երկիրը, և ապա վտարված եպիսկոպոսների մասին։ Վեցերորդ գլուխը, հաղորդում է, թե ովքեր էին Հուստինոսի օրոք քահանայապետները, ութերորդ գլուխը, վերաբերում է Մորո եպիսկոպոսի նախաբանին։

## ԳԼՈՒԽ Ա

Գրքի առաջին գլուխը Հուստինոսի գահակալության մասին է։

Հույների 829 թ.[39] հուլիսի 10-ին, Անաստասիոսի մահվանից հետո, երբ 11-րդ տարին հասնում էր իր ավարտին, Հուստինոսը կայսր եղավ նրանից հետո. սա սպիտակ մազերով, վայելուչ ծերունի էր, բայց անուս. Նա ուներ կուրապաղատի (պաշտոն)[40]։ Ապամեացի Մարինոսը՝ մի կարող մարդ, որ խարտուլար[41] էր,

[38] «Հոմերիտներն» Արաբիայի հարավում են ապրում։ Արաբական հեղինակների համաձայն հոմերիտները բաժանված էին բազմաթիվ ցեղերի և բնակվում էին Lahadj-ի շրջակայքում՝ Zafar և Rida-ի նահանգներում։ Նրանք քրիստոնեությունն ընդունեցին միայն Անաստասիոս կայսեր ժամանակ։ Հռոմեական կայսրները կանոնավոր հարաբերությունների մեջ էին հոմերիտների հետ՝ իրենց առևտրական շահերից ելնելով, ինչպես նաև ապահովելու համար իրենց Սասանյաններից, որոնք ջանում էին ներթափանցել Հարավային Արաբիա՝ Օմանի վրայով։ Տե՛ս Պրոկոպիոս Կեսարացի, էջ 327։

[39] 518 թ.։

[40] «Cura-palati» կուրապաղատ, որ և կիւրապաղատ, կիւռապաղատ, կորապաղատ «յունական մի տիտղոս կամ մի բարձր պաշտոնեայ». (այսպէս էին կոչւում յատկապէս Հայաստանի այն կառավարիչները՝ որոնք նշանակուած էին Յունաց տէրութեան կողմից) «Սեբէոս, 32. ԿԲ., Ասողիկ... Կուրապաղատութիւն, Գ, և 32, ԿԹ. Լաստ.»։ Յունաց կայսերական պալատի հազարապետը, ծառայապետը, (Sopholes էջ 687), որ ծագում է լտ. Curator palatii ձևից և նշանակում է բուն «հոգաբարձու պալատական»։ Նույն ձևից է փոխառեալ նաև վրաց «կուրատպալատի»։ Հիւբշման 358։ Տե՛ս Հ. Աճառյան, Հայերեն արմատական բառարան, հատ. Բ, Երևան, 1973, էջ 665։

[41] Հունարեն է՝ «խարտուլար», ասորերեն բնագրում Kaltulara-քարտուղար։ Զորավարի գրասենյակի պետ։

բաղնիսներից մեկի պատին նկարեց, թե ինչպես նա (Հուստինոսը) Իլլիրիայի Մավրիանա ամրոցից եկել էր Կոստանդնուպոլիս, և (ընդհանրապես) նրա Կոստանդնուպոլիս գալու ամբողջ պատմությունը և (ապա) թե ինչպես նա աստիճանաբար բարձրացել ու կայսր էր դարձել։ Ու երբ նա Մարինոսը դրա (նկարների) համար մեղադրվեց և վտանգի մեջ էր գտնվում, վստահելով իր խելամտության վրա, նա անմիջապես պատասխանեց ասելով, որ «ես այս նկարները ներկայացրի այն նկատառումով, որ դիտող ազնվականները, հարուստները և բարձր ընտանիքի մարդիկ խորապես հասկանան, որ չպետք է վստահեն իրենց ուժին, իրենց հարստության և ազնվական ծագման մեծությանը, այլ (վստահեն) աստծուն, որ աղքատին տիղմից բարձրացնում է և նշանակում իր ժողովրդի ղեկավար, և (տալիս) է մարդկային թագավորության ղեկը նրան, ում որ ցանկանում է. և հաստատում մարդկանցից ամենախոնարհին և ընտրում է աշխարհից՝ ծագումով ցածրին, մարդկանցից՝ մերժվածին և կամ չմերժվածին, և (կարող է) ոչնչացնել այն մարդկանց, որոնք գոյություն ունեն»։ Նրա (խոսքերը) ընդունվեցին և նա խուսափեց վտանգից։

Այժմ Ամանտիոս վերակացուն և Անդրեաս սենեկապետը, որը նրա ընկերակիցն էր, պաշտպանում ու քաջալերում էր իր ծառա Թեոկրիտոսին. Անաստասիոսի մահից հետո (Ամանտիոսը) ոսկու մի մեծ գումար տվեց ծերունի կուրապաղատ Հուստինոսին այն նպատակով, որ նա նվերներ անի սխոլիարիոսներին[42] և այլ զինվորներին, որպեսզի նրանք Թեոկրիտոսին կայսր դարձնեն։ Սակայն Հուստինոսը ոսկին այս մարդկանց տալով, շահեց նրանց համակրանքը, և նրանք իրեն կայսր դարձրին, որովհետև Տերը այդպես կամեցավ։ Եվ որովհետև նա Հռոմի բնակիչների տեսակետն էր բաժանում[43], խիստ հրաման տվեց, որ (Քաղկեդո-

[42] «Սկզբում պալատի պահպանության համար առանձնացվել էին երեք հազար հինգ հարյուրից ոչ պակաս ստրատիոտներ, որոնց սխոլարիոս էին անվանում։ Ի սկզբանե անտի պետությունը սրանց վճարում էր շատ ավելի բարձր ռոճիկ, քան մնացած բոլոր (ստրատիոտներին)։ Անցյալում կայսրերը սրանց ընտրության ժամանակ նկատի ունեին նրանց արժանիքները և հայերին էին տալիս նախապատվությունը։ Բայց սկսած Զենոն կայսրից (ստրատիոտ) անունը սկսվեց տրվել վախկոտ և պատերազմի մասին բոլորովին գաղափար չունեցող մարդկանց։ Ժամանակի ընթացքում նույնիսկ ստրուկները դրամով դնում էին ստրատիոտի կոչումը։ Հուստինիանոսը շատերին արժանացրեց այդ պատվին, նրանցից շատ դրամ շորթելով . . .»։ Տե՛ս Պրոկոպիոս Կեսարացի, էջ 296 (ծնթ.)։

[43] Երկաբնակ էր այսինքն։

նի) ժողովը և Լեոի Տոմարը ճանաչեն (երկրում)։ Այս Ամանտիոսը փորձեց արգելել, ասելով, որ «քո տերության երեք պատրիարքներն ու գլխավոր եպիսկոպոսները գրել ու բանադրել են (Քաղկեդոնի) ժողովը, և գեռ նրանց ստորագրությունները չեն չորացել»։ Եվ որովհետև նա (Ամանտիոսը) համարձակ խոսեց, ուստի դրա համար էլ այս նույն Ամանտիոս վերակացուն անմիջապես մահվան դատապարտվեց, նույնպես նրա ծառա՝ Թեոկրիտոսն ու սենեկապետ Անդրեասը։

Մի տարուց հետո քաղաքի եպիսկոպոս Հովհանը մահացավ և նրան հաջորդեց Եպիփանոսը։ Եվ ապա Սևերոսը հրաժարվեց Անտիոքի (աթոռից), վախենալով կայսրի սպառնալիքներից, որը հրամայել էր լեզուն կտրել (Սևերոսի). Նրան հաջորդեց Պողոսը, որը հրեա էր կոչվում։ Եվ որովհետև նա Նեստորի հիշատակը տոնեց, ուստի վտարվեց ու փոխարեն հաջորդեց Եվփրասիոսը, որն Անտիոքի երկրաշարժի ժամանակ այրվեց անուշահոտ մեղրամոմով (լեցուն), բոցավառված կաթսայում։

### ԳԼՈՒԽ Բ

### VIII գրքի երկրորդ գլխում պատմում է Վիտալիան բռնակալի մասին և թե նա ինչպես սպանվեց պալատում, և նրա նոտար՝ Պողոսի և ծառա՝ Կելլերի [հետ] միասին։

Վիտալիան բռնակալը Անաստասիոսի օրոք ստրատեգ էրգոթացի մի անվեհեր պատերազմիկ, որին բարբարոսները հետևվում (լսում) էին։ Նրա մասին ասում են, որ նա ցանկացել է ապստամբվել Անաստասիոսի դեմ, իսկ չնայած նա (Անաստասիոսը) նրանից երդում էր վերցրել որ չի կատարի այն, սակայն նա ապստամբվեց և համոզեց բարբարոս ցեղերին, որ հետևեն իրեն։ Նա հարձակվեց Անաստասիոսի տերության վրա և գրավեց նրա քաղաքներն ու գյուղերը և շարժվեց առաջ, մինչև կայսերական քաղաքը (մայրաքաղաքը) և շրջապատեց այն. կայսրին շատ ձևերով ձանձրացրեց և անհանգստացրեց. Հիպատիոսին գերի վերցրեց, որ իր դեմ էր դուրս եկել. ջախջախեց նրա բանակը անարգանքով ու վիրավորանքով վարվեց նրա հետ, թշնամանք ցուցաբերելով նրա նկատմամբ ու միայն, մեծ գումար ստանալուց հետո նրան ետ ուղարկեց։

Եվ երբ Անաստասիոսը վախճանվեց, այս ծերունի Հուստինոսը, նամակ գրեց խնդրելով, որ հանգարտվի. և նորից ոչ ճիշտ գործելով, իր դեմ չապստամբվի, ինչպես սովոր էր անել։

Ապա զանազան ցեղերի ընկերակցությամբ Գոթացին (Վիտալիանը) վստահելով կայսրի (ասածներին) եկավ. կայսրը դեմ դուրս եկավ Քաղկեդոնի Եվփեմիա մարտիրոսի մատուռը ու (այնտեղ) իրար երդվելով մտան քաղաք (Կոստանդնուպոլիս), և նա դարձավ գլխավոր ստրատեղներից մեկը ու մեծ հեղինակությամբ մտնում ու դուրս էր գալիս պալատից և վերահսկում գործերի ընթացքին։

Նա հոգեկան (ամուր) կապերով[44] էր կապված Անտիոքի Փլավիանոսին, որը վտարված էր ու մեծ զայրույթով էր լցված սուրբ Սևերոսի նկատմամբ, որը հաջորդել էր Փլավիանոսին, բայց նա (Փլավիանոսը) Անաստասիոսի օրոք չէր կարողանում վնասել նրան։ Համենայն դեպս, այս ծերունի Հուստինոսն իր իշխանության սկզբում մի հրաման հանեց, որ նրան (Սևերոսին) որտեղ որ բռնեն, լեզուն կտրեն. ասում են, որ այդ հրամանը կատարվեց Վիտալիանի խորհրդով։

Դրանից մի քանի օր հետո պատահեց, որ Վիտալիանը լողանում էր կայսերական քաղաքում, կայսրից հրաման ստացավ, որ ինքը և իր գործակից ստրատեգ Հուստինիանոսը հրավիրված են ճաշկերույթի։ Երբ նա գալիս է բաղնիսից՝ իր նոտար Պողոսի և ծառա Կելլերի հետ, և (պալատում) մի սենյակից մյուսն էր անցնում, նրան դաշունահարելու համար կարգված մարդիկ բռնեցին նրան, նոտար՝ Պողոսին և ծառա՝ Կելլերին ու սպանեցին նրանց։ Աստված վարձահատույց եղավ նրան այն չարիքի համար, որ նա կատարել էր Անաստասիոսի օրոք, իր երդմնադրժության համար. նրա բանակին չվնասեց (կայսրը)։

## ԴԼՈՒԽ Դ

Գրքի չորրորդ գլխում պատմում է ջրով հեղեղված Եդեսիայի մասին, և թե ինչպես Երուսաղեմում կանգնեցրին Սելովամի ջրերի հոսանքն, ապա երկրաշարժից Անտիոքի կործանման, և Բաղալբեգ[45] քաղաքի Սողոմոնի տաճարի այրվելու մասին։

Ասկլեպիոս Բար Մելխեն[46] Անդրեի և եպարքոս Դեմոստենեսի եղբայրը Պողոսից հետո եպիսկոպոս ձեռնադրվելով, բազմեց

[44] Ասորերեն բնագրում գրված է «կնքահայրությամբ»։
[45] Հելիոպոլիս, այժմ՝ Բաղալբեգ. գտնվում է Լիբանանում։
[46] Բար Մելխե՝ «նավաստիների որդի»։

Եդեսիայի եպիսկոպոսական աթոռին, մինչ այդ, նա (Պողոսը) արտաքնապես ցույց էր տալիս, որ ինքն ուղղափառ է, մինչդեռ նա ցուցամոլ, մեծախոս էր, և երբ Փլավիոսի օրոք Ասկլեպիոսից առաջ Եդեսիայի եպիսկոպոս եղավ, նամակ ուղարկեց նրան (Փլավիոսին) և նամակում նա (Քաղկեդոնի) ժողովը չէր բանադրել, որովհետև նա (ժամանակին) եղել էր նրա սինգելոսը[47]։ Այս գրությունն ընկավ սուրբ Սևերոսի ձեռքը, որը հաջորդել էր Փլավիոսին, երբ այս Պողոսը գնաց նրան (Սևերոսին) ողջունելու, սա նրան ցույց տվեց այդ նամակը, սակայն Պողոսը խոստովանեց ու վստահեցրեց, որ ինքն ուղղափառ է, և դրա վրա, այս իմաստուն մարդը՝ (Սևերոսը) նրան իր օրինազանցության համար աստվածային սիրով ներեց, և ինչպես գրված է (Սուրբ Գրքում)[48], ծածկեց այն և չբացահայտեց։ Այս կայսրի օրոք նա սկզբում համառատակամորեն հրաժարվեց և չընդունեց (Քաղկեդոնի) ժողովը, և Եդեսիայի բնակիչները պաշտպանում էին նրան և իր պատճառով նույնիսկ ամեն օր վնասի ու զրկանքի էին ենթարկվում, բայց երբ նրան Եվկայտա արտաքսեցին, նա համակերպվեց ու վերադարձավ Եդեսիա, և մի փոքր ժամանակ ապրելուց հետո, ամոթից ազդված շուտով մեռավ, և Ասկլեպիոսը հաջորդեց նրան։ Սա նեստորական էր, բայց իր գործերում արդար և սիրում էր հողագործներին ու բարությամբ էր վերաբերվում նրանց հետ, նվերներ անելու մեջ ժլատ չէր. նկարագրով մաքուր էր, և իր եկեղեցու համար շատ լավ գործեր արեց, վճարեց նրա պարտքերը։ Սակայն գործնական ու ցասկոտ էր ուղղափառների նկատմամբ։ Նրա կողմից շատերը վտարվեցին և բազում տանջանքներով չարչարվեցին անգութ կառավարիչ՝ գոթացի Լիբերիոսի ձեռքով, որը կոչվում էր նաև Ցուլ-ուտող և այպես (ուղղափառներից շատերը) ծանր չարչարանքներից մահացան։

Եվ մինչ գործերը Եդեսիայում այս վիճակում էին, հույների 836 թ (525 թ) Նիսան ամսի (ապրիլի) 22-ին, երրորդ տարին, Դայծան գետը, որը մտնում ու անցնում է քաղաքի միջով, բարձրացավ և երկու կողմում եղած պատերից հորդելով խեղդեց

[47] Սինկելոս՝ «Կոստանդնուպոլսո պատրիարքի սինկելոս, երբեմն անվանվում է նաև Կոստանդնուպոլսո սինկելոս»։ Սա կարևոր պաշտոն էր, և այդ պաշտոնը վարողը համարվում էր կայսրության պաշտոնյա և նշանակվում կայսրից, նրա հիմնական գործն էր կապ պահպանել կայսրի և պատրիարքի միջև։ Տե՛ս J. B. Bury, The imperial administrative System in the ninth century, London, 1911, p. 116.

[48] «Առակք Սողոմոնի», ժ, 14։

շատ մարդկանց, որովհետև ընթրիքի ժամ էր, և մինչ ճաշը դեռ նրանց բերանում էր, հորդած Դայծանի ջրերը լցվեցին նրանց վրա։ Սակայն Ասկլեպիոսը փախավ, նույնը արեց նաև Լիբերիոսը։

Սելովամի ջրերը, որոնք հոսում էին Երուսաղեմի հարավային մասից, 15 տարի (շարունակ) դադարեցին (հոսելուց)։

Լիբանանի անտառում (գտնվող) Բալաաթ՝ (քաղաքի) Սողոմոնի տաճարը, որի մասին Գիրքը ասում է[49], որը կառուցել է Սողոմոնը, և մեջը զենք է դրել, (այրվեց)։ Դրսի հարավում կային երեք զարմանալի քարեր, որոնց վրա ոչինչ չի կառուցվել, և դրանք կանգնած էին իրար կողքի, միացած միմյանց. և երեքն էլ իրենց տեսքով իրարից տարբերվում էին ու շատ մեծ էին։ Դրանք տաճարում խորհրդավոր ձևով էին ամրացված, կարծես ներկայացնում էին պաշտելի Երրորդության խոստովանությունը, և կոչ էին անում ժողովուրդներին և քարոզում Ավետարանի սկզբունքները։

Մինչ թեթև անձրև էր գալիս, երկնքից փայլակ ընկավ, հարվածեց տաճարը և քարերը ջերմությունից փոշի դարձան. մի կողմ նետեց սյուները, կտոր-կտոր արեց և քանդեց։ Սակայն երեք քարերին չվնասեց և դրանք անվնաս մնացին. այժմ աղոթատուն է կառուցվել այնտեղ՝ նվիրված Մարիամ Սուրբ կույս Աստվածածնին։

Մի տարի հետո, չորրորդ տարում[50], Անտիոքը կործանվեց մեծ երկրաշարժից. անսովոր դաժանությամբ բազմահազար մարդիկ կորան, որովհետև ամառ ժամանակ էր, և մինչ նրանք ուտում էին, պատառը բերանում, տները շարժվեցին և փուլ եկան իրենց վրա, ինչպես Հոբի որդիները, որոնք փործվում էին սատանայից։ Եվփրասիոսը քահանայապետ էր այնտեղ, որ հաջորդել էր Պողոսին և որ հրեա էր կոչվում, նա էլ ընկավ մեղրամոմով լեցուն եռացած կաթսայի մեջ ու ոչնչացավ։

Եվ նրա հաջորդը Ամիդից՝ Եփրեմն էր, որ Արևելքի կոմեսն էր[51] այն ժամանակ։ Այս մարդը տարբեր շրջաններում վարած իր

49 Թագաւորութեանց երրորդ, Գլ. Թ, 18—19։

50 526 թ.։

51 Այստեղ հեղինակը, անկասկած, նկատի ունի «Արևելքի զորավար» հասկացողությունը, որովհետև Արևելքում բազում կոմեսներ կային։ Մովսես Խորենացու մոտ էլ վկայություն կա այդ մասին։ «Եւ այնուհետև ոչ ևս կացուցին Յոյնք ի բաժնի իւրեանց թագաւոր, այլ առաջնորդ էր նախարարաց կողմանցն այնոցիկ քաջն Գաղաւոն և աշխարհին իւրեանց մասին կացուցին Յոյնք կոմէսս իշխանս։ «Մովսիսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց», գիրք Գ, գլ. ԽԶ, էջ 316։

գործերում արդարամիտ էր և նվերներ բաշխելու մեջ ոչ ժլատ, կարող մարդ էր ու հաջողակ։ Տարիներ (շարունակ) նա վարակված էր երկաբնակների մի քանի գրքերով, որոնք իր մայր՝ Մաքան ժառանգել էր Տելլայի ինչ որ Բար Շելոմոյից՝ Դիոտորի և Թեոդորի հաջորդներից։ Շատերին նա ապականեց և նրանց կործանման պատճառ եղավ, ոմանց (կործանեց) խելամտությամբ ու մեղմությամբ, ուրիշներին կայսրի սպառնալիքներով, իսկ նա (կայսրը) սիրում, լսում ու կարևորություն էր տալիս նրա գրածներին։

## ԳԼՈՒԽ Ե

### Նույն VIII գրքի 5-րդ գլուխը

Պատմում է այն բանակցությունների մասին, որոնք տեղի ունեցան սահմանի վրա, և արաբների թագավոր՝ Մունդիրի մասին, որ արշավեց Եմեսայի[52] և Ապամեայի[53] վրա, և մեծ քանակությամբ գերի վերցրեց ու բերեց իր հետ, և ուղղափառ արևելյան եպիսկոպոսների մասին, որոնք աքսորվեցին ու վտարվեցին իրենց եկեղեցիներից։

Կավատը՝ պարսիկների արքան, համառորեն պահանջում էր 5 կենտինար ոսկին, որը հոռոմների կայսրը տալիս էր պարսկական բանակի ծախսերի համար, որոնք հոների դեմ պաշտպանում էին դարպասները. այդ պատճառով իր (հպատակ) արաբներից երբեմն ուղարկում էր հոռոմների երկիրը, որոնք ամայացնում ու գերի էին տանում (բնակիչներին)։ Հոռոմներն արշավեցին Արզունի վրա, որը պատկանում էր նրան (պարսիկին), և գտնվում էր Մծբինի գավառում ու վնասեցին (Արզուն քաղաքին)։ Այդ կապակցությամբ բանակցություններ սկսեցին, և երկու թագավորներն էլ պատգամավորներ ուղարկեցին, Հուստինոսը ուղարկեց Հիպատիոսին և ծերունի Փարազմանին իսկ Կավատը՝ աստաբիդին[54].

---

52 Հոմս՝ Սիրիայի քաղաքներից։

53 Ապամեա անունով հնում շատ քաղաքներ էին հայտնի, այստեղ խոսքը այժմյան Սիրիայի քաղաքներից՝ Համայի մասին է, որը գտնվում է Հոմսից ոչ հեռու։

54 «Սպահապետ, սպարապետ, բանակների ընդհանուր հրամանատար։ Հպրս. Spadapati, պհլ. Spahpat, պրս. Sipahbad, «սպարապետ», կազմուած spah «բանակ», pat «պետ» բառերից։ Արշակունյան շրջանին բառս տուել է հյ. սպարապետ, իսկ ավելի նոր, սասանյան շրջանին՝ երկրորդ անգամ փոխ առնուելով, եղել է ասպահապետ։ Հիւբշման 240»։ Տե՛ս Հ. Աճառեան, Արմատական բառարան, հատ. Ձ, 1932, էջ 399։

սահմանի վրա շատ վիճեցին, և այգ մասին իրենց սուրհանդակների միջոցով պատվիրակությունների ղեկավարները հաղորդեցին երկու թագավորներին. ոչ մի խաղաղության լուր չստացվեց նրանցից, (որովհետև) պատվիրակություններն իրար նկատմամբ չարակամ էին։

Արաբ թագավոր Մունդիրը երկու անգամ Եմեսայի, Ապամեայի շրջաններն ու Անտիոքի գավառն արշավեց, շատ մարդկանց գերի վերցրեց ու իր հետ տարավ։ Եմեսայի Թովմաս առաքյալի վանքի միաբանությունից չորս հարյուր կույսերի հանկարծակի գերի վերցրեց և մի օրում զոհաբերեց ի պատիվ Ղուզային[55]։ Դոդո անունով մի ծերունի, որ գերի էր ընկել միաբանության հետ, իր աչքերով էր տեսել այն ու ինձ պատմեց։

Այժմ արևելյան այն եպիսկոպոսների, մանավանդ հմուտ Սևերոսի թեմի մեջ մտնող եպիսկոպոսներից մի քանիսի մասին, որոնք արտաքսվեցին և կամ ուղարկվեցին Ալեքսանդրիա և այլ երկրներ։ Սրանք (բոլորն էլ) հետևեցին իրենց ուսուցիչ ու ղեկավար՝ Սևերոսի քայլերին։ Հիերապոլսի Ակշանային Գանգրա աքսորեցին ու բանտարկեցին, այնտեղի հիվանդանոցի վերևի խոհանոցում, ինչպես իր նամակում է գրել, և ահա այստեղ էլ նրան ծխով խեղդեցին, և այսպես ի վերջո նա մահացավ։ Բերոյայի Անտոնիոսը, Դամասկոսի՝ Թովմասը, Դարայի՝ Թովմասը, Կոստանգինայի՝ Հովհանը, Ամրինի՝ Թովմասը, Ռեսայնի՝ Պետրոսը, Լաոդիկիայի՝ Կոստանդինը, Ապամեայի՝ Պետրոսը և ուրիշներ, վտարվեցին և թաքնված ապրում էին այնտեղ, ուր հարմար էր լինում իրենց համար։ Սակայն Ալեքսանդրիայի աթոռը չանհանգստացվեց և Տիմոթեոսին հաջորդեց Դիոսկորոսը, և նա ո՛չ հրաժարվեց և ո՛չ էլ ընդունեց (Քաղկեդոնի) ժողովը Հուստինոսի օրոք, և փախստական ուղղափառ հայրերին, որոնք իր մոտ ապաստան էին գտել, նա նրանց հարգանքով ընդունեց, պատվեց ու քաջալերեց։

Այժմ Սելևկիայի Նոնոն (եպիսկոպոսը), որ եկավ Ամիդից, վտարվեց իր հայրենի քաղաքը ու ապրում էր իր բնակարանում, որովհետև նա հարուստ ընտանիքից էր և ժամանակին հեգեմոն էր, արդարամիտ մի մարդ, և Հովհան եպիսկոպոսի օրոք եկել էր Կարթամինի վանքից և իր քաղաքի եկեղեցում լուսարարապետ էր

---

[55] Հավանաբար ուժի կամ զորության աստված։ «Ղուզա» ասորերեն նշանակում է ուժ, զորություն։

եղել։ Նա (Հովհանը) դեռևս իր կենդանության ժամանակ օրհնեց Նոնոյին և ասաց. «Ես վստահ եմ իմ Տիրոջ վրա, որ դու կվախճանվես որպես իմ աթոռի եպիսկոպոս»։ Դեպքը հապաղեց այնքան, որ Ամիդի գերեվարությունից հետո, շնորհունակ Թովմասը, որ Դարան էր կառուցել, եպիսկոպոս եղավ։ Երբ սուրհանդակներն եկան նրան (Թովմասին) բռնելու, այն պայմանով, որ նա կամ կրնդունի (Քաղկեդոնի) ժողովը և կամ նրան արտաքսելու են։ Նա հիվանդացավ իր աղոթքների համաձայն և անմիջապես վախճանվեց իր աթոռին (բազմած) սուրհանդակներն, որոնք քաղաքում էին, այդ մասին (իմանալով), շատ զարմացան։ Որպեսզի օրհնյալ Հովհանի կամքը կատարվեր, ամիդցիները Նոնոյին եպիսկոպոս նշանակեցին, և նա ապրեց մի քանի ամիս ու վախճանվեց։

Նորից իրեն որպես հաջորդ, ինչպես կանոնն է պահանջում, երեք եպիսկոպոսների ներկայությամբ, Մարտիրոպոլսի՝ Նոնոյի, Ինգիլիայի՝[56] Արաթուի, Արշամաշատի՝ Ահարոնի, որոնք այնտեղ էին, Մորո Բար Կոստանտինին՝ հեգեմոնին, եկեղեցու լուսարարապետին, ժուժկալ ու իր գործերում արդար, պարկեշտ ու հավատացյալ մարդուն եպիսկոպոս ձեռնադրեցին, որ սահուն ու ազատ հունարեն էր խոսում և այն սովորել էր Սելևկիայի ս. Թովմաս առաքյալի վանքում, որտեղից հավատի նախանձախնդրության պատճառով, փոխադրվել ու տեղավորվել էր Եփրատ գետի վրա (եղած) Քեննեշերիմում (վանքում), որը վերակառուցվել էր Հովհան առաջնորդի կողմից, մի ուսյալ մարդ, որ ժամանակին Դիկանիկոս[57] էր. բնիկ Եդեսիացի Ափրոնիայի որդին։ Այս Մորոն, մանկությունից իր ծանրաբարո, ողջախոհ, հավատացյալ քույրեր՝ Շաղմունի ու Մորութոյի հետ միասին, սովորել էր բոլոր իրավունքներն ու ազնիվ գիտությունները։ Մի փոքր ժամանակ իր աթոռի վրա մնալուց հետո, նա վտարվեց Պետրա[58] (քաղաքը) և Պետրայից էլ Ալեքսանդրիա։ Մի առ ժամանակ մնաց այնտեղ և կազմեց մի գրադարան հիանալի գրքերից, որոնք մեծ օգուտ էին տալիս նրանց, որոնք սիրում էին ուսումը, հասկացող էին ու աշխատասեր։ Դրանք (գրքերը) իր մահից հետո փոխադրեցին Ամիդ եկեղեցու գանձարանը։

Այն ամենն ինչ պատմում եմ, մեկին մեղադրելով, մյուսին փառաբանելով, չեմ ուզում (ընթերցողին) ձանձրույթ պատճառել,

56 Անգեղտուն։

57 Հունարեն՝ փաստաբան, օրենսգետ, ասորերեն՝ նաև հիվանդապահ։

58 Պետրոս կամ Արասեմ, այժմ, Կրակ, Մեռյալ ծովից 60 կմ. հարավ։

ուստի պատմեմ ճշմարտությունն առանց ստի։ Համենայն դեպս մարդը (Մորոն) իր ուսումնասիրություններով առաջ գնաց և այնտեղ էլ վախճանվեց։ Նրա քույրերը, որոնք իր հետ էին, խնամում և վշտերն էին սփոփում, ինչպես գրված է, նրա մարմինը տեղափոխեցին Բեյթ-Շուլո գյուղի Մարտիրոսների մատուռը։ Եվ որպես պերճախոս փաստ ուսման նկատմամբ իր ունեցած սիրո, այս գրքի վերջում կդնեմ հունարեն գրած նրա նախաբանը, որը վերցրած է իր Չորս Ավետարաններից։

Արևելքի ուղղափառ վանաբնակ միաբաններից ևս, երրորդ տարուց մինչև 9-րդ տարին[59], այսինքն շաբաթվա օրերի քանակի չափ՝ 7 տարի, արտաքսվել ու վտարվել էին իրենց մենաստաններից, Անտիոքի, Եվրատեսիայի[60] և նաև Օսրոյենի ու Միջագետքի շրջանները։ Վանական Թովմասը՝ Սելևկիայից իր միաբանության հետ եկավ Եփրատի ափին (գտնվող) Քեննեշրա (վանքը), որը հիմնել էր Ափթոնիայի որդի՝ բանիմաց ու առաջնորդ Հովհանը։ Անտիոքի ասորիների առաջնորդ Կյուրոսը ևս իր Տել-Ղադդո վանքի միաբանության անդամների հետ աքսորվել էր։ Ռոմանոսի վանքի միաբանների հետ ևս արտաքսվել էին Շոմոն, Լղգինոն, և Իգնատիոսը՝ Կալսիի Ղակիբո վանքի առաջնորդը։ Շղնոնի և Հովհանի վանքից Կոփրո-դը-Ղարբաոյի առաջնորդը։ Իմ տեր՝ Բասոսի վանքից (միաբաններ)։ Արևելյանների՝ Հովհանը և Արկեսի վանականները և Մագնոսի վանքի (միաբանությունը), և Կարիի՝ Սարգիսը, Նուտսիի տնից՝ Թովմասը, Ղաբեդ-Յեշուղի տնից՝ Իսահակը, Ղարոբի՝ Միջագետքի, Իգլայի՝ Բեյթ-Գոգալի վանականները և Ամիդ քաղաքի առաջնորդարանի հինգ վանքերի վանականները, Հանանոն և Աբրահամ հրաշագործը, որը «խոնարհ» էր կոչվում, Դանիելը՝ Եդեսիայի վանականների պատվիրակը, Իշոկոնի տնից՝ Եղիան, Հովհան Անղիտացու միաբանությունից՝ Սիման և Կոզմասը, Արևելյանների՝ Մարոն, իմ տեր Սամուելի տնից՝ Սողոմոնը, Շուգոյից՝ Կյուրոսը, Հսկող աշտարակի և Ռեշլղայնի մոտ (գտնվող) Տիրոսի վանականները, (բոլորն էլ) աքսորվել էին։

Այժմ այդ առիթով ճգնավորների չորս կամ հինգ միաբանություն ևս կազմվեց անապատում։ Ռամշոյում՝ Մորին, ողջախոհ ու հարգելի նկարագրով մի մարդ. Նատփոյում՝ Սարգիսը, մաքուր ու պարզ մի անձնավորություն, և նրանից հետո՝ Անտոնը, հեզ ու

[59] 525—531 թթ.։

[60] Այժմյան Սիրիայում։

ֆաղաղասեր մի մարդ, և ազնիվ ծերունի՝ Եղիան, մեր հայրենակիցը. Սիմեոնը՝ Կալսիից։

Սարգիսը, որ այժմ վերակազմել էր Սոգակթենի և Հարմոշոյի միաբանությունները, և մի (այլ) վանք, որը հիմնեց իմ տեր Հովհանը՝ Հավրայում[61]։ Եվ Սիմեոնը, իմ տեր՝ Իսահակի վանքի առաջնորդը Գարբուլայից ևս (հիմնեց վանք), որն այժմ ապականել են հերետիկոսները՝ Հուլիանյան երևութականները, մինչդեռ այն ժամանակ նա (Սիմեոնը) և նրա հետ եղածները, հավատի համար նախանձախնդիր էին, և Բար Հակինոն՝ իմ տեր Հանինոյի տնից, հրաշագործ (մի անձնավորություն) նույնպես այն աստիճան նախանձախնդիր էր հավատի խնդիրներում, որ գնաց մինչև կայսերական քաղաքը և անձամբ ուզում էր կայսրին համոզել ու պարսավել, բայց նրանից նա չընդունվեց, և այդ մասին վկայություն կա Ակշանային Գանգրայից գրած շնորհակալական նամակում. նույնպես Կալինիկոսում էին իմ տեր Զախխայի տան վանականներն ու Բեյթ-Ռաղկոմի՝ իմ տեր Աբբոյի միաբանությունը։

Եվ այսպես անապատը խաղաղ էր ու բազում հավատացյալներ գալիս էին այնտեղ բնակվելու, և ամեն օր նոր մարդիկ էին նրանց միանում և ավելացնում եղբայրների[62] քանակը։ Ոմանք այստեղ էին գալիս քրիստոնեական սիրուց, իրենց եղբայրներին այցելության, ոմանք իրենց քաղաքների եպիսկոպոսներից, երկրից երկիր վտարվելուց հետո էին գալիս։ Եվ այստեղ բազմացավ նշանավոր ու ուղղափառ հայրերից մի հասարակություն, որոնք իրենց գլխավորությամբ հանգիստ մի եղբայրություն կազմեցին. Նրանք իրար էին միացել սիրով ու փոխադարձ լի խանդաղատանքով և դարձել էին բոլորին սիրելի, և չունեին ոչ մի պակասություն, որովհետև միաբանության բոլոր անդամներից ընտրված հարգելի ղեկավարներն առաջնորդում էին նրանց, այսպես (օրինակ) Կոստանդայից՝ բարեպաշտ Հովհանը՝ կրոնասեր ու ճգնասեր մի մարդ, որ իր գոյությունը պահպանելու համար նույնիսկ չէր մասնակցում ցանկալի հացին (ճաշին)։ Նա առաջ գնաց գրքերի ընթերցանությամբ, դարձավ գնոստիկյան և մեկնաբան, որովհետև նա աշխատում էր իր իմացությունը բարձրացնել հոգևոր առար-

---

[61] «Պալմիրենե, որտեղ Հավարին քաղաքն է՝ Անապատային Արաբիայի կից»։ Տե՛ս Ս. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, էջ 113։

[62] Այստեղ «եղբայր» բառը օգտագործված է կրոնական իմաստով. նկատի ունի «հավատակից» կամ նույն միաբանության անդամ լինելու հանգամանքը։

կաների ուսումնասիրությամբ, և օրվա ընթացքում երեք ժամ սքանչանում ու խորհրդածում էր աստծո գործերի իմաստության վրա և երեք ժամ էլ՝ 6-ից մինչև 9-ը ուրախությամբ ու խաղաղությամբ զրուցում էր բոլոր այն մարդկանց հետ, որոնք իր մոտ էին գալիս անհրաժեշտ գործերով, և այսպիսին էր նաև Դարայի[63] Թովմասը, որը շատ գործեր էր կատարում ու ավելի խոսում բժշկության մասին։

Այժմ IX տարում[64], մեր ժամանակների պայծառափայլ Հուստինիանոս կայսրի թագավորության 5-րդ տարում, մեր Տեր աստծո թելադրանքով, որը նախապես գիտի իր գործերը, արդարության հետևելով հրամայեց նա (կայսրը), որ բոլոր նրանք, որոնք աքսորվել էին հավատքի նախանձախնդրության համար տարբեր երկրներ, աքսորից վերադառնան, և նա ուղղափառ եպիսկոպոսներին կանչեց, որ իր մոտ գնան։ Մինչ այս պատահեց IX տարում, X տարում հոների մի բազմություն մտավ հռոմների երկիրը, և կոտորեց բոլոր նրանց, որոնց գտավ քաղաքներից դուրս, և նրանք անցան Եփրատ գետը, և առաջացան մինչև Անտիոքի գավառը։ Աստծո կամքի համաձայն, ինչպես նա ասում է. «Գնա ժողովուրդ իմ, մուտ ի շտեմարանս քո, փակեա զդուռս քո, թաքիր առ ժամանակ մի, մինչև անցցէ բարկութիւն Տեառն»[65]։ Կայսրի հրամանով Արևելքի ուղղափառները նորից թաքնվեցին, բայց Անաստասիայից[66] (քաղաքից) մի հարգելի նկարագրով մարդ՝ Հովհան ճգնավորն անապատում սպանվեց հոների կողմից, սակայն Սիմեոն ճգնավորը, որ «եղջերավոր» էր կոչվում, անվնաս մնաց։

## ԳԼՈՒԽ Զ

VIII գրքի վեցերորդ գլխում վկայում է, թե ովքեր էին Հուստինոսի օրոք քահանայապետները, և նա (Հուստինոսը) 9 տարի իշխելուց հետո մահացավ V տարում, նրա քրոջ որդին՝ մեր օրերի Հուստինիանոսը. նրանից հետո, կայսր դարձավ։

Հուստինոսի օրոք քահանայապետները հետևյալներն էին. Հռոմում՝ Հորմիզդան, Ալեքսանդրիայում՝ Տիմոթեոսը, Երուսաղե-

[63] Բյուզանդիայի և Պարսկաստանի սահմանի վրա, Մծբինից ոչ հեռու կառուցված քաղաքը։

[64] 531 թ.։

[65] «Եսայի», ԻԶ, 20։

[66] Դարա քաղաքը։

մում՝ Պետրոսը, որը հաջորդեց Հովհանին. Անտիոքում՝ Պողոս հրեան, որը վտարվեց և նրանից հետո եղավ Եվփրասիոսը, և սա IV տարում, Անտիոքի երկրաշարժի ժամանակ այրվեց, որին (հաջորդեց) Ամիդից՝ Եփրեմը, Կոստանդնուպոլսում՝ Եպիփանը։

Այս գրքում ընկած է 9 տարիների (պատմությունը)։

## ԳԻՐՔ ԻՆՆԵՐՈՐԴ

Այս IX դիրքը ևս վերաբերում է Հուստինիանոսի դերիշխանությանը և վկայում թե ինչպես նա կայսերակից եղավ մեծ Պահքի Ավագ շաբաթվա 5-րդ օրը, և ապա երեք ամիս իր Հուստինոս մորեղբոր հետ միասին իշխելուց հետո, նա (Հուստինոսը) Թամուզ (հուլիս) ամսի վերջին, երբ 5-րդ տարին վերջանում էր, մահացավ։ Հուստինիանոսը կայսր գարձավ հույների 838 թ.[67] և 372-րդ օլիմպիադայում։ Եվ այն իրադարձությունները, որոնք տեղի ունեցան իր գերիշխանության ժամանակ մինչև 15-րդ տարին, այսինքն նրա տասը տարիների դերիշխանության ընթացքում, գրված է այս՝ 9-րդ գրքում, որը բաղկացած է ներքևում նշված 26 գլուխներից, և հետևյալներն են.

IX գրքի Ա գլուխը վերաբերում է այն պատերազմին, որը տեղի ունեցավ 5-րդ տարվա ամռանը, Մծբինի և պարսկական ամրոց՝ Թեբեթայի առաջ։

Գրքի Բ գլխում պատմում է Թաննուրինի անապատում տեղի ունեցած ճակատամարտի մասին։

Գրքի Գ գլխում պատմված է սահմանային քաղաք՝ Դարայում տեղի ունեցած ճակատամարտի մասին։

Գրքի Դ գլուխը պատմում է 9-րդ տարում Եփրատի վրա տեղի ունեցած ճակատամարտի մասին։

Գրքի Ե գլուխը պատմում է պարսիկ հրամանատար՝ Կուղիշացի Գադարի մասին, և թե ինչպես նա և նրա հետ եղած Հազկերտը սպանվեցին, և թե ինչպես նրա քրոջ որդին՝ Արզանենի բդեշխը գերի վերցվեց։

Զ. գլուխը պատմում է սահմանում՝ Մարտիրոսուպոլիսի առաջ տեղի ունեցած ճակատամարտի մասին թե ինչպես 10-րդ տարում մեծ թվով հոներ արշավեցին հոռոմների երկիրը։

---

[67] 527 թ.։ Սա հաջորդել է Հուստինոս Ա-ին և թագավորել 527—565 թթ.։

Է գլուխը բացատրում է, թե ինչպես 11-րդ տարվա ամռանը, հոռոմների ու պարսիկների միջև խաղաղության դաշինք կնքվեց, դեսպաններ՝ Ռուփինոսի և մագիստրոս[68] Հերմոգենեսի միջոցով։

IX գրքի Ը գլուխը պատմում է սամարացիների մասին, որոնք ապստամբվեցին և Պաղեստինում իրենց համար տիրակալ նշանակեցին։

Գրքի Թ գլուխը, վերաբերում է Ալեքսանդրիա[69] քաղաքի եպիսկոպոս՝ Հուլիանոս Ծրևութականի հերետիկոսության մասին։

Ժ գլուխը բերում է Հուլիանոսի նամակը Սևերոսին, մեր Աստված՝ Քրիստոսի մարմնի (ապականության) հետ կապված հարցի մասին։[70]

Գրքի ԺԱ գլուխը խոսում է մեր ուսուցիչ՝ Սևերոս պատրիարքի Հուլիանոսի նամակին գրած պատասխանի մասին։

Գրքի ԺԲ գլխում տեղեկություններ է տալիս Հուլիանոսի Սևերոսին գրած երկրորդ նամակի մասին։

Գրքի ԺԳ գլխում գրում է Սևերոս պատրիարքի Հուլիանոսի երկրորդ նամակին տված պատասխանի մասին։

Գրքի ԺԴ գլխում խոսում է այն խռովության մասին, որը տեղի ունեցավ կայսերական քաղաքում և նկարագրում է, թե ինչպես Հիպատիոսն ու Պոմպեոսը մահվան դատապարտվեցին և բազում մարդիկ 10-րդ տարում կոտորվեցին կրկեսում։

ԺԵ գլխում խոսում է աքսորից կայսերական քաղաք կանչված ուղղափառ եպիսկոպոսների ղիմումի մեջ եղած այն պահանջների

---

[68] «Մագիստրոսը բյուզանդական բարձրագույն տիտղոսներից մեկն էր։ Դրանից բարձր տիտղոսները շնորհվում էին միայն կայսեր ազգականներին»։ Տե՛ս Կոստանդին Ծիրանածին, էջ 217։

[69] Այստեղ նկատի ունի Հալիկառնասի եպիսկոպոս Հուլիանոսին. այն ժամանակ նա Ալեքսանդրիա էր աքսորված. գուցե այստեղ խոսքը աքսորավայրի մասին է։

[70] Քրիստոսի մարմնի «ապականացու» կամ «ոչ ապականացու» լինելու հարցի շուրջը եղած վեճերի մասին է խոսքը։ Միաբնակները հիմնական երկու թևի են բաժանվում։ Մեկը գլխավորում է Անտիոքի պատրիարք՝ Սևերոսը իսկ մյուսը՝ Հալիկառնասի եպիսկոպոս Հուլիանոսը։ «Երկուսն էլ 518-ին գրկվելով աթոռներից, Ալեքսանդրիա եկան, և այնտեղ նրանց մեջ մի վեճ սկսվեց, թե, արդյոք Հիսուսի մարմինը նրա երկրավոր կյանքի ժամանակ անապական է եղել, թե ապականացու։ Սևերոսն (Անտիոքի պատրիարք 512-ից) սկսեց պաշտպանել վերջին կարծիքը, իսկ Հուլիանոսը՝ առաջին. տե՛ս Ն. Տէր-Մինասեանց, Հայոց եկեղեցու յարաբերութիւնները ասորւոց եկեղեցիների հետ, էջ 84, և շար.։ Այս էջերից պարզ երևում է, որ ասորի բանաքաղը սևերյան թևին է պատկանում, որովհետև նա ջերմությամբ ու համակրանքով է խոսում Սևերոսի մասին, իսկ Հուլիանոսին հերետիկոս է անվանում։

մասին, որ նրանք Հուստինիանոս կայսրին ներկայացրին իրենց դավանանքի կապակցությամբ։

ԺՁ գլխում մեջ է բերում Սևերոս պատրիարք Հուստինիանոս կայսեր գրած այն նամակից, որով հակառակ նրան, որ նրա կողմից կանչվել էր, պաշտպանում է իր՝ կայսերական քաղաք չգնալը։

IX գրքի ԺԷ գլխում խոսում է Կարթագենի՝ Աֆրիկե երկրի գլխավոր քաղաքի մասին, թե ինչպես Բելիսարիոս ստրատեգը հոռոմների զորքի հետ միասին, այն գրավեց ու Հուստինիանոս կայսրի հպատակ դարձրեց։

IX գրքի ԺԸ գլուխը պատմում է թե ինչպես Բելիսարիոս ստրատեգը հոռոմների բանակի հետ միասին Իտալիայից գրավեց Հռոմն ու Նեապոլը։

IX գրքի ԺԹ գլխում նորից խոսում է Սևերոս պատրիարքի մասին, որ գնաց կայսերական քաղաք ու ներկայացավ կայսրին, ընդունվեց պալատում, և մնաց այնտեղ մինչև 14-րդ տարվա մարտ ամսի վերջը, և ապա վերադարձավ։

IX գրքի Ի գլխում խոսում է Սևերոս պատրիարքի, քահանաների դասին, արևելյան վանական միաբանություններին և իր կայսերական քաղաքից արտաքսվելու կապակցությամբ գրած նամակի մասին։

IX գրքի ԻԱ-ում, մեջ է բերված կայսերական քաղաքի քահանայապետ՝ Անթիմոսի կանոնական նամակից, որը միության ու համերաշխության համար Սևերոս պատրիարքին էր ուղարկել։

IX գրքի ԻԲ գլխում խոսում է Սևերոսի միության ու համերաշխության համար Կոստանդնուպոլիս կայսերական քաղաքի քահանայապետ՝ Անթիմոսին որպես պատասխան ուղարկած կանոնական նամակի մասին։

IX գրքի ԻԳ գլխում ծանոթացնում է Սևերոսի Թեոդոսիոս Ալեքսանդրացուն ուղարկած համերաշխության ու միության համար գրած կանոնական նամակին։

IX գրքի ԻԴ գլխում խոսում է հետագայում Թեոդոսիոս պատրիարքի միության ու համերաշխության համար Սևերոս վարդապետին ուղարկած կանոնական նամակի մասին։

IX գրքի ԻԵ գլխում տեղեկություն է տալիս կայսերական քաղաքի քահանայապետ Անթիմոսի՝ Մեծն քաղաք Ալեքսանդրիայի պատրիարք՝ Թեոդոսիոսին համերաշխության ու միության համար ուղարկած նամակի մասին։

IX գրքի ԻԶ գլխում նկարագրում է նամակի պատասխանը, որը համերաշխության ու միության համար Ալեքսանդրիայի արք-

եպիսկոպոս Թեոդոսիոսն ուղարկել է կայսերական քաղաքի քահանայապետ՝ Անթիմոսին։

Այս IX գրքի վերջում տեղավորված է նաև նախաբան, որ Ամիդի եպիսկոպոս Մորոն համառոտակի գլուխներով կազմել է Ավետարանի և Քրիստոսի մարդեղության կապակցությամբ, և որ արժանի է երանելի հիշատակության. (կա) նաև մի պատմություն, որը գտնվում է 89-րդ կանոնում և վերցված է Հովհաննու Ավետարանից և նշվել է միայն իր կողմից (հոգի կնոջ պոռնկության մասին է որին հրեա քահանաները բերեցին նրա (Քրիստոսի) մոտ։

## ԳԼՈՒԽ Ա

Գրքի առաջին գլուխը խոսում է Հուստինիանոսի գահակալության և ճակատամարտի մասին, որը տեղի ունեցավ Մծբինի և Թեբեթա ամրոցի առաջ։

Հինգերորդ տարում[71] երբ Հուստինոսը թագավորեց. այս ծերունի մարդու մասին, որ վերևում պատմեցինք, ծագում էր Իլիրիական երկրից. նա իր քրոջ որդուն, որ ստրատեգ էր, դարձրեց կայսերակից, և (այսպես) Հուստինիանոսն կայսերակից դարձավ մեծ Պահքի Ավագ շաբաթվա 5-րդ օրը։ Երեք ամիս իշխելուց հետո մորեղբայրը մահացավ հուլիսի վերջին և նա կայսր դարձավ հույների 838 թ. և 327-րդ Ոլիմպիադայում[72]։ Եվ իր ամրոց՝ Մավրիանայում հրամայեց, և մեծ քաղաք կառուցեցին և (քաղաքին) մենաշնորհներ պարգևեց և զինվորական ուժ տեղավորեց այնտեղ. հեռավորությունից ջուր բերվեց, որովհետև (ամրոցի) ջուրը վատ էր։

Եվ ահա նրա թագավորության սկզբից մինչև այսօր նա ուշադրություն դարձրեց շինարարության, տարբեր մասերում վերահիմնեց քաղաքներ, և այլ վայրերում իր տերության պաշտպանության համար վերանորոգեց պարիսպները։

Սակայն պարսիկներն ու հռոմները թշնամացան իրար հետ այն ժամանակ, երբ Տիմոս[73] ստրատելատր սահմանի վրա դուքս էր, և իր հրամանատարներն իրենց զորքերով իր մոտ հավաքվեցին, Մծբինի դեմ պատերազմելու համար. և նրանք պատերազմեցին, բայց չկարողացան վերցնել այն, և նահանջեցին մինչև Թեբեթա ամրոցը. բանակը մոտեցել էր (Մծբին) պարսպին ու

[71] 527 թ.։

[72] 527 թ.։

[73] Հավանաբար խոսքը Տիմոստրատոս զորավարի մասին է։

անդք բացել ամառային ամենատաք օրերին, բայց անհայտ պատճառով, նրանք չկարողացան տիրել ամրոցին, որը գտնվում էր Դարայից 15 փարսանգ[74] հեռավորության վրա։ Բանակին հրամայեց վերադառնալ Դարա, և որովհետև (զինվորները) ագահորեն, մեծ քանակությամբ մեղր ու խոզի միս էին կերել, ուստի հետևակների մի մասը ճանապարհին (ծարավից) մահացավ և բանակում կորուստներ եղան, (որովհետև) մյուսներն էլ իրենց գցեցին անապատում (եղած) ջրհորները և խեղդվեցին, իսկ (հետևակներից) մնացածներն արշավի ժամանակ արևահար եղան, միայն ձիավորները հասան Դարա. այսպես բանակը քայքայվեց։

## ԳԼՈՒԽ Բ

### IX գրքի Բ գլուխը Թաննուրինի անապատում տեղի ունեցած ճակատամարտի մասին է

Հուստինոս[75] կայսեր օրոք նա իմացել էր, որ Թաննուրին անապատը պաշտպանության համար հարմար տեղ է և (կարելի է) քաղաք կառուցել, զինվորական ուժ պահել, և այսպիսով հնարավոր կլիներ պաշտպանել Ղարոբը արաբների ավազակային խմբերից, և դրա համար բնիկ Ափփադանացուն, սիլենտիար[76] Թովմասին ուղարկեց այդպիսի քաղաք կառուցելու համար։ Նա հազիվ պատրաստություն էր տեսել և աշխատանքները սկսել, արաբները և Շիգարի ու Թեբեթայի կուդիշացիները քանդեցին այն։ Ինչպես վերևում հայտնել ենք, (ճիշտ է) հոռոմները գրավել էին դաշտը և պատերազմել Մծբինի ու Թեբեթայի դեմ, սակայն դրանից հետո պարսիկները ևս եկան ու Թաննուրին անապատում բերդ[77] կառուցեցին։ Եվ երբ դուքս Տիմոսը՝ բանակի ստրատելատը մահացավ,

---

[74] «Փարսախ» երկարության չափ է (5250 մ.) Խորենացու աշխատութեան մեջ, գործածական է նաև արդի գրականում... Իրանեան փոխառութիւն է։ Իրանեանի մէջ բառս ունէր երկու ձև՝ պհլ. frasang և հիւս. պհլ. frasax։ Առաջինից և ձևացած պարզ. farsang. տե՛ս Հ. Աճառեան, Արմատական բառարան, հատ. Զ, Երևան, 1932, էջ 1185։

[75] Բնագրում Հուստինիանոս կայսեր անունն է, բայց կարծում ենք, որ դա գրչական սխալ է և պետք է Հուստինոս լիներ։

[76] «Սա լատիներեն Silentiarius-ն է։ Սիլենտիարիոսները սկզբում, հռոմեական ժամանակաշրջանում, ստրուկներ էին, որոնց պարտականությունն էր տիրոջ տան անդորրի պահպանումը։ Հետագայում արքունիքում հանգես եկավ սիլենտիարոսների հատուկ ծառայություն, որը հետևում էր կայսեր և նրա ընտանիքի անդամների ննջասենյակների կարգ ու կանոնին, ապա նաև հանդիսակարգի պահպանման և այլն։ Նրանք մոտ երեսուն հոգի էին»։ Տե՛ս Պրոկոպիոս Կեսարացի, էջ 335։

[77] Ասորերեն բնագրում գրված է «Բերդի փոս»։

Բելիսարիոսը հաջորդեց նրան, և նա նվերներ տալու մեջ ժլատ չէր, և գյուղացիների նկատմամբ բարի էր, և թույլ չէր տալիս, որ բանակը կողոպտի նրանց։ Նա ընկերացել էր Սողոմոնին, որը էգրիբաթից[78] (եկած) ներքինի էր։ Սա խորագետ ու աշխարհիկ գործերի մեջ լավ փորձ ունեցող մարդ էր, և երբ Փելիսիմոս դուքսի մոտ նոտար էր, կապերի մեջ էր մտել ղեկավարների հետ ու ճարտարություն էր ձեռք բերել դժվարություններից դուրս գալու գործում։

Այսպես հոռոմների զորքը հավաքվեց Թաննուրինի անապատում, պարսիկների դեմ արշավելու համար, Բելիսարիոսի, Բուտիսիսի եղբայր՝ Կուտիսիսի, Բարսեղի, Վինսենտի, արաբների ղեկավար Ատաֆարի և այլ հրամանատարների առաջնորդությամբ։ Եվ երբ պարսիկները լսեցին այդ մասին, նրանք մի ռազմահնարք ծրագրեցին և որոշ փոսեր փորեցին իրենց խրամատների միջև և դրանք ծածկեցին եռանկյունաձև փայտյա ցցերով ու որոշ բաց տարածություն թողեցին։ Եվ երբ հոռոմների բանակը եկավ, նրանք ժամանակին չնկատեցին պարսիկների խաբեպատիր ռազմահնարանքը և արագ թափով (եկած) հրամանատարներն ընկան պարսիկների փոսի մեջ, և ընկնելով փոսերի մեջ՝ գերի ընկան, և Կուտիսիսը սպանվեց։ Եվ հոռոմների զորքից նրանք, որոնք ձիավորներ էին, ետ դարձան և փախան Դարա, Բելիսարիոսի հետ, իսկ հետևակը, որը չփախավ, սպանվեց և գերի ընկավ։ Արաբների թագավոր Ատաֆարն իր փախուստի ժամանակ վիրավորվեց փոքր հեռավորությունից, և մահացավ։ Նա պատերազմասեր ու կարող մարդ էր և մեծ փորձ ուներ հոռոմների զենքերի օգտագործման մեջ, և պատերազմում, և տարբեր վայրերում փայլուն հաղթանակներ էր տարել։

## ԳԼՈՒԽ Գ

### IX գիրք Գ գլուխը վերաբերում է Դարայի առջև եղած ճակատամարտին

Պարսիկները հպարտանում, փքվում ու պարծենում էին, և իսկապես Միհրանն ու մարզպանները բանակ հավաքեցին և եկան

[78] «Հավանաբար Հռաբդիոնի մասին է։ Հռաբդիոնի մասին տեղեկություններ է տալիս Պրոկոպիոս Կեսարացին»։ Նա գրում է. «Դարա քաղաքից Պարսկաստան գնացողի ձախ կողմից տարածվում է մի տեղանք, լավ քայլող մարդու քայլվածքով ավելի քան երկու օրվա ճանապարհ երկարությամբ, որը բոլորովին անմատչելի է կառքերի և ձիավորների համար։ Նա վերջանում է ժայռոտ մի վայրում, որը կոչվում է Հռաբդիոն»։ Տե՛ս Պրոկոպիոս Կեսարացի, Կառուցումների մասին, գիրք 2, գլուխ 4, էջ 173։

Դարայի դեմ, և տեղավորվեցին Ամմուդիոսի[79] մոտակայքը, բոլորովին վստահ, որ կգրավեն քաղաքը, որովհետև մարտից հետո հռոմների զորքերը պակասել էր։ Նրանց այրուձին և հետևակը մոտեցան և եկան հարավային կողմն այն նպատակով, որ ճնշեն բոլոր կողմերից ու պաշարեն, սակայն հռոմների զորքը կանգնեց նրանց դեմ, և Տիրոջ օգնությամբ, որը թեև սլատժում է, բայց չի թողնում, որ վերջնականապես կորչեն, Սունիկս անունով մի հոն սպա, որ ապաստան էր գտել հռոմների մոտ ու մկրտվել, նա և մի հռոմ տրիբուն[80] Սիմոնը, իրենց զինակիցների ու քսան մարդկանց հետ միասին, ամբողջ պարսկական բանակը ետ քշեցին քաղաքից մի քանի անգամ, նրանք հանդգնաբար ու քաջաբար անցնում էին դաշտի մի կողմից մյուսը, և իրենց նիզակներով, աջ ու ձախ կոտորում մարդկանց։ Նրանք վարժ էին սուր օգտագործելուց, և նրանց աղաղակը բարձր էր ու ահազդու, և այնպես սարսափելի էին երևում պարսիկներին, որ նրանք (վախից) ընկնում էին նրանց առաջ, և նրանց առաջնորդներից երկուսը սպանվեցին, բացի այդ, ոչ քիչ քանակությամբ ձիավորներ և պայկերից[81] էլ, որը պարսկական հետևակն էր, շատերը կոտորվեցին և ետ քշվեցին քաղաքի արևելյան մասը, իլիրիացիների կողմից, որոնց առաջնորդում էր Բուտիսիսը։

Պարսիկները երբ տեսան, որ մահացածների թիվը շատ է, խորամանկությամբ շարժվեցին, և (լուր) ուղարկեցին Մծբին ու խնդրեցին, որ ինչքան հնարավոր է շատ բեռ տանող կենդանիներ բերեն ու անմիջապես գան Դարա, որպեսզի կարելի լինի շատ ավար տանել, և երբ շատ (կենդանիներ) բերեցին, դրանց բեռնավորեցին իրենց մեռյալների դիակներով ու ապա ամոթով վերադարձան։ Համենայն դեպս, պարսկական մնացած բանակը արշավեց հռոմների Ղարոբ (Մծբինի շրջակայքը) և այն հրկիզեց։

---

[79] «Ամրոց Հյուսիսային Միջագետքում, Դարայից 14 փարսախ հեռավորության վրա։ Նրա արամեական անունն է 'Ammüdin։ Այժմ այն կոչվում է Tell 'Ammde»։ Տե՛ս Պրոկոպիոս Կեսարացի, էջ 323 ծնթ.։

[80] Տրիբուն (լատ. tribunus), սպա, հրամանատար։

[81] «Լավխագա հետևակ, Պայիկ, բերդի պահապան, պահակ, զինվոր, հետիոտն զինվոր։ Պհլ. paik, սուրհանդակ, paikan, հետևակ և թղթաբեր»։ Տե՛ս Հ. Աճառեան, Արմատական բառարան, հատ. V, էջ 815։

## ԳԼՈՒԽ Դ

Դ գլուխը վերաբերում է 9-րդ տարում Եփրատի վրա տեղի ունեցած ճակատամարտին։

Պարսիկները հռոմների հարձակումներից ստացած մեծ վնասից իմաստնացան, և երբ նրանք (հռոմները) քաղաքին մոտեցան, նրանց դեմ դուրս չեկան, այլ գնացին հռոմների երկրի անապատային մասը՝ Եփրատի մոտ, և այնտեղ տեղավորվեցին, և իրենց սովորության համաձայն, փոս փորեցին։ Բելիսարիոսը հռոմների զորքի և տրիբունների գլուխն անցած, եկավ նրանց դեմ ճակատամարտելու, և նրանք տեղ հասան (Մեծ) պահքի վերջին շաբաթը։ Պարսիկներին թվում էր, որ իրենք քանակով քիչ են և իրենց հրամանատար ասթաբիդը վախենում էր նրանցից, և իր հետ եղածներից, ուստի (լուր) ուղարկեց հռոմներին, ասելով, որ «խնդրում եմ, հարգել տոնը և ի հարգանս մեր բանակում եղած քրիստոնյաների, և ի հարգանս ձեզ, որ քրիստոնյաներ եք։ Եվ մինչ ստրատեգ Բելիսարիոսը նկատի առավ այն ու պատրաստ էր համաձայնվելու, սակայն հրամանատարները շատ տրտնջացին և չհամաձայնվեցին և չուզեցին սպասել ու հարգել տոն օրը։ Եվ նրանք ճակատամարտի գնացին շաբաթվա առաջին օրը, Բաղարջակերաց տոնի օրը, որը ցուրտ օր էր և քամին էլ փչում էր հռոմների դեմքին, և պարզվեց, որ իրենք թույլ են և ետ դարձան ու փախան պարսիկների հարձակումից։ Շատերն ընկան Եփրատի մեջ և խեղդվեցին, ուրիշներն էլ սպանվեցին, բայց Բելիսարիոսը փախավ, մինչ Բուտիսիսի քրոջ որդին գերի ընկավ։ Նա (Բուտիսիսը) հիվանդ վիճակում էր Ամիդում և ճակատամարտին չէր մասնակցում։ Նա իր զորքին ուղարկել էր Աբգարաշատ՝ Դոմենտիոլոսի գլխավորությամբ, սա գնաց գեպի Պարսկաստան և դիպվածով վերադարձավ, և թե ինչպես պատահեց այն, հաջորդ գլխում կպատմեմ։

## ԳԼՈՒԽ Ե

Գրքի Ե գլուխը պարսիկ հրամանատար Կաղիշացի Դագարի մասին է, թե ինչպես նա սպանվեց, և իր հետ եղած Արգանենի բդեշխ Հորմիզդի քրոջ որդի Հաղկերտը գերի վերցվեց։

5-րդ տարում, երբ Բելիսարիոսը դուքս էր, հռոմները ստիպված դադարեցրին Թաննուրինի կառուցումը սահմանի վրա և

ցանկացան քաղաք կառուցել Մելբաշայում[82], և այդ պատճառով Կավատը Կադիշացի Գագարին մի բանակով ուղարկեց, և թույլ չտվեց, որ հռոմներր իրագործեն իրենց ցանկությունը, և Մելբաշայի բլրի վրա եղած ճակատամարտում նրանց փախուստի մատնեց։ Նա (Գագարը) դրա համար (Կավատի) մոտ մեծ հեղինակություն ձեռք բերեց և նրան հանձնարարվեց, որ իր բանակով հսկի արևելյան սահմանն Արզանենի երկրամասում, Մելբաշայից մինչև Մայփերկատ (Մարտիրոպոլիս)[83]։ Այս մարդը շատ էր պարծենում հռոմների դեմ դատարկ խոսքերով և հայհոյում էր այնպես, ինչպես Սենեքերիմից ուղարկված Ռափսակը[84]։ Եվ նա բերեց մոտ 700 զինված ձիավոր և մի խումբ հետևակ, որը պետք է ետևից գնար՝ ավարը հավաքելու համար։ Նրանք անցան Տիգրիսը և (եկան) Ամիդ գավառի Բեյթ Ատկայե շրջանը։ 9-րդ տարվա[85] ամռանը, Բեսսան դուքս էր Մայփերկատում։ Գագարի հետ էր Հազկերտը՝ բդեշխի քրոջ որդին, որ որպես հարևան ծանոթ էր Բեյթ Ատկայեյի շրջանին։ Եվ Բեսսան այդ մասին լսեց, 500 ձիավորներով Մայփերկատից նրա դեմ դուրս եկավ, որը 4 ստադ[86] հեռավորության վրա էր գտնվում։ Նրան պատահեց Բեյթ Քալտեում, և ոչնչացրեց նրա բանակը Տիգրիսի վրա, և սպանեց Գադարին, իսկ Հազկերտին էլ գերի վերցրեց և բերեց Մայփերկատ։ 10-րդ տարում[87] տեղի ունեցած խաղաղությունից հետո այս մարդուն փոխանակեցին Դեմետրիոսի հետ, որը վերադարձավ Պարսկաստանից։ Սակայն Բեսսա դուքսը, Արզանենի սահմանը պաշտպանող Գադարին ու պարսկական այրուձիուն ոչնչացրեց, մտավ (Արզանեն) երկիրը և մեծ վնաս հասցրեց, և այնտեղից գերիներ վերցնելով Մայփերկատ բերեց։

---

[82] Տիգրիսի ձախ ափին բլուր է, բարձունք։

[83] «Մարտիրոսոպոլիս կամ Նփրկերտ (Տիգրանակերտ) քաղաքը»։ Միջին դարերում կոչվում էր Մարտիրոսուպոլիս, Մարտիրոսաց քաղաք, Նփռեա, Մայփերկատ, Մայափարկին, Մուֆարղին և այժմ Փարկին կամ Սիլվան: Շուրջ 77 թ. (մ. թ. ա.) Տիգրան Մեծի կողմից հիմնված քաղաք, որը տարբեր անուններով գոյություն ունի մինչև հիմա։ Տե՛ս Ս. Երեմյան, Հայաստանն ըստ «Աշխարհացոյց»-ի, էջ 73։

[84] «Թագաւորութեանց», Դ, ԺԸ, 17։

[85] 531։

[86] Մայփերկատը գտնվում է Տիգրիսի հյուսիսային շրջանում՝ Ամիդից 240 ստադ հեռավորության վրա, իսկ Բեյթ Ատկան՝ 100 ստադ։ Ստադը հավասար էր հունական 600 քայլին, կամ մոտավորապես մեր 185 մետրին։

[87] 532 թ.։

## ԳԼՈՒԽ Զ

*Այս IX գրքի Զ գլուխը տեղեկացնում է մեզ Մայփերկատի առաջ տեղի ունեցած ճակատամարտի, և հոռոմների երկիրը արշաված հոների մեծ բազմության մասին։*

*Արզանեն երկրի գյուղերը պարսկական արքունիքի սեփականությունն էին, և բնակիչներից գանձված գլխահարկից ոչ քիչ գումար էր հավաքվում արքունական գանձարանն ու բդեշխի ապարանքը, որը նշանակված էր լինում (այնտեղ) որպես արքայի եպարքոս։ Ինչպես վերևում պատմեցինք, այս երկրամասին Բեսսա դուքսը մեծ վնաս պատճառեց, բդեշխի քրոջ որդուն գերի վերցրեց և պահեց Մայփերկատում։ Կավատ արքան շատ տխրեց, երբ բդեշխից լսեց երկրի ամայացման մասին. մինչդեռ նույն Հորմիզդը Արզանենի ավարառումն անկարելի դարձնելու համար ամեն խորամանկություն ու ուժ գործադրեց, որպեսզի տիրեր Մայփերկատին, որովհետև գիտեր, որ այն հոռոմների բանակի համար ծառայում էր որպես դարան և որպես ապաստարան։ Այսպես ասած, պարսկական զորքից առանձնացվեց մի բանակ, և Միհրագիրվին էլ ուղարկվեց, որ մեծ թվով հոներ վարձի և օգնություն ցույց տա։ Նրանք եկան ու հավաքվեցին Մայփերկատի առաջ, 10-րդ տարվա սկզբին[88]։ Նրա (պարսպի) դեմ խրամատներ ու փոսեր փորեցին, ջորի պատրաստեցին և նրա (պարսպի) վրա անցքեր բացելով շատ նեղեցին նրանց։ Բուտիսիսի հոռոմների զորքի քանակը (քաղաքում) քիչ չէր, և պարսկական շատ զորքերի ետ մղեցին ճակատամարտում։ Սակայն քաղաքի Նոնո եպիսկոպոսը նույնպես վախճանվեց։*

*Բայց Բելիսարիոսը կայսրից մեղավոր ճանաչվեց հոռոմների բանակի Թաննուրինում և Եփրատում պարսիկների կողմից ոչնչացվելու կապակցությամբ, և հեռացվեց իր պաշտոնից, և գնաց կայսրի մոտ. նրան Դարայում փոխարինեց Կոստանդինը։*

*Եվ սա հոռոմների մեծ բանակ հավաքեց, սրանց միացավ Սիտտա ստրատեգն ու արաբների թագավոր՝ Բար Գաբալան։ 10-րդ տարվա Թեշրին (հոկտեմբեր կամ նոյեմբեր) ամսին նրանք հասան Ամիդ։ Անաստասիայից ճգնավոր Հովհանը՝ պատկառելի նկարագրով մի մարդ, որ առաջնորդ (եպիսկոպոս) էր ընտրվել, նրանց ընկերացավ։ Երբ Մայփերկատ գնացին ձմեռը վրա*

---

[88] 532 թ.։

հասավ, որովհետև այն հյուսիսային շրջանում էր գտնվում և (ցուրտ էր) և պարսիկներին (արդեն) խանգարում էր անձրևն ու ցեխը, և դժվարություններ ստեղծում, և բացի այդ, նրանք վախենում էին նաև հոռոմների բանակի մեծությունից. մինչ նրանք այնտեղ էին, մահացավ նաև նրանց Կավատ արքան, և նրանք դաշինք կնքեցին հոռոմների հետ՝ քաղաքից հեռանալու համար։

Երբ Մայփերկատը շրջապատումից ազատվեց, հոռոմների բանակը վերադարձավ, տեղ հասան պարսիկներից վարձված հոները։ Այս մեծ ամբոխը հարձակվեց հոռոմների երկրի վրա և կոտորեց ու ոչնչացրեց շատ հողագործների, այրեց գյուղերն ու նրանց եկեղեցիները, (և ապա) անցավ Եփրատը և առաջացավ մինչև Անտիոք։ Նրա դեմ ոչ ոք դուրս չեկավ, և ոչ էլ վնաս հասցվեց նրան, բացի Բեսսայից՝ Մայփերկատի դուքսից, որը հարձակվեց ետ վերադարձող ջոկատներից մեկի վրա, սպանեց նրանց և վերցրեց 500 ձի և շատ ավար, և այսպիսով (Բեսսան) հարստացավ։ Կիթարիչ ամրոցի[89] դուքսը, նրանցից մոտավորապես 400 մարդ ետ մղեց, և գրավեց նրանց բեռ տանող անասունները։

Կավատից հետո նրա որդին՝ Խոսրովը դարձավ թագավոր։ Նրա մայրն իր ամուսին՝ Կավատի կենդանության օրոք դևից էր տառապում (հիվանդացել էր) և որովհետև ամուսինը (Կավատը) շատ էր սիրում նրան, կանչեց բոլոր մոգերին, հմայողներին և կախարդներին, որ բուժեն նրան, սակայն նրանք չկարողացան առողջացնել նրան և ճիշտն ասած նրա մեջ դևերն (գնալով) ավելանում էին։ 4-րդ տարում[90] Լիբերիոս դուքսի օրոք նրա մոտ ուղարկեցին երանելի Մովսեսին, որը Դարայից մոտ երկու փարսանդ հեռավորության վրա գտնվող վանականներից, հայտնի մի անձնավորություն էր։ Եվ նա մի քանի օր մնաց նրա մոտ ու մաքրեց (բուժեց) նրան ու վերադարձավ իր երկիրը։ Նա (Կավատի կինը) Տարմել կոչված վանքի այս սուրբ Մովսեսից վերցրեց սուրբ Կիրակոսի ոսկորներից մի մասունք, որպեսզի այն իրեն

[89] Կիթարիզոն՝ հունարեն ամրոց։ «Այն գտնվում է պարսկա-բյուզանդական սահմանի վրա, Հաշտյանք գավառում։ Նրա ճիշտ տեղը դեռ հայտնի չէ։ Ն. Ադոնցը հնարավոր է համարում այն տեղադրել ժամանակակից Ներքոհիշյալ ամրացված տեղերից որևէ մեկում՝ Շեյխ-Սելիմկալա, Աղնաբերդ կամ Աստեղաբերդ, կամ էլ Ճապաղջուրում գտնվող Դարեզոռում»։ Н. Адонц, Армения в эпоху, стр. 19, 22: Ս. Երեմյանը գտնում է, որ Կիթարիզոնը, ըստ երևույթին, հետագայում կոչվել է Ճապաղջուր։ Տե՛ս «Հայաստանը ըստ Աշխարհացոյց»-ի» էջ 59։ Տե՛ս Պրոկոպիոս Կեսարացի, էջ 336։ ծնթ.։

[90] 526 թ.։

պաշտպանի, և թույլ չտա, որ ոգիները նորից վերադառնան։ Եվ ի հարգանս նրան (մասունքի) նա գաղտնի աղոթատուն կառուցեց իր երկրում, և թույլատրեց նրա (սուրբի) պաշտամունքը։ Նա այս երանելի Տարմելի Մովսեսի կատարած բարեգործությունը հիշելով, օգնեց հռոմների երկրին, այն առիթով, որ ներքևում հիշված է։

## ԳԼՈՒԽ Է

*Թ գլխում խոսվում է, թե ինչպես խաղաղության դաշինք կնքվեց հռոմների և պարսիկների միջև, և տևեց Ռուփինոսի և մագիստրոս Հերմոդենեսի օրոք 6 կամ 7 տարի։*

Երբ Հուսինիանոս կայսրն իմացավ, թե ինչ է պատահել իր իշխանության մեջ մտնող Միջագետքում, և թե (ինչպես) իր զորքը մի քանի անգամ ջախջախվել էր պարսիկներից և գյուղացիները կոտորվել ու գերի էին տարվել հոներից, և երկիրը գյուղերով միասին այրվել էր, նա դադարեցրեց այլևս բանակների առաքումը պատերազմելու համար Խոսրովի դեմ, որն իր հոր՝ Կավատից հետո թագավոր էր դարձել։ Եվ այս մարդը (Խոսրովը) Ռուփինոսի հետ մտերիմ էր, որովհետև նա էր, որ նրա (Խոսրովի) հորը խորհուրդ էր տվել, իր որդուն հաջորդ նշանակել։ Այդ հայտնի էր արքային, և այս հանգամանքը քաջալերում էր նրան (Ռուփինոսին), և մանավանդ նա (Խոսրովը) խոստացել և ասել էր, թե եթե Ռուփինոսն իր երկիրը գա և հանուն խաղաղության ինչ որ բան խնդրի նա այն կկատարի, ուստի 11-րդ տարում[91] այս Ռուփինոսն ու մագիստրոս Հերմոգենեսը որպես դեսպան ուղարկվեցին Խոսրովի մոտ, և նրա հետ երկար բանակցեցին։ Եվ, որովհետև այս Ռուփինոսը հայտնի էր այնտեղ, և մի քանի անգամ (որպես դեսպան) ուղարկված էր եղել Կավատի մոտ, և նրա հետ մտերմացել էր և շատ նվերներ էր բաշխել թագավորության մեծամեծներին, և թագուհին՝ Խոսրովի մայրը (ևս) սիրալիր էր նրա հետ, որովհետև նա էր խորհուրդ տվել Կավատին իր որդուն արքա դարձնել, և (բացի այդ) նա երախտապարտ էր նաև նրա համար, որ Տարմելի վանական՝ երանելի Մովսեսին (ուղարկել էր), և սա աստծո միջնորդությամբ բուժել էր իրեն, ուստի նա թախանձագին խնդրեց իր որդի Խոսրովին, և նա Հուստինիանոս կայսրից ստացած ինչ որ ոսկու գումարը նկատի ունենալով, և համաձայն Ռուփինոսի և Հերմոգենեսի՝ նրա դեսպանների միջոցով եղած խնդրանքին, խաղաղության դաշն կապեց և պայմանա-

[91] 533 թ.։

գիր կնքեց ու վավերացրեց։ Եվ թվում էր, որ աստղերը երկնքում տարօրինակ ձևով պարում էին, և այն տեղի ունեցավ 11-րդ տարվա ամռանը[92]։ Եվ տևեց 6 կամ 7 տարի, մինչև 3-րդ տարին[92ա]։

ԳԼՈՒԽ ԺԴ

IX գրքի ԺԴ գլուխը վերաբերում է Կոստանդնուպոլսում պատահած խռովության, և թե ինչպես Հիպատիոսն ու Պոմպեոսը սպանվեցին, և կրկեսում շատ քաղաքացիներ կոտորվեցին։

10-րդ տարում հոռոմների երկիր արշաված հոները շատ մարդկանց կոտորեցին, կողոպտեցին ու եղածներից շատերին ոչնչացրին ու այրեցին, ինչպես վերևում պատմվել է, և այդ (կարծես) բավական չէր, կայսերական քաղաքում ևս շատ մարդիկ ոչնչացվեցին, այնտեղ ծագած մի խռովության պատճառով։ Որովհետև երբ Հովհան Կեսարացին Կապադովկիայում եպարքոս էր, միշտ մարդկանց դեմ պատրվակներ հորինելով, նենգությամբ ու խորամանկությամբ, և՛ այնտեղի և՛ այլ քաղաքների բոլոր խավերից՝ ազնվականներից ու արհեստավորներից մեծ քանակությամբ ոսկի հավաքեց կայսերական գանձարանի համար, և այդպիսով պալատում վստահություն ձեռք բերեց, և դրա համար բոլորը վախենում էին նրանից, և այսպես կայսրի բացարձակ վստահությունը վայելելով նա բազում մարդկանց դեմ կեղծ մեղադրանքներ էր ներկայացնում, և նա շրջապատված էր շողոքորթներով ու լրտեսներով։ Ե՛վ կայսերական քաղաքում և՛ այլ շրջաններում կային ոչ շատ քիչ թվով մարդիկ, որոնք դժգոհ էին նրանից, և որոնք համակրում ու պաշտպանում էին (հակառակ) խմբակցություններին։ Այդ պատճառով էլ մշտական դժգոհություն կար իր և կայսրի դեմ։ Խմբակցությունները միացան և իրար հետ համաձայնվեցին մի քանի օրվա ընթացքում, խանութները փակեցին և սկսեցին կողոպտել իրենց ճանապարհի վրա եղած ամեն ինչ, և այրել։ Կայսրը սարսափել էր, և ի վերջո փակվել պալատում։ Խմբակցությունները հավաքվեցին կրկեսում և մեծ խռովություն բարձրացրին և նրանք բացականչում էին, որ Հիպատիոսը պետք է կայսր լինի, եթե ոչ նրանք կրակի կտան քաղաքը։ Եվ Հիպատիոսը ստիպված էր դուրս գալ, իսկ Պոմպեոսը ընկերակցում էր նրան։ Եվ նրանք վերցրին զինվորներից մեկի մանյակը և

[92] 533 թ.։
[92ա] 540 թ.։

դրեցին գլխին ու նրան կայսր հռչակեցին. նրանք բացականչում ու փառաբանում էին նրան։

Եվ երբ այս տեղի ունեցավ, որոշ մարդկանց խորհրդով նրանք (կայսերականները) կրակ տվեցին քաղաքի մեծ եկեղեցուն, որպեսզի հավաքված ամբոխը աղետի լուրը ստանալով գուցե ցրվեր, որովհետև Հուստինիանոս կայսրը պալատում տագնապի ու սարսափի մեջ էր։ Եվ Մունդոս ստրատեգն իր զորքով այնտեղ (մայրաքաղաքում) էր. նա և սկոլիարիաններն ու մոտ կանգնած ամբողջ զորքը, հրաման ստացան, և նրանք փակեցին կրկեսի դուռը, և այնտեղ եղած բոլոր դասակարգի մարդկանց կոտորեցին ու սպանեցին, և հնարավոր չէր խուսափել ու փախչել կոտորածից։ Եվ ավելի քան 80000 մարդ կոտորվեց այս խռովության ժամանակ։ Եվ Հիպատիոսն ու Պոմպեոսն ի վերջո ձերբակալվեցին և բերվեցին կայսրի առաջ։ Եվ երբ նա իմացավ իրերի վիճակը, թեև նա ուզում էր նրանց սպանել, բայց չհամարձակվեց, որովհետև նրանց ընկերակիցները կատաղել էին ու աստուծով և նրանով երդվել, որ եթե նրանց մահվան դատապարտի, իրեն էլ կվնասեն։ (Ուստի) նրանց ուղարկեցին ծովափ, և սպանեցին ու գցեցին ծովը։

## ԳԻՐՔ ՏԱՍՆԵՐՈՐԴ

Այս, X գրքի ներքևում նշված 16 գլուխներում նկարագրված են այն իրադարձությունները, որոնք հաջորդաբար տեղի են ունեցել 15-րդ տարվանից, (այսինքն) հույների թվականության 848 թ.-ից[93] մինչև 13-րդ տարվա վերջը (այսինքն) հույների թվականության 859 թ.[94], որը (հասնում) ու կապվում է մեր օրերի պայծառ կայսր՝ Հուստինիանոսի ինքնակալության հետ։

Առաջին գլուխը վերաբերում է Եփրեմին, որ Արևելք գնաց։
Բ-ն վերաբերում է Ամիդում Բար Խիլիի կատարած գործերին 15-րդ տարում և երկրորդում[95]։

---

[93] 537 թ.։

[94] Ասորերեն բնագրի անգլերեն թարգմանիչը գտնում է, որ այս թվականներից մեկը սխալ է, որովհետև ինդիկտիոնի 13-րդ տարին վերջանում է 550 թ. օգոստոսի 31-ին, մինչ հունականի 859 թ. վերջանում է 548 թ. սեպտեմբերի 30-ին։ Թարգմանիչը գտնում է, որ վերջինն ավելի ճիշտ է, որովհետև այս գիրքն ավարտվում է Հռոմի անկումով, այսինքն 546 թ. դեկտ. 17։ Տե՛ս S. Bury, The Syriac chronicle, p. 296.

[95] 537 և 539։

Գ-ն վերաբերում է Լղգինո քաղաքից՝ քահանա Կյուրոսին, որին այրեցին Ամիդի աետրապիլոնում[96]։

Դ-ն վերաբերում է Եդեսիայի Ռաբուլասի նամակին (գրած) Բերոյաի[97] Գեմելինոսին, այն (մարդկանց) մասին, որոնք հաղորդություն ուտում են որպես սովորական հաց։

Ե-ն վերաբերում է Անտիոքի եկեղեցու օծմանը, և այն ժողովի մասին, որ գումարվել է Եփրեմի կողմից։

Զ-ն պարսիկների արքա Խոսրովին է վերաբերում, որ արշավեց և գրավեց Սուրը, Բերոյան և Անտիոքը։

Է-ն վերաբերում է Բելիսարիոսին, որ գնաց պարսկական երկիր ու գրավեց Սիսավրանա[98] ամրոցը։

Ը-ն վերաբերում է Խոսրովին, որը գնաց և գրավեց Կալլինիկոնն[99] և այլ ամրոցներ՝ Եփրատի ու Խաբուրի սահմանի վրա։

Թ-ն վերաբերում է ուռուցքային ժանտախտին։

Ժ-ն վերաբերում է Մարտինին և Հուստոսին, որոնք մտան Պարսկական Հայաստան ու վերադարձան։

ԺԱ-ն վերաբերում է Խոսրովին, որ Եդեսիա գնաց և գրավեց այն ու վերադարձավ։

ԺԲ-ն վերաբերում է Հակոբին ու Թեոդորին, աստվածավախ եպիսկոպոսներին, որոնք ձեռնադրվեցին ու ուղարկվեցին Արևելք, նրանց վստահեցին առաջնորդությունը։

ԺԳ-ն վերաբերում է Լազերի երկրին,[100] որը Խոսրովի կողմից նվաճվեց։

ԺԴ-ն վերաբերում է 9-րդ և 10-րդ տարիներում[101] եղած հացահատիկի պակասության ու բանջարեղենի սակավության։

ԺԵ-ն վերաբերում է Հռոմին, որը բարբարոսները գրավեցին և ավերեցին։

---

96 Ջորս սյունանի շինություն։

97 Այժմ՝ Հալեպ։

98 Հունարեն՝ Սիսավրանոն։ Միջագետքի քաղաքներից. Մծբինից 39 կմ. արևելք, այժմ՝ Սերվան։

99 Միջագետքի քաղաքներից, այժմ՝ Ռակկա, Եփրատի ափին։ Այն կոչվել է նաև Նիկեփորիում, Կոստանդնուպոլիս, Լեոնտոպոլիս։

100 Լազերի երկիր կամ Լազիկա։ «Լազիկան Արևմտյան Վրաստանն էր, ի տարբերություն Իբերիայի, որի տակ հասկացվում էր Արևելյան Վրաստանը։ Պրոկոպիոսը և ընդհանրապես բյուզանդական աղբյուրները հաճախ Լազիկայի փոխարեն գործ են ածում հին անունը՝ Կոլխիս, իսկ լազերին անվանում են կոլխեր»։ Տե՛ս Պրոկոպիոս Կեսարացի, էջ 321 ծնթ.։

101 546 թ. և 547 թ.։

ԺՁ-ն վերաբերում է Հռոմի հուշարձաններին ու շինություններին։

## ԳԼՈՒԽ Ա[102]

Ինչպես վերևում, IX գրքում է ցույց տրված, երբ Սեվերոս ու Անթիմոս ուղղափառ հայրապետները Հռոմի Ագապետոսի (եպիսկոպոս) գալստյան կապակցությամբ, վտարվեցին կայսերական քաղաքից, կայսրի կողմից, որը սակայն շուտով 14-րդ տարվա մարտ ամսի վերջին[103] մահացավ (Ագապետոսը)։ Մահացավ նաև Սարգիս բժշկապետը, որը բերել էր նրան. այն ժամանակ Եփրեմը, որը Արևելքում գրավել էր Անտիոքի աթոռը, ամրապնդվեց ու խրախուսվեց, և նրանից (կայսրից) խնդրեց, որ իրեն հռոմ զորք ուղարկի, և նա, Կլեմենտոս տրիբունի գլխավորությամբ զորք ուղարկեց, և կարգադրեց, որ նա (Եփրեմը) 15-րդ տարում[104] անցնի ու շրջելու գնա Արևելյան թեմի բոլոր վայրերը և իր խոսքով (քարոզով) զգուշացնի բոլորին. իսկ Կլեմենտոսը (միևնույն ժամանակ) ուժ էր գործադրելու արևելյան քաղաքների բնակիչների վրա, որպեսզի նրանք ընդունեն (Քաղկեդոնի) ժողովը, ինչպես վարվել էին Իտալիայի բնիկների հետ՝ Հռոմում։ Եվ նույն այս Եփրեմը Կլեմենտոսի ընկերակցությամբ գնաց Բերոյա, Խալսիս[105], Հիերապոլիս, Բատնայե[106], Եդեսիա, Սուր, Կալլինիկոն և սահմանի վրա՝ Ռեշլղայն, Ամիդ, Կոստանդա և նա ստիպում էր շատերին, որ ենթարկվեն իրեն, ոմանց խոսքով, ոմանց կայսրի բարեկամական խոստումով, ոմանց վախով, սպառնալիքներով, և նաև աքսորով և կամ ունեցվածքի զրկումով, ոմանց իրենց աստիճանից շնորհազրկելով և կամ պաշտոնից վտարելով, և ուրիշներին բռնում ու քշում էր երկրից երկիր, որոնց մեջ կային վանականներ, որոնք իրենց հավատքում հաստատ էին մնում և դատի ժամանակ (չէին հրաժարվում) իրենց ուղղափառ դավանանքից։ Եվ որովհետև դաժան ձմեռներից մեկն էր, այն աստիճան, որ մեծ քանակությամբ անսովոր ձյունից, թռչունները կոտորվեցին և... տագնապ կար,... մարդկանց մեջ... վատ բաներից և... տարբեր

---

[102] Բնագրի այս մասում որոշ բառեր դժվար ընթեռնելի են։

[103] 536 թ.։

[104] 537 թ.։

[105] «Խալկիսն է, «արաբերեն» Kinnasarin։ Քաղաք Հյուսիսային Սիրիայում։ Հիշատակվում է նաև «Աշխարհացոյց»-ում. «Քաղկիդիկէ յորում քաղաք Քալկիսա, որ է Նիկորիա»։ Տե՛ս Պրոկոպիոս Կեսարացի, էջ 327 ծնթ.։

[106] Բատնե, այժմ՝ Սարուկ կամ Սարուջ, Եդեսիայի մոտակայքում։

երկրներում Թուրա ըը Շագրից՝[107] պարսիկների երկրում, նրանք բռնեցին... Հովհանը Կոստանդիայի ուղղափառ եպիսկոպոսը, մի մարդու (միջոցով), որը կոչվում էր Կոս (տանդիոս) և բանտարկրվեց Անտիոքում և տանջում էին նրան և... նա չհամաձայնվեց և շարունակեց... մինչև առաջին տարվա սկիզբը[108], բանտում և այնտեղ էլ մահկանացուն կնքեց... և նրանք արտաքըսվեցին... և ապրեցին (տարբեր) երկրներում... (մինչև) 3-րդ տարին...[109] և Խոս(ր)ովը... գնաց Ս(ուր) և Բերոյե և Անտի(ո)ք։ Այժմ Թեոդոսիոս Ալեքսանդրացին կայսրի կողմից կանչվեց, որ դա իր մոտ, և նա իր թեմի մի քանի եպիսկոպոսների հետ գնաց, բայց ոչ մի կերպ չընդունեց Քաղկեդոնի ժողովը, մինչև առաջին տարին[110], Պողոսը նշանակվեց աթոռին։ Եվ երբ Թեոդոսիոսն ու նրա հետ եղած եպիսկոպոսներն եկան կայսրի առաջ. նրանց (դալուստը) նամակով հայտնվել էր Եփրեմին... հետո...։ Սակայն Թեո(դոսիոսն) և նրա հետ եղածները (ներկայացան) կայսրին, և... և առանց... և նրանք վտարվեցին... և այնտեղ էլ ապրեցին, և թագուհին ջանում էր հարգանք ցույց տալ նրանց, և նրանց ծանոթներից և կամ հավատարիմ մարդկանցից ոչ ոքի չէր արգելում տեսնել ու սպասավորել նրանց...։ Այժմ տասնհինգ-(երորդ) տարում պատահեց և... կայսրը շատ... նա ասաց նրան, (մարդու) մասին, բայց... Բուտը, որ տարվա ամառ ժամանակին Դարայում ապստամբություն (ծրագրեց), սակայն նա մահվան դատապարտվեց։ Եվ այսպիսով կայսրին փրկեց տագնապից, բայց թե ինչ ձևով, ես վստահ չեմ, որովհետև այդ մասին հաստատ ասելու համար բավարար տեղեկություն չունեմ, ուստի լռում եմ։

Եվ որովհետև Պողոսը հաջորդեց Թ(եո)դ(ոսիոսին), աթոռի վրա նա փակեց... Հավատի նախանձախնդրության համար բաղնիսում նրան հեղձամահ արեց, և այս մարդու որդուն ևս ձերբակալեց և պահեց հսկողության տակ, որ նա իր հոր մահվան մասին չիմանա։ Սակայն այնպես պատահեց, որ նա ուղղափառների օգնությամբ փախավ, որոնք ճանաչում էին հորը և ընկավ թագուհու մոտ և նրան պատմեց իր հոր սոսկալի սպանության մասին։ Եվ այս կապակցությամբ Եփրեմ Անտիոքացին ուղարկվեց Ալեք-

---

107 Շինգար կամ Սինգար, Շագր լեռից. Շնգար, այժմ՝ Սինգար կամ Շելմիրա։

108 538 թ.։

109 540 թ.։ Այս հատվածը պակաս բառեր ունի։

110 538 թ.։ Սրան հաջորդող մասում էլ կան պակասող բառեր։

սանդրիա, որին (ընկերակցում) էր Աբրահամ Բար Խայլին, և երբ անցնում էին Պաղեստինից, իրենց հետ վերցրին Ջոյլոս անունով մի վանականի։ Եվ նրանք գնացին Ալեք(սանդրիա) և քննեցին Պողոսի գործը, և նրան քշեցին, և Ջոյլոս քաղկեդոնականին քաղաքի եպիսկոպոսական աթոռին բազմեցրին, և որպեսզի այս մարդուն քաղաքի բնակիչների բռնություններից պաշտպանեն, Ամիդցի Ակակիոս Բար էշկոփոյին[111] այնտեղ հռոմների տրիբուն նշանակեցին։

(Զ գլխի հատվածներ ըստ Հակոբ Եդեսացու, Միքայել Ասորու և Բար էբրայուսի)[112]

Հուստինիանոսի 11-րդ տարում, այսինքն հույների 850 թ. Քանուն ամսին[113], երեկոյան մի մեծ ու ահավոր գիսավոր աստղ երևաց երկնքում և (տևեց) հարյուր օր։ Եվ այդ տարի խաղաղությունը (երկու) պետությունների միջև խախտվեց, և պարսիկների Խոսրով արքան արշավեց, և գերիներ բերեց Սուր, Անտիոք, Բերոյա և Ապամեա քաղաքներից ու շրջակայքից. մի ցավալի գերություն։ Հռոմները նույնպես արշավեցին Պարսկաստան ու գերի տարան Քուրդիստանից, Արզանենից և Արաբիայից։ Ապա Խոսրովը մի մեծ բանակով գնաց Կալլինիկոնի[114] դեմ, և այնտեղից, և ամբողջ Միջագետքի հարավային մասից, գերիներ տարավ։

(Թ գլխի հատվածներից ըստ Հակոբ Եդեսացու, Միքայել Ասորու և Բար էբրայուսի)

Եզեկիելի Մարգարեության հունական օրինակում ուռուցքային ժանտախտի մասին հետևյալն է ասված. «Ամենայն ծունկ եղիցի

---

[111] «էշկոփոս» ասորերեն «հնակարկատ», «բար էշկոփոս» «հնակարկատի որդի»։

[112] X գրքի Զ գլխից սկսյալ որոշ պատառիկներ են հասել մեզ։ Այս պատառիկներից բացի, նրանից հետո եկող ասորի պատմիչները իրենց երկերում օգտագործել են վերոհիշյալ գլուխները։ Այժմ վերոհիշյալ գլուխներից հատվածներ կան Հակոբ Եդեսացու, Միքայել Ասորու և Բար Էբրայուսի պատմական երկերում։ Սույն բնագրի անգլերեն թարգմանիչը հավաքել է այդ հատվածները և հրատարակել. նրա հետևողությամբ մենք ևս այստեղ տալիս ենք այդ հատվածների թարգմանությունը։

[113] 538 թ. բայց դեկտեմբեր թե հունվար հայտնի չէ, որովհետև ասորերենում կա Քանուն առաջին (դեկտեմ.) և Քանուն երկրորդ (հունվար)։

[114] Միջագետքի քաղաքներից՝ այժմ Ռակկա։

իբրև գչուր»[115], մինչդեռ ասորերեն բնագրում այսպես. «Ամենայն երանք գարշասցին խոնաւութեամբ»։ Այս ժանտախտը ուռուցք է առաջացնում մարմնի ցցուն մասերում և կամ անութների տակ. այն սկսվեց Եգիպտոսում, և Եթովպիայում, և Ալեքսանդրիայում, և Նուբիայում և Պաղեստինում, և Փյունիկիայում, և Արաբիայում. և Հոռոմների երկրում[116], և Իտալիայում, և Աֆրիկեում, և Սիցիլիայում, և Գոլում, և թափանցեց՝ Գալատիա, Կապադովկիա. Հայաստան, Անտիոք, Արզանեն, Միջագետք և աստիճանաբար (տարածվեց) Պարսիկների երկիրը՝ հյուսիս արևելյան ժողովուրդների մեջ, և (շատ մարդկանց) ոչնչացրեց։ Եվ նրանք, որոնք վարակվում էին այս հիվանդությամբ, և ապաքինվում, չէին մահանում, դողդողում էին ու ցնցվում, և հայտնի էր, որ սա սատանայի գործն էր, որը աստծու կարգադրությամբ, կոտորում էր մարդկանց։

Եմեսա[117] քաղաքում էր գտնվում Հովհաննես Մկրտչի գլուխը, և շատերը այնտեղ էին գնում փրկություն որոնելու, և գևերը այս մարգկանց առաջից՝ սրբից շփոթված, փախչում էին։

(Ժ—ԺԱ գլուխների հատվածներից)[118]

Հոռոմները արշավեցին և մեծ ավերածություն կատարեցին Հայաստանում։

Եվ նորից Խոսրովը գնաց և հարձակվեց Եգեսիայի վրա և չկարողանալով գրավել այն, Բատնայից գերիներ վերցրեց ու մեկնեց։

XII գրքի է գլուխը

Աշխարհի քարտեզի մասին, որը ջանասիրությամբ պատրաստեց Եգիպտոսի թագավոր Պտղոմեոս Փիլոմետորը[119]

Այժմ Պտղոմեոս Փիլադելփոսը՝ Եգիպտոսի թագավորը, ինչպես Եվսերիոս Կեսարացու Ժամանակագրությունն է վկայում,

---

115 «Մարգարէութիւն Եզեկիէլի» է 17, Աստվածաշունչ. Կոստանդնուպոլիս, 1895։ Եբրայական և հունական բնագրերի համեմատությամբ հրատարակված Աստվածաշնչի համապատասխան տեղում ծանոթություն կա այն մասին, որ «Ամենայն ծունկ եղիցի իբրև ղչուր»-ը եբրայական օրինակում է եղել։

116 Կոստանդնուպոլիս։

117 Այժմ քաղաք Սիրիայում՝ Հոմս անունով։

118 Այս հատվածը վերցված է Հակոբ Եդեսացու պատմությունից։

119 Այստեղ ասորի բանաքաղը «Աշխարհագրության» հեղինակ Պտղոմեոս Կլավդիոսի գործը, որ ապրել է մեր թվականության II դարում, սխալմամբ վերագրել է Պտղոմեոս Փիլոմետորին։

մեր Տիրոջ ծննդից ավելի քան 280 տարի առաջ, իր թագավորության սկզբում Եգիպտոսի հրեա գերիներին ազատեց և նվերներ ուղարկեց Երուսաղեմի Եղիազարին, որ այն ժամանակ քահանա (լապետ) էր և հավաքեց յոթանասուն օրենքի գիտակ մարդկանց և թարգմանել տվեց Աստվածաշունչը եբրայերենից հունարեն։ Այս հարցում աստծու կամքի համաձայն շարժվելով, դրանք վերցրեց և իր մոտ պահեց, նախապատրաստելու համար ժողովուրդների փրկությունը. և (սուրբ) հոգու թելադրանքով նրանք (ճշմարիտ) գիտության տիրացան, որպեսզի դառնան փառավոր Երրորդության երկրպագուներ։

130 տարի նրանից հետո, այս անգամ Պտղոմեոս Փիլոմետորը, նույն գործը շարունակեց պատվով կատարել և տարբեր երկրների ժողովուրդների ղեկավարներին ուղարկած իր դեսպաններին, նամակների և նվերների միջոցով խնդրեց, որ գրի առնեն և իրեն ուղարկեն իրենց իշխանության ներքո մինչև հարևան ժողովուրդների սահմանը հասնող երկրամասերի չափերը, և նույնպես նկարագրեն իրենց նիստուկացն ու սովորությունները։ Եվ նրանք գրեցին ու ուղարկեցին դրանք (այդ տեղեկությունները), բացի հյուսիսային շրջանից, որը տարածվում էր Արևելք և Արևմուտք։ Եվ մենք մտածեցինք, որ անհրաժեշտ է այստեղ (գրքի) վերջում գրի առնել, խորապես իմանալու համար տեղագրությունը, որը հետևյալն է...[120]։

Ինչպես վերևում նշեցինք, աշխարհի ժողովուրդների այս նկարագրությունը կատարել է Պտղոմեոս Փիլոմետորը, իր թագավորության 30-րդ տարում, մեր Փրկչի ծննդից 150 տարի առաջ, այնպես որ այն օրվանից մինչև այսօր այսինքն մինչև մեր օրերի բարեպաշտ կայսր Հուստինիանոսի 28-րդ տարին, որ է Ալեքսանդրի 866 թվականը և կամ 333-րդ օլիմպիադան, անցել է 711 տարի[121]։ Այսպիսի երկար ժամանակամիջոցում, անշուշտ,

---

[120] Այստեղից ասորերեն բնագրում տրված է Պտղոմեոս Կլավդիոսի «Աշխարհագրության» շատ համառոտ մի բովանդակությունը, որը, ինչպես նշել ենք, սկզբում ասորի բանաքաղը սխալմամբ վերագրել է Պտղոմեոս Փիլոմետորին։ Ասորերեն բնագրի այլ լեզուների թարգմանությունների մեջ այդ հատվածը համարել են ավելորդ և չեն թարգմանել, ուսումնասիրողներն էլ իրենց հերթին գտել են, որ այն առանձին արժեք չի ներկայացնում և անհաջող մի թարգմանություն է։ Մենք ևս հետևեցինք նրանց օրինակին։

[121] Այստեղ հեղինակի հաղորդած թվերի մեջ թյուրիմացություն կա. նրա այն հաղորդումը, որ Հուստինիանոսի թագավորության 28-րդ տարին հույների 866 թ.-ն է, համընկնում է մեր թվականության 555 թ.։ Այժմ եթե 555-ին գումարենք ևս 150, ապա կստանանք ոչ թե 711, այլ 705 տարի։

շատ քաղաքներ կառուցվել և վերակառուցվել են աշխարհում։ Պտղոմեոսից մինչև մեր օրերը, հատկապես մեր Տիրոջ ծնունդից հետո, խաղաղությունը տիրելու է ազգերի, ցեղերի ու ժողովուրդների մեջ, և (կգա ժամանակ) և նրանք չեն ունենա իրենց նախկին (վատ) սովորությունները, և ոչ էլ ազգը ազգի դեմ զուրս կգա և ոչ էլ ճակատամարտերով իրար դեմ կպատերազմեն, այլ կլինի այնպես, որ կկատարվի մարգարեությունը, որ ասում է «ձուլեսցեն զսուսերս իւրեանց ի խոփս, եւ զսուինս իւրեանց ի մանգաղս»[122]։

Պտղոմեոսի Աշխարհագրության վերը նշված, սարմատներից սկյութացիներից, սերիկներից բացի, այս հյուսիսային շրջանում կան հինգ հավատացյալ ժողովուրդ, որոնք ունեն քսանչորս եպիսկոպոս և իրենց կաթողիկոսը Դվինում է՝ Պարսկական Հայաստանի գլխավոր քաղաքում (մայրաքաղաքում)։ Իրենց (առաջին) կաթողիկոսի անունը Գրիգոր էր, արդար և հայտնի մի մարդ։

Ապա Գուրզանը[123], Հայաստանում մի երկիր, և իր լեզուն հունարենի նման է, և ունի քրիստոնյա թագավոր, որը ենթարկվում է Պարսկաստանի արքային։

Ապա Առան երկիրը[124] Հայաստան աշխարհում. իր լեզվով,

---

[122] «Մարգարէութիւն Եսայեայ», Բ, 4։

[123] «Վրաստան։ Վիրք երկիրը կոչվել է նաև Վրկան, պալսկ. Gurgan, ասոր. Gurzan արաբ. Ջուրզան...։ Վրացական պետության վաղ շրջանի տերիտորիան՝ 17913 կմ տարած.։ Մայրաքաղաքն էր Մծխեթան։ 363 թ. հետո Վրաց աշխարհին անցան Գուգարաց բդեշխության կենտրոնական գավառները՝ Պարուար, Մանգլեաց-փոր, Խանցիխէ, Քուիշափոր, Բողնոփոր, Ծոբոփոր և Շաւշէթ ու Ջաւախք ներքին գավառները՝ 5070 կմ տարած.։ Այս միացումից հետո Վրաց աշխարհի տարածությունը դարձավ 22987 կմ։ 387 թ. միացվեցին Գուգարաց բդեշխության մնացյալ մասերը... 527 թ. վերացվեց թագավորական իշխանությունը և Վիրքը նշված տերիտորիայի սահմաններում դարձավ առանձին մարզպանություն։ Այս փոփոխությունները վավերացվեցին 532 թ. «Հավերժական» դաշնագրով։ Սասանյանները հատուկ ուշադրություն գարձրին «Ալանաց դռների անցքին», որտեղ հիմնվեց ռազմական կայանների մի ամբողջ սիստեմ»։ Տե՛ս Ս. Երեմյան, Հայաստանը ըստ «Աշխարհացոյց»-ի, էջ 84։

[124] «Բուն աշխարհն Աղուանից որ ընդ մէջս է գետոյն Կուրայ և Կովկաս լերինն («Աշխարհացոյց», էջ 29), որ նկատի ունի Աղվանից թագավորության տարածքը մինչև 387 թ. և որի մայրաքաղաքն էր Կապաղակը։ 387 թ. պաշտոնապես ճանաչվեց Ուտիք և Արցախ նահանգների միացումը Աղվանքին՝ 22.843 կմ$^2$ տարածությամբ, որից հետո Աղվանքը ընդգրկում էր 45.845 կմ$^2$ տարածություն։ 510 թ. վերջնականապես վերացվեց Աղվանից թագավորության իշխանությունը և երկիրը սկսվեց կառավարվել մարզպաններով, որոնց կենտրոնը դարձավ նոր հիմնված Պարտավ քաղաքը»։ Տե՛ս Ս. Երեմյան, Հայաստանը...., էջ 34։

հավատացյալ ու մկրտված մի ժողովուրդ, և ունի իր թագավորը, որը հպատակ է Պարսկաստանի արքային։

Ապա Սիսական երկիրը[125] իր լեզվով, հավատացյալ մի ժողովուրդ, բայց այնտեղ ապրում են նաև հեթանոսներ։

Բաղգուն երկիրն իր լեզվով, որը միանում և տարածվում է Կասպից դարպասներից ու ծովից մինչև հոների երկիրը։ Դարպասներից այն կողմ Բուրգարներն (Բալկաններն) են, իրենց լեզվով, հեթանոս և բարբարոս մի ժողովուրդ և ունեն քաղաքներ։ Ալանները ունեն հինգ քաղաք։ Դադու ցեղի մարդիկ, որոնք ապրում են լեռներում ու ամրոցներում։ Ավնագուրներ, վրանների տակ ապրող մի ժողովուրդ, (ապա) Ավդարներ, Սաբիրներ, Բուրդարներ, Կուրտարգուրներ, Ավարներ, Խասարներ, Դիրմուրներ, Սիրուրգուրներ, Բագրասիկներ, Խուլասներ, Աբդելներ, Եվթալիտներ. այս տասներեք ժողովուրդներն էլ ապրում են վրանների տակ և սնվում են արջառների, ձկան և վայրի կենդանիների մսով. (ունեն) զենք։ Իրենցից այն կողմ (ապրում են) գաճաճներն ու շնակերպ մարդիկ, և նրանց հյուսիս արևմուտքում են Ամազոնները՝ մեկ կրծքով կանայք, որոնք բոլորովին մենակ են ապրում և նրանց մեջ տղամարդիկ չկան, և երբ նրանք ուզում են զուգավորվել, գնում են հարևան երկրի ցեղերի մոտ մեկ ամիս ժամանակով, կենակցում ու վերադառնում են իրենց երկիրը, և երբ տղա երեխա են ունենում, նրան սպանում են և եթե աղջիկ է ծնվում, կենդանի են թողնում, և այս ձևով պահում իրենց շարքերը։ Նրանց կողքին ապրող ցեղը՝ Երոսներն են, որոնք բարձր, երկար ոտքերով մարդիկ են, և պատերազմական զենքեր չունեն և ձիերն էլ չեն կարողանում տանել նրանց՝ ոտքերի երկարության պատճառով։

---

Հետաքրքրական է, որ մեր աշխարհի բանաքաղը Վրաստանն ու Աղվանքը ներկայացնում է Հայաստանի կազմում։ Այստեղ մեր կարծիքով այն ընկալված է որպես եկեղեցական միավորում, ամբողջություն։ Պատմիչի հաջորդ արտահայտությունն ի նպաստ մեր այս ենթադրության է խոսում, երբ հիշատակում է միակ կաթողիկոսությունը Դվինում։ Բացի այդ, մեր աղբյուրներից քաջ հայտնի է, որ Աղվանքի ու Վրաստանի կրոնական հաստատությունները մինչև VII դարը եղել են Հայոց կաթողիկոսության հետ կապված։

[125] «Մեծ Հայքի 11-րդ նահանգը, որ կոչվում էր նաև Սիսական՝ 15237 կմ² տարածությամբ, Սյունյաց նախարարական տան ժառանգական հայրենիքն էր։ Ծղուկ գավառը կոչվել է նաև Սիսիք կամ Սիսական՝ նեղ իմաստով։ 571—640 թթ. Սյունիքը վարչական տեսակետից դուրս է գալիս Հայաստանի կազմից և իր հարկերն է սկսում մուծել Ատրպատականի մարզպանությանը»։ Տե՛ս Թ. Հակոբյան, Հայաստանի պատմական աշխարհագրություն, էջ 194։

Եվ արևելքից դեպի հյուսիս մոտենալիս, կան երեք այլ սև ցեղեր ևս։

Այժմ հոների երկրում մոտ քսան և (դուցե) ավելի տարիներ առաջ, Տիրոջ կամքով ինչ որ մեկը նրանց լեզվով գրքեր թարգմանեց։ Ես այդ պատմում եմ, ինչպես այն լսեցի ստույգ (ու) ճըշմարտասեր մարդկանցից՝ Հովհան Ռեշայնացուց, որ Ամիդի մոտակայքում հիմնադրված Իշոկունի վանքից էր, և Թովմաս կաշեգործից, որը հիսուն և ավելի տարիներ առաջ, Կավատից գերի տարվածների մեջ էր եղել։ Եվ երբ նրանք (գերիները) պարսիկների երկիրը հասան, այնտեղ նրանք վերավաճառվեցին հոներին և տարվեցին դարպասներից այն կողմ, նրանց երկրում մնացին ավելի քան 30 տարի, ամուսնացան և երեխաներ ունեցան։ Ապա որոշ ժամանակ հետո նրանք վերադառնալով, իրենց բերանով մեզ պատմեցին հետևյալ պատմությունը։ «Հոռոմների երկրից գերիները տանելուց հետո, հոները մեզ գնեցին ու տարան իրենց հետ և այդտեղ էլ մնացինք 34 տարի. ապա մի հրեշտակ երևաց Կարդոստ[126] անունով մի մարդու, որ Առանի եպիսկոպոսն էր. եպիսկոպոսը պատմեց, որ նա (հրեշտակը) նրան ասել է «Վերցրու երեք բարեպաշտ քահանաների, և գնա դաշտ և իմ միջոցով ստացիր քեզ ուղարկված կենդանի էակների՝ Տիրոջ պատգամը, որովհետև ես հոռոմների երկրից, հեթանոսների երկիրը բերված գերիների պահապանն եմ և նրանց (գերիների) աղոթքը հասցրել եմ աստծուն։ Եվ նա (աստված) ասաց այն, ինչ որ ես քեզ պետք է ասեմ»։ Եվ երբ այս նույն Կարդոստը, որ եթե հունարեն թարգմանելու լինենք կլինի նույն Թեոկլետոս (անունը) և արամերեն՝ «Աստվածակոչ», շտապ երեք քահանաների հետ միասին գնաց դաշտ. և... երեք քահանաներն աղոթեցին աստծուն և հրեշտակը (երևաց) ու ասաց. «Վեր կացեք ու գնացեք հեթանոսների երկիրը և զգուշացրեք նրանց՝ մահվան որդիներին (մահկանացուներին) և քահանաներ ձեռնադրեցեք նրանց համար, հաղորդեք և ամրացրեք նրանց (հավատի մեջ), և ահա ես ձեզ հետ կլինեմ ու կգործեմ ձեզ հետ քաղցրությամբ, և այդ ազգերի մեջ հրաշքներ կգործեք և ամեն ինչ կգտնեք այնտեղ, ինչ որ անհրաժեշտ կլինի ձեզ գործի համար»։ Այլ չորս մարդիկ ևս գնացին նրանց հետ մի երկիր, որտեղ այս յոթ քահանաները հանգիստ չունեին երեկոյից երեկո. գտան մի օթևան և (կերակրվում) էին յոթը նկանակով և

126 Բնագրի անգլերեն թարգմանիչը ենթադրում է, որ «Կարդոստ» անունը կազմված է հայերեն «կարդալ» և «աստված» բառերից։

մի կում ջրով։ Եվ նրանք դարպասներից չմտան, այլ շրջանցեցին լեռներից։ Եվ երբ տեղ հասան, նրանք այս բոլորը պատմեցին գերիներին և շատերը մկրտվեցին, և Հոներից էլ նույնպես կրոնափոխ դարձրին։ Նրանք (քահանաները) մնացին այնտեղ յոթը տարի[127], և այնտեղ էլ Հոների լեզվով գրքեր թարգմանեցին։

Այժմ պատահեց, որ այն ժամանակ Պրոբոսին կայսրի կողմից որպես դեսպան ուղարկեցին այն կողմերը, որպեսզի նրանցից (Հոներից) ոմանց զինվոր վարձեն պատերազմելու համար։ Եվ երբ նա Հոներից լսեց այս սուրբ մարդկանց (յոթը քահանաների) մասին և իմացավ նրանց պատմությունը գերիներից, նա շատ ցանկացավ նրանց տեսնել։ Նա տեսավ և ստացավ նրանց օրհնությունը և մեծ պատիվ ցույց տվեց նրանց այդ (հեթանոս) ազգերի ներկայությամբ։

Եվ երբ մեր կայսրն, ինչպես իրողությունը նկարագրեցինք, իմացավ նրանց մասին, թե ինչպես նրանք Տիրոջ կամքով էին գործել, (նրանց) հարևան հոռոմների քաղաքներից 30 ջորի բեռնավորված, և ալյուր, և գինի, և ձեթ, և կտավից շորեր, և այլ մթերքներ ու սրբազան անոթներ ուղարկեց նրանց և անասուններն էլ (ջորիները) նվիրեց նրանց, որովհետև Պրոբոսը հավասացյալ ու բարի մարդ էր։

Այժմ մի այլ լավ պատրաստված հայ եպիսկոպոս ևս, որի անունը Մակու[128] էր, բարի գործերի նախանձախնդրությունից շարժված 15 տարի[129] հետո մեկնեց իր կամքով իր եկեղեցականներից ոմանց հետ, և գնաց այդ երկիրը (Հոների)։ Եվ նա աղյուսից եկեղեցի կառուցեց, և բույսեր տնկեց, և տարբեր տեսակի հունտեր ցանեց, հրաշքներ գործեց և շատերին էլ մկրտեց։ Երբ այս ժողովուրդների իշխողներն ինչ որ նորություն տեսան, նրանք հիացան այս մարդկանցով և շատ ուրախացան ու յուրաքանչյուրին պատվեցին և յուրաքանչյուրը հրավիրում էր նրանց իրենց երկիրը, իրենց ժողովրդի մոտ, խնդրելով, որ իրենց սովորեցնեն այդ ամենը։ Եվ ահա նրանք մինչև այսօր այնտեղ են։ Եվ նույն այս բանը ընկալվեց որպես աստծու գթասրտության նշան, և «Նա (Տերը) իրեններից յուրաքանչյուրի համար, որ իրն է, հող է տանում, որտեղ որ լինեն։ Եվ այսուհետև ժամանակն է, որ նրա

---

127 Բնագրում բառացի գրված է «շաբաթվա օրերի քանակով տարիներ»։

128 Ասորերեն բնագրում գրված է «Մակու». Ն. Պիգուլևսկայան ենթադրում է, որ այն պետք է եղած լինի «Մակար» իսկ Աճառյանը կարծում է, որ նա «Մաք» եպիսկոպոսն է։

129 Ասորերեն բնագրում գրված է՝ «երկու շաբաթվա տարիների չափ»

(աստծու) իշխանությունը տարածվի բոլոր ժողովուրդների վրա, ինչպես առաքյալն է ասում»[130]:

Յոթը տարի առաջ Պարսկաստանի թագավորը նույնպես, ինչպես իմացողներն են պատմում, հրաժարվեց խեղդամահ եղած, արյունլվա, անմաքուր դաղաններին ու թռչուններին ուտելուց, (այսինքն) այն ժամանակվանից, երբ Տրիբոնիա բժշկապետը եկավ նրա մոտ, որը գերի էր ընկել. հետո մեր բարեպաշտ կայսրից եկավ նաև մի կատարյալ մարդ՝ Բիրվայը և նրանից հետո Կաշվայը, և այժմ էլ Մծբինի քրիստոնյաներից՝ Գաբրիելը: Այդ ժամանակվանից նա հասկացավ, թե ինչպես պետք է ուտել, և նախկին սովորության համաձայն, ապականված մթերք չէր ուտում, այլ միայն օրհնելուց հետո էր ուտում: Հովսեփը՝ քրիստոնյաների կաթողիկոսը, նույնպես մեծ վստահություն էր վայելում նրա (արքայի) մոտ և ամուր կապված էր նրա հետ, որովհետև նա (կաթողիկոսը) բժիշկ էր, և մոգպետից հետո առաջին աթոռին ինքն էր բազմում, և ինչ խնդրում էր նրանից՝ (արքայից) ստանում էր:

Իր դեպի գերիներն ու սուրբ մարդիկ ունեցած բարյացակամության, և (ապա) իրեն շրջապատող քրիստոնյա բժիշկների առաջարկության հետևանքով, հիվանդանոց կառուցեց, մի բան, որ նախապես հայտնի չէր (չկար), և նա արքայական պահեստից ապրանքներով բեռնավորված հարյուր ջորի և հիսուն ուղտ ու տասներկու բժիշկ տվեց (հիվանդանոցում աշխատելու համար), և տալիս էր ինչ որ պահանջվում էր արքայի հաշվին...»[131]:

---

130 «Պաւղոսի Առաքելոյ առ Հռովմայեցիս», ԺԱ, 25:

131 Այստեղից ձեռագիրը կիսատ է մնում և դրա համար էլ բնագրում եղած «կես» բառը անիմաստ է և մենք ևս անգլերեն թարգմանչին հետևելով, այն չթարգմանեցինք:

## ՀՈՎՀԱՆ ԵՓԵՍԱՑԻ

### 1. ԿՅԱՆՔՆ ՈՒ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅՈՒՆԸ

*Հովհան Եփեսացին VI դարի ամենակարևոր դեմքերից է։ Նա իր եռանդուն գործունեությամբ վայելել է կայսրի անմիջական մտերմությունը և իր ազդեցությունն է ունեցել պետական գործերում։ Երբեմն էլ նա հալածվել է, տառապել բանտերի նկուղներում, ապրել չարչարանքի ու տանջանքի գառն պահեր։*

*Հովհան Եփեսացին ծնվել է Բեյթ-Ագգելայի՝ Ագգել* (Ingilena) *ամրոցից, այսինքն, հայկական Անգեղատուն գավառի Անգղ ամրոցից ոչ հեռու գտնվող Կալեշ* (Kalesh) *գյուղում։ Ինչպես հայտնի է, 387 թ. մինչև Հուստինիանոս Ա-ի վարչական վերաբաժանումները, Բյուզանդական Հայաստանը բաժանված էր երկու մասի՝ հյուսիսային մասը («Ներքին Հայք»), որ առանձին վարչական միավոր էր, որտեղ մինչև 389 թ. թագավորում էր Արշակ Գ։ Սակայն նրա մահից հետո այդ մասում վերացվեց հայ Արշակունիների անվանական իշխանությունը և այնուհետև այն կառավարում էր կայսրության արքունիքի կողմից նշանակվող Հայաստանի «Կոմէս»-ի միջոցով։ Բյուզանդական Հայաստանի հարավային մասում կային հինգ նախարարություններ կամ սատրապություններ՝ Ծոփք Մեծ (ընդգրկում էր՝ Անգեղատուն և Նփռետ գավառները), Ծոփք Փոքր (Ծոփք Շահունի), Անձիտ, Բալահովիտ, Հաշտեանք, որոնց ժառանգական իշխանները վերացվեցին և Հուստինիանոս Ա-ն այն վերածեց մեկ նահանգի, որը կոչվում էր «Չորրորդ Հայք»*[1]*։*

*822 թ. (Ալեքսանդրի) ծնողները տասնհինգ տարեկան Հովհանին ուսման են տալիս նախ Ամիդի մոտակայքում գտնվող «Համբերություն» վանքը, որ այն ժամանակ հայտնի էր նաև «Վանահայր Մարանի վանք» անունով։*

---

[1] Ս. Երեմյան, *Հայաստանը. . ., էջ 24։*



21—893

Մարանի մահից հետո նա տեղափոխվում է նույն Ամիդի դաշտում կառուցված Հովհան Ամիդցու վանքը։ Եթե նա հունաց 822 թ. տասնհինգ տարեկան էր, ուրեմն պետք է որ ծնված լիներ մեր 507-ին մ. թ.։ Այս վանքում կենտրոնացել էին այն հակաբյուզանդական ուժերը, որոնք միաբնակության դրոշի ներքո շարունակում էին դիմադրել կայսրության կողմից այդ շրջաններում ապրող ժողովուրդների դեմ ծավալված բռնություններին։ Այս պայքարում, ինչպես Հովհանն է վկայում, խոշոր դեր էին կատարում նաև հայ գործիչները, որոնցից հայտնի է, օրինակ, Թովման, որը ծագումով Արշակունիներից էր, և երկար ժամանակ, 6-րդ դարի առաջին կեսին, ղեկավարել է հակաբյուզանդական շարժումները։ Հովհան Ամիդցու կամ Օրտայեցու վանքը գտնվում էր Ամիդ քաղաքի հյուսիսային պարսպի մոտ, այն հիմնվել էր IV դարի վերջերին (398—399)։ Հիմնադրման առաջին իսկ օրից իր շուրջն է համախմբել մոտ չորս հարյուր վանականների, իսկ IV գարում այդ վանքը, որը ղեկավարում էր Հովհան Օրտայեցին, ունեցել է մոտ յոթ հարյուր միաբան։ Այս վանքում էլ 529 թ. Հովհանը սարկավագ է ձեռնադրվել։ Թովմայի մասին գրված ջերմ խոսքերից, բարձր գնահատականներից և նրա նկատմամբ ցուցաբերած աշակերտական երկյուղածությունից կարելի է եզրակացնել, որ Թովման կարևոր դեր է խաղացել Հովհան Եփեսացու դաստիարակության գործում[2]։

Հայտնի է, որ Զենոն և Անաստաս կայսրերը սպասվող պարսկական պատերազմների ժամանակ ամուր հենարան ունենալու նպատակով իրենց եկեղեցական քաղաքականության մեջ այնպիսի գիծ մշակեցին, որ այն հաճելի լիներ կայսրության արևելյան նահանգներում ապրող բնակչությանը, քաղաքական այն ուժերին, որոնք պայքարում էին կայսրության կողմից պաշտպանության տակ առնված քաղկեդոնական վարդապետության դեմ։ Միաբնակներին սիրաշահելու այս քաղաքականությունը բխում էր նաև այն հանգամանքից, որ Զենոնից սկսյալ Արևմուտքի, մասնավորապես Հռոմի պապի հետ, հարաբերությունները խզվել էին, ուստի այս ևս պատճառ էր դառնում, որ երկու կայսրերը միաբնակներին մերձենալու ուղիներ որոնեն։ Ճիշտ է, նրանք Քաղկեդոնի ժողովը դատապարտող և կամ այդ ժողովի հետևորդներին հալածելու փորձեր չէին կատարում և զգուշանում էին նման

---

[2] John of Ephesus, Lives of the Eastern, ed. E. W. Brooks, „Patrologia Orientalis“, t. 17, Paris, 1923, p. 283 et suiv.

քայլերից, բայց բացահայտ կերպով համագործակցում ու հովանավորում էին հակաքաղկեդոնականներին։ Մոտ քառասուն տարի կայսրության մեջ կիրառվող այս եկեղեցական քաղաքականության շնորհիվ միաբնակության խոշոր կենտրոններ ստեղծվեցին Բյուզանդական կայսրության տարբեր շրջաններում, և նման ուժեղ կենտրոններից մեկը դարձավ Ամիդը։ Ամիդում ստեղծված էր միաբնակ վանականության ուժեղ ցանց, որի մեջ էին տարբեր շրջաններից ու վայրերից եկած բազում ժողովուրդների ներկայացուցիչներ, հատկապես փոքր ժողովուրդների, որոնք մեծ մասամբ դժգոհ էին Բյուզանդիայի նվաճողական քաղաքականությունից, և որոշ խավերի նկատմամբ իրագործվող ճնշումներից։ Նրանք եկել էին այս վանքերի պարիսպներից ներս, և ստեղծել վանական խոշոր կազմակերպություններ, որոնց հետ արդեն կայսրի պաշտոնյաները պարտավորվում էին հաշվի նստել։ Թեև Հովհանը մանրամասնություններ չի հաղորդում, բայց նրա մի շարք տվյալներից հնարավոր է որոշ եզրակացություններ անել այն մասին, որ հայերը Ամիդում և նրա շրջակայքում կազմակերպված հակաբյուզանդական շարժումների մեջ ունեցել են նշանակալից դեր[3]։ Այս վայրերում հայերից, ասորիներից բացի ապրում էին նաև սեմական այլ ժողովուրդների ներկայացուցիչներ, որոնք ևս իրենց մասնակցությունն էին բերում հակաբյուզանդական այս շարժումներին։ Ամիդը եղել էր միաբնակության ամուր կենտրոն և իր վեց եպիսկոպոսական աթոռներով[4] կարևոր ուժ դարձել եկեղեցու ձեռքում։ Եկեղեցին, անշուշտ, գիտակցված ձևով այս վանքերի միջոցով ամրացնում էր իր դիրքերը, և այդ նպատակով էլ վանքերի դռները բացվում էին այնպիսի անձնավորությունների առջև որոնք ոչ թե փայլում էին իրենց արժանիքներով, այլ ծայրահեղությունների հասնող դատողություններով։ Նման ուժի օգտագործումը եկեղեցու կողմից շատ դյուրին կլիներ, որովհետև նրանց հարմար առիթի դեպքում հնարավոր էր թեքել ցանկացած ուղղությամբ։ Եթե Զենոն ու Անաստաս կայսրերը միաբնակ եկեղեցու գործիչների

---

[3] John of Ephesus, Lives of the Eastern Saints, p. 283.

[4] Աղբյուրներից հայտնի է, որ Ամիդի թեմի մեջ էին մտնում Մարտիրոպոլսո եպիսկոպոսությունը, ապա Ագիլի, Անձիտի, Արշամաշատի, Ծոփքի, Խասնայի և հետագայում ստեղծված Ակապայի եպիսկոպոսությունը։ Տե՛ս Michel le Syrien, Chronique, ed . Chabot, p. 199 a: Միայն Ամիդ քաղաքն ուներ 5 վանք, Եդեսիայում կար՝ Զուկնինի, Բեյթ հավկալի, Սամուելի և այլ վանքեր, որոնք հիմնվել էին այս ժամանակաշրջանում։ Տե՛ս J. Land, t. II, pp. 245, 276, 277, 279.

հետ միասին փորձեցին օգտագործել զանգվածային այդ ուժը՝ հօգուտ կայսրության ու միաբնակ եկեղեցուն, ապա իրադրությունը փոխվում է 518 թ. երբ Անաստասին հաջորդում է Հուստինոս Ա կայսրը (518—527)։ Թրակացի կայսրը շեղվեց նախորդ կայսրերի եկեղեցական քաղաքականության գծից և սկսեց ոչ միայն քաղկեդոնականներին պաշտպանելու գիծ վարել, այլև հալածել արևելյան եկեղեցու ներկայացուցիչներին, այսինքն միաբնակներին։ Թեև պատմաբաններն այս փոփոխությունը վերագրում են կայսրի այն ձգտումին, որ նա ուզում էր կապերը նորից ամրացնել Արևմուտքի և մասնավորապես Հռոմի եկեղեցու հետ։ Սակայն մեր կարծիքով կայսրի այս նոր քայլը պետք է բացատրել նրանով, որ կայսրության ներսում խախտվել էր հավասարակշռությունը և հակաքաղկեդոնականներն այնպիսի ուժ էին ձեռք բերել, որ կարող էին լուրջ վտանգ դառնալ պետության համար, և նույնիսկ իրենց կամքը թելադրել պետությանը։ Սպասվող վտանգը կայսրին ստիպեց շրջադարձ կատարել և նա հրամայեց ու իր իշխանության մեջ մտնող եպիսկոպոսական աթոռներում եթե միաբնակ եպիսկոպոսներ կան, հեռացնել և փոխարենը բազմեցնել քաղկեդոնականներին։ Հուստինոս Ա-ն հրամայեց հալածել և եպիսկոպոսական իշխանությունից զրկել այն բոլոր եպիսկոպոսներին, որոնք կհամարձակվեն հակադրվել Քաղկեդոնի ժողովի որոշումներին[5]։ Այս հրամանը նշանակում էր, որ նոր կայսրը որոշել է բռնի ուժով այս անգամ իր կամքը պարտադրել Արևելքում, և իր տիրապետության մեջ դավանանքի միասնություն ստեղծելով, ամրացնել իր դիրքերը։ Բայց ինչպես հետագա դեպքերն են ցույց տալիս, կայսրն իր հաշիվների մեջ սխալվել էր և նրա սխալը նրանումն էր, որ կարծում էր, թե նման հրամաններով հնարավոր կլինի երկրում միությունը ապահովել, և այսպիսով ճնշել այն ուժը, որ դավանաբանական տարաձայնությունների քողի տակ, փաստորեն կայսրությանը հակադրվող քաղաքական հսկա ուժ էր դարձել Արևելքում։ Կայսրի այս հրամանի համաձայն 54 միաբնակ եպիսկոպոսների պարտադրեցին, որ հեռանան իրենց աթոռներից և նրանց փոխարինեցին հակառակորդները։ Անտիոքի պատրիարք Սևերոսը, որ այն ժամանակ միաբնակների հիմնական ղեկավարներից էր, ստիպված լքեց իր աթոռը և փախավ Ալեքսանդրիա, իսկ նրան փոխարինեց քաղկեդոնական Եվվուլով Քսենոդոխիան։ Կոստանդնուպոլսի պատրիարքական աթոռը հանձ-

---

[5] Հ. Ե. 3։

նեցին Պողոսին, որին Հովհան Եփեսացին «հրեա» է անվանում։ Սակայն նա շատ կարճ մնաց աթոռի վրա (519—520), որովհետև նրան շուտով պաշտոնանկ արեցին և նրան փոխարինեց Եվփրասիոսը (521—526)։ Այս ժամանակ միաբնակության ամենակատաղի հակառակորդներից և հալածիչներից էր Անտիոքի պատրիարք Եփրեմը (526—545)։ Եվ, որովհետև Ամիդն ու նրա շրջակայքը միաբնակության, կարելի է ասել, միջնաբերդն էր, կայսրը չհամարձակվեց այնտեղ ևս անմիջապես հալածանքներ սկսել։ Այդ նպատակով Անտիոքից ուղարկվեց միաբնակության դաժան հակառակորդներից՝ Աբրահամ Բար Կայլի եպիսկոպոսը։ Երբ վերջինիս կարգադրությամբ կայսրության պաշտոնյաները ժողովրդին հավաքեցին քաղաքի բաց հրապարակը՝ միաբնակների դեմ արձակված կայսրի հրամանը կարդալու, ժողովուրդը սկսեց քարկոծել ներկա գտնվող պաշտոնյաներին։ Նույնիսկ Աբրահամ եպիսկոպոսը Ամիդից փախավ և ապաստանեց դուքսի մոտ՝ Տելլա քաղաքը։ Այս միջադեպերի պատճառով կայսրի մի նոր հրաման եղավ, որով պահանջվում էր Ամիդից և նրա շրջակայքից միաբնակ վանականներին հավաքել և խմբերի բաժանելով աքսորել։ Այդ օրերին բազում միաբնակ գործիչներ ու միաբնակության հետևորդներ բռնեցին աքսորի ճանապարհը։ Հովհան Եփեսացին հաղորդում է, որ առաջին հալածանքները սկսեցին հունական թվականության 822 թ. (521) սեպտեմբեր և հոկտեմբեր ամիսներին[6]։ Աքսորականները դժվարին ու ծանր պայմաններում լքում էին երկիրը և գալիս, տեղավորվում Եփրատի մոտ Տիշպա գավառում գտնվող Խաղին գյուղի սուրբ Մամայի վանքում[7]։ Երեք տարի աքսորյալի վիճակում մնալուց հետո վերադարձան այս անգամ Ամիդի թեմի սահմանից ոչ հեռու, Աբառնեի՝ Ջերմուկի մոտակայքը գտնվող Խավրանիտ վանքը և …նակություն հաստատեցին այնտեղ։ Ինչպես կյանքը ցույց տվեց, Հուստինոս Ա-ի կազմակերպած աքսորներն ու հալածանքներն արդյունք չտվեցին, և բացի այդ, նա չկարողացավ կապեր ստեղծել Արևմուտքի հետ. իրականում վիճակն ավելի վատացավ և միաբնակ տարրերին իր դեմ հանեց, որոնք այլևս պայքարի բացահայտ ուղին բռնեցին։ Այսպես, 527 թ. ապրիլի 27-ին, երբ Հուստինոս Ա-ին փոխարինեց բյուզանդական հայտնի կայսրերից՝ Հուստինիանոս Ա-ն, Բյուզանդական պետությունը տնտեսական ու քաղաքական ծանր վիճակ էր ապրում։ Հակասու-

[6] J. Land. Anec. Syr., t. II, p. 203.

[7] Նույն տեղում, J. Assemani, Bib. Orientalis, t. II, p. 109.

թյունները սրվել էին երկրի ներսում և անջատողական ուժերի ելույթները սպառնում էին կայսրության հիմքերին։ Հուստինիանոսը գահ բարձրանալուց հետո, առաջին հերթին մտածեց կարգավորել երկրի ներսում ծագած հրատապ հարցերը, և այդ նպատակով ուղիներ որոնել՝ երկրում միասնությունը վերականգնելու համար։ Քանի որ կրոնական ու դավանաբանական վեճերի ու ընդհարումների պատճառով Բյուզանդական պետությունը քայքայման եզրին էր կանգնած, ապա Հուստինիանոսն իր նպատակը իրագործելու և իր պետականության սահմանները, հատկապես արևելյան սահմաններն ամրացնելու համար մի շարք հրովարտակներով հիմնական փոփոխություններ կատարեց, մասնավորապես հայկական հողերի ռազմական ու քաղաքական կառավարման մեջ։ 529 թ. հրովարտակով Բյուզանդական կայսրության մեջ եղած հայկական բոլոր հողերը ռազմական վերակազմության ենթարկվեցին և կազմեցին զինվորական մի օղակ, որը գլխավորում էր մագիստրոսը։

Հայաստանի մագիստրոսի ռազմական ուժերի կենտրոնն ու նստավայրը Թեոդոսիոպոլիս քաղաք-ամրոցն էր։ Մագիստրոսին ենթարկվում էին Բյուզանդական Հայաստանի մնացած բոլոր պաշտոնյաները, դուքսերը և այլն։

Հուստինիանոս Ա-ի այս վերակազմությամբ, բնականաբար, միանգամայն ոչնչացան նախարարների ու ռազմական ինքնուրույնության և սեփական զորք ունենալու ժառանգական իրավունքները, ինչպես և վերացավ Հայաստանի «կոմիսի» պաշտոնը։

Հուստինիանոսի հատուկ հրովարտակով (536) վարչական նոր կարգ հաստատվեց Բյուզանդական Հայաստանում, որը բաժանվեց չորս մասի, չորս Հայքերի՝ Առաջին, Երկրորդ, Երրորդ և Չորրորդ Հայք[8]։

Այս ամբողջ վերափոխությունները Հուստինիանոսը կատարում էր երկրի ներսում ուժերը համախմբելու ու բանակի ռազմական հզորությունն ավելի բարձր հիմքերի վրա դնելու նպատակով, սակայն այսպիսի միջոցառումները եթե արտաքնապես ինչ որ արդյունք էին տալիս, և տվյալ երկրամասում բռնադատված բնակչությունը ժամանակավորապես ենթարկվում էր իշխողների կամքին, բայց և այնպես այդ չէր նշանակում, որ մարդիկ համակերպվում էին կատարվածին։ Նման դեպքերում գոյություն ունե-

[8] «Հայ ժողովրդի պատմություն», Մակետ, Երևան, 1948, Ա մաս, էջ 193—194։

ցող կարգերից դժգոհ տարրերը պայքարի ղգույշ միջոցներ էին որդեգրում և աշխատում իրենց ելույթները հարմարեցնել ներկա պայմաններին։ Ճիշտ է, հայկական աղբյուրներում համարյա տեղեկություն չի պահպանված հայերի՝ Բյուզանդական Հայաստանում ծավալած հակա-բյուզանդական պայքարի պատմությունից, սակայն բարեբախտաբար ասորական աղբյուրներում, հատկապես Հովհան Եփեսացու աշխատության մեջ, թեև մասնակի, բայց կարևոր հիշատակություններ կան, որոնք բացահայտում են նման ելույթների բնույթը Բյուզանդական Հայաստանում։ Բյուզանդական լծի տակ ճնշված հայերը ևս իրենց հակաբյուզանդական տրամադրություններն ու ձգտումները արտահայտել են հակաքաղկեդոնական շարժման մասնակցելով և այդպիսով հակադրվել Բյուզանդական կայսրությանը։ Ինչպես գիտենք Հովհան Եփեսացու «Արևելյան սրբեր» աշխատությունից, Հուստինիանոսի ժամանակ կայսրության արևելյան սահմաններում, միաբնակների շարժման գլխավոր ղեկավարներից էր Արշակունիների սերնդի ներկայացուցիչ՝ Թովման։

Հուստինիանոս Ա-ն երկրում միասնությունը վերականգնելու համար քաղաքական հեռատեսությամբ, դիմեց երկդիմի քաղաքականության, հատկապես եկեղեցական հարցերը լուծելու գործում, և դրա համար պայմաններ ստեղծեց, որպեսզի իր կին՝ Թեոդորա թագուհին հանդես գար միաբնակության պաշտպանության դիրքերից, իսկ ինքը, բնականաբար, պետք է լիներ մյուս թևի քաղկեդոնականներին հովանավորողների դերում։

530 թ. միաբնակ ղեկավարները Կոստանդնուպոլիս ժողովի հրավիրվեցին, որպեսզի հնարավոր լինի եկեղեցու միությունը վերահաստատել։ Չնայած հակասություններն այնքան խորն էին երկու խմբակցությունների միջև, որ ժողովը արդյունք չտվեց, այնուհանդերձ կայսրության կողմից միաբնակներին ցույց տրվող բարյացակամությունը մայրաքաղաքում աշխուժություն մտցրեց միաբնակների շարքերում։ Թեոդորա թագուհին միաբնակ գործիչներով շրջապատված ոգևորում և նյութական ու բարոյական հնարավորություններ էր ստեղծում՝ միաբնակներին աշխուժացնելու իրենց գործունեության մեջ, որովհետև անհրաժեշտ էր ամրացնել միաբնակների շարքերը, որպեսզի կարելի լիներ քաղկեդոնականներին հակադրել, հավասարակշռությունը պահպանելու համար։ Թեոդորա թագուհին իր Հորմիսդաս պալատը տրամադրել էր միաբնակներին և այն դարձել էր մի օջախ, որտեղ հավաքված մոտ հազար վանականներ գործում էին Թեոդորա թագուհու

թելադրանքով։ Ահա այդ ժամանակ այստեղ է գալիս նաև մեզ հայտնի ասորի պատմիչ Հովհան Եփեսացին։

Նա, ինչպես ինքն է գրել, և ինչպես նրա գործունեությունն է ցույց տալիս, դեռևս փոքր հասակից սիրել է ճանապարհորդել։ Նրա անհանգիստ բնավորությունը, կազմակերպչական գործունեությունն ու հետաքրքրասիրությունը օգնել են պատմիչի իմացության բազմակողմանի զարգացմանը։ Նրա այդ շնորհքը ի հայտ է գալիս այս կամ այն նշանավոր անձնավորության կյանքն ու գործունեությունը շարադրելիս։

533 թ. Հովհան Եփեսացին Կոստանդնուպոլսից գնում է Եգիպտոս, որ այն ժամանակ Տիմոթեոս IV պատրիարքի շնորհիվ դարձել էր միաբնակ գործիչների լավագույն ապաստարաններից մեկը։ Հովհան Եփեսացու Եգիպտոս կատարած այս ճանապարհորդությունն արդյունավետ եղավ նրանով, որ նա հնարավորություն ունեցավ լինել այնտեղ գտնվող հայտնի գրադարաններում և ուսումնասիրել եկեղեցական նշանավոր հայրերի աշխատությունները։ Նա նման պրպտումներ է կատարել այն ժամանակ նշանավոր դարձած Պատրիկ կեսարի հայտնի Գրադարանում[9]։ 535 թ. նա նորից է վերադառնում մայրաքաղաք. այդ օրերին Թեոդորա թագուհու շուրջն էին համախմբվել միաբնակ խոշոր գործիչներ, որոնք ունեին իրենց կազմավորված համայնքները, որոնք ավելի գգալի ուժ էին դարձել։ Այդ ուժն այն ժամանակ մայրաքաղաքում ղեկավարում էր թագուհու հովանավորությամբ, Ալեքսանդրիայի պատրիարք Թեոդոսիոսը, և ինչպես դետք է կարծել, Հովհան Եփեսացու վերստին մայրաքաղաք ժամանումը պատահական չէր և, անկասկած, նա կանչվել էր այնտեղ միաբնակ համայնքն ուժեղացնելու նպատակով։ Այս իրադարձություններից, անշուշտ, անտեղյակ չէր Հուստինիանոս կայսրը և ամեն ինչ կատարվում էր նրա գիտակցությամբ ու համաձայնեցվածությամբ։ Այդ էր պատճառը, որ պատմաբաններն ամեն անգամ Հուստինիանոս Ա-ի եկեղեցական քաղաքականությունն ուսումնասիրելիս գտնվել են բարդ և երբեմն էլ դժվարին իրադրության մեջ։ Համենայն դեպս այդ ուսումնասիրությունների մեջ մասնագետները Հուստինիանոս Ա-ին ներկայացրել են որպես մեծ քաղաքագետ, որ իր ամբողջ գործունեությունը ծավալել է վերականգնելու համար Հռոմեական

---

[9] J. Land, Anec. Syr., t. II.

կայսրության ռազմական նախկին փառքն ու միասնությունը[10]։ Ճիշտ չէ եվրոպացի պատմաբան Վիգրամը, երբ Հուստինիանոսի մեջ տեսնում է աստվածաբանական վեճերի սիրահար մի անձնավորություն, այսինքն նրա համար այդ վեճերի կազմակերպումը որպես թե եղել է պարզապես զվարճալի մի ժամանց։ Վիգրամը գրում է. «Հուստինիանոսի մոտ աստվածաբանական վեճերի կազմակերպումն ու դրանց մասնակցությունը բխում են նրա ներքին մղումից»[11], սակայն ինչպես ասացինք, նման բացատրությունը լոկ միամտություն է, որը նսեմացնում է բյուզանդական գահի խոշոր ներկայացուցիչներից մեկի բարձր արժանիքները։ Նրա կազմակերպած աստվածաբանական վեճերը երբեք ինքնանպատակ չեն եղել։ Նա այդ բոլոր իրադարձություններին կարողացել է իր ցանկացած ուղղությունը տալ և ծառայեցնել իր հիմնական նպատակին։ Այժմ երբ ծանոթանում ենք աղբյուրների տվյալներին, տեսնում ենք, որ շատ դժվար է որոշել, թե Հուստինիանոսը, որը մի քանի անգամ հալածանքներ է հարուցել նույնիսկ միաբնակների դեմ, իրականում միաբնակության թշնամի՞ է եղել, թե ոչ։ Տարօրինակն այն է, որ նման հալածանքների կազմակերպման ժամանակ, հալածանքից փախած միաբնակ գործիչները ապաստան էին գտնում մայրաքաղաքում՝ Կոստանդնուպոլսում և վայելում էին կայսրի մտերմությունն ու հովանավորությունը։ Սա պատահականություն չէր, ոչ էլ կայսրի կողմից ցուցաբերվող թուլություն, այլ ընդհակառակը, կանխամտածված քայլ, որովհետև կայսրության որջում ավելի դյուրին էր հալածված որսին սիրաշահել, կամ զանազան միջոցներով չեզոքացնել։

531 թ. Հուստինիանոսը փորձեց քաղկեդոնականների ու միաբնակների միջև նորից հաշտեցման եզր գտնել. այդ նպատակով մայրաքաղաք հրավիրվեցին երկու կողմի ներկայացուցիչները, երկաբնակներից եկան Եփեսոսի եպիսկոպոս՝ Հիպատիոսը, Տրապիզոնի եպիսկոպոս՝ Անթիմոսը, իսկ միաբնակներից հրավիրված էր Սևերիանոսը, սակայն սա հիվանդության պատրվակով հրաժարվեց և նրա փոխարեն ներկայացավ Տելլայի եպիսկոպոս Հովհանը։ Երեք օրվա վեճերից հետո ձևականորեն ընդունվեց

---

[10] **Glaizolle**, Un empereur théologien, Justinien, son role dans les controverses, sa doctrine christologique, Lyon, 1905, pp. 11, 19. **Diehl**, Justinien et la civilisation Byzantine au VI siècle, Paris, 1901, pp. 22—23, 33.

[11] **W. A. Wigram**, The separation of the monophysites. London, 1923, p. 106.

«Երրորդությունից մեկը խաչվեց» բանաձևը, որը նշանակում էր ոչ մի արդյունք չտվեց նաև այս փորձը։

Հետաքրքրականն այն էր, որ այս ժողովից հետո կայսրի հրամանով հալածանք սկսվեց միաբնակների դեմ, որը գնալով ավելի էր ուժեղանում։ Կայսրը հասկացավ, որ աստվածաբանական դարձվածքների տարբերության վերացումով հնարավոր չէր լինի վերականգնել երկրի ներքին ուժերի և եկեղեցու միասնությունը, որովհետև միաբնակների շարքերում շատ քչերն էին հասկանում կրոնական այս հարցերի էությունը։ Մեծամասնությունը խմբավորվել էր այդ խմբակցության շուրջ սոցիալական ու քաղաքական համոզմունքների համաձայն, այսինքն միաբնակությունն արդեն նոր էտապ էր ապրում և հիմնականում քաղաքական նպատակներ էր հետապնդում։

Դրա համար Հուստինիանոս Ա-ն հնարավորություն ստեղծեց և թույլատրեց, որ քաղկեդոնականները սկսեն հալածել ու ճնշել հակառակորդներին։ Նա այս անգամ մտածում էր հալածանքների միջոցով չեզոքացնել միաբնակության ղեկավար եպիսկոպոսներին, և երբ հոտը թողնվեր առանց հովվի, ապա դյուրին կլիներ մասսային կամ ժողովրդին պարտադրել իր կամքը։ Այս միջոցառումը ևս արդյունք չտվեց և 536 թ. հունիսին նորից Կոստանդնուպոլիս հրավիրվեցին երկու կողմի ղեկավարները, որովհետև Հուստինիանոս Ա-ն ամեն կերպ ձգտում էր վերականգնել միությունը։ Ժողովը բուռն ընթացք ունեցավ, երկուսն էլ իրար մեղադրում էին ամենահետին, նույնիսկ անվայել արտահայտություններով, և երբ հնարավոր չեղավ որևէ արդյունքի հասնել, կայսրը օգոստոսի 6-ին նոր հրաման արձակեց։ Կայսրը թույլատրում էր քաղկեդոնական եպիսկոպոսներին տեղում, պետական իշխանությունների կամ պաշտոնյաների օգնությամբ գործել, դիմել բոլոր միջոցների, և եկեղեցական իշխանությունից հեռացնելով միաբնակներին՝ տիրել նրանց աթոռներին, այսինքն իշխանությունը վերցնել իրենց ձեռքը։ Երկաբնակներն անմիջապես օգտվեցին առիթից և սկսեցին գործել մեծ թափով։ Այդ հնարավորությունից առավելագույնս օգտվեց Անտիոքի պատրիարք Եփրեմը, որովհետև միաբնակների ղեկավար գործիչներից՝ Սևերիանոսն ու Տելլայի եպիսկոպոս Հովհաննեսը մահացել էին, իսկ Ալեքսանդրիայի Թեոդոսիոս պատրիարքն էլ արգելափակված էր, այնպես որ ասպարեզն ազատ էր մնացել, և պետք է ասել, որ Եփրեմը դիմեց ամենադաժան միջոցների ու սարսափելի տանջանքների, որպեսզի վերջ տա միաբաններին։ Եփրեմը գործում էր անխնա և հասնում էր որոշ հաջողությունների։

Այդ հաջողության հիմնական պատճառներից մեկն էլ այն էր, որ միաբնակների շարքերում ևս երկպառակություն էր ընկել և նրանք չէին կարողանում միասնաբար գործել ու դիմագրել։ Անտիոքի նախկին պատրիարք Սևերիանոսի և Հալիկառնասի եպիսկոպոս Հուլիանոսի միջև ծագած այն վեճը թե «Քրիստոսի մարմինը ապականացու էր թե ոչ», թուլացրել էր միաբնակների շարքերը և Եփրեմն օգտվելով առիթից, ուզում էր արմատախիլ անել իր հակառակորդներին։ Եփրեմի հավատարիմ գործակիցներից էր Ամիդի եպիսկոպոս Աբրահամը։ Սրանց հաջողվեց կրկին անգամ աքսորել Ամիդի միաբնակ վանականներին։ Աքսորվածները նորից գնացին Աբառնեի (Ջերմուկի) մոտակայքում գտնվող՝ Տելլ-դը-Թուտե վանքը։ 537 թ. սկզբներին այնտեղ եկավ Եփրեմ պատրիարքը, որին ուղեկցում էր Կլեմենտին զորավարն իր զորքով[12]։ Չնայած նա բանակցություններ էր ուզում վարել, բայց աքսորականները հասկացան, թե ինչպես թակարդներ էր լարում իրենց դեմ, ուստի ստիպված այնտեղից փախուստի դիմեցին։ Ցուրտ ձմեռ էր, աքսորական վանականները ցուրտը, սովը և ճանապարհների ահավոր դժվարությունները հաղթահարելով, ոտքով հասան Եփրատից ոչ հեռու գտնվող Կարհեի շրջանը և տեղավորվեցին Աբդիհար գյուղին հարևան Գաուզե վանքը։ Այս աքսորականների մեջ էր նաև Հովհան Եփեսացին, որը տաս հոգուց բաղկացած խմբի գլուխն անցած, փախավ լեռնային ճանապարհներով ու եկավ նույնպես վերոհիշյալ վանքը։ Հովհանը սակայն աքսորավայրում երկար չմնաց ու այնտեղից գնաց մայրաքաղաք՝ Կոստանդնուպոլիս։ Կայսրն այնպես էր ձևացնում, որ անտեղյակ է տարբեր տեղերում կազմակերպված այս ճնշումներին ու հալածանքներին։ Այդ ամբողջը կատարվում էր գիտակցված ձևով. մի կողմից նման միջոցառումները ճնշում էին հակաշարժումները և ուշադրությունը շեղում կենտրոնից, մյուս կողմից՝ այդ հալածանքներին տեղական բնույթ վերագրելով, մեղքը բարդում էին Եփրեմ պատրիարքի, Պողոս Հրեայի, Ամիդի եպիսկոպոս Աբրահամի վրա։ Այս ամենը հնարավորություն էր տալիս, որ մայրաքաղաքում կայսրը միաբնակ ղեկավարների պաշտպանության դիրքերում հանդես գալով, սիրաշահել նրանց և ժողովրդից ու հոտից կտրված այդ ղեկավարներին ստիպել, որոշ զիջումների։ Շատ խորամանկ կազմակերպված այս խաղը որոշ արդյունք է տալիս և հետաքրքրականն այն է, որ այս բոլորից հետո ասորական աղբյուր-

[12] Զաքարիա Հռետոր, X, J. Land, Anec. Syr., t. III, p. 31.

ներում բարձր գնահատական է տրված Հուստինիանոս Ա կայսրին և նա ներկայացված է իրականում որպես միաբնակության պաշտպան[13]։

Մինչ այդ բյուզանդական կայսրերի եկեղեցական քաղաքականության մեջ նման միջոցների կիրառումը եզակի երևույթ է։ Բայց պետք է նշել, որ այս միջոցառումները ցանկալի արդյունք չեն տալիս, որովհետև այս հակամարտությունների արմատն այնքան խորն էր, որ փաստորեն արտացոլում էր կայսրության ներսում քաղաքական անկախություն կորցրած փոքր ժողովուրդների ձգտումները և կամ իրենց սոցիալական վիճակից դժգոհ տարրերի, հասարակության մեջ արդարացի օրենքների ընդունման համար ծավալված գործողությունները։ Այս հալածանքներն ու ճնշումը շարունակվեցին մինչև 542 թ., երբ արդեն կարևոր իրադարձություններ տեղի ունեցան։ Նախ՝ 542 թ. ահավոր մի ժանտախտ սկսվեց կայսրության սահմաններում, որը պատճառ դարձավ գյուղերի և քաղաքների ամայացման ու մարդկային բազում դժբախտությունների։ Այս վիճակը հնարավորություն տվեց մի նոր շարժման աշխուժացման, Բյուզանդական պետության քաղաքականությունից դժգոհ և քրիստոնեական դաղափարներին ու եկեղեցուն հակադրվող անձինք հարմար առիթ գտնելով, քարոզում էին, որ «բոլոր այս դժբախտությունների պատճառը եղել է այն, որ մարդիկ հրաժարվել են իրենց նախկին աստվածներից ու պաշտում են ինչ որ վերացական Քրիստոսին»։ Այս մարդիկ կոչ էին անում վերադառնալ հին աստվածներին, և պիտի ասել, որ նրանք հաջողություններ ունեցան և հազարավոր մարդկանց տարան իրենց դրոշի ետևից[14]։ Այս շարժումն արագ տարածվում էր կայսրության սահմաններից ներս, Հուստինիանոս Ա-ի իշխանությունը կանդնել էր լուրջ վտանգի առաջ։ Կայսրն արդեն ստիպված էր կարևոր միջոցառումների դիմել և փոփոխություն մտցնել իր եկեղեցական քաղաքականության մեջ։

Երկրորդ կարևոր իրադրությունը, որ կայսրության մեջ ապրող միաբնակների համար խոշոր նշանակություն ունեցավ, դա 542 թ. Ղասսանի արաբների (որոնք Բյուզանդական կայսրության սահմաններում էին ապրում) թագավոր Հարիս Իբն Ջաբալի այցելությունն էր մայրաքաղաք՝ Կոստանդնուպոլիս։ Սա միաբնակության կողմնակից էր, և կայսրի հետ տեսակցության ժամանակ

[13] Michel le Syrien, Chronique, II, 34, p. 325, IX, 22, p. 283.
[14] J. Land, Anec. Syr., t. II, pp. 307—309.

խնդրեց նրանից, որ դադարեցնի հալածանքները միաբնակների դեմ, և բացի այդ եկեղեցական գործիչներ տրամադրի, որ գնան և քրիստոնեություն տարածեն հեթանոս արաբների շրջանում[15]։ Կայսրն ընդառաջում է նրա խնդրանքին, և հետաքրքրական է, որ այդ նպատակով նա ուղարկում է երկու միաբնակ խոշոր գործիչների՝ Թեոդոր եպիսկոպոսին և Հակոբ Բարադեոսին[16], առաջինին որպես Բասրայի եպիսկոպոս, որին պետք է ենթարկվեին նաև Պաղեստինն ու Արաբիան, Հակոբին նշանակում է Եդեսիայի եպիսկոպոս, որի իշխանության մեջ էին մտնելու Ասորիքն ու Ասիան։ Այս Հակոբն ասորական եկեղեցու խոշորագույն դեմքերից է և ընդհանրապես ասորական միաբնակ եկեղեցու հիմնական կազմակերպիչներից։ Այդ պատճառով էլ եկեղեցին մինչև այժմ էլ նրա անունով կոչվել է «Հակոբիկյան»։ Հակոբն իր անձնվեր գործունեությամբ կարողացավ կայսրության հեռավոր շրջանների հալածանքներից ու ճնշումներից ուժասպառ ու քայքայված միաբնակ գործիչներին ու հետևորդներին համախմբել եկեղեցու շուրջը։ Հակոբ Բարադեոսը ծնվել է Տելլա կամ ինչպես այն անվանում են Կոստանդինա քաղաքում՝ 490 թ.։ Հայրը՝ Թեոփիլ Բար Մաղնուն այդ նույն քաղաքում քահանա էր։ Տեղի դպրոցում կրթություն ստանալուց հետո, մտնում է Պեսիլտի կամ Կվարիսկիի վանքը[17], որը գտնվում էր Մծբինից ոչ հեռու՝ Իղալա կամ Այզալա լեռան ստորոտում եղած Գումմշտի գյուղում[18]։ Դեռ 527—528 թթ. Հակոբն իր մի այլ ընկերոջ հետ, որպես միաբնակների ներկայացուցիչ ուղարկվել էր մայրաքաղաք՝ Կոստանդնուպոլիս այնտեղ գումարվող ժողովին մասնակցելու համար։ Նա իր գործունեությունը հիմնականում սկսեց 542 թ., և այդ օրվանից էլ թափառական կյանք էր վարում։ Նա Հովհանին Եփեսոսի եպիսկոպոս

---

[15] E. W. Brooks, John of Ephesus, Lives of the Eastern Saints, t. III, p. 153.

[16] Նա հայտնի է նաև «Բուրդեանա» անունով, սակայն այս վերջինը, ինչպես ցույց է տալիս Բար էբրայուսն իր աշխատության մեջ, ճիշտ չէ։ Տե՛ս «Chron. Eccles.», t. *II*, p. *27*։ Նա «Բարադեոս» է կոչվում իր կոշտ թաղիքից պատրաստված զգեստի համար, որը հագնում էր մինչև մաշվելը։ Տե՛ս J. Land, Anec. Syr., t. II, p. 375. Նա հույներին հայտնի էր նաև «Զանզալոս» անունով (ցնցոտիներ հագած), տե՛ս J. Assemani, Bib. Orient., t. II, p. 66. Նրա վարքերի մասին մանրակրկիտ ուսումնասիրություն է գրել Կլեյնը, տե՛ս Kleyn, Jacobus Baradoeus de Stichter der Syrische Monophysietische Kerk, Leide, 1882.

[17] J. Land, Anec. Syr., t. II, p. 365.

[18] Նույն տեղում։

ձեռնադրեց և նրան հանձնեց ամբողջ ասիական միաբնակ եկեղեցիների գերիշխանությունը։ Այդ է պատճառը, որ մեր սպատմիչը մատենագրության մեջ հայտնի է Եփեսացի մակդիրով։ Հակոբ Բարադեոսը մի այլ կարևոր գործ էլ կատարեց, որը մեծ նշանակություն ունեցավ և հնարավորություն ստեղծեց, որպեսզի միաբնակներն իրենց դիրքերն առավել ևս ուժեղացնեն արևելքում։

542 թ. մահացել էր միաբնակության ամենախոշոր թշնամիներից ու հալածիչներից Անտիոքի պատրիարք՝ Եփրեմը, և Հակոբին հաջողվեց մինչև 547 թ. Անտիոքի թափուր մնացած աթոռին բազմեցնել իրեն հավատարիմ գործակիցներից Սարգիսին։ Ասորական աղբյուրները վկայում են այն մասին, որ Հակոբի հետ գործակցել են նաև հայեր, որոնցից հայտնի են Գեորգն ու Սարգիսը, և ուրիշներ[19]։ Մինչև այդ, ասորի միաբնակները գործակցել են հայ եկեղեցու ներկայացուցիչների հետ, հատկապես այն ժամանակաշրջանում, երբ նրանք անօգնական էին պարսկական տիրապետության մեջ և հալածվում էին նեստորականներից և Բյուզանդական կայսրության մեջ՝ քաղկեդոնականներից։ Այդպիսի իրավիճակում նրանց համար հենարան էր մնացել Հայաստանը կամ հայկական եկեղեցին։ Միաբնակ ասորիների վիճակը մասնավորապես ծանրացել էր այն ժամանակ, երբ Հուստինիանոսի իշխանության գլուխ անցնելուց հետո, նրա հրամանով մինչև 542 թ. արգելված էր միաբնակներին եպիսկոպոսական ձեռնադրություններ կատարել։ Այդ դժվարին օրերին հայ եկեղեցին նեցուկ է կանգնում, և հայոց կաթողիկոսը ոչ միայն բարոյական աջակցություն է ցույց տալիս, այլև Ղաբդ-Իշոյին միաբնակ ասորիների համար եպիսկոպոս է ձեռնադրում։ Այդ հարաբերությունների բանակցությունների ու գործակցությունների մասին բազում տեղեկություններ կան հայկական աղբյուրներում, հատկապես՝ Գիրք Թղթոցում։ 542 թ.-ից սկսյալ այդ արգելքը վերանում է և կայսրը թույլատրում է միաբնակների եպիսկոպոսական ձեռնադրությունը, և առիթից օգտվելով Հակոբ Բարադեոսն ու Թեոդորը բազում ձեռնադրություններ են կատարում և այդ ձեռնադրվածների մեջ, ինչպես ասացինք, Հովհանը դարձավ Եփեսոսի եպիսկոպոս։

Այս ամբողջը նշանակում էր, որ Հուստինիանոս կայսրը նորից իր եկեղեցական քաղաքականության մեջ փոփոխություն էր մտցրել։ Ասել, որ այդ փոփոխությունը լոկ ղասսանիների թագավորի խնդրանքով էր տեղի ունեցել, միամիտ կլիներ։ Այստեղ

[19] «Գիրք Թղթոց», էջ 52։

անկասկած, կարևոր էր այն, որ արար թագավորի խնդրանքը համընկել էր կայսրության շահերին, և այդ էր պատճառը, որ կայսրն ընդառաջել էր նրան։ Իսկ այն բացատրությունը, որ Հուստինիանոսի եկեղեցական քաղաքականության մեջ փոփոխություն էր տեղի ունեցել Թեոդորա թագուհու թելադրանքով, այսինքն թագուհին համոզել էր կայսրին ի վերջո միաբնակներին զիջումներ անել, այս բացատրությունը ևս լիովին չի կարող արտացոլել ճշմարտությունը։ Ըստ էության այս բոլորը կատարվել է կայսրի նախապես ծրագրած որոշման համաձայն։ Կայսրը հասկացել էր, որ միաբնակների հետ մերձեցումը հնարավորություն կտար արաբական ցեղերից շատերին ռազմականապես և քաղաքականապես ամուր թելերով կապել կայսրության հետ։ Բացի այդ Հուստինիանոսը մտադիր էր հեթանոսության դեմ պայքար հայտարարել, և այդպիսով ժողովրդի ուշադրությունը շեղել էական հարցերից, և միևնույն ժամանակ այդ շեղումից օգտվելով, կարելիություն ստեղծել ներքին շարժումները ճնշել, և իր իշխանության շուրջ համախմբել իրեն հավատարիմ ուժերին։ Այդ նպատակի համար իրեն հարմար էին միաբնակ գործիչները, որոնք իրենց մոլեռանդությամբ կարող էին գործերի ընթացքին իր ցանկացած ուղղությունը տալ։ Անտեսելով որոշ դժվարություններ, նա իր եկեղեցական քաղաքականության մեջ փոփոխություն մտցրեց և այդ գործին հարմար մարդ համարեց Հովհան Եփեսացուն։

Կոստանդնուպոլսում այդ ժամանակ Հովհան Եփեսացին իր գործունեությամբ ու ընդունակություններով արժանացել էր Հուստինիանոս Ա-ի ուշադրությանը, նույնիսկ մտերիմ հարաբերություններ էին ստեղծվել նրանց միջև։ Անկասկած կայսրը Հովհան Եփեսացու մեջ տեսել էր այն անձնավորությունը, որը կարող էր իր քաղաքական նպատակներին ծառայել։ Եթե կայսրն այս գիտակցությամբ ու այս նկատառումներով էր մոտենում Հովհան Եփեսացուն, ապա ի՞նչն էր Հովհան Եփեսացուն կապում Հուստինիանոսի հետ և ինչ՞ու 542 թ. երբ կայսրը նրան պատասխանատու ու ծանր առաքելության էր ուղարկում՝ Արևելքում հեթանոսության դեմ պայքարը կազմակերպելու, վերջինս համաձայնեց ու դարձավ կայսրի անմիջական գործիքը։ Ա. Դյակոնովը կարծում է, որ Հովհան Եփեսացին համոզված էր, թե կայսրն իսկապես միաբնակների կողմնակից է և քաղկեդոնականությունը նա ձևականո-

րեն է պաշտպանում[20]։ Դժվար թե Հովհան Եփեսացին այնքան միամիտ լիներ, որ հավատար այդ բանին, մանավանդ որ նա այն եկեղեցականներից չէր, որոնք մայրաքաղաքում նստած, ժողո-վրդից կտրված, անձնական հաճույքներին գերի դարձած, չգիտեին, թե ինչ է կատարվում շրջապատում։ Հովհանն անընդհատ ճանապարհորդություններ է կատարել և իր մարմնի վրա զգացել Հուստինիանոսի կողմից կազմակերպված հալածանքների պատ-ճառած ցավերն ու դժվարությունները, բացի այդ, նա միշտ եղել է ժողովրդի մեջ և ժողովրդի հետ, ուստի այդ բոլորից հետո միթե՞ նա կարող էր համոզվել, որ կայսրր միաբնակների կողմնակից է։ Անշուշտ Հովհանր հասկանում էր, որ նման առաքելությունը ի նպաստ կլիներ միաբնակ եկեղեցուն, որովհետև միաբնակություն ընդունած նորահավատ հավատացյալները կխտացնեին ու կամ-րացնեին միաբնակ եկեղեցու շարքերը։

Այստեղ պետք է նշել նաև այն, որ Հովհանի մոտ արդեն (և այդ զգացվում է նրա աշխատության բոլոր էջերում) իրենց իմաստը կորցրել էին ազգային գիտակցությունն ու շահերը, և նա առաջին հերթին ինքն իրեն զգում էր բյուզանդական քաղաքա-կանության մի մասնիկ, այսինքն Բյուզանդական կայսրության քաղաքացի և որպես այդպիսին, ձգտում էր ընդհանրապես կայ-սրրության հզորացման, անշուշտ այդ հզորացումը կապելով միաբնակության հետ։ Հովհանի և նրա համախոհների կայսրու-թյան ամրացման կողմնակից լինելու այս հանգամանքը այն եզրն էր, որտեղ միանում էին երկու կողմերը, և այդ էր պատճառը, որ կայսրր նման մեծ առաքելությունր վստահում է Հովհանին։ Նա ամենայն նվիրվածությամբ ու իր առաքելության լրջությունը հասկացողի գիտակցությամբ, կայսրից ստացած արտակարգ լիազորություններով ու խիստ հրամանով, 542 թ. մեկնում է մայրաքաղաքից՝ հեթանոսության դեմ պայքարելու համար։ Այստեղ արդեն համակարծիք ենք Ա. Դիակոնովի այն տեսակետին, որ այդ օրվանից Հովհան Եփեսացին դառնում է Հուստինիանոս Ա-ի գլխավոր «ինկվիզիտորը»։ Նման լայն ճակատով հեթանո-սության դեմ հարձակումն առաջին անգամ էր սկսվում կայսրու-թյան մեջ։ Հովհան Եփեսացու ձեռքին եղած հրամանի համաձայն, կայսրը պարտադրում էր կայսրության մեջ ապրող հեթանոսներին հրաժարվել հեթանոսական հավատից և ընդունել քրիստոնեու-

---

[20] **А. Дьяконов,** Иоанн Эфеский и его церковноисторические труды, СПб., стр. 65.

թյունը, և բոլոր նրանք, ովքեր չէին ենթարկվի այդ հրամանին և կշարունակեին հելլենիզմի մոլորության մեջ մնալ, նրանց բոլորին կայսրը սպառնում էր մահապատժով։ Այդ հրամանում խոսվում էր նաև այն անձնավորությունների մասին, որոնք թեև դեռ չեն մկրտվել, բայց պարտավոր են իրենց կանանց ու երեխաների հետ եկեղեցի գնալ ու սովորել քրիստոնեական ճշմարիտ հավատը և ապա մկրտվել։ Իսկ ովքեր, որ այդպես չեն անի, կզրկվեն իրենց ունեցվածքից և կենթարկվեն համապատասխան պատիժների[21]։

542 թ. հունվարին Հովհան Եփեսացին նման լիազորություններով իր գործակիցների հետ գալիս է Փոքր Ասիական երկրները, շրջագայում ու իրեն համար կենտրոն է դարձնում Լիդիայի քաղաքներից՝ Տրալլը[22], որը գտնվում էր հարավում, Մեանդրից ոչ հեռու Մագնեզիայի և Նիսայի միջև։ Հովհանն իր ասորի և նույնիսկ հայ գործակիցների հետ, որոնցից հայտնի է, օրինակ, Սարգիսը, ծավալում է լայն գործունեություն ու մարդկանց ստիպում բռնի դավանափոխության։ Չնայած այս շրջաններում քրիստոնեությունն առաջին անգամ էր քարոզվում, բայց և այնպես մի տարում արդեն, ինչպես Հովհանն է վկայում, յոթանասուն հազար հեթանոսներ քրիստոնեություն ընդունեցին[23]։ Մարդկանց դավանափոխելուց հետո սկսվեց հեթանոսական տաճարների կործանումն ու ավերումը և փոխարենը քրիստոնեական եկեղեցիների ու վանքերի շինարարությունը։ Տրալլայից ոչ հեռու, Դարիրա գյուղում հեթանոսական հայտնի մի տաճար կար, որն ուներ մոտ 1500 սպասավոր։ Հովհան Եփեսացին ավերեց այն ու փոխարենը կառուցեց մի մեծ վանք, որի կառուցումը, ինչպես ինքն է վկայում, տևեց 6 տարի։

Միայն չորս շրջաններում Հովհանին հաջողվել էր կառուցել 12 վանք և 99 եկեղեցի[24]։ Հովհանն իր այս գործունեության ընթացքում պայքարում էր ոչ միայն հեթանոսության, այլև հրեաների, մոնտանականների դեմ[25]։ Հրեաներից գրավում էր նրանց

---

[21] Codex Justinianus I, 11, ed. Krüger, 1959, p. 64.

[22] Տրալլն այժմ կոչվում է Սուլթան Հիսար։

[23] Հովհան Եփեսացի, 3։

[24] Նույն տեղում։

[25] Մոնտանոսի և նրա հիմնած մոնտանական աղանդի մասին Եվսեբիոս Կեսարացին հետևյալ տեղեկությունն է տալիս. «Գիւղ մի է, ասէ, ի Միւսիա ի սահմանադլուխս Փռիւգացւոց Արդաբա անուն, անդ Մոնտանոս ոմն ի նորակերտ հաւատացելոց անտի յաւուրս Գրատոսեայ փոխանակի բդեշխին Ասիացւոց, չարաչար ցանկութեամբ դա հերիցութեան վառեալ, ետ մուտ թշնամւոյն յանձն

սինագոգները և դրանք վերածում եկեղեցիի։ Մոնտանականների աղանդն, ինչպես Եվսեբիոս Կեսարացին է վկայում, դեռ շատ վաղուց, մեր թվականության II դարից կազմավորվել էր Փռյուգիայում և տարածվել շրջակա երկրները. չնայած Եվսեբիոսն իր վկայության մեջ փորձում է մեղմել այս աղանդի հաջողություններն, իրականում սակայն հասարակ ժողովրդի շրջապատում նպաստավոր հող էր գտել այն և իր շուրջ հավաքել գոյություն ունեցող կարգերից դժգոհ տարրերին։ Եվ ահա այդ ժամանակվանից էլ կանգուն էր մնացել նրանց կենտրոնը Փռյուգիայի Պեպուզա քաղաքում[26]։ Հովհան Եփեսացին տարբեր միջոցառումների դիմեց այս աղանդը ևս վերացնելու համար, որովհետև այն ոչ միայն վտանգավոր ուժ էր եկեղեցու հեղինակությունը հարվածելու գործում, այլև նրա կազմակերպած շարժումները խախտում ու թուլացնում էին կայսրության ամրությունն ու հիմքերը։ Ինչպես տեսնում ենք, կայսրը հեթանոսության դեմ պայքար հայտարարելով, փաստորեն հաշվեհարդար էր տեսնում բոլոր այն ուժերի հետ, որոնք կրոնական այս կամ այն գաղափարախոսության քարոզով, իրականում կարող էին վնաս հասցնել կայսրության շահերին։

Հովհան Եփեսացին իր այս գործունեությամբ Բյուզանդական կայսրության և հատկապես կայսրի մոտ մեծ հեղինակություն ստեղծեց և դարձավ Հուստինիանոս Ա-ի ամենահավատարիմ մտերիմներից և գաղափարակիցներից մեկը, և երբ 546 թ. մայրաքաղաք էր եկել, կայսրը նրան արտակարգ շուքով ու պատիվներով ընդունեց։ Հովհանի գործունեության արդյունքն, ըստ երևույթին, սպասվածից ավելին էր, և կայսրը ոգևորված եղածից, այս անգամ նման հաշվեհարդար է ուղում կազմակերպել մայրաքաղաքում ապրող այն մտավորականության, անձնավորությունների դեմ, որոնք այս կամ այն ձևով կենտրոնական իշխանության հետ չէին գործակցում կամ հակադրվում էին կայսրին։ 546 թ. այս գործը ևս Հուստինիանոսը վստահում է Հովհան Եփեսացուն, որը նույն հեթանոսության դեմ պայքարի դրոշի ներքո,

---

իւր, և զգեցաւ հոգի չար մոլորութեան, և յանկարծակի սկսաւ ելանել ի մտաց իւրոց, և մարգարէանալ և խօսել բանս օտարոտիս արտաքոյ սովորութեան տուչութեան եկեղեցւոյ, որ ի վերուստ անտի կարգեալ առ մեզ հասանէր.» տե՛ս «Եւսեբիոսի Կեսարացւոյ Պատմութիւն եկեղեցւոյ», թարգմ. Ա. Ճարեան, Վենետիկ, 1877, գպր 5, գլ. ԺԶ էջ 374—375։

[26] Պեպուզո քաղաքը մոնտանականները անվանում էին Երուսաղեմ. Տե՛ս Michel le Syrien, Chronique, IX, 33, pp. 323—324:

սկսում է իր հավատաքննիչի աշխատանքները Կոստանդնուպոլսում։

Հովհան Եփեսացին այստեղ ևս արդարացնում է կայսրի կողմից իր վրա դրած հույսերը և նա իր անդիջում գործունեությամբ դառնում է կայսրի ամենամտերիմ գործակիցը։ Հեթանոսության պատրվակի տակ, մայրաքաղաքում սկսեցին հալածել ու մաքրագործել բոլոր այն գիտնականներին, բժիշկներին, արվեստի և գրականության ասպարեզում ճանաչված գործիչներին և վերնախավի այն գիտակից տարրերին, որոնք իրենց իմացականությամբ ու գիտակցությամբ շատ բարձր էին կանգնած ղեկավարող տգետ մարդկանցից և որոնք իրենց գործերով փաստորեն հակադրվում էին տիրող կարգերին և չէին հանդուրժում կայսերական կամայականություններն ու բռնությունները։ Այս մարդկանց, ահա այդ ժամանակ, անմիջապես մեղադրում էին հեթանոսական հավատալիքներ ունենալու մեջ և ոչնչացնում։

Միքայել Ասորին իր աշխատության մեջ գրել է այս կատարվածի մասին և նկարագրել, թե ինչպես մարդկային մեծ զոհերից բացի ոչնչացվում էին նաև արվեստի, գրականության ու պատմական մեծ արժեք ներկայացնող կոթողներ[27]։

Միաբնակության ամենաջերմ պաշտպան Թեոդորա թագուհին այն օղակն էր, որն իր հովանավորության տակ վերցնելով այդ կուսակցության հետևորդներին, նրանց կապել էր կայսրի ու կայսրության հետ։ Նրա մահից հետո (547) այդ պարտականությունը ևս Հուստինիանոսը դնում է Հովհան Եփեսացու վրա։ Հովհան Եփեսացին այդ ժամանակ արդեն մայրաքաղաքի և ընդհանրապես միաբնակների գործերի կառավարիչ էր և հասել էր փառքի գագաթնակետին։ Սակայն իրերի դրությունը փոխվում է և նա այս անգամ ճաշակում է կյանքի ամենադառն ցավերն ու վշտերը։ Փառքի մեջ լողացող այս գործիչը բանտերի մութ նկուղներում զգում էր մարդկային տանջանքների սարսափելի ողբերգությունը։ Նա, անկասկած, այդ վիճակում միայն կարող էր իրեն հաշիվ տալ, թե ինչպիսի բաղում գործիչներ և անմեղ մարդիկ են իր ձեռքով այդ վիճակին հասցվել։ Ճակատագրական այդ փոփոխությունը տեղի է ունենում 564 թ. նոյեմբերի 14-ից հետո, երբ մահանում էր իր պաշտպան ու սիրեցյալ Հուստինիանոս Ա կայսրը։ Համենայն դեպս ի հարգանս Հովհան Եփեսացուն պիտի ասել, որ աքսորի ու հալածանքների այս դաժան պայման-

[27] Michel le Syrien, Chronique, IX, 33, p. 324.

ներում նա չի կորցնում իր հավասարակշռությունը։ Այդ ծանր վիճակում նա գրիչը ձեռքից ցած չի դնում և շարունակում է գրել իր Եկեղեցական պատմության մեզ հայտնի Գ մասը, և այսօր այդ աշխատության շնորհիվ մենք ծանոթ ենք պատմական բազում փաստերի ու քաղաքական իրադարձությունների, որոնք տեղի ունեցան Հուստինիանոս Ա-ի մահվանից հետո։ Նրան հաջորդած Հուստինոս Բ սկզբնական շրջանում փորձում էր հավասարակշռությունը պահպանել և փաստորեն շարունակել այն եկեղեցական քաղաքականությունը, որ կիրառել էր իր նախորդը։ Հուստինիանոս Ա-ն այդ ուղղությամբ բավական մեծ քայլեր էր կատարել և նույնիսկ որոշ հաջողություններ էր ունեցել, բայց իր նպատակին չէր հասել, համենայն դեպս Հուստինիանոս Ա-ի ցանկացած եկեղեցական միությունը չստեղծվեց։

Միքայել Ասորին, որ իր Եկեղեցական պատմության համապատասխան հատվածը շարադրելիս օգտվել էր Հովհան Եփեսացու աշխատության մեզ չհասած Բ մասից, հետաքրքրական տեղեկություններ է տալիս Հուստինոս Բ-ի եկեղեցական քաղաքականության վերաբերյալ։ Նա պատմում է, որ երբ նոր կայսրը գահ բարձրացավ, միաբնակները մեծ հույսեր էին կապում նրա հետ[28], և նույնիսկ գաղտնի տեղեկություններ տարածում այն մասին, որ կայսրը միաբնակ է և ասում էին մանավանդ, նրա կինը՝ Սոփիան, այն աստիճան մոլեռանդ է, որ հրաժարվում է քաղկեդոնականների հետ շփում ունենալուց։ Իրականում, սակայն, ինչպես Հովհան Եփեսացին է գրում, իր թագավորության սկզբում կայսրն անտարբեր էր կրոնական և դավանաբանական հարցերի նկատմամբ, որովհետև այն ժամանակ բյուզանդական պետությունը տնտեսական ծանր վիճակում էր գտնվում, և բացի այդ, արևելքից ու արևմուտքից սպառնում էին թշնամի ավարները, սլավոնները, պարսիկները[29]։ Այդ պատճառով էլ Հուստինոս Բ-ն ամեն կերպ կրոնական հարցերում ձգտում էր հավասարակշռությունը պահպանել, մանավանդ որ նոր կայսրը չուներ իր նախորդի քաղաքական լայն մտահորիզոնն ու հեռատեսությունը և ձգտում էր կարգավորել ամեն ինչ առանց հետագան նկատի ունենալու[30]։ Համենայն դեպս գահ բարձրանալուց անմիջապես հետո, փորձեց նախ արևելքում ծագած դժվարությունները հարթել, և դեռևս

---

[28] Michel le Syrien, Chronique, X, pp. 331—336.

[29] Հ. Եփեսացի, Եկեղեցական պատմություն, Գ։

[30] А. Дяконов, Иоанн Эфесский, стр. 90.

միաբնակների նկատմամբ նույն Հուստինիանոս Ա-ի եկեղեցական քաղաքականությունը կիրառել։ Պետք է ասել, որ 542 թ. հետո իր նախորդի, միաբնակների նկատմամբ ցուցաբերած վերաբերմունքը, խոշոր նշանակություն ունեցավ միաբնակների համար։ Կայսրության մեջ իր հոգևարքն ապրող միաբնակ եկեղեցին Հուստինիանոս Ա-ի 542 թ. հետո եկեղեցական քաղաքականության մեջ մտցրած փոփոխությամբ, այնպիսի աշխուժություն ապրեց (հատկապես Հակոբ Բարադեոսի ծավալած անձնվեր գործունեության շնորհիվ), որ 560-ական թթ. արդեն միաբնակ եկեղեցին ոչ միայն ամրացրել էր իր հիմքերն, այլև իր ծաղկումն էր ապրում, հակառակ իր շարքերում ծագած երկպառակություններին ու վեճերին։ Միաբնակ եկեղեցին Հուստինիանոս Ա-ի մահից հետո այնքան էր ուժեղացել, որ ինքն էր առաջարկում վերականգնել եկեղեցական միությունը։ Եթե մինչ այդ քաղկեդոնականներն էին ձգտում տարբեր միջոցներով միաբնակներին որպես հեռացածների, մոլորյալների միավորել, ապա այդ իրադրությունը փոխվել էր այժմ, և այս անգամ այդ գործն իրենց ձեռքն էին վերցրել միաբնակները։ Նրանք ուզում էին որոշ զիջումներով քաղկեդոնականներին իրենց հետևից տանել, մանավանդ մեծ հույս ունեին, որ Հուստինոս Բ-ն այդ հարցում իրենց թիկունք է կանգնելու։ Այդ կապակցությամբ, նորից արծարծվեցին կրոնական վեճերը։ Հակոբը եկել էր Կոստանդնուպոլիս և Սոփիա կայսրուհու գլխավորությամբ 566 թ. գաղտնի հանդիպում էր կազմակերպել իր և Անտիոքի՝ Պողոս պատրիարքի հետ, որին մասնակցում էր նաև Հովհան Եփեսացին։ Նա իրեն այնպես էր պահում, որ կարծես կայսրության ներկայացուցիչը լիներ[31]։ Այս հանդիպման շնորհիվ միաբնակ եկեղեցու ղեկավարների նպատակն էր իրենց միջև եղած երկպառակությունները վերացնել։ Սակայն այս հանդիպումն արդյունք չտվեց, որովհետև մայրաքաղաքում ապրող միաբնակների ու բյուզանդական տարբեր գավառներում ապրողների միջև հակասությունները ավելի էին խորացել։ Առաջինները պատրաստ էին զիջումների և այդ զիջումների միջոցով ցանկանում էին համաձայնության գալ քաղկեդոնականների հետ, մինչդեռ գավառներից եկածները դեմ էին ամեն մի զիջման։ Այդ հասկանալի էր, որովհետև վերջինները, հեռու լինելով կենտրոնական իշխանության ազդեցությունից, ժողովրդի հետ շփվելու և կապվելու լայն հնարավորություն ունեին, և այդպիսով ավելի մոտ էին կանգնած

[31] Michel le Syrien, Chronique, X, I, p. 325.

ժողովրդին և կամ ավելի ճիշտ՝ ցածր խավին։ Կոստանդնուպոլսում ապրող միաբնակների հիմնական մասը կապված էր վերնախավի հետ և այդ խավի դիրքերից գործելով, բնականաբար, նրանց շահերի պաշտպանությամբ էին հանդես գալիս։ Հուստինոս Բ-ն ուզում էր մայրաքաղաք հավաքված միաբնակ ղեկավարների միջոցով, կայսրության մեջ, մանավանդ հեռավոր շրջաններում, թուլացող իր քաղաքական դիրքերն ամրացնել։ Այդ նպատակին հասնելու համար, կայսրը միևնույն ժամանակ 567 թ. Պարսկաստան գնացող Բյուզանդիայի դեսպան՝ Հովհան Կոմենտիոլին լիազորում է, որ ճանապարհին եկեղեցական միության հարցերով բանակցությունների մեջ մտնի Ամիդում ու նրա շրջակայքում իրեն կենտրոն դարձրած «արևելյան միաբնակ վանականության հետ»։ Դեսպանին, կայսրի կարգադրությամբ, մայրաքաղաքից ընկերանալու էր նաև Հովհան Եփեսացին[32]։ Սակայն Հովհան Եփեսացին այդ առաքելությունից հրաժարվեց, պատճառաբանելով, որ ինքը զբաղված է հեթանոսների մկրտությամբ։ Եփեսացին, շատ լավ հասկանում էր, որ նման միջոցառումներն արդյունք չեն տալիս, և ընդհակառակը կրքեր են բորբոքում, և այդ դեպքում, ինքն որպես կայսրության ձեռքին սովորական մի գործիք, իր հեղինակությունը կորցնելու էր գավառականների մոտ։ Կարծում ենք, որ ամենից առաջ այդ մտավախությունն էր, որ ստիպեց Հովհան Եփեսացուն հակառակվել կայսրի կամքին։

Հարավային Օսրոյենի Կալլինիկա քաղաքից ոչ հեռու գտնվող Մար Զաքայի վանքում, Հակոբ Բարադեոսի գլխավորությամբ ժողովի էին հրավիրվել «Արևելյան վանականության» ղեկավարները[33]։ Անկասկած, մայրաքաղաքից գալով Հակոբը գաղտնի հրահանգ ուներ, «Արևելյան վանականությանը» համոզելու, որ որոշ զիջումներ անեն։ Հակոբի կողմից հարցը շատ նուրբ ձևով էր դրված և նա ամեն կերպ աշխատում էր նրանց և կայսրության միջև համագործակցելու եզրեր գտնել։ Սակայն ներկաները ոչ մի կերպ չէին համակերպվում այդ մտքին և ոչ մի զիջման պատրաստ չէին։ Նույնիսկ վանականներից մեկը ժողովի ժամանակ վերցրեց կայսրի հրամանը, որի մեջ և՛ առաջարկություն և՛ սպառնալիք կար, պատռեց և նետեց դետին։ Մթնոլորտը լարվեց և ներկաները սպառնացին Հակոբին, ասելով, որ եթե նա որևէ զիջում անի ու այդ հարցերում գործակցի կայսրի հետ, ապա նրանք ստիպված

---

32 Michel le Syrien, Chronique, X, 1, p. 332.
33 Michel le Syrien, Chronique, X, 2. p. 333.

կլինեն ինքնուրույն գործել և նրան էլ՝ Հակոբին, որպես իրենց եպիսկոպոսը չեն ճանաչի։ Հակոբը ստիպված համաձայնվեց նրանց հետ։

Վանականների այս թևին հակադրվեցին մի կողմից Անտիոքի պատրիարք Պողոսը և մյուս կողմից՝ մայրաքաղաքում ապրող Հովհան Եփեսացին, որոնք գտնում էին, որ հնարավոր է որոշ զիջումներով գործակցել կայսրության հետ։

Միաբնակության շարքերում երկպառակությունը գնալով ավելի սուր բնույթ էր ստանում և թուլացնում նորից հիմքերը։ Այս պայքարի արդյունքն այն եղավ, որ Հակոբ Բարադեոսի կողմնակիցներն ու հետևորդները կոչվեցին «Հակոբիկյաններ» իսկ մյուս թևի կողմնակիցները՝ «Պողոսյաններ»։

Միաբնակների ներսում սրվող այս պայքարը քայքայում էր նրանց։ Կայսրն ու նրա համախոհները գտան, որ ամենահարմար առիթն էր այժմ բաժան-բաժան դարձած միաբնակության շարքերը հարվածել, և որոշեցին ձեռք առնել բոլոր միջոցները՝ բռնի ուժը, բանտը, աքսորը, սարսափը, վախը, կաշառքը, որպեսզի վերացնեն միաբնակ խմբակցությունները և վերականգնեն կայսրության մեջ կայսրի ազդեցության տակ գործող միասնական եկեղեցին[34]։ Հովհան Եփեսացին, որ գրել է այս շրջանի պատմությունը, ճիշտ է բնորոշում Հուստինոս Բ-ի եկեղեցական քաղաքականության մեջ տեղի ունեցած հանկարծակի այս փոփոխությունը, և այն վերագրում իրենց շարքերում առաջացած երկպառակություններին։ Այս ճիշտ եզրակացությունից հետո, նա գտնում է, որ կայսրին այդ քայլին մղողը այդ ժամանակ Կոստանդնուպոլսո պատրիարքական աթոռին բազմած՝ Հովհան Սքոլաստիկոսն էր, և սա էլ, ասում է նա, կայսրին թունավորեց միաբնակների դեմ[35]։ Կարող էր անշուշտ այդ մասին հուշել և իր ծառայությունը առաջարկել կայսրին, մանավանդ նա խորապես ատում էր միաբնակներին։ Նա իրեն վտանգավոր թշնամի էր համարում Հովհան Եփեսացուն և ամեն կերպ աշխատում ոչնչացնել նրան։ Ինչպես ասացինք, կայսրը միաբնակների դեմ դիմեց վճռական միջոցների, որովհետև համոզված էր, որ դյուրին կլինի ոչնչացնել ներքին երկպառակություններից ուժասպառ եղած միաբնակ կազմակերպություններին։ Այս ժամանակ երկրի ներսում ուժեղացել էր հունական կուսակցությունը, և այդ ուժը դեպի արևելյան աղդեցությունը ունեցած

---

34 Հ. Եփեսացի, Եկեղեցական պատմություն, I, 5։

35 Նույն տեղում, I, 2։

թշնամական վերաբերմունքով կարող էր ամուր հենարան դառնալ նման հարվածի համար։ Միաբնակության դեմ ստեղծված այս դրությունը նպաստեց, որ Հուստինոս կայսրն անմիջապես գործի անցնի։

571 թ. մարտի 22-ին Կոստանդնուպոլսո պատրիարք Հովհան Սքոլաստիկոսը կայսրից հրաման ստացավ և այդ հրամանի համաձայն, նա կարգադրեց փակել մայրաքաղաքում գտնվող միաբնակ հաստատություններն ու եկեղեցիները[36]։ Դրանից հետո սկսեցին ձերբակալել եկեղեցականներին ու բանտարկել նրանց։ Այս միջոցառումներից հետո պատրիարքն անձամբ գնում էր բոլոր միաբնակ եկեղեցիներն ու հաստատությունները, հեռացնում հակառակորդներին ու նրանց փոխարեն նշանակում իր կողմնակիցներին։ Մինչ այդ, սակայն, Հովհան Եփեսացուն չէին անհանգստացրել, բայց հետապնդում էին այն բոլոր անձնավորություններին, որոնք պատրիարքի հրամանին չէին ենթարկվում։ Այս բոլոր գործողությունները համակցված էին կատարում, և ուզում էին հնարավորին չափով կարճ ժամանակամիջոցում հարվածել միաբնակների հիմնական օղակներին՝ միաբնակության հարցը վերացնելու նպատակով։ Ճիշտ է, այս հարվածներին չդիմանալով շատերը տեղի տվեցին ու զիջեցին իրենց դիրքերը, սակայն ինչպես կայսրն ու պատրիարքը կարծում էին, չկարողացան ոչնչացնել միաբնակ կազմակերպությունները, չկարողացան ընկճել Անտիոքի Պողոս պատրիարքին։ Թեև ոմանք փախան խուսափելու համար հարվածից, բայց շատ շատերը ամուր կանգնեցին իրենց դիրքերի վրա։ Կոստանդնուպոլսո պատրիարքը փորձեց կրկնակի ձեռնադրություններով վերջնականապես բարոյական ծանր հարված հասցնել, սակայն կայսրը վախենալով զանգվածային ուժեղ շարժումներից, հակառակվեց պատրիարքի այդ քայլին ու հրամանով արգելեց կրկնակի ձեռնադրությունները[37], այսինքն միաբնակների կողմից ձեռնադրվածին մի անգամ ևս քաղկեդոնական եպիսկոպոսի կողմից ձեռնադրելու փորձից։ Այս և նման այլ միջոցառումները արդյունք չտվեցին, և կայսրը չկարողացավ կայսրության մեջ եկեղեցու միասնությունը հաստատել, այլ ընդհակառակը, արևելյան ժողովուրդների մոտ բորբոքվեցին կրքերը և հակաբյուզանդական տրամադրություններն ավելի սուր բնույթ ստացան և կարելի է ասել, որ եթե կայսրը այսպիսի հալածանք-

[36] Հովհան Եփեսացի, Եկեղեցական պատմություն, Գ մաս, I, 5։
[37] Նույն տեղում, 16—18։

ներ չսկսեր, արևելյան այս փոքր ժողովուրդների դեմ, ապա կայսրության արևելյան սահմանները չէին թուլանա և նրանք չէին կորցնի այդ ժամանակ իրենց արևելյան նահանգները։ Կայսրի այս սխալ քաղաքականության պատճառով վիրավորեցին ժողովուրդների ազգային արժանապատվությունը, թշնամանք սերմանեցին նրանց միջև և այդ բանը զգացվեց հատկապես VII դարի առաջին կեսին, արաբական արշավանքների ժամանակ։ Տարօրինակն այն է, որ մի սխալին հաջորդել է մյուսը և կայսրն ու նրանց գործակիցները չեն կարողացել օգտվել առիթից՝ ճիշտ ուղու վրա կանգնելու համար։

Ձերբակալվեց ի վերջո միաբնակների վերջին խոշոր գործիչներից՝ Հովհան Եփեսացին։ Նրան նետեցին պատրիարքարանի բանտի խցերից մեկը։ Ճակատագրի խաղի բերմամբ մեծ «ինկվիզիտորը» ինքն էր այս անգամ ճաշակում այն դաժանությունները ու վշտերը, որոնք տարիներ առաջ ինքը հրամցնում էր նրանց, ում ճակատին կպցրել էր «հեթանոս» պիտակը։ Հովհանին այս բանտի խցիկում ենթարկում են շատ խիստ պատիժների ու չարչարանքների, բայց նա համբերությամբ ու համառությամբ տանում է այդ ամենը[38]։

Ի վերջո տասներկու ամիս և 9 օր պատրիարքարանի բանտում մնալուց հետո, նրան տեղափոխում են ծովի վրա մի կղզի և թույլ չեն տալիս մարդկանց հետ շփվել։ 578 թ. Տիբերիոսը կայսր դարձավ և վերջինիս կարգադրությամբ Հովհանին նորից հսկողության տակ բերում են մայրաքաղաք։ Թեև Տիբերիոսը Թրակիացի էր և արևելքցիների նկատմամբ դժվար թե համակրանք ունենար, սակայն իր անձի ու պետության շահերը նկատի առնելով, տարբեր խավերի մեջ իրեն համար հենարան ստեղծելու նպատակով, զիջումների ու սիրաշահելու գիծ որդեգրեց ու այդ քայլերից մեկն էլ Հովհանին մայրաքաղաք բերելն էր։ Այն ժամանակ արդեն Կոստանդնուպոլսո պատրիարք Հովհան Սքոլաստիկոսը մահացել էր և նրան հաջորդել էր մեղմ բնավորություն ունեցող Եվտիքիոսը։ 578 թ. միաբնակների շրջանակներում մեծ հեղինակություն վայելող Հակոբ Բարադեոսն էլ Եգիպտոս գնալիս, որպեսզի ծանոթանար նորընտիր ասորի Դամիանոս պատրիարքի հետ, ճանապարհին հիվանդանում ու վախճանվում է Կասիանոս վանքում[39]։ Միաբնակ եկեղեցու մյուս խոշոր գործիչ՝ Անտիոքի

38 Հ. Եփեսացի, Գ, մաս 4. 40։

39 Նույն տեղում, 4, 33։

պատրիարք Պողոսը, թեև 571 թ. հեռացվել էր իր աթոռից, սակայն 575 թ. Բյուզանդիային ենթակա Ասորիքի արաբների թագավոր Մունդար Բար Խարետի (Մունդիր իբն Հարիս) միջնորդությամբ նրան նորից վերականգնեցին իր պաշտոնին, որովհետև Պողոսը արաբների մեջ բազում հետևորդներ ուներ։ Հակառակ պետական հալածանքներին Բյուզանդական կայսրության մեջ ապրող միաբնակների շարքերում երկպառակությունները շարունակվում էին[40]։ Միաբնակների միջև այս ներքին բաժանվածությունը վերացնելու ու Կոստանդնուպոլսում իր հեղինակությունն ու ազդեցությունը բարձրացնելու նպատակով, արաբների թագավոր Մունդարը Բյուզանդիայի մայրաքաղաք Կոստանդնուպոլսում 580 թ. միաբնակ այս խմբերի ղեկավար գործիչներին (անկասկած կայսրի թելադրանքով) հրավիրեց ժողովի։ Այս ժողովին հրավիրված էր նաև Հովհան Եփեսացին, որ այն ժամանակ միացել էր Պողոսյանների խմբին։ Թեև Թեոդոսի կանոնների հիման վրա իրենք թե համաձայնության եկան, սակայն 581 թ. իրերի դրությունը փոխվեց և Բյուզանդական կայսրության մեջ նորից վերսկսվեցին հալածանքները միաբնակների դեմ։ Հովհան Եփեսացին նորից ձերբակալվեց և ամիսներ ու տարիներ շարունակ տանջվեց բանտի խցիկներում։ Բայց նա այդ օրերին էլ գրիչը ցած չդրեց և շարադրեց իր Եկեղեցական պատմության Գ մասը, որը արժեքավոր տեղեկություններ է հաղորդում հայերի մասին։ Իր այս աշխատության մեջ հիշատակված վերջին թվականը հույների 896 թ., այսինքն՝ 585։ Դրանից հետո նա երկար չի ապրում և 586 թ. բանտում կնքում է իր մահկանացուն։

## 2. «ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ»

VI դարի ասորական գրականության խոշորագույն դեմքերից է Հովհան Եփեսացին։ Նա այնքան էր խորացել հունական մշակույթի ու լեզվի իմացության մեջ, որ մայրենի լեզվով գրած երկերում զգացվում է այդ ազդեցությունը։ Նրա ասորերեն

[40] Բյուզանդական կայսրության մեջ ապրող միաբնակներն այդ ժամանակ հիմնականում երեք խմբի էին բաժանված։ Անտիոքի պատրիարք՝ Պողոսի հետևորդները, որոնք «Պողոսյաններ» էին կոչվում նրա անունով, իրենց կենտրոնն ունեին Ամիդից ոչ հեռու, Բեյթ-Աբու գյուղի Բասսի վանքը։ Սրանք չափավոր էին, այսինքն ուզում էին հաշտության եզր գտնել քաղկեդոնականների հետ։ Երկրորդ խումբը՝ Հակոբիկյաններն էին, երրորդ խումբը՝ Ալեքսանդրյանները, այսինքն՝ Եգիպտոսի եկեղեցու միաբնակ հավատացյալները։

բառապաշարի մեջ մեծ տեղ են գրավում հունական բառերն ու դարձվածքները։ Այս հանգամանքը ոչնչով չի արժեքազրկում մեզ հասած նրա աշխատությունների նշանակությունը, որովհետև նա իր գրելաձևի ու մտածելակերպի մեջ ինքնուրույն է։ Դժբախտաբար նրա երկերից քչերն են հասել մեզ և նրանց մի մասը պակասավոր է։ Մեզ չհասած նրա աշխատություններից կարևորը է հիշատակել «Հալածանքի պատմությունը»[41], 542 թ. «Ժանտախտի մասին» մի գրվածք[42], ապա «Ջատագովությունն» ու նրա «Նամակները»[43]։

Կարևոր արժեք է ներկայացնում նրա «Վարք արևելյան երանելի սրբոց» աշխատությունը, որը նա սկսել է շարադրել 566 թ. և ավարտել 568 թ.։ Այս գրքում հեղինակը գրել է 58 միաբնակ եկեղեցական այնպիսի խոշոր գործիչների կամ անձնավորությունների մասին, որոնցից շատերին անձամբ ճանաչել կամ գործակցել է։ Այս գիրքն արժեքավոր է նաև իր ինքնակենսագրական տեղեկություններով, որոնց միջոցով պարզվում են Հովհան Եփեսացու կյանքի մութ կողմերը։

Եվրոպացի ասորագետ Լանդը առաջին անգամ հրատարակել է «Վարք Արևելյան երանելի սրբոցի» ասորերեն բնագիրը[44]։ Ինչպես պարզվում է, այս ձեռագիրը ընդօրինակված է եղել 688 թ. այսինքն հեղինակի գրելուց մոտավորապես մեկ դար հետո։ Ճիշտ է, այլ ձեռագրերում մեզ հասել են տարբեր, ավելի ուշ ընդօրինակություններ, բայց այս հրատարակվածն ամենահինն է։ Այս աշխատությունը կարևոր տեղեկություններ է հաղորդում միաբնակ այնպիսի հայ գործիչների մասին, որոնք մեծ մասամբ գործել են Հայաստանից դուրս, հիմնականում Բյուզանդական կայսրությունում, և այդ պատճառով էլ վրիպել են մատենագիրների ուշադրությունից։ Այդպիսի գործիչներից էր, օրինակ, հայ Արշակունիների հետնորդներից՝ Թովմա անունով

[41] Հ. Եփեսացի, Գ մաս, 2, 5։

[42] Michel le Syrien, Chronique, IX, 28, p. 395.

[43] Հ. Եփեսացի, Գ մաս, 2, 6։

[44] J. Land, Anec. Syr., t. II, pp. 1—288. այն լատիներեն են թարգմանել Van Dauwen, et J. Land, Commentarii de beatis orientalibus et historiae eccles. fragmenta, „Verhandelingen" de l'Academie d'Amsterdam, 1889. անգլերեն թարգմանությունը՝ E. W. Brooks, John of Ephesus, Lives of the Eastern Saints, Paris, 1923. Բրուկսը իր առաջաբանում մանրամասն տվել է ոչ միայն այս ձեռագրի, այլև բովանդակության ուսումնասիրությունը։

հայը, որը VI դարի առաջին կեսին Միջագետքում իր շուրջն է համախմբել միաբնակ գործիչներին ու հավատացյալներին, եռանդուն գործունեություն ծավալել, ղեկավարելով վերոհիշյալների պայքարը Բյուզանդական կայսրության դեմ։ Թովման, ինչպես գրում է Հովհան Եփեսացին, չնայած չարչարանքներին, հալածանքներին և աքսորներին, աննկուն զինվորի նման մինչև կյանքի վերջը հավատարիմ է մնացել իր քարոզած սկզբունքներին։ Հովհան Եփեսացու վկայությամբ Թովման մեծ հեղինակություն է ունեցել Միջագետքում, ուստի վարքի հեղինակը խորին ակնածանքի ու հիացմունքի էջեր է նվիրել իրեն քաջածանոթ հայ գործչին։ Դժբախտաբար ներբողական շնչով լցված Հովհան Եփեսացին փոխանակ պատմական փաստերը արձանագրելու, ընկնում է հրաշապատում զրույցների աշխարհը և այդ պատճառով էլ պատմաբանի համար դժվար է տվյալ անձնավորության մասին որևէ խոսք ասել։ Չնայած այդ դժվարության, Թովմայի վարքը հնարավորություն է տալիս վերականգնել մեզ անծանոթ, VI դարի հայ քաղաքական եկեղեցական մեծ գործչի կերպարը։ Եվ եթե չլիներ Հովհան Եփեսացու աշխատության մեջ Թովմային նվիրված այս 21-րդ գլուխը, ապա Թովման մոռացության կմատնվեր։

Հունական լեզվին ու գրականությանը քաջածանոթ Հովհան Եփեսացին կարողացել է հունական մտքի ճշգրիտ ու գիտական մտածողության ձևերը միաձուլել ասորական գրականությանը յուրահատուկ արևելյան երևակայության գունագեղ պատկերների հարուստ աշխարհին և ստեղծել իր ուրույն ոճը, որը ճիշտ է, մեծ չափով կրում է հունական ազդեցությունը, բայց միևնույն ժամանակ գեղեցիկ է և բանաստեղծական, և այդ է պատճառը, որ մենք այսօր հաճույքով ենք կարդում այդ էջերը։

Նույնը կարելի է ասել Հովհան Եփեսացու Եկեղեցական պատմության լեզվին ու ոճին։ Այս աշխատության միայն երրորդ մասն է հասել մեզ, իսկ առաջին երկու մասերը պակասում են։ Հետաքրքրական է այն, որ հեղինակը վկայում է, թե իր Եկեղեցական պատմությունը սկսել է Հուլիոս Կեսարից[45], մինչդեռ XIII դարի պատմիչ Միքայել Ասորին վկայում է, որ Հովհան Եփեսացին այդ աշխատությունը սկսում է Կոստանդիանոսից[46]։ Այս հարցի վրա կանգ է առել եվրոպացի ասորագետներից Ֆ. Նոն, որն իր մանրակրկիտ ուսումնասիրություններից հետո եկել է այն

[45] J. E., ed. Cureton, Book I, chpt. 3.
[46] Michel le Syrien, Chronique, p. 121 a.

եզրակացության, որ թեև Հովհան Եփեսացին իր Եկեղեցական պատմությունը սկսել է Հուլիոս Կեսարի ժամանակաշրջանից, բայց այդ շրջանի համար նա բացարձակապես օգտվել է Եվսեբիոս Կեսարացու Եկեղեցական պատմությունից։ Նրա երկի այս հատվածը ժողովրդականություն չի ունեցել և ժամանակի ընթացքում աշխատությունից դուրս է մնացել[47]։ Ֆ. Նոն իր մի այլ աշխատության մեջ անդրադառնալով Հովհան Եփեսացու Եկեղեցական պատմության մեզ չհասած երկու բաժինների հարցին, այն միտքն է հայտնում, որ Հովհան Եփեսացու Եկեղեցական պատմության այն բաժինը, որը հասնում էր մինչև 571 թ., Դիոնիսիոս Տելլ Մահրացու և Միքայել Ասորու պատմական երկերի հիմնական աղբյուրներից մեկն է եղել[48]։ Իր մի այլ աշխատության մեջ եզրակացնում է, որ VIII դարի հեղինակ Տելլ Մահրացին[49] իր գրքի Գ մասը շարադրելիս ամբողջությամբ արտագրել է Հովհան Եփեսացու Եկեղեցական պատմության Բ մասը[50]։ Սակայն Ռ. Դյուվալը համամիտ չէ Նոյի այս տեսակետին և գտնում է, որ Տելլ Մահրացին ոչ թե ամբողջությամբ է արտագրել, այլ մասամբ է վերցրել[51]։

Միքայել Ասորին իր 6-րդ գրքի 8-րդ գլխում գրում է, որ մինչև Եփեսոսի ժողովը, այսինքն մինչև 431 թ., պատմությունը գրել են Սոկրատը, Թեոդորիտը, իսկ Հովհան Եփեսացին (Բ մասը) և Զաքարիա Հռետորն իրենց Պատմությունները սկսել են Եփեսոսի ժողովից[52]։ Դիոնիսիոսը ևս վկայում է այն մասին, որ նա իր գիրքը գրելիս Հովհան Եփեսացուց օգտվել է Թեոդոսիոս Փոքրից մինչև Հուստինոս Բ, այսինքն մինչև այն մասը, որտեղ վերջանում էր Հովհան Եփեսացու Բ բաժինը։

Իսկ ինչ վերաբերում է Հովհան Եփեսացու Եկեղեցական պատմության Գ մասին, այն թեև մի քիչ սլակասավոր, բայց հասել է մեզ բրիտանական թանգարանի Add. 14640, VII դարի ձեռագրի

---

47 F. Nau, Notice sur un ms. de Michel le Syrien, „Jour. Asiatique", nov-dec., 1896, p. 526.

48 F. Nau, Etude sur les parties inédites de la chronique eccls., „Rev. de l'Orient chrétien", t. II, 1897, p. 53.

49 Առաջին անգամ հրատարակել է J. Assemani, Catalogue codicum orientalum, Bib. Apost. Vaticanne, t. III, p. 329.

50 F. Nau, Analyse de la seconde partie inédite de l'histoire eccls. de Jean d'Asie, „Rev. de l'Orient", t. II, 1897, pp. 455—493.

51 R. Duval, La littèrature syriaque, p. 182.

52 Michel le Syrien, Chronique, p. 1806.

և մի այլ՝ Add. 14647 ձեռագրի միջոցով, որ ինչպես Դյուվալն է ենթադրում, նույն գրչի արտագրություն է[53]։

Այս երկրորդ ձեռագրում Բ բաժնից հատվածներ էլ կան։ Այս ձեռագիրը հետագայում տարվել է Եգիպտոս և 1843 թ. գտնվել է Նիտրիայի գրագարանի հավաքածուի մեջ։ Բնագիրն առաջին անգամ հրատարակել է անգլիացի ասորագետ Կյուրըտոնը, հետագայում այն թարգմանվել է անգլերենի, իսկ 1862 թ.՝ նաև գերմաներենի։ Վերջին տարիներին Ն. Պիգուլևսկայան հրատարակել է նույն բնագրի շատ համառոտ ռուսերեն թարգմանությունը[54]։

Ինչպես ասացինք, երկու ձեռագրերի միջոցով մեզ հասած Հովհան Եփեսացու Եկեղեցական պատմության Գ մասը լրիվ չէ[55], որոշ հատվածներ հնարավոր է վերականգնել Միքայել Ասորու աշխատության միջոցով[56]։ Գ մասն ընդգրկում է 571—585 թթ. Բյուզանդական կայսրության մեջ և հարևան երկրներում տեղի ունեցած պատմական ու եկեղեցական իրադարձությունները։ Գ մասի առաջին երեք գրքերում հեղինակը պատմում է այն պայքարի մասին, որ միաբնակները ծավալել են քաղկեդոնականների դեմ։ 4—5-րդ գրքերում Հովհանը տալիս է VI դարում միաբնակ եկեղեցու գործունեության պատմությունը, նկարագրում եկեղեցու ներսում եղած ներքին հակասություններն ու երկպառակությունները, և այդ պատճառով առաջացած միաբնակ խմբակցությունները, որոնք պայքարում էին իրար դեմ։ 6-րդ գրքում շարադրված է այդ ժամանակ տեղի ունեցած պատերազմական գործողությունների պատմությունը։

---

[53] R. Duval. La litterature syriaque, p. 182.

[54] W. Cureton, The third part of ecclessiastical history of John bishop of Ephesus. Oxford, 1853: J. Payne-Smith, The third part of the eccles. history of John bishop of Ephesus, Oxford, 1860: J. Schonfelder, Die. Kirchengeschichte des Johannes von Ephesus Aus dem syr. überset, Abhandl, uber die Tritheiten, Munchen, 1852. Н. Пигулевская, Сир. источники.

[55] Օրինակ Բրիտանական թանգարանի add. 14640 ձեռագրում եղած Հովհան Եփեսացու Եկեղեցական պատմության Գ մասի քսան տետրերից կորել են 10-րդ և 20-րդը, իսկ 1-ից մինչև 12-ը լրիվ չէ (Wright, Cat. of the Syriac mss. British Museum, III, 1061—1062, pp. 171—172). այսպես, Գ մասի 6 գրքերի (283 գլուխներից) չունենք I, II, III, V-ի վերջին մասը, ապա նաև VI—VII և IX: Առաջին գրքի սկիզբը XLIII-ի վերջին մասը՝ XLIV—LVI գլուխները։ Երրորդ գրքի I—IV գլուխները, V-ի սկիզբը, XXII-ի վերջին մասը. վեցերորդ գրքի XXXVIII—LIX գլուխները։ Տե՛ս А. Дьяконов, Иоанн Эфесский, стр. 302.

[56] А. Дьяконов, Иоанн Эфесский стр. 311.

Եկեղեցական պատմության Գ մասն, ինչպես Հովհան Եփեսացին է վկայում, գրել է ծանր պայմաններում, փաստորեն այս մասը շարադրել է բանտերի խցերում ու աքսորավայրերում, տառապանքի ու չարչարանքների, ֆիզիկական, բարոյական ու հոգեկան ճնշող մթնոլորտում։ Այդ է պատճառը, որ Գ մասը չունի նախորդ բաժինների տրամաբանական կուռ կառուցվածքն ու պատմական իրադարձությունների նկարագրության մեջ պահպանված հաջորդականությունը։ Ընդհակառակը, այստեղ հանդիպում ենք բազում կրկնությունների, անճշտությունների, որովհետև ինչպես ինքն է պատմում, նա այդ ամբողջը շարադրել է գաղտնի պայմաններում և իր ձեռքի տակ չունենալով նախորդը, կրկնել է տվյալ դեպքի նկարագրությունը։ Մանավանդ պետք է հիշել, որ այդ էջերը գրվել են խոր ծերության տարիներին։ Գ մասի 50-րդ գլխում նա մանրամասն նկարագրում է ստեղծված ծանր պայմանները, թե ինչպես մեկ երկու էջ գրելուց հետո, հանձնել է իրեն համակիր մարդկանց, որպեսզի թշնամու ձեռքն անցնելով չոչնչացվեն։ Այս թերությունները, սակայն, ոչնչով չեն արժեքազրկում Հովհան Եփեսացու Եկեղեցական պատմությունը և այն ասորական պատմագրության մեջ իր ուրույն տեղն ունի։ Հովհան Եփեսացին իր կյանքի հիմնական մասը ճանապարհորդությունների մեջ անցկացնելով, բազում ժողովուրդների ու անհատների հետ շփվելով, մայրաքաղաքի բարձր խավի ու կայսրի, հատկապես Հուստինիանոսի անձնական մտերմությունը վայելելով, կարողացել է պատմական այնպիսի փաստեր ու տեղեկություններ հավաքել, որոնք պատմական եզակի արժեք են ներկայացնում, և եթե չլիներ նրա այս աշխատությունը շատ բան պատմությանը անծանոթ կմնար։

Պատմական այս երկը կապ ունենալով բյուզանդական պալատի ու եկեղեցական բարձրաստիճան գործիչների հետ, հազվագյուտ տեղեկություններ է տալիս 571 թ. հայերի՝ պարսիկների դեմ բարձրացրած ապստամբության մասին։ Նա իր պալատական կապերի շնորհիվ ծանոթանում է այդ ապստամբության առթիվ Բյուզանդիայից օգնություն հայցելու նպատակով Կոստանդնուպոլիս ժամանած հայկական պատվիրակության հետ, որը գլխավորում է հայոց կաթողիկոսը։ Նա գրի է առել այս պատվիրակության անդամների և հայոց կաթողիկոսի պատմածները։ Հովհան Եփեսացին շատ ավելի կարևոր մանրամասնություններ կարող էր հաղորդել հայկական այդ ապստամբության մասին, բայց իր համոզմունքներով բյուզանդական արտաքին քաղաքա-

կանության կողմնակից լինելով, լռության է մատնել Հուստինիանոսի՝ Բյուզանդական Հայաստանում կիրառած նոր քաղաքականությունն ու հայ նախարարական տների դեմ կազմակերպած ճնշումները։ Հովհանն իր այս էջերում աշխատել է գովաբանել ու ցույց տալ, թե ինչպես կայսրն ու իրեն շրջապատող վերնախավը շատ բարյացակամ են եղել հայերի և մասնավորապես մայրաքաղաք ժամանած հայկական պատվիրակության նկատմամբ։

Բանն այն է, որ կայսրի, ինչպես նաև նրա շրջապատի հայերի նկատմամբ ցուցաբերած բարյացակամությունը արդյունք էր ոչ թե մարդասիրական, քրիստոնեական համոզմունքների, այլ այն հանգամանքի, որ Բյուզանդական կայսրության շահերն այդպես էին պահանջում, որովհետև հայկական հողերի Բյուզանդիային միացումը ոչ միայն կընդարձակեր նրա սահմաններն, այլև կստեղծեր մի ամուր պատվար Պարսկաստանի դեմ, մի պատվար, որ ամրացված կլիներ հակապարսկական տրամադրություններով զինված հայ ժողովրդի կողմից։ Եվ եթե հայերը Բյուզանդիային դիմել էին Պարսկաստանի դեմ 571 թ. իրենց ծավալած ազատագրական պայքարի ժամանակ, պատճառն այն էր, որ նրանք գտնում էին, թե երկու չարյաց փոքրագույնը Բյուզանդիայի հետ լինելն էր։ Հայ եկեղեցական գործիչներն էլ, մանավանդ քաջալերում էին Բյուզանդիայի հետ մերձեցումը, որովհետև պարսիկներն ամեն կերպ օգնում էին նեստորականներին նրանց տիրապետության մեջ ապրող քրիստոնյա տարրերին իրենց գերիշխանությանը ենթարկելու համար։ Նեստորականները բոլոր տեսակի արգելքներ ու դժվարություններ էին հարուցում, հատկապես միաբնակների՝ հայկական եկեղեցու գործունեության դեմ։ Նրանց կազմակերպած այս հալածանքներից միաբնակ ասորի եկեղեցին այնքան էր թուլացել պարսկական տիրապետության մեջ, որ ոչնչացման սպառնալիքի տակ էր գտնվում, և ինչպես Գիրք Թղթոցից իմանում ենք, օգնության ձեռք էին երկարել հայ եկեղեցուն։ Դժբախտաբար Հովհան Եփեսացին այս բոլորի մասին լռում է և այդ լռությունն արդարացնում է այն հանգամանքով, որ ինքը որոշել է իր այս գրքում շարադրել այն ամենը, որին ինքն ականատես է եղել։

## 3. ՀՈՎՀԱՆ ԵՓԵՍԱՑՈՒ ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ

Մինչև աղբյուրների հարցի մասին գրելը ուզում ենք կանգ առնել Զաքարիա Հռետորի անունով մեզ հասած աշխատության և

Հովհան Եփեսացու երկի միջև փոխադարձ կապ ունենալու շուրջ եղած գիտական կարծիքների վրա։ Գիտնականներն այս հարցում բաժանվում են երկու խմբի։ Առաջին խումբը գտնում է, որ այս երկու հեղինակներն իրենց գրքերը շարադրել են իրարից անկախ և նրանցից ոչ մեկը չի օգտվել մյուսից, բայց նրանք ունեցել են ընդհանուր մի այլ աղբյուր[57]։ Այդ աղբյուրն, ինչպես ենթադրում են նրանք, Ամիդ քաղաքի դիվանատան փաստաթղթերն են։ Երկրորդ խմբի գիտնականները՝ Բրուկսն ու Ա. Դիակոնովը գտնում են, որ դրանք իրարից կախման մեջ են եղել և Հովհանն իր ձեռքի տակ ունեցել է Զաքարիա Հռետորի անունով մեզ հասած աշխատությունը[58]։ Նույն կարծիքին է նաև Ն. Պիգուլևսկայան, որ Հովհան Եփեսացին պետք է օգտված լինի Զաքարիայից։ Թեև գրում է նա, նրանք ժամանակակիցներ են բայց յուրաքանչյուրը հիմնականում իր գործը շարադրել է անձնական հուշերի հիման վրա։ Հովհան Եփեսացին, անկասկած, օգտվել է Զաքարիա Հռետորի անունով մեզ հասած գործից, և իր այս կարծիքը պաշտպանելու համար բերում է այն փաստը, որ Հովհանն արաբ քրիստոնյաների մասին գրելիս իր տեղեկությունները պետք է քաղած լինի Զաքարիայի ասորերեն բնագրից[59]։

Հովհան Եփեսացին իր Եկեղեցական պատմության Գ մասը շարադրել է անձնական հիշողությունների ու բանավոր խոսքի վրա և, ինչպես երևում է նրա տողերից, մեծ բծախնդրություն է ցուցաբերել։ Հայկական պատվիրակության Կոստանդնուպոլիս ժամանելիս և նրանց պատմածները գրի առնելիս, նա հետևյալ կերպ է արտահայտվում. «Չնայած մենք խոստացել էինք գրել միայն այն մասին, ինչին որ ականատես ենք եղել, և այն բազում

---

[57] **Ahrens-Krüger,** Die Sogenannte Kirchengeschichte des Zacharias Rhetor, Leipzig, 1899, pp. XL—XLIV: **Haase,** Untersuchungen zur Chronik des Pseudo-Dionysios von Tellmahre. „Oriens Christianus", B. 6, H. 1, 1916, p. 83.

[58] **E. W. Brooks,** Historia ecclesiastica Zachariae Rhetori vulgo adscripta, I—II, cap. 1, corpus scriptorum orientalium, Parisiis, 1926, pp. 2, 6, 103, 104: **А. Дьяконов,** Иоанн Эфесский, стр. 245—246.

[59] **Н. Пигулевская,** Сир. источники, стр. 24. *Մենք կանգ չենք առնում այստեղ Եկեղեցական պատմության Ա և Բ մասերի աղբյուրների վրա։ Վերջին անգամ այդ հարցի շուրջ Հաասը, Դիակոնովը, Պիգուլևսկայան իրենց աշխատություններում ուշադրություն են դարձրել և ցույց տվել, որ Հովհանն իր գրքի Ա և Բ մասերը շարադրելիս, օգտվել է Հովհան Անտիոքացու և Յոշվա Սյունակեցու պատմական երկերից. այդ հարցի շուրջ տե՛ս* **Haase,** Untersuchungen, p. 256: **А. Дьяконов,** Иоанн Эфесский, стр. 247: **Н. Пигулевская,** Сир. источники, стр. 24.

փորձությունների մասին, որոնց մոտ չէինք կանգնած, այժմ մտածում ենք, որ արդյոք ճիշտ կլիներ գրել այն հիշողությունների մասին, որոնց ականատես չենք եղել, անձամբ չենք իմացել և ոչ էլ դրանց արժանապատվությունն անձամբ կարող ենք հաստատել։ Թեև մենք հեռու ենք այն երկրներից, որտեղ տեղի են ունեցել այդ բաները, բայց որովհետև այդ ամենն իմացել ենք ոչ թե հասարակ կամ ցածր խավի մարդկանցից, այլ Պարսկական Հայաստանի Դվինում (բազմած) գլխավոր կաթողիկոսից և նրան ընկերակցող եպիսկոպոսներից (դրա համար դրեցինք)։ Նրանք այդ իրադարձությունների մասին մեզ պատմեցին հռոմների թագավորական քաղաքում (Կոստանդնուպոլսում)՝ բազմության ներկայությամբ։ Փախչելով պարսկական իշխանությունից, նրանք ապաստան էին գտել քրիստոնեական պետականության մեջ և մեծ հարգանքով ընդունվել նորին հաղթական մեծության (կայսրի) կողմից. նրանք շատերի ներկայությամբ, խղճմտորեն ու երդումով հետևյալը պատմեցին»[60]։

Այս տողերը հստակ պատկերացում են տալիս այն մասին, թե մեր հեղինակն ինչպիսի խստապահանջություն է ցուցաբերել իր աղբյուրների նկատմամբ, և բնական է, որ նման պատմիչի տվյալները բացառիկ արժեք են ներկայացնում։ Հովհանն այս հատվածը շարադրելիս դուրս է գալիս անձնական հուշերի աշխարհից և գրում է բանավոր խոսքի կամ իր ժամանակակիցների հաղորդածների հիման վրա և պարտք է համարում այդ մասին հիշեցնել ընթերցողին։ Նման բծախնդրությամբ է մոտեցել նա այն նյութերին, երբ ականատեսները հաղորդել են պարսիկների, սլավոնների, ավարների և արաբների մասին[61]։

Հովհան Եփեսացին իր Եկեղեցական պատմության Գ մասում մեծ տեղ է տվել անշուշտ միջեկեղեցական կրոնական ու դավանաբանական վեճերի առիթով կազմակերպված ժողովներին, վեճերին ու երկպառակություններին։ Բացի միջեկեղեցական հարաբերությունների պատմությունից, կանգ է առել նաև սլետությունների և եկեղեցիների հարաբերությունների և նրանց միջև ծագած հակասությունների վրա։ Քանի որ նա ոչ միայն ականատես է եղել այդ վեճերին ու իրադարձություններին, այլև մասնակցել, շատ անգամ էլ հանդես եկել ղեկավար դիրքում, ապա հասկանալի է, թե ինչպիսի արժեք են ներկայացնում այդ հուշերը։ Սակայն

[60] Հովհան Եփեսացի, Գ մաս, գիրք Բ, գլ. 18։
[61] Նույն տեղում, Գ մաս, գիրք Զ, գլ. 19։

այդպիսի դեպքերում, անխուսափելի է նաև անձնական մոտեցումը, և այդ զգացվում է նրա աշխատության յուրաքանչյուր էջում, թեև ինքն ասում է, որ հարցերն ու դեպքերը նկարագրելիս աշխատել է անկողմնակալ լինել։ Նա որպես միաբնակ իր հայացքներում չափավոր է, բայց գործելով մայրաքաղաքում, ընկել է Հուստինիանոս կայսեր ազդեցության ներքո, և նրա հետ գործակցելով, իրականում հանդես է եկել կայսրության շահերը պաշտպանողի դիրքերում։ Հաճախ նա ընդվզել է կայսրության, ինչպես և իր համախոհների միջև առաջացած հակասությունների պատճառով, բայց այդ չի նշանակում, որ նա գործել է կայսրության դեմ։ Նա միշտ էլ ձգտել է իր կողմնակիցների և Բյուզանդական պետության միջև հաշտության եզր գտնել։ Իսկ երբ հարցը վերաբերել է Բյուզանդիայի և Պարսկաստանի շահերին, նա առանց տատանումների միշտ էլ պաշտպանել է Բյուզանդիայի շահերը։ Նա իր քաղաքական համոզմունքներով կայսրության հավատարիմ քաղաքացի էր, այսինքն իր ժողովրդի բախտը կապել էր կայսրության հետ և դա, անշուշտ, արդյունք էր ժողովրդից կտրված լինելուն։ Ասորի մտավորականության հեռացումը ժողովրդից պատճառ դարձավ նրա քայքայման։ Նա կողմնակից էր եկեղեցական միության, բայց նեղ իմաստով, որ օգնի մի կողմից՝ կայսրության քաղաքական ու տնտեսական հզորության և մյուս կողմից՝ իր կուսակցությանը, և ոչ թե միություն ի վնաս կայսրության և իր կուսակցության։ Հովհան Եփեսացին այս սկզբունքին հետևելով, միշտ էլ աշխատել է միաբնակների ու քաղկեդոնականների միջև հաշտության եզր գտնել։ Բայց, ինչպես հստակ կարելի է պատկերացնել, մասնավորապես նրա Եկեղեցական պատմության Գ մասից, նա կյանքում եղել է սկզբունքային և չի պայքարել իր անձնական շահերի ու ապահովության համար։ Երբեք չի ընկճվել, մինչև վերջ կանգնել է իր պաշտպանած դիրքերում և հպարտությամբ է տարել սոսկալի տանջանքները։ Ամենածանր պայմաններում նա կանգնել է իր բարձրության վրա և ստիպել, որ հակառակորդը հարգանքով վերաբերվի իրեն։ Եվ այդպիսի ծանր պայմաններում նա շարունակել է գրել՝ ցուցաբերելով քաջություն և աննկուն ոգի։

Հովհան Եփեսացին իր այս աշխատությունն, ինչպես ինքն է ասում, գրել է տասը երկար տարիների ընթացքում, որպեսզի գալիք սերունդներն իմանան թե ինչպիսի անարդարություն ու անիրավություն էր կատարվում կայսրության ու եկեղեցու հավատարիմ զավակների նկատմամբ՝ չարագործ ու խաբեբա մարդկանց

կողմից[62]։ Նա գրում է, որպեսզի գալիք սերնդի ներկայացուցիչները ևս պայքարեն իրենց սկզբունքների համար և գործիք չդառնան նման չարագործների ձեռքին, և ահա այս գիտակցությամբ լցված, այդ ժամանակ իր առաջացած տարիքի մեջ այս պատկառելի ծերունին, ինչպես ասացինք, գրիչը ցած չի դնում և գրում է[63]։

Հովհան Եփեսացին, որպես բարձրաստիճան եկեղեցական և մանավորապես որպես կայսրության մոտ կանգնած անձնավորություն, բնական էր, ոչ միայն բարյացակամ վերաբերմունք չի ունեցել սոցիալական շարժումների ու ժողովրդական, հակապետական խմորումների նկատմամբ, այլև պայքարել է նման շարժումների դեմ։ Այդ բացահայտ երևում է «հեթանոսության» դեմ նրա կազմակերպած դաժան հալածանքներից ու միջոցառումներից։ Սակայն բախտի տարօրինակ խաղով, հետագայում կյանքի վերջին տարիներին, մեղադրվելով նման անարդար հալածանքների մեջ, ճաշակել է շատ դառնություններ։

## 4. ՀՈՎՀԱՆ ԵՓԵՍԱՑՈՒ ՏԵՂԵԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՀԱՅԵՐԻ ՄԱՍԻՆ

Ինչպես տեսանք հայերի ու Հայաստանի մասին իր տեղեկությունները Հովհան Եփեսացին վերցրել է հայոց կաթողիկոսից և այն անձնավորություններից, որոնք կաթողիկոսին ընկերացել էին Կոստանդնուպոլիս ճանապարհորդելու ժամանակ։ Հայոց կաթողիկոսը շքախմբով Կոստանդնուպոլիս էր ժամանել, որպեսզի կայսրի և նրան շրջապատող անձնավորությունների ուշադրությունը հրավիրեր Հայաստանի վրա, որովհետև հայերն ապստամբվել էին պարսիկներից և այդ ապստամբությունը մինչև վերջ հասցնելու համար, անհրաժեշտ էր բյուզանդացիների օգնությունը։

Հայկական այս ապստամբության մասին թեև համառոտ, բայց հետաքրքրական տեղեկություններ են տալիս նաև հայկական աղբյուրները։ Այսպես «Սեբեոսի եպիսկոպոսի Պատմութիւն» գրքում կարդում ենք. «Եւ եղև ի ԽԱ ամի թագաւորութեան Խոսրովայ որդւոյ Կաւատայ՝ ապստամբեաց Վարդան և ի բաց

---

[62] Հովհան Եփեսացին իր Եկեղեցական պատմության Գ մասը գրել է 575—585 թթ., թեև ունի նաև մասնակի նշումներ։ Այսպես, Գ մասի Ա գրքի 41-րդ գլխում գրում է, որ այն շարադրել է հույների 892 թ., այսինքն՝ 581 թ.։ Այս կապակցությամբ մանրամասնությունները տե՛ս А. Дьяконов, Иоанн Эфесский, стр. 316—318. Հովհան Եփեսացին մահացել է 586 թ.։

[63] Հ. Եփեսացի, Եկեղեցական պատմություն, Գ մաս, գիրք Ա, գլ. 1-ին։

եկաց ի ծառայութենէ թագաւորութեանն Պարսից հանդերձ միաբանութեամբ ամենայն Հայաստանեաւք։ Սպանեալ զՍուրէնն մարզպան յանկարծաւրէն ի Դուին քաղաքի՝ առին զաւար բազում և գնացին ի ծառայութիւն Յունաց»[64]։

Սեբեոսի պատմությունից իմանում ենք, որ հայկական այս ապստամբությունը տեղի է ունեցել Խոսրովի թագավորության 41-րդ տարում, այսինքն՝ 572-րդ տարում[65]։ Մինչդեռ Հովհան Եփեսացին իր գրքում նշում է Ալեքսանդրի 880 թ. այսինքն՝ 569 թ.։ Հետաքրքրական է, որ Հովհան Եփեսացու ասորերեն բնագրի հրատարակիչն ու անգլերենի թարգմանիչը այս թվի կապակցությամբ իր ծանոթագրության մեջ կասկած է հայտնել և ենթադրել, որ տվյալ հատվածում բնագիրն աղավաղված է։ Նա կարծում է, որ հեղինակի բնագրում այն «Ալեքսանդրի 880 և երկու թիվը» (882) եղած կլինի, սակայն հետագայում, գրիչների անփութության պատճառով արտագրության ժամանակ «երկու» բառը մոռացվել է և մնացել միայն 880 թ.»[66]։ Իսկապես Հովհան Եփեսացին մինչ այս հայկական ապստամբության նկարագրությունը, գրում է Հուստինոս Բ-ի հրամանով բյուզանդական կայսրության սահմաններում միաբնակների դեմ հարուցված հալածանքի մասին։ Կայսրի այդ հրամանը, ինչպես գրում է ասորի հեղինակը, տրվել է 571 թ., ուստի պետք է հետևեցնել այն, որ հայկական այս ապստամբությունը սկսվել է 571 թ. Հուստինոսի այդ հրամանից հետո։ Այս եզրակացությունն ավելի համոզիչ է դառնում, երբ կարդում ենք հայկական պատվիրակության գործունեության վերաբերյալ նրա գրած տողերը։ Հովհանը բարյացակամությամբ չի դիտում հայ եկեղեցական ու քաղաքական գործիչների և բյուզանդական եկեղեցու ու արքունիքի միջև կատարված մերձեցման փորձերը։ Ճիշտ է, հայերին մեղադրում է այն հարցում, որ նրանք դավանաբանական տարբերությունները անտեսելով, հաղորդվել են քաղկեդոնականների հետ, բայց իրականում նա արդեն 571 թ. կազմակերպված հալածանքից վրդովված բացասական դիրք էր բռնել ինչպես բյուզանդական արքունիքի, այնպես էլ եկեղեցու նկատմամբ։ Նրա այդ վերաբերմունքը դրսևորվել է հայերի մասին գրելիս, և բնական էր որ նա այդպիսի վերաբերմունք չէր կարող ունենալ մինչև 571 թ.,

---

[64] «Սեբէոսի եպիսկոպոսի Պատմութիւն», Երևան, 1939, գլ. Ջ, էջ 26—27։
[65] Հայտնի է, որ Խոսրովը գահ է բարձրացել մ. թ. 531 թ.։
[66] John of Ephesus, Ecclesiastical history, II, 24, p. 127.

որովհետև մինչ այդ նա եղել էր արքունիքի սիրելին։ Ուստի հայկական ապստամբության վերաբերյալ հայկական աղբյուրների հաղորդածը ավելի մոտ է պատմական ճշմարտությանը և այդ առթիվ Հովհան Եփեսացու ասորական բնագրի հրատարակչի ենթադրությունը պետք է համարել տեղին։

Հովհան Եփեսացին թեև գրում է հայերի ապստամբության մասին, բայց որպես ապստամբության պատճառ հիշատակում է այն, որ պարսիկները փորձում էին բռնի կերպով հավատափոխ անել հայերին։ Անշուշտ, պարսիկների հակաքրիստոնեական քաղաքականությունն ունեցել է իր կարևոր դերը։ Պարսիկները դեմ էին քրիստոնեության, որովհետև այն մի կողմից Բյուզանդիայի հետ հայերին կամրջելու դեր էր կատարում, իսկ մյուս կողմից նպաստում էր մշակույթի զարգացմանը։ Ուստի նրանց հակաքրիստոնեական դիրքորոշումը հասկանալի է։ Այդ վիճակը համարյա միշտ էլ գոյություն է ունեցել և հայ պատվիրակությունն էլ նկատի է ունեցել այդ հանգամանքը բյուզանդական արքունիքում։ Ապստամբության պատճառների մասին հետաքրքրական տեղեկություններ է տալիս մեր պատմիչներից Ասողիկը և պատմում, որ ապստամբությունը սկսվեց այն պատճառով, որ պարսիկ պաշտոնյաները ոչ միայն հարստահարում էին հայերին, այլև քաղաքական ճնշում գործադրում։ Նրանք իրենց անբարոյական վարքով և օրենքներով քայքայում էին հայ ընտանեկան բարքերը։ Ասողիկը գրում է. «Եւ ապա Խոսրով արքայ Պարսից զՍուրէն ոմն ազգական իւր, որում անուն էր Ճիհովր-Վշնասպ՝ հանէ ի հազարապետութիւն հայոց։ Որ եկեալ կալաւ զերկիրս մեր, յոյժ հարստահարելով զնախարարս հայոց. զի շնայր ընդ կանայս ազատաց, ոչ առնելով զայրն տէր կնոջ իւրոյ։ Ընդ որ զայրացեալ Վարդանայ բդեշխի որդւոյ Վասակայ, որ էր յազգէն Մամիկոնէից՝ սպասեալ դիպող ժամանակի սուսերահար առնէր զՍուրէն մարզպան (և) յերկիր կործանէր, յամի քառասներորդի առաջներորդի թագաւորութեանն Խոսրովու, որ է ամ եօթներորդ թագաւորութեան Յուստիանոսի, յամսեանն արեգի քսաներկուսն ամսոյն, որ է փետրուարի, յաւուր երեքշաբաթւոջ»[67]։

Պատմիչը ոչ միայն թվում է ապստամբության պատճառները, այլև ժամանակի վերաբերյալ տալիս մանրամասն տվյալներ։

---

[67] «Ստեփանոսի Տարօնեցւոյ Ասողկան Պատմութիւն Տիեզերական», Պետերբուրգ, 1885, Բ հանդէս, գլ. Բ, էջ 84—85։

Հայկական այս ապստամբության ժամանակի հարցի շուրջ առաջին անգամ իր Պատմություն Հայոցի մեջ կանգ է առնում Չամչյանը։ Հայկական և օտար աղբյուրների վկայությունները նկատի ունենալով նա գալիս է այն եզրակացության, որ ապստամբության սկիզբը, այսինքն Սուրեն մարզպանի սպանությունը տեղի է ունեցել «յամի տեառն 571 և ի թուին Հայոց ի յարեգի 22, այն է ի մարտի 30»[68]։ Այդ հարցին անդրադառնում է նաև ֆրանսիացի հայագետ Դյուլորիեն։ Ասողիկի վկայության համաձայն նա տոմարական հաշվումներ կատարելուց հետո գրել է, որ Հուստինոս Բ-ի թագավորության է տարին համապատասխանում է 571—572 թթ.։ 571 թ.-ին հայկական տարին սկսել է հուլիսի 7-ին և վերջացել 572 թ., նույն ամսի 6-ը ներառյալ։ Նա գտնում է, որ 572 թ. արեգ ամսի (փետրվար) երկուսն է, որ երեքշաբթի է ընկնում, մինչդեռ նույն թվի փետրվարի 22-ը երեքշաբթի է, ուստի ֆրանսիացի գիտնականը գտնում է, որ ապստամբությունը սկսված կլինի 572 թ. փետրվարի 2-ին[69]։ Հնարավոր է, որ Ասողիկի բնագրի հետագա ընդօրինակությունների ժամանակ 2-ը դարձած կլիներ 22։ Այսպիսով, հայկական աղբյուրները լրացնում են Հովհան Եփեսացուն ու պարզում ապստամբության ճիշտ թվականը։ Ինչպես նշեցինք, հայկական աղբյուրները լրացվում են՝ ապստամբության պատճառների մասին նոր տեղեկություններ հաղորդելով։ Արդեն նշեցինք, որ Հովհան Եփեսացու մոտ ապստամբության պատճառ է գիտված դավանափոխությունը։ Մի օր մոգերը գալիս են Խոսրով արքայի մոտ և հայտնում նրան, որ բյուզանդական կայսրը պահանջում է իր հպատակներից քրիստոնեություն ընդունել, ուստի թող ինքն էլ իր հպատակներից պահանջի, որ նրանք էլ ընդունեն մեր հավատը։ Խոսրովը համաձայնվում է մոգերի առաջարկին և հրաման տալիս ձերբակալել եպիսկոպոսներին և հալածել քրիստոնյաներին։ Պարսիկներն իրենց նպատակին հասնելու համար որոշում են Հայաստանում ատրուշան կառուցել, և այդ պատճառով էլ ժողովուրդն ապստամբվում է[70]։

Հովհան Եփեսացին, ինչպես ինքն է խոստովանվում, հեռու լինելով Հայաստանից, չէր կարող ճիշտ պատկերացում ունենալ

---

68 Մ. Չամչեանց, *Պատմութիւն Հայոց*. Վենետիկ. 1785, հատ. Բ, էջ 284։

69 E. Dulaurier, Recherches sur la chronologie arménienne, Paris, 1869 pp. 206—207.

70 Հովհան Եփեսացի, *Եկեղեցական պատմություն*, Գ մաս, գիրք Բ, գլ. 19։

քաղաքական իրադարձությունների մասին, դրա համար էլ բավարարվել է լսածով։ Հայտնի է, որ Վահան Մամիկոնյանի օրոք և նրա գլխավորությամբ 485 թ. պարսկական տիրապետության մեջ մտնող Հայաստանում ստեղծվեց քաղաքական կիսանկախ վիճակ և հիմնվեց տանուտիրական իշխանություն։ Քաղաքական այս կիսանկախ վիճակում, ինչպես իմանում ենք մեր պատմիչների տվյալներից, ծավալվել է մեծ շինարարություն, երկիրը վերելք է ապրել։ Հայ նախարարները, որոնք իշխանության գլուխ էին անցել, ամեն կերպ աշխատում էին ամրապնդել իրենց քաղաքական ինքնուրույնությունը, և այդ, բնականաբար, հաճելի չէր պարսիկներին։ Նրանք փորձում էին արգելքներ հարուցել այդ ուղղությամբ, որովհետև ստեղծված իրավիճակը հակասում էր իրենց վարած ձուլման քաղաքականությանը, և այդ նպատակով հայ մարզպան Մժեժ Գնունու մահվան (550) առիթից օգտվելով, Սասանյանները Հայաստանում պարսիկ մարզպան նշանակեցին։ Ժողովուրդը հասկանում էր, որ հարվածը նախապատրաստվում է հայերին քաղաքական իրավունքներից զրկելու համար։ Նրանք հնարավորություն չունենալով, սպասում էին հարմար առիթի։ Այդ կապակցությամբ արժե հիշատակել Սեբեոսի վկայությունը.

«Յետ Վահանայ կալաւ զիշխանութիւնն Վարդ Պատրիկ եղբայրն նորա սակաւ ինչ ժամանակ, և մեռաւ։ Զկնի նորա եկին մարզպան պարսիկք. ապա ո՛չ կարացին պատերազմել Հայք, ի հնազանդութեան կացին մինչև ցՍուրէնն մարզպան և ցՎարդանն Մամիկոնէից տէրն»[71]։

Հարմար առիթը ներկայանում է և երկրում ապստամբության համար հող է նախապատրաստվում ոչ միայն քաղաքական այս ճնշումների կապակցությամբ, այլև տնտեսական նոր միջոցառումների պատճառով, որովհետև Խոսրով արքայի օրոք հարստահարումները մեծ չափերի էին հասնում։ Իսկապես, Խոսրով արքայի հարկային նոր քաղաքականությամբ ժողովուրդը ընկել էր ծանր կացության մեջ։ Նրա հրամանով չափագրել էին մարզպանական Հայաստանի մշակելի դաշտերն ու հողերը, որպեսզի հողահարկից ազատ չլիներ ոչ մի հողամաս։ Բացի այդ, նոր մարդահամարով գլխահարկի ենթակա բոլոր անձնավորություններին թույլ չէին տալիս խուսափել գլխահարկի վճարումներից։ Եթե ժողովուրդն առաջ բնամթերքով էր վճարում, ապա նոր քաղաքականությամբ հարկահավաքները պահանջում էին հարկը

[71] «Սեբէոսի եպիսկոպոսի Պատմութիւն», գլ. Զ, էջ 26։

և բնամթերքով և փողով։ Պարսիկների հարստահարման այս քաղաքականության հիմնական նպատակներից մեկը նաև այն էր, որ երկիրն աղքատացնելով, հնարավորություն չտան նրան ռազմականապես ուժեղանալու։

Ահա այն հիմնական պատճառները, որոնք ներքին ուժերին դրդեցին համախմբվելու, անելանելի դրությունից ելք որոնելու ու ապստամբության նախապատրաստվելու համար։ Ինչպես դիտենք, առիթը ներկայանում է այն ժամանակ, երբ Սուրեն մարզպանը փորձում է Հայաստանի մայրաքաղաք Դվինում ատրուշան կառուցել։ Հայերն, ինչպես Հովհան Եփեսացին է պատմում, նախ համոզում են պարսիկներին իրենց այդ մտադրությունից հրաժարվելու, բայց երբ տեսնում են, որ նման փորձերն արդյունք չեն տալիս, դիմում են զինված ապստամբության։ Ապստամբությունը ղեկավարում էր Վարդան Մամիկոնյանը կամ ինչպես մատենագրության մեջ ընդունված է նրան անվանել «Կարմիր Վարդանը»։ Ապստամբները առաջին հերթին հարձակվում են Դվինի վրա, որտեղ Սուրեն մարզպանն էր ամրացած, շրջապատում են նրանց և թույլ չեն տալիս դրսից օգնություն ստանալու։ Նրանց հաջողվում է պարտության մատնել թշնամի զորքերին և նույնիսկ սպանել մարզպանին։ Այդ պատերազմական գործողություններին, ինչպես ասորի պատմիչն է վկայում, հայերից մասնակցում էր քսան հազար զինվորներից կազմված մի բանակ. նա գրում է. «Մեր Տիրոջ՝ Հիսուս Քրիստոսի անունով (հայերը) աղաղակելով հարձակվեցին նրանց (պարսիկների) վրա։ Քրիստոսն ընկճեց նրանց (ուժը) այս երկրի բնակիչների առաջ, և նրանք բոլորին մինչև վերջին մարդը կոտորեցին։ Նրանք (հայերը) սպանեցին նաև մարզպանին, վերցրին նրա գլուխը և ուղարկեցին պատրիկ Հուստինոսին, որ այն ժամանակ բանակել էր սահմանի վրա՝ Թեոդոսիուպոլիս քաղաքում»[72]։

Այս իրադարձությունների մասին շատ համառոտ տեղեկություններ են տալիս նաև մեր պատմիչները։ Սեբեոսը գրում է. «Վարդան և ի բաց եկաց ի ծառայութենէ թագաւորութեան Պարսից հանդերձ միաբանութեամբ ամենայն Հայաստանեաւք։ Սպանեալ զՍուրէնն մարզպան յանկարծաւրէն ի Դուին քաղաքի՝ առին զաւար բաղում և գնացին ի ծառայութիւն Յունաց»[73]։ Սեբեոսի և Հովհանի վկայությունները հիմնականում համրնկնում են, բայց

---

72 Հովհան Եփեսացի, Եկեղեցական պատմություն, Գ մաս, գիրք Բ, գլ. 20։
73 «Սեբէոսի եպիսկոպոսի Պատմութիւն», գլ. Ձ, էջ 26—27։

ըստ հայ պատմիչի վկայության, որը շատ ավելի հավանական է, հայերը հանկարծակի հարձակվում են պարսիկների վրա, մինչդեռ ասորի հեղինակը պատմում է, որ պարսկական և հայկական բանակները տեղավորվել էին իրար դեմ և ճակատամարտել։ Բացի այդ, Հովհան Եփեսացին գրում է, որ հայերն այդ հաղթանակից հետո շարունակում են պատերազմական գործողությունները և տեղի են ունենում բազում ճակատամարտեր, մինչդեռ Սեբեոսից այն տպավորությունն է ստացվում, որ հայերն հաղթանակից հետո, իրենց ավարը վերցնում ու գնում են ծառայելու հույների մոտ, որ ավելի քիչ հավանական է։ Հովհանը պատմում է, որ այդ բազում ճակատամարտերի պատճառով, որ ստիպված էին հայերը մղել պարսիկների դեմ, ճիշտ է, նրանք շատ անգամ հաջողությունների հասան ու նույնիսկ պարսիկներից փղեր գրավեցին, բայց նրանց երկիրը տնտեսապես շատ տուժեց և բազում ավերածությունների ենթարկվեց[74]։

Համենայն դեպս ասորի պատմիչի վկայությամբ, Սուրեն մարզպանի սպանությունից ու մայրաքաղաքի ղրավումից հետո, պայքարը չի ավարտվել և հայերը ստիպված են եղել «պարտիզանական» կռիվներ մղել պարսկական տեղական գնդերի դեմ։ Այն կարծիքը, (որ ստեղծվել էր պատմիչների տվյալների հիման վրա) թե Վարդանն իր ընտանիքով լքում է հայրենի երկիրն ու գնում Բյուզանդիա, ճիշտ չէ, այդ հեռացումը շատ ավելի ուշ է տեղի ունեցել։ Հայկական աղբյուրների ուշադիր քննությունը նույնպես հաստատում է այն։ Հետագայում, երբ Խոսրով արքան հզոր բանակով գալիս է այս անգամ Հայաստանի և Բյուզանդիայի դեմ պատերազմելու, Սեբեոսի վկայությամբ, նույն Վարդանն է, որ Հայաստանում դիմադրություն է ցույց տալիս։ Այս առթիվ պատմիչը գրում է. «Այս այն Վարդան է, յորոյ վերայ եկն ինքն արքայն Պարսից, կոչեցեալ Անուշ Ռուան Խոսրով, հանդերձ բազմութեամբ սպառազէն ղաւրացն և փղաւք բազմաւք, և ճանապարհ կալեալ ընդ գաւառն Արտաւզու՝ գնաց ընդ Բագրևանդ, զանց արարեալ զԿարնոյ քաղաքաւ։ Եւ կալեալ ճանապարհ գնաց ի Մեղիտինէ և բանակեցաւ դէմ յանդիման նորա»[75]։

Սեբեոսից իմանում ենք, որ մինչ Խոսրովի արշավանքն էլ, Պարսկաստանի հետ հայերի ունեցած պայքարը շարունակվել է։ Պարսկական արքունիքը Սուրեն մարզպանի սպանությունից հետո

---

[74] Հովհան Եփեսացի, Եկեղեցական պատմություն, Գ մաս, գիրք Բ, գլ. 21։

[75] «Սեբէոսի եպիսկոպոսի Պատմութիւն», գլ. Զ, էջ 27։

այլ զորավարներ է ուղարկում, որ ճնշի հայկական ապստամբությունը, սակայն պարսիկների կիրառած միջոցառումներն, ինչպես պետք է ենթադրել Սեբեոսի իսկ տվյալներից, արդյունքի չեն հասնում. Սեբեոսը գրում է. «Յորժամ սպանին զՍուրէն մարզպան՝ ի նմին ամի եկն Վարդան Վշնասպ ոմն, և գործ ինչ ոչ կարաց գործել. եկաց ամ մի և գնաց»։

«Ապա եկն և Գողոնն Միհրանն ի հազարաւ զաւրաց սպառազինաց և փղաւք բազմաւք, և ունէր նա ընդ ինքեան սաստիկ բազումս ի ճամբարէ անթիւ ազգացն, որ բնակեալն են ընդ լեռնակողմամբն Կովկասու ազգք Հոնաց, և հրաման յարքայէն՝ զի անճետս արասցեն զարս ի յաշխարհէն Հայոց, խլել, բրել, յատակել և անխնայ յերկիր կործանել։ Եւ եկեալ նա, բայց եթէ ուրեք յանմատոյց ամրոցաց ուրեմն մնացեալ ապրեցան մարդիկ և կամ թէ՝ ուրեք ի հեռագոյն աշխարհս փախստական գնացին։ Բայց սակայն ոչ կարացին բազումք ճողոպրել. քանզի զորս գտանէին՝ սուր ի վերայ եդեալ սատակէին։ Սա արար կռիւ մի ի Վիրս և պարտեցաւ։ Եկն ի Հայս, և առ զԱնկղ սուտ երդմամբ»[76]։

Պատմիչը նկարագրում է այն դժվարությունները ու պատերազմական գործողությունները, որ հայերը ստիպված էին մղել կովկասյան ժողովուրդներից համալրված պարսկական բանակների դեմ։ Հայերը հասկանում են, որ մենակ դիմագրել պարսիկների հաճախակի հարձակումներին, անհնար է, ուստի որոշում են կաթողիկոսի գլխավորությամբ պատգամավորություն ուղարկել Կոստանդնուպոլիս Բյուզանդիայից օգնություն խնդրելու համար։ Այդ հայկական պատգամավորությունը Բյուզանդիա է գնում, ինչպես Հովհան Եփեսացին է վկայում, նախքան Խոսրով արքայի ձեռնարկած մեծ արշավանքը։ Անկասկած Խոսրովը վրդովված բյուզանդացիների կողմից Հայաստան ուղարկված բյուզանդական բանակից, վերսկսում է պատերազմական գործողությունները։ Մինչ այդ հարցին անցնելը, տեսնենք, թե ո՞վ էր այն հայ կաթողիկոսը, որը գլխավորում էր Կոստանդնուպոլիս գնացող հայկական պատգամավորությունը, ինչպես Հովհան Եփեսացին, այնպես էլ հայ պատմիչները ոչ մի անուն չեն հիշատակում։

Օրմանյանն իր «Ազգապատումի» մեջ տվել է հայ կաթողիկոսների կյանքի ու գործունեության պատմությունը և իր այդ գրքից իմանում ենք, որ 557 թ. Ներսես Բ Բագրևանդացի կաթողիկոսի մահից հետո, կաթողիկոսական աթոռին է բազմում

---

[76] «Սեբէոսի եպիսկոպոսի Պատմութիւն», գլ. Է, էջ 30։

Հովհաննես Բ Գաբեղյանը։ Նա գրում է. «Իր հայրապետութեան միջոցը 15 կամ 17 տարի գրուած է անխտիր զանազան պատմագրութեանց մէջ, ինչ որ յայտնապէս Ծ և Է թուատառերու փոխանակութեան հետևանք է, այլ պատմական պարագաները կը թելադրեն 17 տարին նախադասել։ Միւս կողմէն պիտի տեսնենք, որ Յովհաննէս իր վերջի երկու տարիները աթոռէն հեռու անցուց, եւ գուցէ այգ երկու տարիներն են, զորս ոմանք ուզած են զեղչել իր կաթողիկոսութենէն։ Յովհաննէսի ընտրութիւնը 557-ին դնելով, իր մահը կ՚իյնայ 574-ին»[77]։ Այսպես, ուրեմն, 572 թ. ապստամբության ժամանակ Դվինում կաթողիկոսական իշխանությունը Հովհաննես Գաբեղյանի ձեռքում էր գտնվում, և նա էլ գլխավորեց Կոստանդնուպոլիս գնացող հայկական պատգամավորությունը։

Հովհաննես կաթողիկոսի մասին մեր պատմիչներից Ասողիկը հետևյալ տեղեկություններն է տալիս. «Եւ զկնի Տեառն Ներսիսի եկաց կաթողիկոս Հայոց Տէր Յովհաննէս ի գաւառէ Գաբեղենից ի գեղջէ Սիւնձեղնոյ, ի վանականութենէ Թաթլոյ վանից ամս ԺԵ»[78]։ Մ. Օրմանյանը Գարեղյան գավառի մասին գրում է, որ այն այժմյան Կաղզվանի շրջանն է, և Հովհաննես կաթողիկոսը, ինչպես մեր աղբյուրներում կա, Սյունձեղուն գյուղից էր[79]։

Այստեղ, դեռ վաղուց, Մեսրոպ Մաշտոցի աշակերտներից երկու եղբայրներ՝ Վարոսը և Թաթուլը Վարդանանց 451 թ. պատերազմից հետո, վանքեր էին հիմնել և իրենց ուսուցչի գործունեությունը շարունակել Գաբեղյան գավառում։ Ուրեմն Հովհաննես կաթողիկոսը Ասողիկի վկայությամբ իր ուսումն ստացել էր այս երկու եղբայրներից՝ Թաթուլի հիմնած վանքում։ Հովհաննես կաթողիկոսից մեզ հասած մի քանի թղթեր վկայում են, որ նա եղել է արթուն հովիվ և իրեն նվիրել է հայ եկեղեցու շահերի պաշտպանությանը[80]։ Դժբախտաբար մեր մատենագետներն այլ տեղեկություններ չեն տալիս այս գործունյա կաթողիկոսի մասին։

---

[77] Մ. Օրմանեան, Ազգապատում, հատ. Ա, մասն Բ, Պէյրութ, 1959, էջ 557։

[78] «Ստեփաննոսի Տարօնեցւոյ Ասողկան Պատմութիւն Տիեզերական», գլ. Բ, էջ 83։

[79] Մ. Օրմանեան, Ազգապատում, հատ. Ա, մասն Ա, էջ 443—444։

[80] Սյունյաց եպիսկոպոսին և Աղվանքի եպիսկոպոսներին գրած իր թղթերում կոչ է անում նրանց՝ պայքարել նեստորականների և քաղկեդոնականների դեմ, և նրանցից այն անձնավորությունների հետ «հաղորդիլ», որոնք գրավոր նզովում են և՛ նեստորականներին և՛ քաղկեդոնականներին, տե՛ս «Գիրք թղթոց», էջ 78 և 81։

Հովհան Եփեսացին, անշուշտ, առանց կաթողիկոսի անունը տալու, տեղեկություններ է հաղորդում նրա Կոստանդնուպոլսում ծավալած գործունեության մասին։ Դա արժեքավոր է, որովհետև միայն ասորի այս պատմիչի աշխատության շնորհիվ կարող ենք իմանալ հայոց կաթողիկոսի և նրան ուղեկցող մյուս անձնավորությունների առաքելության մասին։ Թեև ասորի հեղինակը բարձր է գնահատում և բազում գովեստներ շռայլում բյուզանդացիների՝ հայերին ցույց տված ընդունելության մասին, բայց միևնույն ժամանակ հիշատակում է, որ բյուզանդական արքունիքը նման շքեղ ընդունելության միջոցով ցանկանում էր հայ եկեղեցուն պարտադրել Քաղկեդոնի ժողովի որոշումները, և այդ ճանապարհով նրան ենթարկել բյուզանդական եկեղեցու գերիշխանությանը[81]։

Հայոց Հովհաննես կաթողիկոսը քաղաքական նկատառումներով, այսինքն Բյուզանդիայի օգնությունը ապահովելու համար, ձգտում է եկեղեցական հարցեր չհարուցել և նույնիսկ զիջումի գնալով, նրանց հետ հաղորդվել։ Դա ցույց է տալիս, որ նա ելնելով իր ժողովրդի շահերից իրեն հեռու է պահում մեծ կարևորություն ներկայացնող կրոնական վեճերից։ Թեև Հովհան Եփեսացին հայոց կաթողիկոսի և նրա համակիրների այդ զիջումը վերագրում է հայերի միամտության, անգիտության, բայց այս հարցում սխալվում է ասորի պատմիչը։ Այդ առթիվ նա գրում է, որ հայկական պատգամավորությունը մեծ հարգանքով է ընդունվում կայսրի և նրա ներկայացուցիչների կողմից։ Նման շքեղ ընդունելությունից հետո հայոց կաթողիկոսը, հայ եպիսկոպոսներն ու հայ մեծամեծները քաղկեդոնականների հետ եկեղեցի են գնում ու պատարագի միջոցին միասին հաղորդվում։

Ինչպես նշեցինք, Հովհան Եփեսացու այս մեղադրանքը հայկական պատվիրակության հասցեին, ճիշտ չէ, մանավանդ եթե նկատի առնենք այն, որ Հովհաննես կաթողիկոսը երբ Ապահունյաց եպիսկոպոս էր, մասնակցել էր Դվինի ժողովին, որտեղ հայ եկեղեցական վերին իշխանությունը բանադրել էր և՛ նեստորականությունը և՛ քաղկեդոնականությունը։ Նրա քաղկեդոնականության մասին գիտակ լինելը պարզ երևում է իր նամակներից, որոնք վերևում նշեցինք. Այդ նամակներն անկասկած, նա գրել էր մինչ Կոստանդնուպոլիս գնալը, որովհետև մեզ հայտնի է, որ նա այնտեղից չվերադարձավ և կայսրության մայրաքաղաքում կնքեց

---

81 Հովհան Եփեսացի, Եկեղեցական պատմություն, Գ մաս, գիրք Բ, գլ. 23։

իր մահկանացուն։ Իր այս նամակներում նա զգուշացնում է հավատացյալներին՝ հեռու մնալ նեստորականներից և քաղկեդոնականներից։ Հասկանալի է, որ Հայոց Հովհաննես կաթողիկոսը, նրան ընկերակցող եպիսկոպոսներն ու հայ նախարարները նման զիջումի են դիմել բյուզանդացիներից ռազմական օգնություն ստանալու համար։

Պիտի ասել, որ այս անգամ բյուզանդացիներին ուղղված հայերի դիմումը ճիշտ ժամանակին էր, որովհետև բյուզանդական կայսր Հուստինոս Բ-ն հարմար առիթի էր սպասում պարսիկների հետ հաշիվ մաքրելու համար, և ամենահարմար առիթը ստեղծվում էր հայերի ապստամբությամբ։ Միայն դրանով պետք է բացատրել մայրաքաղաքում հայերին ցույց տրված ջերմ ընդունելությունը։ Հուստինոսը առիթ էր փնտրում խախտելու Խոսրով Անուշիրվանի և Հուստինիանոս Ա-ի միջև 562 թ. կնքված դաշնագրությունը, որովհետև այդ դաշնագրության համաձայն Բյուզանդիան պարտավոր էր ամեն տարի Սասանյաններին վճարել 30000 ոսկի դրամ, մինչդեռ ամբողջ գումարը վճարվում էր տասը տարին մեկ անգամ։ Հուստինոս Բ-ն օգտվելով առիթից բյուզանդական բանակը շարժում է դեպի Պարսկական Հայաստան և հայերին օգնելու պատրվակով, միևնույն ժամանակ մտածում է նվաճել ամբողջ Հայաստանը։ Այս պատերազմական գործողությունները երկարատև պատերազմի սկիզբ հանդիսացան և տևեցին մինչև 591 թ.։ Անշուշտ, այդ երկար տարիների պայքարը ծանր հետևանք ունեցավ հայերի համար և ժողովուրդը բազում վշտերի մատնվեց։

Ասողիկն իր գրքում մի քանի տողերով նկարագրել է այդ պատկերը. «Եւ այս են ժամանակք մարտից երկպառակութեան, անթիւ սպանմանց, գերութեան առից, խռովից, կապանաց, նեղութեանց, պակասութեանց, խիստ սովու, սրոյ և մարդամահու, աւերելոյ աւանից, հրդեհից, շինուածոց և ամենայն վնասուց բազում աշխարհաց յերկուց կողմանց հասանէր՝ մոռացեալ աստուածապաշտութիւն»[82]։ Պատմիչի այս տողերում պատկերված են Հայաստանում եռ տեղի ունեցած բազում արյունահեղություններն ու դժբախտությունները։

Բյուզանդական բանակի Հայաստան մտնելուց հետո Խոսրովը մի հոծ բանակով գալիս է Հայաստանում գտնվող բյուզանդական զորքի դեմ։ Բայց կայսրը նախօրոք իմանալով, որ պարսիկները

---

[82] «Ստեփանոսի Տարօնեցւոյ Ասողկան Պատմութիւն Տիեզերական», գլ. Բ, էջ 85։

նման արշավանք անպայման կկազմակերպեն, ավելացրեց Հայաստանում եղած բյուզանդական զորքի քանակը, և տեղի հայ նախարարների համակրանքն ամրապնդելու նպատակով բազում նվերներ պարգևեց նրանց։ Այս ժամանակ ամբողջ Հայաստանը գտնվում էր բյուզանդացիների գերիշխանության ներքո։ Երբ Խոսրովը տեսնում է, որ Պարսկական Հայաստանը շատ է ամրացված և ինքն այնտեղ հաջողությունների չի կարող հասնել, արշավում է Բյուզանդական Հայաստանի վրա, բայց ասորի պատմիչի վկայությամբ, նորից արդյունքի չի հասնում։ Սակայն բյուզանդացիների այս հաջողությունները երկարատև չեն լինում և պարսիկներն օգտվելով բյուզանդական բանակի հրամանատարների անճարակությունից, վերագրավում են Պարսկական Հայաստանը[83]։

Հայ ժողովուրդն այս բոլոր իրադարձություններից, մանավանդ բյուզանդական բանակի պարտությունից և նորից պարսիկների գերիշխանության տակ ընկնելուց հետո, պարզ է, որ մեծ հուսախաբություն է ապրում։ Պարսկական Հայաստանում ապրող հայերից շատերն արդեն մեղադրում են Կոստանդնուպոլսում գտնվող հայկական պատվիրակությանը նրանց կատարած զիջումների համար։ Թեև Հովհան Եփեսացին ուղղակի ոչինչ չի ասում, բայց նրա պատմածից այդ կարելի է եզրակացնել։ Նա գրում է, որ երբ Հայաստանի հայերը իմացան հայ կաթողիկոսի և նրա ընկերակիցների՝ քաղկեդոնականների հետ հաղորդվելու մասին, մի խիստ նամակ գրեցին, որի մասին ասորի պատմիչը նախընտրում է լռել։

Այս նամակը սակայն շատ շուտ էր գրված, ինչպես ասացինք, բյուզանդացիների պարտությունից և Պարսկահայաստանը պարսիկներից վերանվաճվելուց հետո։ Այս նամակը ուներ նաև քաղաքական նշանակություն, այսինքն տեղի ունեցած դժբախտությունների ու բյուզանդացիների հետ համագործակցելու մեղքը բարդում էին Բյուզանդիա գնացած պատվիրակության, հատկապես կաթողիկոսի վրա, և այդ էր պատճառը, որ Հայոց կաթողիկոսը այլևս չվերադարձավ հայրենի երկիրը, չնայած ինչպես ինքն, այնպես էլ իր ընկերները նման հուսախաբություն էին ապրել կայսրության մայրաքաղաքում։ Անշուշտ միայն նամակը չէր, այլ նաև այն վերաբերմունքը, որ հայ պատվիրակությանը ստիպեց հեռանալ քաղկեդոնականներից և պաշտպանել իրենց եկեղեցու անկախությունը։

Հովհան Եփեսացու աշխատության հետևողությամբ, այս

[83] Հովհան Եփեսացի, Եկեղեցական պատմություն, Գ մաս, գիրք Բ, գլ. 24։

իրադարձությունների մասին գրել է նաև Միքայել Ասորին։ Նա ևս պատմում է, թե ինչպես Խոսրով արքան հայերին կռապաշտություն ստիպելու նպատակով հալածանքներ է սկսում և հայերը դրա համար ապստամբվում են։ Հետաքրքրական է, որ Միքայել Ասորին իր գրքում հիշատակում է այդ առթիվ Պարսից արքայի և կայսրի միջև տեղի ունեցած թղթակցությունը, իբր թե Խոսրով արքան, կայսրին գրած իր նամակում, հետևյալ խոսքերն է գրել. «լավ չէ, որ դու ձեռք ես երկարում այն ժողովրդին, որ ապստամբվել է իր թագավորի դեմ, և եթե դու այդ ժողովրդին ետ չվերադարձնես ապա վերադարձրու հարկատու երկիրը»։ Այս նամակին իբր Հուստինոս Բ-ն պատասխանում է. «Ես քո ձեռքը չեմ հանձնի մի քրիստոնյա ժողովրդի, որը լքել է սատանաների պաշտամունքը և ինձնից օգնություն է խնդրել»։ Հուստինոսի այս պատասխանից Խոսրովը ջղայնանում է և երկրորդ անգամ գրում. «Եթե դու չտաս ինձ այդ ժողովրդին և դու մեզ չվերադարձնես երկիրը, ապա տուր այն ոսկին, որը քո (նախորդ) կայսրերը որպես հարկ վճարում էին Հայաստանի համար և (այդ կատարելու դեպքում) խաղաղություն կլինի մեր միջև»։ Հուստինոսը պատասխանում է նրան և հիշեցնում, որ նույն ձևով պարսիկները Մծբինը պայմանականորեն էին վերցրել, բայց չեն վերադարձնում[84]։

Միքայել Ասորին, հայտնի չէ, թե ինչ աղբյուրներից է տալիս այս նամակների համառոտ բովանդակությունն։ Համենայն դեպս, նա իր տեղեկությունները նույնությամբ վերցնում է Հովհան Եփեսացուց և պատմում, թե ինչպես մոգերը Խոսրով արքային թելադրեցին իր տիրապետության մեջ ապրող քրիստոնյաներին հալածել[85] և թե ինչպես Խոսրովը, երբ փորձեց ատրուշան կառուցել Հայաստանում, հայերը ընդվզեցին և սաստիկ պատերազմ տեղի ունեցավ հայերի և պարսիկների միջև, որը տևեց վեց տարի։

Միքայել Ասորին ևս իր աղբյուրի հետևողությամբ մեղադրում է Հայոց կաթողիկոսին՝ քաղկեդոնականների հետ հաղորդակցվելու կապակցությամբ, որովհետև նա չգիտեր Քաղկեդոնի ժողովի մոլորության մասին։ Հետաքրքրական է, որ Միքայել Ասորին համառոտ ձևով տալիս է նաև այն նամակի բովանդակությունը, որ Հայաստանում ապրող հայերը գրել էին Կոստանդնուպոլսում գտնվող հայկական պատվիրակության ներկայացուցիչներին, որի

[84] **Michel le Syrien,** Chronique, t. II, Paris, 1901, Livre X, ch. I, p. 282—283.

[85] *Նույն տեղում, էջ 304։*

մասին նախընտրել էր լռել Հովհան Եփեսացին։ Ըստ Միքայել Ասորու այդ նամակում հայրենիքից դրել էին. «Եթե դուք հաղորդակցեք ժողովականների (քաղկեդոնականների) հետ և եթե դուք միանաք նրանց, այսինքն Քաղկեդոնի ժողովը (ընդունեք), մենք ձեզ չենք ճանաչի, և ավելին, մենք ձեզ կբանադրենք»[86]։ Այդ նամակից հետո, գրում է Միքայելը, նրանք բաժանվեցին, և առանձին հավաքվում էին վանքերում. երկու տարուց հետո մահացավ Հայոց կաթողիկոսը։ Մի քիչ այլ է հնչում Միքայել Ասորու մեզ հասած հայերեն վաղ թարգմանության համապատասխան տողերը. «Եւ մինչ գնացին և տարան զթուղթն և նա (կաթողիկոսը) վաղագոյն իմացեալ էր զհերձուածոյ նոցա չարութիւն, և մեկնեալ ի նոցանէ՝ կայր առանձին, որ և յամելով նորա ի Կոստանդնուպօլիս, ննջեաց ուղղափառ խոստովանութեամբ, և մեծ պատուով ամփոփեցաւ յուղղափառացն, որոյ եղև մեծ ամրութիւն և հաստատութիւն հաւատոյ և պարծանք ուղղափառացն, մնալ Հայոց ի ճշմարտութեան յերկուց կողմանց ի Պարսից և ի Քաղկեդոնացւոց, Աստուծով միայն զօրացեալ և օգնական ի մարդկանէ ոչ ոք»[87]։

Հովհան Եփեսացու վկայությամբ, նամակն ստանում են կաթողիկոսի մահվան նախօրեին, որը և պատճառ է դառնում այն բանի, որ հայերն առանձնանում են և հայ մեծամեծներից մեկի գյուղում առանձին եկեղեցի հիմնում։ Ինչպես ասորի պատմիչն է գրում, հայոց կաթողիկոսի մահից հետո, հայերից շատերը այնտեղ էին հավաքվում հավանաբար և աղոթելու և կարևոր հարցեր լուծելու նպատակով։ Այսպիսով հիմք է դրվում Կոստանդնուպոլսի կազմակերպված հայկական համայնքին։

Թեև աղբյուրներում մանրամասնություններ չկան Հայոց Հովհաննես կաթողիկոսի մահվան պարագաների մասին, բայց թվում է, որ պարսիկների կողմից Հայաստանի վերագրավումը, հայրենիքից ստացած նամակը ծանր վիճակի են մատնում նրան և նա չդիմանալով այդ վշտին, վախճանվում է։ Հովհան Եփեսացու տեղեկություններից կարելի է եզրակացնել, որ նա իր վերջին օրերին լքված է եղել արքունիքի կողմից, որովհետև ինչպես ասորի պատմիչն է գրում, նրա թաղմանը մասնակցում էին միայն ուղղափառ, այսինքն միաբնակ համայնքի ներկայացուցիչները։

[86] Michel le Syrien, Chronique, t. II, p. 305.

[87] «Ժամանակագրութիւն Տեառն Միխայէլի Ասորւոց պատրիարքի», Երուսաղէմ, 1871, էջ 265։



24—893

Դա նշանակում է, որ արքունիքը ևս քաղաքականությունը փոխել էր հայերի նկատմամբ։

Ինչպես գիտենք, երբ Հայաստանն անցել էր արդեն բյուզանդական գերիշխանության տակ, նա ամեն կերպ ուզում էր սիրաշահել հայերին։ Հովհան Եփեսացին պատմում է, թե ինչպես կայսրը Կոստանդնուպոլսում գտնվող հայ սպարապետներին պարգևեց բարձր աստիճաններ, հարուստ տներ թագավորական ամուր դղյակներ, իսկ նրանց, ովքեր մնացել էին իրենց երկրում՝ շատ ոսկի ու տիտղոսներ ուղարկեց։ Բացի այդ, նրանք երեք տարով (հարկից) ազատվեցին[88]։ Սակայն դրանից հետո, Հովհան Եփեսացու ու Միքայել Ասորու վկայությամբ, պատերազմական գործողությունները պարսիկների ու բյուզանդացիների միջև տևել են վեց տարի և ասորի պատմիչներն այդ տարիների իրադարձությունների մասին ունեն ընդհանուր տեղեկություններ։ Նրանք թողել են այնպիսի փաստեր, որոնց միջոցով հնարավոր է ամբողջացնել ասորական աղբյուրների թողած պակասը։ Այսպես, երբ պարսկական Հայաստանն անցել էր հայ-բյուզանդական բանակի գերիշխանության ներքո, Սեբեոսը պատմում է. «Գայ ապա ի վերայ նորա Միհրանն Միհրևանդակ ի հազարաւ զաւրու և փղաւք բազմաւք։ Եւ եղև պատերազմ մեծ ի դաշտին Խաղամխեայ. և հարեալ ղզաւրն Պարսից անհնարին հարուածովք մաշէին ի սուր սուսերաց, ղփիղսն զամենայն թափէին։ Եւ Միհրանն սակաւուք պրծեալ գնացին յերկիրն իւրեանց»[89]։

Խոսրով արքան պարսկական ձախողությունից վրդովված մեծ բանակի գլուխն անցած արշավում է Հայաստան։ Խոսրովի այս արշավանքի մասին Հովհան Եփեսացին միայն այս տողերն է թողել. «Խոսրովը խորամանկությամբ (պարսկական) Հայաստանում եղած բյուզանդական զորքի վրա հարձակվեց, հուսալով, որ կոչնչացնի ու կբնաջնջի նրանց, սակայն երբ չկարողացավ իր նպատակին հասնել, վերադարձավ և այս անդամ արշավեց Բյուզանդական Հայաստանի վրա»[90]։

Սեբեոսը խոսելով Խոսրովի նույն արշավանքի մասին, գեղարվեստական ոճով նկարագրում է Մելիտինեի առաջ տեղի ունեցած ճակատամարտը։ Նա գրում է. «Եւ ի վաղուեան առաւօտուն հապճեպ ստիպով կարգեն գունդ առ գունդ և ճակատ առ

---

[88] Հովհան Եփեսացի, Եկեղեցական պատմություն, Գ մաս, գիրք Բ, գլ. 22։

[89] «Սեբէոսի եպիսկոպոսի Պատմութիւն», գլ. Զ, էջ 27։

[90] Հովհան Եփեսացի, Եկեղեցական պատմություն, Գ մաս, գիրք Բ, գլ. 24։

ճակատ, և բաղխէին ըմիմեանս պատերազմաւ։ Եւ սաստկացաւ պատերազմն ի վերայ երեսաց երկրի, և խմբեցաւ պատերազմն յոյժ և մատնեաց Տէր ի պարտութիւն զթագաւորն Պարսից և զաւրս նորա զամենայն։ Եւ խորտակեցան առաջի թշնամեացն սրով սուսերի, և փախեան յերեսաց նոցա սաստիւ տագնապաւ. ոչ գիտելով զճանապարհս փախստեան իւրեանց՝ երթեալ ամրացան ի գետն մեծ, որ կոչի Եւփրատէս»[91]։ Այս հաղթանակից հետո բյուզանդական զորքը հետապնդում է փախչող պարսիկներին, որոնք փորձում են Եփրատից անցնել։ Հայ պատմիչը նկարագրում է փախչողների ծանր վիճակը. «Եւ ուռուցեալ ի վեր ջուրցն՝ խաղացոյց զբազմութիւն փախստականացն իբրև զբազմութիւն մարախոյ, և ոչ կարացին յաւուր յայնմիկ ճողոպրել բազումք։ Բայց թագաւորն մազապուր պրծեալ սակաւուք՝ ի փիղս և ի ձին ապաստան եղեալ, փախստական ընդ Աղձնիսն անցրէն ի կայեանս իւր երթայր»[92]։

Այս իրարանցումից օգտվելով, Խոսրով արքան կարողանում է փախչել, բայց բյուզանդացիների ձեռքն է ընկնում արքունական գանձը, նույնիսկ պարսիկների սրբազան կրակը։ Սեբեոսը պատմում է. «Եւ նոքա առին զբանակն ամենայն հանդերձ արքունական գանձիւքն։ Եւ կալան զբամբիշն և զբանակն, և թափեցին զՄաշապերճանն[93] ամենայն, գեսպակն ոսկեղէն բազմաքանքար, որ էր ակամբք պատուականաւք և մարգարտաւ յօրինեալ, որ անուանեալ կոչէր ի նոցունց գեսպակ փառաց։ Առաւ և Հրատն, զոր ընդ ինքեան շրջեցուցանէր թագաւորն հանապազորդ յաւգնականութիւն իւր, որ մեծագոյն համարեալ էր քան զամենայն կրակ, որ կոչէր ի նոցունց Աթաշ. հեղձաւ ի գետն հանդերձ մովպետան մովպետաւ և այլ բազմութեամբ մեծամեծ աւագաց։ Յամենայն ժամ աւրհնեալ է Աստուած»[94]։

Թվում է, որ նման ահավոր պարտությունից հետո պարսկական բանակն այլևս երկար ժամանակ անկարող կլիներ պատե-

---

[91] «Սեբէոսի եպիսկոպոսի Պատմութիւն», գլ. Է, էջ 27—28։

[92] Նույն տեղում։

[93] «Մաշապերճան», որ գրված կա նաև ուրիշ շատ ձևերով, մաշկապերճեն, մաշկապատճեն և պահլավերեն maska parcen (մաշկապարճէն) բառն է, որ նշանակում է պարսից արքայական կանանոցի վրանը։ Հյուբշմանը այս բացատրությունը բերում է Արմ. բառ.։ Տե՛ս «Սեբէոսի եպիսկոպոսի Պատմութիւն», էջ 178, ծն. 26։

[94] «Սեբէոսի եպիսկոպոսի Պատմութիւն», գլ. Զ, էջ 28։

րազմական գործողությունները շարունակելու։ Սակայն Խոսրովն անբացատրելի համառությամբ վերակազմում է իր բանակը և նորից արշավում։ Նա իր մարզպաններից մեկին ուղարկում է Պարսկահայաստանի վրա։ Այս անգամ բախտը ժպտում է պարսիկներին, և ինչպես Հովհան Եփեսացին է գրում, պարսիկ մարզպանն օգտվելով բյուզանդական բանակի հրամանատարության ներսում ծագած վեճերից, վերանվաճում է Պարսկական Հայաստանը։

Թե ե՞րբ պարսիկները վերանվաճեցին Պարսկական Հայաստանը, ոչ Հովհանը և ոչ էլ հայ պատմիչներն այդ մասին տեղեկություն չեն տալիս։ Եթե ընդունենք ինչպես Եփեսացու, այնպես էլ նրա հետևությամբ գրված Միքայել Ասորու այն տեղեկությունը, որ այս պատերազմական գործողությունները բյուզանդա-հայկական և պարսկական բանակների միջև տևել են վեց տարի, ապա պիտի կարծել, որ Հայաստանի վերանվաճումը տեղի է ունեցել մեր թվականության 577—578 թթ.։

Վերանվաճումից հետո Խոսրով արքան իր քաղաքականության մեջ փոփոխություն է մտցնում և այս անգամ հալածանքների ու բռնի ուժի փոխարեն գործի են գրվում սիրաշահելու սկզբունքները։ Անկասկած, հայերն էլ հուսախաբվել էին բյուզանդացիներից և զգացել, որ ավելի նպատակահարմար էր համագործակցել պարսիկների հետ։ Հավանաբար, ինչպես կարելի է եզրակացնել Հովհան Եփեսացու պատմածներից, հայերի ու պարսիկների միջև գաղտնի բանակցություն է տեղի ունեցել և որոշ պայմանավորվածություն ձեռք բերվել։ Ասորի պատմիչի վկայությամբ, «Ամբողջ երկիրը (Հայաստանը) պահանջեց, որ նա (պարսիկը) խոսք տա (որ մարգկանց չի վնասի), և նա խոստացավ։ Երկրից բոլոր (փախածները) վերադարձան ու ենթարկվեցին իրեն (պարսկին), բացի նրանցից, որոնք Կոստանդնուպոլսում էին (մնացել) յոթը տարի, և սրանք էլ ապստամբվեցին ու կռվեցին նրա (Խոսրովի) դեմ»[95]։

Հովհան Եփեսացին իր հաջորդ գլուխներում մանրամասն տեղեկություններ է տալիս պարսիկների և բյուզանդացիների միջև տեղի ունեցած պատերազմների մասին ու վերջին բաժնում նորից անդրադառնում հայերի ու պարսիկների միջև տեղի ունեցած բանակցություններին։ Առանձնապես չի հիշում հայերին, և խոսում է ընդհանրապես քրիստոնյաների մասին ու պատմում, թե ինչպիսի վայրագություններ էին կատարում բյուզանդական բանակի

---

[95] Հովհան Եփեսացի, Եկեղեցական պատմություն, Գ մաս, գիրք Բ, գլ. 24։

զինվորները։ Անկասկած, նրանց վերաբերմունքը վրդովեցնում է տեղական ժողովրդին, և նրանք էլ իրենց հերթին փորձում են լեզու գտնել պարսիկների հետ։ Հովհան Եփեսացին բյուզանդական բանակի պարտության պատճառները նշելիս, հիշատակում է, որ մարդիկ պարտության պատճառը համարում էին քրիստոնյաների դեմ գործած չարիքները։ Այդ առթիվ պատմում է, որ բյուզանդացիները, «աստծու վախը մոռացած, նույնիսկ բռնում էին մեկ երկու տարեկան երեխաներին, մեկը՝ մեկ ոտքից, մյուսը՝ մյուս ու իրենց ուժր պատածի չափ, վեր էին գցում ու երեխան ընկնում էր նրանց բռնած սրի կամ նիզակի ծայրին, որը մտնում էր մարմնի մեջ և ապա (դիակները) նետում էին շներին։ Նրանք նույնպես անպատվում, կողոպտում ու սպանում էին վանականներին։ Նրանք դուրս էին բերում պատկառելի ճգնավորներին իրենց ճգնարաններից, որտեղ նրանք երկար տարիներ մնացել էին, կախում ու տանջանքների էին ենթարկում նրանց, ասելով. «Ոսկի և արծաթ տվեք»։ Նրանք տանջում էին նաև կույսերին և նրանց հասցնում դաժան մահվան եզրին։ Իրենց այս անզգամությամբ, ինչպես ասում են, աստծուն բարկացրին և նա ամաչեցրեց նրանց ու խոնարհեցրեց թշնամու առաջ, և նրանք չկարողացան նրանց (պարսիկներին) դիմադրել»[96]։

Հովհան Եփեսացին իր այս գրքի հաջորդ գլխում փաստեր է տալիս արդեն հայերի ու պարսիկների միջև վերսկսված բանակցությունների մասին։ Նրա պատմածից երևում է, որ այդ գաղտնի բանակցությունները նախապես սկսում են պարսիկները։ Իմանալով հայերի բյուզանդացիներից դժգոհ լինելու մասին, պարսից արքան «խորամանկությամբ» նամակ է գրում հայերին և խոստանում ներել իրենց կատարածների համար և ոչ ոքի չվնասել, եթե իրեն միանան։ «Հայերը հավատալով այս խոստմանը, հեռացան բյուզանդացիներից ու միացան պարսիկներին՝ հանձնելով նաև ամբողջ երկիրը»[97]։ Հեռացող հայկական բանակում, ինչպես ասում է Հովհանը, եղել է մոտ քսան հազար զինվոր։ Ուրեմն պարզ է, որ հայկական ռազմական ուժը այն ժամանակ Պարսկական Հայաստանում կազմել է մոտավորապես քսան հազար հայ զինվորներից կազմված մի բանակ։ Ահա այս ժամանակ է, որ միայն Վարդանն իր կողմնակից մեծամեծների հետ թողնում է հայրենիքը և ապաստան գտնում Կոստանդնուպոլսում։ Հովհանը

[96] Հովհան Եփեսացի, Եկեղեցական պատմություն, Գ մաս, գիրք Զ, գլ. 10։
[97] Նույն տեղում, գլ. 11։

պատմում է. «Իսկ ինչ վերաբերում է մեծամեծներին, ապա դրանցից՝ Վարդան անունով մեկն, իր հետ գնացածների հետ, և մի ուրիշը իր ազգից մի իշխան՝ Գորգոնիս անունով, որը մեծ պատվով ապրում էր մայրաքաղաքում, բոլոր իր մարդկանց հետ հպատակվեցին բյուզանդացիներին։ Նրանք եկան ու հանձնվեցին Հուստինոս կայսրին»[98]։ Ասորի պատմիչն այն վերագրում է Հուստինոս կայսրի թագավորության 5-րդ տարվան։

Պարսկական քաղաքականության մեջ դեպի հայերը և ընդհանրապես դեպի քրիստոնյաները տեղի ունեցած այս բեկման մասին տեղեկություններ կան նաև հայ պատմիչների մոտ։ Նրանց այդ վկայություններից զգացվում է որ Խոսրով արքան հասկացել էր, որ իր տիրապետության մեջ գտնվող քրիստոնյա ժողովուրդներին Պարսկաստանի հետ կապելու լավագույն ուղին մեղմ քաղաքականությունն է։ Նա իր նոր վերաբերմունքով այնքան է սիրելի դառնում, որ նույնիսկ նրա անվան շուրջ զրույցներ են ստեղծվում, «թե նա իր կյանքի վերջին տարիներին քրիստոնեություն է ընդունել»։ Անշուշտ այս վկայությունը պատմական ճշմարտություն չէ և արտացոլում է վերոհիշյալ իրողությունը։ Հետաքրքրական է Սեբեոսի այն հիշատակությունը, որ նա 571—572 թթ. հայկական ապստամբության առիթով, որպես հայր (հայերի), մեղադրում է նրանց։ Նա գրում է. «Եւ ի լինել ապստամբութեանն այնորիկ, յայնմ հետէ ընդոստուցեալ զարթեաւ ի բարկութիւն, զանձն անվնաս համարեալ իբր թէ՝ «Հայր էի ամենայն երկրի, և ոչ տէր, և սնուցեալ զամենեսեան իբրե որդի և սիրելի։ Եւ արդ՝ ասէ, ի նոցանէ խնդրեսցէ Աստուած զարիւնս զայս»[99]։ Իսկ ինչ վերաբերում է Խոսրովի՝ քրիստոնեություն ընդունելուն, այսպես է գրում Սեբեոսը. «Կալաւ սա զթագաւորութիւնն ամս ԽԸ։ Եւ ի ժամ վախճանին ծագեալ փայլակնացեալ զնովաւ լոյս աստուածային բանին. քանզի հաւատաց ի Քրիստոս, ասելով այսպես. «Հաւատամ ի միայն Աստուած, յայն՝ որ արար զերկինս և զերկիր, զոր քրիստոնեայքդ պաշտել խոստովանին, Հայր և Որդի և Հոգի սուրբ. զի նա միայն Աստուած է, և այլ ո՛չ դոյ բաց ի նմանէ, զոր քրիստոնեայքն սպաշտեն»։

«Եւ հրաման տուեալ սպասաւորացն զմոգպետն արձակել արքունի ի հեռագոյն տեղիս ի գործ, և զայլսն մերժեալ յարքու-

---

[98] Նույն տեղում, խոսքը Հուստինոս Բ-ի մասին է։

[99] «Սեբէոսի եպիսկոպոսի Պատմութիւն», գլ. Է, էջ 28։

նական կայենիցն, և կոչեալ զեպիսկոպոսապետն, որ Երան կաթուղիկոս անուանի մկրտեցաւ ի Նմանէ, և հրամայեաց ժամ առնել ի սենեկին, և ընթեռնուլ ղտէրունական Աւետարանին զպատգամս, և հաղորդեցաւ ի կենդանարար մարմնոյ և արեանն Տեառն, և հրաժարեալ ի կաթողիկոսէն և ի տէրունեան Աւետարանէն՝ և արձակեն զնա յիւր տեղին»[100]։

Ահա Խոսրով արքայի այս քաղաքականության շնորհիվ, և նրանից հետո էլ, նրա որդի Որմիզդի ժամանակ այդ մոտեցումը շարունակվում է և արդյունքը լինում է այն, որ ինչպես Ասողիկն է պատմում «Յետ սուսերահարն լինելոյ Սուրենայ ոչ ևս պարսիկ մարզպան առաքէր ի Հայս թագաւորն Պարսից. այլ ի խնդրոյ նախարարացն իշխան հաստատէ Հայոց զԴաւիթ Սահառունի, որ կալաւ զհազարապետութիւն Հայոց ամս Լ հրամանաւ Որմզդի, որդւոյ Խոսրովու Պարսից արքային»[101]։

Ասողիկը տեղեկություններ ունի նաև Վարդան Մամիկոնյանի և նրա համախոհների հայրենիքից հեռանալու ու Կոստանդնուպոլսում հաստատվելու մասին։ Նա գրում է. «Իսկ Վարդանայ առեալ զընտանիս իւր և զայլ պայազատսն՝ փախստեայ անկանի յաշխարհն Յունաց ի թագաւորեալ քաղաքն Կոստանդնուպօլիս։ Եւ երթեալ յանդիման լինէր թագաւորին Յուստիանոսի, որ զսուրբն Սոփիա շինեաց. և հաղորդի ընդ նմա օրինաց, ի յիւր անուն անուանէ ղաւադ դուռնն սուրբ Սոփիայ, որ մինչև ցայսօր կոչի դուռն Հայոց»[102]։

Ինչպես գիտենք, Հովհան Եփեսացին ևս գրել էր Վարդանի և իր կողմնակիցների Բյուզանդիայի մայրաքաղաք՝ Կոստանդնուպոլիս գնալու մասին, բայց ասորի պատմիչը ոչինչ չգիտե սուրբ Սոփիա տաճարի ավագ դուռը «դուռն Հայոց» կոչելու զրույցի մասին։

Հետաքրքրական է, որ այս և ընդհանրապես 571—572 թթ. հայկական ապստամբության վերաբերյալ, հասկանալի պատճառներով, բավական աղավաղված տեղեկություններ կան վրացական աղբյուրներում։

Այսպես IX դարի վրացի պատմիչ՝ Արսեն Սափարացին իր «Վրաց և Հայոց բաժանման մասին» աշխատության մեջ Վարդանի

---

100 Նույն տեղում։

101 «Ստեփանոսի Տարօնեցւոյ Ասողկան Պատմութիւն Տիեզերական», գլ. Բ, էջ 85։

102 Նույն տեղում։

և նրա համախոհների Հայաստանից հեռացումը ոչ ճիշտ ձևով վերագրում է հայ եկեղեցականների ապօրինի գործունեություններին։ Նա այսպես է ներկայացնում հարցը. «Եւ կաթողիկոսներից ու եպիսկոպոսներից ոմանք որդեդրեցին պարսից թագավորներին և որդեգիր էին անվանում Կավատին ու Խոսրովին (Խուասրոյին), որի պատճառով կառավարության իրավասությունն յուրացրին և վարվում էին ոչ թե համաձայն ճշմարտությանն օրինաց, այլ ըստ իրենց քմահաճույքի, և եկեղեցիների պետքերը սկի եկեղեցիների համար չէին սահմանված, այլ իրենց ծառայեցնելու նպատակով (որ) և մարդկանց ցույց տալու համար ցիրուցան էին անում. (և) այս (պատճառով) բոլոր եպիսկոպոսներն ու բոլոր վանահայրերը՝ անաստված թագավորների հաճությամբ՝ աստուծո գայրույթն հարուցող ունայն գանձումների ետևից ընկան։ Եվ ապա աղատներն (ազնվականներն) ու գինվորականներից ոմանք՝ նրանց օրինակին հետևելով՝ միանգամայն հեռացան սուրբ Ներսեսի և սուրբ Սահակի սահմանված կանոններից։ (Չէ՞) որ Վահան Մամիկոնյանի (Մամկուենիի) օրոք որոշվեց՝ բոլոր մեծամեծների տներում տարին մի անգամ տոնել սրբերից մեկի հիշատակը, որպեսզի սիրո սեղանով (ագապով) մխիթարվեն նրանց տներում ի փառաբանություն աստուծո չքավորները, տկարներն ու ցավագարները, որբերն ու տնանկները։ Այս բոլորը նրանք վերացրին իրենց սեպհական գանձումների համար, և խանգարվեց ու խախտվեց հոգևորական բարի սովորույթն ու կարգը. և օրեցօր հաստատվեց չարը։ Եպիսկոպոսարանները գարձան կռատներ, և երբ նախարարները գնում էին եպիսկոպոսական դուռն, ժամանակ չէին գտնում այնտեղ մտնելու և ամոթալի վերադառնում էին ինչպես պարսից մարզպանի գռնից։ Այս մեծ անպատվությունը չհանդուրժեց Վարգան Մամիկոնյանը (Մամկուենը), որը Զոքխ[103] էր կոչվում, այն է «Կամակոր» (sic), և նրա ազգական ուրիշ նախարարները, որոնց անպատվել էին, սպանեցին ոմն պարսիկ մարզպանին՝ նրա տունը կրակի ենթարկելով, և ընտանիքով հանդերձ փախուստի դիմեցին դեպի Կոստանդնուպոլիս։ Գնալով այնտեղ, նրանք բարյա(ցակամ) ընդու-

[103] «Խոսքը բդեշխ Վարդան Մամիկոնյանի մասին է, որի մականունը «Զոխ», անհասկանալի է, գուցե հայերեն «քաջ» բառի աղավաղումն լինի։ IX դարի վրաց հեղինակ Արսենն այս «շոքխ» բառը թարգմանում է «կամակոր» (վրացերեն բառացի «ուրչ»)»։ Տե՛ս Լ. Մելիքսեթ-Բեկ, Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին, հատ. Ա, Երևան, 1934, էջ 62, ծնթ. 60։

նելությունն գտան Հուստինիանոս (Իստվինիան) թագավորի կողմից։ Սակայն նրանք չմիաբանեցան հույների (բերձենների) հետ. թագավորը զարմացավ և հարցրեց պատճառը։ Եվ նրանք ասացին, որ «վեճ եղավ Քաղկեդոնի ժողովի մասին, որը մեր վարդապետները չընդունեցին»։ Եվ թագավորը հրամայեց կանչել Հայոց (Սոմխիթի) վարդապետներին ու եպիսկոպոսներին, որպեսզի հարցափորձի ենթարկվեն և ճշմարիտն ճանաչեն։ Եվ գումարվեց մեծ ժողով Կոստանդնուպոլսում, ուր մեծ քննություն արին և ճշտվեց այն, ինչ որ իրավացի էր, և բոլորը միաբերան ընդունեցին ժողովն Քաղկեդոնի, և ամբողջ Հայքն (Սոմխիթն) իսկ անիծեց և նզովեց նրա կշտամբողին և միանալով հույների (բերձենների) հետ՝ խնդրեց թագավորից բարվոք (ընդունի), որ նրա (Հայոց) ծախքով շինվի Սոփիայի արևմտյան դուռն, որն այն պահին էին կառուցում։ Եվ թագավորն (իրավունք) շնորհեց կատարելու նրանց (հայերի) բաղձանքը, և նրանք տվին շինության գինը՝ մաքուր արծաթ հարյուր հազար (տասը բյուր) և կոչեցին այն «դուռն Հայոց» (ինչպես այն կոչվում է և) մինչև օրս»[103ա]։

Թարգմանիչը Արսեն Սափարացու այս հատվածի կապակցությամբ իր ծանոթության մեջ նշել է, որ այն համապատասխանում է Narratio De Rebus Armeniae-ին, և ինչպես դժվար չէ եզրակացնել վրացի պատմիչը իր այդ տեղեկությունները վերցրել է վերոհիշյալ աղբյուրից։ Եվրոպացի պատմաբան Գարիտը իր ուսումնասիրության մեջ մանրամասն վերլուծելով այն, եկել է այն եզրակացության, որ «Narratio»-ն գրվել է մոտավորապես 700 թ.՝ անանուն մի հեղինակի կողմից։ Թեև այդ գործը մեզ հասել է հունարեն, բայց ինչպես պարզել են մասնագետները, այն գրվել է ոչ հույն ընթերցողների համար, համենայն դեպս «Narratio»-ն մի քաղկեդոնական հեղինակի գործ է, որը պատկանում է հայ և բյուզանդական եկեղեցիների միության կողմնակիցների թվին։ Նրա գրչին պատկանող այս բնագիրը արժեքավոր է և առանձնահատուկ բնույթ ունի, որովհետև նախ՝ հայ միաբնակ սկզբնաղբյուրներից հայտնի փաստերի ու դեպքերի նկարագրությունն այստեղ տրվում է այլ լույսի տակ և ապա՝ նրա մեջ կան բազմաթիվ փաստեր, որոնք չեն արձանագրված հայ միջնադարյան մատենագրության կողմից»[104]։

103ա Լ. Մելիքսեթ-Բեկ, Վրաց աղբյուրները..., հատ. Ա, էջ 41—42։

104 Հ. Բարթիկյան, „Narratio De Rebus Armeniae“, հունարեն թարգմա—

Հ. Բարթիկյանը «Narratio»-ի հայերեն իր թարգմանության սկզբում այս աղբյուրը ներկայացնում է հետևյալ ձևով. «Narratio»-ն շարադրում է հայ եկեղեցու պատմությունը և նրա հարաբերությունները բյուզանդական եկեղեցու հետ 325 թ. (Նիկիայի առաջին Տիեզերական ժողովից) մինչև 700 թվականը, կանգ առնելով նաև ժամանակակից քաղաքական պատմության զանազան կողմերի վրա»[105]: Երբ համեմատում ենք վերոհիշյալ ժամանակաշրջանի «Narratio»-ի, Արսեն Սափարացու և Հովհան Եփեսացու ու հայկական աղբյուրների տվյալները, տեսնում ենք, որ առաջինները քաղաքական դեպքերի նկարագրությունը համարեցրել են կրոնական իրենց տեսակետներին և այդ իրադարձություններին մոտեցել այդ տեսանկյունից: Վերջինները, թեև կրոնական մտածողությունն ընդհանրապես նրանց մոտ ևս գոյություն է ունեցել, բայց գերակշռողը պատմական փաստերն են: Այժմ ներկայացնում ենք «Narratio»-ի համապատասխան հատվածը. «Երկար ժամանակ անց ոմն Վարդան իշխան սպանեց պարսիկ բռնակալ Սուրենին և ապստամբելով՝ Հայաստանից փախչում է Կոստանդնուպոլիս՝ Խոսրովի խ (40) տարում, և սուրբ Սոֆիան կառուցող Հուստինիանոսի լ (30) տարում: Վարգանը և իր հետևորդները չէին հաղորդվում (հույների հետ) ասելով որ «մեր վարդապետներից չունենք հրաման հաղորդվելու ձեզ հետ»: Այդ առթիվ կայսրը հրամայեց նույն այս Վարդանին հրավիրել Հայոց եպիսկոպոսներին ու վարդապետներին և հարցը ճշգրիտ քննել: Կոստանդնուպոլսում կայացավ մեծ ժողով, (հինգերորդ ժողով), ընդդեմ աղանդավոր ոմանց: Նրանք միաբանելով, հրավիրեցին Վարդանին և նրա հետևորդներին սուրբ Սոֆիայի մի դուռը, որը մինչև օրս կոչվում է Հայոց դուռ և այն ժամանակ նզովեցին Օրիգենեսին, Եվագրիոսին, Դիդիմոսին, Նեստորականներին, Հակոբիկներին, Հուլիանականներին, Գայանոսականներին և ընդհանրապես Եվտիքեսի և Դիոսկորոսի աղանդի կողմնակիցներին: Վերադառնալով Հայաստան, նրանց մի մասը սիրով ընդունեց միությունը, իսկ մյուս մասը Հովհաննես կաթողիկոսի ժամանակ ապոնկացավ (իմա՝ հերետիկոսացավ), որի մասին այժմ մասնավորապես խոսելու կարիք չկա»[106]:

---

Նությամբ մեզ հասած մի հայ-քաղկեդոնական սկզբնաղբյուր է. «Բանբեր մատենադարանի», № 6, 1962, էջ 458:

[105] Նույն տեղում, էջ 457:

[106] Հ. Բարթիկյան, Narratio, էջ 465:

Հայ եկեղեցու համար նման ժողովի դումարված լինելը հայտնի չէ և եթե եղել է մի ժողով, ապա պիտի ենթադրել, որ դա մասնակի է եղել և նման ժողովին մասնակցած կարող են լինել Բյուզանդական Հայաստանից եկած եպիսկոպոսներ, մանավանդ այստեղ նշվում է Հովհաննես կաթողիկոսի անունը, որը չի ճանաչում նման որոշումները։ Իսկ ինչ վերաբերում է Սոփիայի տաճարի դռներից մեկի՝ Վարդանի և Կոստանդնուպոլսում ապրող հայերի միջոցներով կառուցելու զրույցին, դա ստեղծվել է ավելի ուշ, հայերին քաղկեդոնական եկեղեցու հետ կապելու միտումով։

Այժմ Հովհան Եփեսացու Եկեղեցական պատմության ու հայկական աղբյուրների տվյալներին անդրադառնալիս, տեսնում ենք, որ դրանք լրացնում են իրար և հնարավորություն ստեղծում 571—572 թթ. հայկական ապստամբության ավելի կատարյալ պատկերը տալու։ Այժմ երբ ուսումնասիրում ենք այդ ապստամբության պատմությունը, պարզ է դառնում, որ թեև որպես ազատագրական շարժում այն ընդգրկել է ժողովրդի լայն զանգվածներին և առաջին շրջանում ռազմական ու քաղաքական որոշ հաջողությունների է հասել. սակայն, ինչպես աղբյուրներն են վկայում, Բյուզանդական պետության և բանակի անճարակ գործունեության հետևանքով, չի հասել իր նպատակին։ Բյուզանդացիները հայերին օգնելիս չէին մտածում Պարսկական Հայաստանն ինքնուրույն մի ամրոց դարձնելու մասին։ Նրանք ևս տարված էին նվաճողական քաղաքականությամբ, միայն տարբերվում էին իրենց գործելակերպով։ Այս սխալ հասկացողությունը հիմնական պատճառներից մեկը դարձավ, որ բյուզանդա-հայկական բանակների համագործակցությունը անհաջողությամբ ավարտվեր, և հայերն այս անգամ կորցնելով հավատը Բյուզանդիայի նկատմամբ նախընտրեցին պարսկական գերիշխանությունը։ Պարսկաստանն էլ իր արտաքին նոր քաղաքականությամբ ձգտում էր սիրաշահել հարևան փոքր ժողովուրդներին։ Պարսկական արքունիքում ստեղծված քաղաքական նոր իրադրությունն, անկասկած, հիմնականում Հայկական 571—572 թթ. ապստամբության արդյունքն էր, որովհետև այդ ապստամբությունից հետո պարսիկները հաշվի նստեցին հայ ժողովրդի հետ և նորից պարսիկների փոխարեն Հայաստանում նշանակվեցին հայ մարզպաններ։

## ԵՓԵՍՈՍԻ ՀՈՎՀԱՆ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

### ԵՐՐՈՐԴ ՄԱՍ[1]

### ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ

*Առաջին գրքում համառոտ նկարագրեցինք եպիսկոպոսների, բազում դատավարությունների և երեք այլ բանտարկությունների ու այլ բաների (դժվարությունների) մասին, որոնց ստիպված էին տոկալ նրանք (միաբնակները), կարգադրված հրամանի համաձայն։ Նրանք սկզբից տեսան, որ խաբված են, և թե իրենց տրված շատ խոստումները կատարյալ միություն ստեղծելու մասին՝ կեղծիք են։ Երկու անգամ նրանք (երկաբնակները) խարդախությամբ (փորձեցին) համոզել, որ նրանց հետ հաղորդակցեն, և երբ (օգուտ) չտվեց, այն ժամանակ նրանք (միաբնակները) ընկան վշտի, ողբի և անվերջ դժվարությունների, լացի ու կոծի մեջ, ուստի նրանք (միաբնակները) վերջնականապես որոշեցին, եզրակացրին, որ այլևս երկաբնակների հետ, եթե նույնիսկ նրանք իրենց քարշ տան մահվան, սրի կամ կրակի միջով՝ (չհաղորդակցեն)։ Ինչպիսի խիստ ատելություն ու զայրույթ էին զգում նրանց դեմ, և (այդ էր պատճառը), որ նրանք (միաբնակները) երրորդ անգամ աքսորվեցին ամեն մեկն առանձին մի տեղ, և այսպես, նրանց իրարից շտապ բաժանեցին և հեռացրին, խիստ և ծանր մեղադրանքներ ներկայացնելով։ Մեծ եղավ նրանց վիշտը, երբ նրանց, իրենց բարեկամներից ու ընկերներից բաժանեցին ու զրկեցին, մանավանդ եթե (նկատի) ունենանք այն, որ նրանք ցմահ (աքսորի) էին դատապարտվել։*

---

[1] **W. Cureton**, The third part of the ecclesiastical history of John bishop of Ephesus, Oxford, 1853 (Syr. text). **Payne Smith**, The third part of the ecclesiastical history of John bishop of Ephesus, Oxford, 1860.

## ԳԼՈՒԽ 2

### Պողոս պատրիարքի և նրա այն գործի մասին, որը նրա տանջանքներին պատճառ եղավ

Թե ինչպես եպիսկոպոսները եկան հաստատ ու փոխադարձ որոշման, վճռեցին ու որոշեցին, որ այլևս երբեք չհաղորդակցեն (Քաղկեդոնի) ժողովականների հետ, և երբ հետագայում նրանք (միաբնակները) տղամարդորեն (սկսեցին) դիմադրել իշխանության գլուխ եղողներին, սրանք (իշխանավորները) ի վերջո յուրաքանչյուրին դաժան, ծանր, անգութ աքսորի դատապարտեցին. (համենայն դեպս) ավելին եղավ (հալածանքները) քան հնարավոր է պատմել կամ խոսել այդ մասին։ Ամենից առաջ Պողոս պատրիարքին տեղափոխեցին Աբրահամի վանքը ու բանտարկեցին այնտեղ. մինչ նա բանտարկված էր, իր (նկուղից) այնպիսի մի անցք գտավ, որտեղից շատ փոքր լույսի մի նշույլ էր թափանցում, և (օգտվելով առիթից), սկսեց գաղտնորեն գրել այն մասին, թե ինչ էր կատարել Հովհան Սարմիացին եկեղեցում։ Սակայն հսկողության տակ լինելով, գրելու ժամանակ բռնվեց և գիրքը դեռ չավարտած, վերցրին նրանից։ Այն տարան Հովհանին, որը վերցրեց դառը գայրույթով, գնաց ու կարդաց կայսրի առաջ. և երբ նա (կայսրն) իմացավ, որ ուղղափառների դեմ իր ծավալած գործունեությունը՝ (գրքում) պարսավանքով է դիտված, այնպես ինչպես նաև պատրիարքինը, ինքն էլ շատ կատաղեց ու դառնացավ Պողոսի դեմ և հրամայեց, որ գիրքը տանեն ու դնեն Պողոսի առաջ և պահանջեն, որ նա խոստովանի, թե ի՞նքն է հեղինակը (թե ոչ), և եթե ընդունի, ստիպեն իրեն, որ այդ մասին իր ձեռքով հաստատող թուղթ գրի։ Եվ եթե չընդունի, ապա նրան խարազանեն մինչ մահ, մինչև որ խոստովանի, և դրանից հետո նորից նրան դնեն բանտը։ Գիրքը վանք տարան ու մեծ բարկությամբ ցույց տվեցին իրեն և պահանջեցին, որ գրավոր խոստովանի, որ ինքն է դրա հեղինակը։ Որովհետև կեղծելն անօգուտ էր, խոստովանեց, որ ինքն է գրել այն, և նրանց պահանջի վրա, իր ձեռքով գրեց հետևյալ ինքնախոստովանությունը. «Ես Պողոսս խոստովանում եմ, որ իմ ձեռքով եմ գրել այն բոլորը ինչ որ կա այս գրքում»։ Որի վրա նրան բանտում թողեցին, գիրքը տարան կայսրին ու պատրիարքին։ Եվ այսպես, մեծ էր նրանց ցասումը, և նրանք մահով սպառնացին Պողոսին, մանավանդ երբ իմացան, որ նրա (գրքի) մեջ մեղադրանքներ կան նաև Հռոմի դեմ։ Ե՛վ Պողոսը և՛ բոլոր մարդիկ անհանգստացած էին նրա կյանքի

համար, և սպասում էին, որ նա կմեռնի դաժան մահով և կզրկվի ներկա կյանքից։

## ԳԼՈՒԽ 3

### Կիպրոսի Ստեփան եպիսկոպոսի, աքսորից նրա (գրած) կոչի և ձոնի, ապա նրա փախուստի մասին։

Համենայն դեպս Կիպրոսի եպիսկոպոս Ստեփանը, կայսրի մոտ մեծ հեղինակություն էր վայելում և հանդգնաբար համարձակվեց խնդրագիր ներկայացնել Պողոսի համար, խնդրելով որ իր սիրույն ներեն նրան և ազատեն սարսափելի դժբախտությունից, որի մեջ նա գտնվում է։ Կայսրն ընդունեց նրա միջամտությունը և խոստացավ, որ եթե նա մայրաքաղաք գա և իր հետ միասին հաղորդություն ստանա, (ապա) բոլոր նրա վիրավորանքների համար, նրան ներում կշնորհվի։ Ուստի Ստեփանը գնաց նրա մոտ և իր հետ զրուցելուց հետո, մահվան սարսափելիքներով ազդեց նրա վրա, և նա ստիպված եղավ հաղորդվել, և տարվեց պատրիարքի պալատը։ Եվ Հովհանը նրան բոլոր մարդկանց առաջ ծաղրելու նպատակով, հավաքեց շատ սենատորների ու Ալեքսանդրիայի որոշ բնակիչներին, որովհետև Պողոսը այնտեղից էր, և ստիպեց նրան բոլորի ներկայությամբ իր ձեռքից նորից հաղորդություն ստանալ, և որպեսզի, եթե նույնիսկ դրանից հետո նա ցանկանար ետ դառնալ (եղածից), այդ անկարելի լիներ։ Այդ ժամանակվանից, կայսրն ամեն օր ընդունում էր իրեն, և շատ նյութերի շուրջ զրուցում, որովհետև նա իմաստուն և ուշիմ մարդ էր և շատ գրքեր էր կարդացել. նա (կայսրը) նույնիսկ հաճախ նրանից խորհուրդներ էր հարցնում պետական գործերի մասին, և անվերջ խորհրդակցում ու վստահությամբ զրուցում նրա հետ, մինչ Հովհանն (այս մտերմությունից) քիչ չանհանգստացավ, մտածելով որ կայսրը կարող է իրեն պաշտոնից զրկել և փոխարեն Պողոսին նշանակել։ Եվ որովհետև Հովհանը մեծ դժվարության ու մենակության մեջ էր, կայսրին իմացրեց, ասելով որ «Տեր իմ եթե դուք կհրամայեք, մենք հայր Պողոսին կուղարկենք որպես Երուսաղեմի և կամ Թեսաղոնիկեի եպիսկոպոս, որովհետև երկու այս աթոռներն էլ թափուր են»։ Սակայն կայսրը հեշտությամբ հասկացավ նրա խորամանկությունը, և որպեսզի նրան ավելի վախեցնի, պատասխանեց «Հայր Պողոսին հանգիստ թող, որովհետև մենք նրա ներկայությունը ուզում ենք այստեղ»։ Եվ այս այնպես անհանգստացրեց նրան, որ նա այլևս կատարելապես համոզվեց իր (կասկածի) իրական լինելուն, և այդ մտքից

տառապում էր, և դրա համար էլ աստիճանաբար թուլացրեց մինչ այդ Պողոսի նկատմամբ (սահմանված) աչալուրջ հսկողությունը՝ նրա փախուստն արգելելու համար. (ուստի) նրան առանց հսկիչի թողեց և նրա բարեկամներին նրա մոտ մտնելու բացարձակ ազատություն տվեց, որպեսզի նա փախչելու հնարավորություն ունենա. և Պողոսն առիթից օգտվելով փախավ, և Հովհանը մի անգամ ևս ազատ շունչ քաշեց։

## ԳԼՈՒԽ 17

### Թե ինչպես ամբողջ երկրում հալածանքներ տեղի ունեցան։

Պարզապես ոչ միայն մայրաքաղաքում էր, որ ուղղափառների համայնքներն այսպես տառապում էին, այլև հոռոմների երկրի յուրաքանչյուր շրջանում հալածում էին (մարդկանց), հետևողականորեն, անվերջանալի բռնությամբ. նման դաժան միջոցներ էին գործադրում բոլոր նրանց դեմ, որտեղ ուղղափառների համայնքներ էին գտնում։ Հալածանքը բորբոքվում էր Հովհան պատրիարքի և ուրիշների գրած նամակներով, որովհետև նա (պատրիարքը) լցված էր բարկությամբ, և նման էր ինչպես ծովի ալիքները և կամ բոցավառվող Բաբելոնյան հնոցը, որն այրվում էր ոչ թե ճյուղերով, թփուտներով, նյութերով, այլ զայրույթով, սաստիկ կրքով, ավերելու ու ջարդելու ցանկությամբ։ Նա սոսկալի և սարսափելի ձևով այրվում ու բոցավառվում էր ընդհանրապես. նա նրանց (միաբնակներին) դեմ ունեցած հավատի պատրվակի տակ իր դաժանությանն ավելացնում էր վնասարարությունը, նրանց իրերի ու ունեցվածքի կողոպտումն ու ավերումը։ Նա բանտարկություններով, ծանր շղթաներով, տանջանքներով, խարազանով և աքսորով մարդկանց (չարչարում էր)։ Նա նույն ձևով էր (գործում) տերության բոլոր մասերում՝ քաղաքներում ու գյուղերում։

## ԳԼՈՒԽ 18

### Այն մասին, թե ինչ պատմեցին Դվին քաղաքի կաթողիկոսը, որը բնակվում էր Պարսկական Մեծ Հայքում, և այլ եպիսկոպոսներն, որոնք նրա հետ ժամանել էին (Կոստանդնուպոլիս)։

Չնայած մենք խոստացել էինք գրել միայն այն մասին, ինչի որ ականատես ենք եղել, և այն փորձությունների մասին, որոնց

մոտ էինք կանգնած. այժմ մտածում ենք, որ արդյո՞ք ճիշտ կլիներ գրել այն հիշողությունների մասին, որոնց ականատես չենք եղել, անձամբ չենք իմացել և ոչ էլ դրանց արժանահավատությունը անձամբ կարող ենք հաստատել։ Թեև մենք հեռու ենք այն երկրներից, որտեղ տեղի են ունեցել այդ բաները, բայց որովհետև այդ ամենն իմացել ենք ոչ թե հասարակ և կամ ցածր խավի մարդկանցից, այլ Պարսկական Հայաստանի՝ Դվինում (բազմած) գլխավոր կաթողիկոսից և նրան ընկերակցող եպիսկոպոսներից (դրա համար գրեցինք)։ Նրանք այդ իրադարձությունների մասին մեզ պատմեցին Հոռոմների թագավորական քաղաքում։ (Կոստանդնուպոլսում) բազմության ներկայությամբ։ Փախչելով պարսկական իշխանությունից, նրանք ապաստան էին գտել քրիստոնեական պետության մեջ, և մեծ հարգանքով ընդունվել Նորին Հաղթական մեծության (կայսրի) կողմից. նրանք շատերի ներկայությամբ ազնվությամբ ու երդումով հետևյալը պատմեցին։

## ԳԼՈՒԽ 19

Այն մասին, թե մոգերն ինչ ասացին Խոսրով թագավորին նրանց (Հոռոմների մասին)։

Այն ժամանակ հավաքվեցին բոլոր մոգերը և Խոսրովին՝ իրենց արքային ասացին. «Թագավոր ապրած կենաս, ահա մենք իմացանք, որ Հոռոմների կայսրը, բոլոր նրանցից, որոնք ապրում են իր պետության մեջ, պահանջում ու ստիպում է, որ ընդունեն իր կրոնն ու հավատը, և բոլոր նրանք, որոնք իրեն չեն ենթարկվում, ամբողջ իր պետությունից արտաքսում ու հալածում է։ Թող Ձեր աստվածային մեծությունը ևս այդպես հրամայե, որպեսզի բոլոր կրոնները համակերպվեն քո կրոնին, և քո իշխանության ներքո ապրող անձինք պաշտեն այն, ինչ որ դու ես պաշտում։ Եվ նրանք, որոնք կհամարձակվեն քո հրամանին հակառակվել, թող այլևս չապրեն (մահվան դատապարտվեն)։ Եվ երբ Խոսրով արքան լսեց մոգերից այս խոսքերը, համաձայնվեց նրանց ասածին և ընդունեց նրանց խորհուրդը, և անմիջապես սկսեց նախ՝ քրիստոնյաներից, և ուղարկեց, որ բռնեն երեք եպիսկոպոսների և շատ կղերականների, և հրամայեց նրանց հրաժարվել իրենց հավատից և իր հետ պաշտել կրակն, արևն ու այլ աստվածություններ։

Սակայն նրանք առարկեցին նրան և քաջաբար դիմադրեցին ու խոստովանեցին ասելով. «մենք քրիստոնեական հավատք

ունենք և պաշտում ու պատվում ենք աստծուն, որը ստեղծել է երկինքն ու երկիրը, ծովն ու այն ամենը, որ կա նրանց մեջ, և մենք չենք կարող թողնել նրան՝ ամեն ինչի արարչին ու պաշտել նրա արարածներին։ Մի՛ մոլորվիր արքա, որովհետև դու (ճիշտ է) մեր մարմինների վրա իշխանություն ունես և կարող ես ուզածդ անել, բայց մեր հոգիները Նրանն են (աստծուն) և դրանց վրա դու բացարձակապես ոչ մի իշխանություն չունես։ Եվ երբ արքան լսեց եպիսկոպոսներին արժանի այս և նման այլ խոսքեր, հրամայեց և անմիջապես նրանց տարան ու (ապա) մահացրին (սպանեցին)։ Եվ քրիստոնյաներին պատճառած բազմաթիվ այլ չարիքներից բացի, նա ավերեց բազում վանքեր և եկեղեցիներ, և շատերին՝ էլ կապեց (շղթայով) և գցեց բանտը։ Իր սրտում թագավորը հպարտացավ և հայհոյում էր Քրիստոսին ու ասում. «Տեսնենք քրիստոնյաների աստված՝ Քրիստոսն ինչ է անելու ինձ, որովհետև ես չգիտեմ, թե ո՞վ կամ ի՞նչ է նա»։ Այս և նման այլ շատ բաներ պատմեցին եպիսկոպոսներն այն մասին, թե ինչ է խոսել ու կատարել պարսիկների թագավորը, մինչև այն ժամանակ, երբ Հայաստանն ենթարկվեց Հոռոմներին։ Այդ պատճառով էլ, նա (Խոսրովը) հրամայեց կրակի ատրուշաններ կառուցել ամբողջ Պարսկական Հայաստանում։

## ԳԼՈՒԽ 20

### Պարսիկների թագավորի՝ Մեծ Հայքում (ապրող) քրիստոնյաների դեմ սկսած հալածանքների մասին։

Այս բոլորից հետո կաթողիկոսն ու նրան ընկերացողները ասացին. «Նա (Խոսրովը) 2000 զինված ձիավորներով մի մարզպան ուղարկեց մեր երկիրը, որոնք նախ եկան մեր քաղաքը և հրամայեցին մեզ, կրակի ատրուշան կառուցել, որպեսզի թագավորի հավատի համաձայն ծես կատարվի»։ Այսպես պատմեց և ասաց կաթողիկոսը. «Երբ նա ցույց տվեց ինձ և քաղաքացիներին հրամանը. ես նախանձախնդրությունից բորբոքվեցի և հակառակվեցի նրան. ես և բոլոր քաղաքացիներն ասացինք». «չնայած մենք իսկապես արքայից արքայի ծառաներն ենք և նրան հարկ ենք վճարում, բայց մենք քրիստոնյաներ ենք և հավատի խնդրում չենք ենթարկվում նրան, եթե նույնիսկ պետք լինի մեռնել մեր հավատի սիրույն։ Նույնը փորձեցին անել նաև արքայից արքա Շապուհի ժամանակ, որը նույնպես ցանկացավ պաշտամունքի համար ատրուշան կառուցել, սակայն ժողովուրդը հավաք-

վեց ու միասնաբար (դիմադրեց), և պատերազմը տևեց յոթ տարի, և վերջում համաձայնություն եկավ և հրաման տվեց, որ քրիստոնեության հարցը այլևս երբեք մեղ մոտ քննարկման ու հետապնդման առարկա չի լինելու։ Շապուհ թագավորի այս հրովարտակի կրկնօրինակը ևս ցույց տվեցինք նրան, սակայն նա չհամաձայնվեց մեղ հետ, և ինչպես հրամայված էր, նա բռնի (ատրուշանի) տեղը նշանակեց և (սկսեցին) հիմքը փորել և պատերը կառուցել, նույն ժամանակ՝ ճակատամարտի համար նախապատրաստություններ տեսավ։ Չնայած ես նրան խնդրեցի և աղաչեցի, բայց նա ինձ չլսեց, ոչ էլ (ասածներիս) ուշադրություն դարձրեց։ Ի վերջո տեղեկություն ուղարկեցի մեր երկրի բոլոր բնակիչներին, և երբ նրանք լուրն իմացան, Քրիստոսի հավատի նախանձախնդրությունից տարված, բոլորը՝ մոտ տասը հազար մարդ, մեկ մարդու նման, հավաքվեցին, զինվեցին ու ճակատամարտի պատրաստվեցին Քրիստոսի համար ապրելու կամ մեռնելու հաստատ որոշումով, որ թույլ չեն տա մոգերին հեթանոսական ատրուշան կառուցել մեր երկրում։ Երբ հավաքվեցին երկրի բոլոր տերերն ու մեծերը, մենք գնացինք մարզպանի մոտ, այնտեղ, որտեղ նա սկսել էր կրակի ատրուշանի կառուցումը, և երկար զրույց ունեցանք, նրա հետ վիճելով ասացինք. «Մենք քրիստոնյաներ ենք և արքայից արքայի հպատակները, բայց հավատի հարցում, մենք չենք ենթարկվի կամ լսի որևէ մեկին, եթե նույնիսկ ինքը՝ թագավորը անձամբ գա, և մինչև որ մեզանից վերջինը չմահանա, ոչ մի հեթանոսական տաճար չի կառուցվելու մեր երկրում։ Ուստի առանց պատերազմի ու ավերածության գնա՛ մեր երկրից և ասա՛ արքային մեր հավատը պաշտպանելու հաստատ որոշման մասին։ Նա իրավունք ունի հրամայելու, որ ամեն ինչ անենք, սակայն մինչև բոլորս չենք մեռնի, մենք թույլ չենք տա մոգերի ատրուշան կառուցել մեր երկրում»։

Երկար բանակցություններից հետո, մարզպանն, ինչպես հրամայված էր իրեն, պատրաստվեց (ատրուշանի) կառուցման։ Նա առարկում էր ու ասում մարդկանց. «Նայեք, դուք ապստամբվում եք արքայից արքայի հրամանի դեմ և դուք (այս ձևով) անպատվում եք նրան։ Նա կարող է ձեզ դաժան մահով պատժել. հասկացեք թե դուք ինչ եք անում»։

Երբ մարզպանը տեսավ նրանց հաստատակամությունը և իրեն դիմադրելու պատրաստակամությունը, և (մանավանդ) հասկացավ, որ նրանք ավելի ուժեղ են քան ինքը, (ուստի) նա մեկնեց բարկությամբ ու սպառնալիքներով։ Մեծ բարկությամբ գնաց և

բոլոր տեղի ունեցածը պատմեց արքային. նա (արքան) երբ իմացավ, սաստիկ չղայնացավ և ցասումով լցվեց ու որոշեց մահով (պատժել) Հայաստանի բնակիչներին։ Նա նրանց դեմ ուղարկեց մարզպանին՝ 15 հազար մարդկանցով պատերազմելու համար, հրամայելով, որ եթե նրանք հակառակվեն իր հրամանին, ոչնչացնեն նրանց, և այնտեղ կրակի ատրուշան կառուցեն։ Երբ բնակիչներն իմացան այդ մասին, 20000 մարդ հավաքվեցին մեկ մարդի նման, մարտի պատրաստ, նույնիսկ մինչև մահ (եթե անհրաժեշտ լինի) պաշտպանելու համար իրենց քրիստոնեությունը։ Երբ նրանք (պարսիկները) մոտեցան, սրանք (հայերը) նրանց դեմ տեղավորվեցին ճակատամարտելու համար ու մեր Տիրոջ՝ Հիսուս Քրիստոսի անունով, աղաղակելով հարձակվեցին նրանց վրա։ Քրիստոսն ընկճեց նրանց (ուժը) այս երկրի բնակիչների առաջ, և նրանք բոլորին, մինչև վերջին մարդը կոտորեցին։ Նրանք (հայերը) սպանեցին նաև մարզպանին, վերցրին նրա գլուխն ու ուղարկեցին պատրիկ Հուստինոսին, որ այն ժամանակ բանակել էր սահմանի վրա՝ Թեոդոսուպոլիս քաղաքում։

Այս և այլ իրադարձությունները, որոնք հետագայում տեղի ունեցան, պատմելու ու նկարագրելու համար բավական երկար են։

### ԳԼՈՒԽ 21

*Այն մասին, թե ինչ տեղի ունեցավ դրանից հետո Մեծ Հայքում Խոսրովի նկատմամբ, և թե ինչպես (հայերն) անջատվեցին նրանցից, և ամբողջ երկիրը հպատակեցրին հոռոմներին։*

Երբ այս բոլորը տեղի ունեցավ և ամբողջ Մեծ Հայքի ժողովուրդը տեսավ, որ իր դեմ դժվար մի պատերազմ արծարծվեց, պարսկական անզգամ պետության կողմից, որպես քրիստոնյաներ, հավաքվեցին բոլոր գավառներից, վախեցած ուզեցին ապաստան որոնել քրիստոնեական պետության (հոռոմների) մոտ, ասելով որ «Սրանից հետո քրիստոնյա պետության ծառաներ լինենք և փախչենք, որպեսզի ապաստան գտնենք հոռոմների պետության մեջ և փրկվենք մոգության վայրագություններից»։ Այս, և այլ բաներ պատմեցին կաթողիկոսն ու իրեն ընկերացած եպիսկոպոսները բարեգութ կայսրի և ամբողջ սենատի առաջ, որոնցից միայն մի փոքր մասը գրի առա որպես հիշողություն։ Ապա նրանք պատմեցին այնտեղ եղած պատերազմական ճակատամարտերի, մեծ ավերածությունների մասին։ Թե ինչպես հետո, նորից բանակներն

իրար ընդհարվեցին և, թե ինչպես պարսիկները շատ անգամ պարտվեցին, և թե ինչպես նրանցից (նույնիսկ) փղեր գրավեցին, և որովհետև այս բոլորը շատ (երկար) է, մենք այժմ դրանք մի կողմ կթողնենք։

## ԳԼՈՒԽ 22

### Այն մասին, թե ինչ էին պատմել կաթողիկոսը և նրան ընկերացածները, և այլն։

Այս ամբողջն ու այլ շատ բաներ է պատմվել մեր հոռոմների մայրաքաղաքում շատերի ներկայությամբ Դվինի, որը (գտնվում) է Մեծ Հայքի շրջանում, կաթողիկոսի և իրեն ընկերացած եպիսկոպոսների և ազատների կողմից։ Երբ նա (կաթողիկոսը) և այլ եպիսկոպոսներ ու (մի քանի) մեծամեծներ, իր հետ Հայաստանից ժամանեցին, բոլորն էլ մեծ պատվով ընդունվեցին և ստացան թագավորական պատիվներ ու նվերներ։ Բոլորին, որոնք նրա հետ այնտեղից ժամանել էին, տրվեց բարձր աստիճան, հարուստ տներ և ամուր թագավորական դղյակներ, իսկ նրանց, որոնք մնացել էին (իրենց) երկրում, շատ ոսկի ու տիտղոսներ ուղարկըվեցին. Նույնպես, նրանք հոռոմների կայսրից երեք տարով ազատվեցին (հարկից)։ Հրամայվեց, որ օգնություն ցույց տան նրանց, որոնք կռվում են պարսիկների դեմ, ինքնապաշտպանության ու ամբողջ հայկական հողերի ազատագրման համար։ Եվ նրանք երկար ժամանակ այն կատարեցին (պայքարեցին), և մոգերի ժողովուրդը հաճախ, որոշ առիթներով, հարձակվում էր քրիստոնյաների վրա, և պատերազմը տևեց վեց տարի։ Հետագա (իրադարձությունների) մասին իր ժամանակին շատից քիչը կհաղորդենք։

Կաթողիկոսն երկու տարի հետո մահացավ մայրաքաղաքում և չվերադարձավ իր հայրենիքը։

## ԳԼՈՒԽ 23

### Այն մասին, թե ինչպես հայ եպիսկոպոսները ժամանեցին մայրաքաղաք, միամտորեն գնացին և հաղորդվեցին (Քաղկեդոնի ժողովի (կողմնակիցների) եկեղեցում։

Սկզբում, երբ ժամանեցին հայոց կաթողիկոսն ու իրեն ընկերացող եպիսկոպոսներն ու մեծամեծները, որպես մոգերի անզգամ ու հեթանոս պետությունից փախած անձնավորություններ և որպես

քրիստոնյաների պետության մեջ ապաստան գտածներ, հենց (տեղ) ժամանելիս մեծ հարգանքով ընդունվեցին, և առանց հարցափորձի նրանք գնացին ու հաղորդվեցին քաղաքի պատրիարքի հետ, առանց ստուգելու ու անհանգստանալու Քաղկեդոնի ժողովի կապակցությամբ, հոռոմների տերության մեջ (մտնող) բոլոր եկեղեցիներում առաջացած վեճերի ու բաժանումների մասին։ Երբ եղածն իմացան իրենց երկրում, բարկացան նրանց վրա եպիսկոպոսներն ու բոլոր բնակիչները և խիստ նամակ գրեցին նրանց, այնպիսի խոսքեր (դրեցին), որոնց մասին ավելի լավ է առայժմ լռել։ Այդ պատճառով (եկածները) բաժանվեցին ու ստեղծեցին իրենց համայնքը մեծ դղյակներից մեկում, որտեղ ապրում էր իրենց (հայ) մեծամեծներից մեկը։ Այնտեղ էին հավաքվում իրենց կաթողիկոսի մահից հետո, համայնքի բաղում (անդամներ)։

## ԳԼՈՒԽ 24

Այն մասին թե ինչ պատահեց հետո, երբ հայերը չենթարկվեցին, և թե այդ պատմության շարունակությունը հետագային ենք թողնում, որովհետև այն չափազանց ընդարձակ է։

Մենք տեսնում ենք, որ մեր ժամանակ, և հատկապես այժմ, մեր օրերում պատահածներից շատ բան, մանավանդ եթե (գրենք) Ալեքսանդրի 880 թ. Պարսկական Հայաստանի հոռոմներին ենթարկվելու մասին (մանրամասնությունները), ապա մեր պատմության սահմաններից դուրս կղանք, որովհետև այդ դեպքը պատճառ եղավ, ամեն կողմից հարատև ու բաղում պատերազմների ծագման, ահավոր ավերածությունների ու շատ արյուն թափվելուն։ Որովհետև մոդն[2] իր խորամանկությամբ, նորից վեր կացավ ու հարձակվեց Հայաստանում եղած հոռոմների զորքի վրա, հուսալով, որ կոչնչացնի և կբնաջնջի նրանց։

Երբ չկարողացավ այդ անել (հաղթել), ետ վերադարձավ և մտավ հոռոմների Հայաստան, այն հույսով, որ կսլաշարի ու կգրավի Կապադովկիական Կեսարիան։ Սակայն (հոռոմների) զորքը նրան շրջապատեց, սպահեց (կանգնեցրեց) առաջխաղացումը և (ապա) Կապադովկիայի մուտքի մոտ, հարձակվեց նրա վրա։ Եթե (հոռոմ) հրամանատարները համագործակցեին (նա՝ խոս-

---

[2] Հեղինակն, անկասկած, նկատի ունի Խոսրով արքային։

րովը) կենդանի չէր վերադառնա։ Հոռոմների կայսրը նորից Հայաստանը հարստացրեց նվերներով, պարգևներով ու բանակ (ավելացրեց Հայաստանում), այնպես որ ամբողջ Պարսկական Հայաստանը պաշարվեց ու նվաճվեց հոռոմներից։ Շատ անգամ նրանք հաղթեցին և որոշ ժողովուրդների էլ նվաճեցին ու ենթարկեցին իրենց։ Ի վերջո (հոռոմների) հրամանատարների անճարակության և կամ գուցե նրանք շատ բաներում աստծու բարկությունն էին հրավիրել իրենց վրա, և այսպես ամբողջ հոռոմնեըի զորքը թվով երբ 100000-ից պակաս չէր, վախեցավ և ամոթահար փախավ ինչ որ ոչինչ (չներկայացնող) մարզպանից, որ ուներ հազիվ թե 30000 (զինվոր), և կորցրին (շատ) զենք ու ձի։ Դրանից հետո առաջացավ ու ուժեղացավ պարսիկը և գրավեց ամբողջ Հայաստանը։ Սակայն ամբողջ երկիրը պահանջեց, որ նա խոսք տա (որ մարդկանց չի վնասի), և նա խոստացավ։ Երկրից բոլոր փախածները վերադարձան ու ենթարկվեցին իրեն, բացի նրանցից, որոնք Կոստանդնուպոլսում էին (մնացել) յոթը տարի, և սրանք էլ ապստամբվեցին և կռվեցին նրա (Խոսրովի) դեմ։

Դրանից հետո երկու պետություններից բարձրաստիճան դեսպաններ ուղարկվեցին, որպեսզի հարցը պարզեն ու երկու պետությունների միջև եղած վիճելի խնդիրները լուծեն և խաղաղության դաշինքի մասին խորհրդակցեն։ Այդպես էլ եղավ, մի տարուց ավելի նիստեր գումարեցին, խոսեցին, վիճեցին, քննեցին իրար հետ, բայց ոչ մի արդյունքի չհասան։ Սկզբում պարսիկը պահանջում էր, որ իրեն ոսկի տան և ապա ինքը խաղաղության դաշինք կկնքի, դրա դեմ դուրս եկավ հոռոմների կայսրը, ասելով. «Նա մեզանից ոսկի է պահանջում, այնպես ինչպես նրանից, որը վախենում ու հպատակվում է նրան։ Բայց նա թող իմանա, ինչպես որ մինչև այժմ, նա մեզանից ոչ մի մինա չի ստացել, այնպես էլ քանի կենդանի ենք, մեզանից ոչինչ չի ստանա։ Եթե նա մեզ հավասարը հավասարի հետ, թագավորությունը թագավորության հետ չվարվի, մենք խաղաղություն չենք անի նրա հետ»։

Ի վերջո պարսիկն այս հարցում համաձայնվեց, սակայն դրանից էլ ոչինչ չստացվեց։

Սրա նման և այլ շատ քաղաքական ու կրոնական պատճառմների (նկարագրությունը) եթե անեինք, դրանք մի շարք հատորներում չէին տեղավորվի, ուստի դրանք թողնում ենք։

## ԳԼՈՒԽ 25

*Զորքի ապստամբության ու ստտծո խիստ ու արդար դատաստանի, ապա երկու ընտրյալների նույն ժամանակ (կատարված) շտապ ու դաժան հալածանքի մասին։*

Այս ժամանակ հոռոմներին հասած անպատվությունն ամեն ինչում հիշեցնում ու ցույց էր տալիս, որ կատարվում է առաքյալի այն խոսքը, թե «Քանզի յայտնելոց է բարկութիւն Աստուծոյ յերկնից ի վերայ ամենայն ամպարշտութեան եւ անիրաւութեան մարդկան. որք զճշմարտութիւնն անիրաւութեամբ ունին»[3], որովհետև այն ժամանակ անիմաստ ու անհասկանալի պատճառներով, քրիստոնյաները դարձել էին քրիստոնյաների դաժան ու խիստ հալածողներ, անդթորեն ու առանց աստծուց վախենալու, Նիրավի վայրագորեն, բարբարոսաբար և ոչ քրիստոնեաբար, մռնչացող առյուծի կամ կորյունի նման, որը թաքնված կարող է պատառոտել, այնպես էլ Տերը կանգնեց նրանց դեմ, բարձրացրեց ու խոնարհեցրեց նրանց, և այդ (կատարեց) այնպես բացահայտ, որ հասկանալի ու տեսանելի եղավ բոլոր մարդկանց։ Որովհետև նրանք շվայտությամբ, իրենց մարմնի զգայարանների միջոցով, բոլոր տեսակի ոճիրներ գործեցին, նրանք նույնիսկ, ինչպես հարմար էր քրիստոնյա մարդկանց, փոխանակ օրենքով ու բարեսրտությամբ վերաբերվեին բոլոր ուղղափառ հավատացյալների հետ, ընդհակառակը սաստիկ զայրույթով դարձել էին դաժան ու անգութ հալածողներ։ Որովհետև նրանք աստուծո ծառաներին դաժան բանտարկությունների ենթարկեցին մութ և նեղ նկուղներում, չնայած նրանք (երբեմն) լինում էին տարիքով մարդիկ, մարմնով թույլ ու տկար՝ պատկառելի տարիքով, նրանք սակայն նրանց էլ դատապարտում էին անգութ աքսորի, առանց աստծուց վախենալու։ Նրանց շղթայում ու խիստ արգելափակում էին, անոթի ու ծարավ էին թողնում, և թույլ չէին տալիս որևէ բարեկամի այցելել և երբ նրանց աքսորում էին, հրահանգում էին, որ աքսորականներին ոչ մի գթասրտություն ցույց չտան, այլ ընդհակառակը, ստիպում էին նրանց հետ ամեն կերպ վատ վարվել, այն հույսով, որ տառապանքների ու փորձությունների շնորհիվ պարտադրեն նրանց, իրենց սանջողների կամքին ենթարկվել։ Եվ երբ ուժով ու բռնությամբ չկարողացան որևէ արդյունքի հասնել, ապա նրանք օրենքն ու կանոնը դրժելով,

---

[3] «Պաւղոսի առաքելոյ առ Հռովմայեցիս», Թուղթ, գլ. Ա, 18։

ապօրինի կարգ էին կատարում, վաղուց ուղղափառ եպիսկոպոսներից կարգ ստացածներին նորից էին քահանա կամ եպիսկոպոս ձեռնադրում։ Այն ժամանակ նման շատ գործեր կատարեցին, իսկ այժմ, ժամանակը շատ կարճ է այդ (բոլորը) պատմելու համար. ոչ էլ ինչպես փաստն է ցույց տալիս, ստոր արդարությունը կարողացավ հանդուրժել կամ համբերել նրանց (այս արարքներին), ուստի շտապ ու արագ երկնքից իջավ (ստոր) զայրալից վճիռը այս դաժանության ու վայրագության պատճառով, և նրանց, որոնք արհամարհել էին ստոր վախը, (պատիժը) հասավ, և Հովհան պատրիարքին և, նույնիսկ կայսրին, որը նրա (պատրիարքի) կողմից մոլորվել էր ու այս (դաժանությունները) բաները կատարում էր նրա ազդեցությամբ։ Երկուսն էլ խարազանվեցին նույն բարկության խարազանով և ստացան նույն դատավճիռը, և նրանց (հոգիները) հանձնվեցին չար ոգիներին, որպեսզի նրանք սարսափելի ու ահավոր ձևով տառապեն. (այդ ամենը) սակայն մենք այժմ լռությամբ կքողարկենք ի հարգանս քահանայության ու կայսերական արժանապատվության։ Նրանից յուրաքանչյուրի մեջ երկար ժամանակ գործում էին սատանաները և իրենք էլ առանձին առանձին ծախվել էին նրանց (սատանաներին), և այս հանդամանքը ընդհանուրի խոսակցության ու զրույցի առարկա էր (հանդիսացել), իսկ այս (բանի) ճշմարտությունը կարող են հաստատել այդ ժամանակվա մարդիկ[4]։

## ԳԼՈՒԽ 30

*Այն մասին, թե ինչպես կործանվեցին ուղղափառների եկեղեցիները քաղկեդոնականների հալածանքի ժամանակ, և մի քիչ անց, կարծես արդարության որոնմամբ, ամբողջ Թրակիայում բարբարոսները կործանեցին ու ավերեցին քաղկեդոնականների եկեղեցիներն ու խորանները։*

Նրանք, որոնք քաղաքացիական ու եկեղեցական իշխանություն ունեին, հարմար գտան քանդել ուղղափառների եկեղեցիներն ու դրանց խորանները[5] և գետնին հավասարեցնել։ Մի փոքր ժամանակ, անց, մի բարբարոս ժողովուրդ, որը մազոտ լինելու

[4] Զգացվում է, որ հեղինակն այս էջերը գրել է բանտի խցում, իր տանջանքների ու հոգեկան տառապանքների ազդեցության ներքո։

[5] Կիբորիա՝ զոհասեղանի կամ խորանի բարձր մասը։

պատճառով Ավար էր կոչվում, առաջացավ դեպի (հռոմների) երկիրը ու (հասավ) մինչև Կոստանդնուպոլսո նախապարիսպները. նրանք (ավարները) Թրակիայի ամբողջ եկեղեցիները կողոպտեցին ու կործանեցին, նրանք քանդեցին ու ավերեցին քաղաքի պարսպի մոտ եղող ամպհովանին։ Այն ժամանակ որոշ մարդիկ հասկացան արդար դատաստանի (իմաստը) ու ասացին. «Ինչպես որ մեր կողմնակիցներից ոմանք մեզ հետ համաձայն չեղողների հետ անարդարացի ձևով վարվեցին, նրանց եկեղեցիները կործանեցին, այնպես էլ աստված իր բարկությամբ մեր եկեղեցիներն (պատժեց), և այժմ դրանք ամայացվել ու կործանվել են»։ Դրա համար էլ բոլորը զարմանում ու փառավորում էին աստծուն, որը յուրաքանչյուրին վարձատրում էր իր գործի համաձայն։

## ԳԻՐՔ ԵՐՐՈՐԴ

### ԳԼՈՒԽ 25

*Տիբերիոս կայսեր ժամանակ, դեռ երբ նա կեսար[6] էր (տեղի ունեցած) բազում պատերազմների ու դժբախտությունների մասին։*

Ողորմած Տիբերիոսը Հուստինոս կայսեր կենդանության ժամանակ կեսար դարձավ, և որովհետև Հուստինոսը զանազան հիվանդությունների պատճառով խեղճ (վիճակում) էր, (ուստի) ինչպես պարսիկների, այնպես էլ այլ բարբարոս ժողովուրդների, որոնք ապստամբվել էին հռոմների հզոր պետության դեմ, բոլոր տեղերում պատերազմները վարում էր կեսարը։ Նրա՜ն (կայսրին) սպառնում էին բոլոր կողմերից, և Հուստինոսի մահից հետո ապստամբվեցին նրա դեմ, հատկապես անիծված այն ժողովուրդը, որն իր մազերի պատճառով Ավար[7] էր կոչվում։ Երբ նա ինքնակալ[8] դարձավ, նրան մի փոքր ժամանակ էլ հանգիստ շունչ քաշել չթողեցին, և տարբեր տեղերից անընդհատ (անհանգիստ) լուրեր ու տեղեկություններ էին հասնում իրեն։ Մեծամեծներից ու փոքրերից շատերը ցավում էին նրան, ասելով. «Պետության

---

[6] «Կեսարը (լատ. caesar) որպես կանոն ընտրվում էր կայսեր կողմից, նա կայսրության երկրորդ մարդն էր և եթե կայսրը վախճանվեր առանց արու զավակի, թագավորությունը ժառանգում էր կեսարը»։ Տե՛ս Կոստանդին Ծիրանածին, ծնթ. 29, էջ 256։ Խոսքը այստեղ Հուստինոս Բ-ի մասին է։

[7] Բնագրում «Abris»-աբրիս է։

[8] Բնագրում «Avtokrator» է։

դժվարին դժբախտությունները ու ծանր օրերը նրան բաժին ընկան. օր ու գիշեր նա պայքարի ու հոգսերի մեջ էր, որպեսզի բոլոր տեղերում (եղած) պատերազմների համար զորք հավաքի ու ուղարկի։

## ԳԼՈՒԽ 40

### Հարիտի որդի՝ Մունդարի և նրա դեմ եղած մեղադրանքների մասին։

Երբ Կոմես Մավրիկիոսն արևելքում էր, որպես զորքի հրամանատար, նա համաձայնության եկավ արաբների թագավոր՝ Մունդարի հետ, որ համատեղ արշավեն պարսիկների երկիրը։ Մի քանի օր առաջանալուց հետո, հասան Բեյթ-Արամեի[9] դիմաց (մի տեղ), որտեղ գտնվում էր պարսիկների թագավորի քաղաքը[10]։ Իրենց դեմ (սակայն) գտան ավերված կամուրջը, որի վրայով նրանք մտածում էին գնալ ու արշավել (պարսիկների) մայրաքաղաքը։ Այն ժամանակ երկուսը վիճեցին, որովհետև Մավրիկիոսը ենթադրում էր, որ Մունդարն էր լուր ուղարկել պարսիկներին՝ նրանց նախազգուշացնելու համար, և դրա հետևանքով է, որ (պարսիկներն) ավերեցին կամուրջը։ Փոխադարձ ատելությամբ ու զզվանքով, առանց մի բան անելու, վերադարձան։ Այն ժամանակ երկուսն էլ Տիբերիոս կայսրին գրեցին, մեկը մյուսի վարմունքից բողոքելով։ Կայսրն ամեն կերպ փորձեց նրանց հաշտեցնել, բայց չկարողացավ։ Մավրիկիոսը գնաց կայսրի մոտ, խիստ մեղադրանքներ ներկայացրեց Մունդար թագավորին։ Կայսրը հավատաց նրա խոսքերին և խիստ բարկացավ Մունդարի վրա և մտածեց այնպես անել, որ նրան բռնեն ու բերեն մայրաքաղաք։ Այն ժամանակ Մագնա Կյուրատորը[11], որը Մունդարի բարեկամն ու պաշտպանն էր, և (Մունդարը) հույսով էր, որ նա իրեն կպաշտպանի կայսրի առաջ. սակայն սա կայսրին հաճելի լինելու համար ասաց. «Եթե հրամայես ես նրան շղթաներով կբերեմ այստեղ»։ Այս առաջարկությունից կայսրը գոհ մնաց ու ուղարկեց Մագնային։ Հրամանը ստանալով, նա արևելք մեկնեց՝ այն քաղաքը, որը կոչվում էր Խվարին և որը նա (Մագնան) էր հիմնադրել, և որպես քաղաք, պարիսպով շրջապատել էր և մեջն էլ տաճար կառուցել։ Եկեղեցու օծումը պատճառաբանելով, իր

---

[9] Միջագետք։
[10] Պարսիկների մայրաքաղաք՝ Տիզբոն։
[11] Կալվածների խնամակալ։

հետ վերցրեց Անտիոքի պատրիարքին, որպեսզի ավելի լավ խաբի և Մունդարին համոզի գալու։ Տեղ հասնելով, նա պատգամ ուղարկեց Մունդարին, ասելով. «Եկել եմ այստեղ այս եկեղեցու օծման և եթե դժվար ճանապարհորդություն կատարած չլինեի, կգայի՝ քեզ հարգելու, սակայն ցանկանում եմ քեզ տեսնել ու իմանալ առողջությանդ մասին, ուստի խնդրում եմ շտապ գաս ինձ մոտ, մի քանի օրով և միասին հանգստանանք, բայց մեծ ծախսեր չկատարես ու մեծ զորքով չգաս, այլ մի փոքր խմբով»։

## ԳԼՈՒԽ 41

*Մունդարի գալուստը Մագնայի մոտ, նրա ձերբակալության և այլ բաների մասին։*

Երբ Մունդարը ստացավ այս հրավերը, ուրախացավ և առանց ուշացման մեկնեց նրա մոտ, դեպի իր սիրելի ընկերն (ունեցած) վստահությամբ, առանց մեծ շքախմբի։ Նա (Մագնան) որպեսզի չբացահայտի իր գարշելի դավաճանությունը, նրան ջերմությամբ ընդունեց և հրամայեց մեծ տոնախմբություն կազմակերպել և ասաց. «Բաց թող նրանց, որոնք քեզ հետ են եկել»։ Մունդարը պատասխանեց նրան. «դու ինչպես հրամայել ես, ես եկել եմ փոքր շքախմբով իսկ առանց զորքի կամ փոքր խմբի չեմ կարող վերադառնալ»։ Մագնան ասաց նրան. «Բաց թող և երբ մեկնես, ես լուր կուղարկեմ և նրանք ետ կգան»։ Սակայն Մունդարը, որ մեծ փորձ ուներ, իրեն դուր չեկավ այդ գործը, և նա սկսեց վախենալ։ Նա լուր ուղարկեց իր բանակին, որ մի քիչ հեռանան ու իրեն սպասեն։ Երբ նրանք հեռացան, Մագնան իր հետ եղած զորքին հրամայեց գաղտնի մոտենալ, իսկ դուքսին (հրամայեց) իր մոտ մնալ։ Երեկոյան նա Մունդարին ասաց. «Տեր իմ պատրիկ, դու մեղադրված ես թագավորի առաջ և նա հրամայել է, որ գնաս իր մոտ և քեզ պաշտպանես ու նրան համոզես, որ այն, ինչ քո մասին ասել են, ճշմարիտ չէ»։ Այն ժամանակ Մունդարը պատասխանեց նրան ասելով. «Բոլոր այս իմ գործերից հետո չեմ կարծում, որ ինձ մեղադրանք ներկայացվի. չնայած ես կայսրի ծառան եմ և չեմ հրաժարվում նրան ներկայանալուց, սակայն այժմ հնարավոր չէ բանակը թողնել, որովհետև, եթե ես այդպես վարվեմ, պարսկական արաբները կգան և իմ կանանց և երեխաներին կգերեվարեն և իմ ունեցվածքն էլ կտանեն»։ Այդ ժամանակ հռոմների զորքը երևաց։ Մագնան բարկացած ասաց նրան. «Եթե դու քո կամքով չգնաս, քեզ կշղթայեմ, էշին կնստեցնեմ ու այդ-

*պես կուղարկեմ»։ Այն ժամանակ նրան պարզ դարձավ նրա խորամանկությունը և տեսավ, որ իր բանակի (օգնությունից) զրկված է։ Նա (Մագնան) բռնեց նրան ու հանձնեց հոռոմների բանակին, որ հսկեն նրան։ Նա թշվառ ու խղճալի վիճակում էր, և նման էր անապատի առյուծին, որը բանտարկվել էր վանդակում։ Երբ իր զորքն իմացավ այս (եղածը) շրջապատեց ամրոցը և պատրաստվեց այն կրակի տալ, սակայն երբ նրանք տեսան, որ հոռոմները երևացին և ճակատամարտի են պատրաստվում, նրանք հեռացան։ Նրան (Մունդարին) հոռոմները շրջապատեցին և ուժեղ հսկողությամբ ամրոցից բերեցին և տարան մայրաքաղաք։ Երբ նա ժամանեց, կայսրը հրամայեց, որ նա այնտեղ ապրի, որտեղ որ նախկինում ապրել էր, և (միևնույն ժամանակ) հոգան նրա ծախսերը։ Այդպես նա մնաց առանց նրա (կայսրից) կողմից ընդունվելու. իր հետ էր իր կանանցից մեկը, երկու որդիներն ու մեկ դուստրը։*

### ԳԼՈՒԽ 42

### *Մունդարի չորս որդիների մասին, և թե ինչ արեցին նրանք։*

*Մունդարի չորս որդիները, հատկապես ավագը, որին Նուղման էին կոչում, Մունդարից ավելի իմաստուն ու պատերազմական կարողություններով օժտված տղամարդ էր։ Հավաքեցին իրենց զորքը և հարձակվեցին Մագնայի ամրոցի վրա, որը նույնպես վերադարձել էր կայսրի մոտ։ Բացի մարդկանց գերի վերցնելուց, սպանելուց կամ այրելուց, նրանք կողոպտեցին ու վերցրին ամեն ինչ՝ ոսկի, արծաթ, պղինձ, երկաթ, բրդից ու կտավից եղած զգեստները, հացահատիկը, գինին ու ձեթը։ Նրանք գրավեցին կենդանիների բոլոր տեսակի հոտերը, ինչ որ իրենց ձեռքն անցավ՝ եզներ, ոչխարներ, այծեր։ Արաբական բանակներն առաջացան ու կողոպտեցին Արաբիայի ու Ասորիքի շրջաններում եղած անսահման ունեցվածքն ու ինչքը։ Նրանք հեռացան անապատի խորքը, մեծ քանակությամբ վրաններ խփեցին (այնտեղ), և ավարը բաժանեցին, լինելով միշտ արթուն, ամեն կողմից ուշադիր և պատերազմի համար պատրաստ։ Նրանք նորից դուրս եկան, կողոպտեցին, ավերեցին ու վերադարձան, այնպես որ սարսափի մեջ էր ամբողջ արևելյան շրջանը, մինչև ծովափ, և (մարդիկ) քաղաք էին փախչում ու չէին համարձակվում նրանց երևալ։ Երբ երկրի մեծամեծներն ու զորքի հրամանատարները նրանց լուր ուղարկեցին, ասելով, թե «ինչու՞ եք այս բոլորը կատարում,*

Նրանք պատասխանեցին. «ինչու՞ կայսրը մեր հորը գերի վերցրեց, այդպիսի (լավ) գործերից, հաղթանակներից, քաջագործություններից հետո, որ նա կատարեց նրա (կայսրի) համար, (այժմ) նա ճնշված վիճակում է. (բացի այդ) նա դադարեցրեց մեզ անոն[12] տալուց և մենք ապրելու համար ոչինչ չունենք, դրա համար էլ մենք ստիպված ենք այդպես անել, բայց մենք (մարդկանց) չենք սպանել և ոչ էլ տները այրել»։ Ի վերջո՝ նրանք գնացին Բոստրա[13] քաղաքը, շրջապատեցին այն և (բնակիչներին) ասացին· «հանձնեք մեզ մեր հոր զենքերն ու թագավորական իրերը, որոնք ձեզ մոտ են։ Եթե դուք այն չկատարեք, ապա մենք ձեզ կոչնչացնենք, կայրենք ու բոլորին կսպանենք և ինչ որ կարող ենք (կանենք) ձեր քաղաքում ու ամբողջ շրջանում»։ Երբ դուքսը լսեց այդ, որը հայտնի և նշանավոր մարդ էր, բարկացավ, հավաքեց ամբողջ զորքը, դուրս եկավ, արհամարհելով նրանց որպես (թափառաշրջիկ) արաբների։ Նրանք (զորքը) տեղավորեցին նրա դիմաց, հաղթեցին ու սպանեցին, և նրան (դուքսին) և իր մարդկանցից շատերին։ Երբ քաղաքի բնակիչները տեսան այդ, (լուր) ուղարկեցին նրանց ասելով. «դադարեցրեք սուրը (սպանությունը) և մենք կտանք այն, ինչ որ ձերն է, և այն ընդունեք խաղաղությամբ»։ Այսպես նրանք բերեցին նրանց հոր իրերը։ Նրանք (որդիները) վերցրին դրանք և վերադարձան անապատ՝ իրենց բանակատեղին։ Ինչ վերաբերում է կողոպուտին ու ավարին, նրանք երկար ժամանակ շարունակեցին այն (կատարել)։

### ԳԼՈՒԽ 43

*Մաոնայի երկրորդ գալուստը, մահը, որը նրան պատահեց այնտեղ, և (այսպիսով) վերջ տրվեց նրա խորամանկությանն ու չարագործությանը*

Երբ Տիբերիոս կայսրը լսեց Մունդարի որդիների մասին, շատ բարկացավ և նորից ետ ուղարկեց Մագնային, որ նա Մունդարի եղբորը նրա փոխարեն արաբների թագավոր դարձնի, և եթե կարող է Մունդարի որդիներին, խորամանկությամբ կամ խաբեբայությամբ կամ շողոքորթությամբ և կամ պատերազմով նրանց բռնի. Հրամայված էր նույնպես շատ քաղաքների դատավորներին

---

12 «Anona»-ռոճիկ, տարեկան ռոճիկ (հիմնականում հացամթերք էին տալիս)։

13 Իդումե կամ Էմոն երկրամասը, Պաղեստինի Հարավային մասում։

ու դուքսերին, որ մեծ բանակով նրա հետ գնան։ Այսպես, մեծ հանդիսությամբ նա մեկնեց, և սկզբում Մունդարի եղբորը թագավոր նշանակեց ..... որը տաս օրից մահացավ և ապա ....[14]

## ԳԻՐՔ ՉՈՐՐՈՐԴ

### ԳԼՈՒԽ 19

*(Եկեղեցու) մեջ բաժանումը, հակաճառությունը, անջատումը, ոչ միայն Սիրիայում, այլև Կիլիկիայում, Ասորիքում, Ասիայում, Կապադովկիայում և Հայաստանում, որը սակայն ամենից շատ (բորբոքվել) էր թագավորական քաղաքում և նրա շրջակայքում*

887 թ. (576) վիշտ վշտի վրա, հարված հարվածի վրա հասավ, հալածված ու բզկտված, վերևում նշված ամբողջ եկեղեցիներին, հավատացյալներին. ամեն տեղ բաժանման, վեճերի պառակտման, սխալների ու չարագործությունների պատճառով, որը սկսվեց (նախ) Հակոբի և Պողոսի միջև, և ապա տարածվեց անգութ խոցի նման, և (կատարեցին) այն, առանց աստծուց վախենալու։ Որովհետև եպիսկոպոսները, կղերականները, մեծ ու փոքր վանքերը միացան, ոմանք այս կողմ և ոմանք այն. նույնը արեցին նաև եկեղեցու մարդիկ (հավատացյալները) և՛ քաղաքներում և՛ գյուղերում և՛ շրջաններում. յուրաքանչյուր հատված աշխատում էր վնասել, ավերել, նախատել և վատն ասել մյուսի մասին. բարբարոսաբար և մոլեգնորեն փնտրում էր մյուսի սխալը և զրպարտում նրան. բաժանում էին ժողովուրդին ու պառակտում եկեղեցիները, ճեղքվածք առաջացնում համայնքներում, մինչև որ մեկը զզվեցնում էր իր հարևանին և հեռանում նրանից. (յուրաքանչյուրը) ձգտում էր ավելացնել իր կողմնակիցների (քանակը), և դրա համար անում էր ամեն ինչ, ուրիշներին բաժանելու, մոլորեցնելու, պառակտելու և այլ մարդկանց իրեն կողմնակից դարձնելու համար։

Այսպես, երկու կողմերն էլ լցված էին թշնամական զայրույթով. փոխանակ կարգի, արդարության ու աստծո վախի, մի բան, որին անծանոթ չէին, և կարող էին զղջալ իրենց վատ գործերի համար և դադարեցնել Իր (Քրիստոսի) եկեղեցում ստեղծված երկպառակությունները ու վրդովմունքը։ Սակայն այս ոճրային

---

[14] Այստեղից ասորերեն ձեռագրի 13 գլուխները պակասում են։ 4-րդ գրքի առաջին 5 գլուխները ևս չեն հասել։

ատելության ու ոխակալության ընթացքը, և՛ մեղադրանքը և՛ փոխադարձ անարգանքը առաջացել էր նրանց մեջ (սատանայի) կողմից, որը «խնդրեաց զձեզ խարբալել իբրեւ զցորեան»[15]։ Փորձում էին մեկը մյուսին ծաղրել ու մեղադրել։ Որովհետև նույնիսկ հեթանոսներից, հրեաներից, հերետիկոսներից ոչ մեկն այդպես վայրագորեն ու մոլեգնորեն չէր համարձակվի ատել մեկը մյուսին, ինչպես հավատացյալները (ատում) էին իրար, այն էլ այնպիսի ժամանակ, երբ իրար մեջ հավատի խնդրում, տարբերություն կամ վեճ չկար։

## ԳԼՈՒԽ 20

### Այն մասին, թե ինչպես Պողոս պատրիարքը գրեց Հակոբին, որ նա բացատրություն տա այն կանոնի մասին, որ օգտագործվում էր իր երկրում

Այսպես, ոչ միայն երկուսի՝ Պողոսի ու Հակոբի միջև, այլև ընդհանրապես ամբողջ Ասորիքում և հարևան երկրներում երկպառակության պատճառով, սկսվել էին վայրագությունները ու անկարգությունները։ Ոմանք հավանություն էին տալիս Հակոբի Ալեքսանդրիայում կատարած գործունեությանը, իսկ ուրիշները միանալով Պողոսին, ժխտում ու մերժում էին Հակոբի գործունեությունը, և գտնում էին, որ այն ամբողջությամբ հակառակ է կանոնական կարգին, և այս տեսակետին էին հիմնականում գլխավոր վանքերից (շատերը)։ Երբ իրերի վիճակն այսքան դաժան ու խիստ դարձավ, ամեն տեղ Պողոսն անընդհատ (լուր) էր ուղարկում Հակոբին բազմաթիվ պատգամավորների միջոցով ու ասում. «Ինչու՞ նման անկարգություններ պետք է լինեն աստծո եկեղեցում, եկեք հավաքվենք իրար հետ և քննենք կանոնական և օրինական ձևով մեր միջև եղած վիճելի խնդիրները, և եթե ըստ կանոնների մեղավոր եմ, մեկ նախադասության կամ մեկ կանոնի փոխարեն, ես պատրաստ եմ ընդունելու երեքը, և եթե հակառակն է, սխալը քոնը կլինի, քո սիրույն ես համաձայն եմ նաև դրան»։ Սակայն նրանք, որոնք պարզամիտ ծերունի Հակոբի կողքին էին, նրան թույլ չէին տալիս, որ զիջում անի, բայց համաձայն էին, որ նրան տեսնի ու նրա հետ խորհրդակցի, որովհետև նրանք գիտեին, որ (Պողոսականները) չեն կարող նրա (Հակոբի) դեմ դուրս գալ

---

[15] «Աւետարան ըստ Ղուկասի», ԻԲ, 31։ Խարբալել նշանակում է մաղել, վտանգել, փորձել, վրդովել, խախտել, խռովել։

և նույնպես գիտեին, որ նրա առաջին իսկ խոսքից նա կգերի նրանց ըստ արժանվույն։ Դրա համար Հակոբն ասաց.

«Ես համաձայնվել ու ընդունել եմ ալեքսանդրացիների (տեսակետները) և համաձայնագիր կնքել նրանց հետ։ Նրանցից հրաժարվել չեմ կարող, և առանց նրանց հավանության ոչ նա ինձ պետք է տեսնի, և ոչ էլ ես իրեն»։

## ԳԼՈՒԽ 21

### Արաբների թագավոր Հարիթի որդի՝ Մունդարի եռանդուն հորդորը

Հարիթի որդի՝ Մունգարը, հավատացյալ, գործունյա և նախանձախնդիր մարդ էր, որը շատ ժամանակ կորցրեց երկու կողմերին ստիպելով, աղերսելով, որ վերջ տան իրենց զայրույթին, պայքարին, և խորհրդակցեն իրար հետ, խոսեն (վիճելի) հարցերի շուրջ և խաղաղվեն։ Բայց Հակոբիկյանները չէին համաձայնվում, չնայած Պողոսը խնդրեց և՛ Մունդարին և՛ ուրիշներին, որ ամբողջովին քննարկվի և բացատրություն տրվի այն հարցերի շուրջ, որոնք սատանայի կողմից, իրենց միջև առաջացել են։ Դեռ երկար ժամանակ առաջ, իր հայր՝ Հարիթի օրից, նրանք Հակոբին համարում էին մեծ մարդ, և հետագայում՝ վերջին ժամանակ, նմանապես հարգում էին նաև Պողոսին, բայց այժմ երկուսն այնպիսի մոլեգին հակառակության ու վեճի մեջ էին, որ Հակոբի կողմնակիցները չէին մեղմացնում վեճը, որը տարածվել էր նաև արաբ ցեղերի մեջ և նրանցից շատերի համար այն դարձել էր գայթակղության քար։ Ոմանք հետևեցին Պողոսին, մինչ ուրիշները՝ Հակոբի կողմը բռնեցին։

## ԳԼՈՒԽ 22

### Լոնգինոսն ու Թեոգորը, որին (վերջինին) պատրիարք դարձրին. անհամաձայնության պատճառով եկան Ասորիք՝ Պողոսի կողմնակիցներին հանդիպելու

Այս անհամաձայնության ու անկարգության լուրերը պատճառ եղան, որ Լոնգինոսն ու իր ընկերները և նրանց հետ նաև Թեոդորը, որին պատրիարք էին դարձրել, դուրս գան Եգիպտոսից և գնան արևելյան երկրները՝ հատկապես Ասորիք, հանդիպելու Պողոսի կողմնակիցներին և բանավեճի մեջ մտնեն Հակոբի համախոհների հետ, և եթե հնարավոր լինի վերջ տան պայքարին և շարունակվող

վեճի պատճառով՝ առաջացած չարիքներին։ Թեոդորը Տիրու քաղաքում հանգիստ մնաց, իսկ Լոնգինոսը գնաց Խիրտա մայրաքաղաքը, որը կառուցել էր Հարիտի որդի՝ Գաբլան, որպեսզի (այնտեղ) հանդիպի Հարիտի որդի՝ Մունդարին։ Նրա հետ խորհրդակցեց և ամբողջ ճշմարտությունը պատմեց նրան. Թագավորը (երբ այդ իմացավ) ավելի անհանգստացավ և (ուզեց) նրանց միջև հանդիպում կազմակերպել ու նրանց հաշտեցնել։ Սակայն Հակոբի կողմնակիցները բացարձակապես մերժեցին (հանդիպել)։ Համենայն դեպս, Հակոբի կողմնակիցների մի մեծ խումբ, ի վերջո հավաքվեց նրա (Հակոբի) հետ անապատում՝ Մարի Խանանա վանքում և նրանցից մեկը՝ մի եպիսկոպոս, որը Հովհան էր կոչվում, և նույն վանքից էր, նենգ նպատակով, ուղարկվեց Լոնգինոսի և նրա ընկերակիցների մոտ, նամակով թե. «Իմ տեր ծերունի Հակոբն այստեղ է եկել և ուզում է խորհրդակցել ձեզ հետ, շտապ եկեք նրա մոտ, բայց մենք երեքով ենք ներկա լինելու, ես, դու և Հակոբը ու մենք կխոսենք (մեզ հետաքրքրող) հարցի շուրջ և այսպիսով վերջ կտանք վեճին և խռովահույզ վիճակին»։

Երբ Լոնդինոսն ստացավ այս նամակը, անմիջապես վեր կացավ և իր մնացած կողմնակիցների հետ գնաց ու հասավ (ասված) տեղը։ Սակայն նրանք· շուտով չեկան, ապա նրան և նրա ընկերակիցներին առաջնորդեցին այնպիսի տեղ, որտեղ նստած էին ոչ քիչ վանականներ, աշխարհականներ, իրավագետներ, և օրենսգետներ։ Եվ երբ Լոնգինոսը տեսավ պատրիականներին[16], ասաց Հովհանին, որ եկել էր նրան հրավիրելու. «Այս ինչ խարդախություն արեցիր ու կեղծ (բան) գրեցիր ինձ, ասելով, որ այստեղ ծերունի (Հակոբը) կլինի միայն, որպեսզի ես գայի ու երեքով իրար հետ խորհրդակցեինք, որտե՞ղ է ծերունին, ովքե՞ր են սրանք»։ Իր այսպես խոսելու վրա, վանականներից մեկը գրված մի ամբաստանագիր ներկայացրեց ու ասաց· «Վերցրու՛ և կարդա՛ այն և դրան պատասխանիր»։ Սակայն նա պատասխանեց. «Ես այստեղ եմ հրավիրվել նենգությամբ ու խաբեբայությամբ և ես չեմ կարդա այն ու ոչ էլ որևէ մեկին պատասխան կտամ.» և երբ շուրջն էր նայում փախչելու, նրանք ձեռք դրեցին նրա վրա ու բռնեցին, ասելով. «Դու այստեղից

[16] Ասորերեն բնագրում այս բառը անորոշ է. արդյո՞ք նկատի ունի «Պետրոսականներին» (Ալեքսանդրիայի պատրիարք՝ Պետրոսի կողմնակիցներին). այս մասին տե՛ս նաև՝ Payne Smith. The eccl. history, p. 286.

դուրս չես դա մինչև չկարդաս այն, և եթե չկարդաս, մենք կկարդանք քեզ համար, և լսի՛ր»։ Բայց երբ նրանք սկսեցին կարդալ, նա մատները դրեց ականջներին, որպեսզի չլսի։ Դրա վրա նրանք սկսեցին նրան քաշքշել այս կամ այն կողմ և նա բացականչեց. «Ավա՜ղ ավա՜ղ, ես ինչ արեցի, ինչու՞ ես պետք է դավաճանությամբ սպանվեմ»։ Հանկարծ կռիվ ծագեց և կռիվը գնալով տաքացավ և դրան հաջորդեց անկարգության տեսարանը և ոճիրը գործվելու եզրին էր, երբ նա հնարք գործադրեց և ավա՜ղ բղավելով, կարողացավ դժվարությունից դուրս գալ և իրեն ազատելով նրանց ձեռքից, փախչել։ Եվ շատերը սատանաների բացահայտ սադրանքով, նման բազում գործեր կատարեցին ամեն տեղ[17]։

## ԳԼՈՒԽ 31

*Թե ինչ արեցին շատերը (եկեղեցու) բաժանումից հետո, (մանավանդ) Պողոսի ու Հակոբի կողմնակից-ներն, որոնք (հոտը) պառակտեցին ու գնացին*

Գլխավոր և ամենահայտնի վանքերը և՛ հարավում և՛ արևելքում պառակտվել ու բաժանվել էին Պողոսյան և Հակոբիկյան երկու հակառակ խմբակցությունների, և սրանք իրար դեմ այնպես էին զայրացել, որ (գործը) հասել էր հարվածի ու կռվի, իսկ չարագործությունները անհաշվելի էին, և հաճախ դրանք վերջանում էին ոճիրով։ Ի վերջո դատավորներից շատերը միջամտում էին ու շատ ձերբակալություններ կատարում, և վանականները շղթաներով ու կապանքներով տարվում էին Մեծն Անտիոք և նետվում բանտ։ Այսպես նրանք չնայած պատվո զգեստ էին կրում, բայց այն (զգեստը) պատվով չէին պահում և դառնում էին հեթանոսների, հրեաների, հերետիկոսների անարգանքի ու ծաղրի առարկա. տեսնում էիր թե ինչպես նրանց բերում էին արդարության ատյանները, ձեռնակապով, շղթայով, սպանության համար մեղադրված. նրանք, պատկառելի կերպարանքով այս մարդիկ, տարիքոտ վանականներ, երկար մորուքով, որը հասնում էր մինչև իրենց պատմուճանների դարձվածքը, օձիքն իրենց վզին, կանգնում էին պատասխան տալու դատավորների առաջ (կատարած) ոճրի համար։ Ո՞վ չի դողա ու ողբա ու կոծի նման սարսափելի գործերի համար, ո՞վ չի սգա բորենու ու չի ողբա շնագայլի պես.

---

[17] Գլխի շարունակությունն ու ինչպես նաև գրքի 6 գլուխները չեն հասել մեզ։

նման աղի, որ ոչ միայն կորցրել է իր համը, այլև ինքը կեղտոտվել ու նեխել է ու դրա համար դուրս է գցվել և կոխոտվել մարդկանց ոտքերի տակ։ Մի շարք վանքերում վանականները բաժանվել էին երկու խմբի, որոնցից մեկը շարունակում էր (բնակվել) նախկին տանը, մինչ մյուսը լքել էր այն ու հեռացել և բնակվելու համար այլ վայր էր գտել և այն անվանել իր թողած նախկին վանքի անունով։ Հակառակ դրան յուրաքանչյուրը մյուսի նկատմամբ տածում էր մահացու թշնամանքի զգացում, որ ոչ մի կերպ հնարավոր չէր մեղմել ու զսպել։

## ԳԼՈՒԽ 32

### Այն մասին, թե ինչպես շատ վանքերի վանահայրերը հավաքվեցին Հակոբի և այլ եպիսկոպոսների հետ գնալու

Շատ վանքերի վանահայրերը հավաքվեցին. և ի վերջո երկար վեճերից հետո, մեծ ժողով գումարեցին, որպեսզի պատրաստվեն Պողոսի կողմնակիցներին հակադրվելու, և որոշեցին իրենց համախոհներից երեք ամենագործունյաներին նշանակել, մարդկանց, որոնք պատրաստ լինեն որևէ հարցի պատասխանելու, և որպես պատգամավոր ուղարկվեն ծերունի Հակոբի և նրա հետ եղածների մոտ։ Նրանք գրգռվեցին, հուզվեցին, վրդովվեցին մի նամակից, որ իրենց էր գրված և որ այստեղ իր երկարության պատճառով չենք տեղավորում. այդ (նամակի) նպատակն էր նրանց խնդրել, որ նախանձախնդիր լինեն և Պողոսի փոխարեն այլ պատրիարք ընտրեն. Նրանցից խնդրում էին, ՝թե ինչ են անելու Պողոսի հետ, ապա (նամակում) արծարծված էր նաև Երրորդության և այլ հարցեր։ Երբ նամակը բերեցին ծերունի Հակոբին, նա հրամայեց ժողով գումարել Մար Խանանիա վանքում, սակայն երբ նրանք (ժողովում) սկսեցին այս խնդրի շուրջ վիճել, պարզվեց, որ եպիսկոպոսներից ոմանք համաձայն չէին Պողոսի (պաշտոնանկության), քանի որ նա դեռ կենդանի էր և մանավանդ նա օրենքով մեղադրված չէ և այլ պատրիարք ընտրելու իրավունք չկա, որովհետև նրանք ասում էին, «թե ինչպե՞ս կարող են դատարկաբանել անհաս երեխաների նման և ուրիշին պատրիարք ընտրել, մինչ մյուսը դեռ կենդանի է և օրենքով չի մեղադրված. (այդպիսով) մենք մեղ պատժի կենթարկենք», և որովհետև չկարողացան համաձայնվել, ժողովն առանց որևէ արդյունքի ցրվեց։

## ԳԼՈՒԽ 35

### Այն երեք դեսպանների մասին, որոնք 887 թ.[18] պարսիկների հետ բանակցելու համար սահման դնացին, որպեսզի խաղաղությունը վերահաստատեն, և Պողոսի համար ինչ հնարավոր էր արեցին

Այն ժամանակ երեք պատգամավորներ՝ Թեոդոր պատրիկը և հյուպատոսներ՝ Հովհանն ու Պետրոսը եկան, որոնց մասին մենք նախապես գրել ենք. այս երկու հյուպատոսները Պողոս պատրիարքի կողմնակիցներն էին, և ավելի շատ նրա (Պողոսի) հարցով էին հետաքրքրվում, իսկ քաղաքական խնդիրների շուրջ ավելի քիչ էին մտածում, մի հարց (քաղաքականը), որի համար նրանք ուղարկվել էին. այդ պատճառով, նրանք ամեն օր ժողով էին գումարում և նրա (Պողոսի) սլաշտպանությամբ էին զբաղվում։ Նույնիսկ հայր Հակոբը նրանց մոտ գնաց շատերի հետ, և վեճը այնքան ծավալվեց, որ դրանց մանրամասնությունները դուրս են գալիս մեր նկարագրության սահմաններից, բայց ոչ մեկ կողմին չէր հաջողվում համոզել մյուսին, և նրանք մեկնեցին ու հեռացան իրարից, փոխադարձ ատելությամբ լցված։ Ամեն մի քաղաք այցելելիս, դեսպանները նույն փորձն էին կատարում, բայց որովհետև արևելքի ժողովուրդները մինչև Եփրատ գետի ափերն ու մինչև պարսկական հողերը, ավելի շատ, մեծ մասամբ Հակոբի կողմն էին բռնում քան Պողոսի, ուստի նրանք հաջողություն չունեցան և շատ դառնացած վերադարձան արքայական քաղաքը, բոլոր արևելցիներին նախատելով[19]։

## ԳԻՐՔ ՎԵՑԵՐՈՐԴ

### Գիրք պատերազմների մասին

Ա. Գրքի նախաբանը։
Բ. Պատրիկ Մավրիկիոսի (վարած) պատերազմը և թե ինչ պատահեց նրա հետ վերջում։
Գ. Մարկիանոս կայսեր բարկության պատճառի մասին։
Դ. Թե ինչ էր գրել կայսրը Մավրիկիոսին և Մունդարին։

---

[18] մ. թ. 576 թ.։

[19] 4-րդ գրքում նկարագրված են մինչև հույների 896 թ. (585) դեպքերն ու իրադարձությունները։

Զ. Պարսկաստանի թագավորի արշավանքն ու նրա կողմից Դարայի գրավումը։
Զ. Ապամեայի գրավումն, և այլն։
Է. Երկու հազար ջրահեղձ եղած աղջիկների մասին։
Ը. Կարճատև խաղաղության և Խոսրովի պատերազմի մասին։
Թ. Կապադովկիայի պատերազմի և Մելիտինեի հրդեհի մասին։
Ժ. Այն մասին, թե Հայաստանում ինչ եղավ հոռոմների հետ։
ԺԱ. Հոռոմներին հանձնված պարսկական հայերի մասին։
ԺԲ. Հոռոմների և պարսկական դեսպանների ու նրանց բանակցությունների մասին։
ԺԳ. Պարսիկների կատարած ավերածությունների մասին։
ԺԴ. Կոմես Մավրիկիոսի և այլ բաների մասին։
ԺԵ. Թե ինչ հետո կատարեց Մավրիկիոսը։
ԺԶ. Հարիտի որդի՝ Մունդարի և Մավրիկիոսի մասին։
ԺԷ. Պարսիկ մարզպանի կատարած ավերածությունների մասին։
ԺԸ. Մունդարի հաղթանակի մասին։
ԺԹ. Թե ինչ արեցին դերիներին՝ Անտիոքում։
Ի. Պարսից արքա Խոսրովի մահվան մասին։
ԻԱ. Խոսրովի զղջումը խաղաղությունը խախտելու կապակցությամբ։
ԻԲ. Խոսրովից հետո նրա որդու թագավորության մասին։
ԻԳ. Այն մասին, թե ինչ պատճառներով խաղաղությունը խախտվեց։
ԻԴ. Ավարներ կոչվող տհաճ ժողովրդի և նրանց կառուցած կամուրջի մասին։
ԻԵ. Սլավյան[20] ժողովուրդը և նրա կատարած ավերածությունները։
ԻԶ. Պարսիկների ճակատամարտը Տելլա քաղաքում։
ԻԷ. Մավրիկիոսի և նրա ճակատամարտից փախչելու մասին։
ԻԸ. Հայաստանում եղած ճակատամարտն ու Կուրիսի հաղթանակը։
ԻԹ. Մի ինքնակոչ պարսիկի մասին, որ իրեն որպես թագավորի որդի էր ներկայացնում։
Լ. Գեպիտների[21] թագավորության մեծ քաղաք՝ Սարմինի մասին, որը ավարները ուժով գրավեցին։
ԼԱ. Սպաթար[22] Նարսեսի ճանապարհորդության մասին։

[20] Բնագրում՝ «Askluaina»։

[21] Սուսերակիր։

[22] «Սփաֆար-Սպաթար-բանտապետ, դահճապետ, զինակիր, պալատական պաշտոնյա»։ Տե՛ս Հ. Աճառեան, Հայերէն արմատական բառարան, Երևան, 1932, հտ. Զ, էջ 382։

ԼԲ. Այն մասին, թե ինչպես ի վերջո չսպատահեց այն, ինչի վրա հույս ունեին, և Սարմին քաղաքը հանձնվեց այս բարբարոսներին։

ԼԳ. Դրանից հետո Սարմինում տեղի ունեցած հրդեհի մասին։

ԼԴ. Բազում ճակատամարտերի նկարագրությունը և ի վերջո Մավրիկիոսի ճակատամարտն ու Արդունի դերեվարությունը։

ԼԵ. Մի այլ ամրոցի մասին, որը Մավրիկիոսն էր կառուցել Ծոփքի դիմաց և որը կոչվում էր Շամկերտ։

ԼԶ. Մի այլ ամրոցի մասին, որը կոչվում էր Ակբա և որը գտնվում էր պարսկական երկրում՝ Խլատում։

ԼԷ. Հոռոմների կայսրի մոտ ուղարկված պարսիկ դեսպանների մասին։

ԼԸ. Հոռոմ դեսպանների ճանապարհորդության մասին, որոնք խաղաղության համար բանակցելու գնացին պարսից արքայի մոտ։

ԼԹ. Նորից Հոռոմների կայսեր մոտ ուղարկված պարսիկ դեսպանների մասին։

Խ. Երկու պետությունների միջև երկար ժամանակ կատարված ավերածությունների մասին։

ԽԱ. Հոռոմ արաբների իշխանության ուժեղացումն ու ապա անկումը։

ԽԲ. Այն արաբ մեծամեծների մասին, որոնք գնացին և հանձնվեցին պարսիկներին։

ԽԳ. Պարսիկ նշանավոր մարզպանների մասին, որոնց բռնեցին ու ուղարկեցին մայրաքաղաք։

ԽԴ. (Մավրիկիոսի) 3-րդ տարվա այն պատերազմի և հաղթանակի մասին, որը աստված շնորհեց Հոռոմներին։

ԽԵ. Այն տհաճ ժողովրդի մասին, որոնք իրենց մազոտ լինելու պատճառով ավարներ են կոչվում։

ԽԶ. Թե ինչպես ավարները դուրս եկան և գրավեցին հարուստ քաղաքներ և շատ ամրոցներ։

ԽԷ. Մեր այնտեղ եղած ժամանակ՝ Կոստանդնուպոլսում եղած ահ ու սարսափի մասին։

ԽԸ. Սլավյան երկրի նվաճումն ու ավերածությունը։

ԽԹ. Անկյուրիոս քաղաքի ավերածությունը և հանքային ջրերը։

## ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ 1

### Այս գրքի նախաբանը

Մեզ թվում է, որ անպատշաճ ու անհարմար չլինի մեր օրերում տեղի ունեցած պատերազմների, դժբախտությունների, ավերածությունների, արյունահեղությունների համառոտ պատմությյան կցումը Եկեղեցական պատմության, որպես վկայություն։ Եթե դեռ աշխարհը գոյություն ունենա մեզնից հետո եկողների համար, մենք այն կգրենք ու կպատմենք այնքանով, որ կարող ենք ու հասկանում ենք մեր լսածը։ Վերհիշենք մեր Փրկչի կենսատու խոսքերն ու վարդապետությունը, որը մեզ սովորեցնում, համոզում ու վկայում է աշխարհի վերջի, նրա (երկրորդ) գալստյան մասին, որը ասում է. «Նոյնպէս եւ դուք յորժամ տեսանիցէք զայս ամենայն, գիտասջիք թէ մերձ է ի դուրս»։[23] Ահա մենք տեսնում ենք, որ մեր օրերում այդ բոլորը պատահեց և կատարվեց, ուստի պետք է սպասենք նրա (երկրորդ) գալուստին, որը մեծ ուժով ու մեծ փառքով (կլինի)։

## ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ 2

### Պատրիկ Մավրիկիոսի պատերազմն ու նրա հետ հետագայում պատահածը[24]

Այստեղ համառոտ կպատմենք այն մասին, թե ինչ տեղի ունեցավ արևելքում։ Մեր նկարագրությունը կսկսենք հռչակավոր պատրիկ Մավրիկիոսից՝ Հուստինոս կայսեր ազգականից, որը արևելք ուղարկված (հռոմեների) բանակն էր ղեկավարում։ Նա քրիստոնեական պետական վարչաձևին ջերմ պաշտպան լինելով, զորք հավաքեց, մեկնեց ու պաշարեց Մծբինը, որտեղ դեռ իշխում էին պարսիկները։ Որպեսզի այն (քաղաքը) գրավի, նա մեծ ուժով (քաղաքը) պաշարեց և քաղաքի շուրջ ցցապատնեշ կառուցեց, և որովհետև իր հետ մեխանիկներ կային, դրա (ցցապատնեշի) վրա բարձրաբերձ աշտարակներ ու ամուր պատվարներ պատրաստել տվեց։ Քաղաքը վտանգի տակ էր, ներսում եղած բնակիչները սարսափած, պարսկական զորքի հետ միասին, մտածում էին իրենց կյանքը փրկելու մասին, երբ տեսան, որ այն (քաղաքը)

---

[23] «Աւետարան ըստ Մատթէոսի», գլ. ԻԴ, 33։

[24] Նկարագրությունը սկսում է Մավրիկիոսի 574 թ. պատերազմական գործողություններից։

գրավվելու է հոռոմներից։ Իսկ դրսում եղածները պատրաստվում էին քաղաքը գրավել ու ամրացնել։ Բոլոր հոռոմները հույսով էին ու պատրաստվում էին քաղաք մտնել, սակայն Մավրիկիոսի մոտ Հուստինոս կայսրից ուղղարկվեց ինչ որ ցասկոտ մարդ՝ Ակակիոս Արկելայոս անունով, որպեսզի Մավրիկիոսին անհիմն պատճառով պաշտոնազրկի, կտրի գոտին[25] և արևելքից ետ ուղարկի։ Տեղ հասնելով, նա անմիջապես հրամանը ցույց տվեց, ճիշտ այն ժամանակ, երբ Մավրիկիոսը (պատրաստվել էր) Մծբինի վրա հարձակվելու և հույսով էր, որ հաջորդ օրը կմտնեն ու կգրավեն քաղաքը։ Ամբողջ զորքը վախից թուլացավ։ Եվ քանի որ հռչակավոր Մավրիկիոսը հիմնականում պատրաստվել էր Մծբինը գրավելու, երբ լսեց հրամանը, Ակակիոսին ասաց. «Տեսնու՞մ ես ինչպիսի դժվարություններ ենք հաղթահարել այս քաղաքը գրավելու համար, ուստի այժմ համբերիր և երկու օր ժամանակ տուր և այն ժամանակ կկատարես ինչ որ քեզ հրամայված է։ Կայսրն իրավունք ունի պահանջելու, որ իր հրամանը կատարվի»։

Ակակիոսը բարկացավ նրա վրա, անպատվեց նրան ու ջղայնացած, բոլոր հրամանատարների ներկայությամբ, ձեռքով բռնեց նրան, հայհոյելով քաշքշեց, նրան գետին գցեց ու գոտին կտրեց, ինչպես պատմում են, նույնիսկ հարվածեց նրան։ Այդ պատճառով ամբողջ բանակը վախեցավ ու հուզվեց։ Տեսնելով տեղի ունեցած դարչելիությունը, նրան անիծելով, նրանք (զինվորները) իրենց դրոշակը գլխիվայր իջեցրին։ Ապա ամբողջ բանակը վշտացած ու դառնացած դարձավ ու քաղաքից հեռանալով փախավ, տեսնելով որ ինչ պատահեց իրենց հրամանատարի՝ բարի ու հավատացյալ այդ մարդու հետ, հակառակ նրան, որ մինչ այդ հույս ունեին, որ կմտնեն ու կգրավեն քաղաքը, բայց երբ տեսան, որ թշնամին իրենց չէր հետապնդում, ստիպված ետ դարձան· (այսպիսով) նրանք թշնամիների ծիծաղի ու արհամարհանքի առարկա դարձան։ Քաղաքում եղած պարսկական զորքը երբ տեսավ հոռոմների հուսահատությունն ու հանկարծակի նահանջը և Մավրիկիոսի դրոշակի իջեցումը, զարմացավ, և իրար քաջալերելով զինվեցին ու սկսեցին նրանց (հոռոմներին) հետապնդել։ Հարձակվեցին ետ ընկած հետևակի վրա, նրանց ոչնչացրին ու շատերին էլ կոտորեցին։ Այսպես, հոռոմների հետ պատահածի համար, նրանց հեգնելով, ծիծաղելով, վերադարձան իրենց քաղա-

[25] Բյուզանդական բանակում հրամանատարներին պաշտոնազուրկ անելու ընդունված ձև էր։

քը։ Նրանք իսկույն ամեն ինչ գրեցին ու հայտնեցին իրենց արքային, ասելով, «որ պարսիկներիս հաջողվեց հաղթել, որովհետև մեծ աստվածները՝ արևն ու կրակը օգնեցին մեզ, իսկ նրանք (հոռոմները) իրենց կայսրի հրամանի պատճառով, իրար վրա հարձակվեցին ու անարդար ձևով պաշտոնից ազատեցին Մավրիկիոսին, և (դրա համար) մնացած բոլորը փախան ու մեր քաղաքից հեռու գնացին»։

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ 3

### Կայսրի ունեցած բարկության պատճառներն արաբների թագավոր՝ Մունդարի և Մավրիկիոսի վրա

Որպեսզի հետևողականությամբ ու աստիճանաբար իրար հաջորդեն նկարագրությունները, անհրաժեշտ է հստակ ու ստույգ իմանալ նախ Հարիտի որդի՝ Մունդարի և ապա Մավրիկիոսի վրա ունեցած նրա (կայսրի) բարկության պատճառները։ Անարդար և ոչ բավարար հիմքով Հուստինոս կայսրը բարկացավ և երկուսի վերաբերյալ հրաման արձակեց, բայց ի՞նչ պատճառով իսկապես չգիտենք։ Մունդարի վրա բարկացել էր հետևյալ պատճառով. մինչ հոռոմ արաբների թագավոր՝ Հարիտի (մահը), պարսկական արաբները մեծ ահ ու սարսափի մեջ էին, և երբ նրանք իմացան, որ նա մահացել է, ուստի (սկսեցին) ատել ու արհամարհել նրա (Հարիտի) որդիներին, մեծամեծներին և զինվորներին ու ենթադրում էին, որ ճիշտ ժամանակն է, նրա ամբողջ ունեցվածքը իրենց ձեռքը վերցնելու։ Ուստի հավաքվեցին, գնացին ու ներխուժեցին Բեյթ-Խիրտա բնակավայրը, որտեղ որ գտնվում էին նրանց (հոռոմ արաբների) հոտերը, և տարան նրանց ամբողջ ուղտերի երամակները։ Երբ այդ մասին իմացավ Մունղարը, շատ բարկացավ, ջղայնությունից կատաղեց և վերցնելով բոլոր իր եղբայրներին ու որդիներին, մեծամեծներին և ամբողջ բանակը, հանկարծակի հարձակվեց նրանց (պարսիկ արաբների) վրա, այնպիսի ժամանակ, երբ նրանք բոլորովին չէին սպասում և չէին էլ համարձակվի իրենց դեմ դուրս գալ։ Նրանց ոչնչացրին ու կոտորեցին։ Երբ նրանց թագավոր՝ Կաբոսը տեսավ, որ Մունդարն ու իր զորքը անցել են (սահմանը) ու գրավել տիրող դիրքերն ու ահավոր կոտորած են կատարել և համարյա ամբողջ բանակը ոչնչացրել, մնացած քիչ (զորքի) հետ փախավ։ (Այսպես), նրանք ամեն ինչ թողնելով փախան։ Մունդարը գնաց ու տեղավորվեց նրա երկրում (եղած) նրա վրանում, որը երեք օրվա ճանապարհ

էր, և այնտեղ, որտեղ որ գտնվում էին պարսկական արաբների ամբողջ հոտերն ու ունեցվածքը։ Նա այստեղ երկար չմնաց։ Երբ Կաբոսի հետախույզները եկան նրա (Կաբոսի) երկիրը ու տեսան լարված վրանը, կարծեցին, որ այնտեղ է գտնվում նաև Կաբոս թագավորը։ Վստահ մտան ու գնացին, որը արդեն դարձել էր Մունդարի բանակատեղին։ (Այստեղ) սրանց բռնեցին ու սպանեցին, իսկ նրանցից հայտնիներին կապեցին (բանտարկեցին)։ Այնտեղ, ինչքան որ ուզում էին, երկար ժամանակ մնալուց հետո, մեծ ավարով՝ ձիերով, ուղտերի երամակներով, զենքով և այլ իրերով, վերադարձան։ Մի ժամանակ անց, Կաբոսը մեծ բանակ հավաքեց, գնաց ու լուր ուղարկեց Մունդարին ասելով, որ նա պատերազմի պատրաստվի. «Ահա մենք չենք գալիս քեզ նման ավազակի ձևով, հարձակվելու և հաղթելու, այլ մենք բացահայտ գալիս ենք, քեզ հետ պատերազմելու»։ Մունդարը պատասխան ուղարկեց ասելով «Ինչու եք ջղայնանում, ահա ես էլ անձամբ գալիս եմ»։ Նա որոշեց, պատրաստվեց և իր խոսքի համապատասխան՝ գործեց։ Հանկարծակի նրանց անապատում հանդիպելով, երբ նրանք չէին սպասում, հարձակվեց նրանց վրա, չփոթեցրեց, շատերին կոտորեց ու (մնացածներին) ստիպեց փախչել։

Այնպես, ինչպես նախորդ անգամ նշել ենք, այժմ ևս ասում ենք, որ Մունդարի վրա ինչպիսի անարդարացի ստեր էին հորինել երկու պատերազմների ժամանակ նման մեծ փառքի ու հաղթանակի հասնելուց հետո։ Եվ որովհետև Մունդարը կարծում էր, որ կայսրն, իրեն կընդունի և կգովի (հաղթանակների համար), ուստի եղածի՝ իր արածի ու հաղթանակի մասին նրան գրեց։ Դրանից հետո, նա նորից դրեց նրան (կայսրին), որ նա իրեն ոսկի ուղարկի, որպեսզի զորքին կարողանա վճարել, ենթադրելով, որ նրանք նորից իր վրա կհարձակվեն։ Երբ Հուստինոս կայսրն իմացավ, որ նա գրել է և ոսկի է ուզում, բարկացավ, շատ կատաղեց, կշտամբեց և խիստ սպառնաց, մտածելով, որ նրան գաղտնի ու խորամանկությամբ (պետք է) սպանել։

ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ 4

*Թե ինչ էր դրել կայսրը Մավրիկիոսին և Մունդարին*

Այսպես, Հուստինոս կայսրը հակառակության ոգով լցված, դրեց պատրիկ Մավրիկիոսին, այն հույսով, որ նա գաղտնապես սպանի Մունդարին։ Նա (կայսրն) այսպես դրեց նրան. «Ահա ես գրել եմ արաբ Մունդարին, որ նա քեզ մոտ գա, տես, երբ

շտապ դա (քեզ մոտ), անհապաղ կտրիր գլուխը և այդ մասին մեզ գրիր։ Մունդարին ես գրել եմ, ինչ որ անհրաժեշտ գործի համար նա շտապ մեկնի քեզ՝ պատրիկ Մավրիկիոսիդ մոտ և բանակցի»։ Ինչպես հիմա բոլորին հայտնի է, կարծես աստծո կամքով, այդ գործը (դավադրությունը) այնպես ստացվեց, որ Մավրիկիոսին գրված հրամանը թե՝«Մունդարի գլուխը կտրիր» փոխվել ու ընկել էր Մունդարի նամակի մեջ, իսկ Մունդարին գրված նամակը սխալմամբ դրվել էր Մավրիկիոսի նամակի մեջ։ Այսպես մագիստրիանը[26] երկու հրամաններն էլ ստանալով, մեկնեց, տանելով դրանք իրենց տերերին։ Սակայն այնպես պատահեց, որ Մունդարը (սխալմամբ) ստացավ Մավրիկիոսին գրված հրամանը, որտեղ կարգադրված էր՝ իր (Մունդարի) գլուխը կտրել, իսկ Մավրիկիոսը ստացավ Մունդարինը (հրամանը), որտեղ գրված էր. «Գնա Մավրիկիոսի մոտ, ես նրան գրել եմ, որ նա քեզ հետ խորհրդակցի»։ Երբ Մունդարը ստացավ, կարդաց այն, շատ անհանգստացավ ու ասաց. «Միթե իմ գործերի և հոռոմների հողերի համար քաշած դժվարություններիս համար ուզում են ինձ պարգևատրել նրանով, որ կտրեն գլուխս. միթե՞ ես դրան եմ արժանի»։

Նա բարկությամբ լցվեց. հավաքեց իր ամբողջ բանակը և կարգադրեց նրանց պատրաստ լինեն ու ասաց· «Եթե դուք տեսնեք, որ հոռոմների կայսրի ուղարկածները ինձ մոտ քիչ կլինեն, բռնեք նրանց և բանակատեղիից հեռու պահեք, իսկ եթե նրանք շատ լինեն, համառ մարտի մեջ մտեք նրանց հետ։ Չլսեք ինչ որ կասեն ձեզ, և թույլ չտաք, որ մոտենան բանակատեղիին»։ Այսպես, գիշեր և ցերեկ, հավաքված արաբ զինվորները զինված, կանգնած, հսկում էին մարտի պատրաստ նրանց դեմ, ով որ հոռոմներից իրենց մոտ գար։ Երբ այդ մասին լսեցին պարսիկները և պարսկական արաբները, որ Մունդարից վտանգ չկա, քանի որ նա իրեն սպանել ուզող հոռոմների պատճառով իրենց դեմ չի պատերազմի, ուստի նրանք՝ արաբներն ու պարսիկները, պատրաստվեցին ու արշավեցին հոռոմների երկիրը։ Ոչնչացնելով ու այրելով, նրանք հասան Անտիոքի մոտակայքը, շատ գերիներ

---

[26] «Զբաղվում էին դիվանագիտությամբ ու ներքին անվտանգությամբ, ենթարկվում էին magister officiorum-ին և կոչվում էին agentes in rebus. Պաշտոնը հարատևեց մինչև VIII դարը, երբ նրանց անունը անհետանում է աղբյուրներում և նրանց տեղը գրավում են «վասիլիկոսները»։ Տե՛ս Կոստանդին Ծիրանածին, ծնթ. 16, էջ 297։

վերցրին, ամայացրին ու ավերեցին ինչպես Անտիոքի շրջանն, այլև ուրիշ շատ գյուղեր, այնպիսիները, որոնք քաղաքի նման մեծ էին։ Նրանք գերեվարեցին ու ավերեցին բոլոր շրջանները ու ավարով վերադարձան իրենց երկիրը։ Մունդարը դառնացած ու վշտացած էր իր նկատմամբ նրանց (հոռոմների) կազմակերպված խորամանկությունից, և ապա այն ավերածությունից, որ կատարեցին թշնամիները, և այն բանի համար, որ նրանք (թշնամիները) հարստացան հոռոմների երկրում։ Ինքը վերցրեց իր բանակը և գնաց ու հաստատվեց անապատում։ Բոլոր նրանք, ովքեր լսեցին այս անարդարության և անհիմն ձևով նրան (զրպարտելու) մասին, դժգոհեցին ու քննադատում ու բողոքում էին, առանց ստուգման և առանց արդար դատի, նման հրաման արձակելու դեմ։ Երբ այդ մասին ամեն կողմից կայսրը լսեց, և իմացավ նաև, որ Մունդարն ինքն իրեն ազատել է հոռոմների երկրի նկատմամբ իր ունեցած պարտականություններից, լուր ուղարկեց արևելքի մեծամեծներին ու հրամանատարներին, որ նրա (Մունդարի) մոտ գնան, նրան համոզեն ու իր հետ հաշտեցնեն։ Եվ որովհետև շատերը (լուր) ուղարկեցին ու ցանկություն հայտնեցին, որ ուզում են գալ իր մոտ, նա բոլորին էլ հայտնեց որ «Թող հայտնի լինի ձեզ ով ինձ մոտ հոռոմների մոտից գա, ես նրան պատերազմով կդիմավորեմ, և կա՛մ նա ինձ կսպանի և կա՛մ ես իրեն։ Թող ամոթ լինի ինձ, եթե սրանից հետո որևէ հոռոմի հավատամ։ Ձեր և ձեր կայսրից ես մահվան եմ դատապարտված, (ուստի) այդ (հարցում) ես գերազանցել եմ հոռոմներին»։ Այսպես երկու կամ երեք տարվա ընթացքում շատ խնդրանքներով դիմեցին, սակայն նա ոչ ոքի թույլ չտվեց, որ իր մոտ գա, և այդ առիթով հրաման ուղարկեց, որը բոլորին ցույց տվեցին։

Կայսրը Մարվիկիոսի վրա ջղայնացել էր այն բանի համար, որ Մունդարը կենդանի մնաց, փախավ և հասավ այն բանին, որ գաղտնիքը բացեց ու հայտնի դարձրեց, և ենթադրված գործը գլուխ չեկավ։ Բոլորին հայտնի էր, որ այս վճիռը (Մունդարի նկատմամբ) խորամանկությամբ, խաբեբայությամբ ու առանց աստծո վախը (սրտին), առաջադրել էին նրա դեմ։

Մունդար թագավորն այսպես, բարկանալուց հետո իր ամբողջ բանակով մոտ 3 տարի, զգաստ ու արթուն հետևեց հոռոմների պետության, մեծամեծների ու բանակի (շարժումներին)։ Որպես քրիստոնյա, համենայն դեպս վշտացած էր հոռոմների երկրում եղածների (ավերածությունների) համար, և իր բարկությունը

թափեց պարսկական արաբների վրա, նրանց, որոնք համարձակվեցին պարսկական զորքի հետ հասնել մինչև Անտիոք ու (այնտեղ) ոչնչացրին, այրեցին, ու գերի վերցրին և մեծ ավարով ու անհամար գերիներով վերադարձան իրենց երկիրը։ Նա հակված էր հաշտության կողմը և (ուզում էր) պայքարել հռոմների պետության համար։ Իսկապես շատ մեծամեծների միջոցով իրեն ուղարկվել էին կայսրի նամակները, որոնց մեջ կայսրը ժխտում էր իր դեմ եղած մեղադրանքը և ասում, որ առանց իր իմացության գրված է եղել Մունդարին սպանելու մասին։ Նա, սակայն, մնաց իր զգուշավորության մեջ և ոչ էլ թույլ էր տալիս, որ իրեն համոզեն. նա ոչ նամակներն էր ընդունում և ոչ էլ նրանցից որևէ մեկին, երբ գալիս էին իր մոտ, և երբ մեկը համարձակվում էր մոտենալ իր բանակատեղիին, նա պատրաստվում էր մարտի։ Ի վերջո նա լուր ուղարկեց Գերմանի որդի՝ Հուստինոս պատրիկին, որը արևելքի բանակների ու հրամանատարների տերն ու գլխավորն[27] էր։ Նա լուր ուղարկեց նրան ասելով. «որ սկզբից լսել ու իմացել էի հռոմների նենգության մասին, իսկ այժմ իսկական փորձով, իմ գործերի փոխարեն, իմ նկատմամբ ցույց տրված վերաբերմունքից, հասկացա այդ մահացու նենգության (ինչ լինելը)։ Սրանից հետո, ես երբեք ինձ չեմ վստահի որևէ հռոմ մեծամեծի։ Քեզ ճանաչում եմ որպես քրիստոնյայի, որպես ազնիվ ու աստվածավախ մարդու։ Եթե դու դաս Իսաֆի սուրբ Սարգիս տաճարը և ինձ լուր ուղարկես, ապա ես այնտեղ կգամ իմ զինված բանակով, ինչպես պատերազմի ժամանակ։ Եթե ինձ խաղաղությամբ դիմավորես և ինձ դու ճշմարտությունը ասես, ապա մենք խաղաղությամբ կբաժանվենք, իսկ եթե ես նենգություն նկատեմ, ապա ես հույս կդնեմ աստծո վրա, որին ես հավատում եմ և դիտեմ, որ նա ինձ չի լքի, և չի թողացնի իմ ձեռքերը։ Երբ պատրիկ Հուստինոսը ստացավ այս տեղեկությունը, շատ ուրախացավ, և նրան լուր ուղարկեց ասելով. «Ինձ վրա մի կասկածիր, ահա քրիստոնյաների աստվածը մեր մեջ է, եկ այս ինչ օրը սուրբ Սարգսի տաճարը և գու ինձ այնտեղ կգտնես. մի անհանգըստացրու քո բանակը, քանի որ ես հույս ունեմ աստծո վրա, որ մենք խաղաղությամբ, համաձայնությամբ ու սիրով կբաժանվենք իրարից»։ Երբ Մունդարն այս պատասխանը ստացավ, փոխեց իր մտադրությունը և իսկույն քչերի (զինվորների) հետ մեկնեց նրա մոտ։ Երկուսն էլ հանդիպեցին սուրբ Սարգսի մա-

[27] Մագիստրոս (Magister militum per Orientem).

սունքների տապանի մոտ։ Նրանք իրար հետ խոսեցին շատ բաների մասին, ըստ ցանկության խոսքը մեկը մյուսին հրամցնելով։ Այդ բոլորի մասին այս գրքում չի ասված։ Այսպես, վստահությամբ ու խաղաղությամբ իրարից բաժանվեցին ու երկուսն էլ (եղածից) գոհ էին։ Երբ այդ մասին իմացավ կայսր Հուստինոսը ու ինչպես նաև սենատը, շատ ուրախացան, որ Մունդարին հաշտվելու համոզեցին։ Դրանից հետո երկու կողմից էլ իրար հաշտության ու խաղաղության հրովարտակներ (ուղարկեցին)։ Ուժեղ և քաջ Մունդարը քիչ ժամանակ անց, պարսկական արաբների անպատկառության վրա բարկացած, ուզեց Հոռոմների երկրից նրանց վերցրած ավարը ետ բերել։ Ծածուկ հավաքեց եղբայրներին ու իր ամբողջ մարդկանց, որդիներին, ամբողջ բանակն, որպեսզի շտապ պատրաստվեն, զինվեն ու հաջորդ օրը բոլորը պատրաստ լինեն արշավանքի։ Երբ հավաքվեցին ու բոլորովին պատրաստ էին, նա նրանց առաջ բացեց գաղտնիքը ու ասաց. «Այժմ երբ մեղանից ոչ մեկը չի մնացել և չի բացակայում (ասեմ). մենք բոլորս մեկ մարդու նման հարձակվում ենք պարսկական սահմաններից ներս եղող Խիրտա Նուղմանի վրա։ Քրիստոնյաների նկատմամբ նրանց տածած ամբարտավանության ու նենգության պատճառով, աստված նրանց մեր ձեռքը կհանձնի»։ Ապա բոլորը հապճեպ մեկնեցին, հասան Խիրտա և մինչ դրա բնակիչները հանգստանում էին ու բոլորովին նման (հարձակման) չէին սպասում, հանկարծակի հարձակվեցին նրանց վրա։ Նրանք (Մունդարի կողմնակիցները) ոչնչացրին ու սպանեցին այնտեղ (Խիրտայում) եղած ամբողջ բանակը. ավերեցին, այրեցին, ոչնչացրին ամեն ինչ, բացի եկեղեցիներից։ Հինգ օր Մունդարն իր վրանը խփել էր Խիրտայի կենտրոնում ու ապրում էր այնտեղ. Նա բռնեց ու շղթայեց արաբներից ում որ կարող էր։ Նա Խիրտայի ամբողջ ավարը ու այն ավարը, որը բերված էր հոռոմների երկրից, վերցրեց։ Բոլոր ձիերի ու ուղտերի երամակներն առավ ու մեծ հանդիսավորությամբ ու վճռական հաղթանակով իր երկիրը վերադարձավ։ Նրա փառքն ու հմայքը դրանով ավելացավ, իսկ նա առատորեն պարգևներ տվեց բոլոր ուղղափառ եկեղեցիներին, վանքերին, շատ աղքատներին։ Երկու պետությունների (մարդիկ) զարմացած ու հիացած էին այս մարդու ձեռք բերած հաղթանակների ու մեծագործությունների վրա։

## 884 Թ. (573) պարսիկների արքայի արշավանքը Դարան գրավելու համար, և այլ բաներ

Երբ պարսիկների արքան իմացավ, որ Մավրիկիոսը հեռացված է (պաշտոնից) և զորքը Մծբին քաղաքից փախել է, իսկույն մի մեծ բանակ հավաքեց և եկավ այնտեղ, գտավ պատրիկ Մավրիկիոսի (պարսպի) դեմ բարձրացրած մեքենաներն ու գործիքները։ Ապա այստեղից գնաց ու պաշարեց Դարան։ Իր հետ տանելով Մծբինի մոտակայքում վերցրած բոլոր (ռազմական) գործիքները, դրանք օգտագործեց Դարա քաղաքի դեմ. Նրանք (պարսիկները) իրենց հետ ունեին բոլոր տեսակի (ռազմական) գործիքներ։ Նա նախօրոք ուղարկեց քարտաշների և այլ (աշխատողների), որպեսզի արևելյան մասում գտնվող լեռան միջով անցք բացեն, ջրմուղի դրսի կողմից, և քաղաք (գնացող) ·ջրի ընթացքը փոխեն։ Ինչպես ասում են,· նրանք (փորելիս) երբ ամուր ժայռի էին հանդիպում, վրան կրակ էին անում ու ապա քացախ լցնում, որպեսզի այն փափկանա։ Ապա Մծբինի դեմ Մավրիկիոսի պատրաստած (ռազմական) մեքենաները դրեցին քաղաքի դիմաց ու պաշարեցին այն ու վեց ամիս շարունակ նրանք փորձեցին պաշարողական այս զենքերով գրավել այն (քաղաքը)։ Նա (պարսից արքան) քաղաքի դեմ կառուցեց ևս երկու ջորիներ[28], սակայն հռոմները խորամանկությամբ գերազանցեցին նրանց, դրանց ոչնչացրին ու այրեցին։ Եվ քաղաքը դիմադրում էր. այնտեղ էին մեծամեծները. Տիմոստրատի որդի՝ քաջ ու պատերազմասեր Հովհան ստրատելատր, Շափնիի որդի՝ Սարգիսը, որը նույնպես ստրատելատ էր և ուրիշներ։ Սարգիսն, ինչպես ասում են, նետից էր վիրավորվել ու մահացել։ Ապա պարսից արքան, բարձրացավ ու իր վրանը խփեց քաղաքի մոտ (գտնվող) բլրի վրա։ Այնտեղ ապրելով, նա ամեն ինչ տեսնում էր. (տեսնում) թե ինչ էր կատարվում ներսում (քաղաքում)։ Նա հրամայեց մեծ աշտարակի դեմ ջորի կառուցել, որը մյուսներից ամենաբարձրն էր և որը կոչվում էր Հերակլիոս։ Ներսից ոչինչ չկարողացան անել, իսկ դրսից, ամրացրին ջորին ու տեղավորեցին քաղաքի դիմաց։ Մինչ այդ, նա (արքան) նկատել էր, որ իր այդ փորձերը քաղաքին չեն վախեցնում, (ուստի) նա հրամայեց նորից պարիսպ կառուցել,

---

[28] Պարսպի տակ պատրաստված ամրություն, որն օգտագործվում էր պարսպի վրա մագլցելու համար։

որը պետք է շրջապատեր քաղաքի դրսի պարիսպը, որպեսզի եթե քաղաքի բնակիչներից փորձեն դուրս գալ, այն արգելք հանդիսանար։ Երբ տեսավ, որ իր կատարածները, ինչպես ասված է, իզուր են անցնում, հիվանդացավ և նույնիսկ վախենում էր, որ կմահանա։ Այն ժամանակ նա քաղաք լուր ուղարկեց, որ իր մոտ մարդ ուղարկեն, որպեսզի նա կարողանա հետը խոսել։ Այնտեղ (քաղաքում) մի հայտնի ու նշանավոր մարդ կար, հոռոմների ու պարսիկների թարգմանիչ՝ Կոմիտ անունով։

Շատ բաների մասին իր հետ խոսելուց հետո, նա նրան ասաց, որ նա հաղորդի քաղաքի բնակիչներին՝ «եթե նրանք իրեն 5 կենտենար ոսկի վճարեն, որպես քաղաքի փրկագին, այն ժամանակ ինքը կհեռանա այստեղից»։ Նա՝ Կոմիտը հույս ունենալով, որ քաղաքը չի գրավվի, այդ մասին չասաց նրանց (բնակիչներին), չնայած (գրույցի) վերջում նա արքային խոստացել էր, որ կասի։ Երբ արքան տեսավ, որ պայմանավորված օրն անցավ ու նրանք գնացին ու իրեն պատասխան չտվեցին, նա ավելի համառ դարձավ ու մեծ բարկությամբ լցված նորից քաղաքի (գրավումով) զբաղվեց և վերջում պատրաստված ջորին մեծացրեց ու ամրացրեց։ Սակայն հոռոմները ծիծաղում ու ծաղրում էին ասելով, որ նա, այս (փորձից) էլ կամաչի, ինչպես (ամաչեց) իր մյուս փորձերից։ Սակայն այս ինքնավստահությունը մոռացնել տվեց պարսպի պաշտպանությունը, հատկապես սաստիկ ցուրտ ու սառնամանիք օրերին, նրանք իջնում էին պարսպից ու գնում իրենց տները ուտելու ու խմելու։ Երբ պարսիկները տեսան, որ պարիսպը հոռոմ զորքից ազատ է և իրենց պատրաստած ջորին բարձրանում է մինչև պարսպի վերևի մասը, նրանք խորամանկորեն փայտեր ամրացրին դրան և թեքեցին դեպի պարիսպը։ (Այսպես), բանակն անցավ և լցրեց պարսպի մի կողմը, և իջան քաղաքի ներսը։ Երբ հանկարծ լսվեց բացականչություն՝ «ահա քաղաքը գրավված է և պարսիկ զինվորները հաղթել են հոռոմներին», բոլորը վախեցած ու սարսափած, միասին շտապեցին դեպի քաղաքի դարպասները, որպեսզի նրանցից (պարսիկներից) փրկվեն։ Երբ պարսիկները նման մեծ բազմություն տեսան, նրանք ևս վախեցան, սարսափից թաքնվեցին ու թույլ տվեցին հոռոմներին փախչել ու արգելք չհանդիսացան։ Հոռոմները բոլորը փախան դարպասների մոտ, բղավելով, որ բանալիները (բերեն)։ Սրանք բանալիները որոնեցին, բայց չգտան, որովհետև հրամանատարները պահել էին։ Երբ հոռոմները տեսան, որ պարսկական բանակը ուժեղ է և քաղաքը նրանցով լցված ու իրենց բոլոր կողմերից

ճնշում են, պահում, և փախչել չեն կարող, ուստի հավաքվեցին ու մահ կամ ազատություն[29] բղավելով, հարձակվեցին պարսկական բանակի վրա։ Նրանք, ինչպես հնձվորը հասկերին, այնպես էլ սրանց հնձեցին ու ոչնչացրին։ Ուժեղ մենամարտ տեղի ունեցավ քաղաքի ներսում և չնայած քաղաքն արդեն յոթ օր գրավված էր, սրանք իրար ոչնչացնում էին։ Քաղաքը լցվեց դիակներով ու գարշահոտությամբ ու ստիպված դրանց հավաքում ու նետում էին գետի ու ջրակույտերի մեջ։ Երբ պարսիկները տեսան, որ իրենցից շատերը կոտորվում են ու չեն կարողանա քաղաքը գրավել ու ավարը վերցնել, ավելի վախեցան հոռոմներից, փախան ու բարձրացան պարսպի վրա և խորհրդակցեցին, թե ինչպես խորամանկությամբ հասնեն իրենց նպատակին։ Նրանք նենգությամբ լուր ուղարկեցին հոռոմներին, թե ինչու՞ իրար սպանում ու ոչնչացնում ենք. ավելի լավ է եկեք երկու կողմից խոստանանք զենքը վայր դնելու ու խաղաղության դաշինք կապելու մասին։ Քանի որ հոռոմ բանակն իր կյանքը (փրկելու) հույս չուներ, և տեսան, որ ընկել են դժբախտության մեջ, ուստի ընդունեցին առաջարկությունը ու խաղաղության դաշինք կնքելու համար խոստացան ցած դնել սեները և վստահ մոտեցան նրանց, ինչպես խաղաղ (ժամանակ)։ Եվ որովհետև հոռոմները վստահ էին նրանց խոսքին, անվախ էին, (մինչ) դրա վրա պարսկական մի մեծ բանակ մտավ (քաղաք)։ Սկզբում երկու կողմերն իրար վստահությամբ մոտեցան, ինչպես խաղաղ ժամանակ։ Սակայն նրանք (պարսիկները) շուտով սկսեցին կողոպտել քաղաքը։ Այդ ժամանակ պարզ դարձավ պարսիկների կեղծավորությունն ու նենգությունը։ Նրանք իրենց խոսքից հրաժարվեցին ու դրժեցին, բռնեցին հոռոմներից շատերին, ոչնչացրին և մնացածներին իրար կապեցին. ազատներին և ազատների կանանց ու քաղաքի մեծամեծներին նրանց հետ միասին բերեցին արքայի մոտ։ Նա հրամայեց բոլորին խեղդամահ անել, հրամայեց նաև ոսկի ունեցողներին իր մոտ բերեն, և ում մոտ որ ոսկի ու արծաթ գտնեն, իրեն ներկայացնեն։ Այսպես նա շատ ոսկի հավաքեց։

Ինչպես ասում են. իրեն (արքայի) համար հավաքեցին ավելի քան հարյուր կամ երկու հարյուր կենտենար (ոսկի)։ Քանի որ մենք այդ մասին հաստատ չգիտենք և չենք ուզում կեղծել ճշմարտությունը, լավ է լռենք։

---

[29] Ասորերեն բնագրում «կյանք» է գրված։

Երբ արքան տեսավ ամբողջ այս ոսկին, կանչեց քաղաքի մեծամեծներին ու ասաց նրանց. «Երկնքի մեծ աստվածը պահանջում է ձեզնից և մեզնից ընկածների արյունը։ Եթե դուք այստեղ հավաքված այս ոսկու մեկ հարյուրերորդը տայիք ինձ որպես քաղաքի փրկագին, ես այստեղից հեռացած կլինեի։ Ես այդ էի սպասում երբ ձեզ Կոմիտի միջոցով լուր ուղարկեցի, սակայն դուք ինձ չլսեցիք»։ Երբ նա կանչեց Կոմիտին տանջելու համար, նա ասաց. «Ես քո միջոցով չէ՞ր որ լուր ուղարկեցի նրանց, նա պատասխանեց. «Այո, Տեր իմ. սակայն ես չասացի, որովհետև վախեցա»։ Բարկացած (արքան) նրան մահվան դատապարտեց և ասաց. «Քանի որ դու ձգտեցիր երկու տերությունններին ծառայել, ես քեզ չեմ սպանի, և հրամայեց ու նրա երկու աչքերը կուրացրին։ Նա (արքան) քաղաքից անհամար, բազում ավար վերցնելով, գերեվարեց բոլոր բնակիչներին ու ամայացրեց (քաղաքը)։ Իր բանակի մի մասը թողեց այնտեղ ու վերադարձավ իր երկիրը, ոսկու ու արծաթի անհամար մեծ ավարով, որը նա հափշտակել էր քաղաքի բնակիչներից, եկեղեցիներից և այլ վայրերից։ Իր հետ տարավ նաև բազում գերիների։ Անաստաս կայսեր կողմից դրա (քաղաքի) կառուցումից 72 տարի հետո էր, որ այն նվաճվեց ու ընկավ ասորեստանցիների ձեռքը։

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ 6

*Երբ պարսից արքան արշավեց Դարայի վրա, նույն տարում նվաճեց նաև Ապամեա քաղաքն ու ամայացրեց այն*

Երբ Պարսից արքան պաշարել է Դարա քաղաքը, նա տեսավ, որ ոչ ոք իրեն չի դիմադրում, նա Ադրամահոն անունով մարզպանին մեծ բանակով ուղարկեց Ապամեա քաղաքի վրա։ Սա (ճանապարհին) ամրոցներ գրավեց, ավերեց ու այրեց մեծ ու լավ ամրացված քաղաքներ և հասավ Ապամեա։ Եվ, որովհետև պարսիկները գրավել էին Անտիոքը, ուստի նա արշավեց Ապամեայի վրա ու պաշարեց այն, ստիպեց ու նրան հանձնվեց նաև Ապամեան, նրանից (չկոտորելու) խոստում ստանալուց հետո։ Երբ արքան այնտեղ ընաց, այնտեղ կրկես տեսավ ու այդ պատճառով այլևս ոչինչ չավերեց ու չայրեց։ Դրա համար բնակիչները հույսով էին, որ հետագայում էլ իրենց վնաս չի հասցնի։ Այդ հույսով էլ, նվերներով գնացին նրա (մարզպանի) մոտ քաղաքի մեծամեծներն ու եպիսկոպոսները։ Նա նենգաբար ասաց նրանց. «Քանի որ

*քաղաքը այժմ մերն է, բացեք դարպասները, որպեսզի ես մտնեմ ու դիտեմ այն»։ Սրանք նրան վստահելով, և ինչ որ վատ բան չենթադրելով, նրա առաջ բացեցին (դարպասը), և նա քաղաք մտավ։ Նրանք (պարսիկները) իսկույն դրավեցին դարպասները, և սկսեցին բռնել ու կապել տղամարդկանց ու կանանց և կողոպտել քաղաքը։ Ամբողջ ավարը վերցրին ու բնակչությանն էլ քաղաքից դուրս բերեցին. կողոպտեցին Ապամեա քաղաքը, որը դեռ հին ժամանակներից լի էր հարստությամբ և ավելի ճոխ էր, քան այլ քաղաքներ։ Բնակչությունն ու ավարը, ինչպես նաև նրանց եպիսկոպոսին, դուրս բերեցին, ապա կրակ տվեցին ու այրեցին բոլոր կողմերից։ Այսպես, նրանք վերցրին բոլոր գերիներին ու այլ բաներ և գնացին արքայի մոտ, որը պաշարել էր Դարան։ Արքայի առաջ, այնտեղից և այլ տեղերից բերված գերիներին հաշվեցին, որոնք 292 հազար էին։ Արքան Դարան նվաճելուց ու կողոպտելուց հետո, այնտեղ ևս անհամար հարստություն գտավ, որ (այնտեղ) էր բերված այլ քաղաքներից ու տեղերից, որպես անմատչելի ամրոց։ Նա վերցրեց իր ավարն ու անհամար գերիներին և վերադարձավ իր երկիրը։*

## ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ 7

*Երկու հազար երիտասարդ գեղեցիկ աղջիկների մասին, որոնց արքան ընտրել էր ու հրամայել, որ ուղարկեն բարբարոսներին, սակայն քրիստոնեական հավատին նախանձախնդիր այս աղջիկները զարմանալի ու սարսափելի գործ կատարեցին*

*Պարսից արքան փառքից հարբած, հպարտանում էր իր՝ հոռոմների երկրից բերած բազում ավարներով ու գերիներով, հրամայեց գերիներից երկու հազար երիտասարդ աղջիկների ընտրել, որոնք հասակով ու գեղեցկությամբ կատարյալ լինեին։ Երբ նրանց ընտրեցին և նրա հրամանով իր մոտ բերեցին, նա կարգադրեց նրանց հարսի նման ճոխ զգեստներով ու թանկարժեք նվերներով, ոսկով ու արծաթով, թանկարժեք քարերով, մարգարիտներով զարդարել և որպես նվեր ուղարկել բարբարոսներին, որոնք իր երկրից դուրս էին ապրում և կոչվում...[30] որպեսզի հաճոյանա նրանց, հանգստացնի ու կաշառի։ Երբ ամեն ինչ կատարեցին իր հրամանի համաձայն ու ճոխությամբ զարդարե-*

[30] *Խոսքը ի՞նչ ցեղերի մասին է, հստակ չի ասված։*

ցին, նա (արքան) երկու մարզպանների զորք տվեց (ուղեկցելու) ու կարգադրեց առատ պաշտպանություն տալ, և ուղարկեց նրանց՝ հրամայելով, որ ճանապարհին չշտապեն, հանգիստ ճանապարհորդեն ու հանգստանան, որպեսզի (աղջիկները) չնիհարեն ու չտգեղանան։ Այս աղջիկները ոչ միայն տխրում էին իրենց ծնողների, եղբայրների և բոլոր ազգականների բաժանումից, այլև իրենց հոգիների համար, որոնք կործանվելու էին հանուն քրիստոնեության և իրենց մարմինների, որոնք հանձնվելու էին իրենց թշնամի բարբարոսների ձեռքը՝ Նրանք արցունքով ու դառն կսկիծով, քույրերի նման, խոսքերը մեկ արեցին և մեկ (մարդու) նման նախընտրեցին մեռնել, քան ապրել։ Այս բոլորը հայտնի դարձավ. գաղտնիքը բացվեց իրենց հայրենակից ասորի գերիների միջոցով, որոնք մարզպանների ու մյուսների հետ գալիս էին ուղեկցելու ու ծառայելու նրանց։ Այսպես հայրենակիցների միջոցով գաղտնիքը իրենց հայտնի դարձավ, և հետագայում, այդ բոլորն էլ իմացան։ Երբ այս բարբարոս ժողովուրդների երկրին հասնելու համար 5 մասիոն[31] էր մնացել, և իմացան, որ արդեն նրանց հողերին են հասել, և այնտեղ հոսում ու անցնում էր մի մեծ գետ, շատ ուժեղ (հոսանքով), որը կտրել, անցնելը համարյա անկարելի էր, և որովհետև իրենց ղեկավարներին հրամայված էր, որ հանգիստ շարժվեն ու չշտապեցնեն, ուստի նրանք մի ամբողջ օր այս գետի մոտ մնացին։ Բոլորն իրար հետ խորհրդակցեցին, բոլորն էլ նույն մտքին էին, նույն ազնիվ ու քաջ (զգացմունքին էին), արհամարհել մահը։ Բոլորն իրար մոտ վազեցին, իրար մեջ խորհրդակցեցին ու իրար ասացին. «Բոլորս մեկ (մարդու) նման հասկանում ենք, որ մենք մեր հոգիները հեթանոսությամբ կմթագնենք, կապականենք ու կկործանվենք քրիստոնեության համար, եթե բարբարոսների սպանած կամ հեղձամահ արած կենդանիների (միսը) ուտենք։ (Բացի այդ) ի վերջո նրանք մեզ բոլորիս կսպանեն և մենք կկանգնենք ահավոր դատաստանի առաջ։ Այժմ բոլորս ինչպես քույրեր, ինչպես քրիստոնյաներ և քրիստոնյաների դուստրեր, իրարից չբաժանվենք և մեկ ցանկություն ունենանք, մեկ հոգի, մեկ միտք, մեկ դատողություն։ Քանի դեռ բարբարոսները չեն թունավորել մեր մարմինը ու չեն ապականել մեր հոգիները՝ մահանանք քանի մեր մարմինները մաքուր են և հեռու պահենք դրանք ապականությունից, հանուն մեր Տիրոջ՝ Հիսուս

[31] Masluna-մասիունա՝ մի օրվա ճանապարհ, մի փարսանգ, կամ ֆարսանգ. տե՛ս J. Payne Smith, A. compendious, p. 284.

Քրիստոսի։ Եթե այժմ մահանանք, մեր մարմինն ու հոգին մաքուր տարած կլինենք Նրան։ Այսպիսով մենք թշնամիներից կփրկվենք, կապրենք հավիտենական կյանքով, հանուն քրիստոնեության. մի ժամվա չարչարանքով, կպահպանենք մեր մարմնի ու հոգու մաքրությունը։

Այսպես խոսեցին իրար մեջ, մի խոսքով նույն գաղտնիքով ու խոստումով երդվեցին ու չընկան բարբարոսների ձեռքը, որովհետև բոլորը միասին նույն մտքին էին։ Հսկողները հետևում էին նրանց. նրանք ծածուկ իմացան նրանց գաղտնիքը երբ բավական ժամանակ հետևեցին նրանց՝ գետի ափին մնալիս։ Սրանք, ինչպես իրենց հրամայված էր, ցանկանալով նրանց հանգիստ տալ, համաձայնվեցին, որ նրանք (գետում) լողանան։ Աղջիկներն ասացին նրանց. «Երբ դուք մեր կողքին եք, մենք լողանալու ամաչում ենք. մի քիչ հեռացեք մեզանից, այն ժամանակ մենք կլողանանք։ Այն ժամանակ նրանք թույլ տվեցին և նրանցից հեռացան։ Նրանք իրար քաջալերում, ամրապնդում ու խաչակնքում էին մեր Տիրոջ՝ Հիսուս Քրիստոսի անունով, և բոլորը մեկ հոգու նման, մեծ համբերատարությամբ, նետվեցին այդ գետի մեջ ու խեղդվեցին։ Երբ հսկիչները նայեցին գետը, տեսան որ նրանցից ոմանք լողում էին և հոսանքից տարվում, իսկ ոմանք էլ ընկղմվում էին։ Նրանք վազեցին այնտեղ, որտեղ աղջիկները լողանալ էին ուզեցել, և տեսան որ նրանցից ոչ մեկը կենդանի չէր մնացել։ Բոլորն էլ բարկացած բղավում, այս ու այն կողմ էին վազում, որպեսզի նրանցից մի քանիսին հանեն, բայց չկարողացան, չնայած շտապեցին բայց չհասցրին։ Նրանք հանուն Քրիստոնեության, Քրիստոսի մեծ հավատով, իրենք իրենց աստծո ձեռքը հանձնեցին և հոգով ու մարմնով փրկվեցին բարբարոսների ապականությունից ու կոպտությունից։

## ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ 8

### Ասորիքում երեք տարվա կարճ խաղաղության ու պարսից արքայի հոռոմների երկիր՝ Հայաստան և Կապադովկիա (կատարած) արշավանքը

Այս բոլորը տեղի ունենալուց հետո, Ասորիքում խաղաղությունը երեք տարի տևեց, ի միջի այլոց, այս երեք տարվա համար երեք կենտենար (հարկ) վճարեցին։ (Իսկ) Հայաստանում պատերազմը երկու կողմից էր տեղի ունենում։ Թե ինչ պատճառով պարսկական հայերը հանձնվեցին հոռոմներին, այդ մասին

տեղեկություններ են տվել այլ եկեղեցական պատմություններում։ Այժմ խոսքը հետևյալի մասին է. պարսից արքան մեծամտացել էր այն բանից, որ նա գրավել էր Դարան և այս մեծամտությունը մոլորեցրեց նրան։ Մտածելով, որ Ասորիքի շրջաններում պատերազմելու առիթ չունի, հավաքեց բանակը և վստահ գնաց Հայաստան՝ Թեոդոսուպոլիս, որը Հայաստանի սահմանն էր, (ապա) Կապադովկիական Կեսարիա և այլ քաղաքներ։ Այս (արշավանքը) տեղի ունենալու ժամանակ սիլենտիար Թեոդորը որպես դեսպան նրա մոտ ուղարկվեց, երբ տեսան, որ նա պատերազմի էր դուրս գալիս։ Նա (արքան) իր հետ վերցրեց նրան (դեսպանին), սակայն վերջինս խնդրեց նրան, որ իրեն (ազատ) թողնեն, բայց նա (արքան) ծիծաղեց ու ասաց նրան. «Արի ինձ հետ Հայաստան ու կգնանք Թեոդոսուպոլիս և այնտեղ կլողանաս ու կհանգստանաս, ապա ես քեզ (ազատ) կթողնեմ։ Այսպես նրան վերցրեց ու տարավ Հայաստան, վստահ լինելով, որ քաղաքն առանց դժվարության կգրավվի։ Երբ հռոմ զորքն այդ մասին իմացավ, չնայած արքայի անունից դողում էին, բայց նրա դեմ լավ պատրաստություն տեսան։

Երբ նա տեսավ (հռոմների) այս հզոր բանակները, շատ անհանգստացավ, մանավանդ երբ ասացին, որ նրանք 120 հազարից ավելի են։ Նրանք (հռոմները) նրա առաջխաղացումը կանգնեցրին և մարտի պատրաստվեցին։ Իսկ նա վախեցավ, ետ դարձավ ու գնաց այլ քաղաքի վրա։ Նրա դեմ այնտեղ էլ գնացին ու հասան և այնտեղից էլ դուրս քշեցին։ Նրա բանակի (կարողությունը) փորձելուց հետո զգացին, որ իրենք նրանից ավելի ուժեղ են, ուստի արհամարհեցին նրան։ Դրանից հետո, երբ նա տեսավ, որ իր ցանկության համաձայն ոչինչ չի ստացվում, մեկնեց Կապադովկիայի ուղղությամբ, դեպի հյուսիսային լեռը, որպեսզի գնա ու նվաճի Կեսարիան։ Երբ հռոմ բանակն այդ տեսավ, նրա դեմ դուրս եկավ ու Կապադովկիայում նրան կանխեց։ Դասավորվեցին նրա դեմ ու նրա շարժումը կանգնեցրին Կապադովկյան լեռներում, արգելք հանդիսացան ու նրան թույլ չտվեցին առաջ շարժվել։ Թեև շատ օրեր իրար դեմ դիմաց էին գտնվում, սակայն նա չհամարձակվեց նրանց հետ մարտի մեջ մտնել։ Երբ նա տեսավ, որ նրանք իրենից շատ են ու ավելի ուժեղ, որ ինքը չի կարողանա նրանցից խուսափել ու գնալ Կեսարիա, հուզվեց, վախեցավ ու սկսեց խորամանկության դիմել, որպեսզի, եթե հնարավոր լինի խուսափի ու փախչի իր երկիրը։ Սակայն մոգերը մեղադրեցին նրան ու իր հետ վիճեցին։ Այն ժամանակ ետ

դարձավ Կապադովկիայից ու (գնաց) Սեբաստիայի վրա, և արդեն նրանք (պարսիկները) բոլորն էլ վախենում էին հոռոմների բանակից։ Ամոթից, և նրա համար, որ իրեն չկշտամբեն, որ չկարողացավ ոչինչ անել, հարձակվեց և կրակի տվեց Սեբաստիան։ Նա ոչ ավար և ոչ էլ գերիներ գտավ այնտեղ, որովհետև ամբողջ շրջանը նրանից փախել էր։ Այնտեղից ետ վերադարձավ դեպի արևելք, որպեսզի եթե հնարավոր լինի, իր երկիրը փախչի։ Ավելի ուժեղ լինելու պատճառով նրան արհամարհում էր հոռոմ բանակը, որը փորձեց բանի տեղ չդնել պարսիկներին։ Երբ նա տեսավ, որ իրեն շրջապատում են ու բոլոր կողմերից պաշարում, ստիպված եղավ թողնել ամբողջ բանակատեղը ու տաղավարը, վրանը, բոլոր ունեցած չունեցած հարստությունը, ոսկին, արծաթը, մարգարիտները, արքայական հոյակապ զգեստները ու մերկ փախավ։

Այն ժամանակ հոռոմները շտապեցին, եկան, գրավեցին ամբողջ բանակատեղը, սպանեցին բոլորին, ում որ գտան այնտեղ, տիրեցին նրա և նրա մեծամեծների ունեցվածքին, կրակի ատրուշանին և իրեն տանող բերող ձիերին։ Մարդիկ այնտեղ հարստացան, որովհետև հոռոմ զորքերից ոմանք արքայի ունեցվածքից ինչ որ գտան վերցրին ու փախան, և այլևս նրանց չհանդիպեցին ու չտեսան։ Իսկ (պարսիկներից) նրանք, որոնք պարսկական բանակատեղիից փախան ու փրկվեցին, եկան արքայի մոտ ու լաց լինելով ասացին. «Տե՛ր, մեր վրա հարձակվեցին հոռոմները և քո ծառաներից շատերին սպանեցին ու ամբողջ մեր բանակատեղը կողոպտեցին ու տարան»։ Նա երբ այդ լսեց, պատասխանեց նրանց, ցույց տալով իր սպիտակ մազերն, ասաց. «Իմ եղբայրներ և որդիներ, խնայեցեք իմ սպիտակ մազերը, կռվեք պարսկական թագավորության համար, որպեսզի այն չարհամարհվի ու չծաղրվի։ Ես որպես հասարակ ձիավոր, և ձեզ նման, ձեզ հետ միասին կկռվեմ»։ Մինչ իր մեծամեծներն իր հետ մշտապես վիճում էին ու ասում. «Մենք կապրենք կամ կմեռնենք, սակայն Պարսկաստանը մեր պատճառով վատ անուն (համբավ) կունենա։ Ոչ մի պարսիկ արքա երբեք այդպես չի արել, ինչ որ դու արեցիր, և դու մեզ այս լեռները բերեցիր մեռնելու»։

Դրանցից մեկի միջոցով հոռոմները իմացան, թե ինչ էին խոսել իրար մեջ։ Նորից ետ դարձան պարսիկները ու շարժվեցին այլ ուղղությամբ, որպեսզի ինչ որ քաղաք փախչեն։ Նրանք շարժվեցին Մելիտինեի վրա, և եթե չլիներ հոռոմ (բանակի) հրամանատարների միջև եղած նախանձն ու վեճը, ապա այնտեղ

*նրանք (հոռոմները) կոչնչացնեին նրան և նրա ամբողջ բանակը, մանավանդ եթե նրանք համագործակցեին, նրան պաշարեին, համաձայնեցնեին իրենց գործողությունները։ Նրանք (պարսիկները) շարժվել էին Գերմանի որդի՝ պատրիկ Հուստինոսի վրա, իսկ Հուստինոսը նրանցից վախեցավ ու փախավ, իսկ ընկերները նրան օգնության չեկան։ Եվ երբ նա և իր բանակն այդ տեսան, ինքնավստահ դարձան ու ամրապնդվեցին, և գնացին Մելիտինե և այրեցին այն։*

## ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ 9

### *Մելիտինեի պաշարումն ու դրանից հետո պատահած այլ իրադարձությունների մասին*

*Երբ Պարսիկ (արքան) մտավ Միլիտինե քաղաքը, նա իսկույն հրամայեց, որ այն ամբողջությամբ այրեն։ Ապա դուրս եկավ, որ անցնի Եփրատն ու շարժվի դեպի իր երկիրը։ Հոռոմ զորքի հրամանատարները նրան լուր ուղարկեցին ասելով հետևյալը. «Այն ինչ որ դու արեցիր, եկար ու այրեցիր քաղաքն, ամայացրիր ու ավերեցիր, դա արքային վայել չէ, և եթե մենք՝ կայսրի ծառաներս նման բան աներինք, այն բոլորովին զզվելի կլիներ, իսկ քեզ համար առավել ևս, որովհետև ոչ միայն արքա ես, այլ քեզ կոչում ես արքայից արքա։ Նա արքա չէ, որ գողի նման կողոպտելու, ետ փախչելու, վառելու ու այրելու է հետամտում։ Արքային վայել է ուժեղ, վստահ ու արքայական ձևով բաց ճակատամարտի գուրս գալ և եթե հաղթի, ապա որպես արքա կփառաբանվի, և ոչ թե գողի նման գալ, վնաս հասցնել, գողանալ ու փախչել։ Այժմ պատրաստվիր մեզ հետ բաց ճակատամարտի, որպեսզի դիմացինին հայտնի դառնա, թե ո՞վ է հաղթել կամ պարտվել»։ Երբ նա այդ լսեց, հրամայեց հաջորդ օրվա համար Կամպոյում՝ քաղաքի արևելյան մասում, ճակատամարտի պատրաստվել։ Առավոտ շուտ, երկու կողմերն էլ, քիչ հեռավորության վրա, իրար դեմ դասավորվեցին։ Նրանք շարքով կանգնել էին, իրար նայում և առավոտից մինչև ժամը 6-ը ոչ մեկը տեղից չշարժվեց։ Արքան կանգնեց բանակի թիկունքում և այդպես նրանք իրար էին նայում, թե ո՞վ առաջինը (ճակատամարտը) կսկսի։ Այն մարդիկ, որոնք մեզ պատմեցին (այս եղածի մասին), պարսիկների ու հոռոմների թարգմանն էին եղել և մեզ երդվեցին, որ (իրենց ասածը ճշմարիտ է). «Ի վերջո մեզանից երեքը հարվածեցին ձիերը և հոռոմների շարքերի միջով գնացին ու հասան*

պարսիկների շարքերի այն կողմը, և շտապ նորից վերադարձան։ Իրենց չմոտենալով, երեք անգամ ամբողջ ձիու արագությամբ, սլացան և երկու կողմերից էլ մեզ լարված հետևում էին։ Մենք նրանց մարտի էինք հրավիրում, սակայն ոչ մեկը տեղից չշարժվեց և ոչ մեկը մեր դեմ դուրս չեկավ. չնայած նրանք պատի նման կանգնել ու դասավորվել էին և ոչ մի խոսք իրար հետ չէին փոխանակում։ Ի վերջո նա (արքան) լուր ուղարկեց, թե «այսօր այլևս մարտ չի կարող լինել, ժամանակն անցավ»։ Երկու բանակներն էլ ցրվեցին։ Գիշերը դեռ լույսը չբացված, արքան ու իր բանակն արդեն գտնվում էին Եփրատի ափին, ձգտում ու փորձում էին գետն անցնել, որը գտնվում էր Մելիտինեից 6 մղոն հեռավորության վրա։ Հոռոմները նրանց հետևեցին, որպեսզի գետում ճնշեն ու ոչնչացնեն, այդպես էլ արեցին։ Պարսիկները խուճապի մատնվեցին և երբ պարսկական զորքը տեսավ, որ հոռոմ բանակն անցավ իր թիկունքը, ձիերով գետը նետվեցին։ (Պարսկական) բանակի կեսից ավելին խեղդվեց ու շնչասպառ եղավ, իսկ մնացածը ձիերի վրա լողալով, փրկվեցին ու անցան, և շտապ դիմեցին հոռոմների Հայաստանի վրա։ Չնայած նրանք (պարսիկները) շտապ առաջանում էին, բայց նա հրամայեց, որ բոլորն իրենց պատահած գյուղերը այրեն։ Նա շարժվեց դեպի Կորխա լեռը, որի միջով ճանապարհ չէր բացվել, և ստիպված նախօրոք առաջից զորք ուղարկեց, որ իր համար ճանապարհ բացեն. նրանք ծառերն էին կտրում ու կամ պատահում էր լեռնանցք էին փորում ու ճանապարհ բացում իրեն համար։ Այստեղ հուզված, խուճապահար եղած, մեծ դժվարությամբ, նա (արքան) հազիվ փրկվեց հոռոմների ձեռքից, և (եկավ) իր երկիրը։ Դրանից հետո նա հրաման արձակեց և օրենք գրեց, որ ինքն՝ արքան, եթե իր դեմ մի (ուրիշ) թագավոր դուրս չգա, ինքը նրա դեմ պատերազմի (ճակատ) չի գնալու։

## ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ 10

### Թե ինչ պատահեց հոռոմների հետ Պարսկական Հայաստանում

Հոռոմ բանակների հրամանատարները մեծ հաղթանակ տարան, շատ մարտերում հաղթեցին և իրենց դեմ ուղարկվածներից շատերին կոտորեցին։ Պարսիկներին հպատակված բոլոր հյուսիսային ժողովուրդներին նվաճեցին և իրենց հպատակեցրին։ Նրանք բազում մասիոն առաջացան պարսկական երկրից ներս ու ամա-

յացրին այն և Հասան (մինչև) պարսիկների մայրաքաղաքից երեք մասիոն հեռավորության վրա, կողոպտեցին ու վերցրին պարսկական փղերը, այնպես որ Կոստանդնուպոլիսը լցրին փղերով։ Նրանք շատ տեղերում հաղթեցին, որոնց նկարագրությունը չի մտել այս (գրքում)։ Այսպես, ամբողջ Պարսկաստանն (արդեն) վախենում էր նրանցից։ Ի վերջո, պարսիկների արքան իր երկիրը վերադարձավ Ալեքսանդրի 880 թ.[32], իսկ հոռոմները հաղթանակած մարդու նման անհոգ էին ու փառքով շլացած։ Դրանից հետո նրանք ապրում էին անվախ ու կարծում, որ ազատվեցին և կարող են բոլոր պատերազմներից ու մարտերից հանգստանալ. զենքերը մի կողմ դրեցին ու ձիերն էլ արոտավայրերն ուղարկեցին։ Սակայն հանկարծ նրանց (հոռոմների), առաջազորն ու լրտեսները եկան ու ասացին. «վե՛ր կացեք, զինվե՛ք, ահա ձեր վրա է գալիս պարսկական զորքը Տամխոսրով մարզպանի (հրամանատարությամբ), ելե՛ք պաշտպանվեցեք»։ Երբ նրանք այդ լսեցին, սկսեցին նրանց վրա ծիծաղել, ասելով. «Միթե՞ նրանք կհամարձակվեն մեզ երևալ»։ Նրանք չանհանգստացան և չպատրաստվեցին. մինչդեռ նրանք այսպիսի խոսակցությամբ էին տարված, պարսկական զորքը հարձակվեց նրանց վրա այնպիսի ժամանակ, երբ նրանք ոչ պատրաստ էին և ոչ էլ կարող էին վեր կենալ։ Երբ նրանք (հոռոմները) տեսան, որ թշնամին երկար շարքերով ամուր պատ կազմած, մոտենում է, բոլորին ահ ու սարսափ պատեց, խուճապահար եղան։ Ոմանք նույնիսկ իրենց ձիերն էլ չէին բերել ու զբաղված էին ուտելով, խմելով, հաճույքով, ոմանք էլ ցրվել էին այս կամ այն կողմ և երբ տեսան նրանց (պարսիկներին), սարսափած սկսեցին շտապ փախչել։ Ուրիշները տեսնելով, որ սրանք փախչում են, վախեցան ու իրենք էլ փախան։ Զորքի հրամանատարներն երբ տեսան, որ բանակը լքեց իրենց և փախավ, իրենք էլ փախան։ Ով որ կարողացավ զենք վերցնել ու ձի նստել, նստեց ու փախավ։ Ով որ զենք էր իր հետ տանում, ճանապարհին հոգնելով, այն գցում ու անզեն էր փախչում։ Եթե մեկն իր զենքի հետ ձի նստած (փախչում) էր, հոգնելուց հետո զենքը մի կողմ էր նետում։ Եթե ձին էր հոգնած լինում, նա իջնում էր (ձիուց) ու (ոտքով) փախչում։ Պարսիկներն առանց շտապելու, գալիս էին նրանց հետևից, չէին հետապնդում, այլ նրանց վրա ծիծաղում ու ձեռք էին առնում։ Հոռոմները 120 հազար էին, իսկ իրենք 30

[32] 569 թ.։ Մենանդրը այս դեպքը տանում է 576 թ.։ Այստեղ 576 թ. դեպքերի նկարագրությունն է։

հազարից ոչ ավելի, սակայն վախեցան ու փախան, մինչդեռ իրենք նրանց կայսրից չվախեցան ու ոչ էլ փախան։ Այսպես, ի վերջո հոռոմ զորքն իր հրամանատարների հետ միասին ամոթի ու վատ համբավի արժանացան։ Պարսիկները նրանց դեմ (համարյա) սրեր չմերկացրին, ոչ աղեղներ քաշեցին և ոչ էլ նիզակներ արձակեցին։ Նրանք հավաքեցին· նրանց բոլոր զենքերն ու զրահները, կրծքակալները, վահանները, սաղավարտները, նիզակները, աղեղները մեծ (քանակությամբ) նետերի հետ միասին։ Ի վերջո սկսեցին պատմել ու յուրաքանչյուրն ասում էր, որ այդ պատահեց, որովհետև հոռոմները բարկացրին աստծուն, քանի որ նրանք երբ հյուսիսային շրջաններում եղան, որտեղ (ապրում) էին քրիստոնյաներ, և երբ քահանաներն ավետարաններն ու խաչը վերցրած դուրս եկան նրանց դիմավորելու, նրանք (հոռոմները) սրանց երեսն անգամ չնայեցին։ Այսպես հոռոմներն աստծո վախը մոռացած, նույնիսկ բռնում էին մեկ երկու տարեկան երեխաներին, մեկը մի ոտքից, մյուսը՝ մյուս ոտքից ու իրենց ուժը պատածի չափ վեր էին գցում, երեխան ընկնում էր նրանց բռնած սրի կամ նիզակի ծայրին, որը մտնում էր մարմնի մեջ և ապա (դիակները) նետում էին շներին։ Նրանք նույնպես անպատվում, կողոպտում ու սպանում էին վանականներին։ Նրանք դուրս էին բերում պատկառելի ու տարիքոտ ճգնավորներին իրենց ճգնարաններից, որտեղ նրանք երկար տարիներ մնացել էին, կախում, տանջում ու կտրում էին նրանց առնանդամները, ասելով. «Ոսկի, արծաթ տվեք»։ Նրանք տանջում էին նաև կույսերին և նրանց դաժան մահվան եզրին հասցնում։ Իրենց այս անզգամությամբ, ինչպես ասում են, աստծուն բարկացրին ու նա ամաչեցրեց նրանց ու խոնարհեցրեց թշնամու առաջ և նրանք չկարողացան նրանց (պարսիկներին) դիմագրել։

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ 11

### Պարսկական հայերի մասին, որոնք հոռոմներին հանձնվեցին

Պարսկական հայերի գալու ու հոռոմներին հանձնվելու պատճառների, բազում պատերազմների, այնտեղ եղած ամայացումների, նրանց (հայերի) մայրաքաղաք գնալու, ապա կայսրից մեծ պատիվներով, պարգևներով ու այլ հարգանքներով ընդունվելու մասին մենք համառոտակի գրել ենք առաջին գլուխներում։ Այժմ ուզում ենք ձեզ պատմել այն, որ հոռոմների կայսրը պար-

*սիկների հետ այդ ամբողջ պատերազմները մղեց, որպեսզի իրենից ապաստան խնդրած քրիստոնյաներին չհանձներ նրանց (պարսիկներին)։ Այսպես ասած, երբ կայսրը բոլոր հայերին հարստացրեց թանկարժեք նվերներով, և կարգադրեց, որ երեք տարի նրանցից հարկ չվերցնեն, այն ժամանակ պարսիկը լուր ուղարկեց ասելով. «Ինձ հանձնիր, իմ դեմ ապստամբած ծառաներին»։ Սակայն նա (կայսրը) չլսեց նրան. այն ժամանակ պարսիկը խորամանկությամբ նամակ գրեց հայերին, որ «նա նրանց վնաս չի հասցնի ու կների իրենց (կատարած) հիմարության համար»։ Այն ժամանակ նրանք (հայերը) հեռացան հոռոմներից ու գնացին, հանձնվեցին նրանց (պարսիկներին)։ Այսպես, ամբողջ երկիրը (հանձնվեց), Կոստանդնուպոլսում կայսրի մոտ գտնվող նրանց մեծամեծներից բացի։ Ամբողջ երկրից, մոտ 20 հազար զինվոր հեռացավ հոռոմներից ու հանձնվեց պարսիկներին։ Նա (արքան) վերադարձավ ու նախկինի նման գրավեց Հայաստանը։ Իսկ ինչ վերաբերում է մեծամեծներին, ապա դրանցից՝ Վարդան անունով մեկն իր հետ գնացածներից, ևս մի ուրիշը իր ազգից իշխան Գորգոնիս անունով, որը մեծ պատվով ապրում էր մայրաքաղաքում, բոլոր իրենց մարդկանց հետ հպատակվեցին հոռոմներին։ Նրանք եկան ու հանձնվեցին Հուստինոս կայսրին, նրա իշխանության 5-րդ տարում, այսինքն Ալեքսանդրի 882 թ.[33]։ Այգ պատճառով նորից վերսկսվեցին պատերազմներր և (տևեցին) բազում տարիներ։*

## ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ 12

*Երկու պետությունների՝ հոռոմների և պարսիկների դեսպաններն իրար հանդիպեցին սահմանագլխում, որպեսզի իրար հետ քննեն ու վերանայեն, թե ինչի՞ համար պատերազմները վերսկսեցին ու ինչու՞մ էին իրար մեղադրում*

*887 թ. երեք սունկլիտոսներ՝ Պետրոս մագիստրոսի որդի՝ Թեոդոր պատրիկը, Անաստաս կայսեր տնից՝ Հովհան ու Պետրոս հյուպատոսներն ու նրանց հետ նաև գլխավոր բժիշկ ու գիտնական՝ Զաքարիան (եկան)։ Պարսիկների կողմից եկան մոգպետն ու այլ անձնավորություններ ու տեղավորվեցին Դարայի մոտ, որը գրավված էր պարսիկներից, քննելու համար երկու պետությունների միջև ծագած վեճերը։ Յուրաքանչյուր կողմը մյուսին մեղադ-*

[33] *Ոչ թե այս, այլ հաջորդ գլխի «887 թ.» պետք է. որ ճիշտ լինի։*

րում էր ասելով որ «դուք մեղանչեցիք այս կամ այն հարցում»։ Մյուս կողմն էլ նշում էր այլ մեղադրանքներ, ասելով «թե դուք խախտեցիք խաղաղությունը երկու պետությունների միջև և եկաք ամայացրիք մեր երկիրը»։ Նրանք ասում էին նաև որ «ձեր արաբներն անցան (սահմանը) ու մեզ բոլորիս ոչնչացրին»։ Այսպես իրար դեմ նստած, միմյանց նման մեղադրանքներ էին ներկայացնում. այն հասավ (սուր) վեճերի ու հայհոյանքների։ Այսպես խոսելով ու վիճելով անցավ մեկ տարուց ավելի և յուրաքանչյուր կողմը տեղեկությունները հաղորդում էր իր թագավորին, և որովհետև Հուստինոս կայսրը հիվանդ էր, պատասխանները տալիս ու առնում էր Տիբերիոսը։ Չնայած երկու կողմերն էլ խաղաղություն էին ուզում, սակայն յուրաքանչյուր կողմը համառություն էր ցուցաբերում, որպեսզի մյուսին չենթարկվի և իր թուլությունը չբացահայտվի։ Հռոմների կեսարը պարսիկներին լուր ուղարկեց. «Մենք ավելի խաղաղության կողմնակից ենք, քան թե ամայացման, և եթե դու խաղաղություն ես ուզում, մենք դեմ չենք, իսկ եթե պատերազմ ես ուզում, մենք չենք խոնարհվի քո առաջ և դեմ (դուրս կգանք)»։ Պարսիկը հույս ուներ, որ երեք տարվա խաղաղության դաշինք կնքելու համար 3 կենտենար, այսինքն ամեն մեկ տարվա (խաղաղության) համար մեկ կենտենար ոսկի կարող է ստանալ, սակայն երբ կեսարն այդ մասին իմացավ, գրեց և լուր ուղարկեց ասելով որ «դու բոլորովին սխալվում ես, եթե դու հույս ունես, որ հռոմ պետությունը խաղաղության համար քեզ նույնիսկ մեկ մինա[34] կտա, և կամ եթե կարծում ես, որ մենք խաղաղությունը փողով կգնենք (սխալվում ես), բայց եթե դու ցանկանում ես, որ պատվով երկու պետություններին վայել ձևով մեր միջև խաղաղության դաշինք կնքվի, թող կնքվի, ապա թե ոչ, պատերազմի պատրաստվիր»։ Երբ պարսիկը նման հայտարարություն ստացավ, այս խոսքերից ազդվեց ու համաձայնվեց առանց փողի, պատվավոր խաղաղության դաշինք կնքել։ Երբ կեսարը ստացավ այս պատասխանը, նորից գրեց. «Թող քեզ հայտնի լինի, որ հռոմների պետությունը երբեք թույլ չի եղել և նա այժմ էլ ուժեղ է և ոչ ոքի չի ենթարկվում, և ես չգիտեմ թե ինչու նախկին կայսրերը համակերպվել են տարին 5 կենտենար ոսկի տալ պարսիկներին։ Թող քեզ հայտնի լինի, որ սրանից հետո հռոմների տերությունը ո՛չ քեզ և ո՛չ էլ ուրիշին, նույնիսկ 5 մինա չի տալու, որովհետև քո դեսպանները բարբարոս թուրք[35] ցեղերի

[34] Փոքր դրամ։

[35] Հեղինակը «թուրք ցեղեր» ասելով նկատի ունի «բարբարոս ցեղերին»։

առաջ մեծամտելով ասել են. «Հոռոմները մեր ծառաներն են և որպես խեղճ ծառաներ, մեզ հարկ են վճարում. եթե դու դրան վերջ չտաս, ապա մեր միջև խաղաղություն չի կարող լինել»։ Երբ շատ բան որոշվել էր, նա ոչ միայն համաձայնվեց, այլև իսկույն հրամայեց հարկը վերացնել և խաղաղության հրովարտակ պատրաստելով, այն ուղարկեց սահման՝ դեսպաններին։ Երբ կեսարը հետո տեսավ, որ նա (պարսիկը) այդ (պայմանին) էլ համակերպվել է, լուր ուղարկեց. «Մեզ այժմ տուր Դարա քաղաքը և մենք խաղաղության դաշինք կկնքենք»։ Երբ պարսիկն այդ լուրը ստացավ, բոլորովին վրդովվեց ու դրեց. «Դարան ես գրավել եմ պատերազմի օրենքով, իսկ դու առանց պատերազմի վերցրել ու պահում ես մեզ հպատակ հայերի երկիրը։ Տուր ինձ Հայաստանը, իսկ ես քեզ կտամ Դարան»։ Կեսարը զայրացավ նրանց (պարսիկների) այս առաջարկության վրա, որովհետև հայերը քրիստոնյա լինելու պատճառով հանձնվել են քրիստոնեական պետության։ Այս պատճառով էլ երկու կողմերի դեսպաններն այնպես իրար դեմ լարվեցին, զինվեցին, որ նույնիսկ ուզեցին իրար հետ սրով կռվել։ Այսպես, իրարից բաժանվեցին փոխադարձ ատելությամբ, և խաղաղությունը բոլորովին վերացավ, որովհետև երկու պետությունները էլ պատերազմի էին պատրաստվում։ Պարսկական դեսպանը հրամանատարներին լուր ուղարկեց և զգուշացրեց նրանց, ասելով. «Մեկնեցեք սահմանը հսկելու, որովհետև հոռոմները խաղաղություն չկնքեցին»։

## ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ 13

### *Այդ օրերին պարսիկների կատարած ամայացումները հոռոմների գավառներում*

Պարսկաստանի մեծ մարզպան Ադարմահոնը, որը հոռոմ դեսպանների հետ խաղաղության բանակցություններն էր վարում, երբ որոշվեց, որ այլևս խաղաղություն չի լինելու, բարկացած ու զայրացած, որ դեսպանները հայհոյեցին իրեն, հավաքեց բանակը և դուրս եկավ, ամայացրեց ու ամբողջովին կրակի տվեց Բեյթ-Դարայի, Բեյթ-Տելլայի, Բեյթ-Տելբեշմայի, Բեյթ-Ռեշլղայնայի շրջաններում (գտնվող) մեծ գյուղերն, եկեղեցիներն ու վանքերը։ Ոչնչացնելով, այրելով, սպանելով, նա հասավ Տելլա ու ասաց նրանց (բնակիչներին). «Հանձնեք ինձ քաղաքը, եթե չեք ուզում, որ ձեզ հետ լինի այնպես, ինչպես Դարայի բնակիչների հետ, որոնք կոտորվեցին. որտե՞ղ են ձեր դեսպանները, որոնք սպառ-

նում էին մեզ։ Թող նրանք այժմ մեր դեմ դուրս գան»։ Տելլայի բնակիչները նրանց պատասխանեցին. «Մենք այժմ չենք կարող ձեզ հանձնվել, որովհետև մենք նամակ ստացանք, որ պատրիկ Հուստինոսը դուրս է եկել և այստեղ է գալիս 60 հազար լոմբարդացիների հետ։ Եթե մենք այժմ ձեզ հանձնվենք, այն ժամանակ նա կգա և մեզ երկրի երեսից կջնջի»։ Այն ժամանակ նրանք գնացին այդ տեղից, բայց այրեցին մեծ ու հսկա Աստվածածնի տաճարը, որը քաղաքից դուրս էր գտնվում։ Նման վնասներ պատճառելուց հետո նրանք վերադարձան Դարա. ծիծաղում էին հռոմների վրա ու հպարտանում իրենց կատարած ավերածությունների, ձեռք բերած գերիների ու բազում ավարների համար։

## ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ 14

### Կոմիտ Մավրիկիոսի, պարսիկների խորամանկության ու նրանց (կատարած) ամայացման և այլ իրադարձությունների մասին

Հռոմ բանակի հրամանատարներն իրար հետ չէին համագործակցում, այլ իրար դեմ գրում էին կայսրին։ Երբ այդ տեսավ աստվածասեր կայսրը, կանչեց Մավրիկիոս անունով մեկին և նրան նշանակեց էքսկուբիտորների Կոմես[36]. դրա համար էլ նրան անվանում են կոմիտ, և նրան հրամայեց մեկնել Արևելք որպես (բանակների) ընդհանուր հրամանատար, (միևնույն ժամանակ) նրան տվեց ամբողջ (Արևելյան) բանակի (գործերը) ղեկավարելու, կարգադրելու, ստրատելատներ ու տրիբուններ նշանակելու իրավունք։ Ոչ ոք չէր համարձակվում նրա կարգադրությունն ու հրամանը չկատարել։ Իր հայեցողությամբ (մարդկանց) իրենց պաշտոններից ազատելու կամ նշանակելու (իրավունք) տվեց։ Նրա հետ մեծ քանակությամբ կենտենար (ոսկի) ևս ուղարկեց, որպեսզի նա բանակին կերակրի։ Մինչ այդ, ուղարկել էր Գրիգոր անունով հյուպարքոս Պրետորին[37], որպեսզի սա բանակի ծախսերը կարգադրեր ու կազմակերպեր, որովհետև նա աչքի էր ընկել Հա-

---

[36] Բանակաթեմի զորավար։ Այս մասին տե՛ս Կոստանդին Ծիրանածին, էջ 299, ծնթ. 49։

[37] «Պրետորյան և քաղաքի հյուպարքոսները համապատասխանում են Praeтectus Urbis-ին։ Notitia dignitatum, V դարի սկզբի մի հուշարձան ցույց է տալիս, որ ամբողջ Հռոմեական կայսրությունը քաղաքական տեսակետից բաժանված էր 4 մասի, որոնք գլխավորում էին Praefecti praetorio-ները։ Քաղաքի պրեֆեկտները համապատասխանում էին քաղաքապետներին»։ Տե՛ս Կոստանդին Ծիրանածին, ծնթ. 18, էջ 318։

յաստանում կատարած բազում քաջագործություններով։ Նշանավոր Մավրիկիոսն, ինչպես հրամայված էր, մեկնեց Կապադովկիայի շրջանը, մանավանդ որ ինքն էլ կապադովկիացի էր։ Նա իսկույն բազում հոռոմների հավաքեց զինվորական ծառայության՝ էքըսկուբիտորներ, սկիբիոններ[38], զինվորներ, որոնց նա գտավ իր հետ վերցրեց՝ Օրթայայից, Ասորիքից ևս մարդկանց հավաքեց ու (տարավ) իր հետ։ Նա գնաց ու տեղավորվեց Հայաստանի և Ասորիքի միջև՝ Կիտարիզում։ Լուր ուղարկեց և բոլոր հրամանատարներին իր մոտ կանչեց ու նրանց հետ խորհրդակցեց, կարգ հաստատեց, հրամաններ տվեց, ոգևորեց ու ապա նրանց ետ ուղարկեց։ Այնտեղ նա երկու ամիս ապրեց և նրա անունը (շրջակայքում) տարածվեց ու սարսափ պատեց բոլոր այն պարսիկներին, որոնք տեսել էին, որ հոռոմ բանակն իրենցից ավելի շատ է ու ավելի ուժեղ։ Դեռ այնտեղ եղած ժամանակ, վախն ընկել էր իրենց սիրտը, նրանք (ստիպված) խորամանկության դիմեցին ու հարձակվեցին Պարսկական Հայաստանի վրա և լուր ուղարկեցին Թեոդոսուպոլսում ապրողներին. «Երեք օրից պատերազմի պատրաստվեք»։ Երբ հոռոմներն այդ լուրը ստացան, այն հայտնեցին կոմես Մավրիկիոսին, որը և ամբողջ բանակին հրամայեց պատրաստվել պատերազմի։ Պարսիկներն այդ լուրն ուղարկելուց հետո, սկսեցին խորամանկությամբ խաբել հոռոմներին. իրենց զորքը հավաքելով, գաղտնի հեռացան այդ վայրից ու Մայփերկատի ուղղությամբ մտան հոռոմների այդ գավառը, նրանք սկսեցին ամայացնել ու այրել ամբողջ Ծոփքի շրջանը, հատկապես բոլոր եկեղեցիներն ու վանքերը. նրանք (ամայացրին) նաև Ամիդի շրջանը։ Երբ հասան Ամիդ, նրանք նախ այրեցին ամբողջ շրջակայքը և (քաղաքի) շուրջը գտնվող եկեղեցիներն ու վանքերը, իսկ քաղաքն էլ 3 օրվա ընթացքում պաշարեցին։ Սակայն երբ տեսան, որ այն (քաղաքը) գրավել հնարավոր չէ, մանավանդ վախենում էին, որ Մավրիկիոսն իր բանակով կարող է հասնել և իրենց ոչնչացնել, ուստի նրանք գողերի նման այրեցին ու կողոպտեցին ամբողջ Միջագետքի շրջանն՝ վերադարձան և գնացին իրենց երկիրը։ Երբ հոռոմները նշանակված ժամին մարտի պատրաստվեցին, (պարզվեց), որ պարսիկներն խաբել են իրենց և կողոպտել Միջագետքը, այրել, ոչնչացրել ու գերի տարել (բնակիչներին)։ Այս բոլորը տեղի ունեցավ Ալեքսանդրի 888 թ.[39]։

---

[38] Կայսերական թիկնապահներ։ Տե՛ս E. A. Sophocles, Greek Lexicon, vol. II, New—York p. 998.

[39] 577 թ.։

*Նույն տարում Մավրիկիոսն եկել էր մայրաքաղաքից ու այդ պատճառով պարսիկները մեծ անապարանքով վերցրին գերիներին և ինչ որ ունեին իրենց հետ, և հոռոմների վախից, փախան իրենց երկիրը. այսպես 18 օր (շարունակ) ամեն տեսակի վիշտ պատճառեցին։*

ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ 15

*Այն մասին, թե Մավրիկիոսն ինչ արեց հետո*

*Երբ այդ մասին լսեց կոմես Մավրիկիոսը, նա խիստ անհանգստացավ. բարկացավ, վերցրեց իր ամբողջ բանակը և շարժվեց դեպի Արզուն՝ պարսկական հարուստ շրջանը և կատաղած, որ նա ծաղրված ու խաբված է պարսիկներից, որովհետև նրանք գնացել, ամայացրել, ոչնչացրել և բազում գերիներ էին վերցրել և այդ (շրջանները) իրենց հպատակեցնելով, հասել մինչև Տիգրիս։ (Ուստի) նա գնաց և գերի վերցրեց, ոչնչացրեց ու այրեց ամբողջ (Արզունի) գավառը։ Եվ որովհետև բնակիչները հավատացյալ քրիստոնյաներ էին, առանց այլևայլության զորքին ու հրամանատարներին աղոթքներով, խաչերով ու ավետարանով դիմավորեցին և նրանցից խոստում վերցրին, որ իրենց կենդանի կթողնեն ասացին. «Խղճացեք մեզ, մենք ձեզ նման քրիստոնյաներ ենք և պատրաստ ենք քրիստոնյա թագավորին ծառայելու»։ Երբ շատերից այդպես լսեցին, Մավրիկիոսն ու մնացածները գթացին նրանց ու ասացին. «Ով որ ձեզանից ուզում է կենդանի մնալ և քրիստոնյա կայսրի համար ծառայել, թող իր ունեցվածքն ու բոլոր անասունները վերցնի ու գա (մեզ մոտ) և մենք նրան չենք սպանի, սակայն եթե երկու կամ երեք օր հետո մեկին այստեղ գտնենք, ապա նրան կսպանենք»։ Այսպես, ոչնչացումից խուսափելով շատերը փախան ու գնացին Արզունի գավառից դեպի հոռոմների երկիրը։ Երբ այդ մասին իմացավ կայսրը, հրամայեց, որ նրանց ուղարկեն Կիպրոս կղզին և այնտեղ նրանց բաժանեցին կղզու տարբեր գյուղերի վրա. Նրանք այնտեղ էլ ապրեցին։ Իսկ այն պարսիկները, որոնք գաղտագողի անցել էին հոռոմների երկիրը, Մավրիկիոսից վախեցած, որ նա կհասնի իրենց, շտապ հրդեհեցին, այրեցին, 15 օր շարունակ վնասեցին այն ամենն ինչ որ կարողացան և Մավրիկիոսը դեռ չհասած, փախան իրենց երկիրը։*

## ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ 16

### *Այն մասին, թե ինչպես դրանից հետո Հարիտի որդի Մունդարն ու Մավրիկիոսը միասին մտան պարսիկների երկիրը*

*Մավրիկիոսն ու արաբների թագավոր Հարիտի որդի՝ Մունդարը միասին հավաքեցին իրենց բանակն ու ամայի ճանապարհներով արշավեցին պարսիկների երկիրը։ Նրանք պարսկական հողից բազում մասիոն ներս մտան ու հասան մինչև Բեյթ-Արամայե։ Երբ հասան Բեյթ-Արամայեի մեծ կամուրջը, որի վրայով հույս ունեին գաղտագողի մտնել Պարսկական թագավորության հարուստ քաղաքները, նրանք կամուրջը խորտակված գտան։ Պարսիկներն իմանալով, որ նրանք գալիս են, այն խորտակել էին։ Եվ որովհետև նրանք (արաբներն) ու իրենց բանակը, հատկապես հոռոմները, մեծ դժվարություններ էին հաղթահարել, ուստի ոչ մի օգուտ չստանալով, վիճեցին իրար հետ ու մեծ դժվարությամբ (բայց) ապահով վերադարձան իրենց հոռոմների երկիրը։ Նրանք սկսեցին իրար դեմ (կայսրին) գրել ու ծանր մեղադրանքներ ներկայացնել, որովհետև Մավրիկիոսը մտածում էր որ Մունդարն էր պարսիկներին լուր ուղարկել և նրանք քանդել էին կամուրջը, որպեսզի (հոռոմները) չկարողանան անցնել։ Սակայն դա սուտ էր, և կայսրը մեծ ջանք թափեց ու ղեկավարներ ուղարկեց, որ նրանց իրար հետ հաշտեցնեն։ Ի վերջո Մավրիկիոսը կայսրի մոտ գնաց, բայց չգիտենք, նա Մունգարին զրպարտեց թե ոչ։*

## ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ 17

### *Պարսիկ մարզպանը եկավ ու երկրորդ անգամ այրեց Տելլայի, Եդեսիայի, Խառանի շրջաններն ու այլ վայրեր*

*Երբ պարսիկները տեսան, որ Մավրիկիոսն ու Մունգարը եկան իրենց երկրի վրա և իմացան, որ նրանց հողում (հոռոմների զորք) չի մնացել, այն ժամանակ Ադրամահոն անունով պարսիկ մարզպանը մտավ հոռոմների երկիրը։ Նա հասավ Տելլայի և Ռեշլղայնի շրջանները, ավերեց, այրեց այն բոլորն, ինչ որ մնացել էր առաջին (արշավանքից) հետո, և գնաց Եդեսիայի շրջանը։ Նա հանգիստ, վստահ վերադարձավ իր երկիրը, որպես*

թե երկար ժամանակ իր երկրից դուրս չէր եկել, մինչդեռ ոչ մի տուն կանգուն չէր թողել և որտեղից որ անցել էր, ծաղրել էր հոռոմ զորքերին, որոնք չէին կարողացել իրեն պահել։ Ի վերջո, երբ Մավրիկիոսն ու Մունդարը հոգնած դուրս եկան պարսիկների երկրից, նա (մարզպանը) լսեց, որ նրանք (հոռոմները) ուզում են իր դեմ դուրս գալ. նա լուր ուղարկեց ծաղրելով. «Ես լսել եմ, որ դուք պատրաստվել եք իմ մոտ գալ. գալու համար մի՛ չարչարվեք, որովհետև ճանապարհի դժվարություններից հոգնել եք։ Հանգստացե՛ք, ես անձամբ կգամ ձեզ մոտ»։ Ամայացումից, կողոպուտից, թալանից հետո՝ նա գերի էր վերցրել (բնակիչներին) և արել այն, ինչ որ ուզել էր, (բայց) լսելով, որ նրանք որոշել են իր դեմ դուրս գալ, վերցրեց ամբողջ ավարն ու գերածներին, մեկնեց Եդեսիայի շրջանից ու հասավ իր երկիրը։ Չնայած երկու հարյուր հազար հոռոմներ կայսրի (հացն) էին ուտում, բայց ոչ մեկը նրան չհետապնդեց, երբ նա մեկնելու էր պատրաստվել։ Նրանք պատրաստվեցին նրա դեմ դուրս գալու և որովհետև չհասան, ասացին որ նա փախել է։

## ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ 18

### *Հարիթի որդի Մունդարի տարած հաղթանակի մասին*

Հարիթի որդի Մունդարի դեմ հավաքվեց ամբողջ պարսկական արաբների բանակը և նրանց հետ պատրաստվեց նաև պարսկական բանակը, որպեսզի երբ նա դուրս գա պարսկական սահմաններից, գնան ու հարձակվեն նրա վրա՝ Երբ նա (Մունդարը) այդ մասին իմացավ, իր քաջությունը չկորցրեց ու անմիջապես իր ամբողջ բանակը հավաքելով հետևեց նրանց. անապատում լրտեսներ ուղարկեց և իմացավ, թե որտե՞ղ և ինչպիսի՞ (վիճակում) են։ Նա հանկարծակի հարձակվեց նրանց վրա, երբ նրանք այդ չէին սպասում, շփոթեցրեց, վախեցրեց, ոչնչացրեց ու սպանեց նրանց։ Նրանցից ոմանց բռնեց, կապեց ու շղթայեց, այնպես որ նրանցից քչերին (հաջողվեց) փախչել։ Այստեղից մեկնեց նրանց բանակատեղին, նրանց ոչնչացրեց, այրեց և մեծ ավարով, բազում գերիներով ու մեծ փառքով ետ վերադարձավ։

## ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ 19

*Այն մասին, թե ինչ սլատահեց Անտիոքում պահված գերիների ու բանտարկյալների հետ. այն (Անտիոքը) Խոսրովը (արքան) գարծրել էր պարսկական սահմաններից դուրս (բնակավայր)՝ հոռոմների երկրից վերցրած բոլոր գերիների համար*

*Դարան, Ապամեան և այլ (քաղաքներ) գրավելուց հետո, պարսիկները Պարսկաստանում եղած գերիներին հավաքեցին, բերեցին Մծբինի առաջ և հաշվեցին, որոնց թիվը առանց բացակաների հասնում էր 275 հազարի։ Նա (Խոսրովը) նրանց բերեց ու Անտիոքում բանտարկեց՝ այն նվաճելուց ու վերցնելուց հետո։ Այստեղ բանտարկեց նաև ոչ միայն Անտիոքի շրջակայքից, այլև Դարայից և մինչ այդ այլ (քաղաքներից) վերցրած գերիներին։*

*Իրենց բանտարկության ժամանակ և նրանց վրա եղած դաժան հսկողության միջոցին էլ, նրանք (հոռոմները) չհրաժարվեցին դավադրություններ կազմակերպելուց, որովհետև հավատում էին, որ իրենց (ազատվելու) համար օգնողներ կլինեն։ Նրանք (գերիները) իրենց վրա հսկող պարսիկներից մեկի հետ, որ պարիսպն էր պահպանում, գաղտնի կապվեցին, 500 զուզե հավաքեցին և տվեցին նրան, որ իրենցից երկուսին գիշերը պարանով իջեցնի այն մասից որտեղից որ նա հսկելու էր։ Նրանց մեջ գտնվեցին սուրբ մարդիկ՝ արաբ վանականներ, որոնցից մեկը Բենիամինն էր, մյուսը նրա աշակերտ Սամուելը։ Նրանք (գերիները) մտածում էին , որ եթե այստեղից դուրս գան և փախչեն, անմիջապես կգնան հոռոմների կայսրի մոտ և կհայտնեն այն բազմահազար գերիների մասին, որոնք Անտիոքում էին բանտարկված։ Այսպես, բոլոր գերիները նրանց միջոցով լուր ուղարկեցին ասելով. «Ահա այստեղ բանտարկված են 30 հազար (մարդուց) ավելի, իսկ մեզ հսկող պարսիկները 500-ից ավել չեն. և եթե հոռոմ հրամանատարներից մեկն ուղարկվի և քաղաքից դուրս երևա միայն, մենք կսպանենք պարսիկներին, դուրս կգանք և կփախչենք հոռոմների երկիրը։ Այս (բոլորը) գաղտնի ասացին սրբին և պարսիկը, որը կաշառք էր վերցրել, նրան և ընկերակցին գիշերը պարանով պարսպից իջեցրեց. Նրանք փախան հոռոմների երկիրը և ազատվեցին։ Այդ մասին նրանք սկզբում հաղորդեցին հոռոմ հրամանատարներին, որոնք կայսրին գրեցին ու տեղեկացրին. երբ նրանք (փախստականները) մեզ մոտ մայրաքաղաք եկան, այդ մասին իմացրին մագիստրոսին և հայտնեցին, որ նա*

գնա Տիբերիոս կայսրին տեղեկացնի, նա (սակայն) կարևորություն չտվեց և չհավատաց ասվածին։ Այսպես, ճնշված գերիների ազատության գործը հետաձգվեց ու մնաց։

## ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ 20

### Պարսիկների արքա Խոսրովի մահվան և նրա տիրապետության ժամանակ եղած այլ իրադարձությունների մասին

Անվայել չի լինի գրել ու պատմել պարսիկների արքա Խոսրովի կյանքի ու մահվան մասին, չնայած նա մոգ էր ու թշնամի։ Ինչպես վկայում են նրա գործերը, նա (նաև) ճարտար ու իմաստուն (մարդ) էր և իր ամբողջ կյանքի ընթացքում փութաջանությամբ փիլիսոփայությունն էր ուսումնասիրել։ Ինչպես ասում են, նա տարված էր (սիրում) բոլոր կրոնների գրքերը հավաքելով ու դրանք բոլորը կարդում ու դրանց մասին էլ խորհրդածում էր, որպեսզի իմանար, որ դրանցից ո՞րն է ճշմարիտ ու իմաստուն և ո՞րն է անիմաստ, լի ցնդաբանությամբ ու դատարկ առասպելներով։ Բոլորը կարդալուց ու նայելուց հետո նա ամենից շատ գովում էր քրիստոնյաների բոլոր գրքերն ու ասում. «Սրանք բոլոր կրոնների մեջ ամենաճշմարիտն ու ամենաիմաստունն են»։ Եվ իր այս (կարծիքի) մեջ համարյա հաստատակամ էր ու կարդում և հավատում էր (քրիստոնեական) գրքերի խոսքերին, և այդ պատճառով էլ քրիստոնեության նկատմամբ բարյացակամ էր։ Եթե նրան մոգերը լարում էին քրիստոնեության դեմ, նա նրանց ազդեցության չէր ենթարկվում ու քրիստոնյաներին հալածելու համար հրաման չէր տալիս։ Մեր օրերում նեստորականների կաթողիկոսը, որը մշտապես նրա մոտ էր (մայրաքաղաքում) բնակվում, բողոքեց այն քիչ թվով ուղղափառ եպիսկոպոսների[10] դեմ, որոնք պարսկական տիրապետության մեջ էին գտնվում։ Պարսկաստանում բոլոր եպիսկոպոսները նեստորականներ էին և դրանց մեջ շատ քիչ ուղղափառներ կային։ Երբ կաթողիկոսը նրանց դեմ ծանր մեղադրանքներ ներկայացրեց, այն ժամանակ արքան հրամայեց, որ իր ներկայությամբ նրանք հավատի շուրջ իրար հետ վիճեն, որպեսզի ինքն իմանա ու հասկանա, թե ի՞նչ են իրար հետ խոսելու, և դրանց խոսակցությունից էլ (կարողանա) եզրակացնել, թե նրանցից ո՞վ է ճշմարիտ։ Երբ ուղղափառներն եկան, նա հրամայեց որ երկու կողմերն էլ հավաքվեն ու իրեն

[10] Միաբնակներին նկատի ունի։

ներկայանան։ Երկուսն էլ կանգնեցին նրա այս և այն կողմը։ Ուղղափառ եպիսկոպոսների ղեկավարն Ախուդեմե[41] անունով մի սուրբ մարդ էր։ Արքան հրամայեց, որ իրար հետ վիճեն ու քննեն հավատի հետ կապված բոլոր հարցերը։ Այն ժամանակ կաթողիկոսն ու իր հետ եղածները սկսեցին բանավեճը ուղղափառների հետ։ (Նախ) կաթողիկոսը խոսեց ու վերջացրեց, ապա արտահայտվեցին (ուղղափառները) և ժխտեցին նրա ասածներն ու նրան շփոթեցրին, և որպես դատավոր, վկայակոչեցին արքային։ Եվ որովհետև բանավեճի ժամանակ իրար շատ բան ասացին և հնարավոր չէ այդ բոլորը գրի առնել, ուստի մենք թողնում ենք այն։ Խոսրով արքան ուղղափառների ասածը հավանեց, գովեց ու կաթողիկոսին ասաց. «Սրանք իրենց ասածը գիտեն և այն կարող են հաստատել ու ապացուցել և ինձ ևս իրենց ասածը բոլորովին ճշմարիտ է թվում, մինչդեռ ձերը, հստակ չէ, անորոշ և անհիմն է։ Եվ որովհետև դուք ձեր ասածն ապացուցել չեք կարողանում, ինձ թվում է, որ նրանց ասածի մեջ հիմք կա, ճշմարտություն կա։ Այժմ ես հասկացա, որ դուք նրանց իմ մոտ անհիմն ու անարդարացի եք մեղադրել։ Եվ որովհետև ես լսեցի ու տեսա, ուստի հրամայում եմ, որ սրանից հետո նրանց չնախատեք և ոչ էլ նեղացնեք»։

Երբ այդպես հրաման տրվեց, բոլոր ուղղափառներն երեսն ի վայր ընկնելով, նրան շնորհակալություն հայտնեցին և ասացին. «Տեր, նրանք հալածում ու հարձակվում են մեր վրա, կողոպտում, ու ավերում են մեր եկեղեցիներն ու վանքերը և մեզ թույլ չեն տալիս քո երկարակեցության ու սլեստության անսասանության համար աղոթել»։ Նա վճռական հրաման տվեց. «Գնացեք ու ձեր եկեղեցիներն ու վանքերը կառուցեք, և սրանից հետո ոչ ոք ձեզ չի կարող անհանգստացնել»։ Նրան շնորհակալություն հայտնելուց ու նրա համար աղոթելուց հետո, նրանք (ուղղափառները) մեծ ուրախությամբ իրենց տեղը վերադարձան։ Պարսկաստանից փախած բոլոր ուղղափառները ևս վերադարձան իրենց երկիրը՝ Պարսկաստան։ Այս հրամանից հետո, նրանք հավաքվեցին ու ուղղափառների եպիսկոպոս՝ Տեր Հակոբի միջոցով, իրենց համար կաթողիկոս ընտրեցին, մի բան, որ մինչ այդ Պարսկաստանում չէր եղել։ Այդ ժամանակվանից մինչև այժմ ուղղափառներն իրենց համար Պարսկաստանում կաթողիկոս են ընտրում ու նշանակում։

[41] Եպիսկոպոս է ձեռնադրվել 559 թ. և 16 տարի հետո, պարսիկների Խոսրով արքայի հրամանով նրան գլխատել են, որովհետև նա համարձակվել է արքայական ընտանիքից մի տղայի մկրտել։

## ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ 21

Մարդիկ թող չմտածեն, որ մենք մոգին փառավորելու նպատակով էր, որ նրա պատմությունը գրի առանք։ Եվ ինչպես Սամսոնի առակում ասված է «որ ուտողից ուտելիքն է դուրս գալիս, իսկ դառնից՝ քաղցրը»։ (Այսպես էլ) նա ամբողջովին դառն էր, և ավելին, ի՞նչ կարելի է ասել հեթանոսի ու մոլորվածի մասին։ Ուստի այն ինչ որ անհրաժեշտ էր մեր Պատմության միտքը (ամբողջացնելու) համար, մենք նրա պատմությունից շարադրեցինք։

Երբ սահմանի վրա խաղաղությունը խախտվեց, և ինչպես ասում են, երբ նա արշավում էր Դարայի վրա, ցույց տվեց, որ ինքը հուզված ու վրդովված է ու դրա համար այն մագաղաթները, որոնց վրա խաղաղության պայմաններն էին գրված ու կնքված, իր առաջից տանում էին, կապված ու երկինք բարձրացրած և ինքն ասում էր. «Տե՛ր մեծն աստված, դու գիտես, որ ես երբեք չեմ ցանկացել և ոչ էլ ցանկանում եմ երկու պետությունների միջև ավերածություն լինելուն ու մարդկային արյուն հոսելուն»։ Եվ նույնպես, երբ նա մահամերձ էր ասաց, որ ցանկանում է ու խաղաղության համաձայն է, և կարծում է, որ ամեն մի խաղաղ տարվա համար, ինչպես եղել է սովորաբար անցած երեք տարիների ընթացքում, նա (հռոմեներից) մեկ կենտենար ոսկի կստանա։ Եվ երբ հռոմ և պարսկական դեսպանները հավաքվեցին սահմանի վրա, որպեսզի քննեն ու բանակցեն խաղաղության համար, և ինչպես վերևում ասել ենք, հաղթական Տիբերիոսը, որ դեռ Հուստինոսի կենդանության կեսար էր, և նրանից բոլոր պարսիկները վախենում էին, քաջություն դրսևորելով, վեր կացավ ու ասաց. «Հռոմների կայսրությունը չի նվաստացել և ոչ էլ հպատակվել է Պարսկական թագավորության, այն բանի համար, որ խաղաղության դաշինք է կնքվելու, մենք ոչ մի կենտենար (ոսկի) չենք տա, իսկ եթե մեր պետության համար պատվավոր խաղաղություն չի կնքվելու, ապա մենք բոլորովին խաղաղության դաշինք չենք կապի»։ Այս (հայտարարությունը) բավական վախեցրեց պարսից արքային և նա հավաքեց իր մոգերին ու ասաց նրանց. «Այժմ իմացանք, որ հռոմների կայսրը երիտասարդ ու պատերազմասեր մարդ է, իսկ ես, ինչպես տեսնում եք, ծեր եմ ու չեմ կարող պատերազմի դժվարությունները տանել։ (Եկեք) հռոմների հետ խաղաղության դաշինք կնքենք, քանի որ մենք իրենց հաղթել չենք կարող»։ Այսպես խորհրդակցեցին ու լուր

ուղարկեցին ասելով. «Չկարծեք, որ ես միայն ոսկուն եմ կարեվորություն տալիս և ոչ էլ ոսկին ավելի եմ նախընտրում քան խաղաղությունը. եկեք երկու պետությունների համար պատվավոր դաշինք կնքենք և սպանության վերջ տանք, և ես ուրիշ ոչինչ չեմ ուզում»։ Այս լուրը ստանալուց մի քիչ անց, հաղթական Տիբերիոս կեսարը պատասխան ուղարկեց ասելով. «Իմացիր, որ այն ոսկին, որը հոռոմների պետությունից ստացել ես մինչև այժմ, այսուհետև չես ստանա ոչ մեկ մինա. հոռոմների պետությունը այնքան թույլ չէ, որ պարսիկներին հարկ տա»։ Սրան պարսիկները պատասխանեցին. «Ոսկին, որը ստանում էինք նախկին կայսերն էին ուղարկում, և այդ կարգը դու չէ որ հաստատել ես։ Թող քեզ հայտնի լինի, որ խաղաղությունը ամեն ինչից թանկ է և ես հրաժարվում եմ այդ կենտենարներից (ոսկուց), և խաղաղության դաշինք եմ կապում»։

Երբ կեսարը տեսավ, որ պարսիկն իր (պահանջներին) համաձայնվում է և ընդառաջում, լուր ուղարկեց, որ «Եթե դու Դարան մեզ չվերադարձնես, մենք քեզ հետ խաղաղության դաշինք չենք կապի»։ Սրա վրա պարսիկները վեդովվեցին, պատռեցին խաղաղության (պայմանագիրը), վեճով էլ սահմանից հեռացան ու նույնիսկ իրար դեմ զինվեցին։ Երկու երկրներում էլ սկսվեցին ամայացումները։ Այդ ժամանակ 890 թ. մեռավ Խոսրով արքան և թագավորեց նրա որդին։ Ինչպես հաշվում են, Խոսրովն իշխել է 48 տարի։

## ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ 22

### Պարսից Խոսրով արքայի որդի՝ Հորմիզդի մասին, որ իշխեց նրանից հետո

Երբ մահացավ Խոսրով արքան, նրանից հետո թագավորեց նրա որդիներից մեկը, որի անունը Հորմիզդ էր. և ինչպես վկայում է նրա արտառոց վարմունքը, և ինչպես այն պարզ է դառնում նրա գործից, նա անզուսպ, կոպիտ և անընդունակ էր։ Երբ նա թագավորեց, նա այնքան հպարտ էր ու ոչ խելացի, մեծամիտ ու անպատկառ, որ նույնիսկ արքայական սովորության համաձայն, հոռոմների կայսրին չուղարկեց արքայական նշանը (նվերը)։ Այն ժամանակ որովհետև Տիբերիոս կեսարը (Պարսկական) պետության հետ վեճի ու պատերազմի մեջ էր, ընդունված սովորության համաձայն ինքն ևս կեսարական նշանը (նվերը) չուղարկեց. սակայն երբ կայսր դարձավ, Խոսրովին ուղարկեց կայսերական նշանը (նվերը), որովհետև Խոսրովն էլ այդպես էր վարվել

Հուստինիանոսի հետ, որը նրանից երեք տարի առաջ էր սկսել իշխել։ Իսկ այս ոչ խելացի հպարտը (Հորմիզդը) ասաց. «Ինչու՞. ես պետք է ծառաներիս նվեր ուղարկեմ»։ Այդպես էլ, նա չուղարկեց (նվերը)։ Այն հռոմները, որոնք նրա հոր մոտ ուղարկվել էին նվերներով ու կայսերական հրովարտակներով, երբ հասան Անտիոք, իմացան, որ Խոսրովը մահացել է և նրա որդին է իշխում (այժմ)։ Երբ այդ մասին իմացան մեր խաղաղասեր հռոմ կայսրերը, դեսպաններին հրամայեցին. որ նրանք գնան նոր գահակալի մոտ։ Նա նրանց ամբարտավանությամբ ընդունեց և նրանց հետ հայհոյանքով խոսեց և երկար ժամանակ վատ վերաբերվեց ու բանտարկեց։ Ի վերջո մոգերի խորհրդով, նրանց ազատեց ու չթույլատրեց ուղիղ ճանապարհով գնալ և նրանց հետ մարդ գրեց ու հրամայեց, որ նրանց տանեն բարձր ու գահավեժ վայրերից, որպեսզի նրանք այդ տեղերում զոհվեն ու մեռնեն։ Նրանք (դեսպանները) նույնիսկ իրենց ուղեկցողներին ասացին. «Եթե դուք ուզում էիք մեզ սպանել, ինչու՞ իսկույն բացահայտ մեզ չսպանեցիք և այստեղ բերեցիք, ի՞նչ է, (ուզում եք) որ հոգնածությունից այստեղ մահանանք, այս լեռներում»։ Սակայն աստված օգնեց նրանց և նրանք փրկվեցին և այդ մասին կայսրին և բոլորին հայտնեցին, նրա (Հորմիզդի) դաժանության ու անխելքության մասին։

ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ 23

*Թե ինչ պատճառներով երկու պետությունների միջև անհամաձայնություն առաջացավ և խաղաղությունը խախտվեց*

Խաղաղությունը խախտելու առաջին պատճառը Պարսկական Հայաստանը հռոմներին ենթարկելն էր։ Սուր թշնամության երկրորդ պատճառն այն էր, որ հռոմների կայսրը դեսպաններ էր ուղարկել բարբարոս ժողովուրդների մոտ, որոնք Թուրքեր էին կոչվում և ապրում էին Պարսկական տիրապետության մեջ։ Այս և այլ պատճառներ պարսիկների մեջ հակամարտություն ու թշնամություն առաջացրին։ Իր գերիշխանության 7-րդ տարում Հուստինոս կայսրը, այսպես կոչված Թուրքերի մոտ, դեսպաններ ուղարկեց, որոնց մեջ էր իր մեծամեծներից՝ Զամարքա անունով մեկը։ Մինչ այդ այս հարուստ ու ուժեղ ժողովուրդների մոտ դեսպաններ չէին ուղարկվել։ Ինչպես պատմում է այս դեսպանը «երբ նա մի տարուց հետո հասավ նրանց երկիրը, այդ մասին հայտնեցին այդ ժողովուրդներից մեկի թագավորին (իրենց

*երկրում կան 8 այլ թագավորներ), թե իր մոտ հոռոմների դեսպանություն է ուղարկվել, նա իսկույն վախեցավ, խորը մտատանջության մեջ ընկավ և դառնապես լաց եղավ։ Հատկապես (անհանգստացած էր), երբ ընդունեց դեսպաններին, որոնք երկար ժամանակ կանգնած մնացին իր առաջ և ոչ ոք չէր համարձակվում խոսել նրանց հետ»։ Ուրիշներն, այսպես պատմեցին. «երբ նա այդպես դառնացած լաց եղավ, իր մեծամեծներից ոչ մեկը չհամարձակվեց հետը խոսել։ Մենք նրա առաջ երեսնիվայր խոնարհվեցինք և ասացինք թարգմանին, որ նրան ասի. «Մենք հարցնում ենք քեզ ո՜վ թագավոր, ինչու՞ քո՛ եղբայր հոռոմների կայսրից ուղարկվածներիս տեսնելով, այդպես լաց եղար»։ Երբ այդ լսեց՝ նա նորից դառնապես լաց եղավ, և երկար ժամանակ, երկու ժամ չէր կարողանում մեկ խոսք ասել։ Երբ նրա կոծը բավական մեղմացավ, նա ասաց մեզ՝ «Քանի որ ուզում եք իմ ցավի ու արցունքի պատճառն իմանալ, կասեմ ձեզ. դեռ շատ վաղուց մեր նախնիներից հետևյալ ավանդությունն ունենք, երբ դուք այս գավառներում հոռոմներից եկած դեսպաններ տեսնեք, այն ժամանակ իմացեք, որ իսկապես ամբողջ տիեզերքն ու թագավորությունները կործանվելու են, և մարդիկ անմիջապես իրար կոտորելու են։ Այժմ երբ ձեզ տեսա՝ վերհիշեցի այդ (ավանդությունը) ու դրա համար վիշտ ապրեցի ու լաց եղա»։ Ապա նրա ներկայությամբ մենք շատ խոսեցինք, հետո նրան ոսկուց, արծաթից, մարգարիտից շատ նվերներ ու շքեղ զգեստներ տվեցինք։ Երբ դրանք (նվերները) տեսավ, զարմացավ, և դրանցից ամենալավերն ու շքեղներն ընտրելով ասաց. «Երևում է, որ դրանք մեծ թագավորից են»։ Պատահեց որ պարսիկ դեսպաններն էլ այնտեղ էին։ Թագավորը հոռոմ դեսպաններին հարցրեց. «Ճի՞շտ է՝ ինչպես պարսիկներն ինձ ասացին, հոռոմների կայսրը իրենց ծառան է, և որպես ծառա, իրենց հարկ է վճարում»։ Ջամարքան երբ լսեց այդ, պատասխանեց. «Այդ նրանք ստում են, շատ հոռոմ կայսրեր եկել, գերեվարել ու ամայացրել են նրանց (պարսիկների) երկիրը։ Հոռոմների կայսր՝ Տրայանոսը եկավ և այնպես նվաճեց ու իրեն ենթարկեց նրանց, որ մինչև այսօր (նույնիսկ) նրանց երկրում կանգնեցված նրա արձանից վախենում ու դողում են. այսպես մինչև այժմ նրանցից ոչ ոք չի համարձակվում ձիով նրա (արձանի) առաջից անցնել։ Թող նրանց կանչեն և մենք նրանց անձամբ մեղադրենք և նրանք մեզ հակաճառել չեն կարող»։ Այն ժամանակ կարգադրեց, որ նրանք (պարսիկ դեսպաններն) գան, և ասաց նրանց. «Միթե՞ դուք ինձ չասացիք, որ հոռոմների*

կայսրը ձեր ծառան է, և ահա ինչպե՞ս նրանք ասում են, որ ձեր երկրում կանգնեցված Հռոմ կայսեր արձանը մինչև այսօր դուք պաշտում եք ու նրանից վախենում։ Ինչպե՞ս թե նրանք ձեր ծառաներն են, երբ դուք կայսեր արձանի առաջ դողում եք և սլաշտում, այդ ճիշտ՞ է»։ Նրանք պատասխանեցին նրան. «Այո տեր, այդ ճշմարիտ է, մեր երկրում նրա արձանը կա»։ Նա ասաց նրանց. «ինչ՞ու ստեցիք ու խաբեցիք ինձ»։ Նա երդվեց ու ասաց, որ «եթե ձեզ նման լինեի, ապա իսկույն ձեզ կգլխատեի»։ Այսպես զայրացած բաց թողեց նրանց։ Երբ նրանք իրենց արքայի մոտ վերադարձան, հայտնեցին, որ այնտեղ հանդիպեցին Հռոմ դեսպանների, որոնք մեզ պարսավում էին Տրայանոսի արձանի առիթով, և երբ մենք չկարողացանք ժխտել, նա (թագավորը) այն ժամանակ բարկացավ մեզ վրա ու զայրացած բաց թողեց։ Երբ այդ մասին իմացավ պարսիկը (արքան), այդ պատճառով զայրացավ ու բարկացած հրամայեց, որ կործանեն Տրայանոսի արձանը և սկսեց իր թշնամության մեջ ավելի համառել։ Նա մտածում էր, որ հռոմները նրանց շատ նվերներ տալով (թշնամացնում) էին այդ ժողովուրդներին և լարում իր դեմ։ Այս բոլորն այնպես տեղի ունեցավ, ինչպես դեսպանները պատմեցին, և որոնց մի մասը մենք այստեղ գրի առանք։ Այս Հռոմ դեսպաններն երկու տարի հետո վերադարձան և շատ հետաքրքրական տեղեկություններ պատմեցին, հատկապես այս ժողովուրդների (կյանքից), նրանց հիանալի երկրից, բարքերից ու գոյություն ունեցող սովորություններից։

## ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ 24

Պիսակավոր[42] ժողովրդի մասին, որ ավար է կոչվում[43]։

Այս ժողովուրդն, որ իր մազերի համար ավար է կոչվում, Հուստինիանոս կայսեր օրոք եկավ ու երևաց հռոմների երկրում։ Նա (կայսրը) նրանց դեսպաններին ընդունեց և ոսկով, արծաթով, զգեստով, ոսկյա գոտիներով, թամբերով և այլ իրերով պարգևատրեց և իր միջոցներով, նրանց մեծամեծներին ուղարկեց։ Նրանք զարմացել էին (նվերներից) և նորից ուրիշներին (դեսպաններ) էին ուղարկել և ոչ թե մեկ հոգի, այլ մի խումբ էին կազմել և եկել, իսկ նա (կայսրը) բոլորին էլ պարգևատրել էր, և նրանք (ապա) մեկնել էին։ Նա (կայսրը) հույսով էր, որ նրանց

[42] Ասորերեն Shakira նշանակում է «պիսակավոր»։
[43] Ավարները Avris են կոչվում։

*միջոցով կկարողանա հաղթել իր թշնամիներին, և (առիթից) օգտվելով՝ քանի սենատն ու ամբողջ քաղաքն իրենց դժգոհությունը չէին արտահայտել, որ նա դատարկում է պետական (գանձարանը), ամեն ինչ տալիս էր այս բարբարոսներին։ Երբ նա (Հուստինիանոսը) մահացավ և նրան հաջորդեց քրոջ որդին Հուստինոսը[44] պատահեց, որ նրանց խմբերից մեկն եկավ, որպեսզի ըստ սովորության պարգևատրվի ու գնա։ Մի քանի օր անց նրանք Հուստինոսի մոտ եկան ու նրան ասացին . «Տուր մեզ, ինչպես հանգուցյալն էր տալիս և թույլ տուր, որ գնանք մեր թագավորի մոտ»։ Սակայն Հուստինոսը՝ որը դժգոհներից ու տրտնջացողներից էր, որ պետական (գանձարանից) վերցնում ու տանում են, ասաց նրանց. «Դուք այլևս ոչինչ չեք ստանա իզուր տեղը պետությունից։ Ինձնից ոչինչ չեք ստանա և գնացեք»։ Երբ նրանք սկսեցին սպառնալ նրան, նա բարկացած ասաց. «Դուք սատկած շներ եք և համարձակվում եք սպառնալ հոռոմների կայսրությանը, գիտե՞ք որ կհրամայեմ ու ձեր մազերը կխուզեն և ապա ձեզ կգլխատեն»։ Հրամայեց, որ նրանց բռնեն, նավակների մեջ գցեն ու քաղաքից դուրս տանեն։ Նրանց կապեցին՝ բանտարկեցին Քաղկեդոնում։ Նրանք մոտ երեք հարյուր մարդ էին։ Նրանց վրա սկրիբոններ[45] և սկոլյարներ[46] նշանակեցին, որոնք 6 ամիս հսկեցին։ Ի վերջո նա բաց թողեց նրանց ու սպառնալով ասաց. «Եթե ձեզանից որևէ մեկին այստեղ և կամ իմ ամբողջ տերության որևէ մասում տեսնեմ, ապա դուք կենդանի չեք մնա»։ Նրանք վախեցան նրանից, մեկնեցին և այլևս նրան չերևացին։ Ի վերջո նրանք դեսպաններ ուղարկեցին նրա մոտ բարեկամության ու հպատակության (զգացումներ) արտահայտելով և խոստանում էին կատարել այն, ինչ որ նա (կայսրը) կհրամայի։ Այսպես, նրա օրոք նրանք բարեկամ մնացին։ Լինելով հզոր, ավելի հարուստ ու ուժեղ՝ քան հյուսիսային շատ ժողովուրդներ, նրանք հաղթեցին նրանց և ոչնչացրին։ Անցնելով մեծ գետը, որ Դանուբ էր կոչվում, հարձակվեցին մի այլ հզոր ժողովրդի՝ գեպիդների վրա և ոչնչացրին նրանց, տիրեցին նրանց երկրին, տեղափոխվեցին ու տեղավորեցին նրանց լավ հողամասերում։ Ի վերջո խորամանկությամբ որպես բարեկամի՝ Հուստինոս կայսեր մոտ դեսպաններ ուղարկեցին։ Նրանց թագա-*

[44] *Հուստինոս Բ-ն է։*

[45] *Կայսրի թիկնապահներ։*

[46] *Տե՛ս Պրոկոպիոս Կեսարացի, Գաղտնի պատմություն, գլուխ 30, էջ 296։*

վորը խնդրում էր, որ նա (կայսրը) իրեն մեխանիկներ[47] ու շինարարներ ուղարկեր, որպեսզի նրանք իրեն համար պալատ ու բաղնիս կառուցեն։ Նա (մարդկանց) ուղարկեց, որոնք եկան և իրեն համար պալատ և բաղնիս կառուցեցին։ (Աշխատանքը) վերջացնելուց հետո խնդրեցին, որ իրենց թույլ տա իրենց տները վերադառնալու։ Սակայն այստեղ բացահայտ դարձավ նրա կեղծիքը և հայտնի դարձավ սրտում եղած խորամանկությունը։ Նա բռնեց նրանց ու սուր քաշելով, ասաց նրանց. «Եթե դուք Դանուբի վրա կամուրջ չգցեք, ոչ մեկը կենդանի չի մնա և ես իսկույն ձեր գլուխները կկտրեմ»։

Երբ նրանց այսպես ստիպեց, նրան ասացին. «Հնարավոր չէ ծովի նման այս գետի վրա կամուրջ գցել, եթե նույնիսկ այդ անել կարողանանք, դա հռոմների կայսրության դեմ կլինի և կայսրը դրա համար մեզ կսպանի։ Թեկուզ ապրենք կամ մեռնենք, մենք այդ անողը չենք»։ Թագավորն իսկույն նրանցից երկուսի գլուխը կտրեց։ Մնացածները վախեցան և խոստացան (ասելով). «Եթե դուք մեզ բերեք շատ մեծ ու ամուր փայտ, մենք ձեզ համար այն (կամուրջը) կպատրաստենք, որպեսզի մեզ չսպանեք»։ Այն ժամանակ շատ մարդիկ եկան և շատ ամուր և մեծ ծառեր կտրեցին։ Սրա վախից աշխատեցին և համարյա ամուր կամուրջ կառուցեցին։

13 տարի թագավորելուց հետո Հուստինոս կայսրը վախճանվեց և նրան հաջորդեց հաղթական ինքնակալ Տիբերիոսը, որը չորս տարի շարունակ նրա հետ կեսար էր եղել։

Նա, ինչպես նաև ամբողջ պետությունը, քիչ անհանգստացած չէին այդ բանի համար, որ Հուստինոսի մահվանից 3 տարի հետո, (հռոմները) ամեն կերպ փորձեցին քանդել կամուրջը, սակայն այդ միանգամից անել չկարողացան։ Իսկ նրանք (ավարները) գեպիդների երկիրը գրավելուց հետո, տեղում բնակվեցին ու նրանից (կայսրից) պահանջում էին, որ իրենց տար Սարմին քաղաքը, որը գտնվում էր գետի այս ափին, որպեսզի այնտեղ ապրեն. հրաժարվելու դեպքում, նրանք սպառնում էին նրան (կայսրին), որ կպատերազմեն նրա դեմ և կամայացնեն նրա պետությունը։ Սակայն չհամաձայնվեց ու սկսեց (բանակ) հավաքել, և սպասում էր, թե երբ ժամանակը հարմար կլինի նրանց դեմ պատերազմ սկսելու համար։ Նրանք (ավարները) մի այլ կամուրջ ևս կառուցեցին, որի նմանը ինչպես ասում են, նախապես չի եղել։ Նրանք այդ պատրաստեցին դժվար (օրերի) համար։

[47] Ասորերենում էլ «մեկանիկ» է, և նկատի ունի վարպետներին։ Այն ճարտարապետի իմաստ էլ ունի։

## ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ 25

### *Սլավյան[48] ժողովուրդների և խաղաղասեր կայսր՝ Տիբերիոսի գերիշխանության 3-րդ տարում նրանց՝ Թրակիայում մղած պատերազմի մասին*

*Հուստինոս կայսրի մահից 3 տարի հետո, հաղթական Տիբերիոս կայսեր թագավորության օրոք, հանդես եկավ անիծյալ Սլավյան ժողովուրդը, որը (կտրեց) անցավ ամբողջ Հելլադան, Թեսաղոնիկեի շրջանն ու ամբողջ Թրակիան։ Նրանք գրավեցին շատ քաղաքներ ու ամրոցներ, ամայացրին, այրեցին, գերեվարեցին և իրենց ենթարկեցին հողերը, և ազատ, առանց վախի, իրենց սեփական (երկրի) նման, այնտեղ տեղափոխվեցին։*

*Այսպես չորս տարի շարունակ, որովհետև կայսրը պարսիկների դեմ պատերազմով էր զբաղված և իր բոլոր բանակներն արևելք էր ուղարկել, առիթից օգտվելով, նրանք այդ երկրում տեղավորվեցին և ինչքան աստված թույլ էր տալիս, այդքան (երկրի) խորը տարածվեցին։ Նրանք ոչնչացրին, այրեցին, և մինչև արտաքին պարիսպները ամբողջությամբ վերցրին ու հափշտակեցին կայսերական բազում հազար հոտեր և այլ իրեր։ Եվ մինչև այժմ, մինչև 895[49] թ., նրանք տեղավորված մնացին և հանգիստ, անհոգ ու անվախ ապրում էին հոռոմների հողերի վրա։ Նրանք (մարդկանց) գերի էին վերցնում, սպանում, այրում. նրանք (այսպես) հարստացան ու ոսկի, արծաթ, ձիերի երամակներ ու շատ զենքեր ունեցան, և հոռոմներից ավելի լավ պատերազմել սովորեցին։ Նրանք կոպիտ մարդիկ էին և չէին համարձակվում անտառից դուրս կամ ծառերով չպաշտպանված տեղերում (երևալ)։ Բացի երկու կամ երեք (տեսակի) նիզակներից, նրանք չգիտեին, թե ի՞նչ է զենքը, օրինակ (չգիտեին) նետելու տեգը։*

## ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ 26

### *892 թ. խազիրան ամսի 2-ին Տելլա քաղաքում հոռոմների և պարսիկների միջև տեղի ունեցած պատերազմի մասին*

*Հոռոմ և պարսիկ երկու պետություններում տեղի ունեցած մեծ ամայացումներից հետո, երկու պետություններն էլ ուզում*

---

[48] *Ասորերեն բնագրում «սլավյանները» անվանվում են «սկլավիան»* (Sklavian)։

[49] *584 թ.։*

էին խաղաղության դաշինք կնքել։ Մծբինի, Ռեշլղայնի և այլ եպիսկոպոսների ու հոռոմների ամրոցից՝ Զաքարիա սոփեստի միջոցով (խաղաղության) համար համաձայնվեցին։ (Սակայն) ի վերջո (հպարտությունից) կուրացած պարսիկ մարզպաններից մեկը, հպարտ ու իր քաջությամբ հայտնի, հույս դնելով իր բանակի վրա, համարձակվեց և արքային ասաց. «Մի՛ գիշեր հոռոմներին և նրանց հետ խաղաղության դաշինք մի՛ կնքիր։ Ես իսկույն կմեկնեմ, բոլորին կոչնչացնեմ և ամբողջ հողերը կգրավեմ ու Անտիոքում էլ կձմեռեմ»։ Արքան հույս դնելով նրա պարծենկոտության վրա, և ինքն էլ իր հերթին հպարտ լինելով, արհամարհեց խաղաղության բանակցությունները։ Այս մարզպանը, որի անունը Տամխոսրոն էր, հավաքեց բանակը և հարձակվեց Տելլա-Մավզալատի վրա, որտեղ մեծամեծ ստրատելատներ ու զինվորական ղեկավարներ էին գտնվում։ Հասավ ու պաշարեց քաղաքը։ Ստրատելատները նրա դեմ դուրս եկան, հատկապես Կոստանդին անունով, ուժեղ ու պատերազմիկ մեկը։ Մինչ այդ, մի օր առաջ, նա (պարսիկ) լրտեսներից մեկին բռնել էր ու հարցափորձել, թե ինչպիսին է Տամխոսրոնը և թե նրա բանակը որտե՞ղ է և որտե՞ղից է գալիս։ Երբ նա այդ իմացավ, մարտի դուրս եկավ այդ ուղղությամբ և մարզպանին բանակի մեջտեղում տեսավ։ Նա թափով ու ուժով մտավ պարսկական բանակի մեջտեղը ու ուղղվեց Տամխոսրոնի դեմ, նիզակով հարվածեց նրան ու ձիուց վայր գլորեց, շուռ տվեց նիզակը, խփեց և խոցեց նրան։ Սակայն պարսիկները շրջապատեցին նրան ու քրիստոնյա, հավատացյալ ու պատերազմիկ մարդուն՝ Կոստանդինին տեղնուտեղը սպանեցին։

Երբ պարսիկները տեսան, որ սպանված է նա, որի վրա ավելի հույս էին դրել, քան արքայի վրա, որը պարծենում էր, որ իսկույն հարձակումով կգրավի քաղաքը և այնտեղ էլ կհաստատվի, և երբ (տեսան), որ հոռոմ զորքը չորս կողմից իրենց շրջապատում է, սկսեցին նահանջել։ Հոռոմներն ու արաբները նրանց (սկսեցին) հետապնդել։ Նրանցից շատերին, ինչպես ասում են, բազում հազարների, ոչնչացրին ու սպանեցին։ Եվ որովհետև մենք հաստատ չգիտենք, ուստի ստից խուսափելու համար, ճշգրիտ (քանակը) չենք նշի։ Համենայն դեպս հայտնի է, որ նրանցից շատերը ընկան։ Նույնպես ասացին, որ նրանցից (պարսիկներից) երեք զինվորական հրամանատարներ ևս սպանվել են, և նրանց ամբողջ պարծենկոտությունը իջել էր։ Նրանք փախան, սկզբում

եկան դետի մոտ, որը կոչվում էր Բեյթ Վաշի[50] և այնտեղ երեք ամիս ապրեցին մարտի սպասելով, սակայն երբ չկարողացան հռոմեներին դիմադրել, ամոթահար իրենց երկիրը վերադարձան, չիրականացնելով իրենց ունեցած ցանկությունը, որովհետև այս ամենն այնպես պատահեց, ինչպես վերևում նկարագրեցինք։

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ 27

### Արևելյան ամբողջ բանակների գլխավոր հրամանատար[51] դարձած Մավրիկիոսի մասին

Սա այն Մավրիկիոսն է, որի մասին վերևում խոսք եղավ։ Երբ Գերմանի որդի պատրիկ Կոստանդինը, որը արևելյան բանակների գլխավոր հրամանատար էր նշանակված, մահացավ. հրամանատարները իրար չենթարկվեցին, ուստի ողորմած Տիբերիոս կայսրը Մավրիկիոսին որպես Արևելքի ստրատելատների ու զորավարների գլխավոր հրամանատար ուղարկեց։ Մավրիկիոսը նրա (կայսրի) հետ միասին նոտարիոս էր եղել, և դրա համար էլ երբ Տիբերիոսը կայսր դարձավ, նրան բարձրացրեց և կոմես էքսկուբիտորիսի պաշտոնը տվեց։ Նրան նշանակեց Արևելքի հռոմ ստրատելատների և զինվորական հրամանատարների գլխավոր, որը նրանց նշանակելու, ազատելու և ուզածը անելու իշխանություն ուներ։ Երբ նա այդ պաշտոնի հետ ստացավ (նաև) մեծ բանակ, էքսկուբիտորների և սկրիպանների հետ հարձակվեց ու հասավ Կապադովկիայի շրջանը, (իսկ) նա ծնունդով այնտեղից՝ Արաբիսուսա քաղաքից էր։ Այս շրջանից էլ շատ երիտասարդների հավաքեց հռոմների (բանակում) ծառայելու համար։ Երբ հայկական Անձիտ ու Ասորիք հասավ, այդ շրջաններից էլ (հավաքեց երիտասարդներ)։ Նախ տեղավորվեց Կիտարիզում և իր մասին եղած առաջին շշուկներից (իսկ), ամբողջ Պարսկաստանը սարսափի մեջ էր։ Պարսկական Հայաստանը պահպանող մարզպանը երբ նրա մասին լսեց, վախեցավ և ցանկացավ ինչ որ առիթով նրանից փախչել ու խորամանկությամբ լուր ուղարկեց Թեոդոսուպոլսում նստած մեծամեծներին թե «Մինչև ե՞րբ պետք է նստենք ու իրար հսկենք, որպեսզի իմանանք, թե ո՞վ է հաղթողը և ո՞վ պարտվողը»։ Հրամանատարներն այս խոսքերը հաղորդեցին կոմիտ Մավրիկիոսին, և նա հրամայեց, որ նրանց

50 Բեբաս-Bebas։
51 Magister militum per Orientem.

պատասխանեն. «Մենք պատրաստ ենք»։ Հոռոմները հավատացին պարսիկների այդ խոսքին. (մինչդեռ) մարզպանն իր բանակով այնտեղից գիշերը փախավ ու դուրս գալով իր երկրից, առաջ շարժվեց ու մտավ հոռոմների սահմանը՝ Մայփերկատի դիմաց և սկսեց ամայացնել, այրել, սպանել ու գերի վերցնել (մարդկանց) ամբողջ Ծոփքի ու Ամիդի շրջաններից։ Նրանք հասան Ամիդ ու երեք օր այն շրջապատած ու պաշարած պահեցին, բայց երբ տեսան, որ չեն կարող այն նվաճել, ապա որպեսզի (քաղաքը) չայրեն, որպես փրկագին ոսկի պահանջեցին։ Նրանք (ամիդցիները) նրանց չհավատացին, մտածելով որ տան կամ չտան միևնույնն է, նրանք կրակի են տալու։ Սրա վրա պարսիկները բարկացան ու քաղաքից դուրս եղած բոլոր մեծ ու փոքր եկեղեցիներն ու վանքերը այրեցին, և եղան այնտեղ, որտեղ որ կարող էին։

Այսպես, 15 օրվա ընթացքում, նրանք կողոպտեցին, գերեվարեցին ու ապա հոռոմներից ունեցած իրենց սարսափից, շտապ վերադարձան իրենց երկիրը։ Երբ կոմիտ Մավրիկիոսն ի վերջո այդ մասին իմացավ, բարկացավ, վերցրեց իր բանակը և մեկնեց Ասորիք, նրանց հետապնդելու համար, բայց նրանց չհասավ։ Հոռոմների բանակը զայրացած ու բարկացած, հարձակվեց Արզունի շրջանի վրա, նրանք ամայացրեցին, այրեցին, ոչնչացրեցին ու գերի վերցրին ամբողջ շրջանի (մարդկանց) ու վերադարձան հոռոմների սահմանը, ինչպես նախորդ գլխում նկարագրեցինք։ Այնտեղից բերված բոլոր գերիներին, կայսրի հրամանով ուղարկեցին Կիպրոս կղզին և բաժանեցին քաղաքների ու գյուղերի միջև, և մինչև այսօր, նրանք այնտեղ էլ գտնվում են։

## ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ 28

*Հայաստանում տեղի ունեցած պատերազմի ու այնտեղ պատահած այլ իրադարձությունների մասին*

Եվ որովհետև հոռոմների բանակի մեծ մասը երկու ստրատելատների՝ Հովհաննի և Կուրիսի (գլխավորությամբ) Պարսկական Հայաստանի վրա էր ուղարկվել, ուստի պարսիկները նրանց դեմ բանակ հանեցին։ Ինչպես վերևում հայտնել ենք, հոռոմ բանակում անհամաձայնություն էր առաջացել և նրանցից (զորքից) 50 հազարը զայրացած ու վրդոված ասել էր «եթե մեր սունտիսը[52] ամբողջությամբ չստանանք և եթե յուրաքանչյուրս մեր տեղերը

[52] Սունտիս-Sountis-ուտեստ, կերակուր, թոշակ։

*վերադառնալուց հետո չիմանանք թե այն, ինչ՞ չափով ենք ստանալու, ասյա մեղանից ոչ ոք մարտի դուրս չի գա և մենք ոչ ոքի հետ չենք պատերազմի»։*

*Երբ այդ մասին իմացավ Տիբերիոս կայսրը, նա իսկույն, առանց հապաղելու, այնտեղ ուղարկեց Հորմիզդի պալատի տնտես[53] և կուրատոր[54] Դոմտազուլոսին, և նրան շատ ոսկի տվեց, որ նրանց բաժանի, խաղաղեցնի, հանգստացնի, որպեսզի նրանք պատերազմին պատրաստ լինեն։ Ճիշտ այս ժամանակ էր, որ պարսիկ մարզպանները հռոմ հրամանատարներին լուր ուղարկեցին, ասելով «ինչու՞ այսպես, կանանց նման, իրար դեմ նստել ենք, եկեք դուրս գանք հարթ տարածություն ու իրար հետ պատերազմենք»։ Երբ հռոմների հրամանատար Կուրիսն այդ մասին լսեց, որպես իմաստուն (մարդ), որը մեծն Ներսեսի հետ միասին հռոմների երկրում բազում արշավանքներ էր կատարել, հետևյալ պատասխանն ուղարկեց. «Այժմ մենք պատերազմել չենք կարող, որովհետև մեր ամբողջ բանակն այստեղ չէ, իսկ եթե դուք հարձակվեք մեզ վրա, ինչքան որ աստված մեզ ուժ կտա, կդիմագրենք ձեզ»։ Երբ մոգերի ժողովուրդը այս պատասխանը ստացավ, մեծ վստահությամբ, առանց վախի ու զգուշության (մտածում էին) հարձակվել։ Իսկ Կուրիսը ճիշտ նույն օրը, հանգիստ, իր մոտ 20 հազարանոց բանակը պատրաստեց և մինչ արևելքում դեռ մութ էր (լույսը չբացված) նրանք (պարսիկները) գիշերը հանգիստ ու անհոգ պառկել էին ու քնել, նա դուրս եկավ ու հարձակվեց նրանց վրա. «Որպէս հուր զի այրէ ղանտառ, որպէս բոց զի կիզու զլերինս»[55]։ Նա հարվածեց, շփոթեցրեց ու ոչնչացրեց նրանց, այնպես որ նրանցից միայն քչերը փախան։ Շատերին նա գերի բռնեց, և բռնեց նաև մի մարզպանի ու նրա որդուն, կողոպտեց ամբողջ նրանց բանակատեղին ու մեծ հանդիսությամբ վերադարձավ, իր հետ տանելով նրանց զենքերն ու ձիերը։*

## ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ 29

*Մի ինքնակոչ պարսիկի մասին, որն իրեն որպես արքայի որդի էր ներկայացնում։*

*Պարսիկ արքա Խոսրովից հետո թագավորեց նրա որդին՝ Հորմիզդը, իրենց նախկին սովորության համաձայն, իր եղբայր-*

---

[53] *Ռաբիտա*-Rabita-*տնտես, մատակարար, մառանապետ։*

[54] *Կուրատոր*-Kourator-*լատիներեն՝ «վերակացու»։*

[55] *«Գիրք Սաղմոսաց», ՁԲ, (ՁԳ), 15։*

ներից ոմանց սպանեց, ոմանց էլ կուրացրեց։ Նրա (Խոսրովի) որդիներից մեկին, որին ինչպես ասում են, հայրն ուզում էր թագավորեցնել. սակայն ամբողջ նրանց սունկլիտոսր[55] դեմ էր ու չէր ուզում։ Խոսրովը դեռ իր կենդանության ժամանակ, ինչպես վկայում են նրան պաշարով ապահովեց ու ասաց. «Գնա որդիս, որպեսզի (հետո) քեզ չսպանեն, քանի կենդանի եմ, փախիր», և որովհետև նա փախավ, ուստի նրա մասին շատ խոսակցություններ եղան և իր ցեղակիցների մեջ ու տարբեր տեղերում լուրեր էին պտտվում ու հույս կար, որ նա կենդանի է։ Պարսիկներից, մի ճարպիկ խաբեբա երիտասարդ դուրս եկավ ու փաստերով այնպես ապացուցեց, որ հավատացին թե նա Խոսրովի փախած տղան է։ Նա եկավ Պարսկական Հայաստանում գտնվող զինվորական հրամանատարների մոտ և նրանց ասաց, որ նա ուզում է հոռոմների պետության հպատակվել և (ասում էր), որ եթե «հոռոմների կայսրն ինձ ճանաչի և բանակ տա, ես կնվաճեմ ամբողջ Պարսկաստանն ու իր բանակը։ Իսկ եղբորս Հորմիզդին, որը հափշտակեց իմ թագավորությունը, կկապեմ և կապված էլ կհանձնեմ հոռոմների կայսրին»։ Երբ զինվորական հրամանատարները հարցը բոլոր կողմերից քննարկեցին, և տեսան, որ շատ մարդիկ այդ մասին վկայեցին, ուստի նրանք հավատացին, որ նա իր եղբոր մոտից է փախած և արքայի որդին է։ Նրանք Տիբերիոս կայսրին գրեցին նրա ասածներն և իրենց կատարած հարցափորձի մասին և (հայտնեցին). որ կան մարդիկ որոնք ճանաչում են նրան և վկայում. որ նա արքայի որդին է. (Գրեցին) նաև, որ նա ոչինչ չունի (այժմ)։ Երբ հաղթական Տիբերիոս կայսրը ստացավ (նամակը), հավատաց զինվորական հրամանատարների գրածին, ուստի իսկույն դեսպանների հետ շատ ոսկի, արծաթ, սքանչելի զգեստներ, ձիեր, շատ ջորիներ ուղարկեց. որ նրան նվիրեն ու պատվեն. նա (կայսրը) հրամայեց նույնպես, որ նրան մայրաքաղաք բերելիս, բոլոր շրջանների ու քաղաքների դատավորները պատվով ընդունեն. այդպես էլ եղավ։ Մեծ հարգանքով ու բարձր պատվով, որպես արքա, անցավ բոլոր տեղերից և նրան նորից շատ նվերներ ուղարկեցին։ Երբ նա հասավ Քաղկեդոն և որպեսզի մայրաքաղաք մտնի, հրամայեցին, որ սպասի, քանի որ կայսրն ինքն անձամբ ուզում էր դործը ստուգել։ (Մայրաքաղա-

56 Սենատ-Senat-ծերակույտ։

*քում) էր պարսից արքայի ինչ որ սպաթար[57], որ եկել էր խաղաղության բանակցությունների. նա և նրա հետ եկած դեսպանները ճանաչում էին նրան։ Կայսրը հրամայեց, որ նրանք մեկնեն նրա մոտ և տեսնեն, որ (իրոք) ճանաչում են նրան և թե նա (արդյոք) խաբեբա չէ՞, որպեսզի ինքը (կայսրը) ծիծաղի առարկա չլինի։ Երբ նրանք տեսան նրան, չճանաչեցին։ Սպաթարը՝ որպես պարսիկ, շատ բաների մասին հարցրեց նրան, սակայն նա չկարողացավ ապացուցել։ Որպես արքա նա նստած էր բարձր դահի վրա. սպաթարը ձեռքով բռնեց նրա մազերից, բարձրացրեց ու վայր գցեց ասելով. «Դու խաբեբա, արժանի ես մահվան. դու նստել ես բարձր դահի վրա, մինչ թագավորության մեծամեծները քո առաջ կանգնած են»։ Նա մի հատ էլ վզին խփեց և այսպիսով բացահայտվեց նրա սուտը և նա չկարողացավ պաշտպանվել և իր մասին ճշմարտությունը ապացուցել։ Կայսրը հրամայեց, որ նրան ինչ որ տեղ բնակեցնեն, բայց որպես ստախոսի չպատժեց ու հրամայեց, որ նրան և նրա հետ եղածներին ապրուստի միջոց տան։ Կայսրը նրա հետ չտեսակցեց, բայց ասում են, որ նա նրան երեք կենտենարից ավելի (ոսկի) տվեց։ Վերջում նա քրիստոնեություն ընդունեց։*

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ 30

### *Գեպիդների մեծ քաղաք՝ Սարմինի մասին, որ ավարները բռնի ուժով գրավեցին*

*Այս բարբարոսները՝ ավարները հավաքեցին և պաշարեցին (հոռոմներից) կառուցված երկու ամրություններ և սպառնում էին, որ կպատերազմեն ու կամայացնեն հոռոմների բոլոր երկրամասերը։ Նրանք լուր ուղարկեցին Տիբերիոս կայսրին. «Եթե ուզում ես, որ քեզ բարեկամ լինենք, Սարմինը մեզ տուր, որպեսզի քո համաձայնությամբ մենք այնտեղ տեղափոխվենք, ապա թե ոչ քո կամքին հակառակ, մենք այն կվերցնենք և քո թշնամիները կլինենք»։ Կայսրը զանազան խոստումներով խուսափում էր և չէր ուզում ոչ մի կերպ քաղաքը տալ, և գաղտնի դեսպանություն ուղարկեց լանգոբարդների և այլ ժողովուրդների մոտ, որպեսզի նրանց գրգռեն ու նրանց (ավարների) թիկունքում ապստամբեցնեն։ Երբ նրանք (ավարները) սկսեցին իրեն (կայսրին) ստիպել, որ նա իր մտադրությունը ասի, նա նրանց մոտ ուղարկեց Նարսե-*

[57] **«Սպաթար**-*բանտապետ, դահճապետ, զինակիր, պալատական պաշտոնյա»։ Տե՛ս Հ.* **Աճառեան,** *Հայերէն արմատական բառարան, Երևան, 1932, հատ. Զ, էջ 382։*

սին՝ կայսրության մեծ սպաթարին, որպեսզի նրանց հետ բանակցի ու նրանց հանդարտեցնի։ Նարսեսն իր և պետական (գանձարանից) շատ ոսկի վերցրեց, մինչ իրեն էլ գաղտնի հրամայված էր, որ վերադառնալու համար չշտապի, որպեսզի երբ (ապստամբված) ժողովուրդները գան, նրանց ընդունի և միասին հարվածի նրանց (ավարներին), և եթե հնարավոր է նրանց ոչնչացնի։ Իսկ նրանց (ավարներին) լուր ուղարկեցին. «Ահա մենք ուղարկում ենք մեր հայտնի սպաթար Նարսեսին, որը կգա, կբանակցի և ձեզ հետ խաղաղության դաշինք կկնքի։

## ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ 31

### Սպաթար Նարսեսի ճանապարհորդությունը

Հայտնի սպաթար Նարսեսը մայրաքաղաքից մեծ հանդիսավորությամբ, բազում զորքերով, մեծ քանակությամբ ոսկով ու զանազան զգեստներով մեկնեց։ Շատ նավեր բազում իրերով բեռնավորեցին և Պոնտոսի վտանգավոր ծովով ուղարկեցին։ Նավերից մեկը, որը (լի) էր բազում ոսկիներով և այլ շատ իրերով, և որի վրա գտնվում էին մի մագիստրոս և ներքինիներ (իրերը) պահպանելու համար, ճանապարհորդության առաջին իսկ օրը ընկղմվեց։ Նարսեսը երբ ծովից դուրս եկավ Դանուբ գետի դիմաց, այդ մասին իմացավ ու հուզմունքից ծանր հիվանդացավ։ Ծանր չարչարանքներից հետո նա տանջանքով մահացավ։ Չքացան նրա բոլոր (մտադրությունները) և դրանցից ոչինչ չիրագործեց. նրանից հետո, նրա ունեցած բազում ունեցվածքը դժվարությամբ կարելի եղավ վերադարձնել։

## ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ 32

### Թե ինչպես նրանց (հոռոմների) հույսը չիրականացավ և Սարմին քաղաքը հանձնվեց բարբարոսներին

Եվ որովհետև Նարսեսը ոչինչ չարեց, և մյուս ժողովուրդներն էլ չեկան, կայսրը ստիպված եղավ մի այլ Պրոյետոր պրեֆեկտ[58] Կալիստերոս անունով մեկին ուղարկել ավարների մոտ։ Նա մեկնեց և քաղաքը հանձնեց նրանց, քանի որ նա կարծում էր, որ այդպես ավելի լավ է, քան թե պատերազմով ու ուժով վերցնել,

[58] Praefectus praetorii.

որովհետև երկու տարվա ճնշումից և այդպիսի ծանր սովից հետո, բոլոր անասուններին, բոլոր կենդանիներին և նրանց նմաններին, նույնիսկ կատուներին, կերել էին, և ինչպես սուրբ Գրքից իմանում ենք, այնտեղ եղած վիճակը Սամարիայում եղածից նվազ ծանր չէր։ Պատմում են նաև բարբարոսների սովահար մարդկանց նկատմամբ ունեցած բարեսրտության մասին, և այդ պետք է օրինակ ծառայի քրիստոնյաներին, որոնք իրենց ընկերներին չեն խղճում և հոգատար չեն իրենց մարմինների նկատմամբ։ Եվ որովհետև երբ նրանք քաղաք մտան և տեսան այնտեղ եղած ժողովրդի մահացու տանջանքները նրանք խղճահարվեցին, նրանց և՛ ուտելու համար հաց տվեցին և՛ խմելու համար գինի։ Բայց որովհետև նրանք (քաղաքի բնակիչները) երկու երկար տարիների ընթացքում սովից հյուծվել էին, ագահաբար կերան ու իսկույն մահացան։ Նրանք, որոնք կենդանի մնացին, հեռացան քաղաքից գնացին, իսկ բարբարոսները քաղաքը վերցրին և տեղափոխվեցին այնտեղ։

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ 33

*Սարմինում տեղի ունեցած հետագա հրդեհի մասին*

Ինչպես ասում են, բարբարոսները քրիստոնյա քաղաքը գրավելուց մեկ տարի հետո, միայն աստված գիտի, թե ինչպես, այդ Սարմին քաղաքում հրդեհ ծագեց և միանգամից այն ամբողջությամբ այրվեց ու ավերվեց։ Եվ որովհետև բարբարոսները չգիտեին թե ինչպես կասեցնեն ու հանգցնեն կրակը, ուստի բոլորն էլ, ինչ որ կարողացան իրենց հետ վերցնել, վերցրին ու փախան և հեռացան այնտեղից, այնպես որ ամեն ինչ այրվեց ու ավերվեց։ Շատ բան արժեր պատմել այդ մասին, սակայն բազում ընդարձակ պատմությունների պատճառով մի կողմ թողեցինք։

### ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ 34

*Կոմիտ Մավրիկիոսի պատերազմն ու Արզունի գերեվարությունը և շատ պատերազմների նկարագրությունը*

Թե ինչ պատահեց նախորդ պատերազմներում, մենք ձգտեցինք մանրազնին քննել և համառոտաբար նկարագրել։ Մենք նկարագրեցինք նշանավոր պատրիկ Մավրիկիոսի Մծբինի դեմ

*վարած պատերազմն և այնտեղ տեղի ունեցածը. թե ինչպես Խոսրովն իր բանակով անցել էր հոռոմների սահմանը և թե ինչպես նա նվաճել էր Դարան, Ապամեան և այլ քաղաքներ։ Ապա (պատմեցինք) հաղթական Մավրիկիոսի մեծ հանդիսավորությամբ դեպի արևելք կատարած ճանապարհորդությունն և այն սարսափը, որ զգաց մոգերի ժողովուրդը, և թե ինչպես նրանք հույսով էին, որ կխուսափեն նրանցից (հոռոմներից), և թե ինչպես Մայփերկատի կողմից թաքուն անցան հոռոմների սահմանն, այրեցին և մեծ սարսափ տարածելով 15 օրվա ընթացքում անցան Ծոփքը և մոտեցան Ամիդին։ Տեսնելով որ չեն կարող նվաճել քաղաքը, բարբարոսական բարկությամբ կրակի տվեցին ու այրեցին ամբողջ շրջակայքը, եկեղեցիները, վանքերն ու այլ շինությունները։ Ավարը վերցնելով, նրանք շտապ իրենց երկիրը վերադարձան։ (Պատմեցինք) նաև թե ինչպես այդ մասին կոմիտ Մավրիկիոսն իմանալով շատ ջղայնացավ և հետապնդեց նրանց, սակայն չհասնելով, շտապ թեքվեց Արզունի գավառի վրա, այրեց, ավերեց և գերի վերցրեց ամբողջ Արզունի բնակչությանը։ Նրանց, որոնց նա չսպանեց, բերեց հոռոմների երկիրը, որոնց բոլորին ուղարկեց Կիպրոս կղզին։ Նա պաշարեց ամրոցներն ու դրանցից Պում անունով մի (ամրոց) նվաճեց, որի մեջ էլ տեղավորվեց հոռոմ զորքը։ Կլիմար անունով մի այլ ամրոց, որտեղ պարսիկները դիմադրություն ցույց տվեցին, նրանցից փրկագին վերցրեց ու (ազատ) թողեց։ Այնտեղ նրանք իրար դիմաց էին գտնվում, բայց (հետո) խաղաղության դաշինք կնքեցին և առանց վախի առևտուր էին անում։*

## ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ 35

### *Ծոփքի դիմաց Մավրիկիոսի կառուցած Շամկերտ անունով մի այլ ամրոցի մասին*

*Կոմիտ Մավրիկիոսը ևս ձգտեց ու կառուցեց Շամկերտ լեռան վրա, բարձր ու ամուր մի ամրոց, որն այդ պատճառով կոչվեց Շամկերտ։ Նա այնտեղ (ամրոցում) հոռոմ (զորք) տեղավորեց և նրանց ամեն ինչով ապահովեց ու անոնա[59] նշա-*

---

[59] *Ռոճիկ։*

նակեց։ Այս Շամկերտը գտնվում էր հոռոմների երկրամասում։ Դրա կառուցումը հանձնեց մեխանիկին, և մինչ ինքը Պարսկաստանում էր, նա (մեխանիկը) այն վերջացրեց։

## ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ 36

### Ակբա կոչված ամրոցի մասին որը գտնվում է Պարսկաստանում՝ Տիգրիսի ափին

Տիգրիս գետի ափին, Մայֆերկատի դիմաց, սահմանի վրա, մի բարձր լեռ կար, որի վրա երկար ժամանակ չարաբարո մոգերի ժողովուրդը մտածում էր ամրոց կառուցել։ Բայց որովհետև հոռոմների ու պարսիկների միջև համաձայնություն էր կայացվել, որ սահմանից որոշ մղոն հեռավորության վրա, ո՛չ սրանք և ո՛չ էլ նրանք ամրոց կառուցելու իրավունք չունեն, (ուստի) հոռոմները նրանց դիմադրում էին և կառուցելու հնարավորություն չէին տալիս, և թեև նրանք երկար ժամանակվանից սկսել էին կառուցումը, բայց դադարեցրին։ Մինչ այդ սակայն, նրանք առիթից օգտվեցին, կառուցեցին ամրոցը և ներս մտան։ Մի քանի տարի անց, հոռոմ բանակը Ավլայի ստրատելատության սկզբում, դեմ դուրս եկավ ու պաշարեց այն։ Երկար ժամանակ այն շրջապատված ու պաշարված մնաց, այնպես որ սովն ու ծարավը տանջում էին նրանց, որոնք ներսում էին, և նրանք մահվան (եզրին) էին։ Երբ նրանք տեսան, որ այլևս չեն կարող համբերել, խնդրեցին, որ իրենց եթե չեն սպանի, չեն բռնի, գերի չեն վերցնի ու չեն տանի հոռոմների սահմանները, ապա այդ դեպքում կհանձնեն ամրոցը և այնտեղից էլ դուրս կգան։ Հրամանատարները խոստացան և այդպես էլ արեցին։ Նրանք բացեցին (դարբասները) և բոլորն այնտեղից դուրս եկան։ Երբ դուրս եկան և ջուր գտան, սկսեցին խմել, սակայն իսկույն ընկան ու մահացան, այնպես որ նրանցից միայն քչերը դուրս եկան ու կարողացան գնալ։ Ստրատելատն ու իր բանակը բարձրացան ու ավերեցին ամբողջ ամրոցը և քարը քարի վրա չթողեցին ու ամբողջը վերցրին ու լեռից ցած գցեցին։ Այստեղ հավաքվեցին այլ հրամանատարներ ու շատ զորք ևս, որոնք տարբեր տեղերում բնակվեցին ու մեկը մյուսին հսկեցին։

## ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ 37

### Մեր Հոոոմ կայսրի մոտ այս ժամանակ ուղարկված պարսիկ դեսպանների մասին

Ակրա (ամրոցր) դրավվեց 894[60] թ. և պարսիկ դեսպաննե֊ր ուղարկվեցին մեր Հոոոմների կայսրի մոտ և խաղաղության համար բանակցություններ սկսեցին։ Դեսպաններր սիրով վերա֊դարձան և սկսեցին ուղարկել . . . . »[61]։

---

60 583 թ.։

61 Այստեղից Լլ ասորերեն բնագիրը պակասում է։

# ՑԱՆԿԵՐ

## ԱՆՁՆԱՆՈՒՆՆԵՐ

---

* Passim-ով նշված են այն անուն-ները, որոնք հաճախ են կրկնվում։

Սրիգենես 378
Օրմանյան Մ. 363, 364

## ՏԵՂԱՆՈՒՆՆԵՐ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ (ԲՆԱԳՐԻ ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅՈՒՆ)



## Գ ՄԱՍ

## ԶԱՔԱՐԻԱ ՄԻՏԻԼԵՆԱՑՈՒ (ՀՌԵՏՈՐ) «ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ»



## «ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆ» (ԲՆԱԳՐԻ ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅՈՒՆ)

## Դ ՄԱՍ

## ՀՈՎՀԱՆ ԵՓԵՍԱՑՈՒ «ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ» (ԲՆԱԳՐԻ ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅՈՒՆ)



## ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ (ԲՆԱԳՐԻ ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅՈՒՆ)
## ԵՓԵՍՈՍԻ ՀՈՎՀԱՆ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ *(Երրորդ մաս)*

# ԱՍՈՐԱԿԱՆ ԱՂԲՅՈՒՐՆԵՐ
## Ա

Տպագրվում է Հայկական ՍՍՀ ԳԱ
պատմության ինստիտուտի
գիտական խորհրդի որոշմամբ

Պատասխանատու խմբագիր
Ա. Ն. ՏԵՐ-ՂԵՎՈՆԴՅԱՆ
Հրատարակչության խմբագիր
Ա. Հ. ՇԱՂԳԱՄՅԱՆ
Տեխնիկական խմբագիր Մ. Ա. ԿԱՓԼԱՆՅԱՆ
Նկարչական ձևավորումը Կ. Կ. ՂԱՖԱԳԱՐՅԱՆԻ
Սրբագրիչ Ա. Ա. ՂԱՓԼԱՆՅԱՆ

ՎՖ 06734 Պատվեր 893 Հրատ. 4431 Տպաքանակ 3000

Հանձնված է շարվածքի 27.11.1975 թ., ստորագրված է տպագրության 28.9.1976 թ.։
Տպագր. 30,0 մամուլ, հրատ. 24,84 մամուլ, թուղթ № 1, 60×90[1]/16։ Գինը 1 ռ. 80 կ.։

Издательство АН Армянской ССР, Ереван-19, Барекамутян 24 г.
ՀՍՍՀ ԳԱ հրատարակչություն, Երևան-19, Բարեկամության 24 գ.
ՀՍՍՀ ԳԱ հրատարակչության էջմիածնի տպարան